ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ

## ՍՈՒՐԲ ԵՓՐԵՄ

ՍՐԲՈՅՆ

# ԵՓՐԵՄԻ

## ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀԱՄԱԲԱՐԲԱՌ ՈՐ ԸՍՏ ՉՈՐԻՑ ԱՒԵՏԱՐԱՆՉԱՑ
ԵՒ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ ԱՌԱԿԱՒՈՐ ԲԱՆԻՑ
ԵՒ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԺԱՌՔ





Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1836 ՌՄՁԵ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻ

# ՀԱՄԱԲԱՐԲԱՌ

### ԶՈՐ ԱՐԱՐԵԱԼ Է

# ՏԵԱՌՆ ԵՓՐԵՄԻ

### ԽՈՐԻՆ ԱՍՈՐՒՈՑ

### ԳԼՈՒԽ Ա

ՈՒ՞ զգեցաւ տէր մեր զմարմինն. զի ինքն մարմինն . . . . . . . . . [1] զյաղթութիւն և իմա . . . . . . . . . պարգևան ։ Զի եթէ ա՛ծ առանց մարմնոյ յաղթէր, զի՞նչ օգուտ լինէր նմա. և երկու՝ զի յայտ արասցէ՝ թէ ոչ նախանձու ինչ նախանձեցաւ ընդ նմա զառաջինն լինել նմա ա՛ծ. զի ահաւասիկ այս մեծ է՝ որ խոնարհեցաւ նուաւ, քան զայն՝ որ մինչ դեռ մեծն և փառաւորն էր՝ բնակէր ՚ի նմա. և վասն այսորիկ "Ես ասացի՝ թէ ա՛ծք իցէք"։ Արդ եկն բանն և զգեցաւ մարմին. զի այնու՝ որ ըմբռնելին, ըմբռնեսցի այն՝ որ ոչն ըմբռնելի. և այնու՝ որ ոչն ըմբռնելի, ապըստամբեսցէ մարմինն յըմբռնելեաց անտի իւրոց։ Քանզի տեառն մերոյ արժանի էր լինել նախահանդիստ ամենայն բարեաց, զի առ նա ժողովեսցին, և . . . ժամանելոյ ամենայն խորհրդոց, զի յամենայն տեղեաց առ նա ընթասցին, և ժողովեալ ամենայն . . . . . .

[1] Ի սկզբան օրինակին ուրեք ուրեք գէ բանիցն մարթ էր իմանալ, եղծեալ էին բառք, որպէս միջոցք բառից՝ նօտարագիր տառիւք զբացակայիցն ցուցանեն ։ Իսկ ուր ՚ի կար ցուցաք զթերին ։

զի յամենայն մարդոյ թողուցեալ վերասցին, և 'ի վերայ նորա միայն հանգուցեալ դադարեսցին ... իմաստութիւն, զի յանկանելն այնորիկ՝ որ անկա .... ւորն .... այն որ յարուցանելոցն է զնա ։ Եւ քան .... եց ... մարմինն Ադամայ քան զչարչարանսն, վասն այսորիկ մերկացաւ նա զչարչարանսն ....... ... յաւելուած իմն տկարութե եղեն ........... զառողջ բնութիւն որ զառողջութիւն իւր կորոյս. զգեցաւ տէր մեր, զի նովաւ գտցէ զառողջութի առաջին բնութեանն նորա ։ Զի թէպէտ և սուրբքն զազանաց յանխնայ խոցոտեցին, սակայն դեղքն բարերարին փութան կեցուցանել զմեզ. պատեսյան զնովաւ պատանք ձրի, քանզի և հարուածք նորա ձրի էին. զի ոչ ինչ մեղաւ նա սատանայի որ եհարն զնա. նա և ետ ինչ ոչ բարերարին, որ բժշկեացն զնա ։ Շմշոն իշոյն ծնօտիւ կոտորեաց զբազումս. այլ օձն Եւայիւ կոտորեաց զամենայն ազգս մարդկան ։ Արդ առ տէր մեր զայս զէն, որով յաղթեաց ախոյեանն, և պարտաւորեցաւ աշխարհ. և էջ 'ի մարտ պատերազմի. և մարմնովն՝ որ 'ի կնոջէն՝ յաղթեաց աշխարհի, յաղթեալ պարտաւորեցաւ ախոյեանն ։ Մինչ դեռ եկեղեցի 'ի ծածուկ էր, խորհուրդքն քարոզէին զնա, իբրու ինքն լուռ կայր. այլ իբրև ինքն եկեղեցի յայտնեցաւ, դարձաւ սկսաւ թարգմանել զխորհուրդսն, զթարգմանիչսն իւր՝ որ վասն յայտնութե անդ նորա լռեցին ։

"Ի սկզբանէ, ասէ, էր բանն,, ։ Զի յայտ արասցէ՝ թէ իբրև զբան ընդ ծնողի իւրում՝ կցորդ է ընդ ծնչի իւրում յամ գործ որ 'ի նմա է և արտաքոյ քան զնա է ։ Եւ զի 'ի միտ առցես, զ.. մինչ չև իցէ բանին խօսեցեալ է նա. զի ահաւասիկ ..... րիա առանց շրթանց դպրութե խօսեցաւ ։ Եւ դարձեալ զի ծածկեալքն նովաւ յայտնեցան, որպէս զի բանիւ յայտնեալ լինին ծածկեալք սրտին. և վկայէ Պաւղոս առաքեալ յասել իւրում. "Զի խորհուրդ այ Քրիստոս է, որ նովաւ յայտնեցան ամենայն ծածկեալք իմաստութեց և գիտութեց,, ։ Այլ բան ոչ լինի խօսեցեալ առանց կերպարանաց զի բնութի բանի ծնեալ է. և յայսմիկ յայտ արար վասն ... ին իւրոյ՝

թէ ոչ է նա ինքն, այլ ծնունդ է. և ոչ է նա հայր այլ որդի է. զի ասէ. “Զա̅ծ ոք երբեք ոչ կարաց տեսանել, բայց միածինն՝ որ 'ի ծոց հօր՝ նա պատմեաց մեզ զնմանէ„ . . . . . . . . . . է 'ի հօրէ եկեալ եմ: Ապա եթէ ինչ որ է ասես, ոչ ծնեալ լինի, սուտ արարեր զգիրս. զի ասէ՝ էր իսկ. և դարձեալ ասէ, ծնաւ 'ի ծոցոյ հօր իւրոյ:

“Ի սկզբանէ էր բանն„: Այլ գուցէ բան դոյզն լսիցես, և խոնարհեցուցանիցես զնա առ ձայն, զի ձայն չէ 'ի սկզբանէ: Քանզի յառաջ քան զասելն չէր նա, և յետ ասելոյն դարձեալ չէ, արդ ոչ եթէ ձայն էր նա, այն՝ որ նա ինքն էր նմանութի̅ կերպարանաց հօրն իւրոյ. և ոչ եթէ նա ձայն հօր, այլ պատկեր նորա: Զի թէ որդիքն քո որ 'ի քէն ծնեալ լինին՝ քեզ նման է, իսկ զիա՞րդ արդեւք ա̅ծ ձայն ծնանէր, և ոչ ա̅ծ. զի եթէ որդին Եղիշաբէթի՝ որ կոչեցաւ ձայն՝ մարդ է, և ա̅ծ՝ որ կոչեցաւ բան՝ ա̅ծ է: Եւ եթէ ասիցես՝ եթէ բանն կոչեցաւ որդի, գիտասջիր՝ զի Յոհաննէս որ կոչեցաւն ձայն՝ է իսկ անձամբ. սոյնպէս և ա̅ծ որ կոչեցաւն բան, և բանն ա̅ծ է: Եւ եթէ կարծես՝ եթէ որդի է խորհուրդ հօր, և միանկամ արդեօք խորհի հայր. և եթէ բազում խորհուրդք են նորա, ո՞րպէս է նա միածին. և եթէ խորհուրդ է նա 'ի ներքոյ, զիա՞րդ է նա ընդ աջմէ:

“Ի սկզբանէ էր բանն„: Այլ բան ոչ եթէ այս՝ որ 'ի ներքոյ իսկզբանն եղեալ է. այն՝ որ 'ի վերոյն է քան զսկիզբն: Զի այս, քանզի թէ և ժամանակ զի չէր՝ ասող նորա գոյր. ժամանակ գոյ նորա, զի չէր և ինքն: Այլ բան է ճշմարիտ. ոչ եթէ երբեք իցէ և երբեք չիցէ. կամ երբեմն չէր, և երբեմն եղև. այլ միշտ համապազ 'ի սկզբանէ յաւիտենից էր իսկ նա: Քանզի և ասող նորա մշտնջենաւոր էր. քանզի նմին իսկ ասողին նման է և բան ասողին. և վասն այսորիկ ասաց՝ եթէ “Ի սկզբանէ էր բանն„. զի յայտ արասցէ՝ եթէ վերագոյն է յայտնութի̅ նորա քան զամենայն զսկիզբն և զսահմանս ժամանակաց:

Ասաց՝ թէ “Էր նա առ ա̅ծ„ և ոչ յա̅ծ. և այնու, զի ասէ՝ առ ա̅ծ, պատմեաց մեզ յայտնապէս թէ որ-

պէս էր նա, այն՝ որ էրն, նոյնպէս և ինքն Բանն առ ա՟ծ։ “Ի սկզբանէ էր Բանն„. երկուս իրս յայտ արար այսուիկ. վասն էութեան նորա, և վասն ծննդեան նորա։ Եւ զի մի թողցէ զԲանն առանց մեկնելոյ, ասէ. “Ինքն Բանն էր առ ա՟ծ„։ Եւ յայսմ վայրի երկուս քարոզեաց նա. վասն Բանին՝ թէ ոչ իբրև մարդ ոք է, զի ահա առ նմա իսկ էր. և վասն ինքնութեան նորա։ “Եւ ա՟ծ էր Բանն„. երիս յայտ արար, ա՟ծ և անձն և ծնունդ։ “Սա էր 'ի սկզբանէ առ ա՟ծ„. ըզգուշութեամբ խօսեցաւ զԲանն իւր, զի մի կարծեսցի քարոզութիւն նորա թէ 'ի վերայ միոյ անձին ասիցէ։ “Սա էր, ասէ, 'ի սկզբանէ առ ա՟ծ„։ Արդ ասաց նա նախ՝ վասն ծննդեան նորա. երկու՝ զի առ նա էր. երեք՝ զի ա՟ծ էր. չորք՝ զի երբեմն առ նա էր։

“Ամենայն ինչ նովաւ եղև„. զի նովաւ հաստատեցան գործք. իբրև զայն՝ զի ասէ Առաքեալ, եթէ “Ամենայն ինչ նովաւ եղև, զի նովաւ հաստատեցան գործք„։ Եթէ նովաւ արար, ասէ, զաշխարհս ամենայն, “Եւ առանց նորա եղև և ոչ ինչ„։ Նոյն իսկ է “Եւ որ ինչ եղև՝ նովաւ կեանք էին, և կեանքն էին լոյս մարդկան„. զի 'ի ձեռն ծանուցելոյ նորա. մաշեցաւ սպառեցաւ մոլորութիւն՝ որ յառաջագոյնն էր։ “Եւ ինքն լոյսն 'ի խաւարի անդ լուսաւորէր, և խաւար նմա ոչ յաղթեաց„. իբրև այն՝ զի ասէ. “Առ իւրսն եկն, և իւրքն զնա ոչ ընկալան„։

“Եւ ինքն, ասէ, լոյսն 'ի խաւարի անդ լուսաւորէր„։ Տես դու թէ որ խաւար էր ընդդէմ այնր լուսոյ մարդկան, և 'ի միտ առ թէ որպէս յառաջագոյն լուսաւոր էր 'ի նմա։ Այլ այն զի ասէ՝ թէ լուսաւոր, մի դոյզն լսիցես դու զնա. այլ յայնմանէ զի ասաց՝ թէ “Ի խաւարի անդ լուսաւորէր„, 'ի միտ առ թէ վասն ժամանակին՝ որ յառաջ քան զա՟ծեղէն ծագումն նորա էր՝ կոչեաց խաւար. և յայտ առնէ թէ լուսաւորէր 'ի նմա։ Զի վասն այսոր խաւարի յաւետարանէ անտի դարձեալ մարթեմք լսել յասել իւրում և յերկրորդել, զոր ինչ մարգարէին էր ասացեալ. “Երկիր, ասէ, Զաբուղոնին և Նեփթաղիմայ, ճանապարհ ծովու և անդր Յորդանանու գետոյ, Գալիլեա հեթանոսաց. ժողովուրդ որ նստէր 'ի խա-

ւարի, լոյս մեծ ետես,,: Եւ այս խաւար՝ որ անուա-
նէ առ այնոսիկ, քանզի ազգ էին բացագոյն՝ որ բնա-
կեալ նստէին զափն ծովուն, և հեռի էին 'ի խրատէ
վարդապետութե՟ օրինացն, վասն այսորիկ անուանէ
զնոսա՝ ժողովուրդ որ նստէր 'ի խաւարի: Զի զնոցա-
նէ աւետարանիչն ասաց այսպէս. իբրու ինքն ասաց
լոյսն՝ այս ինքն ուսումն գիտութե՟ նորա, խաւարն՝
այն որ յառաջագոյն էր, զի նա ինքն է մոլորութի՟,
ոչ յաղթեաց նմա: Սկիզբն արար քարոզել զսկսումն
առաջնորդութե՟ նորա՝ որ 'ի ձեռն մարմնոյն էր. և
սկսաւ ասել՝ եթէ "Խաւար ոչ յաղթեաց նմա,,:

"Եւ եղև յաւուրս Հերովդէի արքայի հրէաստա-
նի,,: Եւ իբրև կատարեցաւ պատմութիւն վասն բա-
նին՝ թէ որով կերպարանօք, և մինչև ցոր վայր, և
վասն էր խոնարհեցաւ, ասէ 'ի միւսում վայրի՝ եթէ
"Ինքն բանն մարմին եղև, և բնակեաց 'ի մեզ,,: Եւ
դարձեալ այսուհետև զոր միանգամ լսես դու յետ
կատարելոյ բանին այնորիկ, մի վասն Ճշմարիտ բանին
լսիցես զնա, այլ վասն բանին՝ որ զմարմինն զգեցաւ.
այս ինքն պատմութիւնք են խառնուածովք, ա՟ծեղէնք
են ամենեքեան և մարդկեղէնք. բայց յայսմանէ, որ
առաջինն և գլխաւորն ամենեցունց:

Եւ զի ասէ. "Յաւուրս Հերովդի արքայի հրէաստա-
նի քահանայ մի՝ և անուն Զաքարիա, և կին նորա
Եղիշաբէթ,,: Եւ այն՝ զի ասէ "Անարատք էին յամե-
նայն բնակութեան իւրեանց,,. զի մի ասիցեն՝ եթէ
վասն յանցանաց ոչ ծնան, այլ սքանչելեաց միայն:
"Եւ եղիցի, ասէ, ուրախութի՟ և ցնծութի՟ քեզ,,.
ոչ զի ծնար, այլ զի զորպիսի ոք ծնար: "Չիք, ասէ,
'ի ծնունդս կանանց մեծ քան զՅովհաննէս,,. և
"Գինի, ասէ, և օղի մի արբցէ,, իբրև զուխտաւոր
մանկունս աւետեաց. զի յայտ արասցէ եթէ անարի է
նա: "Եւ դու, ասէ, մանուկ՝ մարգարէ բարձրելոյն
կոչեսջիր. գնասցես առաջի տեառն պատրաստել ըզ-
Ճանապարհս նորա,,: Իբրև հոգի էր 'ի մանուկն, նա
և 'ի ծերունի անդ էր:

"Եւ գնասջիր դու առաջի երեսաց նորա,, փոխա-
նակ մարգարէից՝ որ քարոզիչք էին համբաւուն նո-
րա: "Տալ գիտութի՟ զկատարեալ փրկութեն,,. զի

գիտասցեն զխորհուրդս. անցաւորս 'ի ճշմարտութիւն անստի՝ որ ոչն անցանէ: "Շնորհ և ճշմարտութիւն 'ի ձեռն Յիսուսի եղեն »: Ընդ այժմ սեղանոյն աւետարանեցաւ Յովհաննէս քարոզիչ տեառն աջոյն . և 'ի ժամ սպասուն պաշտաման աւետարանեցաւ . զի յայտ արասցէ՝ թէ սահման է նա սպասու պաշտամանն առաջնոյ: Եւ 'ի ներքս 'ի սրբութիւն անդ պապանձեցաւ Զաքարիա . զի յայտ արասցէ՝ եթէ լռեն խորհուրդք սրբութեանն, զի եկն եհաս կատարիչ խորհրդոցն: Եւ զի ոչ հաւատաց նա՝ թէ արձակի ամլութիւն կնոջն իւրոյ, կապեցաւ բանիւն իւրով:.

Զաքարիա չոգաւ առ հրեշտակն, զի յայտ լիցի եթէ կրսեր է ծնունդ նորա քան զհրեշտակն: Իսկ առ Մարիամ ինքն հրեշտակն եկն . զի յայտ արասցէ՝ թէ ծնունդ նորա տէր է հրեշտակին: Եւ զի 'ի տաճարն եկն հրեշտակն, զի մի՛ գտցին պատճառք այնոցիկ՝ որք ստութեան կամին պատճառս գտանել: Ոչ եկն հրեշտակն առ Եղիշաբէթ, զի Զաքարիա էր ծնիչ Յովհաննու: Եւ ոչ առ Յովսէփ եկն Գաբրիէլ, զի Մարիամ միայն էր ծնիչ անդրանկանն: Ոչ եկն Գաբրիէլ առ Եղիշաբէթ, զի այր էր նորա . այլ եկն առ Մարիամ, զի լցցէ անուամբ իւրով զտեղի խորհրդոյ առն: "Լսելի եղեն, ասէ, աղօթք քո առաջի Աստուծոյ »: Եթէ գիտէր թէ լինելոց է, բարւոք խնդրէր . և եթէ ոչ հաւատայր թէ լինելոց է, չարաչար աղաչէր . մերձեցաւ 'ի լինել, երկմտեաց թէ ոչ լինի: Արդ բարւոք 'ի մերձենալն էր բանն խնդրուածոց իւրոց, և հեռացաւ 'ի նմանէ: Յառաջագոյն զայս աղաչէր, և երբ եղեն լսելի խնդրուածքն իւր, շրջեցաւ . ասէ "Զիա՞րդ լինիցի այս »:

Արդ փոխանակ զի բաժանեցաւ բանն, բաժանեցաւ բերանն յաղօթից անդի իւրոց . բաժանեցաւ 'ի նմանէ բանն իւր և պաշտեաց զկամս իւր: Այս է, զի մինչ հեռին էր՝ խնդրէր, և երբ մերձեցաւ թէ աւետարանեսցի, ոչ հաւատաց: Եւ վասն այնորիկ մինչ հաւատայր, և խօսէր . և երբ ոչ հաւատացն, պապանձեցաւ . հաւատաց, և խօսեցաւ: "Հաւատացի, ասէ . վասն այնորիկ և խօսեցայ »: Արդ քանզի անարգեաց նա զբանն, չարչարեաց զնա բանն .

զի պատուեսցէ պապանձելովն իւրով զբանն զոր անարգեաց․ զի բերան նորա ասաց՝ թէ “Զիա՞րդ լինիցի այս„․ պարտ էր նմա պապանձել, զի ուսցի թէ մարթ էր այսմ լինել։ Եւ լեզուն արձակեալ կապեցաւ, զի ուսցի թէ մարթ էր կապեալ արգանդին արձակել․ գիտաց նա՝ թէ այն որ կապեաց զլեզուն, կարող է արձակել և զարգանդն։

Ուսուսցեն զնա փորձանքն, զայն՝ որ ոչն կամեցաւ թէ ուսուսցեն հաւատքն․ զի կամեցաւ նա խօսել, և փորձեաց թէ ոչ կարէ․ և ապա ուսաւ՝ թէ որ փակեաց զբացեալ բերանն, կարող է բանալ զարգանդն փակեալ։ Զի պապանձեցաւ նա, յայնմ ստուգութիւն գիտաց՝ թէ որչափ անիրաւս խօսեցաւ։ Ընդէ՞ր հրամայեն օրէնքն ակն ընդ ական․ այլ զի ուսցի չարն ապականութիւն ականն իւրոյ՝ թէ զորպիսի գեղեցիկ հաստատութիւն ապականեաց․ սոյնպէս և Զաքարիա յանցեաւ բանիւ, և խրատեցաւ բանիւ, զի ճաշակեսցէ զդարձն փոխարինին իւրոյ։ Եղև նա առանց բանի, զի կարծեաց թէ ոչ լինի բանն՝ որ ասացաւ նմա, այնու՝ զի խափանեցաւ նա 'ի բանէ անդի պիտոյից։ Ուսաւ թէ չարաչար խափանեցաւ բանն աւետեաց․ բանն նորա․ անարգեաց զբան հրեշտակին, այլ և բանն նորա ընկալաւ զպատիժս 'ի հրեշտակէ անդի։ Զի թէպէտ և ամենայն անդամք չարչարին ընդ միոյ անդամոյն, այլ առ այժմ պարտ էր իսկ այնմ անդամոյ՝ որ յանցեաւն՝ չարչարել․ թէպէտ և 'ի չարչարանաց անդի նորա հասանէին յանդամս ամենայն, սակայն զճշգրիտ չարչարանսն ինքն 'ի գլխին ճաշակէր․ այս են յանցանք, այն զի ստիպէ զկնի նորա հատուցումն նորին, զի մի՛ ևս այլ եղիցի իբրև զնա։

Աւետարանեցաւ Զաքարիա 'ի հրեշտակէ անտի, պարտ էր նմա ելանել լինել նմա քարոզիչ։ Արդ փոխանակ զի ոչ հաւատաց նա լինել նմա քարոզիչ խօսիւքն իւրովք, խրատեցաւ զի եղիցի նա նոցա քարոզիչ պապանձելովն իւրով․ այնու՝ զի 'ի տաճարն սրբութեան երևեցաւ նմա տեսիլն, գիտացին ժողովուրդն թէ արժանի էր նա այսուիկ․ այլ այնու՝ զի տեսին զնա զի կապեալ էր պապանձելովն, գիտացին թէ պահա֊

պան պիտոյ էր շրթանց նորա ։ Տանջեցաւ լեզու, զի խրատեսցին միտք. զի եղիցի միտք պինդ ունել զերասանակս շրթանց ։ Փոխանակ զի ոչ եդ պահապան բերանոյ իւրոյ, ծեփեցաւ դուռն բերանոյ նորա պապանձելովն ։ Այնուիկ՝ զի 'ի սուրբ սրբոցն խօսեցաւ ընդ նմա, գիտասցին ժողովուրդքն թէ աւետիս բարեաց տուան նմա անդ. այլ այնու՝ զի ոչ կարէր խօսել, գիտասցին եթէ չարաչար ուրեմն ետ զպատասխանին ։ Եւ այնուիկ՝ զի 'ի ժամ աղօթից՝ յորում խնդրուածք խնդրեալ լինէին՝ երևեցաւ նմա տեսիլն, գիտասցին թէ պարգևք իմն առաքեցաւ նմա. այլ այնու՝ զի ոչ գտին 'ի բերան նորա ունել շնորհս, գիտասցին թէ ոչ ընկալաւ զպարգևս ։ Թէպէտ և ինքն Զաքարիա 'ի բանից անդի հրեշտակին երկմտեաց, սակայն վասն պապանձելոյն ոչ ոք երկմտեաց ։ Այն՝ որ աւետեացն 'ի ձեռն հրեշտակին ոչ հաւատաց, պապանձելովն նորա ամենայն մարդ աւետեացն հաւատայր. զի 'ի պապանձելն իւր Զաքարիա՝ մարգարէ և դատաւոր եղև այլոցն, զի իբրև 'ի մարգարէէ ուսցին զաւետիսն, և իբրև 'ի դատաւորէ երկիցեն անարգել զաւետիսն ։ Նմին իսկ Զաքարիայի մարգարէ և դատաւոր եղև հրեշտակն. իբրև զմարգարէ պատմեաց նմա զծածկեալսն, և իբրև զդատաւոր եդ 'ի վերայ նորա զպատիժս պատուհասից ։

Աւետիք բարեաց առաքեցաւ յայնմ ժամու մարդկութեն ։ Այլ քանզի առաջինն՝ որ լուաւ՝ երկմտեաց, եդ 'ի նմա նշան՝ զի մի՛ նմանիցեն նմա և այլք ևս ։ Արդ աւետիքն նոյն՝ որ յաղաղակել հրեշտակին 'ի ձայն բարձր ոչ եղև հաւատարիմ, արար զի յորժամ ակնարկելովն իւրով ցուցանիցէ Զաքարիա՝ հաւատարիմ լինիցի ։ Եւ իբրև ետես Զաքարիա թէ ակնարկելովն նորա ամենայն ոք հաւատայ, ուսաւ նա՝ թէ չարաչար երկմտեաց 'ի ձայնէ անտի հրեշտակին. վասն այսորիկ բարիոք լռոյց նմա զպապանձելն ։ Փոխանակ զի ոչ հաւատաց նա հրեշտակին, այն որ եղև նմա բերան այ̅, պապանձեցոյց զնա՝ զի տախտակն եղիցի ընդ նորա խօսելի ։

Իբրև լուաւ նա զաւետիսն Յովհաննու 'ի հրեշտակէ անտի և ոչ հաւատաց, պապանձեցաւ. իբրև ե-

տես Նա զՅովհաննէս զի եւ Նա յարգանդէ անտի, խօսեցաւ. բանն՝ որ եւ 'ի հրեշտակէ անտի՝ անց առ բերանովն և փակեաց զնա, և եհաս առ արգանդն և եբաց զնա: Եւ ինքն միւսանգամ դարձեալ փակեաց զարգանդն զոր եբաց, զի այլ մի ևս ծնցի. և դարձաւ միւսանգամ եբաց զբերանն զոր փակեաց, զի այլ մի ևս փակեսցի: Արժան իսկ էր փակել բերանոյն այնմիկ, որ ոչ հաւատաց ընդ բանալ ամուլ արգանդին. և արժան էր փակել արգանդին՝ որ ծնաւ զՈվաննէս, զի այլ մի ևս ծնցի. որպէս զի եղիցի միածին՝ քարոզ միածնին. զի Թէպէտ և Զաքարիա միայն երկմտեաց, սակայն երկմտութե̃ իւրով զերկմտութիւն ամենայն մարդոյ բառնայր:

Արդ յանհաւատութե̃ իւրում ամենայն մարդոյ հաւատս ուսուցանէր: Իբրև 'ի բերանոյն կենդանի հրեշտակին Յովհաննէս աւետեօք ծնաւ, հայրն նորա հոգևոր ծննդեան նորա ոչ հաւատաց. այլ իբրև 'ի մեռեալ արգանդէ անդի ծնաւ, ապա մարմնաւոր ծննդեան հաւատաց նա: Արդ քանզի ոչ հաւատաց նա կենդանի բերանոյն, եղև բերան նորա մեռեալ բանիւն: Եւ զի հաւատաց նա ամուլ արգանդին առաւել քան հրեշտակին, եղեն շրթունք նորա ամլացեալ 'ի բանից: Տեսանէին զի պապանձեալ էր նա, վասն այնորիկ փութային հաւատալ բարւոք; զի տեսանէին զայն՝ որ երկմտեաց չարաչար. շրթունք նորա վասն վաղվաղուկ լինելոյ գայթագղեցին. բանիւն իւրեանց մատնեցան 'ի պապանձումն, զի ուսցին զծանրութե̃, զի այլ մի ևս դարձեալ գայթագղեսցին 'ի վաղվաղելն իւրեանց: Եւ փոխանակ զի երկմտեաց Զաքարիա 'ի տեառնէ իւրմէ, և յաղօթից իւրոց հարկ նմա եղև պապանձեալ. զի յայս և յաղօթից այլ մի ևս երկմտեսցէ:

Ո՞րչէ բաւական հասու լինել կատարածի գիտից միոյ պատգամի քո, զի բազում է զոր թողումքն՝ քան զայն զոր առնումքն, որպէս ծարաւիք յաղբերէ. զի բազում երեսք են բանի նորա, ըստ բազմութեան երեսաց այնոցիկ՝ որ ուսանին զնա: Նկարեաց զբանն իւր բազում գեղովքն, զի իւրաքանչիւր ոք յուսանելեաց անդի յոր և սիրէ՝ հայեսցի. և թա-

ղեաց 'ի բանի անդ խուրում պէսպէս գանձս, զի իւ-րաքանչիւր ոք 'ի մէնջ ուստի և կրթեսցի՝ նովաւ մեծասցի 'ի նմանէ ։ Պատգամ իւր ծառ կենաց նա , զի յամենայն կողմանց պտուղ օրհնեալ կարկառու քեզ ․ որպէս վէմն որ յանապատի անդ բացաւ ․ զի ամենայն մարդոյ յամենայն կողմանց ըմպելի հոգևոր էր նա ։ "Կերակուր , ասէ , զհոգևոր կերան , և ըմպելի զհոգևոր արբին ,, ։

Արդ որում դիպեսցի մի 'ի մեծութեանց անդի նորա , մի կարծեսցէ՝ թէ այն ևեթ զոր ինքն եգիտ՝ գոյ 'ի նմա , այլ ինքն զայն ևեթ 'ի բազմաց անտի որ գոյ 'ի նմա՝ բաւական եղև գտանել ․ և մի զի եկն դիպեցաւ նմա՝ աղքատացուցանէ զնա ․ այլ զի ոչ լինի նա նմա բաւական , գոհասցի վասն մեծութեցն նորա ։ Ուրախ լեր՝ զի յագեցար , զի յաւելաւ 'ի քէն՝ մի տրտմիր ․ ուրախ լինի ծարաւի յորժամ ըմպէ , այլ զի ոչ լինի բաւական սպառել զաղբիւրն՝ ոչ տրտմի ։ Յաղթեսցէ աղբիւր ծարաւոյն քում , և մի յաղթեսցէ ծարաւն աղբերն ․ զի եթէ սպառի ծարաւն քո՝ իբրու աղբիւրն ոչ պակասէ երբէք՝ և ծարաւեսցիս , դարձեալ միւսանգամ արբցես ․ ապ՝ եթէ ընդ յագեալ քում և աղբիւրն ցամաքեսցի , չարեացն քոց եղև յաղթութին քո ։ Գոհացիր դու վասն որոյ առերն , և վասն որոյ մնաց և յաւելաւ՝ մի տրտնջեր ․ այն զոր առերն և գնացեր՝ մասն քո է , և այս որ մնաց՝ դարձեալ ժառանգութի քո է ։ Եւ զայն ինչ զոր ոչ կարեսդ դու առնուլ զնա 'ի միում ժամու վս̄ տկարութե քո , առ դու զնա ընդ ժամանակս ժամանակս[1] հանապազորդ լինելովդ քո ։ Եւ մի վս̄ վատութե քո ձեռն յանձին հարկանիցես ․ կամ թէ առցես միանգամայն զայն ինչ՝ որ միանգամայն առնուլ զնա չէր հնար ․ կամ թէ լքեալ մնայցես դու յայնմանէ , որ առ սակաւ սակաւ առնուլ կարէիր զնա ։

Գրեցին մատունք 'ի տախտակի անդ՝ Յովհաննէս , անուն՝ որ ակնարկէ վասն կարօտութե մերոյ գթութի ․ խնդրեցին մատունք գթութի շնորհօք փոխանակ չրթանցն փակելոյ ստուգութե ․ "Լսելի եղեն ,

1 Յօրինակին 'ի լուսանցան ընդ ժամս ժամս ։

ասէ , աղօթք քո առաջի ա՟յ ,, ։ Արդ եթէ ա՟ծութին զայս ետ , և աղօթք զոյն խնդրեցին , բարւոք ուրեմն զրկեցաւ նա 'ի խօսից անտի , փոխանակ զի զրկեցաւ 'ի նմանէ հանճար իմաստութեան ։ Զի եթէ զա՟ծ բարեխօս աղօթիւք իւրովք խնդրէր , և աղօթից վկայ լինէր՝ եթէ կարող են աղօթք խնդրել և կարող է ա՟ծ տալ , այլ իբրև մերձեցաւ լինել այն զոր խընդրէրն թէ լիցի , ասէ , "Զիա՞րդ մարթ է այսմ լինել ,, ։ Արդ եղև այն անդ՝ զոր ոչ կամէր թէ լիցի ։ Փոխանակ այնր զի անարգեաց նա զայն՝ զոր կամէրն թէ լիցի , դիպեցաւ նմա այլ միւս ևս զոր ոչ էր ուսեալ , փոխանակ զի գտաւ նա տգէտ յայնմիկ՝ յորում բազում ժամանակս ուսանէր ։ Եւ փոխանակ զի ոչ լուան ականջք նորա զայն ինչ զոր շրթունք նորա աղաչէին , ցամաքեցաւ բերան նորա՝ տղեխուրն , որ էր դուռն բանից , զի զըմպելին իւր ականջացն ոչ ևս առաքեսցէ ։

Իսկ այն՝ որ պտուղ լսելեօք իւրովք ոչ աճեցոյց , զիա՞րդ մարթէր նա այլոց լսելեօք պտուղ աճեցուցանել ։ Զի Զաքարիա զարս՝ որ անսերմն էին՝ Աբրահամու հարքն իւրեանց քաջալերէր զնոսա . և զկանայս՝ որ 'ի ծննդենէ ամուլք էին՝ Սառայիւ մարքն իւրեանց մխիթարէր զնոսա . որպէս և զինքն և ըզկինն իւր ըստ նմանութեան նոցունց դնէր ։ Զի Աբրահամ և Սառա հայրութի՟ էր հասարակաց , և իբրև զհայելի հասարակաց 'ի մէջ ամենեցուն նոցա եդեալ էր . և ընդ նա հայէին աչք արանց և կանանց որ անսերմն ամուլք էին , զի մխիթարեսցին նոքա որպէս և Սահակաւն , զի յետ իննսուն և ինն ամի նկարեցաւ 'ի մէջ նորա ։ Հայր էր նա նմա վասն հաւատոց , այլ երկմտեաց 'ի նմանէ վասն ծերութեան ։ Արդ փոխանակ զի երկմտեաց նա յայնմանէ՝ որ կարողն է փոփոխել զբնութիւնս , կամեցաւ խօսել նա և ոչ կարաց . զի ուսցի նա զայն՝ որ կարողն է զօրութե՟ ամենայնի ։ Քանզի այն՝ որ ոչ հաւատայ , նշան պիտոյ է նմա , զի նովաւ հաւատասցէ . ետ նմա նշան 'ի բերանն նորա վասն երկմտութեան սրտի նորա . զի գիտասցէ թէ այն՝ որ կարողն եղև պապանձեցուցանել զխօսուն բնութիւն , և զարգանդն մեռեալ կարող էր

նորոգել։ Արդ այնուիկ զի ոչ կարէին շրթունքն նորա ծնանել բան, հաւատաց նա եթէ մարթ էր ծերութեանն նորա աճեցուցանել զծնունդն։

"Լսելի, ասէ, եղեն աղօթք քո առաջի այ"։ Աղօթք խնդրեցին, ամլութին ետ, ազատութիւնն անարգեաց։ Արդ յայտ եղեւ յայնմ վայրի՝ թէ աղօթք զամենայն խնդրուածս կարող են խնդրել, և ամլութին զամենայն պարգեւս կարող է տալ, և ազատութին զամենայն ինչ կարող է զոմն առնուլ և զոմն անարգել. այլ ոչ է արժան դնել արատս ՚ի վերայ այնոցիկ՝ որ առանց արատոյ իցեն յամենայն բնութէ իւրեանց։ Այլ քանզի երկեաւ նա ՚ի բարի շքոյ անդի փառաց հրեշտակին, խռովեցաւ նա լեզուով իւրով միայն, այլ ոչ սրտիւ իւրով. իբրեւ զայն՝ զի ասէ. "Դառնացուցին զհոգի նորա, և խօսեցաւ շրթամբք իւրովք". վասն այսորիկ նովին բերանով նորա դատեցաւ զնա հրեշտակն։ Զի թէ սրտիւն իւրով էր երկմտեալ նա, սրտիւն իւրով տանջէր զնա։ Այլ իբրեւ կատարեցաւ այս, և քահանայն քաւեցաւ ՚ի մոլորութէ անտի։

Եւ զի ասէ, "Դարձուցանել զսիրտս հարց յորդիս". քանզի փոխեցան նոքա ՚ի հրէութենէ անտի ՚ի հեթանոսութի անդր, և երկմտեցին յուխտն այ իւրեանց՝ ասաց բա "Դարձուսցէ զսիրտս նոցա". զի տեառն ամենայնի ծառայեսցեն [1] ճշմարտութեամբ, որպէս և հարքն իւրեանց։ Եւ զի ասէ, "Պատրաստեալ է տեառն ժողովուրդ կատարեալ", ըստ նմանութէ Եղիայի. զի նախանձու իւրով դարձոյց զբազումս յածպաշտութի անդր տեառն իւրոյ։ Եւ եթէ ասիցեն՝ եթէ լինելոց է այս առ յապա, ահաւասիկ չեն երկմտեալ բաժանեալ հարք յորդւոց և որդիք ՚ի հարց. նա և զկուռսն դարձեալ ոչ պաշտեն։

Եւ զի ասէ, "Թագուցանէր զանձն իւր Եղիշաբեթ". վասն տրտմութեանն Զաքարիայ։ Եւ դարձեալ, թագուցանէր զանձն իւր՝ զի պատկառէր նա, զի ծերաւուրցն դարձաւ յամուսնութի։ Դարձեալ ասէ, թէ ոչ վասն ծերութէ թաքուցանէր զանձն

1 Յօրինակին ծառայեսցէ։

իւր և Եղիշաբեթ․ զի ահա և ոչ վասն Սառայի գրէ ուրեք թէ թաքոյց զանձն իւր, որպէս զի խնամամենիւք էր մինչ դեռ Սահակն յղի կրէր․ և ոչ վասն Ռեբեկայի, զի զերկուորեակսն կրէր։ Այլ Եղիշաբեթ զի հինգ ամիս թաքոյց զանձն իւր, մինչև կատարեսցի մանուկն նորա անդամովք իւրովք՝ խաղալ ցնծալով ընդդէմ տեառն իւրոյ․ և վասն զի հանդերձեալ էր Մարիամ ևս աւետարանիլ։

Եւ զի ասէ "Յամենայնն վեցերորդի", զյղութիւն Եղիշաբեթի թուէ։ Եւ զի ասէ "Տացէ նմա տէր Աստուած զաթոռն Դաւթի"․ այն իսկ է՝ զի ասէ․ "Մի՛ պակասեսցէ պետ և իշխան մինչև եկեսցէ"։ Եւ իբրև ուսոյց նմա հրեշտակն թէ դիւրին է Աստուծոյ զամենայն առնել, յայնմիկ՝ զի ասէ "Եւ Եղիշաբեթ քոյր քո յղի է ՚ի ծերութեան իւրում", ասէ Մարիամ․ թէ նմա այսպէս իցէ, "Ահաւասիկ կամ աղախին տեառն․ եղիցի ինձ ըստ բանի քում"։ Զի թէպէտ և յայնմանէ զի ասաց հրեշտակն ցՄարիամ, բա "Եղիշաբեթ քոյր քո"․ կարծի թէ Մարիամ ՚ի տանէ Ղևեայ է։ Այլ մինչև յօրինակ միայն ևեթ առթացն, մարգարէութիւնն հաստատեալ լինի։ Կաց մնաց ազգն Դաւթայ մինչև ՚ի Յուսէփ, որ խօսեցաւ զնա իւր, և եղև ծնունդն նորա ըստ օրինակի առն։ Վասն ազգին Դաւթայ արդ եղեն այս փառք, զի ՚ի Քրիստոս կատարեցաւ զաւակն նորա և ազգ նորա։ Եւ զի լռեցին գիրք, քանզի զազգս առն թուէ և համարի․ և եթէ էր սովորութիւն յայտ առնել և ցուցանել զազգատոհմ ՚ի մարց անդի, յիրաւի ոք խնդրէր զազգատոհմն Մարիամու։ Եւ զի հանդերձեալ էր նա հանդերձ արքայութեամբ և զքահանայութիւնն լռեցուցանել, ուստի նա զազգսն երկոսին ՚ի միասին, զՅուդայն Յովսեփաւ, և զՂևեայն Մարիամաւ։ Այլ մարգարէութիւն Դաւթայ իբրև յերեսաց հօր ասացաւ․ "Դու ես, ասէ, քահանայ յաւիտեան ըստ կարգս Մելքիսեդեկի"։ Զի եթէ վասն այնորիկ զի ասաց՝ բա "Եղիսաբեթ քոյր քո", զի յայտ արասցէ՝ թէ և Մարիամ ՚ի տանէ անտի Ղևեայ է, և ահա աւասիկ և ասաց նմա վասն Յուսէփու և Մարիամու, թէ երկոքին ՚ի տանէ Դաւթի էին․ այլ ոչ ա-

սաց Մարիամայ՝ թէ դու ես քոյր Եղիսաբեթի, այլ Եղիսաբեթ, ասէ, քոյր քո ։

Արդ եթէ Մարիամ յայլմէ ազգէ է, սուտ եղեւ այն՝ զի ասէ՝ 'ի տանէ Դաւթի․ զի ասէ հրեշտակն․ «Տացէ նմա տէր ա̃ծ զաթոռն Դաւթի հօրն իւրոյ»։ Մարիամայ որդի է նա, և ոչ Յովսէփայ ։ Արդ ոչ եթէ այլուստ ուստեք երևեցաւ նմա մարմնով, այլ 'ի Դաւթայ․ զի ասէ այսպէս․ «Բղխեսցէ գաւազան յարմատեաց անտի Յեսսեայ, բղխեսցէ և ծաղկեսցէ ծաղիկ յարմատեաց անդի նո̃ր»։ Նա և Առաքեալ դարձեալ վկայէ յասել իւրում․ տէր մեր Յիսուս Քրիստոս, ասէ, 'ի Մարիամայ եղև 'ի զաւակէ տան Դաւթի՝ այլովքն հանդերձ ։ Եւ դարձեալ գրէ առ Տիմոթէոս․ «Յիշեա դու, ասէ, զՅիսուս Քրիստոս՝ որ 'ի մեռելոցն յարուցեալ է, այն՝ որ եղև 'ի զաւակէ տան Դաւթի», այլովքն հանդերձ ։ Այլ դարձեալ գտանեմք մեք, զի խառնեալ էին ազգն Յուդայ և Ղևեայ ընդ միմեանս 'ի ձեռն Ահարոնի, զի առ նա զքոյրն Նաասոնի, որ նահապետն էր տանն Յուդայ․ և 'ի ձեռն Յովիդեայ քահանայի, զի առ նա իւր կին զդուստր Յովրամայ արքայի տան Դաւթի․ Թէպէտ և 'ի բան հրեշտակին վասն մերձաւոր հարազատութեան Մարիամու և Եղիսաբեթի ասաց, զի ահաւանիկ առեալ էին և ազգն 'ի միմեանց ։

Արդ յարեաւ գնաց Մարիամ առ Եղիսաբեթ․ զի ուսցի նա՝ թէ արդարեւ եղիցի նմա այս, և վասն անձին իւրոյ մի՛ երկմտեսցէ ։ Եւ դարձեալ զի յարեաւ գնաց Մարիամ առ Եղիսաբեթ՝ որ փոքրն է քան զնա․ որպէս և տէր մեր առ Յովհաննէս ։ «Ուստի՞, ասէ, ինձ այս, զի եկեսցէ մայր տեառն իմոյ առ իս»։ Ետես Մարիամ զի և այլք պարծէին պարգևօք նորա․ խոստովան եղև նմա և ասէ․ «Յայսմ հետէ երանիցեն ամենայն ազգք»։ Արդ քանզի դեռ յերանս Զաքարիայ էր Յովհաննէս, որպէս և Ղևի յերանս Աբրահամու, և նմին իսկ տեառն մերոյ սպասէր և ակն ունէր ծաղիկն արեգ ամսեան՝ որ լռութեամբն քարոզեաց 'ի վերայ ողկուզին՝ որ մզեցաւ 'ի մէջ Երուսաղեմի․ և զոր օրինակ կանխագոյն է ծաղիկն հինգ ամսովք՝ քան սկիզբն լինել արեանն որթոյ, սոյնպէս

կանխեաց յղացաւ Յովհաննէս, զի եղիցի նա քարոզիչ յղութեան երկրպագելոյն երկիր պագելոց։ "Երանի իցէ, ասէ, որ հաւատայցէ՝ եթէ եղիցի կատարումն ամենայն բանից՝ որ եղեն ընդ նմա, 'ի տեառնէ"։

Եւ իբրեւ յայտնեաց նմա զայն ինչ՝ որ 'ի ծածուկ խօսեցաւ ընդ նմա, եւ երանեաց նմա՝ թէ հաւատայցէ՝ եւ եղիցի կատարումն այնմիկ զոր լուաւ նա մարգարէութե̃ աշակերտութե̃ հանդերձ, յայնմ ժամանակի Մարիամ պտուղ զայնորիկ զոր լուաւ 'ի հրեշտակէ անտի եւ յԵղիշաբեթէ՝ քաղցրութե̃ դարձուցանէր. "Օրհնեա անձն իմ զտէր", այլովքն հանդերձ։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ "Երանի իցէ, որ հաւատայցէ". "Յայսմ հետէ երանիցեն ինձ ամենայն ազգք"։ Արդ յայսմ վայրի սկսաւ Մարիամ 'ի քարոզութիւն անդր արքայութեան նորոգ։ Եւ զի յետ երից ամսոց դարձաւ նա 'ի տուն իւր, եւ մի կացցէ 'ի սպասու տէրն առաջի ծառայիւն իւրոյ. եւ զի առ այրն իւր եկն, զի յայտ լիցի՝ զի եթէ մարդկեղէն յղութիւն բարձեալ կրէր նա, փախչել արժան էր յառնէ անտի իւրմէ։

Յղացաւ Եղիսաբեթ 'ի սահմի ամսեան, 'ի ժամանակի իբրեւ կատարեաց Զաքարիա զաւուրս սպասուն պաշտաման իւրոյ։ Աւետարանեցաւ Մարիամու, որ օր տասն էր արեգ ամսեան. որպէս եւ Զաքարիայ, որ օր տասն էր հոռի ամսեան։ "Այս, ասէ, վեցերորդ ամիս է նորա"։ Այլ օրէնքն հրամայեն՝ եթէ որ օր տասն էր արեգ ամսեանն, արգելցեն զգառնն. ըստ նմին թուոյ արգելլաւ գառնն Ճշմարտութե̃ յորովայն կուսին 'ի ժամանակին՝ յորում լոյսն թագաւորէ. եւ այսու յայտ արար՝ եթէ զմերկութի̃ն Ադամայ եկն նա ծածկել։ Եւ ծնաւ նա՝ որ օր վեց էր քաղոց ամսոյ, ըստ յունարէն թուոյ, 'ի ժամանակի՝ յորժամ սկիզբն առնէ յաղթել լուսաւորն. զի յայտ արասցէ՝ եթէ պարտաւորեցաւ սատանայ, եւ յաղթեաց Ադամ յաղթեցուցչաւն ամենայնի։

Եւ զի խաղաց ցնծալով Յովհաննէս, վասն քարոզութեանն նորա յայտ արար. ցնծաց մանուկ ամլորդին ընդդէմ մանկանն կուսորդոյ։ Խնդրեաց լեզու

մօր նորա, և ասել 'ի վերայ նորա մարգարէութիւն. և վասն այնորիկ ծածկեցաւ յղութիւնն Եղիշաբեթի 'ի Մարիամայ զվեց ամիս, մինչև կատարեսցի մանուկն անդամովք իւրովք, ցնծալ ընդդէմ տեառն իւրոյ կայտառելովն իւրով, և զի վկայեսցէ Մարիամայ ցնծալովն իւրով: Այլ դարձեալ զի ցնծաց նա յորովայնի մօր իւրոյ, այս չէր նորա, և ոչ իբրև լինէր նա հինգեմեան. այլ զի յայտ արասցեն պարգևքն զանձն իւր 'ի մէջ ամուլ որովայնին ընդունչին նորա. և զի գիտասցէ զմեծ պարգևսն նորա միւս ևս որովայնն կուսին. և հաւատասցեն երկիրքն սերմանեացն զոր ընկալան 'ի ձեռն ձայնի բարբառոյ Գաբրիէլի՝ որ միջակն էր երկուցն: Արդ զի ոչ կարաց Յովհաննէս աղաղակել ցնծալովն իւրով, և վկայել վասն տեառն իւրոյ, և սկսաւ ասել. "Օրհնեալ ես դու 'ի կանայս, և օրհնեալ է պտուղ որովայնի քում": Եւ զի 'ի մեռեալ արգանդէ անտի պատրաստեաց տէր մեր զքարոզն իւր, զի յայտ արասցէ՝ եթէ զկնի Ադամայ մեռելոյ եկն նա: Կենդանացոյց նախ զարգանդն Եղիշաբեթի, և ապա կենդանացոյց զհողն Ադամայ մարմնովն իւրով:

Եղիշաբեթ պառաւ ծնաւ զվերջինն մարգարէից, և Մարիամ աղջիկ զտէր հրեշտակաց: Դուստրն Ահարոնեան ծնաւ զձայն բարբառոյ յանապատի, և դուստրն Դաւթայ արքայի զբանն երկնաւոր արքային: Կին քահանայի ծնաւ զհրեշտակն երեսաց նորա, և դուստր Դաւթայ զա̃ծ հզօր աշխարհաց: Ամուլն ծնաւ զթողիչն մեղաց, և կոյսն ծնաւ զբարձիչն մեղաց: Եղիշաբեթ ծնաւ զքաւիչն մարդկան յապաշխարութիւն, և Մարիամ ծնաւ զսրբիչն աշխարհաց 'ի պղծութենէ: Երէցաւուրցն լոյց ճրագ 'ի տան Յակոբայ հօր իւրոյ, զի նա ինքն է Յովհաննէս. և տղայաւուրց զարեգակն արդարութե̃ ամենայն հեթանոսաց: Զաքարիայի աւետարանեաց հրեշտակն, որպէս զի քարոզեսցէ սպանեալն 'ի վերայ խաչեցելոյն, և ատեցեալն 'ի վերայ նախանձելոյն: Եւ որ մկրտէրն ջուրբքն 'ի վերայ այնորիկ՝ որ մկրտէրն 'ի հուր և 'ի Հոգւին սուրբ: Ճրագն անաղօտ 'ի վերայ արեգականն արդարութե̃. լի Հոգւովն 'ի վերայ

այնորիկ՝ որ տուիչն էր Հոգւոյն ։ Փող քահանայն փողով 'ի վերայ այնորիկ՝ որ գալոցն է յաւուրն յետնումն ։ Ձայն 'ի վերայ բանին, և այն՝ որ ետես զաղաւնին 'ի վերայ այնորիկ՝ յորոյ վերայ աղաւնին հանգեաւ. որպէս փայլակն առաջի որոտման ։

Եւ զի ասէ, "Որով երևեցի մեզ արեգակն 'ի բարձանց լուսաւոր անձել զխաւար մեր ". վասն աստեղն մոգուցն ։ Եւ զի ասէ, "Որ նստէին 'ի խաւարի և յստուերս մահու ". վասն նոցուն ասաց, զի ապրստամբ էին յառաջ քան զծագելն նորա. կամ վասն իսրայէլացոցն ասաց, զի 'ի խաւարի էին. քանզի մոգքըն լուսաւորեցին զնոսա. վասն այնր զի ասէ "Ուղղել զոտս մեր 'ի ճանապարհս խաղաղութեան "։ Եւ զի յստուերսն նստէին, վասն արուեստագիտութեանն քաղդէացոց ասաց. կամ ստուերքն կռապաշտութեան հեթանոսաց ։

## ԳԼՈՒԽ Բ

"ԾՆՈՒՆԴՔ, ասէ, Յիսուսի Քրիստոսի այսպէս եղեն. իբրև խօսեալ էր զմայր նորա Մարիամ Յովսէփու, և մինչ չև տուեալ էր առն՝ գտաւ յղացեալ 'ի Հոգւոյն սրբոյ "։ Այլ ոչ եթէ դոյզնաբար ինչ ասաց զայս աւետարանիչն. քանզի հեթանոսք պատմութիւնք իւրեանց առակեն, եթէ աստուածքն իւրեանց խոնարհեալ հնազանդեցան ատել 'ի խտղտման ցանկութեանցն, և ծնունդս որդւոցն՝ որ ոչ 'ի բնութեան ։ Վասն այսորիկ թէ գուցէ և դու յորժամ լուիցես վասն Մարիամայ՝ մի իբրև զայն զհեթանոսացն կարծիցես, յաւել և զայս յասելն՝ թէ 'ի Հոգւոյն գտաւ յղացեալ, և ոչ եթէ յամուսնութենէ ծնաւ. զի սուրբ յղութիւն նորա եղև մուտ հեզութեան, զի բնակեսցէ յամենայն մարմին ։ Եւ զի խօսեցեալն եղև նա, և առ զանուն առն, և ապա ընկալաւ զյղութիւն, վասն կարգին թագաւորաց. զի չէր ինչ մարթ գրել զանունն յանուն մօր իւրոյ ։ Ընդ թագաւորս որդի Դաւթի գրեցաւ ։ Կամ վասն մըտաց մարդոց չարաց, որք զրպարտէինն յանուն չնու-

թէ , վասն այսորիկ տուաւ նա 'ի ձեռն առն հեզոյ . զի յորժամ հայեսցի 'ի նա զի յղի իցէ , և ունիցի զնա , և ծնցի , և ոչ հանիցէ զնա 'ի տանէ իւրմէ . այլ բնակեսցէ ընդ նմա , իբրու կցորդիցէ զանձն իւր բամբասանաց նորա : Վկայ առ ամենեսեան լինէր նա նորա՝ թէ ոչ 'ի շնութենէ է այն՝ որ ծնաւ , այլ 'ի զօրութենէ Հոգւոյն է յղացեալ :

Մարդ ծնաւ նա առանց առն : Որպէս եղև ծնեալ 'ի սկզբանէ Եւայ յԱդամայ առանց ամուսնութեան , նոյնպէս Յովսէփ և Մարիամ կոյսն իւր և կին : Եւայ ծնաւ սպանօղ , վասն այսորիկ Մարիամ ծնաւ զկե-նարարն . նա ծնաւ զայն՝ որ եհեղ զարիւն եղբօրն իւրոյ , այլ սա ծնաւ զայն՝ որ արիւնն իւր հեղաւ յեղբարց անդի իւրոց . նա ետես զայն՝ որ երերէրն և տատանէրն անիծիւք երկրի , և սա զայն՝ որ եբարձ զանէծսն , և բևեռեաց զնա ընդ խաչափայտին : Յը-ղուք կուսին ուսիր դու եթէ այն՝ որ առանց ամուս-նութե ծնաւ զԱդամ 'ի կոյս երկրէն , նա նկարեաց առանց ամուսնութե զԱդամ երկրորդ 'ի մէջ կու-սին : Եւ քանզի առաջինն յորովայն մօր իւրոյ դար-ձաւ , դարձեալ այսու երկրորդաւս՝ որ դարձեալ յորովայն մօր իւրոյ ոչ դարձաւ , դարձաւ այն՝ որ յորովայն մօր իւրոյ թաղեցաւ :

Հաձէր և հաւանեցուցանէր Մարիամ զՅովսէփ թէ յղութիւն իւր 'ի Հոգւոյն է . այլ ոչ առ յանձն , զի իրքն օտար իմն էին : Իբրև ետես թէ երեսքն նո-րա զուարթ էին , և որովայն նորա լի է , ած զմտաւ իւրով արդարութեամբ իւրով , զի մի առակիցէ զնա և մի բամբասիցէ զնա . այլ լռելեայն արձակել զնա . զի չէր գիտակ նա մեղաց նորա , և ոչ զյղութի նո-րա գիտէր ուստի իցէ : Վասն այսորիկ երևեցաւ նմա հրեշտակն և ասէ . մի երկնչիր . ապա թէ երկմտես ինչ , լուր դու Եսայեայ մարգարէի , զի ասէ . “Ահա-ւադիկ կոյսդ յղասցի„ . և Դանիէլ զի ասէր . “Վէմ հատանէր առանց ձեռին„ : Այլ ոչ իբրև զայն է՝ զի ասէ . “Հայեցարուք դուք ընդ լեառն և ընդ գու-բըն„ : Անդ այր և կին յայտ արար , այլ աստ առանց ձեռինն . և զոր օրինակ Ադամ ելից զտեղի հօր և մօր Եւայի , այնպէս և Մարիամ տեառն մերոյ :

«Յովսէփ, ասէ, քանզի այր արդար էր, ոչ կամեցաւ առակել զՄարիամ»։ Եւ ահա աւանիկ արդարութ̃ի նորա թշնամի հակառակորդ է օրինաց. «Ձեռն քո, ասէ, նախ սկիզբն արասցէ 'ի քարկոծել զնա»։ Այլ ետես Յովսէփ զյղութիւնն օտար, և զդէպն օտարացեալ ճանապարհին կենաց, և յղութիւն արամբեաց. արդ այս ամենայն պատճառս ետուն նմա՝ զի գիտասցէ թէ յո̃յ են իրքն։ Զի ոչ երբէք ուրեք ետես նա 'ի նմա խորհուրդ լկտութ̃ե. նա և ոչ դարձեալ մարթ էր ինչ նմա թէ ոչ հաւատասցէ Մարիամայ, այն՝ որ զքազում վկայութ̃ն ունէր. այս ինքն զպապանձեալն Զաքարիայ, և զյղութ̃ին Եղիշաբեթի, և զաւետարանելն հրեշտակին, և զցնծալն Յովհաննու, և զմարգարէութիւնն հարցն նորա. զի ամենեքեան սոքա վասն յղութ̃ե կուսին աղաղակէին այլովքն հանդերձ. վասն այսորիկ խորհեցաւ նա արդարութ̃ք լռելեան արձակել զնա։ Զի եթէ գիտէր նա՝ եթէ յղութ̃ին նորա չէր 'ի Հոգւոյ անտի, չէր նմա արդարութ̃ի ոչ առակելն զնա։

Այլ հասու եղև նա եթէ սքանչելի գործ է այս ա̃յ, սակայն այլոցն չէր հաւատալի, խորհեցաւ 'ի մտի իւրում թէ արդարութ̃ի է այս արձակելս։ Եւ ըստ նորա մտաց՝ թէ գուցէ գործս այս արատ ինչ առնուցուն արդեւք բնակելն նոցա առ միմեանս, առաւել ևս զայս խորհեցաւ՝ թէ գուցէ յանցանք ինչ իցեն ինձ անուանել ինձ հայր ա̃ծեղէն ծննդեանն։ Եւ երկեաւ բնակել ընդ նմա, թէ գուցէ կորուսանիցեմ զանուն կուսորդւոյն։ Վասն այսորիկ ասէ ցնա հրեշտակն. «Մի երկնչիր դու առնուլ զՄարիամ»։ Դարձեալ գրէ, եթէ սրբութ̃ք բնակէր ընդ նմա, և այլ ևս։ Եւ վասն այսորիկ, ասէ, սպանին զԶաքարիա, զի զՄարիամ առ կոյս ունէր, զի կուսանք 'ի մի կոյս ժողովէին. կամ 'ի ժամանակին՝ յորում կոտորեցան մանկտին, և պահանջեցաւ որդին նորա 'ի ձեռն նորա՝ փոխանակ զի փախոյց զնա ընդ յանապատ՝ սպանին զնա առաջի սեղանոյն, որպէս և տէր մեր ասաց։

Վասնզի են ոմանք՝ որ համարձակին ասել՝ եթէ եղև Մարիամ կին Յովսէփու յետ. ծնանելոյ նորա

զփրկիչն ։ Զիա՞րդ մարթ էր այսմ լինել. այն՝ որ եղև տուն բնակութե̃ն Հոգւոյն, և հովանի եղև 'ի վերայ նորա ա̃ծեղէն զօրութիւն, երթալ նմա կցորդ լինել մահկանացուին, և ծնունդ լի չարչարանօք ծնանել ըստ նմանութե̃ն առաջին անիծիւք ։ Զի եթէ օրհնեալ 'ի կանայս էր Մարիամ, նովաւ արձակեցան անէծքն՝ որ 'ի սկզբանէ՝ որ երկամբքն և անիծիւք ծնանի որդի. և այն՝ որ այսու ցաւօք ծնանի, չէ մարթ թէ օրհնեալ կոչեսցի նա ։ Այլ որպէս եմուտ նա դրօքն փակելօք, սոյնպէս և 'ի կոյս արգանդէ անտի. զի կուսն առանց երկանց արդարև ճշմարիտ ծնաւ ։ Եւ եթէ վասն Նոյի զգաստացան հանդարտեցան գազանքն 'ի տապանի անդ, յիրաւի էր և 'ի կուսն մարգարէին՝ յորում Էմմանուէլ բնակեցաւ՝ ոչ դառնալ յամուսնութի̃ ։ Գազանքն Նոյի բռնութի̃, բայց սա կամօք իւրովք ։ Որպէս յղացաւ նա յստակութեամբ, սոյնպէս կաց մնաց նա սրբութի̃ ։

Եւ եթէ որդիքն Ահարոնի փոխանակ զի հուր օտար մատուցին՝ սատակեցան, ո՞րչափ ևս և սա չարչարեալ լինէր ։ Եւ եթէ վաճառականքն զի խառնեցին ջուր ընդ գինի՝ պատիժս պատուհասից կոչէ 'ի վերայ նոցա, ո՞րչափ ևս առաւել յայսմ վայրի վճիռհատուցման եղեալ լինէր 'ի վերայ ։ Եւ եթէ յայնմանէ զի անուանեցան նոքա եղբարք տեառն մերոյ՝ կարծեն թէ որդիք իցեն նոքա Մարիամու, ահաւանիկ և նա որդի Յովսեփու կոչեցաւ ոչ թէ 'ի Հրէից անտի միայն, այլ և 'ի Մարիամայ 'ի մօրէ անտի իւրմէ ։ "Ահաւասիկ ես և հայր քո տառապեալ սիրտ 'ի բերան գնայաք շրջէաք խնդրէաք զքեզ ։ Այլ զի հրամեաց հրեշտակն, առնուլ Յովսեփու զՄարիամ, որպէս զի 'ի բաց մերժեսցէ զկարծիս 'ի միտաց անտի զրպարտչացն նորա. առաւել ևս զի պահեսցէ զնա, զի մի սպանցեն զնա այնօքիկ՝ որ խղճեցին 'ի հրեշտակէ անտի վասն յղութե̃ն ։ Յոյժ խեղճ էր նոցա ծնանել կուսին. քանզի հաւատացեալ գիտէին նոքա՝ եթէ 'ի ծննդեան նորա քաղաք նոցա աւերի, և քահանայութի̃ և թագաւորութի̃ նոցա խափանեալ լինի. զի յայսմանէ նաև զմարգարէն Եսայի, որ աւետարանեացն զայն՝ թէ կոյսն ծնցի, սպանին ։

Արդ ծնաւ կոյսն զանդրանիկն, և ողջ հաստատուն կաց մնաց կուսութին իւր ։ Ծնաւ և նա զմեզ 'ի մկրտութէ անտի, և արար զմեզ անդրանիկս պարգևօք իւրովք․ զի չիք երեց և կրսեր 'ի ծոց մկրտութեն, քանզի ամենեքեան անդրանիկք եմք հաւատովք, և 'ի վերայ մեր եկն կատարեցաւ այն՝ զի ասէ, եթէ “Ամենայն անդրանիկ՝ որ բանայ զարգանդ, սուրբ տեառն կոչեսցի”։ Այլ յորժամ աղտեղանամք և ժանկոտիմք մեղօք, յղենայ զմեզ մկրտութիւնն, և սուրբս յանօրէնութէ ծնանի զմեզ 'ի միջոյ իւրմէ ։

Եւ զի ասէ, “Սրբութք բնակէր ընդ նմա մինչև ծնաւ զանդրանիկն բան”․ զկնի ընկերին իւրոյ ասացեալ է, թէ առ զնա և ապա բնակէր ընդ նմա սրբութք․ այլ այսպէս լուր․ սրբութք բնակէր ընդ նմա, և առ զնա ։ Այլ այս՝ զի առ զնա, զի յետ յղանալոյն նորա անուանեցաւ նա այր նորա․ կամ սրբութք բնակէր ընդ նմա, զի ոչ երբէք անկաւ ցանկութիւն տեսլեան նորա 'ի խորհուրդս նորա ։ “Մինչև ծնաւ զանդրանիկն”․ այս ինքն զի 'ի ծնանել անդրանկանն հաւատացեալ գիտացին՝ եթէ ոչ է նա մարդկեղէն բնութիւն, այլ ծնունդ է նա ածեղէն ։ Արդ դարձեալ սրբութեամբ բնակէր ընդ նմա մինչև ծնաւ զանդրանիկն, այս սրբութի բռնութեան էր, իբրև կամքն իւրեանց հաղորդեալ էին․ այլ սրբութին զոր պահեցին յետ ծննդեանն տեառն մերոյ, ազատութեն իւրեանց էր ։

Այլ զայն զբռնութէ սահմանեաց և պատմեաց մեզ վասն կատարածի նորա, յայնմիկ՝ զի ասէ մինչ․ և սրբութք բնակէր ընդ նմա, մինչև ծնաւ զանդրանիկն ։ Եթէ այդ այդպէս է, յետ ծնանելոյ նորա սրբութք բնակէր ընդ նմա ։ Զի ասաց բա մինչ․ այլ մինչն ոչ եթէ սահման ինչ իցէ․ զի “Ասաց տէր ցտէր իմ․ նիստ ընդ աջմէ իմմէ մինչև եդից զթշնամիս քո 'ի ներքոյ ոտից քոց”։ Թէ այդ այդպէս իցէ, յորժամ եդեալ լինին թշնամիք նորա 'ի ներքոյ ոտից նորա, յառնէ նա ։ Դարձեալ սրբութք բնակէր ընդ նմա, ամուսնութի ո՞չ ահա սուրբ է ըստ Առաքելոյ վկայութէ․ զի ասէ․ “Անկողինք իւրեանց սուրբ են”։ Եւ եթէ ասիցեն․ ահաւանիկ եղբարք տեառն մերոյ ա-

նուաճեալ են յաւետարանի անդ, այլ յայնմիկ՝ զի եւ տէր մեր զՄարիամ Յովհաննու, յայտ է եթէ ոչ են նոքա որդիք նորա, և ոչ նա այր նորա։ Զի այն որ ասաց՝ թէ “Պատուեա զհայր քո և զմայր քո„, զիա՞րդ որոշէր զնա յորդւոց անտի իւրոց, և տայր 'ի ձեռս Յովհաննու։

Նաեւ զի գրեցան իւրաքանչիւր 'ի քաղաքի իւրում, զի ցրուեալ էր Իսրայէլ և գերեալ էր Յուդայ. և քանզի վկայութիւնք ճշմարիտք են սոքա 'ի տան սկզբանց թագաւորաց, ասաց վասն ծննդեան նորա՝ եթէ յաւուրս Օգոստեայ եղև։ Իսկ արդ ընդէ՞ր այս աշխարհագիր առաջին եղև ընդ այն ժամանակս՝ յորում ծնանելոց էր տէր մեր։ Քանզի գրեալ է. ասէ “Մի՛ պակասեսցէ իշխան Յուդայ, և մի՛ պետ յերանաց նորա, մինչև եկեսցէ որոյ իւրն է„. զի յայտ լիցի եթէ 'ի ծագել նորա եղև աշխարհագիրն, զի 'ի ժամանակի ծննդեանն նորա տիրեցեն հեթանոսք 'ի վերայ ժողովրդեանն։ Այն՝ որ ինքնին անձամբ թագաւորեալ էր, զի կատարեսցի այն՝ զի ասէ, “Եւ 'ի նա հեթանոսք յուսասցին„, արդ եկն նա. քանզի պակասեալ էր իշխան և մարգարէ։ Եւ “Այսօր, ասէ, ծնաւ ձեզ փրկիչ„. կամ թէ “Նա եղիցի օծեալ„։ “Այսօր, ասէ, ծնաւ ձեզ փրկիչ„, որ է ինքն. և ոչ եթէ լինելով եղև, այլ է ինքն օծեալ տեառն։

Իբրև սկիզբն եղև խաղաղութեան լինելոյ, հրեշտակքն փառս 'ի բարձունս ասէին և խաղաղութիւն յերկիր։ Այլ իբրև ընկալան ներքինքս 'ի վերնոց անտի, փառս յերկիր աղաղակէին, և խաղաղութի̃ յերկինս։ Ի ժամանակին յայնմիկ՝ յորում էջ մ̃ծութիւնն զգեցաւ զմարդկութի̃ն, խաղաղութի̃ յերկիր աղաղակէին հրեշտակքն։ Եւ 'ի ժամանակին յորում ել վերացաւ մարդկութի̃ն ընկղմեալ յմ̃ծութի̃ն, և նստեալ ընդ աջմէ, խաղաղութի̃ յերկինս աղաղակէին մանկտին առաջի նորա. “Օրհնութի̃, ասէին, 'ի բարձունս„։ Արդ աստի և Առաքեալ ուսաւ ասել. “Արար խաղաղութի̃ արեամբ խաչին իւրոյ, որ ինչ յերկինս և որ ինչ յերկրի„։

Դարձեալ հրեշտակքն փառս 'ի բարձունս ասէին,

և խաղաղութ̃ի յերկիր. և մանկտին խաղաղութ̃ի յերկինս, և փառս յերկրի. զի յայտ արասցեն՝ թէ որպէս շնորհք ողորմութ̃ե նորա ուրախ արարին զմեղաւորս յերկրի, սոյնպէս և ապաշխարութիւն նոցա ուրախ արարին զհրեշտակս յերկինս: Փառք ա̃յ կամաւ, և բարեկացելոցն խաղաղութ̃ի և հաշտութ̃ի, և պարտաւորաց յոյս և թողութիւն: Եւ զի 'ի հովուաց անդի սկիզբն արարին, զի և մի ոք ուրեք որ յանապատի իցեն՝ զրկեսցին, այլ ապրեալ գտցին խաղաղութ̃ի յաւետեաց անտի Ճշմարիտ հովուին: Փառք 'ի բարձունս ա̃յ, և խաղաղութ̃ի յերկիր. և ոչ գազանաց և ոչ անասնոց, այլ յոյս բարեաց որդւոց մարդկան:

Եւ զի ասէ. “Արդ արձակես զծառայս քո„. քանզի զմխիթարութ̃ի ժողովրդեանն ընդունէր նա, և զսահման Իսրայէլի պահէր. այլ իբրև ետես նա զայն՝ որ [1] իւրն էր, ասէ. “Արդ արձակես դու զծառայս քո 'ի խաղաղութ̃ի„. իբրև զօրէնս և զքահանայութ̃ի: Արձակես դու զծառայս քո 'ի խաղաղութ̃ի, Շմաւոնի ասացաւ, և վասն օրինացն ակնարկեցաւ: Շմաւոն և Մովսէս արձակեցին, այս ինքն խաղաղութեն, ոչ եթէ հակառակութ̃ք ինչ եղև արձակել օրինացն, այլ սիրով խաղաղութ̃ք հանգոյց զօրէնսն: Եւ զի ասէ. “Ահա տեսին աչք իմ զգթութ̃ի քո զոր պատրաստեցեր դու առաջի ամենայն հեթանոսաց„. այն զի ասէ “Նմա սպասէին ամենայն հեթանոսք„: Եւ զի ասէ. “Ահաւասիկ սա կայ 'ի գլորումն և 'ի կանգնումն„. այն՝ զի ասէ “Ահաւասիկ դնեմ ես 'ի Սիովն վէմ գլորման. և որ 'ի նա հաւատայ՝ մի ամաչեսցէ„: Կամ 'ի գլորումն և 'ի կանգնումն ժողովրդեանն և հեթանոսաց, կամ 'ի գլորումն անօրէնութ̃ե և 'ի կանգնումն արդարութ̃ե:

Եւ զի ասէ “Ի նշան հակառակութ̃ե, և քո ինքն անձին„. յայնմիկ՝ զի այլ ազգ խորհեցան 'ի վերայ նորա բազում այլաղանդք: Զի ոմանք ասէին մարմին նորա ոչ չարչարելի առ նա. և ոմանք ասէին ոչ է ճշմարիտ, մարմնով ասեն կատարեաց նա զառաջ-

1 Ցօրինակին պակասէր որ:

նորդուԹի՛ն իւր ։ Եւ այլք ասեն մարմին երկրաւոր՝ և այլք ասեն երկնաւոր . և այլք ասեն յառաջ քան զաշխարհս , և այլք ասեն սկիզբն նորա 'ի Մարիամայ եղև ։ Եւ զի ասէ , “Անցուսցէ սուր„ . այն՝ որ ցանկեցաւ 'ի դրախտի անդ 'ի պատճառս Եւայի , բարձաւ 'ի ձեռն Մարիամու ։ Կամ անցուսցէ սուր . այս ինքն զուրացուԹի՛ն ։ Այլ Յոյնն մեկին իսկ ասէ . “Յայտնեսցին , ասէ , 'ի բազում սրտից խորհուրդք„ . այնոցիկ՝ որք երկմտեցին ։ Եւ զի ասէ “Անցուսցէ սուր„ . նա և դու , ասէ , երկմտիցես . յայնմիկ՝ զի կարծեաց նա զնմանէ Թէ պարտիզապանն իցէ . վասն զի լինի , ասեն , զարմացեալ յետ ծննդեան նորա , և ընդ յղանալն նորա , և պատմէ այլոց Թէ որպէս արդեօք յղացաւ , և կամ զիա՛րդ ծնաւ , և 'ի զարմանալ բանի նորա հզօրացին և այլքն ևս՝ որք երկմտեցին վասն նորա ։

Եւ զի երևեցաւ աստղն , զի սպառեալ էին մարգարէքն ։ Ընթացաւ աստղն պատմել Թէ ով իցէ այն , առ որ փութացեալ ընթանան բանք մարգարէից ։ Զի զոր օրինակ վասն Եզեկիայի ընթացաւ արեգակն յարևմտից ընդ արևելս , սոյնպէս և վասն մանկանն որ 'ի մսուր անդ կայր՝ ընթացաւ աստղն յարևելից ընդ արևմուտս ։

Մրդ առաջինքն 'ի նշան արեգականն դսրովեցին զԻսրայել . և վերջինքս եկին յամօԹ առնել զժողովուրդն , իբրև բարձեալ ունէին պատարագս ։ Եկին մոգքն նշանօք իւրեանց իբրև մարգարէք , և վկայեցին վասն ծննդեան նորա ։ Եւ զի մի՛ յործամ երևեսցի նա՝ օտարացուսցեն զնա , այլ զի գիտասցեն ամենայն արարածք զծնունդն նորա ։ Պապանձեցաւ և Զաքարիա , յղացաւ Եղիշաբէթ . որպէս զի իմացեալ գիտասցեն զնմանէ ամենայն աշխարհք ։

Նա և աստղն այն՝ աստղ էր նա իշխանական գնացիւք իւրովք , վերանալ և խոնարհել , իբրև արձակեալ և ոչ իբրև կապեալ . զի ունէր իշխանուԹիւն 'ի վերայ օդոց երկնից իբրև զոչ բևեռեալ յերկինս ։ Եւ զի Թագոյց զանձն իւր , զի մի՛ եկեսցեն նոքա պարզ ուղեղ 'ի ԲեԹղահէմ . այլ զի չարչարեսցի Իսրայել , ծածկեաց զնա 'ի նոցանէն՝ զի յԵրուսաղէմ եկեսցեն,

զի դպիրքն պատմեսցեն վասն ծննդեան նորա․ որպէս զի առցեն վկայութի̃ ճշմարիտ 'ի մարգարէից անտի և 'ի քահանայից ։ Եւ մի՛ կարծիցեն եթէ այլ զօրութի̃ իցէ արտաքոյ քան զհանգիստն նորա՝ որ բնակեալն է յԵրուսաղէմ․ զոր օրինակ և ծերքն 'ի հոգոյ անտի որ 'ի Մովսէսն էր՝ առին․ զի մի՛ կարծիցէ ոք եթէ այլ ոգի իցէ ։

Արդ արեւելայքն աստեղըն լուսաւորեցան, զի իսրայէլացիքն 'ի խաւարել արեգականն կուրացան ։ Արդ նախ արեւելք երկիր պագին Քրիստոսի․ որպէս և ասէ․ "Արեւելք 'ի բարձանց լոյս տայցեն,,։ Իբրեւ կարգեաց զնոսա աստղն մինչեւ առ արեգակն, կաց 'ի վերայ ժամանակեան նորա, և պատմեաց զնմանէ, և կատարեաց զգնացս իւր․ որպէս և Յովհաննէս ձայն՝ որ քարոզեաց 'ի վերայ բանի․ և իբրեւ եղեւ լսելի և մարմնացաւ և երեւեցաւ, աղաղակեաց ձայն ուղղիչ ճանապարհի․ "Նմա, ասէ, աճել և ինձ մեղմանալ,,։ Ոչ հաւանէին մոգքն՝ որ երկիր պագանէին լուսաւորաց՝ գալ առ լոյսն, թէ ոչ էր պատրեալ զնոսա աստղն լուսովն իւրով ։ Զսէրն նոցա՝ որ կապեալ էր 'ի լոյսն անցաւոր, առ լոյսն՝ որ ոչ անցանէ՝ ձգեաց զնոսա ։

Այլ Հերովդէս՝ որ վերջեաց զմոգսն նենգութե̃ իւրով, և կամէր խաբել զնոսա, տեսիլն 'ի քուն նենգէր զնա ։ "Եւ առին նոքա 'ի տեսլեան, ասէ, հրաման՝ զի մի՛ դարձցին անդրէն առ նա,,։ Զի թէպէտ և մոգքն 'ի զուարթութե̃ անդ իւրեանց գովեցին զնա, զի ոչ նախանձեցաւ ընդ նմա, յայնմիկ՝ զի ասէր "Եւ ես եկից երկիր պագից նմա,,, սակայն քնովն իւրեանց դսրովէին զնա, զի ստեաց նոցա իբրեւ ինքն կամէր սպանանել զնա․ այնու՝ զի երեւեցաւ նոցա 'ի տեսլեան, զի մի՛ դարձցին անդրէն առ նա․ իբրեւ ընդ հայելի տեսանէին զնենգութի̃ սպանչին ։ Արդ այն՝ որ կամեցաւ զմիտսն զուարթնոցն գողանալ, գողացեալ եղեւ ինքն 'ի նենգեցելոց անդի ։

Կարծէր Հերովդէս եթէ խաբեաց զնոսա՝ իբրեւ ետես թէ հաւատային նմա, այլ խաբեցաւ ինքն 'ի նոցանէ 'ի ձեռն տեսլեանն ։ Արդ այն՝ որ խաբեցաւ, նոյն և գողացեալ եղեւ, իբրեւ գիտացին մոգքն 'ի

ձեռն տեսլեանն՝ թէ գողանալով գողացաւ զնոսա. յայնմիկ՝ զի ասաց, թէ “Եւ ես եկից երկիր պագից նմա„: Զի զոր օրինակ վասն Եզեկիայ տուան նշանն զի քարոզեսցէ արարածոց, զի 'ի ձեռն արեգականն դառնալոյ ծանիցեն թէ ով իցէ այն՝ որ դարձոյց զնա 'ի մահուանէ 'ի կեանս, սոյնպէս թէպէտ վասն մոգուցն տուան նշանն, սակայն նշան է. զի ամենայն արարածոց 'ի պատճառս մոգուցն քարոզեցաւ: Զի աստեղքն որ հնազանդեցաւ՝ որ ոչ 'ի բնութե̃ իւրում՝ մարդկան, և Ճանապարհ առաջի նոցա հորդեաց, յուսասցին յա̃ծ, այն՝ որ հնազանդեցաւ մարդկութե̃ս, զի հորդեսցէ նմա Ճանապարհ յարքայութի̃ն իւր: Եւ զոր օրինակ արեգակնն՝ որ խաւարեցաւ 'ի մահուան անդ նորա, զի գիտասցեն արարածք զմահն նորա, խաւարեցաւ սոյնպէս և աստղն՝ որ ծագեաց. զի գիտասցեն ամենայն աշխարհք զծնունդն՝ որ ծագեաց:

Զուարթագին ծննդեամբ երևեցաւ աստղն զուարթագին, և տրտմագին մահուամբն երևեցաւ աղջամուղջն տրտմագին: Եւ զոր օրինակ Եզեկիա՝ 'ի ձեռն նշանին ապրեցաւ 'ի յայտնի մահուանէ անտի, սոյնպէս և նոքա 'ի ձեռն նշանին ապրեցան 'ի ծածուկ մահուանէ անտի: Զի թէպէտ և աստղն՝ մոգուցն որ երթային ընդ նմա 'ի Ճանապարհին, անձն նորա՝ որ երևէր նոցա, այլ երեսք նորա ծածկեալ էին 'ի նոցանէ, այսպէս և աստղ նորա նմանեալ էր, զի լոյս նորա յամենայն մարդս երևէր, և հետք շաւղաց նորա յամենայն մարդոյ ծածկէր:

“Եւ բացին, ասէ, զգանձս իւրեանց, և մատուցին նմա պատարագ„. ոսկի՝ մարդկութե̃ նորա, և զմուռս՝ մահուան նորա, և կնդրուկ՝ ա̃ծութե̃ նորա. կամ ոսկի՝ իբրև թագաւորի, և կնդրուկ՝ իբրև ա̃յ, և զմուռս իբր զմռացելոյ: Բայց դարձեալ ոսկի, զի երկրպագութի̃ն որ առաջի ոսկոյն լինէր, տեառն իւրում դառնալոց էր նա. և զմուռս և զկնդրուկ վասն բժշկի յայտ արար՝ զի բժշկելոց էր զբեկու̃ն Ադամայ: Այն որ յայտնեաց նոցա զի մի՛ դարձցին առ Հերովդէս, նոյն յայտնեաց նոցա ելանել գալ, զի կատարեսցին ելք նոցա երկոքին. մի՛ այն զի ասէ

“Յերկրէն եգիպտացւոց կոչեցից զորդի իմ”. և այն՝ զի ասէ “Հռաքէլ լայր”: “Կատարեցաւ, ասէ, բանն՝ որ ասացաւ ՚ի ձեռն Երեմիայ մարգարէի”, այլովքն հանդերձ:

ԳԼՈՒԽ Գ

“Այր իբրև ետես, ասէ, Հերովդէս եթէ խաբեցաւ ՚ի մոգուց անտի, բարկացաւ յոյժ. և առաքեաց կոտորեաց զամենայն տղայս մանուկ”: Արդ դու, անօրէն Հերովդէս, ո՞չ ահա լուար թէ աստղն է քարոզ նորածին թագաւորին. ընդէ՞ր ոչ ածեր դու զմտաւ քով, զի եթէ յերկնից է՝ ոչ կարես դու հակառակ կալ ընդդէմ երկնաւոր գործոյն: Եւ զի անզաւակեաց նա զմարս ՚ի սերելեաց իւրեանց, խնդրեցաւ ՚ի նմանէ վրէժ հատուցման երիւք որդովք և կնաւ իւրով. և ինքն մեռաւ դառնապէս մահուամբն:

Ոչ գիտաց Հերովդէս թէ որպէս խնդրեսցէ զնրան. զի կուրացեալ էր նախանձու, վասն այսորիկ ոչ կարաց գիտել. և որպէս քննեաց նա վասն միոյ պատգամի Միքիայ մարգարէի, թող քննեալ էր նա և վասն պատգամին Եսայեայ, զի յայտնեալ էր ազգատոհմն նորա և մայր նորա և գեօղ նորա և ժամանակ նորա: Ազգատոհմ նորա ՚ի տանն Դաւթի, որպէս ասաց Յակոբ. և մայր նորա թէ կոյսն է, որպէս ասաց Եսայի. և գեօղ նորա Բեթղահեմ, որպէս ասաց Միքիա. զժամանակ նորա՝ որպէս և ասացին մոգքն. և յաշխարհագրէ անդի Հռոմոց ուսեալ լինէր նորա՝ թէ Յիսուս որդի Յովսեփու գրեցաւ, որք գտին զնա: Զի թէպէտ և զայս ամենայն գիտէր նա, սակայն ոչ գիտէր արբեալն նախանձուն իւրով ճանաչել զնա: Շաւուղայ նմանէր նա. զի իբրև ՚ի բռանն իւրում էր ճաշակ արեանն Դաւթայ՝ որով ծարաւեալն էր, և ոչ գիտաց զնա թէ ՚ի ներքոյ նորա է նա: Գիտաց Սողոմոն դատ առնել և ճանաչել զմանուկ զառզորդին. գիտաց և Դալիլա քննել հանել զխորհուրդն ծածկեալ ՚ի սրտէն Շմշոնի:

Այլ Փարաւոն՝ քանզի ոչ էր յայտնի ազգատոհմ և ժամանակ փրկչին՝ որ ծնանելոցն էր հեբրայեցւոցն,

առ կոտորեաց նա զբազում տղայս, զի ընդ բազումս մեռցի և մին ևս՝ որ պիտոյն էր նմա ։ Նա և Շաւուղայ 'ի բազմաց անտի պարտ էր գիտել թէ չէ կարող զօրութեան Դաւթայ. և ոչ Հերովդէս զօրութեան որդւոյն Դաւթայ ։ Այլ ատելութիւն փոխանակ զի գիտասցէ կամ ուսցի, մեղանչել ապականել փութայ ։ Որդիք են նոքա սատանայի, այն՝ որ կարծեաց եթէ կարեմ սպանանել զՄովսէս, և կորուսանել զԴաւիթ, և 'ի խաչ հանել զորդին Դաւթի ։ Նա և Կային աշակերտ նորա կարծէր՝ թէ կարեմ խաբել զա͞ծ յասել անդ իւրում. “Միթէ պահապան իցեմ եղբօր իմում„ ։ Եւ Գեհեզի զԵղիշա, և սկարիովտացին [1] զտէր մեր ։

Նղեան մանկտին՝ որ կոտորեցան յերկուս կերպարանս՝ վկայք կոտորեալ արդարոց, և ամբաստանողք սպանողացն ։ Զի եթէ զնա՝ զի ասաց թէ ա͞ծ եմ ես, միամտութ͞ք մերժեալ օտարացուցին զտգէտս զանմեղս, վասն որոյ կոտորեցին յառաջագոյն, մինչ չև իսկ լեալ նոցա նմա քարոզիչ ։ “Ձայն, ասէ, կարդացաւ 'ի Հռամա. Հռաքէլ լայր զորդիս իւր„ ։ Եւ եթէ Բեթղահէմ Յուդայի է որդոյ Լիայ, Հռաքէլ ընդէ՞ր լայր զորդիսն իւր զի ոչ էին. այս ինքն զի չէին ուրեք թէ մեռցին վասն Քրիստոսի. զի ոչ եթէ յորդոցն նորա ծնաւ փրկիչ. քանզի Լիա օրինակ է առաջին ժողովրդեանն, և Հռաքէլ օրինակ եկեղեցւոյ ։ Այլ ամուլն, ասէ, ծնաւ. և բազմացան որդիքն այրոյն քան զարամբոյն ։ Կամ վասն զի սահմանակիցք էին տունն Բենիամենի ընդ տունն յուդայեան, զի այսպէս է գրեալ. “Մեռաւ, ասէ, Հռաքէլ ասպարիսով միով մերձ մտանել յԵփրատ, զի նա ինքն է Բեթղահէմ„ ։ Եւ որպէս ասաց դարձեալ Մովսէս յօրհնութեան անդ իւրում վասն Բենիամենի. ասէ “Ի մէջ թիկանց նորա բնակեսցէ„. զի բնակեաց հանգիստն յԵրուսաղէմ, զի նա է ժառանգութի Բենիամենի ։ Եւ իբրև ետ նշան Շմուէլ Շաւուղայ 'ի ժամանակին իբրև օծն զնա թագաւորել 'ի վերայ Իսրայէլի, “Ահա աւանիկ, ասէ ցնա,

1 Յօրինակին կարիովտացին ։

դիմելին քեզ առք երեք 'ի ծղծախառ գերեզմանն Ռաքէլայ 'ի սահմանս Բենիամենի ,,:

“Ռաքէլ, ասէ, լայր զորդիս իւր ,,: Ո՛վ Ռաքէլ, լաց դու. մի՛ իբրև զայն զառաջինն զլալումն քո, այն զի եկին հասին Թշնամիքն 'ի վերայ որդւոցն քոց, այլ լաց դու 'ի վերայ այնոցիկ՝ որ կոտորեալն ընկեցեալն են 'ի հրապարակսն, ոչ յօտարացն՝ այլ յորդւոցն հօրն իւրեանց Յակոբայ: Այլ արգել դու զձայն քո 'ի լալոյ, զի գրեցան վարձք արտասուաց քոց, այնոցիկ՝ որ ընդ որդւոյն Դաւթայ ծնան. այս ինքն 'ի ժամանակին՝ յորում ծնաւ նա՝ զի քարոզք աւետեացն նոր 'ի ժամանակս այցելութեն եղիցին: Ահա աւասիկ առին նոքա զսահման գլխաւոր զմերինն Երուսաղեմի մօրն մերոյ, որում խոստովան եղաք այնմիկ՝ որ Մովսէսին երևեցաւ 'ի լերինն՝ ժառանգեցին նոքա: Այլ կաց մնա դու և մխիթարեսջիր յորդին քո յընդիր 'ի Շաւուղ, որ նա ինքն է Պաւղոս, որ մխիթարէ զքեզ, և լինի փոխանակ վարձուց և արտասուաց և ցաւոց քոց:

“Իբրև ետես, ասէ, թէ խաբեցաւ նա 'ի մոգուց անտի, բարկացաւ ,,: Ո՛ իսրայէլացիք, կոյրք՝ զի ոչ իմանայք, և խուլք՝ զի ոչ լսէք, և ոչ Նս էք ցարդ զարթուցեալք ձայնիւն Եսայեայ զի ասէ. “Տացէ ձեզ տէր ած նշան ,,: Եւ եթէ յայլ ոք տուեալ էր, գոյր ասել. և ոչ եթէ յայլ ոք, այլ 'ի նոյն իսկ՝ որ 'ի կուսէն էր՝ տուաւ ձեզ. այս ինքն ամենեցուն ձեզ: Այլ Մովսէսի տուաւ, զի ինքնին միայն առանձինն հաւանեսցի իբրև խորհրդիւ. և Գեդէոնի և Եզեկիայ: Այլ որ միանձնութք տուաւ նոցա, ո՞չ ահա առ ձեզ առաքեցաւ գործն յայտնի, և մերկութի ճշմարիտ առակաց օրինաց ձերոց 'ի ձեռն մոգուցն: Զիա՞րդ ոչ իմացարուք զժամանակն փրկութե, և հաւատացէք 'ի ծնունդն կուսին: Կամ թէ գուցէ հանդերձ թագաւորաւն ձերով յապշութե նստէիք, սպասէիք թէ դարձեալ միւսանգամ առ ձեզ դարձցին մոգքն, և յերկրորդումն պատմեսցեն զնմանէն:

Ո՛չ ահա շատ է ձեզ զի եկին օտարք զարթուցին զձեզ, 'ի միտ առնուլ ձեզ՝ թէ ծնաւ նա: Կամ թէ դուք զնոյն իսկ խորհուրդս ստանող թագաւորին ձե-

րոյ երկրորդ Փարաւոնին քանանեան զաւակին զաւա-
կողմնացոյն ունէիք[1] ։ Սաւուղ ճշմարիտ փոխանակ
զի լուաւ նա վասն քահանայիցն՝ զի ձեռնկալու եղեն
Դաւթի յանգիտութեան, առաքեաց ետ ածել և
կոտորեաց զնոսա ։ Արդ բարիոք եղև և ձեզ, զի կա-
խեցաւ արիւնն արդար զպարանոցէ ձերմէ, որպէս
և Սաւուղայն․ և որդին Դաւթի ապրեցաւ 'ի ձեռաց
ձերոց, և գնաց 'ի մէջ հեթանոսաց ։ Հալածեցաւ Դա-
ւիթ 'ի Սաւուղայ, որպէս և որդին 'ի Հերովդէէ ։
Կոտորեցան քահանայքն վասն Դաւթայ, և մանկ-
տին վասն տեառն մերոյ ։ Ապրեցաւ Աբիաթար 'ի
քահանայից անտի, որպէս և Յովհաննէս 'ի մանկտոյ
անտի ։ Աբիաթարաւ հատաւ քահանայութիւն տանն
Հեղեայ, և Յովհաննաւ հատաւ մարգարէութիւն
որդւոցն Յակոբու ։

Այլ քանզի Իսրայէլ՝ որ որդին կոչեցաւ յեգիպ-
տոսէ խորհրդիւ, կորոյս նա զորդիութիւն, զի Բա-
հաղու երկիր պագին, և կռոցն խունկս արկին, վասն
այսորիկ և որ ինչ նման է սոցին, կոչեաց զնոսա Յով-
հաննէս ծնունդս իժից ․ և զի կորուսին նոքա զանուն
որդեգրութեանն, այն՝ որ շնորհօքն յաւուրց անտի
Մովսէսի սփռեցաւ 'ի վերայ նոցա, և անուն նմա-
նող գործոց իւրեանց 'ի ձեռն Յովհաննու ընկալան ։

Իբրև եմուտ տէր մեր յերկիրն եգիպտացւոց և
ել, ասէ աւետարանիչն․ “Արդ կատարեցաւ, ասէ,
ճշմարիտ բանն՝ որ ասացաւ 'ի ձեռն մարգարէին․
ասէ․ յեգիպտոսէ կոչեցից զորդի իմ„ ։ Եւ զի ասէ
“Նազովրացի կոչեսցի„․ գաւազան՝ 'ի հեբրայեցի նա-
զովր ասէ, և մարգարէն նազովրածնունդ ասէ․ և վասն
զի գաւազան ծնունդ է․ այլ աւետարանիչն՝ վասն
զի մնաց 'ի Նազարէթ՝ ետես եթէ սա ևս նմանեալ
է այնմիկ, և նա այսմիկ, ասէ “Նազովրացի կոչեսցի„ ։
Մարգարէութիւն առ Յովհաննէս, և խորհուրդք
մարգարէութեան առ տէր Յովհաննու․ որպէս քահա-
նայութիւն առ որդին Զաքարիայ, և արքայութիւն և
քահանայութիւն առ որդին Մարիամու ։ Օրէնքն 'ի
ձեռն Մովսէսի․ նշան գառինն բազում խորհրդովք․

1 Յօրինակին ունէին ։

Ամաղէկ և ջուրքն որ քաղցրացան, և օձն պղնձի, և ճշմարտութ̃ի նորա 'ի ձեռն Յիսուսի տեառն մերոյ։ Մկրտութ̃ին Յովհաննու բարձրագոյն է քան զօրէնս, և խոնարհագոյն էր քան զՔրիստոսին. զի ոչ եթէ անուամբ մկրտէր ոք մինչև 'ի ժամանակ վերանալոյն նորա։ Եւ Յովհաննէս յանապատ. ոչ զի եղիցի նա անդ ամեհի, այլ զի ցածուցէ յանապատի անդ զամեհութ̃ի չինին. զի ցանկութ̃ի այն՝ որ 'ի մէջ չինին խաղաղութ̃է, իբրև զգազան ամեհաբար խռովեալ լինի։ Յորժամ ելանէ յանապատ, ցածնու և հանդարտէ։ Հաւանեցուցէ զքեզ ցանկութ̃ին Հերովդի, զի ամեհաբար 'ի մէջ չինին 'ի խաղաղութեան 'ի վերայ կնոջն եղբօր իւրոյ առանց օրինաց մոլեգնեալ լինէր. զի ապականեցէ նա զհեզութ̃ի զգաստութ̃ն Յովհաննու ; այն՝ որ խաղաղութ̃ք 'ի մէջ անապատի, և ոչ ըստ օրինաց անկամ ամուսնացաւ նա։ "Եւ Բանն մարմին եղև և բնակեաց 'ի մեզ". այս ինքն բանն ա̃յ 'ի ձեռն մարմնոյն զոր առ, բնակէ 'ի մեզ։ Այլ ոչ ասաց թէ առ մեզ, այլ 'ի մեզ. զի յայտ լիցի թէ վասն մեր զգեցաւ նա զմարմինն մեր. իբրև զայն՝ զի ասէ. "Մարմին իմ կերակուր"։

"Առաքեցին, ասէ, Հրեայքն առ Յովհաննէս և ասեն ցնա. դու ո՞վ ես։ Նա խոստովան եղև ասէ՝ եթէ ես չեմ Քրիստոս։ Ասեն ցնա Եղիա՞ իցես դու, ասէ՝ ոչ"։ Եւ ահա տէր մեր Եղիա կոչեաց զնա, որպէս և գիրք իսկ վկայեն։ Եւ իբրև հարցին զնա, ասէ "Չեմ ես Եղիա"։ Այլ ոչ եթէ 'ի դէմս մարմնոյ Եղիայի ասացին գիրք վասն Յովհաննու թէ եկն, այլ զօրութ̃ք և հոգւով Եղիայի. ոչ եթէ այն Եղիա է որ վերացաւն՝ եկն առ նոսա, զոր օրինակ և ոչ Դաւիթ գլխովին եղև նոցա թագաւոր, այլ Զօրաբաբէլ։ Նա և փարիսեցիքն ոչ եթէ զայս հարցին զՅովհաննէս՝ եթէ հոգւովն Եղիայի՞ եկիր դու, այլ թէ՝ դու՞ իցես Եղիա գլխովին. վասն այսորիկ ասէ՝ ոչ։ Զինչ պիտոյ էր Եղիայի գլխովին եթէ առ Յովհաննու գտանին գործք Եղիայի։ Այլ զի մի՛ լիցի դատեալ Յովհաննէս 'ի նոցանէ, թէ Եղիա կառօք սրբովք վերացաւ, և զնորա գլուխն աղջիկն պղծալից սկտեղբ եբարձ, վասն այսորիկ մուտ Եղիշա կաց 'ի միջի 'ի

մէջ Յովհաննու և Եղիայի ։

Յորժամ կամեցան թէ սուտ արասցեն զՅովհաննէս, կշտամբեալ յանդիմանեսցէ զնոսա Եղիշա որ ստոյգն է նոցա. զի հաւատան նոքա եթէ կրկին ընկալաւ նա զհոգի վարդապետին իւրոյ ։ Եթէ այդ այդպէս իցէ, երկիցս անգամ երկու կառք պարտ էր Եղիշայի վերանալ ընդ երկինս, թերևս և ընդ երկինս երկնից. այլ յայտ է՝ թէ զօրութիւն Եղիայի տուաւ նմա գործովք իւրովք ։ Այլ ոչ եթէ ամենայն, այլ նմանեանք տիպքն գործոցն. ապա թէ ոչ լինէր մեկնութիւնն օգտութեան, և եթէ ոչ էր արարեալ կրկին առաւելութիւն զոր ընկալաւ ։

Արդ այնոքիկ՝ որ առ տէրն մեր առաքեցան հարցանել՝ թէ որով զօրութեամբ առնես դու զայս, նոյնք առաքեցան առ Յովհաննէս. քանզի ոչ եկն նա ուսուցանել զապստամբողս, ոչ յայտնեաց. զի ոչ եթէ իբրև զմարդիք ոյք կամին ուսանել զճշմարտութիւն թէ ով է Յովհաննէս, այլ պատուհասէին զնա ։ "Դու ով ես, ասեն, որ զայդ առնես,,. և նա ոչ ետ նոցա պատասխանի իբրև ուսուցանելեաց, այլ իբրև ապստամբողաց ։ Եւ զամենայն ինչ որ զինչ միանգամ հարցին զնա, ասէ "Չեմ ես Քրիստոս և ոչ Եղիա և ոչ մարգարէն, այլ ձայն,,. որպէս զի և ոչ Յոհաննէս և մարդ, և իբրև մարգարէ էր նա և Եղիա և Քրիստոս ։

Այլ այնոցիկ՝ որ հարցինն զնա, ոչ էր նա և ոչ մի յայտնեաց. որպէս և տէր մեր ասաց ումանց՝ թէ չեմ դատաւոր, իբրու դատաւոր էր նա. և ումանց ասէ՝ չեմ բարերար, իբրու բարերար էր նա ։ Զոր օրինակ բախէ ձայն քարոզ լուսոյ 'ի դուռն լսելեաց, այսպէս ծագել ճրագի 'ի դուռն բբաց. որպէս և գիրք ընկեր ձայնի ։ Զի մի են ճրագ և հաւ, որպէս Եղիա և Յովհաննէս. հաւ լսելի առնեն մեզ ձայնիւն իւրեանց, խորհուրդ ձայնի յարուցչին մերոյ. և ճրագ 'ի ծագել իւրում ցուցանէ մեզ զխորհուրդ լուսոյ լուսատուին մերոյ ։ Վասն այսորիկ 'ի մէջ երկոցունց կափեցին զխաւար. խորհուրդ Հօր և Որդւոյ, զի կոճոպեցին զչարութիւն. և խորհուրդ մարգարէից և առաքելոց, զի յերկոցունց կողմանց արեգական զօրացեալ լինին ։

Այլ տես դու զի և ճրագ յայտ առնէ այլոց բերանոյն իւրոյ, թէ խորհուրդ է նա Եղիայի, որ այրեաց զչարսն լեզուաւ իւրով ; և պատժեցոյց զնոսա 'ի ջրոյ 'ի կիզուծս բանի իւրոյ : Նա և հաւ խօսի 'ի լռութե գիշերոյ . խորհուրդ է Յովհաննու' որ քարոզէր 'ի լռութեան անապատին . այլ ընդ գալ ճրագին ընդ երեկոյս, ոչ գտանի ընդ նմա հաւ' որ խօսի ընդ առաւօտսն, այլ ընդ ձայն լուսանալոյն գտեալ լինի ճրագն երեկոյին, զի վասն գալստեանն Եղիայի վկայեսցէ . զի եղև խորհրդիւ ընդ Յովհաննէս :

Արդ ձայն Յովհաննէս է . այլ բան' որ գնայ 'ի մէջ ձայնի, տէր մեր է : Արդ ձայնն զարթոյց զնոսա, ձայն աղաղակեաց և դարձոյց զնոսա, և բանն զպարգևս իւր բաշխեաց նոցա . ըստ մեղաց սոյնպէս և խրատ : Փոքր մի ամբարշտեցան, սակաւիկ մի խրատեաց զնոսա : “Եւ կոտորեսցէ, ասէ, զոստս անտառին փայտատով” ասաց Եսայի . զոստս և ոչ զարմատս : Արդ զի լցաւ չափն մեղաց նոցա, եկն Յովհաննէս և խլեաց հան զարմատս ծառոյն : “Ահա աւասիկ հասեալ է, ասէ, տապար առ արմին ծառոց” . զայն' զոր Եսային եթող : Եւ երբ եղև այս . այլ 'ի ծագել ճշմարտին, այն' որ անուանեցաւ 'ի գաւազան և 'ի ծաղիկ, և հանգեաւ 'ի վերայ նորա Հոգին, այն' որ եւթն մասամբք կոչեցաւ :

“Ես, ասէ, և Հայր քո տառապեալ սիրտ'իւրերան գնայաք և խնդրէաք զքեզ” : Եւ ընդդէմ այսր բանի ասէ “Ի տան հօր իմոյ պարտ է ինձ լինել” : Եւ զի խնդրէին զնա, զի խղճէին թէ գուցէ սպանին զնա . այլ իբրև երկեմեանն էր նա, զայս խորհեցան առնել ընդ նմա հանդերձ Հերովդիաւ արքայիւ իւրեանց : Եւ զի զհանդերձ ստևեղէն զգեցեալ էր Յովհաննէս, զի չև ևս էր կտրեալ սուրբ ոչխարին մերոյ :

Եւ զի ասէ . “Ի քարանց աստի յայսցանէ կարող է Ա̃ծ յարուցանել որդիս Աբրահամու” . այս ինքն յերկրպագուաց քարանց և փայտից : Իբրև զայն' զի ասէ “Հայր ազգաց բազմաց եդու զքեզ” : Պահեաց Յովհաննէս զանձն իւր յամենայն մեղաց . զի զայն մկրտելոց էր, որ առանց մեղաց էր : Մի՛ զարմանար,

Յովհաննէս, զի մկրտես դու զիս. ուր մկրտութիւն իւրոյ 'ի կնոջէ կայ ինձ ընդունել: "Զի յաւուրն, ասէ, պատանաց իմոց պահեսցէ զայդ": Եւ մահն նորա մկրտութիւն կոչեցաւ: Խօսեցաւ Եղիազար զԵրեփեկայ 'ի վերայ աղբեր ջրհորոյն. Յակոբ զՀռաքէլ 'ի վերայ աղբեր ջրհորոյն. Մովսէս զՍեփորա 'ի վերայ աղբեր ջրհորոյն: Արդ ամենեքեան սոքա յօրինակ եղեն տեառն մերոյ, զի խօսեցաւ զեկեղեցի իւր 'ի մկրտութեան անտի Յորդանանու: Զոր օրինակ եցոյց յականէ Եղիազար Երեփեկայի զՍահակ տէր իւր, մինչ դեռ գայր 'ի դաշտի անդ ընդ յառաջ նորա, սոյնպէս և Յովհաննէս եցոյց յականէ Յորդանան գետոյ զփրկիչն մեր: "Ահա աւասիկ սա է գառն այ̃. սա է որ գայ բառնալ զմեղս աշխարհիս":

ԳԼՈՒԽ Դ.

"Եւ ինքն Յիսուս էր, ասէ, ամաց իբրև երեսուն 'ի ժամանակին իբրև եկն նա կնիք առնուլ 'ի Յովհաննէ": Եւ այս վասն ամօթոյ մարկիոնեանցն. զի եթէ մարմին ոչ զգեցաւ, ուր մկրտութիւն զի՞ մերձենայր. զի ածեղէն բնութիւն մկրտութեան չէ՞ր կարօտ. և զի երեւմնեմի էր նա, և զի զմարդկութեանն նորա յայտարար: Եւ զի ասէ "Թող տուր այժմ, զի կատարեսցուք զարդարութիւնս ամենայն" զոր ընկալցին փրկիչք և թագաւորք օծումն և օրէնս 'ի քահանայից: Զոր օրինակ զգեցաւ նա մարմին, և երևեցաւ նա իբրև կարօտեալ, սոյնպէս մերձեցաւ և առ մկրտութիւն. և զի վկայեսցէ վասն ճշմարտութեան իւրոյ. առաւել ևս զի մկրտութեամբն իւրով սահմանեսցէ զնա. յայնմիկ՝ զի դարձաւ մկրտեաց զայն՝ որ 'ի Յովհաննէս մկրտեալ էին: Ցոյց և յայտ արար՝ թէ մինչև առ նա միայն պաշտեաց զնա, զի ճշմարիտ մկրտութիւն 'ի ձեռն նորա յայտնեցաւ. այն՝ որ արդարացոյց զնա 'ի պատուհասից անտի օրինացն:

Եւ զի ասէ "Թող տուր այժմ". զի մի մնացէ նա 'ի գաւիթ իւր իբրև զփող. և զի յամօթ արասցէ ըզփարիսեցիսն, զի հպարտացեալ էին և արհամարհէին

զմկրտութիւն Յովհաննու . իբրու յարգէ դարձեալ զխոնարհութիւն քարոզին իւրոյ իբր զայն՝ զի ասէ . "Ամենայն որ խոնարհ արասցէ զանձն իւր , բարձրասցի ,, ։ Եւ զի խոստովան եղև Յովհաննէս՝ թէ "Ոչ եմ ես արժանի լուծանել զխրացս կօշկաց նորա ,, , առ տէր մեր զաջն Յովհաննու , և եդ զնա 'ի վերայ գլխոյ իւրոյ ։ "Թոյլ տուր , ասէ , այժմ զի կատարեսցուք զարդարութիւնս ամենայն ,, ։ Քանզի Յովհաննէս գարշապար է օրինացն . օրէնք և մարգարէք մինչև 'ի Յովհաննէս , այլ Քրիստոս սկիզբն է Նոր կըտակարանացս ։ Զգեցաւ նա զարդարութիւն հնոյն մկըրտութեան , զի ընկալցի նա զկատարած օծման , և տացէ զնա չի և բովանդակ աշակերտացն իւրոց . զի ահա աւասիկ և զմկրտութիւն Յովհաննու օրինօքն հանդերձ սահմանեաց , և մկրտեցաւ նա արդարութեամբ ։ Քանզի առանց մեղաց էր նա , այլ մկրտեաց նա շնորհօք զի մեղաւորք էին ։ Լուսցոյց զօրէնս արդարութեամբ իւրով , և դադարեցոյց զմկրտութիւն մկրտելովն իւրով ։

Բայց դարձեալ "Կատարեսցուք զարդարութիւնս ամենայն ,, , զի Յովհաննէս էր 'ի դուռն բակին . զի 'ի մէջ նորա ամփոփեալ ժողովեալ էր հօտն իսրայէլացոց ։ Մուտ նա առ հօտն անդր ոչ իշխանութեամբ , այլ արդարութեամբ ։ Եւ վկայեաց Հոգին որ հանգեաւ 'ի վերայ նորա 'ի մկրտել նորա՝ թէ նա է հովիւ . զի ընկալաւ նա 'ի ձեռն Յովհաննու զքահանայութիւն , զարքայութիւն և զմարգարէութիւն ։ Արդ առ նա զարքայութիւն տան Դաւթի ծննդեամբն , որ եղև 'ի տանէ Դաւթի . և առ զքահանայութիւն տանն Ղևեայ երկրորդ ծննդեամբն մկրտութեամբն որդւոյն Ահարոնի ։ Արդ այն՝ որ հաւատայ թէ ծնունդ երկրորդ լինի նմա յաշխարհի , ոչ երկմտեալ լինի յայնմանէ թէ վերջին ծննդեամբ մկրտութեամբն Յովհաննու առ նա զքահանայութիւն Յովհաննու ։ Եւ քանզի բազումք մկրտեցան անդ յայնմ աւուր , էջ հանգեաւ Հոգին 'ի վերայ միոյն , զի որոշեալ լիցի յամենեցունց նշանով , այն՝ որ ոչ էր որոշեալ յամենայն մարդոյ տեսլեամբ ։ Եւ քանզի 'ի մկրտելն նորա էջ Հոգին , վասն այսորիկ մկրտութեամբն նորա տուեալ լինէր Հոգին ։

«Յայն ժամայն, ասէ, Հոգին սուրբ վարեաց հան զնա յանապատ, զի փորձեսցի նա 'ի սատանայէ»: Եւ վասն էր մինչ յերեսուն ամ անդր ոչ փորձեաց զնա. այլ քանզի նշան յերկնից յայտնի 'ի վերայ ծնութե̃ն նորա ոչ էր տուեալ, և դուզնաբար իբրև զայլս երևէր նա, և վկայութիւս մեծամեծս 'ի մէջ ժողովրդեան նորա ոչ ունէր, լռեաց նա 'ի փորձելոյ՝ մինչև եղև սկիզբն լինելոյ այսմ: Այլ իբրև լուաւ նա թէ «Ահա՛ աւասիկ գայ գառնն Այ̃, և սա է որ բառնայ զմեղս աշխարհի», յայտնութե̃ մեծի կայր նա. սակայն համբերէր՝ մինչև մկրտեսցի՝ տեսանել թէ իբրև զկարօտեա՞լ մկրտի:

Այլ իբրև ետես՝ թէ իբրև զլցուցիչ կարօտութե̃ էջ 'ի ջուրս անդր, և ոչ եթէ իբրև զկարօտեալ եկն նա առ մկրտութի̃ անդր, 'ի փայլիւն լուսոյն՝ որ լինէր 'ի վերայ ջուրց, և ձայնիւն՝ որ եղև յերկնից, եդ 'ի մտի իւրում և ասէ. եթէ մարտիւ փորձանաւ ոչ փորձեմ զնա, ոչ կարեմ ճանաչել զնա: Այլ քանզի ոչ էր արժան բարերարին հակառակ կալ ընդդէմ կամացն այնորիկ՝ որ եկն փորձել զնա, նա և համարձակէր ոչ վարել զնա, յայնմիկ՝ զի ոչ գիտէր թէ որպէս փորձեսցէ զնա. մինչև հանդերձեաց պատրաստեաց տէր մեր զանձն իւր 'ի մարտ պատերազմի, և զգեցաւ զօրութի̃ Հոգւոյ ելանել նահատակել, ոչ մերձեցաւ առ նա փորձել զնա:

«Յայն, ասէ, վարեաց զնա Հոգին սուրբ յանապատ, զի փորձեսցի 'ի սատանայէ»: Այլ վասն քաղցրութե̃ իւրոյ հակառակ կալ ընդդէմ նորա ոչ կամեցաւ, թէ գուցէ լքեալ լինիցին ականջք լսողացն կարծիւք: Այլ ոչ կարէր նա դիմակալ լինել մարտին նորա, վասն այսորիկ ոչ կամեցաւ նա երթալ ընդդէմ փորձչին իւրոյ. առաւել ևս՝ զի մի եղիցի տեղի ուրացելոցն յասել՝ թէ կրտսերագոյն է Հոգի քան զՈրդի: Զի եթէ 'ի մարտ պատերազմի նա հանէր զնա, և ոչ 'ի պատիւ և 'ի հանգիստ, զիա՞րդ ոչ անկանէր խեղճ 'ի խորհուրդս մաքառողաց 'ի քննել զայս: Զի՞ եթէ էր կրտսերութի̃ Հոգւոյն քան զՈրդի, զիա՞րդ Հոգւոյն տուեալ լինէր իշխանութի̃ հանելոյն զնա յանապատ. զի ահա աւա-

ակն իբրև իշխան երևեցաւ 'ի հանել զնա ։ Եւ զի հան վարեաց զնա Հոգին յանապատ փորձել 'ի սատանայէ , այն իսկ է զի ասէ ․ "Ոչ ոք կարէ մտանել 'ի տուն հզօրին և աւար հարկանել զգանձս նորա , եթէ ոչ նախ զհզօրն կապիցէ ; և ապա զգանձս նորա աւար հարկանիցէ „ ։ Արդ կապեաց նա զհզօրն , և յաղթեաց նմա 'ի ներքս 'ի տան իւրում ․ և ապա սկիզբն արար քարոզութեան իւրում , և հորդեաց մեզ ճանապարհ պահոց ․ զի նովաւ յաղթեսցուք խորամանկութեանց նորա ։

"Եւ յետ քառասուն աւուր , ասէ , զի պահեր նա՝ քաղցեաւ „ ․ այս ինքն վասն յաղթութեան ախոյանին , զի առաջի ամենայնի խայտառակեսցէ զպարտաւորութիւն նորա ․ և ուսոյց մեզ բանիւք իւրովք , զի յայսմ ևեթ իցեմք քաղցեալ բանին տեառն ։ Իսկ ընդէ՞ր վասն Մովսիսի և Եղիայի ոչ ուրեք յայտ առնէ՝ թէ քաղցեան ․ և վասն տեառն մերոյ գրեալ է՝ թէ քաղցեաւ ։ Այլ զի յամօթ արասցէ զայնոսիկ՝ որ ասեն , եթէ ոչ առ մարմին ․ և զի տացէ պատճառ սատանայի 'ի մերձենալ առ նա , 'ի փորձել զնա , յասել անդ նորա "Ասա դու քարանցս այսոցիկ՝ թէ հաց լիցին „ ։ Եւ զի ոչ արար , զի մի տացէ զցանկութիւն մեղաւորին ․ և 'ի խոզս անդր՝ զի ետ նմա՝ որպէս և խնդրեաց , ոչ եթէ նմա ինչ կամս արար , այլ վասն նշանաց զի արասցէ անդ ․ զի ոչ ոք կամեցաւ ելանել առ նա 'ի գաւառէ անտի գերգեսացոց , մինչ առ արար նա անդ սքանչելիս ։

Եւ զի ոչ ամաչեաց նա յառաջին փորձանաց անտի , ած հան կացոյց զնա 'ի վերայ անկեան տաճարին ։ Եւ ահա ցարդ ևս կանկուն կայ տեղին , և տաճարն կործանեալ է , որպէս ասաց ինքն ․ ասէ "Մի մնայցէ 'ի նմա քար 'ի քարի վերայ „ ։ Եւ տեղին՝ յարոյ 'ի վերայ եկաց նա՝ իբրև նշան պահեցաւ ։ "Ասէ ցնա ․ արկ զքեզ 'ի վերուստ 'ի վայր , զի գրեալ է՝ թէ պահեսցեն զքեզ , զի մի երբէք հարցի զքարի ոտն քո „ ։ Ո՛վ փորձիչ , թէ 'ի վերայ նորա՞ կատարի տաղմոսն ․ ո՞չ ահա գրեալ է անդէն , ասէ ․ "Ի թիկնամէջս իւր ընկալցի զքեզ „ ։ Արդ ոչ ինչ մարթ է անկանել թռչնոց , զի օդքն իբրև զերկիր հաստա-

տուն են 'ի ներքոյ թևոց նորա . կամ ոչ ահա գարձեալ գրեալ է, թէ "Ի վերայ օձից քարբի գնասցես դու ,, : Այլ զայն ինչ՝ որ ինչ պիտոյն էր նմա՝ ուսաւ 'ի գրոց անտի, և որ ինչ վնաս էր՝ եթող . սոյնպէս և հերեսիոտայքն առնուն ինչ 'ի գրոց 'ի պէտս գայթագղութեան իւրեանց . և թողուն զայն՝ որ յանդիմանէ զմոլորութիւն նոցա . զի յայնմիկ յայտ արասցեն՝ թէ այն աշակերտք այնր վարդապետի են :

"Դարձեալ առ զնա ած հան 'ի լեառն մի բարձր յոյժ, և ասէ ցնա . իմ են այս ամենայն թագաւորութիւնք ,, . և յայսմիկ մոլորին և կարծեն եթէ ինքնութիւն ունի նա : Եւ որպէս ասացի, բամ զոր ինչ վնասուն է՝ թողուն և զայլն առնուն : Եւ եթէ զի ասաց նա, քա իմ են, տան նմա ինքնութիւն . իբր ոչ եթէ 'ի նոցանէն ինչ ուսանիմք մեք զճշմարտութիւն, այլ այնու՝ որով կարծեն թէ յաղթեն, նովին առաւել ևս պարտաւորին : Թէ այդպէս է, յորժամ ասէ զկնի նորա՝ թէ "Ինձ տուեալ է ,, , 'ի միտ առցեն թէ այլ է արարիչ նոցա . և նմա տալով տուաւ : Եւ զի ասէ . "Իշխանութիւն ունիմ ես 'ի վերայ այսր ամենայնի ,, . ոչ եթէ բնութեամբ իւրով ունի զիշխանութիւն, այլ զի նոքա կամեցան . զի ասէ այսպէս . "Որում պատրաստէք զանձինս ձեր 'ի ծառայութիւն հնազանդութեան, ծառայ էք նորա ,, . և այլ ևս :

Իսկ զի ասէ "Անկցիս 'ի վերայ երեսաց քոց, և ինձ խոնարհ երկիր պագցես ,, . զի յայտնի լիցի ամբարտաւանութիւն հպարտութեան այնորիկ՝ որ 'ի սկզբանէ իսկ կամեցաւ լինել ած : Մարմին տեառն մերոյ յանդիմանէ զամենայն մարմին . զի եթէ մերկ ոք իջանէ 'ի պատերազմ, պարտաւորի նա . զի զգեցաւ նախ յառաջագոյն զզէն պահոցն, և ապա էջ սա 'ի մարտ պատերազմի : Արդ զզէն հաստատութեան պիտոյ է ընդդէմ այնորիկ՝ որ ձգէ զնետսն զմուխսն զմեքենաւորս : "Արա, ասէ, քարանցս այսոցիկ՝ թէ հաց լիցին ,, : Զգեցաւ նետ, որ ուսուցանէ զլիութիւն, զի խտղտիցէ զնա 'ի քաղցութեան անդր, զի մտցէ 'ի փորձանս : Այլ ոչ կամէր նա տիրել քաղցութեան . զի ինքն քաղցութեան զպահս իբրև զպատեանս զգեցեալ էր : Դարձաւ քաղցութիւն ձգեաց 'ի նա նետս լիու-

թէ խուրոյ. զի ուսուցէ նմա զայն՝ որ ուսուցանէրն զարտաքին լռութին, թէ գոյ և ներքոյ լռութի՝ որ ոչ երևի: “Ոչ եթէ հացիւ միայն կեցցէ մարդ, այլ ամենայն բանիւ՝ որ ելանէ 'ի բերանոյ այ”: Արդ այն՝ որ եկն փորձել, փորձեցաւ. և որով եկն ուսուցանել, յանդիմանեցաւ: “Եթէ որդի ես այ, ասա քարանցս այսոցիկ՝ թէ հաց լիցին առ այժմ”: Բերանն սատանայի դատեաց զնա, թէ որ յայ է՝ կարէ զքարինս հաց առնել:

Արդ ուսոյց զնա տէր մեր նովին իսկ բանիւ նորին. զի եթէ կարէ ած զքարինս դարձուցանել առնել հաց, ուսիր փորձիչ, զի և առանց հացի կարող է ած լցուցանել: Եթէ զքարինս կարէ դարձուցանել 'ի կերակուր, կարէ նա և զքաղցութի դարձուցանել 'ի լռութի: Զի այն՝ որ դարձուցանէ զընութի ոչ ուտելի՝ կերակուր, ոչ է նմա դժուարին դարձուցանել զընութի քաղցութէ 'ի լռութի. ոչ եթէ զի լցուսցէ զնա յայլ ընչէ, այլ զնոյն քաղցութին գլխովին 'ի լռութի արասցէ. որպէս և զքարն 'ի գըլխովին ասաց փորձիչն՝ եթէ արասցէ հաց: Արդ 'ի լերին անդ արար կոխան տէր մեր զցանկութի փորձչին. և առ ընկեաց 'ի խոնարհ, զի կոխեսցեն զնոսա հեթանոսք, որ կոխեալն լինէին երբեմն 'ի նոցանէ. և հան փոխանակ նոցա զամենայն բարութիւնս, զի թագաւորեսցեն 'ի վերայ ամենայնի, այնք՝ որ երբեմն կոխան լինէին յամենայնէ:

Զոր օրինակ Ջուրքն որովք հեղձուցանէրն Փարաւոն զմանկտին, նոքիմբք հեղձաւ. սոյնպէս և Գողիադ սրովն որով սատակէր զբազումս, նովին սրով եհատ Դաւիթ զգլուխ նորա: Մովսէս խաչին խորհրդով հերձ պատառեաց զծովն, և Դաւիթ վիմին խորհրդով հերձ կործանեաց զԳողիադ, և տէր մեր բանիւ բերանոյ նորին պարտաւորեաց զսատանայ մինչ դեռ փորձէրն զնա: Փարաւոն Ջուրբք՝ որով հեղձուցանէր՝ հեղձաւ. և Գողիադ սրովն որով կոտորէրն՝ սպանաւ. և սատանայ մարմնովն՝ որով կորուսանէր՝ նովին յաղթահարեցաւ և յանդիմանեցաւ՝ թէ չէր իսկ ած: Ի խորհուրդ երիցն մկրտութենց յոր մկրտեցաւ, փորձեցաւ փրկիչն: “Ասէ. ասա քարանցս այ-

տոցին՝ թէ հաց լիցին„ . զի սա է մնուցիչ ծննդեանն ։ Եւ դարձեալ . "Զթագաւորութիւնս և զփառս նոցա քեզ տաց„ . զի սա է աւետիք օրհնաց ։ Եւ դարձեալ . "Արկ զքեզ 'ի վերուստ 'ի վայր„ . զի սա է իջանել մահուն ։ Այլ նա միով իւիք յայտնանէ ոչ խաբեցաւ , և 'ի խնդացուցանելն զնա ոչ ինչ ուրախ եղև նա , և 'ի զարհուրեցուցանելն զնա նա ինչ ոչ տագնապեցաւ . այլ 'ի ճանապարհի իւրում գնայր նա , և զկամս հօր իւրոյ կատարէր նա ։

Արդ զայս ամենայն զոր կարգեաց եդ նա առաջի կենդանւոյն , նմա ոչ եթէ նեղութիւք ինչ եղեն . զի նեղութիւք մեր անդորրիչք են մեր , և մեք ամենեքին 'ի չարչարանաց անտի նորա զհանգիստ ընդունիմք ։ Զինչ երկնչել էր այնմիկ՝ որ գիտէր. թէ ոչ կարէ լինել վնասեալ ։ Քամէ 'ի ժամ ծնանելն 'ի մեզ երկիւղ . այնուիկ՝ զի ճշմարիտ գիտեմք մեք թէ կարեմք լինել վնասեալ ։ Նա և այնոքիկ՝ որ պղծեն զնա ծննդեամբն , ոչ գիտեն զի մոլորեալ են . և ոչ կարեն ուսանել , զի հպարտացեալ են . զոր օրինակ և ոչ երկնչին , զի ոչ ապաշաւեն . զի աշխարհս այս յորում եկն նա , ոչ էր սա որոշեալ յարգանդէ անդի , զի ամենայն պղծութիւք գոն 'ի սմա ։

Նա և 'ի դժոխս դարձեալ , որ քան զամենայն ատելի և պիղծն է , մուտ նա . և մանաւանդ վասն մարմնոց զի ասացեալ է՝ թէ տաճար են ածութեն ։ Արդ ոչ ինչ աղտեղութի է այ բնակել 'ի տաճարս իւր . այլ քանզի կամեցաւ նա զմահ սպանանել , և զհետս նորա սպառել , սկիզբն արար յարմատոյ անտի իւրացն . զի ուր է մարմինն՝ անդ է մահն , և արմատք մարմնոյ արգանդ է . զի անդ առնէ սկիզբն ստեղծանելոյ , և անդէն սկսանի մահ ապականել զնա ։ Զի բազում կանայք են , զի յամենեանն յորում յղեանն՝ և 'ի նմին մեռանին մանկունք իւրեանց . և երկնեն և յերկրորդումն և յերրորդումն , և այլ ևս ամսոյ ամսոյ ։ Արդ զի մահ յարգանդ սկըսանի , 'ի դժոխս կատարէ , զիա՞րդ կարէր այն՝ որ որսորդն է մահու՝ եթէ ոչ յարգանդէ սկիզբն առնել գնալ ընդ նմա , և մինչև 'ի կատարած դժոխոց արգելանին նորա ։

Արդ 'ի միտ առ դու որպէս ազգովք կամեցաւ կենդանին յանդիմանել զմահ . և եղև նա սաղմ, և յարգանդի անդ ոչ կարաց ապականել զնա . և մանուկ, և 'ի ծննդեան նորա ոչ կարաց ամաչեցուցանել զնա . և տղայ, և յուսման անդ նորա ոչ կարաց յողդողդել զնա . և երիտասարդ, և ցանկութիւնք նորա ոչ կարաց գայթագղեցուցանել զնա . և գիտուն, և խորամանկութիւնք ոչ կարաց յաղթահարել զնա . և վարդապետ, և 'ի ճշմարտութեան նորա ոչ կարաց յանդիմանել զնա . և զգուշացեալ, և պատուիրանօք նորա ոչ կարաց խոտորեցուցանել զնա . և պնդակազմ, և 'ի սպանանելն զնա ոչ կարաց զարհուրեցուցանել զնա . և մեռեալ, և 'ի զգուշանալն գերեզմանին ոչ կարաց պահել զնա : Ոչ հիւանդացաւ նա, զի բժիշկ էր . և ոչ մոլորեցաւ, զի հովիւ էր . ոչ յանցեաւ, զի ուսուցիչ էր . և ոչ գայթագղեցաւ, զի լոյս էր : Այս ճանապարհ կատարեալ զոր հորդեաց Քրիստոս եկեղեցւոյ իւրոյ 'ի սկզբանէ յղանալոյն մինչև 'ի կատարած յարութեան :

Արդ եթէ եկեղեցի մարմին նորա է, որպէս ասաց Պաւղոս վկայ նորա, հաւատա դու՝ եթէ եկեղեցի նորա գնաց այսու ամենայնիւ առանց ապականութեան : Զոր օրինակ դատապարտութիւն միոյ Ադամայ ամենայն մարմինք մեռան և մեռանին, սոյնպէս յաղթութիւն այսր միոյս մարմնոյս Քրիստոսի, ամենայն եկեղեցի եկեաց և կեայ : Այլ զոր օրինակ՝ զի ինքեանք մարմինքն մեղան, ինքեանք և մեռանին, և երկիր մայր նոցա անիծաւ, սոյնպէս վասն այսր մարմնոյ՝ զի սա ինքն է եկեղեցի որ ոչ ապականի՝ օրհնեցաւ երկիր սորա 'ի սկզբանէ . զի երկիր տաճարի մարմին է Մարիամայն՝ որ 'ի նմա սերմանեցաւ : Հայեա դու՝ զի և հրեշտակն որ եկն սերմանել զնա 'ի լսելիս նորա, 'ի ձեռն յստակ ձայնին այսպէս սկիզբն արար սերմանն . “Ողջոյն ընդ քեզ, ասէ, օրհնեալդ 'ի կանայս „ : Կնքեաց և Եղիսաբէթ զձայն երկրորդ . “Օրհնեալ ես դու 'ի կանայս „ ասէ : Որպէս զի յայտ լիցի, եթէ վասն առաջին մօրն՝ որ անիծաւ, վասն այսորիկ մայրն երկրորդ օրհնեալ անուամբ յորջորջեալ լինէր :

Իսկ զի ասէ «Ի բաց գնաց 'ի նմանէ առ ժամանակ մի», մինչև պատրաստեսցի՝ զի չարախօսութիւն նախանձուն դպրաց խափանեսցէ զյաղթութիւն նորա։ Այլ որպէս պարտաւորեցաւ նա 'ի սկզբանն, նոյնպէս պարտաւորեցաւ նա 'ի կատարածի. զի մահուամբն իւրով յաղթեաց նա առաւել։ Եւ զի ասէ «Յետս երթ, սատանայ», և գժտեցաւ նմա. զի ստեաց նմա անչափ և ասէ «Իմ են թագաւորութիւնք», և ոչ ամաչեաց նա յայնմանէ, զի ասէ, «Ած տիրէ 'ի վերայ ամենայն թագաւորութեանց մարդկան, և ում կամի տայ զնա»։ Արդ կշտամբեաց զհպարտութիւն ամբարտաւանութեան նորա բանիւ իւրով. և այլ ոչ ևս կարաց կալ նա առաջի բանին նորա։ Զի յայտ արասցէ վասն խրատոյ իւրոյ ճշմարտութեան, և իմաստնացուսցէ զհաւանեալսն իւր. զի ճշմարիտ 'ի տուչէ անտի ընկալցին զամենայն բարութիւնս։ Եւ զի ասէ «Եկին հրեշտակք և պաշտէին զնա», զի տացէ մեզ օրինակ՝ թէ զկնի մկրտութեան մտանեմք 'ի փորձանս, և յետ փորձանացն ապա և յարքայութիւն երկնից։

Իսկ զի լուան աշակերտքն Յովհաննու մինչ դեռ խօսէր նա ընդ տեառն մերոյ, և թողին զվարդապետն իւրեանց և գնացին զկնի տեառն մերոյ։ Զի ոչ կարէր ձայնն առ ինքն ունել զաշակերտսն. և վասն այսորիկ առ բանն առաքեաց զնոսա։ Պարտ իսկ է յերևել լուսոյն արեգականն, անցանել լուսոյ ճրագին։ Նա և վասն այնորիկ իսկ կաց մնաց Յովհաննէս, զի սահմանեսցէ զմկրտութիւնս իւր մկրտութեամբ տեառն մերոյ. և ապա մեռաւ, և 'ի մեռեալս անդ նա եղև առաքինի և քարոզ. որպէս և յորովայնին մօրն իւրոյ նշան դժոխոց։

Իսկ զի ասէ «Գտաք մեք զՔրիստոս», յայտ արար՝ թէ կարգէր գայր համբաւ նորա 'ի ժամանակէ անտի մոգուցն. և ընբռնեցաւ նա 'ի ձեռն Յովհաննու զի մկրտեաց զնա, և 'ի ձեռն վկայութեան Հոգոյն։ Եւ շրջեցաւ դարձեալ եղև աներևոյթ քառասնօրեայ պահովքն իւրովք. և վասն այսորիկ փափաքեալ էին անձինք տրտմելոցն 'ի համբաւն անդր նորա. զի անօթք նորա էին. իբրև զայն՝ զի ասէ. «Ընտրեցի ես ըզ-

ձեզ յառաջ քան զլինելն աշխարհի,,։ Եւ զի ընտրեաց զգալիլեացիսն ժողովուրդ անխրատ, զի մարգարէքն կոչեցին զնոսա ժողովուրդ անխրատ և բնակիչս խաւարի. և եթէ լոյս տեսին. զի յամօթ արասցէ զօրէնսգէտսն։ “Ընտրեաց, ասէ, զյիմարս աշխարհիս, զի յամօթ արասցէ նոքօք զիմաստունս։

“Ի Նազարեթէ մարթ ինչ է, ասէ, թէ բարի ինչ ելցէ,,. այս ինքն՝ զի ՚ի տանէ Դաւթի և ՚ի Բեթղահէմի, որ էին գրեալ՝ թէ ծնանելոց է. և նա բղխեցոյց զնա ՚ի Գալիլիէ, և ծագեցոյց զնա ՚ի Նազարեթ։ “Ի Նազարեթ, ասէ, մարթ ինչ է թէ բարի ինչ ելցէ,,. քանզի մարգարէն ՚ի Բեթղահէմէ ասաց, եթէ յառնելոց է իշխան և առաջնորդ։ Լուաւ Նաթանայէլ՝ եթէ ՚ի Նազարեթէ է, վասն այսորիկ ասաց՝ առաջնորդ բարի մարթ ինչ է եթէ ՚ի Նազարեթէ ելցէ, ինչ՝ որ ոչ է գրեալ։ Վասն այսորիկ իբրև ետես զնա տէր մեր՝ եթէ վկայութիւն բարիոք վկայեաց ՚ի վերայ նորա, զի ոչ եթէ իբրև զդպիրսն էր՝ որ նենգէին զընթերցուածսն և հակառակին, զի զկնի կամաց իւրեանց ածցեն զմեկնութիւն նոցա, “Ահա, ասէ, արդարև դպիր իսրայէլացի՝ յորում նենգութիւն ինչ ոչ գոյ,,։ Զի յառաջ քան զկոտելն հարց նա՝ եթէ մարթ ինչ է ՚ի Նազարեթ ելանել առաջնորդի, որպէս և ՚ի Բեթղահէմէ։ Այլ իբրև ետես աչօք իւրովք, ոչ եղև զլացող իբրև զընկերսն, և ոչ եհարց ինչ իբրև զայլսն. այլ խոստովան եղև՝ թէ նա է Քրիստոսն, և գիտաց՝ թէ ՚ի վերայ նորա կատարին Բեթղահէմին և Նազարեթին։ զի ՚ի Բեթղահէմէ առաջնորդ ել, և ՚ի վերայ գալիլիացւոց լոյս ծագեաց։ “Ժողովուրդ, ասէ, որ գնային ՚ի խաւարի, լոյս մեծ ետես,,։

Կարգք և տօն առաքելոցն տեառն։

Էին որսորդք ձկանց և եղեն որսորդք մարդկան, որպէս և գրեալ է. “Ահաւասիկ, ասէ, առաքեմ զորսորդս և որսայցեն զնոսա յամենայն լերանց, և յամենայն բարձանց,,։ Զի եթէ իմաստունս առաքեալ էր, կամ հաւանեցուցին և կալան, կամ խաբեցին

և ընթանեցին ; և եթէ մեծատունս դարձեալ առաքեալ էր , կամ պատրեցին կերակրեցին , կամ կաշառեցին և տիրեցուցին . և հզօրս դարձեալ սոյնպէս , կամ զարմացուցին զօրութբ իւրեանց , կամ բռնադատեցին բռնութբ իւրեանց :

Այլ առաքեալքն և ոչ մի յայսցանէ ունէին , Ըմաւոնիւ լուսոյ ամենեցունց . տագնապեալ էր , զի 'ի ձայնէ աղախնոյ միոյ երկեաւ . աղքատ էր , զի և զհարկն անկամ ընդ անձին իւրում ոչ եղև բաւական տալ զկէս սատերին : "Եւ ոչ ոսկի , ասէ , և արծաթ իմ ոչ գոյ ,, : Եւ տգէտ էր , զի ոչ իբրու ուրացաւն՝ գիտաց խորագիտութբն փախչել : Արդ ելին որսորդք , և յաղթեցին հզօրաց մեծատանց և իմաստնոց . զարմանք մեծ . իբրև տկարք՝ զհզօրս ձգէին յուսումն վարդապետութե , և ոչ բռնութբ . և իբրև աղքատք՝ զմեծատունս ուսուցանէին . և իբրև տգէտք՝ զիմաստունս և զխորագէտս աշակերտէին : Տեղի եա իմաստութի աշխարհիս այնմ իմաստութե , զի նա ինքն է իմաստութի իմաստութեց :

ԳԼՈՒԽ Ե

"Եղեն , ասէ , հարսանիք 'ի Կանա գալիլեացւոց ,, : և իբրև եկն տէր մեր անդր , ասէ ցնա մայրն . "Գինի ոչ ունին ատր : Ասէ ցնա Յիսուս . զի՞ կայ իմ և քո կին դու . չէ իմ ժամանակ հասեալ 'ի վերայ ,, . այս ինքն ես բռնի [1] ոչ երթամ 'ի վերայ նոցա . այլ գիտասցեն թէ հատաւ գինի , և խնդրեսցեն ամենեքեան ընպել . որպէս զի մեծասցին պարգևք նորա յաչս նորա [2] : Փութալով փութացաւ , վասն այնորիկ ուսոյց նմա : Կամ չէ իմ ժամանակ հասեալ 'ի վերայ , այս ինքն՝ ժամանակ մահու նորա . քանզի արբեալք էին . և եթէ բռնութբ ընկեցեալ էր ըղպարգևս իւր 'ի վերայ նոցա , ոչ արդեօք ապրեալ լինէր նա 'ի չարչարանացն . զի սկիզբն դեռ ևս էր աւետարանութեան նորա :

1 Յօրինակին 'ի լուսանցսն բռնութբ :   2 Յօր. 'ի լուսանցսն ձօրն :

Իսկ զի խորհեցաւ Մարիամ՝ թէ պատճառք սքանչելեաց նորա փառք և պատիւ լինիցին նմա 'ի ժողովս նոցա, վասն այսորիկ "Չէ իմ ժամանակ հասեալ 'ի վերայ"։ Զի ոչ եթէ որպէս կարծեաց նա՝ արար ինչ, այլ զխորհուրդս նորա կամեցաւ խափանել։ Այլ սքանչելեացն զոր առնելոց էր, տեղեակ էր նա. "Զամենայն ինչ, ասէ, պահէր 'ի սրտի իւրում". և "Որ զինչ ասիցէ ձեզ որդեակդ իմ, արասջիք"։ Ետես նա՝ թէ հատաւ գինին, իմացաւ եթէ ոչ վայրապար ինչ եղև երթալն նորա 'ի հարսանիս անդր։ Յոյնն գրէ, թէ "Բազմեալ էր, և հատաւ գինին։ Եւ իբրև ասաց նմա, ասէ, մայրն՝ ասէ ցնա Յիսուս. չէ իմ ժամանակ հասեալ 'ի վերայ". այս ինքն այս հասեալ է։ Ուսաւ Մարիամ 'ի նմանէն՝ թէ նշան առնելոց էր անդր. և իբրև յանդիմանեաց Յիսուս զերկմտութիւն * նորա, ասէ ցսպասաւորսն. "Որ զինչ ասիցէ ձեզ, արասջիք"։

Դարձեալ ասի, եթէ երկեաւ Մարիամ՝ զի 'ի գալն նորա պահանջին տեարքն հարսանեացն բերել գինի. և անարգեն զքեզ, ասէ, զի 'ի պատճառս քո լինին ծաղր. անարգանս, ասէ, արար մարդկանս. զի լսեն եթէ եկիր 'ի սպառել գինոյ նոցա։ "Ասէ ցնա. որդեակ՝ գինի ոչ ունին աստ։ Ասէ ցնա Յիսուս, զի՞ կայ իմ և քո, կին դու"։ Զի՞նչ չար ասաց։ Երկմտելով, ասեն, երկմտեաց 'ի բանէն նորա, այնու՝ զի ասաց "Գինի ոչ ունին աստ". վասն այսորիկ "Զի՞ կայ իմ և քո, կին դու"։ Զի լուաւ նա՝ թէ սքանչելիս առնելոց է նա անդ յասելն նորա ցնա, յայնմանէ՝ զի ասէ ցսպասաւորսն "Որ զինչ ասիցէ ձեզ որդեակդ իմ, արասջիք"։ Բայց դարձեալ, "Չէ իմ ժամանակ հասեալ 'ի վերայ". յետ առաքինութեան անապատին՝ 'ի վատթարել նորա զթշնամին, մուտ իբրև զնահատակ առաքինութեամբ գործել 'ի հարսանիս անդ սքանչելիս։

* Նորահաւատ մարդկանն զգուշացեալ հինք ոմանք 'ի հարց արևելեայց և արևմտեայց՝ երբեմն այսպէս անզգոյշ համարձակախօս եղեն զանարատ կուսէն, զոր ուղղեցին յետնոցն զգուշաւոր և քննութիւն 'ի բարգաւաճել հաւատոցս Քրիստոսի. զորոյն պատճառն և այլուր հատուցեալ է մեր։

Ընթացաւ Մարիամ լինել սպասաւոր կամացն նորա փոխանակ առաքելոցն. և զի ոչ էր նորա տեղին, ոչ հրամայելով և ոչ յառաջալով զբան նորա, յանդիմանեաց զնա՝ զի կարի փութացաւ. «Չէ իմ ժամանակ հասեալ 'ի վերայ». այս ինքն խնդրեսցեն ըմպել, և գիտասցեն ամենեքեան թէ հատաւ գինի, և ապա եղիցի նշան սքանչելեացն։ Սոյնպէս յետ յաղթութեան նորա 'ի դժոխոց իբրև ետես զնա մայրն, կամեցաւ իբրև զմայր գգուել զնա. և զի մինչև առ խաչն կարգեաց զնա Մարիամ, զի յայնմ օրէ հետէ ետ զնա Յովհաննու յասելն անդ իւրում «Կին դու, ահաւադիկ որդի քո. և պատանեակ դու, ահա աւադիկ մայր քո»։ Արգել զնա դարձեալ, զի մի մերձեսցի 'ի նա, զի յայսմ հետէ, ասէ, Յովհաննէս է որդի քո։

Ընդէ՞ր տէր մեր 'ի սկզբանն նշանաց իւրոց զբնութիւնն ջուրցն շրջեաց. այլ զի յայտ արասցէ՝ եթէ ածութիւն որ շրջեաց զբնութիւն 'ի մէջ Թակուկացն, նոյն շրջեաց զբնութիւն յորովայն կուսին. և 'ի կատարած նշանաց իւրոց զգերեզմանն եբաց, զի յայտ արասցէ՝ թէ ոչ լաւանայ 'ի վերայ նորա ագահութիւն մահու. Վասն այսց երկուց ծփանաց՝ ծննդեանն իւրոյ և մահու իւրոյ՝ կնքեաց և ստուգեաց, զի ջուրքն այն՝ որ ըստ բնութեան իւրեանց 'ի մէջ որթոյ փոփոխեալ լինէին, առանց բնութեան իւրեանց 'ի մէջ քարեղէն Թակուկացն փոփոխեցան. խորհուրդ մարմնոյ նորա, զի սքանչելապէս 'ի մէջ կնոջ յղացաւ նա, և զարմանապէս 'ի մէջ կուսին առանց առն ստեղծաւ նա։

Արդ 'ի ջուրց անտի արար գինի, զի հաւանեցուսցէ վասն յղութեան և ծննդեան իւրոյ՝ թէ որպէս եղև։ Վեց Թակոյկք կոչեաց 'ի վկայութիւն միոյ կուսին՝ որ ծնաւ զնա։ Յղացան Թակոյկք նորոգ, ոչ 'ի սովորութենէ իւրեանց. և ծնան գինի, և այլ ոչ ևս յաւելին ծնանել։ Սոյնպէս յղացաւ կոյսն և ծնաւ զԷմմանուէլ, և այլ ոչ ևս յաւել։ Ծնունդ Թակուկացն 'ի փոքրկութենէ 'ի մեծութիւն, և 'ի տկարութենէ յառաւելութիւն. 'ի ջուր ջուրց՝ գինիս անոյշ։ Բայց աստ 'ի մեծութենէ 'ի տկարութիւն, և 'ի փառաց յանարգութիւն։ Այլ աւազանքն այն

էին սրբութի՟ հրէից, և 'ի նոսա արկ տէր մեր զուսումն վարդապետութե՟ իւրոյ. զի յայտ արասցէ՝ թէ ըստ ճանապարհին օրինաց և մարգարէից եկն նա. և զի փոփոխեսցին ամենայն վարդապետութ՟ն նորա, որպէս 'ի ջրոյ անտի գինին ։

Այլ զի ասէ "Ամենայն մարդ զանոյշ գինին յառաջագոյն պաշտէ, և ապա զուռի"։ զի յայտ արասցէ թէ առաջինք շտեմարան էին. զի օրէնք 'ի ձեռն Մովսիսի տուաւ, շնորհք և ճշմարտութի՟ք 'ի ձեռն Յիսուսի եղեն ։ Հրաւիրեաց փեսային երկրաւոր զփեսային երկնաւոր, և տէր հանդերձեալ հարսանեացն 'ի հարսանիսն եկն. հրաւիրեցաւ 'ի բազմականացն, որ բազմացուցանելոց էր զաշխարհս յարքայութեան իւրում. և արկ նոցա օժիտ, զի ուրախ եղիցին 'ի նա ։ Եւ ոչ դարշեցան մեծութիւնք նորա յաղքատութ՟է նոցա. զի ահա աւանիկ և ոչ զուռի գինին անդամ ըստ կոչնականացն ունէին նոքա. և եթէ ոչ զեղմր[1] նոցա փոքր մի 'ի մեծութ՟էց անտի իւրոց, ծարաւիք և տրտմեալք յառնէին անտի ։

Այլ դարձաւ և նա հրաւիրեաց զնոսա 'ի հարսանիս, իբրև հրաւիրեցան. և որչափ յաճախեաց նա զխառնուրդս իւր 'ի բազմականս նոցա, այսպէս դարշեցան անձինք նոցա 'ի սեղանոյ նորա, որպէս և հարքն նոցա 'ի մանանայէ անտի ։ Հրեշտակք 'ի սեղանոյն Աբրահամու և Ղաւթայ կերակրեցան. և տէր մեր կեր և արբ ընդ նոսա և ոչ դարշեցաւ ։ Նոքա հրաւիրեցին զնա, և եկն առ նոսա. և նա հրաւիրեաց զնոսա և ոչ եկին 'ի հարսանիսն նորա ։ Նոքա կոչեցին զնա, և նա ոչ հրաժարեաց. և նա կոչեաց զնոսա, և հրաժարեցին յընթրեաց անտի նորա ։ Նա պատուեաց ըզհրաւիրականսն, և նոքա անարգեցին զհրաւիրակսն. Նա ուրախ արար զբազմականսն, և նոքա սպանին ըզծառայսն նորա ։ Նա լից զպակասութի՟ հարսանեացն, և նոքա 'ի դերև հանին զամենայն խորտիկս նորա. Նա անոյշ գինով ուրախ արար զնոսա, և նոքա դառնացուցին և բարկացուցին զնա. փոխանակ անոյշ գինոյն ետուն նմա քացախ և զեղի ։

1 Յօրինակին պէղւոյ ։

Հրաւիրեցաւ հրաւիրեալն, և ընդ հրաւիրեալսն ոչ եկն. եկին նոքա յառաջագոյն քան զնա, զի սպառեսցեն զգինին զառաջին զոռի. զի եկեսցէ ինքն և բերցէ ընդ իւր զգինին անոյշ: Հրաւիրեցաւ ընդ նոսա, իբրև ոչ մեկնեալ 'ի նոցանէ տեսլեամբն իւրով. արար նշան սքանչելի, զի մեկնեալ լիցի նոցա՝ թէ չէ հաւասար նոցա բնութ՟բն իւրով: Եթէ յորժամ կարծիս տացէ նոցա տեսիլ նորա՝ թէ իբրև զնոսա իցէ, և նա ուսուսցէ զնոսա 'ի նշան սքանչելեաց նորա՝ եթէ մեծ է նա քան զնոսա: Իբրև լուռ էր ինքն, արար զջուրսն գինի. զի ածեղէն լռութ՟ի նորա յարուսցէ իւր քարոզս բերկրեալս, զի ուրախութեամբ տացէ զուրախարար աւետիսն իւր բազմականացն. գինին բնութ՟բ իւրով ուրախարար է: Եւ քանզի արագ հրամանն նորա արար զնա, և դարձեալ համ անուշութեան նորա առաւել էր քան զամենայն գինոյ, արդ վասն առաւելութ՟ն նորա հարցանէին խընդրէին զտէրն նորա:

Էջ նա 'ի պատերազմէ անտի նահատակեալ. ընկալան զնա հարսանիքն ցնծութ՟բ յերրորդում անդ. զի յայտ արասցէ՝ եթէ յետ մարտի պատերազմաց նահատակաց ուրախութ՟ի է: Եւ զի յայտ արասցէ, զի թէպէտ իբրև զօտար հրաւիրեցաւ, սակայն երևեցաւ անդ՝ թէ նա ինքն է տէր հարսանեաց, յայնմիկ՝ զի ելից նա զպակասութիւն հարսանեացն բանիւն իւրով, որ լցուցիչ է ամենայն պակասութ՟ց: Եւ զի յայտ արասցէ՝ եթէ ոչ այլ արարածս եցոյց նա անդ, և ոչ նովին հնոյն՝ որպէս և էրն՝ գործեաց. զի ոչ եթէ ջուր փոխանակ գինոյն արբոյց նոցա, սակայն և ոչ արտաքս քան զարարածս ել նա. այլ 'ի հաստել նորա գինի, 'ի հաստեալ ջուրց անտի հաստեաց:

Արդ ոչ եթէ օտար ինչ արարածս եմոյծ նա անդ, այլ զնոյն զառաջին արարածս փոխեաց. զի այնու՝ զի փոխեացն զնա, յայտ արասցէ՝ եթէ նա ինքն է տէր նորա. և յայնմիկ՝ զի ոչ օտարացոյց զնա, գիտասցէ զի ոչ լինի խոտեալ անարգեալ. նա և 'ի վախճան ժամանակի նոյն իսկ արարածք ինքնին նորոգեալ լինին: Զի կամքն այն՝ որ շրջեցին երագ հրա-

մանով զՋուրսն դուզնաքեայս 'ի գինի անոյշ, կարող է դարձուցանել 'ի վախճան կատարածի զամենայն արարածս 'ի ճաշակս յանպատումս ։ Եւ զի յայտ արասցէ 'ի դարձուցանել անդ զչարութիւն նոցա յուրախութիւն՝ թէ ոչ 'ի բնէ իւրեանց էին նոքա չարք, այլ բնութ̃ իւրով իմաստուն էր արարիչն . զի գիտաց թէ պիտոյ էին նոքա 'ի հաստել, այս ինքն 'ի քննութիւն և 'ի խրատ . զի նոքօք քննեսցին արդարքն և պսակեսցին, և նոքօք խրատեսցին յանցաւորք և օգտեսցին ։ Զի այն՝ որ հրամայեաց ապականիչ հրոյն, և փոխանակ ապականելոյն եղև գգուիչ, նա հրամայէ 'ի վախճան ժամանակի կորուսչացն՝ և լինել օգտակարք, և չարչարչացն՝ և լինել ուրախարարք ։ Նախ յառաջագոյն ընդելոյց զգերան 'ի ճաշակս գինոյ իւրոյ, զի պարտեսցէ ածցէ և զլսելիսն 'ի ճաշակըս քաղցր վարդապետութե̃ իւրոյ ։

Իսկ զի ասէ "Կատարեալ են ժամանակք", ազդէ յաղագս բովանդակեալ լինելին . առաջինն՝ յԱդամէ, 'ի Նոյէ, ուխտիւն զոր հաստատեսցին տունն չէթեան . զի զատեալ որոշեալ էին 'ի կայենեան տանէ անտի ։ Եւ միւս ևս՝ 'ի Նոյէ յԱբրահամ, զի մի կերիցեն արիւն . "Ետու ձեզ, ասէ, զամենայն ինչ իբրև ըզբանջար վայրի . բայց միայն արիւն շունչ հեղձուցիկ մի՛ ուտիցէք" ։ Եւ յԱբրահամէ 'ի Մովսէս թլփատութ̃ առանց օրինաց . և 'ի Մովսիսէ մինչև 'ի ծագելն նորա օրինօք . և կատարեցան զի չիք այլ ոք որ փոխէ և զանցուցանէ ։

Նաև դարձեալ եթէ ժամանակ առաջին զպատարագ կամացն՝ Հաբէլին մինչև 'ի Նոյ . "Մխիթարեսցէ զմեզ, ասէ, պատարագօք իւրովք" . և միւս ևս Նոյ 'ի սեղանոյն՝ որ շինեցաւ 'ի լեառն կորդուացոց . և միւս Աբրահամու 'ի լեառնն ամուրհացոց . և միւս ևս Յակոբայն 'ի Բեթէլ . և միւս ևս Յեշովայն յանդս Յորդանանն գետոյ . և միւս ևս 'ի Շելովն՝ ուր խորանն բնակեալ էր . և միւս ևս Սողոմոնին առաջի խորանին յԵրուսաղէմ . և այս Քրիստոսիւ՝ որ ուղղեաց յեկեղեցւոջ իւրում մինչև 'ի վախճան կատարածի . իբրև զի այն այլ ոչ ևս փոխի ։ Վասն այսորիկ կատարեալ են ժամանակք, զի յայսմ հետէ, ասէ, որ

քայութ̃ն երկնից աւետարանի . կամ կատարեալ են ժամանակք, այս ինքն ժամանակք Իսրայէլի :

Աշակերտք նորա մկրտէին, զի ինքեանք մկրտեալք էին . չէր ինչ մարթ մկրտել նոցա զայլս՝ իբրու ինքեանք չէին մկրտեալ . այլ ակնարկէ յայնմանէ՝ զի ասէ . որ մկրտեալ են՝ չեն նոցա զինչ պիտոյ է : Եթէ կամիս վ̃ս այնր զի Ջուրբք մկրտէին . ապա թէ ոչ՝ ահա ասաց նոցա . "Դուք, ասէ, սուրբք վասն բանին իմոյ զոր խօսեցայ ընդ ձեզ" : Արդ՝ ընկալ դու եթէ ինքն բանն նորա եղև նոցա մկրտութ̃ի . այլ զի և մկրտութ̃ին նովին իսկ բանիւն սրբի, որպէս և Յովհաննէս պատուիրանաւն զոր առ՝ սրբեցաւ, սրբեաց և զմկրտութ̃ին՝ որում հաւատարիմն եղև : Դարձեալ ասեն . իբրև ետ նոցա զմարմին իւր, եղև նոցա մկրտութ̃ի . զի եթէ մկրտէին կամ մկրտեալ լինէին, իբրև ոչ էին ընդ նոսա հաւատք մարմնոյ և արեան նորա, զի՞ կանխեաց յառաջագոյն և ասաց նոցա, "Եթէ ոչ ուտիցէք 'ի մարմնոյ նորա և ըմպէք յարենէ նորա՝ չիք ձեզ կեանք" : Եւ իբրև բարկացան նոքա, ասէ ցերկոտասանսն . "Մի՞ եթէ և դուք կամիք երթալ յինէն" . ասէ ցնա Շմաւոն . "Մեք հաւատացաք և գիտացաք" : Ի՞ւ հաւատացին նոքա . այլ այնու՝ որովք ոչ կարացին նոքա հրէիցն, ասէ, հաւատալ նմա . այս ինքն և ոչ լսել նմա :

Ընտրեաց նա զՅակոբոս մաքսաւոր, զի քաջալերեսցին ընկերք նորա երթալ ընդ նմա : Տես զմեղաւորս, և կոչեաց բազմեցոյց զնոսա առ ինքն : Այս է տեսիլ սքանչելի . կան հրեշտակք և դողան, և բազմեալ են մաքսաւորք և ուրախ առնին . զուարթունք զահի հարեալ են 'ի մեծութենէ անտի նորա, և մեղաւորք ուտեն և ըմպեն ընդ նմա . դպիրք հեղձեալ են նախանձու, և մաքսաւորք ցնծան ողորմութ̃ք : Տեսին վերինք և զարմացան, և ներքինք և յիմարեցան . սատանայ և մաշեցաւ, և մահ և վատթարեցաւ, և դպիրք և զրկեցան, փարիսեցիքն և խռովեցան . ուրախութիւն յերկինս և ցնծութիւն հրեշտակացն, զի նուաճեցան ապստամբողքն, և հնազանդեցան ստամբակք, և զգաստացան մեղաւորք, և արդարացան մաքսաւորք : Ոչ՝ իբրև քաւէին զնա

բարեկամքն՝ հրաժարեցաւ 'ի խաչէ անտի նախատանացն, և ոչ՝ իբրև այպն առնէին զնա թշնամիքն՝ հրաժարեաց 'ի կցորդ լինելոյ մաքսաւորացն. այլ անարգեաց նա զայպն առնելն, և արհամարհեաց զգովեստն. և երկոքումբք օգտութիւն մարդկութեան կատարեաց:

"Զգիշերս ամենայն, ասէ, աշխատեալ էաք". խորհուրդ մարգարէիցն, վարդապետութին՝ որ անկաւ 'ի բարձանց յաշխարհ՝ որ առակեալ է 'ի ծով. երկու նաւքն՝ թլփատութի և անթլփատութի: Եւ զի ակնարկէին ընկերաց իւրեանց, խորհուրդ եւթանասուն և երկուցն. զի սակաւք էին նոքա յորս և 'ի հունձս:

"Ետես, ասէ, տէր մեր զհաւատս նոցա զայնոցիկ, ասէ ցնա. Թողեալ լիցին քեզ մեղք քո": Տես դու՝ հաւատք այլոց զինչ գործեցին այլոց: Եւ զի ոչ պահանջեաց նա 'ի նմանէ հաւատս, զի չինուած էր նա քակուտ. զի և ոչ զանձն իւր անգամ յիշէր նա. զոր օրինակ և ոչ 'ի միամօրէ անտի պահանջեաց նա, այլ 'ի հօրէն նորա. և ոչ յաղջկանէ անտի, այլ 'ի մօրէ նորա: "Եւ շունք, ասէ, յագին": Արդ փոյթ լիցի քեզ վասն հաստատութեան անձին մերոյ. զի զայն իսկ խնդրեմք մեք, զի մի լուծցի, իբրու այն՝ թէ 'ի մեղս նորա լուծաւ նա: Նա և հաս իսկ բանն տեառն ամենայնի, և քաւեաց և բժշկեաց զնա. քաւեաց զծածուկ մեղս նորա, և բժշկեաց զյայտնի մարմինս նորա, և հաւատարիմ եղև նա յայտնեաւն և վասն ծածկելոյն՝ թէ Աստուած է նա 'ի ծածուկ, և մարդ յայտնի. զի վասն արտաքին մարդկութեանն նորա յայտ եղև՝ թէ մարդ է, և վասն ներքին մեծութեանն նորա հաւատարիմ եղև՝ թէ Աստուած է:

"Թողեալ լիցին քեզ մեղք քո": Զո՞ր մեղս եթող նմա. զայնոսիկ՝ որ նմայն մեղաւ: Եւ զիա՞րդ է նա օտար օրինացն, զի՞նչ պարտ էին նմա մարդիկն, կամ նմա և կամ հօրն նորա, այնոքիկ՝ որ ոչ ընդունէին զնա 'ի գործ ինչ զօրութե, ոչ արդարութե և ոչ օրէնսդրութե: Իսկ մեղք՝ որ պարտեալ լինէին այն օրինաց, զիա՞րդ թողոյր Յիսուս՝ եթէ ոչ էր նա աշխակից

նորա . կամ յայտ է այս՝ թէ ծնունդ է նորա ։ Զի յանցեալ նմա, խրատեաց զանդամալոյծն 'ի մարմինս անդ նորա ։ Ըստ վարդապետութ͞ե յայս վայր զի՞նչ, ասեն, պիտոյ էր այն՝ զի ասաց "Թողեալ լիցին քեզ մեղք քո ,, . եթէ ոչ՝ զի վասն մեղաց իւրոց հիւանդացեալ և լուծեալ էր նա ։ Եւ զիա՞րդ թողոյր զնա, եթէ ոչ էր նմա պարտապան անդամալոյծն ։ Կամ զի՞նչ օգուտ էր նմա այն՝ զի ասէր "Թողեալ լիցին քեզ մեղք քո ,, ։ Զի ահա աւանիկ թէպէտ և ոչ էին թողեալ, նմա ինչ ոչ վնասէին . զի ապրեցաւ նա միանգամ 'ի պահանջմանց անտի առ ողորմութ͞ին գթութ͞ե ։

Դարձեալ զկնի նորա ընդէ՞ր ասէ "Տրտնջեին և ասեն փարիսեցիքն և դպիրքն, եթէ ընդ մաքսաւորս և ընդ մեղաւորս ուտէք և ըմպէք ,, . և ընդդէմ նոցա ասաց տէր մեր . "Ոչ ինչ պիտոյ է բժիշկ ողջոց, այլ հիւանդաց . և ոչ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս ,, ։ Եւ այս առանց հարցանելոյ հաւատարիմ լիցի՝ եթէ էին 'ի մէջ Իսրայէլի ողջք և արդարք . Ահա ոչ է աշխատութ͞ի Յեսովայ օրինացն, այն՝ որ վաստակեցաւ 'ի մարդիկ, և ողջացոյց և արար արդարս ։ Եւ եթէ հեթանոսք էին, ահա դարձեալ ամենայն հնարիւք գտեալ էին յաշխարհ արարչին ողջք և արդարք ։ Եւ այս՝ որ այժմ եկիս, ոչ ինչ պիտոյ է . զի ոչ ողջոցն բժիշկ պիտոյ է, և ոչ արդարոցն շնորհք ։

Զամենայն ժամանակն զոր եղև տէր մեր յաշխարհ աստ՝ յառագաստ առակեաց զնա, և զինքն 'ի փեսայ ։ "Ոչ, ասէ, մարթ է փեսաւիրացն պահել, մինչ դեռ փեսայն ընդ նոսա իցէ ,, ։

"Ահա աւադիկ աշակերտքն քո գործեն յաւուր շաբաթու՝ զոր ոչ է արժան գործել ,, ։ Այլ ընդդելոյց զնոսա տէր մեր յառաջագոյն, և կրթեաց զնոսա ճշմարտութ͞ե արդարոց . զի յորժամ լուծանէ նա զօրէնս լրիւ իւրով, մի ինչ զարմասցին ։ Նա և հայր նորա լուծանէ զնոսա . զի յայտ արասցէ՝ թէ իւր արարչութիւն է, և վերակացութիւն էր նոցա ։ Զի ցուցցէ՝ թէ դեղք են նոքա որոշելոյ, որ եդեալ են 'ի ճշմարիտ բժշկէ անտի ցաւոցն՝ որ էին յատից մինչև

ցգլուխ ։ «Սկսան, ասէ, հասկ կորզել շփել և ուտել» . այս ինքն առակ օրինակին կատարեցան անդ ։ Քանզի ոչ հրամեն օրէնքն ուտել 'ի նորոյ մինչև 'ի սեղան մերձեսցի[1] ։ Այլ նոքա յառաջագոյն քան զհունձս առին զպտուղ երախայրեաց քահանայիցն ։ Այլ փարիսեցիքն զայս ոչ իմացան թէ այսու պատուհասեսցեն զաշակերտսն, այլ զի լուծին, ասէ, զշաբաթն ։

Բայց տէր մեր զլուսաւոր զհաւանութիւն զԴաւթայ պատմեաց նոցա . այն զի և ոչ նա վասն այնր պատուհասեցաւ որպէս վասն միւսոյն . ոչ, ասէ, պարտ էր Դաւթայ ուտել, քանզի չէր քահանայ ։ Քահանայ էր նա, զի տուն բնակութե՟ էր հոգւոյն ։ Եւ իբրև ոչ ևս այսու իմացան, ապա յայտնապէս յանդիմանեաց զխօսս նոցայոյն . «Քահանայք նոցա, ասէ, 'ի տաճարին 'ի ներքս լուծանեն զշաբաթն և անմեղք լինին» ։ Միւս ևս այլ նկարէ մեզ անդ . զի յառաջ քան զհալածելն ոչ իշխեաց Դաւիթ մերձենալ 'ի սրբութի՟ անդր . և իբրև հալածեցաւ, ապա իշխանութե՟ առ եկեր ։ Սոյնպէս և տէր յետ հալածանացն իւրոց բաշխեաց զմարմին իւր աշակերտացն իւրոց, և զարիւնն իւր հաւատացելոց իւրոց ։ «Շաբաթ, ասէ, վասն մարդոյ եղև» . զի հանգիստ է նա յետ վեց աւուր . վասն այսորիկ վասն մարդոյ, զի 'ի պատճառս նորա անուանեցաւ նա ։ Արդ ոչ եթէ վասն ա՟յ եղաւ շաբաթն, այլ վասն մարդոյ . վասն այսորիկ տուիչն նորա տէր է նորա ։

## ԳԼՈՒԽ Զ

Ի ժամանակի իբրև տայր տէր մեր զերանութիւնսն, ընդ աշակերտսն հայէր ։ «Բարձ, ասէ, Յիսուս զաչս իւր առ նոսա, և սկսաւ ասել . երանի իցէ աղքատաց յոգւոյ իւրեանց» ։ Աղքատք՝ որ թօթափեցան, և զի մի՟ նովիմն աղքատութե՟ բարձրասցին, ասէ . «Երանի հեզոց» ։ Հեզ էր Մովսէս քան զամենայն

1 Յօրինակին 'ի լուսանցսն ձափելի ։

որդիս ազգին իւրոյ . և "Յո՞ հայեցայց և բնակեցայց , այլ 'ի հեզս և 'ի խոնարհս սրտիւ ,, . և "Յիշեա , ասէ , տէր՝ զԴաւիթ և զամենայն հեզութիւն նորա ,, . և "Ուսարուք յինէն՝ զի հեզ եմ և խոնարհ , և գտջիք հանգիստ անձանց ձերոց ,, : "Երանի իցէ՝ որ քաղցեալ և ծարաւի իցէ յարդարութիւն ,, . իբրև զայն՝ զի ասէ . "Ոչ քաղցեալ հացիւ և ոչ ծարաւի ջրով , այլ լսել զպատգամս տեառն ,, : "Երանի իցէ՝ որ սուրբ են սրտիւք , զի նոքա զա̃ծ տեսցեն ,, . զոր օրինակ և մարգարէն խնդրեաց աղօթիւք յասել իւրում . "Սիրտ սուրբ հաստատեա յիս ա̃ծ ,, : Արդարոց սիրտն իւրեանց սուրբ է . նոքա զա̃ծ տեսցեն , որպէս Մովսէս : "Երանի իցէ՝ որ սուրբ են սրտիւք ,, . զի սիրտ անդամ է ոգոյ և ոչ դադարէ 'ի խլրտելոյ . և 'ի կենաց թէ սուրբ իցէ , զսրբութիւն իւր առաքէ ամենայն անդամոցն : "Ի սրտի , ասէ , լինի ամենայն խորհուրդք չարութեանց ,, : "Երանի իցէ՝ որ լայցեն , զի նոքա ծիծաղեսցին ,, . իբրև զայն՝ զի ասէ . "Եթէ չարչարիմք , ընդ նմա և փառաւորիմք ,, : "Երանի իցէ խաղաղարարաց , զի նոքա որդիք ա̃յ կոչեսցին ,, . յայնմիկ՝ զի 'ի ժամանակի իբրև աւետարանէին հրեշտակքն՝ ասէին փառք 'ի բարձունս ա̃յ և յերկիր խաղաղութիւն : "Եւ արար խաղաղութիւն , ասէ , արեամբ խաչին իւրոյ , որ ինչ յերկինս և որ ինչ յերկրի ,, : Եւ իբրև առաքէր զաշակերտսն , ասէր ցնոսա . "Ի տուն յոր մտանէք դուք , նախ ողջոյն ասասջիք տանն ,, : Արդ խաղաղարարք որդիք ա̃յ կոչին . իբրև զայն՝ զի ասէ . "Որ հոգւով ա̃յ շրջին , նոքա են որդիք ա̃յ ,, : "Երանի իցէ՝ որ հալածեալ իցեն վասն արդարութեան ,, . իբրև զայն՝ զի ասէ . "Հալածիցեն զձեզ և մատնեսցեն զձեզ ,, . և "Որք կամիցին կեալ արդարութ̃ն Յիսուսի Քրիստոսի , և նոքա հալածեսցին ,, : Վասն այսորիկ և առաքեալքն իբրև անարգեցան , ուրախ էին , ասէ . զի արժանի եղեն անարգանս կրել վասն անուան նորա . որպէս և պատուիրեաց նոցա . "Դուք , ասէ , ցնծացէք և ուրախ լերուք , զի վարձք ձեր բազում են յերկինս . և յայնմ աւուր խնդասջիք ,, :

"Վայ ձեզ , ասէ , մեծատանց ,, . և ոչ դադարեաց , զի մի մնասցէ նա առ ամենեսեան . զոր օրինակ

իբրև ասացն “Երանի իցէ աղքատաց յոգիս իւրեանց”, զի մի ձգեսցի 'ի վերայ ամենեցունց, սոյնպէս և յասել անդ “Վայ ձեզ մեծատանց”. այս ինքն, որոց այս և եթ իցեն խնդրուածք իւրեանց: Արդ ոչ եթէ անուամբք բարեքողք եղեն խոստացեալ երանութ̃իքն, այլ առնելեաց երանութ̃եց: Զանուանս ամենայն ոք կարէ ստանալ՝ որով պատճառանօք և իցէ, այլ գործ անուան առ այնմ մերձ է՝ որ ոչ կամի եթէ ելցէ 'ի վերայ նորա անուն առաւելութ̃ե: Արդ խոստացաւ նա մի մի երանութիւն միոջ միոյ գործոց. և մի մի պարգև միոյ միոյ առնելոյ վարձս աշխատութ̃ հանդերձ. և հատուցումն գործով հանդերձ, և պատիժս յանցանօք հանդերձ: Արդ զոր օրինակ հաղորդութ̃ ականն և արեգական երևի ամենայն՝ որ զինչ և երևի, որ է 'ի մէջ երկնի և երկրի, սոյնպէս և կենարարն լոյս է կենդանեաց. և յորժամ հաղորդի նա ընդ միտս, վերացուցանէ նոմա զծածկեալս, և իջուցանէ զնա 'ի խորս, և յայտնէ նոմա զգաղտնիսն: Վասն այսորիկ “Լոյս էք դուք աշխարհիս. և աղ էք դուք երկրիս”:

Նա դպիրսն և փարիսեցիսն ասաց՝ որ կային և խնդրէին պատճառս. ասէ “Ես ոչ եկի լուծանել զօրէնս կամ զմարգարէս, այլ կատարել”. և կատարումն թերութեան լինի պիտոյ: Եւ զինչ է կատարումն, յայտ առնէ. “Ահա աւասիկ ելանեմք մեք յԵրուսաղէմ, և կատարի ամենայն ինչ որ միանգամ վասն իմ գրեալ է”: Եւ վասն սոցին թերութեանց ասաց՝ եթէ անցեալ են առաջինքն. այլ զայս՝ որ մկրտին 'ի կատարումն, և ընկղմեցան 'ի յաւելուածն, և նորոգեցան առաւելութ̃ն, ասէ. “Դիւրագոյն է երկնի և երկրի անցանել, քան յօրինաց անտի միում նշանախեցի անկանել. և ամենայն որ լուծանիցէ, ասէ, ինչ մի 'ի պատուիրանաց նորոց կտակարանաց”:

“Որ հարկանէ զծնօտ քո, մատո նմա և զմիւսն ևս կողմ”: Եւ հաստատեսցէ զայս՝ զի ասէ. “Ապտակ ընդ ապտակի”: Թերի է այն՝ որ հաստատեաց կացոյց զտուգութիւն 'ի ժամանակս շնորհաց: “Եթէ ոչ, ասէ, առաւել գտանիցի արդարութ̃ին ձեր քան

զդպրացն և զփարիսեցւոցն՝ ոչ կարէք դուք մտանել յարքայութիւնն երկնից ,, ։ Արդ նոցա ասացաւ ոչ սպանանել, և ձեզ ոչ բարկանալ. նոցա ոչ շնալ, և ձեզ ոչ ցանկալ. նոցա ակն ընդական, այլ ասա, “Որ հարկանէ զծնօտ քո, մատո նմա և ըզմիւսն ևս կողմն ,, ։ Եւ ուսուցանէ յայլ կերպս. “Եթէ յորժամ մատուցեալ իցէ քո, ասէ, պատարագ 'ի վերայ սեղանոյ, թող զպատարագն քո, և երթ հաշտեաց ,, . զի մի կարծիս դիցէ 'ի վերայ ստուգութեն՝ եթէ վասն պատարագին անփոյթ արար և ոչ պահանջեաց զյանցաւորն ։ “Եթէ ոչ, ասէ, առաւել գտցի արդարութի ձեր քան զդպրացն և զփարիսեցւոց ,, ։ Քանզի հրամայեն օրէնք, ասէ “Մի լինիր հասկաքաղ զկնի հնձողաց յանդի քում, և մի թափեր զձիթենիս քո յերկրորդումն, և մի առներ ճռաքաղ զայգի քո, այլ աղքատաց եղիցի այն ,, . և այս այնոցիկ՝ որք ընդ օրինօքն են ։ Իսկ արդ այնոցիկ՝ որ քրիստոնեայք են զինչ ևս ասիցէ, որոց տէրն մեր ասաց. “Եթէ ոչ առաւել գտցի արդարութի ձեր քան զդպրացն և զփարիսեցւոցն, ոչ կարէք դուք մտանել յարքայութին երկնից ,, ։

“Օ այս լուարուք, ասէ, զի ասացաւ մի սպանաներ, զի որ սպանանէ դատապարտ է ։ Այլ ես ասեմ ձեզ. որ կարդայ եղբօր իւրում յիմար ,, . զի և այս ևս փոքրկութ դայթագղեցուցանէ զմարդկութիւն տգէտ, զգնացս ժամու ճանաչէ. իսկ իմաստունն զգնացս խորհրդոց ։ Արդ կատարեալս 'ի մէջ կատարելոց կամեցաւ մուծանել. այս ինքն կատարեալս 'ի մէջ հրեշտակաց ։ Առ տէր մեր արդարք պարտաւոր են, սոյնպէս և նոքա յաչս միմեանց ։ Եւ ազատութի մարդոյն նմանող այ, զի կամովք ստացի զայն ինչ՝ զոր ած բնութ իւրով ունի ։ Եւ հայեաց դու զի և նա իսկ թէպէտ և բնութ ունէր, սակայն իւրև ազատութ շրջեցաւ ։

“Լուարուք, ասէ, զի ասացաւ թէ մի շնար. այլ ես ասեմ ձեզ, եթէ ամենայն որ հայի և ցանկայ՝ շնացաւ ,, ։ Քանզի էին՝ որ սիրէին զստացուածս և զփափկութիս գրգանաց և զբանս չարութեան, ասէ տէր մեր. “Չի եթէ ձեռն քո կամ ոտն քո գայ-

թագղեցուսցէ զքեզ»։ Զի եթէ մինչ յանդամս անդամ ասացի քեզ, զիա՞րդ անխայես դու 'ի վերայ ստացուածոց, կամ 'ի վերայ գրգանաց, կամ 'ի վերայ բանից չարաց՝ որ դիւրին է հանել։ Զի եթէ դադարեցուցանես 'ի քէն անդամոցն հատանելոցն զանէծս և զհայհոյութիւնս և զթշնամանս, ընդէ՞ր ոչ հատանես դու զլեզուն քո. զի հարկ է 'ի մի անդամէ փնդի հանգիստ ամենայն ցաւոց ուսանել. կամ թէ չարաչար գործեցեր, կամ թէ բարւոք ոչ լուար, կամ թէ չար հատեր զանդամ, կամ անմտութեամբ լուար զպատուիրանն։ Զի այնու որ ոչ հատեր զանձն քո, յանդիմանեցար թէ չար գործեցեր. զի ոչ հատեր, զի 'ի չարչարանաց երկեար դու. և կամեցար լուծանել զպատուիրանն, զի մի ապականեսցես զանդամն։

Արդ աղէ տեսցուք եթէ դադարե՞ն հայհոյութի͞ք 'ի հատանելն լեզուին. և եթէ դադարեն՝ չարաչա՞ր գործեն այնոքիկ որ ոչն հատանեն. և եթէ ոչ դադարեն՝ չարաչա՞ր լուան այնոքիկ որք հատին. կամ ինքն տէրն մեր զիա՞րդ հրամայէր հատանել զանդամըս, այն՝ որ 'ի հատանելն նոցա մինն ապականի, և կնճիռնն ոչ խլի։ Արդ ոչ եթէ զանդամս գեղեցիկս՝ զոր յօդեաց ա͞ծութի͞ն՝ արժան է հատանել, այլ ըզխորհուրդս չարաչարս զոր յօդէ ազատութի͞ն։ Եւ զայս ևս դարձեալ ցոյց տէր մեր՝ թէ մինչ յոր վայր պարտ է մեզ մարտնչել, զի մի իցեմք յաղթահարեալք. իբրև զայն՝ զի ասէ. «Պատառեցէք զսիրտս ձեր, և մի՛ պատառէք զհանդերձս ձեր»։ Զի մեծատանն մեծութի͞ն իւր աջոյ ակն էր իւր, և գայթագղեցոյց զնա, և ոչ խլեաց ընկեաց զնա. և Հերովդի աջ ձեռն իւր Հերովդիադա էր. և փոխանակ հանել ընկենուլ զձեռն պեղծ՝ հատ ընկեց զսուրբ կառափն։

Այլ Շմաւոնին զամենայն անդամ զհին մարդոյն հատ ընկեց, զի մի՛ գայթագղեցուսցեն զնա. «Ահա աւասիկ, ասէ, մեք թողաք զամենայն»։ Արդ յորժամ լսես դու զամենայնն, գիտասջիր եթէ ոչ ակն և ոչ ունկն և ոչ ունչս թողին զհին մարդոյն՝ զոր ոչ խլեցին ընկեցին։ Ակն զցանկու͞թ 'ի ձեռն ականն ասէ,

ունկն զչարախօսութ͞ի, և այսպէս մի ըստ միոջէ ։ Եւ աստի Առաքեալ յաւել. "Սպանէք, ասէ, այսուհետև զմարմինս ձեր. այս ինքն զպոռնկութիւն", այլովքն հանդերձ ։ Բայց դարձեալ աչ ակն՝ սէր, քանզի սիրով ցանկայ կնոջ յորժամ տեսանէ զնա. և վասն նորին իսկ պատճառանաց եկին այս ճառք 'ի մէջ. և ձեռն կերակրչութ͞ի, և ստն թիկունք, և բարեխօս վասն լեզուի ոչ ասաց. քանզի ոչ եթէ երկու լեզուք էին 'ի մարմին ։ Եւ դարձեալ ոչ կամեցաւ լեզու ասել վասն լեզուի հատանելոյ. սակայն լռութ͞բ հակառակ լեզուի և վասն նորին խօսեցաւ ։

Ասէ. "Որ ասէ ցեղբայր իւր՝ անարգ կամ յիմար". Այլ տես դու, զի ոչ եթէ որպէս արկանեմ՝ այնպէս լինի քեզ հատուցումն. զի եթէ ասացեալ լինի 'ի վերայ շան՝ թէ շուն է, ոչ քեզ վարձք են յայամիկ, և ոչ նա դարձեալ աւելի ինչ հատուցումն ընդունի քան որ արժանին է ։ Ապա թէ հոգ տանիցի 'ի նմա յայն ինչ՝ զոր ասացին 'ի վերայ նորա, նա ընդ միոյ երկու՝ քան զոր էին յառաջ՝ առաւելոյ, և 'ի քո վերայ գայ հասանէ այն՝ զի ասէ. "Որպէս կամեցաւ առնել եղբօրն իւրում, եղիցի նմա" ։ Զի ստուգութ͞ի՝ այն որ փութաս դու դարձուցանել նմա զփոխարէնն իւր, չէ ծոյլ և հեղգ դարձուցանել և քեզ փոխարէն փոխոյն քո ։

Արդ սպանումն յանդիմանեցելոյն դառնայ 'ի վերայ յանդիմանչին. սոյնպէս չնութ͞ի զրպարտեցելոյն դառնայ 'ի վերայ զրպարտչին ։ Ժողովրդեանն կռապաշտութ͞ի չնութ͞ի կոչեցաւ նմա ։ Արդ ոչ է օտար և սմա ևս կոչել նա զզրպարտութ͞ին իւր չնութիւն. զի և սա պոռնկեցաւ 'ի ճշմարտութ͞է անտի ։ Քննեա զնոսա և տես, զի մի են ամենեքեան ։ Արդ է ժամանակ զի զգործ չարութ͞ե ընկենու սատանայ 'ի վերայ մարդոյ 'ի ձեռն միոյ յանդամոց նորա, և շարժէ զնա. և է զի այլոց բերանով ընկենու 'ի վերայ նորա ստուգութ͞բ մի յանուանց չարաց, և աղտեղէ զնա իբրու զօրացուցանէ զնա չարախօսութ͞բ 'ի զրպարտել, և լսօղք 'ի հաւատալ ։

"Լուարուք, ասէ, զի ասացաւ ակն ընդ ական. այլ ես ասեմ ձեզ, եթէ ամենևին մի կայք հակա-

ռակ չարին „ ։ Այլ իբրև կատարեցան ժամանակքն որ եղեալ էին 'ի չափ մննդեանն , ապա քարոզեցաւ առողջ կերակուրն ։ Զի նախ յառաջագոյն եղան ժամանակք յանդիմանիչք . զի նախ 'ի չարեաց արժան է որոշել ։ Իբրև կատարեաց ստուգութիւն զկատարումն իւր , սոյնպէս ցոյց և ողորմութիւն շնորհաց զկատարումն իւր ։ “Ակն ընդ ական „ , կատարումն է ստուգութեան . և “Որ հարկանէ զծնօտ քո՛ մատո դու նմա և զմիւսն ևս կողմն „ , կատարումն է շնորհաց ։ Եւ իբրև երկոքին հանապազորդէին զճաշակս իւրեանց , ըղձեցին մեզ կտակարանովքն երկոքումբք . առաջինն զազանս սպանանէ 'ի քաւութիւն , զի ոչ եթող ստուգութիւն միում փոխանակ միւսոյն մեռանել . և երկրորդ սահմանեցաւ արեամբ մարդոյ , այն՝ որ շնորհօք իւրովք ետ զանձն փոխանակ ամենայնի ։ Արդ եղև մին սկիզբն , և միւսն ևս կատարած . զի այն՝ որում կատարածն և սկիզբնն է , նա է կատարեալ . առանց իմաստութեան հանճարոյ յապաղեալ և զատեալ են 'ի միմեանց սկիզբն և կատարած , այլ քննութեամբ մի են ։

Յայսուհետև շրջեցաւ այն ծնօտ ընդ ծնօտի կատարումն ։ “Որ հարկանէ զծնօտ քո , մատո և դու նմա զմիւս ևս կողմն „ ։ Արդ զառաջինն գիտացաք արմատով իբրև զջուրսն . այլ ըստ պահպանութեան այս “Որ հարկանէ զծնօտ քո „ , արբաք իբրև զգինի ։ Արդ մին լինի մեզ զի մի՛ մոռացուք և մուծցուք զօտարութիւն . և միւս ևս լինի մեզ յօգտութիւն , զի մի՛ խոտորիցիմք և առնիցեմք զայն ինչ՝ որ անցեալն իցէ , և ներկայ որպէս և ջուրքն , զի եղեն գինի ։ Եւ այսպէս ամենայն հանապազօր զօգտութիւն մեր խնդրեսցուք , իբրու 'ի պակասութենէ այլոց հեռի իցեմք . ընդ մեզ ինչ մի՛ լիցի համարեալ մեզ , այլ վասըն մեր ամենայն ինչ համարեալ լիցի մեզ . զի վասն մեր առաք հրաման սիրել զթշնամիս մեր , և ոչ վասն նոցա ։

Իսկն տէր մեր յաշխարհս իբրև զանմեղ տղայս , և մի 'ի հատուածոց անտի զոր արարին առաջինքն առ ժողովուրդն՝ նա ոչ գործեաց . և իբրև պարտեաց ած զնոսա առ ինքն երևոյթ բժշկութեամբն , սկսաւ

խառնել նոցա զհոգևոր բժշկութիւն, յայնմիկ՝ «Եթէ հաւատաս դու», ասէ։ Եւ քանզի կատարեալ էր նա քան զամենայն ուսուցիչս, այն ինչ չափովք՝ որ չափովք ածէր և գայր 'ի ձեռն առաջնոցն, իբրև եկն եհաս առ նա՝ ետ զպտուղ կատարեալ ճաշակով իւրով։ Տանջեցաւ 'ի ծնօտ իւր, ցոյց ընդ պատուիրանին և գործ, և ուսոյց՝ ասէ, «Որ հարկանէ զծնօտ քո, մատո դու նմա և զմիւս ևս կողմն»։

Մովսէս հան վերացոյց յաշտիճանէ անտի թլփատութեան, և հաստատեաց կացոյց յաշտիճան ստուգութեան. ասէ «Մի հարկաներ զընկերն քո անիրաւութեամբ. ապա եթէ հարկանէ զքեզ, խնդրեա զվրէժ անձին քո ստուգութեամբ»։ Այլ տէր մեր հան վերացոյց յաշտիճանէ անտի ստուգութեան, և հաստատեաց կացոյց յաշտիճան շնորհաց, զի մի խնդրեսցես զվրէժ յայնմանէ՝ որ հարն զծնօտ քո, այլ մատո դու նմա և զմիւսն ևս։ Արդ գուցէ մինչ դեռ կամի ոք հարկանել ստուգութեամբ այնու Մովսէսիւն, կորուսանէ զայն՝ որ ուսոյց նմա՝ թէ մի հարկաներ անիրաւութեամբ։ Զի թէպէտ և առ զհատուցումն յայնմիկ՝ զի պահանջեցաւն, այլ ոչ պարտի յայնմիկ՝ զի ոչ անիրաւեցաւն։ Եւ գուցէ զի յաւելու ոք ընդվաշխ տոկոսեաց 'ի վերայ գլխոյն այնու մեր տէրունիւն, կորուսանէ՞ զայն որ ոչն պահանջեցաւ. վասն այնր զի թող, ո՞չ ահա հատուցումն առաջին ապտակին պահեալ է նմա 'ի հարկէ իսկ, վասն զի տանջեցաւ. և հատուցումն միւսոյ ապտակի դոյ նմա՝ թէպէտ ոչ տանջեցաւ, վասն զի մատոյց նմա։

Արդ ազատեաց յանիրաւութենէ որպէս Մովսէսն, և յաւել աւելի քաջ քան զՄովսէս։ Իսկ այն՝ որ պահանջողն լինի, կորուսանելով կորուսանէ։ Արդ ոչ կամեցաւ եթէ կողոպտեալ լինիցի ծածուկ սիրելիք շահիցն. այլ ուսոյց նոցա համբերութեամբ իւրով՝ եթէ զորպիսի փառս շահի համբերութիւն. և քանզի բազում էին պահանջողք նորա, զի ինքն զանձն իւր ոչ պահանջեաց։ Նա և իբրև 'ի փայտի անդ բևեռեալ էր, լուսաւորքն 'ի մտանել իւրեանց եղեն նմա պահանջողք վրէժխնդիրք։ Այլ աղէ տես, զի և ինքեանք բարբառքն կոչին ընդդէմ միմեանց, սա-

կայծ և զկուրութի՛ւն շահիցն կապեալ են նոքա ։ Յառաջին աշտիճանէ անտի սկիզբն արասցուք ։ Շա՜հ մեծ է այնմիկ՝ որ ոչն հարկանէ զընկերն անիրաւութե՛, և օգուտ մեծ է այնմիկ՝ որ ոչն խնդրէ զվրէժ անձին իւրոյ 'ի չարչարչէ անտի ստուգութեամբ. և յաղթութի՛ւն մեծ է այնմիկ՝ որ մատուցանէ ապտակ ընդ ապտակի շնորհօք ։ Ոչ անիրաւեցաւ, վասն այնորիկ ոչ պարտի. և ոչ խնդրեաց զվրէժ իւր, վասն այսորիկ առնու զհատուցումն. և յաւել ետ, վասն այսորիկ պսակի ։

«Ա՛յլ դու, ասէ, յորժամ պահիցես, լուա զերեսս քո, և օծ զգլուխ քո» ։ Նախ՝ զի մի՛ իցես դու հաճոյ մարդկան, իբրու զի թէ վասն մարդկեղէն փառացն իցեն պահքն. և երկու՝ ուսուցանէ նմա և թէ ծածուկ պահովք հատուցչին ծածկելոյ հաճոյ լիցի ։ «Մի՛, ասէ, երևեսցիս դու մարդկան իբրև ըզպահող». գուցէ թէ փառք դիպողաց պահոցն թափուր արասցեն զնա 'ի վարձուց պահոցն ։ «Հայրն քո, ասէ, որ տեսանէ ծածուկ, հատուսցէ քեզ յայտնապէս» ։ Եւ զի ասէ «Լուա զերեսս քո, և օծ ըզգլուխ քո». զի բանն Աստուծոյ 'ի խորհուրդ կոչէ զքեզ ։ Զի այն՝ որ օծանէ զգլուխ իւր, պարարեալ լինի գիտութե՛ նորա. և այն՝ որ լուանայ զերեսս իւր, լուացեալ լինին երեսք ոգոց իւրոց յաղտոյ ։ Արդ 'ի ներքս յանդաման առ դու զպատուիրանն. և լուա դու զտեսիլ ոգոյ քո յաղտոյ անօրէնութեանց, և օծ զգլուխ քո սրբութեամբ, զի եղիցիս դու կցորդ Քրիստոսի ։

«Եթէ լոյսն որ 'ի քեզ է՝ այն խաւար է». այս ինքն եթէ որովք մեղանչես դու, զի լուսատու է նա, այս ինքն զի արդարացուցիչ է, ո՞րչափ ևս մեղօքն՝ զի խաւարեցուցիչք են. շնութե՛ և հայհոյութեան մի կողմէ նոցա, զի յանցեցուցիչք են. այլ տրոց երկու կողմանք են ։ Եթէ տուեալ լինին մարդկեղէն պարծանօք, յանցուցանեն նոքա. ապա թէ ձեռն տուչին առ մարդ կարօտեալ ձգեալ լինին, և խորհուրդք նոցա առ Ա՛ծ հատուցիչ ձգեալ լինին. այս է զոր ասէ. «Ուր գանձք ձեր են, անդ իցեն և սիրտքն ձեր» ։

«Մի՛ դատիք, ասէ». այս ինքն անիրաւութե՛. «Զի

մի՛ դատապարտեսջիք „ վասն անիրաւութեան . և “թողէք , և թողցի ձեզ „ : Զի յորժամ դատի ստուգութ՟բ , թողցէ շնորհօք . զի յորժամ դատեալ լինի ինքն ստուգութ՟բ , արժանի լիցի շնորհօք թողուե՟ն : Կամ վասն դատաւորացն՝ որ զանձանցն իւրեանց վրէժ խնդրեն՝ ասաց . “Մի՛ , ասէ , պատժէք „ . այս ինքն մի՛ խնդրէք զվրէժ անձանց ձերոց . կամ մի՛ դատիք նմանութ՟բ և կարծեօք , և պատժէք . այլ յանդիմանեցէք և խրատեցէք :

“Որ ունիցի , ասէ , տացի նմա . և որ ոչն ունիցի , և որ ակն ունիցի թէ գուցէ նորա՝ և զայն ևս հանցեն ՚ի նմանէ „ . իբրև զայն՝ զի ասէ . “Որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ „ . այս ինքն որոց էին ականջք հոգւոյ ՚ի մէջ մարմնաւոր ականջացն՝ լսել զհոգևոր բանս նորա , յաւելույր և տայր նոցա զուսումն վարդապետութ՟ե իւրոյ , աւելի քան զոր ունէին : Եւ այնոքիկ՝ որ կարծէին թէ ունիցին նոքա , հան ՚ի նոցանէ և զայն ինչ զոր ունէինն , յայնմիկ՝ զի ասէ . “Տեսանելով տեսցեն և մի՛ տեսցեն . որ ունիցի , ասէ , տացի նմա . և որ ոչն ունիցի , և զայն ևս հանցեն ՚ի նմանէ „ : Իսկ այն՝ որ ոչն է արժանի այնմիկ զոր ինքն ունի , զիա՞րդ ունի նա ակն ունել զայն ինչ՝ զոր ոչն ունիցի : Իսկ ո՛ր մարդ արժանի լինի այնմիկ՝ զոր ինքն ունի , յաւելցի նմա և այն ինչ ևս՝ զոր ոչն ունիցի : Ապա եթէ չիցէ արժանի , և զայն զոր ունիցին՝ հանցեն ՚ի նմանէ : Որչափ և կարէ մարդըն ընդունել , տուեալ են նմա շնորհք . որպէս զի հանկիցեն յընդունիչն խոստացելոցն որ նման է նմա : Որ ունի՝ յաւելու նմա , որպէս զի ինքնին գլխովին անձամբ իւրով մեծասցի նովաւ :

Մարդ առ այժմ ինչ որ նման է մեզ , յաւելեալ լինի մեզ . ապա եթէ ոչ՝ յաւելլով յաւելու . սոյնպէս և հոգւոյն իմաստութ՟ե ոչ լինի տուեալ մարդոյ որ յիմար է խորհրդով , զի մի՛ նուաղեալ լիցի նա այնու լուսաւորողն : Այլ տուեալ լինի Հոգւոյն սուրբ յայտնիչն խորհրդոց՝ որ խորհրդոց հասու է , զի ծաղկեսցէ ՚ի նմա իմաստութիւն զուարձացուցիչ , և զի եղիցի նմա բանն ուրախարար : Եղաք փոխառուք , լիցուք հատուցիչք . և եթէ խոստովան լինիմք այնմ՝

որ փոխն ետ մեզ, յաւելցի մեզ 'ի վերայ այնր զոր ա-ռաքն ։ Եթէ զլսողք լինիմք, մի երկմտեսցուք՝ թէ չիցեն առ նմա զոր առաքն ։ Ինչ զոր առաք՝ թէպէտ առ մեզ է, թէ զլանամք՝ առ նմա է ։ Եթէ գոհանամք և հաւատամք այն ինչ՝ որ առ 'ի նմայն է, և առ մեզ է ․ “Որ ունիցի, ասէ, տացի նմա„ ։ Պաւղոս՝ որ ունէր զարդարութի օրինացն, յաւելան նմա հաւատքն կենարարին ։ Իսկ այն՝ որ ոչն ունի և ոչ զարդարութիւն՝ զի՞ գործիցէ նա օրինացն ․ և զայն զոր ունիցի, հանցեն 'ի նմանէ ․ քանզի մինչ 'ի Յովաննէս մկրտիչ գան գնացք օրինացն ։ Եւ դարձեալ որ ունիցի զկարծիս թողութե մեղաց ։

“Մ՛ի տայք, ասէ, զսրբութի շանց„ ։ Զոր օրինակ որ ոչն աւետարանէն զաւետարանն նորա՝ մեղանչէ, զի ոչ պահէ զպատուիրանն, այսպէս այն՝ որ տայ սըրբութի շանց ․ թէպէտ և շունք զսրբութիւնն ոչ ուտեն, և խոզից մարգարիտն չէ ինչ պիտոյ, սակայն հաղորդ և կցորդ է նա այնմիկ՝ որ թագոյց զարծաթ տեառն իւրոյ ․ մինն ոչ աճեցոյց, և միւսն ոչ պահեաց ։

Եկն նա, ասէ, ընդ ծերս ժողովրդեանն, և աղաչէր զնա զի անդարձ լիցի գալ և ապրեցուցանել զծառայն նորա ։ Եւ իբրև առ յանձն երթալ, ասէ ցնա ․ “Տէր մի ինչ աշխատ լինիր, այլ ասա բանիւ և բժշկեսցի ։ Եւ իբրև զայս, ասէ, լուաւ՝ զարմացաւ„ ։ Ած զարմացաւ վասն մարդոյ ։ Եւ զի ասէ ․ “Եւ ոչ յոք 'ի մէջ Իսրայէլի երբէք այսպիսի հաւատս գտի ես„ ․ զի զնոսա յամօթ արասցէ, զի ոչ հաւատացին 'ի նա իբրև զօտարն ։ Առ ած զնոսա, զի եղիցին բարեխօսք նորա ․ և գտան կշտամբեալք, զի ոչ էին 'ի նոսա հաւատքն նորա ․ վասն այսորիկ ելցեն 'ի խաւարն արտաքին ։ Դիպեցաւ կուսորդին որդոյն այրոյն ․ և եղև արտասուացն նորա իբրև սպունգ, և մեռելութեան որդոյ նորա կենդանութի ։ Դարձաւ մահ յորջ իւր, և թիկունս ետ նահատակին ։

“Աղուեսուց, ասէ, դադարք իւրեանց գոն ․ և որդոյ մարդոյ ոչ գոյ տեղի, ուր դիցէ զգլուխ իւր„ ․ այս ինքն 'ի նմա իսկ ոչ գոյր հանգիստ գլխոյ և բնակութե ածութեն ։ Յո՞, ասէ, հայեցայց և բնակե-

ցայց, այլ 'ի հեզս սրտիւ „. և այն ևս ։ Կամ զի ետես նա թէ մեռեալք յառնեն, և կոյրք բանան, եդ 'ի մտի իւրում՝ թէ որում այսպիսի գործ են, արծաթ բազում գոն նորա, ասաց նա. "Եկից և ես զկնի քո „. վասն այսորիկ աղուեսուց դադարք իւրեանց գոն, այլ նորա և ոչ ինչ 'ի ստացուածոց աղուեսու-ցոյ իւր տուն ։

Այն որ ննջեացն, նա զարթեաւ և ննջեցոյց զծովն. զի զուարթութք ծովուն որ ննջեաց՝ յայտ արասցէ զզօրութի ածութեն իւրոյ, որ ոչ ննջէ ։ "Սաստեաց, ասէ, հողմոյն և դադարեաց „ ։ Ո՞ր իշխանութի է այս, կամ զի՞նչ բարերարութի է այս Յեսովայ. զի ահա աւանիկ բնութք հնազանդէ ։ Արդ որ ոչ իւրք են, հողմոցն ծովուն, և այսովքն դիւովք, զոր լռե-ցոյց տէր մեր, յայտ արար՝ թէ որդի է նա արարչին ։

Գերգեսացիքն սահման եդին իւրեանց ոչ ելա-նել և ոչ տեսանել զնշան տեառն մերոյ ։ Վասն այ-սորիկ հեղձուցանէ զերամակն խոզիցն նոցա, զի ել-ցեն յակամայ կամս ։ Եւ լեգէոնին որ զգաստացաւ, խորհուրդ է նա աշխարհիս. զի զգաստացեալ ցա-ծեաւ մոլորութի սորա կենարարաւն ամենայնի ։ Ե-թէ 'ի խոզսն մինչև առին հրաման՝ ոչ իշխեցին մտա-նել, որչափ ևս 'ի պատկեր Աստուծոյ ։ Եւ զի լուիցեն ուրացեալքն՝ եթէ կարող է հանել 'ի միջէ, և տալ հրաման մտանել յայլս. և երկիցեն՝ թէ ո՛ պա-հէ զնոսա 'ի ծածուկ 'ի դիւաց անդի, եթէ ոչ այն՝ որ 'ի խոզսն հրաման ետ մտանել, և ոչ 'ի մարդիկ ։ Այն՝ զորմէ ասացին "Բանիւ բեղզեբուղաւ հանէ „, ընդ սատանի մարտեաւ 'ի լերին անդ, և ընդ լեգէով-նի զօրագլխի նորա ։ "Եւ իբրև մտին 'ի խոզս անդր, նոյն ժամայն հեղձուցին զնոսա „. զի յայտ լիցի ողոր-մած բնութին՝ որ պահէր զայրն զայն ։ "Եւ սկսան, ասէ, աղաչել զնա դևքն՝ զի մի՛ հանցէ զնոսա 'ի տեղւոջէ անտի, և մի՛ առաքեսցէ զնոսա տարաժամ 'ի գե-հենն „ ։ Եւ այն՝ որ ասաց "Երթայք 'ի հուրն յաւի-տենից, որ պահեալ է սատանայի և հրեշտակաց նո-րա „, զիա՞րդ Բեեղզեբուղ հանէր, և խոստանայր նմա գեհեն. և վկայէ այն՝ զի "Մի՛, ասէ, առաքեսցէ զնոսա տարաժամ 'ի գեհենն „ ։

Հալածեցին գերգեսացիքն 'ի գաւառէ անտի իւրեանց զայն՝ որ կարող էր հալածել զդեւսն յաշխարհէ անտի նոցա ։ Եւ զի երկեան բնակիչք աշխարհին այնորիկ, զի մի տացէ հրաման դիւացն մտանել 'ի նոսա, արձակեաց զայրն՝ եթէ «Երթ քարոզեա», եթէ վայ իցէ նոցա. զի անդէն իսկ մտանելոց են 'ի նոսա դեւքն՝ որ հալածեալն լինէին յամենայն տեղեաց. զի հալածչին դիւաց ոչ ետուն մտանել առ ինքեանս, առաւել բազմանան ցաւք նոցա այնոցիկ՝ որ բժշկին ոչ ետուն մտանել առ ինքեանս ։ Եւ արդ զխոզսն՝ որ պեղծն համարեալ են արարչին՝ հեղձոյց, և արար կամս և դիւացն, և արկ տուգանս 'ի վերայ տեառն երամակին, և դեւքն գիտացին զտանջիչն իւրեանց ։

## ԳԼՈՒԽ Է

ՐԵԶ օրհնութ̃ի, ծնունդ ծածկեալ ինքնութեան. զի ծածուկ հարուածովք տանջանացն կնոջ տեռատեսին՝ ծածուկ բժշկութիւն քո քարոզեալ լինէր. և երևոյթ կնաւն զաներևոյթ ա̃ծութիւն տեսանէին. բժշկելովն Որդւոյն ա̃ծութ̃ի նորա երևեալ լինէր, և բժշկութ̃ք տանջեալ տեռատեսին հաւատք նորա յայտնեալ լինէին ։ Քարոզեաց զնա, և քարոզեցաւ ընդ նմա. քանզի ճշմարտութ̃ք ընդ նմա լինէին քարոզեալ և քարոզք նորա ։ Զի թէպէտ և ինքն կինն ա̃ծութ̃ին նորա վկայ լինէր, սակայն և նա հաւատոց նորա վկայ լինէր ։

Արկ 'ի վերայ նորա կինն փոխանակ հաւատս. և դարձոյց նա նմա հատուցումն փոխարինին նորա առողջութ̃ի ։ Այլ իբրև հաւատք կնոջն յայտնեցան, ապա և նորա բժշկութ̃իւնն յայտնապէս քարոզեալ լինէր ։ Եւ իբրև զօրութ̃ին նորա առաքինացաւ և բարձրացոյց զՈրդին, ապա բժիշկք հանդերձ դեղովքն իւրեանց յամօթ լինէին ։ Երևեցաւ թէ որչափ առաւել են հաւատք քան զարուեստագիտութ̃ի, և որչափ առաւել է ծածուկ զօրութ̃ին քան զդեղս յայտնիս ։ Նախ զխորհուրդս նորա գիտաց նա, այն՝ զոր և ոչ զկերպարանս նորա կարծէին թէ գիտէր

նա ։ Եւ ոչ յայնմիկ իսկ զի հարցան՝ Թող զնոսա տէր մեր թէ պակասեսցին, այն՝ որք զպատճառս պակասութեան իւրեանց խնդրէին ։ Զի թէպէտ եղև նա իբրև ոչ գիտակ, յայնմիկ՝ զի հարցն թէ ո մերձեցաւ 'ի նա, սակայն եղև նա գիտել զգաղտնիս, յայնմիկ՝ զի ոչ բժշկեաց զնա վասն այլոյ իրիք, բայց յայնմանէ զի հաւատաց 'ի նա. զի նախ զծածուկ հաւատս կնոջն ետես նա, և ապա ետ նմա զյայտնի բժշկութիւն ։ Արդ եթէ զաներևոյթ հաւատս տեսանէր նա, որչափ ևս զերևոյթ մարդկութիւն տեսանէր նա ։

Արդ թէպէտ և վասն օգտութեան ցուցանէր տէր մեր թէ և ոչ յայտնութեանց տեղեակ է նա, սակայն նովին իսկ այնուիկ դարձաւ ցոյց նա զկանխագիտութիւն իւր՝ թէ և զգաղտնիս գիտէր նա. որո՞վ. այլ այնուիկ՝ որ ասաց Շմաւոն. “Ժողովուրդք, ասէ, շուրջ պատեալ են և նեղեն զքեզ. և դու ասես՝ ո մերձեցաւ յիս ” ։ Արդ թէպէտ և Շմաւոնի տեառն մերոյ ցուցանէր՝ թէ ամենայն ժողովուրդք մերձենային 'ի նա, սակայն տէր մեր ցոյց Շմաւոնի՝ թէ մի միայն յամենեցունց մերձեցաւ 'ի նա ։ Զի թէպէտ և ամենեքին վասն հարկի նեղութեան ժողովրդոցն մերձենային 'ի նա, սակայն վասն հարկին չարչարանացն մին միայն մերձեցաւ 'ի նա յայնմ ժամու ։ Արդ Շմաւոն զմերձենալ մարդկութեան 'ի տէր մեր կամեցաւ ցուցանել տեառն մերոյ. այլ տէր մեր զհաւատս՝ որ մերձեցաւ 'ի նա՝ կամեցաւ ցուցանել Շմաւոնի ։

Այլ գիտասջիր՝ զի թէպէտ և բազումք մերձենային 'ի նա, սակայն մին պիտոյ եղև 'ի բազմաց անտի խնդրել՝ որ մերձեցաւ 'ի նա ։ Արդ եթէ ամենեքին մերձենային 'ի նա, և յամենեցունց անդի միում խնդիր եղև, յայտ է՝ թէ զամենեսին որ նեղէին զնա՝ գիտէր նա. զի ահա աւանիկ և ոչ մի յամենեցունց անտի կարաց թագչել 'ի նմանէն ։ Եւ եթէ իբրու ամենեքին խառն անխտիր շօշափելով մերձենային 'ի նա, և յամենեցունց անտի մին միայն յականէ խնդրեցաւ, յայտ է՝ թէ զամենեսին իբրև զմինն գիտէր նա. յայնմանէ՝ զի զմինն որ ոչ էր յայտնի 'ի մէջ ամենեցունց՝ գիտաց որոշել զնա ։ Զի բա֊

զումք յայնմ ժամու թէպէտ և մերձենային 'ի նա , սակայն իբրև 'ի մարդ մերձենային 'ի նա. վասն այնորիկ խնդրեցաւ այն՝ որ մերձեցաւ 'ի նա իբրև յա̃ծ , զի կշտամբեալ յանդիմանեսցին այնոքիկ՝ որ իբրև 'ի մարդ մերձենային 'ի նա ։ Արդ զմինն որ մերձեցաւ 'ի նա ընդ ամենեսին , որոշեաց զնա 'ի միջոյ ամենեցունց. զի զամենեսին միով բանիւն ուսուսցէ նա. և իւրաքանչիւր 'ի նոցանէ զկարգ կամ որպէս մերձենայր 'ի նա՝ գիտէր նա ։

Արդ որ մերձենայր 'ի նա մարմնապէս , շօշափումն մարմնեղէն տեսանէր. և որ մերձենայր 'ի նա հոգեպէս , 'ի ձեռն շօշափելի մարդկութե̃ն զանշօշափելի ա̃ծութի̃ն շօշափէր ։ Որ մերձենայր 'ի նա մարդկապէս , շօշափումն մարդկութե̃ գտանէր 'ի նա. և որ մերձենայր 'ի նա ա̃ծապէս , զգանձս առողջութեան ցաւոց իւրոց գտանէր ։ Զի եթէ էր բժշկեալ տանջեցելոյն և գնացեալ գաղտ՝ հանդերձ այնու զի 'ի բազմաց անտի սքանչելիքն ծածկեալ լինէին , սակայն և նա ինքն գլխովին որ բժշկեցաւն մարմնապէս՝ հիւանդացեալ լինէր հոգեպէս ։ Զի թէպէտ վասն զի բժըշկեաց զնա՝ հաւատայր 'ի նա թէ արդար է , սակայն վասն զի ոչ գիտացէ՝ երկմտեալ լինէր նա թէ չէ նա ա̃ծ ։ Նա և յարդարսն մերձենային մարդիկ և լինէին բժշկեալ. այլ ոչ թէ գիտէին արդարքն թէ ով ոք 'ի նոցանէն մերձեցան 'ի նոսա և բժշկեցան ։ Արդ զի մի հիւանդացեալ լինին միտք այնորիկ՝ որ բժշկեցաւն մարմնովն իւրով , փոյթ եղև նմա վասն բժշկութե̃ մտացն նորա , այնմիկ՝ որ վասն բժշկութե̃ մտացն մերձենայր և 'ի բժշկութի̃ս մարմնոյ ։ Վասն այսորիկ "Ո՞վ մերձեցաւ 'ի հանդերձս իմ". զմերձենալն ոչ կամեցաւ յայտնել. ոչ եթէ խաբել ինչ կամեցաւ, այն՝ որ զխաբէութի̃ն իսկ սովին այսուիկ խափանել կամեցաւ. և ոչ եթէ զի մի եղիցի նա խոստովան 'ի ճշմարտութե̃ անդր. զի ահա աւասիկ վասն զի խոստովան եղիցին մարդիկ 'ի ճշմարտութե̃ անդր , արար նա զայս ։

Արդ ընդէ՞ր ոչ յայտնեաց տէր մեր՝ ո մերձեցաւ 'ի նա ։ Այլ արժան իսկ էր , զի բժշկին բժշկեալն եղիցի վկայ. զի վկայեսցէ այն՝ որ բժշկեցաւն յայտնա-

պէս , զօրութե այնմիկ՝ որ բժշկեաց զնա'ի ծածուկ ։ Ոչ փութացաւ նա՝ թէ ինքն վկայեսցէ վասն անձին իւրոյ , իբրու ինքն 'ի մէջ 'ի թշնամեաց իւրոց կայր . այլ կաց մնաց նա , զի գործն իւր եղիցի նմա քարոզ ։ Արդ երկայնմտութին նորա զբարեկամս նորա քաջալերէր , և զթշնամիսն իւր յանդիմանէր . և իբրև երկայնմտութին ած զնա 'ի մէջ , տեսին զնա բարեկամք նորա և թշնամիք նորա ։ Եւ գիտացին եթէ այս այն է , որ աշխատ արար զբժիշկս ամենայն . աշխատ արարին և զնա իսկ բժիշկքն ամենայն ։ Արդ առաքեցաւ զօրութին՝ որ ել 'ի նմանէ . մերձեցաւ յարգանդն պեղծ և ոչ գարշեցաւ . սոյնպէս և ոչ ածութի նորա գարշեցաւ բնակել 'ի սուրբ արգանդի անդ , զի ըստ օրինաց և արտաքոյ քան զօրէնս սուրբ էր կոյսն քան զայն՝ որ լի արեամբ իւրով գարշելի էր . այլ թշնամիք նորա կշտամբութե յանդիմանեալ լինէին , եթէ այնմ՝ որում ունկնդիրն եղև նմա մոլեգին բխումն արեանն որ 'ի բնութեն էր , չարաչար գործեաց . զի ոչ եղև նմա ունկնդիր ազատութին որ կամաց էր ։

Արդ բարեկամք նորա մարդկութեն նորա յանդիմանութե կշտամբեալ լինէին . բարեկամք նորա ուսան՝ եթէ զոր օրինակ զօրութին նորա մերձեցաւ յարգանդն ցաւագին՝ վասն օգտութեան նորին արգանդի մերձեցաւ նա , սոյնպէս և ածութիւնն նորա՝ որ բնակեաց 'ի մարդկութե , վասն օգտութե մարդկութե կցորդեցաւ ընդ նմա ։ Բայց թշնամիք նորա վէմ գայթագղելի նախընտրէին իւրեանց . զի ասէին , օրինաց մանուկ է նա , զի՞ մերձեցաւ առ նա պեղծն յօրինաց , և ոչ խորշեցաւ 'ի նմանէ ։ Իսկ այնոցիկ՝ որք զաչս իւրեանց ձեռօք իւրեանց կուրացուցին , ոչ երևէր նոցա եթէ զօրութին այն՝ որ իբր պեղծք նովաւ սրբէին՝ զիա՞րդ լինէր ինքն պղծեալ պղծութեն նոցա ։ Զի եթէ զօրութիւն հրոյ զոսկի սրբէ՝ զիրս պեղծս , իբրու ինքն 'ի նոցանէ ոչ լինի պղծեալ , ո՞րչափ ևս առաւել զօրութի ածութեն նորա սրբէ , իբրու ինքն ոչ աղտեղանայ . զի հուր՝ սրբութե չէ ինչ կարօտ , նա և ոչ աղտեղել ինչ կարէ զնա . և իբրև 'ի մէջ սրբոց և պղծոց տեղի գոյ , մի շնչել հողմոյ և մի տօթ արեգական անցանէ ընդ նոսա և խառնէ ըզ

նոսա․ որպէս զի երևեսցի եթէ ինչ որ պղծէ 'ի վարս ազատութեան՝ այն իսկ է պեղծ։

Ընդէ՞ր ասաց տէր մեր՝ ո՞ մերձեցաւ յիս։ Այլ զի գիտասցէ այն՝ որ գիտայ զբժշկութիւն նորա, թէ և նա գիտաց զհաւատս նորա։ Արդ վասն առողջութեան իւրոյ գիտաց զնա՝ թէ նա ինքն է բժիշկ ամենայնի․ և վասն հարցանելոյն նորա գիտաց զնա՝ թէ նա ինքն է քննիչ ամենայնի։ Այլ իբրև ետես նա, ասէ, թէ և այս ոչ ծածկեցաւ 'ի նմանէն, այսուիկ կարծել կարծեր նա՝ թէ մարթ է եթէ ոչ ինչ ծածկի 'ի նմանէն․ արդ ցոյց նմա տէր մեր՝ եթէ ոչ ծածկի ինչ 'ի նմանէ, զի մի գնասցէ նա խաբեալ առ 'ի նմանէ։ Արդ հանդերձ այսու՝ զի ուսաւ նա թէ բժշկէ զհարուածս յայտնիս, ուսաւ դարձեալ թէ գաղտնեաց գիտակ է նա։ Եւ այն՝ որ բժշկէ զհարուածս մարմնոյ և քննէ զգաղտնիս մտաց, հաւատաց նա՝ թէ նա ինքն է տէր մարմնոյ և նորին մտաց․ վասն այսորիկ իբրև տեառն մարմնոյ զմարմինն հանդերձ ցանկութեամբք իւրովք հնազանդեցոյց, և իբրև դատաւորի մտաց զմիտս հանդերձ խորհրդովք իւրովք յստակեաց նա։ Զի երկեաւ նա յանցաւոր լինել գործոյն․ քանզի հաւատաց նա թէ տեսանէ զնա, այն՝ որ ետես զնա մինչ դեռ զկնի նորա 'ի դրօշակն նորա մերձենայր․ և երկեաւ նա յանցանել և մեղանչել և 'ի խորհուրդս անդր, զի գիտաց թէ ոչ ծածկի 'ի նմանէ, այն՝ որ ինքն իսկ վկայեաց նմա՝ թէ և այս ևս ոչ ծածկեցաւ 'ի նմանէ։

Արդ եթէ բժշկեալ և գնացեալ էր առ 'ի նմանէն գաղտ, զպսակ նահատակաց զրկէր տէր մեր․ զի հաւատքն որ առաքինացան 'ի պատերազմի անդ ծածուկ, պարտ էր նոցա պսակել յայտնապէս․ վասն այսորիկ պսակ խօսուն բոլորեաց նմա, յայնմիկ՝ զի ասաց նմա "Երթ խաղաղութեամբ"․ զի խաղաղութիւն նորա պսակ յաղթութեան նորա։ Այլ զի յայտ լիցի թէ ով է տէր պսակիս այսորիկ, յաւել անդ՝ թէ երթ խաղաղութեամբ, ասաց և ոչ լռեաց․ այլ յաւել և ասաց "Հաւատք քո, ասէ, կեցուցին զքեզ"։ Որպէս զի յայտ լիցի՝ եթէ խաղաղութիւնն զոր բոլորեաց բերան նորա, պսակ՝ որ զհաւատս նորա պսա-

կէ ։ “Հաւատք քո, ասէ, կեցուցին զքեզ„ ։ Զի եթէ 'ի կենդանիս հաւատք կեցուցին զնա, յայտ է՝ եթէ և պսակաւն հաւատք նորա պսակեսցին ։ Վասն այսորիկ աղաղակեաց և ասէ ․ “Ո՞ մերձեցաւ 'ի հանդերձս իմ„ ․ զի յայտ լիցի յամենայն մարդկանէ՝ թէ ով ոք մերձեցաւ առաւել քան զամենայն մարդ ։ Զոր օրինակ առաւել քան զամենայն ոք որոշեաց նա պատուել զնա, մի՝ զի զկնի նորա, և երկու՝ զի 'ի դրօշակ հանդերձի նորա մերձեցաւ նա, սոյնպէս և նմա պարտէր պատուեալ լինել առաջի ամենեցուն, այն՝ որ առաւել քան զամենեսին կամեցաւ պատուել զնա ։

“Ես գիտեմ, ասէ, զի ոմն մերձեցաւ յիս„ ։ Եւ ընդէ՞ր ոչ ած զնա բռնի 'ի մէջ զայն ոմն՝ որ մերձեցաւ 'ի նա ։ Այլ քանզի համարձակութ̃ի կամեցաւ ուսուցանել հաւատոցն, զի եղիցին հաւատք գողանալ 'ի ծածուկ, և եղիցի պարծել գողութ̃ն իւրեանց ․ ուր առաջի հաւատոցն գողութ̃ի ուսուցանէր հաւատոցն ։ Եւ այնուիկ՝ զի գովեաց զնոսա յետ գողանալոյն նոցա, յարդարէր զնոսա զի պարծեսցին գողութ̃ն իւրեանց ։ Գողացան և մեծացան, խաբեցին և գովեցան ․ զի յայտ արասցէ՝ թէ հաւատք վստահարեալք, որք ոչն գողացան, ո՛րչափ ինչ աղքատացան ․ և այնու զի ոչ ընբռնեցան, ո՛րչափ յամօթ եղեն ։ Սոյնպէս և Հռաքել 'ի գողանալ պատկերին գովեցաւ, և 'ի զօդեալ ստուգութ̃են պսակեցաւ ․ և Մեղքող դարձեալ ստուգութ̃ իւրով զԴաւիթ թագոյց, և նենգութ̃ իւրով 'ի հատուցումն արքայութ̃ե նորա հրաւիրեցաւ ։ Զարմանք են զայս լսել, զի իբրև ամենայն գողութ̃իք զգողս իւրեանց յամօթ առնեն, իսկ գողութիւնն հաւատոց զնոսա առաջի ամենայն մարդոյ գովեաց ։

“Ո՞վ, ասէ, մերձեցաւ յիս„ ։ Տէր գանձուն ըզգող գանձու իւրոյ խնդրէր, զի կշտամբեսցէ և յամօթ արասցէ նովաւ զայնոսիկ՝ որ զգանձս նորա ոչ կամեցան գողանալ, իբրու գանձք նորա առաջի ամենայն մարդոյ հարեալ թողեալ էին ։ Ոյք վեհերոտքն էին հաւատովք, աղքատութ̃ տանջեալ լինէին ․ իսկ որոց հաւատքն իւրեանց ժրագլուխ էին, յայտ երեսօք

խնդրեալ ընթանային, և 'ի ծածուկ գողանալ փու-
թային: "Ո՞վ, ասէ, մերձեցաւ յիս. զօրութի̃ բա-
զում, ասէ, գնաց յինէն »: Արդ այն՝ որ գիտաց ե-
թէ զօրութիւն գնաց 'ի նմանէ, ո՞չ արդեօք գիտէր
յո՛յր վերայ հանգեաւ զօրութիւնն՝ որ ել 'ի նմանէ:
կամ թէ գուցէ զօրութի̃ն նորա բարժանեա՞լ էր 'ի
վերայ նորա, և բժշկութի̃ն նորա առանց նորա՞ լինէր
գողացեալ: Այլ քանզի գոն արմատք, որ տան զօգ-
տութի̃ս իբրև ինքեանք ոչ գիտեն, կամեցաւ տէր
մեր ցուցանել առողին՝ եթէ գիտակ է նմա տուողն.
և ցոյց թէ ոչ որպէս դեղ զի բնութ̃բ իւրով բժշկէ
զամենայն՝ որ առնուն զնա, այլ իբրև իմաստուն
հանճարեղ բժշկէ կամօք իւրովք զամենեսին որ սի-
րեն զնա:

Արդ այս զօրութի̃ ել 'ի փառաւորեալ ա̃ծութ̃է
անտի, և նա բժշկեաց զաղտեղի արգանդն զպղծեալն
յօրինաց անտի. զի յայտ արասցէ՝ թէ ոչ գարշի
ա̃ծութիւն յումեքէ ըստ որում հաւատքն կցորդին,
զի հաւատք ծառ են՝ որ 'ի վերայ նորա հանկչին
պարգևք ա̃ծեղէնք: Զի պղծութի̃ն որ է յօրինաց,
յորժամ կցորդին ընդ նմա հաւատք կամաց՝ թէպէտ
և պղծութի̃ն որոշէ և պղծէ, սակայն հաւատք սրբ-
բեն և խառնեն, կամք միաբանեն և հաւասարեն:
Թէպէտ և օրէնքն հրամայեն և որոշեն, սակայն Եղիա
հաւատաց և սրբեաց, ոչ իբրև հակառակեալ ընդ
օրէնս, այլ իբրև նուաճեալ ընդ օրէնս: Ոչ եթէ
Եղիա յանդիմանէր զօրէնսն թէ պարտ էր կերակրոցն
սրբել, այլ օրէնքն ուսուցանէին Եղիայի՝ թէ ոչ է ար-
ժան կերակրոցն պղծել. ոչ Եղիա հակառակ օրի-
նացն լինէր, և ոչ օրէնքն հակառակորդ օրէնսդրչին
լինէին գտեալ: Եղիա գիտաց զտկարութի̃ օրինացն.
և վասն այսորիկ հիւանդաբար ընդ օրէնսն ոչ վա-
րեցաւ: Օրէնքն գիտէին զինչ կարգք [1] են օրէնսդըր-
չին. և վասն այսորիկ ըստ կամաց նորա թողացու-
ցանէին և պնդէին: Զի թէպէտ և 'ի պեղծ ազգա-
ւուց անդի Եղիա կերակուր ընդունէր, սակայն զայն
ինչ զոր առ նա 'ի բերանոյ ա̃յ, հաստատուն պահէր.

1 Յօրինակին կա+ :

թէպէտ և հարքն նոցա 'ի բերանոյ սուրբ վիմին ընպելի յանապատի անդ ընդունէին, սակայն զայն ինչ զոր ընկալան 'ի բերանոյ ա̃յ՝ պահել ոչ կամէին ։ Թէպէտ և Եղիա յագռաւուց անդի պղծոց լինէր կերակրեալ սրբապէս, սակայն 'ի սուրբ ա̃ծութէ անտի հոգեպէս լինէր կերակրեալ. և հարքն նոցա թէպէտ և 'ի կերակրոյն զմիտս իւրեանց մնուցանէին ։

Իսկ այն՝ զի ասաց Եղիա՝ թէ "Ես միայն մնացեալ եմ մարգարէ տեառն", ոչ եթէ չարախօս արդարոցն լինէր նա՝ թէ չեն ուրեք, այլ զմեղաւորսն կշտամբեալ յանդիմանէր՝ թէ սպառեցին զնոսա ։ Ոչ եթէ զայս կամէր նա, թէ ինքն միայն գտցի արդար, այն՝ որ և վասն այսորիկ ոչ գտաւ նոցա զերիս ամս, զի եգիտ զնոսա՝ զի չէին գտեալ յա̃յ ։ Զի եթէ ագահութ̃ի որկորստութ̃ե մարգարէիցն Բահաղու խընդայր և ուրախ լինէր ընդ բազմանալ կերողացն ընդ նոսա 'ի սեղանոյ անտի Եզաբելայ, իսկ հալածութ̃ի ճշմարիտ մարգարէիցն չարակնելո̃վ ինչ չարակնէր, այնոքիկ՝ որք զպարանոցն իւրեանց ընդ նոսա 'ի սուր սուսերի խոնարհեցուցանէին ։

Իսկ արժան էր բանիցս՝ այժմ ունել շնորհ բանիցն առաջնոց և լռել. ոչ եթէ զայս ճառս արկեալ էր մեր, այլ ինքեանք բանք վասն սիրոյ իւրեանց կռչեն զընկերս իւրեանց, զի եկեսցեն ընդ ինքեանս ։ Այլ ճառս զոր արկեալ էր մեր, այս է. "Ո՞, ասէ, մերձեցաւ յիս. ես, ասէ, գիտեմ՝ զի զօրութ̃ի բազում գնաց յինէն" ։ Այլ աւետարանիչն գրէ՝ եթէ "Զօրութ̃ի բազում գնայր 'ի նմանէ, և զամենեսեան բժշկէր" ։ Այլ տէր մեր 'ի միում վայրի միայն խոստովան եղև՝ եթէ գնաց 'ի նմանէն զօրութ̃ի ։ Իսկ ընդէ՞ր 'ի միում վայրի ասաց ։ Այլ քանզի և ոչ 'ի միում վայրի երբէք ուրեք ել 'ի նմանէ նշանաւոր պարգևք յայտնի պղծութ̃են ։ Արդ տէր մեր ինքն զինքն գիտէր՝ եթէ յարգանդէն ել նա. և զայնոսիկ գիտէր, որք ոչ հաւատացին զելանել նորա յարգանդէ անտի ։ Վասն այսորիկ առաքեաց ըզզօրութիւն իւր յարգանդն յաղտեղի, թէ գտնեալ 'ի ձեռն աղտեղոյն հաւատասցեն զելանելն նորա 'ի սուրբ արգանդէ անտի ։

"Ո՛վ, ասէ, մերձեցաւ յիս. զի զօրութիւն, ասէ, բազում գնաց յինէն„ ։ Եւ ոչ 'ի միում վայրի երբէք ուրեք ասացեալ է բժշկին մերոյ այսպիսի բան. քանզի և ոչ 'ի միում վայրի երբէք ուրեք դիպեցան բժշկին մերոյ այսպիսի հարուածք ։ Քանզի հարուածքըն այն բազում բժշկաց դիպեցան, այլ հարուածոյն այնոցիկ մի բժիշկ դիպեցաւ ։ Փոխանակ զի դիպեցան նոցա բազումք և աշխատարարին զնոսա, դիպեցաւ նոցա մի, զի յաշխատութենէ անտի բազմաց հանգուսցէ զնոսա ։ Արուեստգիտութիւն բժշկութեան դիպեցաւ ամնթղեալ տանջանացն, և ցաւս 'ի վերայ ցաւոց յաւել նոցա ։ Որչափ գային, ասէ, զայրանալով զայրանային ։ Իսկ դրօշակ հանդերձին դիպեցաւ նոցա, և զնոյն իսկ զցաւսն արմատաքի խլեաց ։ "Եւ գիտաց, ասէ, յանձն իւր եթէ ելև նմա բժշկութիւն 'ի տանջանաց անտի իւրոց„ ։

Արդ իբր լռեաց դադարեաց արուեստգիտութիւն զգածեալ ամենայն իմաստութեամբք, ապա քարոզեցաւ աստուածութիւնն զգեցեալ հանդերձիւք ։ Զգեցաւ մարմին և էջ առ մարդկութիւն, զի զմարդկութիւն 'ի նմանէ յափշտակեսցէ. այլ ցոյց զաստուածութիւնն իւր նշանովք հաւատոց ։ Մի ևեթ ընդ մարդկութիւնն նորա հայիր դու. ցոյց զմարդկութիւն, զի հաւատասցեն վերինքն թէ ներքին է. և ցոյց զաստուածութիւն իւր, զի հաւատասցեն ներքինքս թէ վերին է ։ Առ մարմին 'ի մարդկութենէ անդի, զի մարդկութիւնս առ աստուածութիւն նորա կարող իցէ հասանել. և ցոյց զաստուածութիւն իւր, զի մի իցէ կոխան մարդկութիւն նորա ։ Ձեռք կնոջն մեղաւորի 'ի վերայ ոտիցն նորա տարածեալ լինէին, զի զպարգևս յաստուածութենէ անտի նորա ընկալցին ։

Արդ ցոյց տէր մեր զմարդկութիւն իւր, զի կարող իցէ կինն մեղաւոր մերձենալ առ նա. և շրջեցաւ և ցոյց դարձեալ զաստուածութիւն իւր, զի զփարիսեցին յանդիմանեսցէ նովաւ ։ Եւ այն՝ որ զարտասուս կընոջն մեղաւորի այպն կատականաց առնէր, զառականս խորհրդոց նորա կինն մեղաւոր այպն առնէր ։ Զի նա վասն սիրոյ զարտասուս նորա՝ որ ծածկեալ 'ի ներքս յաչսն՝ յայտնեաց, և նա վասն քաջալե-

բութեան նորա զխորհուրդս փարիսեցւոյն զծածկեալս յայտնէր ։ Զի կինն մեղաւոր իբրև զա̃ծ համարեցաւ զնա ․ զայն հաւատք նորա վկայէին ․ և Շմաւոն իբրև զմարդ համարեցաւ զնա , դնել մտաց նորա յայտ առնէր ։ Արդ տէր մեր կայր 'ի միջի անդ ․ առակեաց առակ 'ի մէջ երկոցունց ։ Եւ զի յասել անդ առակին քաջալերեսցի կինն մեղաւոր , և 'ի մեկնել անդ առակին կշտամբեալ յանդիմանեսցի փարիսեցին ․ այլ որպէս այժմիկ 'ի մէջ եղեաք , և իբրև Սողոմոն 'ի մէջ կանանց անկաք , սակայն թէպէտ և իբրև զՍողոմոն 'ի մէջ կանանց անկաք՝ այլ ոչ եթէ իբրև զՍողոմոնիւ 'ի կանանց վիրաւորեալք եղեաք ․ զի դստերք հեթանոսաց զՍողոմոնիւ յա̃ծպաշտութենէ անտի առ կուռսն իւրեանց պատրանօք իւրեանց խոտորեցուցանէին , և աստ զհաւատս դստերաց հեթանոսաց քան զքաջութիւնս կանանց հեբրայեցոց աճեցուցանեմք ։ Այնոքիկ որք առողջութ̃ մարմնոյ իւրեանց զառողջ հաւատոն Սողոմոնի հիւանդացուցին , իսկ սոքա բժշկութ̃ն իւրեանց զհիւանդագին հաւատոն մեր ահա աւասիկ ողջացուցանեն ։ Իսկ արդ ո՞վ իցէ , որ ոչ ողջասցին ։

Հաւատք նորա բխմամբն արեան՝ որ զերկոտասան ամն ընթանայր , 'ի միում ժամու իբրև յական թօթափել կարկեցոյց ։ Այլ ժամս բազումս բժիշկք բազումք հայէին 'ի նա ․ իսկ ժամ մի փոքրիկ բժիշկ միածինն հայեցաւ 'ի նա ։ Յամամ բազումս բժշկաց ծախք բազումք կնոջն ցրուեալք լինէին ․ իսկ 'ի ժամ մի բժշկին մերոյ՝ խորհուրդք ցրուեալք՝ 'ի մի հաւատս ժողովեցան ։ Մինչև բժիշկքն երկրաւորք բժշկէին զնա , ծախս երկրաւորաց տայր նոցա ․ այլ իբրև բժիշկն երկնաւոր երևեցաւ նմա , հաւատս երկնաւորս մատոյց նմա ։ Պարգևք երկնաւորք ընդ երկրաւորս յերկրի եղեն թողեալք ․ և պարգևքն հոգևոր ընդ հոգևորին 'ի բարձունս վերացան ։

Իսկ բժիշկքն այնոքիկ զտանջանս հարուածոցն դեղովքն իւրեանց իբրև զգազան չար զայրացեալ գըրգռէին ․ վասն այսորիկ իսկ իբրև զգազան զայրագին զնոսա և զդեղս նոցա ընդ ամենայն կողմանս ցրուեցին ։ Իբրու ամենեքեան փախչել փութային 'ի նո-

ցանէն, երագ զօրութիւն եւ 'ի դրօշակէ անտի հանդերձի նորա, որ բուռն հար զնոցանէ և անդէն կապեաց, և անուանեցաւ 'ի նոսա. և ծաղր եղեն 'ի միջէ անտի այնք՝ որք ծաղր եղեն 'ի նոցանէ բազումք: Մի բժիշկ անուանեցաւ հարուածովքն, որ 'ի բազում բժշկաց անտի անուանեալ էին: Մինչ զվարձմն 'ի բազումս տայր ձեռն նորա, հարուածք նորա և փոքր մի բժշկութիւն ոչ առին. այլ իբրև ձեռն նորա ունայն կարկառաւ, ապա լցան գիրկք նորա առողջութեամբ: Մինչ ձեռն նորա յայտնի վարձօք լի էին, 'ի ծածուկ հաւատոց անտի ձեռն նորա յայտնի վարձուց անտի թօթափեցաւ, ապա լցաւ աներևոյթ հաւատովքն: Ետ վարձս յայտնիս, և բժշկութիւս յայտնիս ոչ առ. ետ հաւատս յայտնիս, և առ բժշկութիւս գաղտնի: Զի թէպէտ և զվարձսն համարձակութեամբ ետ նա, սակայն հատուցումն վարձուց համարձակութեան ոչ եգիտ. այլ իբրև ետ նա վարձս գողունիս, ապա առ զգինս նոցա՝ առողջութիւն գաղտնի:

Բժիշկքն որ յաւելուին ցաւս 'ի վերայ ցաւոց 'ի նմա, զի մի բժշկեսցի. այլ բժիշկք խորամանկք հաւասարութեամբ զմիտս ամենայն մարդոյ գողանային, զի մի արուեստագիտութիւնն ամօթալից լիցի յումեքէ: Այլ տէր մեր փոխանակ զի գողացաւ նա զամենեցուն միտս խորամանգս, հարուածովք սաստկանայր թէ ո մերձեցաւ 'ի նա. զի յայտնաբար հաւատք յամենայն ումեքէ գովեալ լիցին: Եւ նոքա թէպէտ զմին դեղովք ոչ եղեն բաւական բժշկել, սակայն պատասխանի տալոյն միում բաւական լինել ոչ կամեցաւ: Ոչ եթէ զնոյն. իսկ զպատասխանին ոչ գիտէր, այլ յառաջագոյն կանխեաց գրեաց զնա: Զայնոսիկ՝ որք ասէինն՝ թէ դու եկեալ վկայես վասն անձին քո, չէ ճշմարիտ վկայութիւն քո, վասն այսորիկ թէպէտ և զօրութիւն նորա զնա բժշկեաց, սակայն լեզուն նորա զնոսա ոչ հաւանեցոյց: Այլ իբրև լեզուն նորա վասն այսր լուռ կայր, գործն նորա իբրև զշիփոր 'ի վերայ այսր աղաղակէր: Արդ լռութիւն նորա հպարտութեան ամբարտաւանութեան խափանեալ լինէր. և հարցանելովն և գործովն նորա ճշմարտութիւն նո-

րա քարոզեալ լինէր ։ Եթէ մի երեքք էին բանից , առաջին Թարգմանն պտանէր զնոսա , և այլոցն ևս լողաց ոչ վաստակ աշխատութեան գոյր նոցա՝ի խնդիր անդ , և ոչ հանգիստ՝ի գիւտս ինչ ։

Այլ ամենայն բանից տեառն մերոյ կերպարանք են նոցա . և իւրաքանչիւր կերպարանքն անդամս բազումս ունին . և մի մի յանդամոց անտի զտիպս կերպարանաց անձին իւրոյ ունի . և իւրաքանչիւր ըստ բաւական լինելոյ իւրոյ լսէ . և որպէս տուեալ լինի նմա , այնպէս Թարգմանէ ։ Արդ եկն մին ընդ առաջ նորա և բժշկեաց զնա , զայն՝ զոր չոգաւն ընդ առաջ բազմաց և ոչ բժշկեցին զնա . այս ինքն՝ի չպէտս առնելով ։ Մին իբրև դարձուցեալ էր զերեսս իւր յայլ կոյս , բժշկեաց զնա , զի յանդիմանեսցին այնոքիկ[1] որք մեծաւն հոգաբարձութեամբ դառնային առ նա , և ոչ բժշկէին զնա ։ “Տկարն , ասէ , ա̃յ զօրագոյն է քան զմարդիկ ” ։ Այլ Թէպէտ և արտաքին երեսքն տեառն մերոյ միում ևեթ կողման բաւական էին հայելոյ, սակայն ներքին ա̃ծութիւն նորա աչք միայն էր ամենայնի , զի ընդ ամենայն կողմանս հայէին ։

Յամաքեցոյց զխուժն հարուածոց յարգանդէ անտի նորա , և բխեցոյց զքարոզութիւն բժշկութեան իւրոյ՝ի բերանոյ նորա . մերձեցաւ նա առ ա̃ծութիւն նորա , և բժշկեցաւ՝ի նմանէն ։ Այլ վէմն յանապատի անդ ջուրս սրբիչս բխեաց երկոտասանեցունց ազգաց ժողովրդեանն . և սա արիւն աղտեղիչ բխեաց երկոտասան ամ ամենայն անդամոց մարմնոյ նորա ։ Վէմն գաւազանաւն նշանաւն կենարարին մերոյ հերձաւ . և բխումն արեանն ձործովք հանդերձին բժշկին մերոյ ցամաքեցաւ . զի նա հանդերձ գաւազանաւն խիստ , և զսա ցամաքեցոյց հանդերձն կակուղ ։ Այլ Թէպէտ և գաւազանն տեսանելովն խիստ երևէր , սակայն խոնարհութիւն խաչին ծածկեալ կայր՝ի նմա . և հանդերձն Թէպէտ և արտաքին երեսովք կակուղ երևէր , սակայն զօրութիւն սաստիկ ելանէր՝ի նմանէն ։ Այս է բժշկութիւն . մինչ չև սերմանն իւրոյ՝ի բուանէ անկեալ իցէ , երկիրն նորա առաւել ևս սեր-

1 Օրինակին այն ոք ։

մանխս ընկալաւ . և մինչ ինքն սերմանն 'ի շտեմարանս տեառն մերոյ դադարեալ կայր , դարձեալ ընդ երկիրն՝ յորում սերմանեցաւ՝ ողորէր հաստուցանել զփոխարէն փոխոյն նորա , և դարձուցանել տոկոսիւք զգլուխն զոր առեալ է ։ Այս է սերմն տիրացեալ . իբրու ինքն 'ի շտեմարանի իւրում ծածկեալ կայր , ամփոփեաց առ ինքն զշահս արմտեացն . և մինչ դեռ նա 'ի բռան սերմանահանին իւրոյ էր , իբրև յական թօթափել ժողովեալ լինէին իմաստուն արմտիք նորա 'ի միջոյ հանճարեղ երկրէ առ սերմանն սգացող ։

"Օրհնութի՟ , ասէ , գնաց յինէն ,, ։ Յորդորելով յորդորեաց այսու զմշակսն վատթարեալս զխափանիչ սերմանեացն յիշտեմարանս , զի հաստատեսցին 'ի հաւատս նորա ։ Եւ ետ դարձեալ զառհաւատչեայն ճշմարտութե՟ իւրոյ . զի և զայլ սերմանիսն որ սերմանիսն սերմանեալ լինէին , զի զմի մի 'ի նոցանէն 'ի ժամու իւրում հարիւրաւորս դարձուցանէ ։ Զի են սերմանիք՝ որ յետ ժամանակեան լինին հընծեալք , և են որ 'ի վախճանի , և են որ ընդ սերմանելն իւրեանց և հունձք իւրեանց լինին ։ Այն՝ զի ասէ "Ընկալցի եւթնպատիկ յայսմ ժամանակի ,, , այս են՝ որ յետ փոքր ժամանակեան հնձեալ լինի ։ Եւ այն՝ զի ասէ "Յայնժամ ասասցէ թագաւորն ցայնոսիկ որ ընդ աջմէն են ,, , այս են սերմանիք՝ որ 'ի վախճանի լինին հնձեալ ։ Եւ այն՝ որ մերձեցաւ զկընի նորա 'ի դրօշակ հանդերձի նորա., այս է սերմ՝ որ ընդ ցանելն նորա եղև ժողով արմտեացն նորա ։ Հատըն ցորենոյ՝ որ յորովայն երկրին սերմանեալ լինի , 'ի փշոց անտի որ ծածկեալ են 'ի նմա՝ որոմն կցորդի նմա և ելանէ ընդ նմա . իսկ հաւատքն՝ 'ի զօրութե՟ անտի որ ծածկեալ կայր 'ի համարձակութիւն ընդ նմա ։

Այլ իբրև լուաւ տեւատեանն զի ասացնաց քահանայապետն . "Հաւատա , ասէ , և կեցցէ դուստրն քո ,, , ած զմտաւ իւրով թէ այն՝ որ կարող է զոգիս երկոտասանամեան դստերն դարձուցանել անդրէն 'ի մարմինն , կարող է նա և զերկոտասանամեայ հարուածս հատանել ընկենուլ 'ի մարմնոյ աստի ։ Եւ զի լուաւ , ասէ , թէ հաւատով հաւատա և կեցցէ

դուստրն քո, գիտաց նա՝ թէ հաւատս կարող եմ տալ զոր փոխանակ վարձուցն պահանջէր: Բժշկութի 'ի բերանոյ անտի նորա ելանէր, և հաւատս 'ի բերանոյ անտի լինէր վաճառեալ. բժշկութի յայտնի տայր, և վարձս յայտնիս պահանջէր: Բժշկութի՝ որ 'ի շրթանց անտի նորա ելանէր, յայտնապէս լինէր լսելի. վասն այսորիկ հաւատս 'ի շրթանց անտի յայտնաբար պահանջէր: Այլ զի ինքն առաջի ամենեցուն խոստովան եղև, և ոչ հաւատացին նմա. մանաւանդ զի ցաւք նորա 'ի ծածուկ էին: Զի եթէ իբրև եբաց նա զաչս կուրին՝ մոլեկան կոչեցին զնա, և իբրև կեցոյց զՂազար՝ 'ի նոցանէն իսկ յայնցանէ որք տեսին՝ ոչ հաւատացին, վասն այսորիկ կացոյց զաղջիկն երկոտասանամեայ: Զի այն՝ որ զերկոտասանամեանն կենդանութին՝ այն որ հանապազորդն էր 'ի մարմին անդր՝ դարձոյց անդրէն 'ի տեղի իւր, կարէր զերկոտասանամեայ զհանապազորդ բխումն արեանն հատանել ընկենուլ 'ի տեղւոջէ իւրմէ: Զի այն՝ որ կարողն եղև դարձուցանել զմին, կարէր մերժել և ըզմիւսն ևս. և այն՝ որ կենդանացոյց զամենայն անդամս մեռեալ աղջկանն այնորիկ, կարէր բժշկել և զարգանդն նորա:

Այլ իբրև բժշկեցաւ նա, ասէ. "Ո՞ մերձեցաւ յիս". զի ինքնին խոստովան եղիցի առաջի նոցա վասն առողջութե իւրոյ: Վասն այսորիկ ասաց՝ բա ննջէ, զի ինքեանք եղիցին վկայք եթէ մեռաւ նա. զի յորժամ տեսցեն եթէ եկեաց նա, դարձցին այպանողքն լինել նմա վկայք: Զի վկայութի մահուան աղջկանն առ 'ի նոցանէն, և յարութի կենդանութե նորա առ 'ի նմանէն՝ վկայեցին նախ յառաջագոյն վասըն մահուանն նորա, զի մի՛ յուրաստ լիցին նոքա յորժամ տեսանիցեն զկենդանութի նորա: Արդ կշռեաց եդ զնոսա 'ի մէջ երկոցունց. եթէ դարձցին ասասցեն՝ եթէ ննջէր նա, դարձեալ մեծացուցին զնա իբր ոչ կարէին: Զի իբրև այնոքիկ որք տեսանէին զնա՝ հատին և ստուգեցին[1] եթէ մեռաւ նա, գիտաց նա մինչ չև տեսեր զնա եթէ ննջէր նա: Ապա եթէ ա-

1 Յօրինակին ստուգին:

սիցեն թէ ոչ նմջէր նա, հեղձուցանէ զնոսա կենդանութի նորա՝ թէ կենարար էր նա. և եթէ ասիցեն թէ նմջէր նա, յանդիմանէր զնոսա գիտութի նորա՝ թէ ած էր նա։ Մինչ դեռ կամէին օտարացուցանել զմիոմն, յամօթ արար զնոսա երկոքումբք։ Այլ՝ եթէ 'ի խոր քուն անկեալ կայր, դարձեալ զի՞ է զի նորա ձայնիւ միայն զարթեաւ նա։ “Եւ հրամայեաց տալ նմա ուտել կերակուր„. զի յայտ արասցէ զառողջութիւն՝ որ անդրէն առ կենդանութեամբ հանդերձ. և ոչ որպէս հիւանդ, զի առ սակաւ սակաւ դառնայ՝ 'ի կենդանութի։ Արդ առաւել քան աստ՝ յամօթ եղեն որք երկմտեալն բաժանէին վասն այնր որ բժշկեցաւն, կշտամբեալ յանդիմանեցան այնու՝ որ կենդանացաւն. զի թէպէտ և բժշկութի արգանդին 'ի ծածուկ էր, սակայն կենդանութի մարմնոյն յայտնի էր։ Այսուհետև հաւատարիմ եղև այն՝ որ 'ի ծածուկն էր՝ յայտնեաւն. իբրու “Երկուցեալ դողացեալ, ասէ, զկնի նորա 'ի դրօշակ հանդերձի նորա մերձեցաւ նա„։ Եւ եթէ նա 'ի դրօշակ հանդերձին նորա երկուցեալ դողացեալ մերձեցաւ, որչափ ևս առաւել ահիւ և երկեղիւ արժան է առնուլ յորժամ 'ի մարմին և յարիւն նորա մերձենամք, զի նա ինքն է առհաւատչեայ կենաց մերոց։

## ԳԼՈՒԽ Ը

Որ առաքեաց զնոսա երկուս երկուս ըստ նմանութեան իւրոյ. այս ինքն, զի որպէս ինքն քարոզեաց առանց վարձուց, սոյնպէս և նոքա. իբրև այն՝ զի ասէ “Ձրի առէք, և ձրի տուք„, ըստ նմանութեան նորա։ Դարձեալ, զի քարոզեսցեն զճշմարտութիւն, և արասցեն նշանս, և չարչարեսցին ըստ նմանութեան նորա, և յինքեանս կարծեսցեն զնա իբրև 'ի պատկերի։ “Ի ճանապարհս, ասէ, հեթանոսաց մի երթայցէք„. այն իսկ՝ զոր ասաց զկնի նորա. “Առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայէլի„։ Եւ իբրև ոչ առին նոքա յանձն, ասացին և նոցա առաքելքն. “Յայսմ հետէ, ասէ, դառնամք 'ի հեթանոսս„։ Եւ զի ասէ

"Արդ աՀա աւասիկ ես առաքեմ զձեզ իբրև զգառինս 'ի մէջ գայլոց ". զի յայտ արասցէ որչափ ժամանակս ընդ նոսա իցէ Հովիւն, ոչ ինչ վնասին նոքա : Եւ զի քաջալերեսցէ զնոսա, ասէ. "Որ զձեզ ընդունի, զիս ընդունի ": "Մի, ասէ, ստանայք ոսկի ". զի մի՛ գտցի 'ի նոսա Յուդա. զի նա պակասեցոյց ըզնաքովլը 'ի կենաց, զԳեեզի զգեցոյց բորոտութ̃, և զամենայն ժողովուրդն յանցոյց յանապատի անդ : Եւ զի արգել և կարձեաց 'ի նոցանէ զարծաթ, զի մի՛ ոք կարծիցէ զնոցանէ՝ եթէ վաճառականք իցեն և ոչ քարոզք :

Եւ զի ասէ գաւազան, 'ի նիշ ուղղութե̃ և նշան խոնարՀութե̃. և զի ոչ ցուպ, քանզի ոչ եթէ Հօտս կատաղիս եղանէին նոքա արածել, որպէս և Մովսէսն : Արդ տես դու, զի ուր Հօտն 'ի վերայ Հովուին իւրոյ մոլեգնեցաւ, թողաւ ցուպ և առաւ սուսեր. և աստ զի Հօտքս 'ի խաղաղութե̃ բնակեալ են, թողաւ ցուպ և առաւ գաւազան : Եւ զի ոչ կօշիկս, զի թօթափեսցին յամենայնէ. այլ Հողաթափս, եթէ գոնեայ այսուիկ եղիցի վարձք պատուիրանաց նոցա : Սակայն որ ինչ ժողովրդեանն էր, վերացոյց զնոսա. և զնմանութի̃ Մովսէսի այնու ետ նոցա, յայնմիկ՝ զի նա զոսկերս արդարոցն կրէր ընդ իւր, և նոքա ըզմարմինն արդարացուցիչ ամենայն մարմնոց բարձեալ ունէին ընդ իւրեանս : Եւ եթէ Մովսէս անուամբք երեքումբք տանն ԱբրաՀամու Հաշտեցոյց զա̃ծ ընդ որդիսն անօրէնս, որչափ ևս առաւել քաւեսցեն երեք անուամբքն ա̃ծուե̃ն զամենայն ազգս տանն Ադամայ :

"Յոր տուն, ասէ, մտանիցէք՝ նախ ողջոյն տասջիք տանն ". զի նա ինքն մտցէ լուծցի որպէս առ Մարիամն, և ապա լուծցին նոքա իբրև զաշակերտսն : Ողջոյնն այն խորՀուրդ՝ որ էր Հաւատ նորա յաշխարՀի, և նովաւ խափանի թշնամին, և ցածնու պատերազմ, և նովաւ լինին ծանուցեալ մարդիկ միմեանց : Եւ սոյն իսկ այս ողջոյն ծածկեալ էր գործ սորա ընդ առագաստով մոլորութեանն. թէպէտ և յառաջագոյն կանխեալ դրոշմեալ էր խորՀուրդ յարութեանն մեռելոց, զոր գործեն արարածք 'ի գալն լուսոյն և 'ի յայտնելն առաւօտուն Հալածիչն գիշե-

րոյ ։ Եւ իբրև սկսանէին մարդիկ տալ զնա միմեանց և առնուլ զնա 'ի միմեանց, զի բժշկիցէ զտուիչն և օրհնեսցէ զայն՝ որ ընդունէին . իսկ այնոքիկ՝ որ բանիւ միայն ունէին զնա, և ոչ էին տպաւորեալ անձինք նոցա յանդամս նորա . սփռելով սփռի 'ի վերայ նոցա իբրև լոյս, և փոխի 'ի նոցանէն իբրև ճառագայթք արեգական յաշխարհէ ։ Այս է ողջոյն, որ քարոզեալ էր անուամբ, և ծածկեալ զօրութք, և պատմեալ գիտութք, և կարգեալ խորհրդով, իբրու յոյժ և բաւական է ամենայն մարդոյ ։ Եւ վասն այսորիկ զնա տէր մեր առաքեաց ընդ աշակերտսն իբրև զկարապետ, զի արասցէ խաղաղութի, և պատրաստեսցէ առաջի երեսաց նոցա . իբրև զգեցեալ էր զարագձայնն զառաքելոցն մշակացն իւրոց, և լինէր սերմանեալ յամենայն տունս՝ քակտել մեկնել զանդամս իւր, և մտանէր յամենայն լսելիս որոշել զատել զորդիս ազգատոհմի իւրոյ իբրու կայր մնայր 'ի նոսա ։

Եւ զի յայտ արասցէ վասն օտարացն, իբրու սփռեալ անցանէր առ նոքօք ։ Եւ այնու՝ զի ոչ ցամաքէր նա յառաքելոց անտի յեղբարցն իւրոց, զի յայտ արասցէ վասն գանձուց առաքչին իւրոյ՝ թէ ոչ պակասէ ։ Եւ այնու՝ զի ոչ լինէր նա փոխեալ 'յառողաց անտի իւրոց, զի յայտ արասցէ վասն տուչին՝ թէ ստոյգ և հաւատարիմ էն պարգևք նորա . զի առ տուիչսն և առ առողսն էր նա, իբր ոչ էր պակասեալ և ոչ հատեալ ։ Վասն ինքնութե Հօր յայտ արար՝ եթէ առ ամենայն և յամենեսին է նա . և վասն առաքելութե Որդոյ յայտ արար՝ եթէ առ ամենեսին է նա ամենայն, և առ Հայր իւր է կատարած նորա ։ Եւ քանզի նմանութի էր նա, ոչ դադարեաց 'ի քարոզելոյ և ոչ վաստակեաց 'ի պատմելոյ, մինչև եկեսցեն կատարեսցին առակք օրինակաց ստուգութեամբ, և սահմանեալ լիցին նմանութիւնք ճշմարտութք, և յանդիմանեալ լիցին նշմարանք մարմնոյն, և չափեալ սփռեալ իցեն ամենայն խորհուրդք ճշմարիտ կերպարանօք ։

Վասն այսորիկ ընկենումք մեք զբանն իբրև զխախաց 'ի լսողսն ազգակիցս նորա, զի նովաւ եղիցին որոշեալ, և զնովաւ ժողովեսցին . զի եղիցին որո-

շեալ 'ի բարժանել խառնուածու անտի, և խառնեացին ընդ ժողովլիչ կցորդութիւն · զի արժանի իսկ այնմիկ՝ որոյ պսակ իւր մեծ է, զի և պատերազմն իւր առաւել իցէ ։ Թէպէտ և այսպէս իցէ, սակայն ոչ եթէ ըստ սակաւութեան պատերազմին՝ այսպէս իցեն փառք յաղթութեան ։ Իբրև ոչ խորամանկեսցի մոլորութիւն մտանել ընդ մեզ և ընդ զէնն մեր · զի փոփոխէ նա զերեսս իւր ամենայն գունոց, և լուանայ զճաշակ իւր ամենայն բաժանից ։ Այլ մեք եմք քրիստոնեայք հրեայք 'ի ծածուկ, և թլփատեալք հոգով, և օրհնեալք ծննդեամբ, և քրիստոնեայք արեամբ, և առողջք բժշկութեամբ ։

Եւ զի ասէ “Թօթափեսջիք զփոշի ոտից ձերոց„ · զի յայտ արասցէ՝ թէ վրէժ խնդրելոց էր 'ի նոցանէն · զի և զփոշին անգամ որ կառուեցաւ 'ի ճանապարհէն 'ի նոսա, անդրէն դարձուցին 'ի նոսա · զի ուսցին եթէ անցաւորք ճանապարհաց նոցա առ նոսա է դառնալոց ։ Եւ զի ընկալան նոքա զփոշին արդարոց, եթէ ոչ դարձցին, ապա և զվրէժն արդարոց պարտին · աղտեղացան փոշովն նոցա, այլ ոչ եթէ տղմովն նոցա ։ “Ընդարձակագոյն, ասէ, լիցի երկրին սոդոմայեցոց„ · այս ինքն զի հրեշտակքն որ եկին 'ի Սոդոմ, ոչ եթէ նշանս ինչ արարին, այլ ընդ Սոդոմ գլխովին արարին նշան արարածոց · այլ նոքա տեսին զնշանս, կոյրք՝ զի տեսին · բայց հրեշտակք 'ի Սոդոմ և զայնոսիկ որ տեսանէին՝ կուրացուցին ։ Արդ եղիցի ընդարձակագոյն Սոդոմայ, որ զայն ամենայն չարիսն գործեաց · և քաղաք՝ որ ոչ ընդունի զաշակերտսն նորա, քան զնորայն դառնագոյն եւս լիցին դատաստանք նորա · զի Սոդոմ հրեշտակացն մեղաւ, իսկ այն՝ որ զաշակերտսն ոչ ընդունի՝ զա̃ծ գլխովին անարգէ ։ “Որ զձեզ անարգէ, ասէ, զիս անարգէ„ ։ “Արդ եղերուք դուք անմեղս առ աղաւնիս, և խորագէտք առ օձս„ · զի ասէ “Զգոյշ լինիցիք 'ի մարդկանէ„ · ոչ եթէ յայնցանէ՝ որ մատնելոցն են զձեզ, այլ յայնցանէ, “Որ գան առ ձեզ 'ի հանդերձս գառնենիս, և 'ի ներքոյ են գայլք յափշտակողք„ ։

“Յոր քաղաք, ասէ, մտանիցէք և ոչ ընդունիցին

զձեզ, փոխեսջիք դուք անտի 'ի միւս ևս քաղաք. և եթէ յայնմանէ հալածեն զձեզ, փախիջիք 'ի միւս ևս քաղաք „: Այլ ոչ եթէ 'ի վերայ ամենայն մարդոյ ձկտեցոյց զայս, այլ 'ի վերայ աշակերտացն միայն. զի դեռ սկիզբն էր նորոյ քարոզութեն, և նոքա էին մարդք սակաւք թուով: Թէ զուցէ ժողովեսցին 'ի վերայ նոցա և բառնայցեն զյիշատակս նոցա յերկրէ, և խափանեսցի աւետարան նորա 'ի հեթանոսս, և ուսումն վարդապետութե նորա յարարածոց, ասէ ցնոսա. “Եթէ յայսմ աշխարհէ հալածեսցեն զձեզ, երթիջիք դուք 'ի միւսն ևս „: Զի եթէ ոչ էր փախուցեալ նոցա 'ի ժամանակին իբրև քարկոծեցաւ Ստեփաննոս, և ոչ նոքա արդիւք ապրեալ լինէին 'ի չարչարանաց անտի: Եւ եթէ 'ի վերայ ամենայն դարուց ձգեաց նա զբանն իւր, իսկ ո՞վ էր որ վասն անուան նորա վկայէր: Եւ զի յայտ արասցէ՝ եթէ և ոչ զառաքեալսն իւր թող նա, յայսմիկ հայեաց դու, իբրև դարձաւ նա վառեաց զնոսա, զի մի զարհուրեալ տագնապեսցին յորժամ հասցէ նոցա ըստ նմանութեն՝ որ ետ նոցա յանձն իւր. զի ոչ փախեաւ նա 'ի սպանողաց անտի իւրոց, և ոչ փախեաւ նա 'ի խաչահանուաց անտի իւրոց. և ասաց նոցա յայտնապէս. ասէ. “Եթէ զիս հալածեցին, և զձեզ հալածեսցեն „:

“Եւ մի, ասէ, երկնչիջիք յայնցանէ՝ որ սպանանեն զմարմին և զոգիս ոչ կարեն սպանանել „: Եւ ահաւասիկ տեսանեմք մեք զայնոսիկ՝ որոց ասացաւն նոցա, եթէ փախերուք ամենեքին, նոքա իւրաքանչիւր 'ի նոցանէ յանձն իւր եդև պատարագ գոհութեան 'ի վկայութիւն ամենայն հեթանոսաց: Կամ վասն զի իշխանութիւն մեծ ետ նոցա յորժամ ընտրեաց զնոսա, եթէ յայնմ ժամանակի այսպէս պարտ է լինել՝ զի մի համարձակեսցին նոքա իշխանութեն, իբրև զայն զի ընդ նոսա էր ոչ առ նոցա յանձն՝ ասեն ցնա “Կամիս եթէ ասասցուք և իջցէ հուր և այրեսցէ զնոսա „, վասն այսորիկ կրթեաց զնոսա խոնարհութե և ասէ. “Եթէ հալածիցեն զձեզ 'ի քաղաքէ անտի յայնմանէ, երթիջիք դուք 'ի միւս ևս „:

Եւ զի զմտաւ ածէին աշակերտքն, եթէ 'ի մէջ

չամարտացոց և հեթանոսաց ասաց նոցա եթէ մի՛ երթիցեն, և եթէ հալածեսցեն զձեզ 'ի քաղաքէ աստի յայսմանէ, փախիջիք դուք 'ի միւս ևս քաղաք, յորժամ սպառեսցին, ասէ, քաղաքքն զի՞նչ գործեսցուք, քաջալերեաց զնոսա և ասէ ցնոսա. «Արդարեւ ասեմ ձեզ, եթէ ոչ կարասջիք սպառել զնոսա. մինչև հասից ես առ ձեզ». այս ինքն զի գալոց էր առ նոսա յետ յարութեն, ոչ, ասէ, կարասջիք սպառել զամենայն քաղաքս մինչև հասից ես առ ձեզ։ Ի քաղաքսն ուր ինքն երթալոց էր, անդր առաքեաց զնոսա։ Կամ զի մի՛ կարասցեն սպառել զնոսա, այս ինքըն՝ զի հասանելոց էր նոցա զօրութիւնն նորա յետ երից աւուրց յետ յարութեան նորա. զի նա ինքն է գալուստ նորա։ Այլ և ասաց նոցա՝ զի հալածեսցին 'ի բազում քաղաքաց, և ապա երևեսցի նոցա. սակայն ոչ այսպէս արար, այլ կանխեաց նա զվատասրրտութի նոցա տեսլեամբն իւրով. յետ յարութեանն երևեցաւ նոցա, և քաջալերեաց զնոսա, և նորոգեաց զնոսա փչելով իւրով։

«Զոր ինչ ասեմ ձեզ 'ի խաւարի, ասացէք զայն 'ի լոյս». այս ինքն զոր ինչ ծածուկ խօսիմ ընդ ձեզ, 'ի ձայն բարձր քարոզեսջիք. զի մեկնէ նա յասել իւրում. ասէ. «Զոր ինչ յունկանէ լուէք դուք, քարոզեցէք զայն 'ի վերայ տանեաց»։ Կամ զժողովուրդն անուանեաց 'ի խաւար, և զհեթանոսս 'ի լոյս։ Եւ զի ասէ «Մի՛ երկնչիք յայնցանէ՝ որ սպանեն զմարմին». զի յայտ արասցէ՝ եթէ 'ի վերայ մարմնոյ միայն գոյ իշխանութիւն մարդկան, այլ Աստուծոյ՝ և 'ի վերայ ոգւոյ՝ արկանել 'ի գեհեն։ Եւ եթէ ասիցեն՝ զի՞արդ կորնչին ոգիք 'ի գեհեն, այն զի ոչ ապականութի տիրէ 'ի նոսա և մահ. եթէ դարձեալ և վասն մարմնոյ՝ եթէ զի՞արդ կորնչի. զի ահաւանիկ և որդունք և կրծել ատամանց գոյ անդ. յայսմ վայրի լուսաւորեցաւ բանն։ Զի եթէ ոչ է անմահ ոգիքն միայն ոչ մեռանին, այլ և ոչ մարմին. զի և նա կայ մնայ առանց ապականութե։ Իսկ այն՝ որ կորուսանէ զմարմին, վասն մահու ժամանակեան այսօրինակ ասացեալ է։ Զի եթէ արդարեւ ապականէր մարմին 'ի գեհեն ոչ լինէր. զի գեհեն

տանջիչ է կենդանեաց և ոչ սպանիչ ապականացելոց ։

"Բանզի բազումք յապականութէ երկնչին, և 'ի մահուանէ անտի յայնմանէ խիթային, կամեցաւ տէր մեր համարձակել զանիւ այսուիկ՝ եթէ առաւել ևս պարտ է երկնչել յայնմանէ, որ կորուսանէ զոգի և զմարմին 'ի գեհեն ։ Արդ ոչ ոգիք դառնան 'ի մեռելութի, որպէս և ոչ ած դառնայ 'ի պարգևսն իւր, զի անզեղջ են. և ոչ դարձեալ ճշմարիտ աւետիքն յարութեն մարմնոյն լուծանի ։ Մի, ասէ, երկնչիք, զի ոչ մեռանին ոգիք ։ Զի եթէ մահկանացուք էին, արժան էր երկնչել ։ Եթէ այդ այդպէս իցէ, և ոչ վասն մարմնոյ մերոյ զի ապականի՝ պարտ էր մեզ երկնչել. զի ոչ եթէ ոգիք կարող են կազմել զապականութիս իւրեանց, այլ ած ։ Այլ եթէ զմարմինն որ ապականին՝ նա կազմէ, սոյնպէս և զոգիսն. այն որ հաստատեացն զնոսա յոչընչէ, կարող է հաստատել զնոսա իբրև զինչ ։ Զի ոչ եթէ յանմահ ոգւոց անտի կարէ ած կենդանացուցանել զմարմին մահկանացու, այլ զօրութի նորա. այս է, եթէ մի երկընչիք յայնցանէ՝ որ սպան զաստէն կեանս ձեր. և որ անդ կեանքն են ձեր, ոչ կարեն սպանանել ։ Վասն զի լուան աշակերտքն, և լսելոց ևս էին դարձեալ 'ի սադուկեցոց անտի և յայլոց ևս՝ թէ չիք յարութի մեռելոց ։

"Երկուս, ասէ, ճնճղուկ դանկի միոջ վաճառին". երկուս, և ոչ եթէ մի ։ Ցուցանել կամեցաւ զտկարութի ճնճղկին ։ Իսկ որ առաւելքն են, մի մի վաճառին. և որ տկարքն են, միանգամայն բազումք իբրև զբանջար վաճառին ։ "Եւ մի 'ի նոցանէ յերկիր ոչ անկանի առանց հօր ձեր" ։ Եթէ նոքա զի սակաւ ինչ արժեն և ստուեր են՝ ոչ լինին որսացեալ, և ոչ ասաց՝ առանց ածյ, այլ առանց հօր ձերոյ, որչափ ևս առաւել վերակացութին հօր վասն փոքրկանց եղիցի մեզ օրինակ հոգաբարձութե առաւել սիրոյն նորա՝ որ առ մեզ է ։

Եւ այն՝ զի ասէ "Գոհացայց զնմանէ առաջի հօր", այն իսկ է զի ասէ. "Եկայք օրհնեալք հօր իմոյ" ։ Եւ զի ասէ. "Յուրաստ եղէց զնմանէն", այն զի ա-

սէ. “Ոչ գիտեմ զձեզ ”. ոչ եթէ զի ծածկեալ ինչ են 'ի նմանէ, այլ զի ոչ լինի խոստովան 'ի նոսա։ Տես որչափ գիտէ զնոսա. զի և հրաժարէ 'ի նոցանէ, զի մի՛ ընկալցի զնոսա։

“Մի՛, ասէ, համարիք եթէ եկի արկանել խաղաղութ̃ի յերկրի ”։ Եւ ո՞ւր է այն՝ զի ասէ ամենայնի. “Զի եկն նա՝ զի արասցէ խաղաղութ̃ի, որ ինչ յերկինս և որ ինչ յերկրի ”։ Այլ նա զխաղաղութիւն քարոզէր, որպէս և ասաց Առաքեալ. ասէ. “Արար մեզ խաղաղութ̃ի ”. և “Որք ընդունին զնա, խաղաղութ̃ի է նոցա ”։ Այլ ոչ արկ զխաղաղութ̃ի, յայնմիկ՝ զի բաժանեցան հաւատացեալք յանհաւատից անտի։ “Եկի, ասէ, քակել զայր 'ի հօրէ ”, և այլ ևս։ Բաժինս ասէ մնաց. յայնմիկ՝ զի և ոչ 'ի հաւատս անկամ հաւասաութ̃ք խորհին. զի մին պաշտէ այլապէս, և միւսն ևս որոշէ ընդդէմ նորին։ Եւ սուր՝ զի նովաւ հատցէ զսէրն միասակար ոգոց, և ձգեսցէ 'ի նա զնետալեցս սիրոյ վերոյ իւրոյ։ “Որ կամի, ասէ, գտանել զանձն իւր, կորուսցէ զնա ”։ Եւ զիա՞րդ լուիցի այս. զի կորուստ և գիւտք 'ի վերայ միոյ անձին ասացաւ։ Այլ այն՝ որ առաջի հալածչացն խոստովանէ՝ զանձն իւր կորուսանէ, այլ առ ա̃ծ գըտանէ։ Ասէ. “Որ կորուսցէ զանձն իւր վասն իմ, գտցէ զնա ”։ Իսկ որ վասն նորա կորուսանէ զանձն իւր, հարկ է թէ առ նմա գտցէ զնա. զի ա̃ծն այն՝ որ վասն նորա կորնչի անձն, նա նմա է փոյթ վասն գիւտից նորա. զի ձեռն նորա ձեռն է բաւական հասանել ամենայնի, և բազուկ նորա զօրագոյն է կորզել յամենայնի։ Փոքրկացոյց քան զամենայն զսէրն ամենայնի, զի մեծացուսցէ քան զամենն զսէր տեառն ամենայնի։ “Որ ոչ, ասէ, սիրէ զիս առաւել քան զանձըն իւր ”, և այլ ևս։

“Եկն, ասէ, Մարիամ և նստաւ առ ոտսն Յիսուսի ”. այս ինքն իբրև 'ի վերայ հաստատուն երկրի առ ոտս նորա նստէր նա։ Այնք՝ որ և կնոջն մեղաւորի թողութ̃ի մեղաց ետուն, զի կապեաց նա թագմտանել յարքայութ̃ի անդրանկանն, մասն բարիոք զբարերարն Քրիստոս միայն ընտրեաց. զի յաւիտեան 'ի նմանէ, որպէս և ասացեալ է՝ թէ մի՛ լիցին հա-

նեալ։ Եռայր սէրն Մարթայի քան զՄարիամու. զի զառաջինն իբրև եկն Նա անդր Մարթա, կաց նմա 'ի սպասու։ “Ոչ ինչ է, ասէ, փոյթ քեզ վասն իմ. ասա դու քեռդ իմում զի օգնեսցէ ինձ”։ Եւ իբրև եկն Նա կեցուցանել զՂազար, նա նախ ընթացաւ ել ընդ առաջ Նորա։

## ԳԼՈՒԽ Թ

“ԴՈ՞Ւ ես որ գալոց ես, ասէ, թէ այլում մեք ակն ունիմք”։ Ոչ երկմտեաց ինչ Նա վասն Նորա. զի այն՝ որ յանապատի անդ պատրաստեաց Ճանապարհ, և 'ի մէջ որովայնին ոչ դադարեաց 'ի ցնծալոյ, և առ մկրտութիւն փառս անձին իւրոյ ոչ առ, “Ինձ, ասէ, պիտոյ է 'ի քէն կնիք առնուլ”. և “Ահա աւետիկ գառն Այ”. և “Սա է որ բառնայ զմեղս աշխարհի”. և “Ոչ եմ ես արժանի՝ թէ լուծից զխրացս կօշկաց Նորա”. արդ սա՝ որ զայս ամենայն յայտնապէս քարոզեաց, զիա՞րդ դառնայր և երկմտէր Նա վասն Նորա, մանաւանդ զկնի վկայութեան Հոգւոյն, որ էջ ըստ նմանութեան աղաւնոյ. և յետ ձայնին՝ որ եղև յերկնից՝ եթէ դա է որդի իմ սիրելի, այլովքն հանդերձ։ Այլ զայս ասասցուք, թէ այն ինչ՝ որ լինէին խօսեցեալ 'ի մարգարէից անտի, 'ի նոցանէ վասն նոցա, և 'ի նոցանէ վասն որոց լսելոյն կարօտ էին, որպէս և տէրն մեր ասաց. “Վասն ժողովրդոցս ասեմ զայս զի հաւատասցեն”, նոյնպէս և Յովհաննէս՝ իբրև ետես թէ մերձ է նա՝ զի փոխեսցի յաշխարհէ աստի, և յառաջեսցէ քան զփրկիչն 'ի մեռեալս, որպէս յառաջեաց Նա ծննդեամբ 'ի կենդանիս, փոյթ յանձին կալաւ զի մի թողցէ զաշակերտսն իւր թէ մոլորեսցին և ցրուեսցին որպէս և խաշն՝ որոց ոչ իցէ նոցա հովիւ։

Առաքեաց զնոսա առ Նա ոչ հարցանել զնա, այլ իբրու կնքէր Նա զառաջինսն զոր քարոզեաց նոցա, առ նա ուղղէր Յովհաննէս զմիտս աշակերտաց իւրոց։ “Իբրու լուան, ասէ, այլ աշակերտքն Նորա զի խօսէր Նա վասն տեառն մերոյ, և տեսին զնա, թողին

զՅովհաննէս առանց տրտմութեան, և գնացին զկնի նորա ,,: Որպէս ցոյց նա զկամս իւր առ մկրտութիւնն, զի ոչ պահանջեաց նա զքահանայութիւն տան հօր իւրոյ, սոյնպէս և այսու ևս կամեցաւ տալ աշակերտացըն իւրոց գանձս՝ որոց ոչ լինի գողացեալ: Յառաքելն անդր նորա զնոսա յայն երեսս, զի յորժամ տեսցեն զսքանչելիս նորա՝ հաստատեսցին 'ի հաւատս նորա: Եւ ասաց նոցա Յիսուս. ասէ. “Երթայք պատմեցէք Յովհաննու, ոչ զոր լուայք, այլ զոր տեսէք. ահաւասիկ, ասէ, կոյրք տեսանեն և կաղք գնան ,,. այս ինքն ասէ. թէ այս գործք զոր գործեմ ես՝ բանիցն Յովհաննու ոչ վկայեն, ապա սուտ ուրեմն են բարբառք նորա. և եթէ ստոյգ և ճշմարիտ են, մի զկնի երթար դու ձայնի, այլ գործոյն անսա:

Արդ սկսաւ նա յայնցանէ՝ որ թուին եթէ տկար իցեն, իբրու 'ի սքանչելիս փոքրն և մեծ զմի կշիռ հաւասարութեան ստացեալ ունին: “Կոյրք, ասէ, տեսանեն և կաղք գնան և բորոտք սրբին և խուլք լսեն ,,. և 'ի վախճան իբրև զկնիք ամենեցուն ասաց զայն, “Մեռեալք յառնեն ,,. զի նա ինքն է գլխաւոր բարութեցն միածնին, և լուծիչ 'ի խափանիչ չարեացն զոր մոյծ Ադամ յաշխարհս: Եւ այսու հանդերձ ուսիր և զայս ևս. “Երանի իցէ, ասէ, այնմիկ՝ որ ոչ գայթագղեսցի յիս ,,. սակայն և այսու առհաւատչեայ ճշմարիտ ետ աշակերտացն Յովհաննու, զի մի գայթագղեսցին 'ի նա: Եւ եթէ վասն Յովհաննու ասաց՝ երանի որ ոչ գայթագղեսցի 'ի յիս, որպէս և այլքն ասեն, վասն այսորիկ ևս ասասցուք, թէ քանզի և առաջինքն 'ի դէմս Յովհաննու ասացան, հարկ եղև ասել և յերանել անդ 'ի դէմս Յովհաննու. զի զաշակերտսն Յովհաննու զգուշացուսցէ, և զի ոչ եթէ վասն Յովհաննու երկմտեաց և ասաց զայս, և զի ոչ ինքն Յովհաննէս եթէ նուաղեցաւ հաւատովքըն իւրովք՝ առաքեաց առ նա այսպէս. վասն այսորայն՝ որ զկնի են՝ վկայեն. զի ընդդէմ բանիցն զոր առաքեաց առ նա Յովհաննէս, պատասխանի ինչ վասն նոցա ոչ արար նմա. այլ իբրև գնացին, ասէ, առաքեալքն Յովհաննու, սկսաւ, ասէ, ասել ժողովրդոցն վասն Յովհաննու: Առաջի աշակերտացն Յո-

վասնորոյ ոչ կամեցաւ ասել զփառս նորա, զի մի կարծեսցեն եթէ հարցանելով հարցանէ զնոսա մինչ դեռ զվարդապետն իւրեանց առաջի նոցա մեծացուցանէր :

"Ո՜ յինչ, ասէ, ելէք տեսանել յանապատի. եղէգըն շարժուն 'ի հողմոյ ". այս ինքն զի երկնչէր 'ի նեղութեց, և յամենայն հողմոց խոնարհէր : Զի երբեմն ասէր՝ ահաւասիկ գառն այ, և երբեմն առաքէր առ նա՝ թէ դու ես որ գալոց ես, եթէ այլ ումեք ակն ունիմք : "Կամ մարդ 'ի հանդերձս փափկութե՞ զարդարեալ ". այս ինքն մարդ պատուաւոր. և այսու միւսովս մեկնի և առաջինն. զի ոչ եթէ զհանդերձս փափկութեան զգեցեալ էր Յովհաննէս, ; ընթերցուածն իսկ վկայէ 'ի վերայ նորա՝ եթէ հանդերձ ստևեղէն զգեցեալ էր : Նոյնպէս և այն եղէգըն ոչ եթէ ճշմարիտ է. հաստատեալ էր նա և ոչ երկմտեալ : Զոր օրինակ ոչ էր նա եղէգն բալախ, և ոչ հանդերձ փափկութե զգեցեալ էր : "Այնպիսիքն, ասէ, 'ի սենեակս թագաւորաց շրջին և ոչ յանապատի. և եթէ մարգարէ է, առաւել ևս է քան զմարգարէս ". քանզի մարգարէքն վասն գալըստեան թագաւորին մարգարէանային. իսկ Յովհաննէս միայն առանձին արժանի եղև ասել՝ թէ սա է զոր մարգարէքն քարոզեցին : Եւ եթէ առաւել է նա քան զմարգարէս, չէ նա եղէգն շարժուն 'ի հողմոյ :

Այլ իբրև ետես Յովհաննէս եթէ կատարեաց զչափ բնութէն իւրոյ, ետ զհօտսն իւր հովուապետին. զոր օրինակ և տէրն նորա 'ի մեռանել անդ իւրում, ետ զհօտս իւր հովուաց երիցուն Պետրոսի, այն՝ որ բերան իւր խոստովանեաց, և արտասուքն իւր եղև երաշխաւոր. զի յայտ արասցէ հովիւն հօտիցն իւրոց զհոգաբարձութիւնն իւր, որ է վասն նոցա : Մինչև առ նա գրաւականս ճշմարիտս, ոչ ետ նմա զխաչինս իւր դուզնաքար. և զերիս մասունսն զոր ետ գրաւականս հաւատարիմս, առ փոխանակ երեցունց : Յայնմիկ՝ զի ասէր ցնա վարդապետն նորա, "Եթէ սիրիցե՞ս դու զիս ", զճշմարիտ սէրն նորա խընդրէր առնուլ 'ի նմանէ. եթէ յորժամ դիցէ զսէրն

իւր 'ի գրաւու, ապա առցէ նա զխաշինս նորա և հովուեսցէ։ Իբրև ետես եթէ բերանով իւրով վկայեաց, և արտասուօք իւրովք կնքեաց, ետ նմա և վարձս որ պահեալ են հովուաց. այս ինքն մահ, զի նա ինքն է պսակ յաղթութեան աշակերտացն և հովուացն իւրոց։ Զի մինչև առ 'ի Շմաւոնէ զսէրն նորա, ոչ կարաց տալ նմա զվիճակն մահու նորա. զոր օրինակ և խաշինք նորա եթէ ոչ սէրն տեառն մերոյ զի առ նոսա էր, և ոչ զանձն իւր տայր նա փոխանակ նոցա։

Այլ հայեցաւ Յովհաննէս հոգւովն զոր ունէրն՝ թէ երբ զօրութիւն բժշկութեան լինիցի տէր մեր. իբրու տեառն մերոյ հանապազօր զօրութիւն իւր առ իւր էր, այլ ոչ եթէ հանապազօր հաւատքն բժշկելոցն առ նմա էին։ Վասն այսորիկ առաքեաց զնոսա առ նա 'ի ժամուն՝ յորում ամենեքին սոքա առնուն զվկայութիւն ճշմարտութեան նորա։ Նա և այն՝ որ առաքեացն իսկ, ցոյց թէ ձեռն նորա ամենայնի իշխէ։ Յանձն արար զխաշինս իւր, և ինքն հօտն քաջալերեսցի, և հովիւն ցուցցէ զպնդութիւն իւր։ Եւ զի ոչ ինքն Յովհաննէս երկմտեաց, տէր մեր վկայեաց՝ թէ սա է որ առաւել է քան զմարգարէս։ Եւ եթէ քան զմարգարէս առաւել է Յովհաննէս, ո՞ր է արդեօք պատիւն նորա. զի աստիճան առաւել 'ի մէջ մարդկան մարգարէութիւն է։ Կամ թէ գուցէ վասն քահանայութեան նորա, և ահա էին քահանայք. և եթէ վասն մարգարէութեան նորա, էին և մարգարէք։

Արդ զի՞նչ իցէ մեծութիւն նորա, զի նովաւ զամենայն ծննդովք կանանց անցանէր։ Բայց եթէ այս՝ զի ասէ. “Ահաւասիկ, ասէ, առաքեմ զհրեշտակ իմ առաջի քո„։ Ոչ եթէ անուամբ միայն կոչեցաւ նա հրեշտակ, այլ և գնացիւք իւրովք։ Եթէ հայիս, ոչ են նուազեալ պատիւ նորա քան զհրեշտակաց. զի զամենայն ինչ զաշխարհիս արհամարհէր, և երկնաւորացն սպասեալ ակն ունէր։ Եւ եթէ ասիցես. ահաւանիկ և մի յերկոտասան մարգարէից անտի կոչեցաւ հրեշտակ իմ, այլ նա 'ի հարց իւրոց անուանեցաւ իբրև զայլ անուանս. զի այլ է անուն հայրենի, և այլ է պատիւ որ յայտ է վասն հատուցման գնա-

ցից ։ Եթէ վերին վարիւք անուանեցաւ նա 'ի հարց
իւրոց հրեշտակ իմ, և ոչ վասն այսորիկ յամառիմք
ինչ ։ Այլ 'ի վերայ Յովհաննու վկայեաց՝ եթէ "Ոչ
եղև 'ի ծնունդս կանանց մեծ քան զնա „ ։ Եթէ
սուրբ ոք լինի՝ փառաւորի, և եթէ արդար՝ պատու֊
եալ լինի, և եթէ հզօր և իմաստուն՝ աշտիճանի փա֊
ռաց արժանի լինի ։ Թէպէտ և ամենեքին սոքա ժո֊
ղովեսցին և 'ի մի մարդ միագունդ բնակեսցին, սա֊
կայն ոչ կարեն համեմատ լինել այնմիկ՝ որ յայն սկ֊
րեցեալ է և 'ի նմանէն ծանուցեալ է · զի այնպիսին
վերագոյն է քան զմարդիկ, և 'ի կարգս հրեշտակաց
կայ ։

"Այլ որ փոքրիկն է, ասէ, յարքայութ̃են երկ֊
նից՝ մեծ է քան զնա „ ։ Ասեն դարձեալ այնոքիկ որ
ոչն իմանան, եթէ փոքրիկն մի 'ի հաւատացելոց ասեն
յարքայութ̃են երկնից մեծ է քան զՅովհաննէս ։ Այլ
մեզ քաւ եղիցի ասել այսպէս 'ի վերայ Յովհաննու
սրբոյն ա̃յ · զի այն՝ որ թշնամանէ զզինուոր արքայի,
զարքայն գլխովին ոչ պատուէ · և որ անարգէ զքա֊
հանայ, զտէր նորա արհամարհէ ։ Այլ զայս զոր ա֊
սաց վասն Յովհաննու մեծութ̃ե, զառաւել ողորմու֊
թ̃ին շնորհացն իւրոց կամեցաւ աւետարանել մեզ ·
եթէ որպէս բարութ̃իս շնորհեաց ընտրելոց իւրոց ։
Զի եթէ այս Յովհաննէս մեծս և անուանիս՝ յար֊
քայութ̃են եթէ համեմատի ընդ փոքրկանն՝ 'ի պա֊
տուէ անդի նորա մնացեալ լինի, որպէս և Առա֊
քեալ ասաց՝ եթէ "Փոքր 'ի շատէ գիտեմք, և փոքր
'ի շատէ մարգարէանամք · և դարձեալ ասէ · "Իբ֊
րև ընդ հայելի տեսանեմք · և յորժամ եկեսցէ կա֊
տարումն, յայնժամ խափանեսցի և այն ինչ՝ որ փոքր
'ի շատէն էր „ ։

Մեծ է Յովհաննէս · զի գիտաց և ասաց՝ թէ "Ա֊
հաւասիկ գառն ա̃յ „ ։ Այլ այս մեծութ̃ի առ փա֊
ռօք՝ որ յայտնելոցն են արժանաւորացն, ճաշակ մի
փոքրիկ է ։ Ոչ եթէ զի ելեալ էր Յովհաննէս, յայն֊
ժամ և փոքրիկն յարքայութեանն առաւել լինի
քան զնա, այլ զի ամենայն մեծամեծք և սքանչելիք
որ աստ իցեն, եթէ ձկտեսցին ընդ այն բարութ̃իս
որ անդ իցեն՝ նուազունք երևին, և իբրև զոչ ինչ

գտեալ լինին ։ “Որ փոքրիկն է յարքայութեան երկնից մեծ է քան զնա „ ։

Այլք ասեն՝ թէ չէ կացեալ ՚ի ծնունդս կանանց իբրև զՅովհաննէս ։ Ահաւանիկ և տէր մեր ծնաւ . եթէ այդ այդպէս է, մեծ է քան զՅովհաննէս ։ Այլ ոչ եթէ վասն անձին իւրոյ ասէր, կամ հաւաստարէր ընդ այնոսիկ զոր ասէրն, քանզի նա ծնունդ է կուսի և ոչ եթէ ծնունդ է ամուսնութեան ։ Արդ փոքրիկն յարքայութեանն ոչ եթէ Յիսուս իցէ, և ոչ այլ ոք եթէ յականէ միանձնութե՛ ասացեալ էր վասն նորա . այլ բան է սա հասարակաց, որ և ՚ի վերայ ամենայնի ձկտեալ լինի ։ Այլք դարձեալ ՚ի վերայ Եղիայի կարծեն թէ ասացեալ է ։

Այլ մեք զայս ասասցուք, եթէ վասն զի արժանի եղև Յովհաննէս մեծամեծացս որ առ իցեն, մարգարէութե՛, քահանայութե՛, արդարութեան . արդ այս, ասէ, սքանչելիս մեծս բարեգործս և արդարս՝ զոր առաքեաց ձեզ հայրն երկնաւոր, որ առաւել ևս է գիտութե՛ և հաւատովքն իւրովք, փոքր է քան զփոքրիկն արքայութե՛ . կամ վասն զի հանցէ զնա, ասեն, ՚ի բանդէ անդի՝ ասաց ըստ մարգարէութեանն մարգարէից, ոչ եղև ՚ի ծնունդս կանանց մեծ քան զՅովաննէս ։ Եւ ծնունդս կանանց զմարգարէսն կոչէ . և զի այսպէս՝ ասէ “Օրէնքն և մարգարէք մինչև ՚ի Յովաննէս „ ։ Արդ մեծ է Յովաննէս քան զՄովսէս և զմարգարէսն . և յայսմիկ յայտնի լինի՝ եթէ օրէնք կարօտ են նոր կտակարանացս . զի ասաց նմա այն՝ որ մեծն է քան զմարգարէս . “ Ես, ասէ, կարօտ եմ „ . և այլ ևս ։

Մեծ է դարձեալ, զի յղացաւ պարգևօք, և ծնաւ սքանչելեօք, և պատմեաց վասն կենարարին, և մկրտեաց ՚ի թողութի մեղաց . զի այն՝ որ զթողութիւն մեղաց քարոզէ, զօրէնսն զվրէժխնդիր մեղաց լուծանէ ։ Վասն այսորիկ չիք ՚ի ծնունդս կանանց մեծ քան զՅովհաննէս, զի քարոզեաց զթողութիւն . զի էին պատիժք յայտնիք օրինացն ։ Եւ իբրև եկն այն՝ որ մեծն է քան զմարգարէս, լոյծ զնոսա . թէ որ ինչ մեծ իցէ քան զնոսա, նորոգեսցէ շնորհօք ։ Լոյծ Յովհաննէս զօրէնսն, և լոյծ տէրն Յովհաննու զմահ ։

Ահաւասիկ յերկուց դատակնքաց եղեաք արձակեալք. մի բնութեն, և միւս ևս օրէնսդրութեանն։ Հաւատք առաջի մեր, և՛ համբերութիւք զկնի մեր. եթէ զոր ինչ խոստանան հաւատք, եղիցի կատարել համբերութի։ Ի բերան Եղիայի արգելան բարութիք, զի բերան նորա դուռն էր բարութեց. նա և բերանն Յովաննու արար կապումն և լուծումն. խրատեաց զմեղս թողութք, և սրբեաց զջուրս 'ի քաւութի։ Մովսէս ած զժողովուրդն մինչ 'ի Յորդանան, և օրէնքն ածին զմարդկութիւնս 'ի մկրտութի մինչ 'ի Յովաննէս։

Եթէ Յովաննէս զի եկն առաջի երեսաց նորա՝ չիք մեծ 'ի ծնունդս կանանց քան զնա, որչափ ևս առաւել մեծամեծք իցեն այնոքիկ՝ զորոց զոտսն լուաց զնոցա, և փչեաց 'ի նոսա զՀոգին իւր։ Եւ եթէ Յովհաննէս մեծ է, զի մկրտեաց զնա, որչափ ևս առաւել իցէ այն՝ որ անկաւ զլանջօք նորա. իսկ զՅուդայն մատնչին զոր լուաց՝ զտեղին պատուեաց և ըղթիւն։ Եւ քանզի մեծացաւ Յովաննէս քան զամենայն ծնունդս՝ զի մկրտեացն զնա, մեծացան ևս քան զնա առաքեալքն, զի լուաց զոտս նոցա։ Վասն այսորիկ լաւ էր Յուդայ՝ թէ ոչ էր ծնեալ, փոխանակ զի թշնամանեաց նա զայն՝ որ մեծացոյցն զնա քան զՅովաննէս։ Մեծ է քան զծնունդս. այլ փոքրիկն մեծ է քան զնա, այն՝ որ մտանելոցն է փոխանակ Յուդայն։ Զոր օրինակ ժառանկեաց նա զաթոռն նորա, նոյնպէս և զլուանալն նորա։ "Եթէ իցէ, ասէ, անդ որդի ողջունի. ապա թէ ոչ ողջոյնն ձեր առ ձեզ դարձցի"։

Եւ այսպէս ասաց՝ եթէ ոչ եղև 'ի ծնունդս կանանց, որպէս զի յայտ լիցի եթէ վասն առաջնոցն ասաց։ Զի զձառս զառաջնոցն արկեալ էր յառաջագոյն. այս ինքն մարգարէիցն քարոզաց և աւետարանչացն։ Այլ յայտ արար վասն վերջին քարոզացն՝ որ Հոգովն մկրտեն, եթէ մեծամեծք են նոքա քան զայն՝ որ ջուրբքն մկրտեաց։ "Դմա, ասէ, աճել և ինձ մեղմանալ"։ Արդ այն ինչ որով իւիք տէր մեր մեծանայր, "Եւ ոչ եթէ, ասէ, չափով ետ Որդւոյ իւրում"։ և որպէս մեծացաւ Մովսէս քան զամենայն,

սոյնպէս և առաքեալքն քան զամենայն ։ Զի եթէ Յովհաննէս զի պատրաստեաց առաջի երեսաց նորա՝ մեծացաւ, որչափ ևս նոքա՝ զի ինքնին տէր մեր պաշտեաց զնոսա, և պատրաստեաց Ճանապարհ առաջի երեսաց նոցա ։ Գիտասջիք, ասէ, զի և զիս ատեցին յառաջագոյն քան զձեզ ։ Եւ որ ինչ միանգամ ուսոյց նոցա յաշխարհի, ինքն յառաջագոյն կատարեաց զնա ։ Արասցեն զնա և պահեսցեն զամենայն զոր պատուիրեցի ձեզ ։ Եւ եթէ Յովհաննէս զի պատրաստեաց առաջի հեզ և խոնարհ գալստեան նորա՝ մեծացաւ, առաքեալքն զի հորդեցին և պատրաստեցին Ճանապարհ առաջի մեծի գալստեան նորա որչափ ևս առաւել մեծացին ։

Արդ մեծ է Յովհաննէս, զի մկրտեաց ․ զի եթէ մարգարէքն ցանկացան տեսանել, և առաքելոցն տուաւ երանութի զի տեսին, որչափ ևս մեծ իցէ այն՝ որ մկրտեացն ևս զնա ։ Զի ամենայն մարդ որպէս և կամի լսէ զբանն ․ զի ահաւասիկ քան զմարգարէսն ասաց՝ թէ առաւել է, և ծնունդս կանանց զմարգարէսն կոչեաց ։ «Փոքրիկն, ասէ, վերջնոցս՝ որ աւետարանեն զարքայութիւնն երկնից, մեծ է քան զնա ։ Եւ զայս մեծութի զոր ընկալաւ Յովհաննէս առաւել քան զմարգարէս՝ ոչ եթէ ազատութեն նորա է, այլ այնորիկ՝ որ զնա մեծացոյց ․ իսկ որ փոքրիկն է մարդկան, եթէ կամի մտանել յարքայութիւնն երկնից, մեծ է քան զնա ։ Իւրաքանչիւր, ասէ, մարդ ըստ վաստակոց իւրոց զվարձս իւր ընկալցի ։ Թէպէտ և մեծամեծք իցեն առաքեալքն ընդրութբ, և մարգարէքն յիրս ինչ պիտոյից, այլ զի երևեսցի այն՝ այս ոչ ծածկի ։ Եւ սովին իսկ այսուիկ զի եղիցի անուանեալ և երևեալ, եթէ սա, ասէ, առաւել վաստակեաց, աւելի քան զնա ։ Նա և այս մեծութիւն է ․ թէպէտ և իցեն որ տեղովք երիցունք են քան զնա ։

Ընթացան միտք մարդկան կարծել՝ թէ չիք մեծ քան զՅովհաննէս և ոչ յարքայութին, լոյծ նոցա միով յայնցանէ՝ որ գրեալն է ․ զի եթէ քան զառաջինս մեծացուցանես դու զնա զի մկրտեաց նա զտէր մեր, մեծ է նա և քան զվերջինսն ։ Եւ եթէ այսու

մեծութիւն իւրով որ աստ է՝ լինի մեծ և անդ, զինչ մեծութիւն յայտնի գոյր Յովաննու : Կամ զուցէ մեծ է պսակն խաչին : Եւ յայնմ յաշխարհի 'ի խաչ ելանեն : Քննեա և խնդրեա դու՝ թէ զինչ է մեծութիւն Յովաննու՝ որ նովաւ մեծացոյց զնա տէր մեր. և ահա այնուհետև բացեալ լինի քեզ դուռն տեսանելոյ՝ եթէ 'ի մէջ ընտրութե և ազատութե խօսեցաւ նա : Թէպէտ և մեծ է զի ընտրեցաւ, մեծ է քան զնա և այն՝ որ առաւելն վաստակի քան զնա : Որով իւիք մեծ է Յովաննէս քան զառաջինսն, նովին մեծ է քան զվերջինսն, և քան[1] զվերջինսն զայնոսիկ որ մեծն են ազատութեամբն իւրեանց՝ որչափ և կամեսցին փոքր է նա : Ոչ թէ գործովք իւրովք փոքր է Յովաննէս. այլ այս ընտրութի մարգարէութե կամ արքայութե, որ մեծացուցանէ զաստ, փոքր է քան զընտրութիւն ազատութեան որ մեծացուցանէ յարքայութեան : Մեծ է պատիւ այնորիկ՝ որ իւրով կամօք ընտրեցաւ, առաւել քան զայն՝ որ լինի ընտրեալ յարքայութե այլովք կամօք. վասն այսորիկ "Արդարև ասեմ ձեզ, եթէ չիք 'ի ծնունդս կանանց մեծ քան զՅովաննէս" : Ոչ եթէ գործով իւրով մեծ է Յովաննէս, զի մեծութիւնն այն արքայութեան երկնից գործոց է :

Եւ իբրև զարմացան լսօղք և լքան, քաջալերեաց զնոսա՝ եթէ մեծ է ընտրութի նոցա քան զայս. Թէպէտ և ընտրողք էին, սակայն կարծեցին թէ ըստ ընտրութեան իւրեանց որ աստ իցէ՝ նոյնպէս իցէ մեծութիւն նոցա և անդ. ասեն. "Ո՞վ արդեօք մեծ իցէ յարքայութեան" : Հատ զընտրութի զոր կարծէին վասն նորա, և մոյծ զազատութեան. ասէ. "Որ խոնարհեցուցանէ զանձն իւր" : Եւ զի առաւել ևս հաստցէ զնա. Թէպէտ և Շմաւոն մեծ էր ընտրութիւն, սակայն և աշակերտն միւս ևս ընտրութիւն՝ որ և զանունն նորա անգամ ոչ է ասացեալ, որ բազմեալ էր 'ի վերայ լանջացն նորա, և կարօտ էր նովաւ այն՝ որ ստացեալ ունէր զերկուս անուանս, մի Շմաւոն, և միւս ևս Վէմ. և դարձեալ աշակերտն ասէ, որով

1 Յօրինակին պակասէ քան :

երանութ̃ին բազում էր, ո՛չ ահա 'ի գործ նորա եղև բազում: Եւ յառակս այդոյն "Յետինք, ասէ, եղիցին առաջինք", գործովք իւրեանց կամ շնորհօք: Թէ այդ այդպէս է, իբրև ցուցանէր զշնորհս իւր, ստուգութ̃ի նորա կորեաւ, եթէ առաջինք եղիցին յետինք:

## ԳԼՈՒԽ Ժ

Այլ իբրև եկին երկուքն ընտրել իւրեանց տեղիս յառաջագոյն քան զընկերս իւրեանց, ասէ ցնոսա տէր մեր. "Կարէ՞ք դուք ըմպել զբաժակն զոր ես ըմպելոց եմ". զի յայտ արասցէ եթէ գնոց գնի: Իբրև զիս՝ ասէ. վասն այսորիկ և ա̃ծ վերացոյց և բարձրացոյց զնա. զի չի՛ք այն՝ որ խոնարհեցաւ առաւել քան զտէր մեր ըստ բնութ̃են նորա, զի յա̃ծութենէ էր: Իբրև ուսան նոքա՝ թէ գործովք գնի, ասէ. արդ զի ուսարուք թէ գործովք գնի, թերևս իցեն որ ընթացան կամ ընթանան առաւել քան զձեզ, սակայն 'ի միտս Հօր կատարեալ է այն՝ որ մեծն է ընթացիւք իւրովք առաւել քան զամենայն մարդ, և նմա պատրաստեալ է: Քանզի ընտրութ̃ք առանց գործոց եկին առնուլ, մերժեաց զնոսա[1] տէր մեր առ 'ի յինքենէ. և ցոյց թէ չունի իշխանութ̃ի, զի մի տրտմեցուսցէ զնոսա. իբրև զայն՝ զի ասէ՝ զայն ժամ ոչ ոք գիտէ. զի մի հարցցեն վասն նորա: "Ոչ, ասէ, ձեզ տուեալ է գիտել զժամս և զժամանակս": Արդ եկն մեկնեաց զնա ամենեցունց. իբրև բարկացանն, "Որ կամի, ասէ, լինել ձեզ գլուխ, եղիցի ձեզ ծառայ". և այսմիկ ամենայն մարդիկ իշխեն:

Արդ ետ տէր մեր զխնդրուածս որդւոցն Զեբեդեայ. իբրև զպսակ եդ 'ի միջի՝ եթէ այն՝ որ առաքինանայ 'ի պատերազմի նորա, պսակեսցի նովաւ: Նա և Առաքեալ իսկ շինէ 'ի վ̃ր այսորիկ յասել անդ իւրում. "Քննեսցէ, ասէ, զմիտս սրտից. և ապա եղիցին փառք իւրաքանչիւր մարդոյ 'ի մէնջ առ ա̃ծ": Նա և Բաղաամ 'ի մարգարէութ̃ն ընտրեցաւ, և

1 Յօրինակին զնա:

և որդիքն Հեղեայ 'ի քահանայութենէ [1], և Յերոբովամ յարքայութիւն։ Վասն այսորիկ և ես զկնովին խոտան գտանիմ։ Մուտ նա որպէս զի ուսցի զի փոքրկացուսցէ զամենայն ընտրութիւս բնութեան մերոց, զի մեծացուսցէ զազատութիւն. և զի գիտասցես եթէ այս այսպէս է, եթէ ոք խօսի 'ի լեզուս հրեշտակաց, ոչ է ընտրութիւն անձին իւրոյ, այլ այ. այլ որ սիրէ, ընտրութիւն անձին իւրոյ է։ Եւ վասն այսորիկ Ճանապարհ է նա մեծ և առաւել քան զայն՝ որ ոչն է նորա՝ գիտել զմարգարէութիւն և զխորհուրդս, և ոչ է նորա փոփոխել զլերինս։ Եւ եթէ ջամբեցից զամենայն ինչս իմ աղքատաց որպէս Անանիայն և կինն իւր, զի ոչ սիրով արարին. և մատնեցից զմարմին իմ որպէս Սկարիովտայն. զի յայտ արասցէ եթէ ոչ օգնութիւն՝ որ ասացաւ՝ օգնեն առանց սիրոյ, այլ ընտրութիւն ազատութեան։ Վասն այսորիկ ասէ. "Սիրեա զտէր Աստուած քո. այն է պատուիրան մեծ„. և դարձեալ այն՝ զի ասէ. "Ջամբեցից աղքատաց, որպէս զտունս փարիսեցւոց, և մատնեցից զմարմինս իմ 'ի կիզումն„։ Եւ զայնոսիկ յիսուն յիսուն՝ զի ոչ ճշմարտութեան կարգային. Եղիա մարգարէ, ասեն, այ, թագաւոր, ասեն, ասէ՝ էջ այտի։ Անոնային առաջի այ 'ի վերայ այնորիկ՝ որ առաքեաց զնոսա, և մատնէին զմարմինս իւրեանց հեծեծելով այրել 'ի հուր տեառն, իբրու սէրն այ ոչ գոյր 'ի նոսա։ Եւ դարձեալ տունն Կորխայ, զի ոչ վասն նախանձու պաշտաման այ այրեցան։ Եւ յաւուրս Սեդրաքայ և Միսաքայ և Աբեթնագովի բազումք ցանկային անկանել 'ի հուրն, զի եղիցին նոցա՝ որպէս և նոցայն եղև։ Եւ յաւուրս Աբրահամու կերակրեցին ոմանք զաղքատս. իբրու թէ երևս մտցեն հրեշտակք և օրհնեսցեն զնոսա։

Լինէին նմանող մարդիկ բարեգործաց. ոչ վասն սիրոյն բարութեց, այլ վասն շահից նոցա։ Բաղաամ վասն զի շինեաց եւթն սեղան, զի լուաւ նա վասն առաջնոցն՝ եթէ պատարագս զոր մատուցին՝ առին 'ի նմանէ զխնդրուածս իւրեանց, պատրեցաւ և նա։ Եւ

1 Յօրինակին 'ի լուսանցսն 'ի մարգարէութենէ։

արքայն մովաբացոց հայեցաւ 'ի Նափեթ․ այլ քանզի անդրանիկ նորա էր, և մարդ սպան և ոչ անասուն, ողորմեցաւ նմա ա̃ծ՝ զի սա վշտին արար, թէպէտ և չէր սիրով։ Եւ Նափեթի եթէ էր մի 'ի ծառայից իւրոց դիպեալ նմա, նախ զնա սպանանէր․ այլ զի մի՛ եղիցին մարդիկ պատարագել զընկերս իւրեանց, հան ընդ առաջ նորա զդուստր նորա՝ զի զահի հարցին և այլք ուխտել զմարդիկ ա̃յ։ Իսկ այն Աբրահամուն որ եղև վասն այնր զայն ժամուն յայտ արար, զի պատարագէին զորդիսն իւրեանց։ Եթէ յորժամ պատարագել կամեսցին, և մեռանիցին որդիքն իւրեանց, մի՛ մոլեգնեսցին, այլ ուրախ լիցին։ Եւ ահա այնուհետև եղեն Աբրահամք բազումք փոխանակ ընդ միոյն, որ մատոյց զորդին իւր ուրախութ̃բ․ վասն այնորիկ և ա̃ծ եբաց դրունս բազումս, զի եղիցին և մարդիկ սիրելիք ա̃յ, որպէս և Աբրահամ սիրելի նորա, և իբրև զմի մի 'ի սիրելեաց նորա։ Այլոց յորժամ գործեմք մեք զգործս նոցա, հարկ է զի իբրև զնոսա իցեմք և մեք։

Եւ այն՝ զի ասէ "Մի՛ ասա, ասէ, և մի անդ թողցի նմա"․ զի եթող տէր մեր զմեղս ձրի բազմաց, և մկրտութ̃ի նորա թողու ձրի զպարտիս հաւատացելոց․ իսկ այնպիսոյն ոչ տէր մեր և ոչ մկրտութ̃ի նորա թողու նմա 'ի յայսմ աշխարհի, և ոչ ողորմութ̃ի նորա՝ այն որ 'ի մէջ բարութեց ծածկէ և թագուցանէ զչարիս՝ 'ի վախճանի։ Այլ ոչ ասաց տէր մեր եթէ ոչ լինի հատուցեալ փոխանակաւ, այլ ձրի ոչ լինի թողեալ․ այս ինքն՝ թէ արասցէ զամենայն բարութիւս, և կատարեսցէ ամենայն արդարութ̃բ, չիք հնար եթէ լինիցի նմա թողեալ ձրի․ բայց եթէ հատուցանէ զնա 'ի գեհեն։ Նա և Դաւիթ ետ զարդարութիւն իւր փոխանակաւ փոխանակ սպանմանն զոր սպան։ Համարձակութ̃բ ասեմ, թէ չիք մեղք որ ապրստամբին և ապստամբեսցեն յապաշխարութ̃է, բայց յայտնանէ, զի ոչ արգելուն այս մեղք արդարանալ մարդոյ այլով իւիք․ զի յորժամ հատուսցէ զայս 'ի գեհեն, հատուցէ նմա զայն յարքայութ̃ն։ Պաւղոս այսպիսի ոչ հայհոյեաց, զի բազումք են որ հայհոյեն և հալածեն իբրու այսպէս և ոչ հայհոյեն։

Իսկ այն՝ զի ասացն եթէ «Եղիցի նա պարտական
մեղացն յաւիտենից», զի ոչ լինին թողեալ ասաց.
և տես դու զմեկնութիւն՝ որ յարեալն է ընդ բանն.
«Այլ եղիցի նա, ասէ, դատապարտ». զոր ինչ պար-
տի մարդն՝ հատուսցէ, ասէ, և ոչ եթէ թողցի։ Ա-
րար տէր մեր մեկնութիւն ՚ի մէջ հատուցմանն և թո-
ղութեանն. թերեւս սպին ոչ լինի սպիտակացեալ։
Այլ ոչ ասաց նա՝ եթէ եղիցի նա մեղաւոր և ան-
բարիշտ կամ անօրէն, այլ եղիցի նա դատապարտ։
Ջնջել զարծաթ և զտել կարես դու և առանց հրոյ.
այլ շողացուցանել և եռանդնացուցանել հրով
միայն կարես դու։ Սոյնպէս և այն՝ զի ասէ «Մի՛
թողցի նմա, մի աստ, մի անդ». կամ վասն այնր ժա-
մանակի ասացաւ բանս, և ոչ թէ վասն այսր աւուր։
Տեսին զնա զի մարմին զգեցեալ էր, և բազումք երկ-
մտեցին վասն նորա. իսկ ՚ի վերայ Հոգւոյն կարծիք
ինչ ոչ էին նոցա։ Վասն այսորիկ «Որ ոք ասիցէ
բան զորդւոյ մարդոյ, թողցի նմա. իսկ որ ասիցէ ոք
զՀոգւոյն սրբոյ, մի՛ թողցի նմա. մի՛ յայսմ աշխարհի
և մի՛ յայնմ»։ Ի վերայ երկուց հատուցման մարթի
խօսել. այս ինքն աստ տանջեսցի, և անդ մաշեսցի։
Այլ ոչ եթէ ամենայն յանցաւորք աստէն առնուն ըզ-
հատուցումն։ Զի այնոքիկ որ հայհոյեցին, և աստ
խնդրեցաւ ՚ի նոցանէ վրէժ, և անդ. որպէս Սկա-
րիովտայն, զի հեղաւ ամենայն փորն նորա։

Տես դու զի իբրև բարկուք ցուցանէ Պետրոս թէ
անց ընդ նա, և ՚ի վերայ այնր հայհոյչաց ժամանա-
կին միայն կատարի. իսկ այսր աւուրս յանդիմանութե
հայհոյեն։ Արդ ամենայն ծննդեան մարթ է անկա-
նել յապաշխարութի. իսկ այնմ՝ որում չիքն հնար
լինել ապաշխարութի, լաւ էր նմա եթէ ոչ էր ծնա-
ծնեալ։ Ամենայն մեղաւորաց ապաշխարութք լինի
թողութի. և գիտութք և որ յանդիմանութե մեղան-
չեն, ոչ ասաց տէր մեր՝ եթէ ոչ գտանէ զողորմութի
զթութե, այլ ասէ՝ ոչ լինի նմա թողեալ։ Թերեւս
յորժամ հատուցանէ զպարտիսն իւր աստէն, անդ
գտանէ զողորմութի։ Ապա թէ ոչ թողու, դատա-
ւորն յայտ արար՝ թէ որչափ են յանցանք յանցաւորի.
և եթէ թողու, ողորմածն յայտ արար՝ թէ որչափ

են ողորմութիք բարերարին, այն՝ որ 'ի նմա բնակէ լրութին. ոչ եթէ նա ոչ թողու նոցա՝ եթէ ապաշխարեն, այլ հայհոյութեամբն այնուիկ ոչ տայ նոցա թոյլ սատանայ դառնալ յապաշխարութի: «Յանդիտութէ, ասէ, գործեցի զայս»: Այսուհետև 'ի վերայ այնոցիկ որ գիտէինն՝ ասաց եթէ «Մի թողցի նոցա». և վկայէ Յուդա սկարիովտացի, զի զեղջ և ապաշաւ ողոց նորա ոչ եղև ընդունելի: Եւ զի դիւաց կցորդ արարին զնա, ընդ դևս բաժին ետ նոցա. զի դիւի ոչ յայսմ աշխարհի լինի քաւութի; և ոչ յայնմ: Զի դևն ասէ. սուրբ այ ես դու: և նոքա ասեն. այս պեղծ դոյ 'ի նմա: Արդ աւելի քան զդևս պարտ էր նոցա զանէծս ընդունել: Ամենայն մեղք և հայհոյութիք գոն 'ի նոսա հարկաւ իրաց իրաց. իսկ ընդ այնմ հայհոյութե լկտութի գիտութեամբ հանդերձ. զի գիտէին թէ 'ի վերայ գիտնոցն եդ ըղվձիւն, զի մի թողցի նոցա: Նա և ինքեանք իսկ Հրեայքն զայս իսկ ուխտ եդին. ոչ եթէ որ ոչ կոչեսցէ զնա դիւահար, այլ որ կոչեսցէ զնա Քրիստոս՝ 'ի բաց որոշեսցեն զնա. զի գիտասցես թէ արտաքոյ քան զհարկ է այս հայհոյութի. վասն այսորիկ և արտաքոյ թողութե և այս հայհոյութի:

«Նա զի ասէ «Մատուցին առ նա այր մի դիւահար խուլ և համր և կոյր». խորհուրդ ժողովրդեանն նկարեալ էր 'ի նմա. որպէս ասէ. «Սիրտ ժողովրդեանս այսորիկ զլսելիս իւրեանց ծանրացուցին. և զաչս իւրեանց կափուցին, զի մի տեսցեն աչօք իւրեանց, և մի լուիցեն ականջօք իւրեանց». և այլ ևս: Եւ զի ասէ «Բժշկեաց զնա, և ետ նմա լսել խօսել և տեսանել», խորհուրդ է այնոցիկ՝ որ հաւատացին 'ի նա:

«Սա, ասէ, եթէ մարգարէ ոք էր, զիարդ ոչ գիտէր եթէ յորպիսի գործոց իցէ կինս, այս է՝ զի մեղաւոր է»: Իսկ դու զի գիտէիր զնա, ո Շմաւոն, զիարդ ետուր նմա թոյլ մտանել 'ի բազմական քո: Սակայն և ոչ յայսմանէ գիտացեր դու, զի Աստուած է նա. և ոչ զծածուկ կամս նորա՝ որ ածին զնա՝ կարացեր արգելուլ: «Երկու, ասէ, պարտապանք էին առն ուրումն փոխատուի. մին պարտէր հինգ

Հարիւր դահեկան, և միւսն ևս պարտէր յիսուն ”. զի յայտ արասցէ յայտնապէս՝ թէ զկնի նորա գըրեաց զպարտիս նոցա ։ Այսէ առ Շմաւոն փարիսեցի. “Ի տուն քո մտի, ասէ, և ջուր, ասէ, ոտից իմոց ոչ ետիր դու ”։ Բարիոք եղև զի ոչ ետ ջուր, զի մի լիցի խափանել լուանալ արտասուացն կնոջն մեղաւորի՝ զոր պատրաստեաց արդարացուցչին իւրոյ ։ Ոչ ջեռոյց հուրն զջուրն լուանալոյ նորա, զի սիրոյն նորա արտասուք կնոջն մեղաւորի եռային ։ Արար նա առաւել լուացս այնմիկ՝ որ ետ նմա զնախանձել 'ի պարգևսն ։ Լուացաւ և հանգեաւ, և ետ վարձս ընդ լուանալոյ նորա քաւութ՟ի ։ Մարդկութ՟ի նորա լուանայր և հանգչէր, և ա՟ծութիւն նորա անդէն զվարձսն հատուցանէր ։ Լուանալ մարդկութե՟ նորա միայն մարթ էր. իսկ սրբել զմեղս նորա զաներևոյթս ա՟ծութե՟ նորա միայն կար էր ։ Արդ արար նա նմա անդ լուացս արտասուաց, և ետ նմա նա զվարձս թողութե՟ մեղաց ։ Նա արտասուօք իւրովք լուաց զփոշի ոտից նորա, և նա բանիւք իւրովք սպիտակացոյց զսպիացեալ մարմին նորա ։ Լուաց նա զնա պեղծ արտասուօքն իւրովք. և լուաց նա զնա սուրբ բանիւքն իւրովք ։ Լուացաւ նա 'ի փոշոյ անտի. և շրջեցաւ լուաց զնա յանօրէնութ՟է իւրմէ ։ Լուացան ոտք նորա արտասուօք. և ետուն բանք նորա թողութիւն մեղաց ։

“Համբոյր մի ողջունի դու ինձ, ասէ, ոչ ետուր. և սա աւասիկ յորմէ հետէ մտեալ է՝ ոչ դադարեաց 'ի համբուրելոյ զոտս իմ. և վասն այսորիկ թողեալ լիցին սմա մեղք իւր բազում, զի յոյժ սիրեաց. զի որում սակաւ թողցի, սակաւ սիրէ ”։ Հանդերձ այսուիկ հաստատէ և ստուգէ վասն պնդամոց՝ թէ արդարև մարմին է շօշափելի, եթաց և ջնջեաց և օծ ։ Արդ լայցեն ապաշխարողք և զղջասցեն յանցաւորք, թերևս հասցեն 'ի դուռն բացեալ մտանելով ։ Եւ որք սիրեն զկեանս աղաչեսցեն, զի դուռն փակեալ աւետարանեցաւ, որոց ինչ 'ի պատերազմի անդ իւրեանց ոչ իցէ գործեալ, և փոխարէն բարեաց 'ի վերայ անձանց ոչ իցեն նիւթեալ ։

Արտասուք կնոջն մեղաւորի իջին և լուացին ըղ-

տեղւոյն՝ ուր գրեալն էին հինգ 'ի նոսա հարիւր դահեկանսն պարտեաց նորա . այս է, զի ապստամբեցոյց զնա կարօտութ̃ի նորա յամօթոյ անտի : Զի ետես նա զայն՝ որ ոչն եպերէր զկարօտեալս յորժամ ժըտին . այլ անարգէ զմեծատունս զի գարշին : Վասն այնորիկ ամբարձ զձայն իւր գթութ̃ք գթացելոց, եւ բաց զբերան իւր թողութ̃ք կարօտելոցն, եւ գովեաց զպատուադիրս իւր 'ի հոգաբարձութ̃ե սիրոյ նոցա՝ որ էր առ նա, եւ յամօթ արար զկոչելիսն իւր յարհամարհել սիրոյ նոցա՝ որ էր առ նա : Եւ եհան յայտնեաց զհաւատս կնոջն փառօք, եւ մերկացեալ խայտառակեցոյց զխորհուրդս փարիսեցոյն տրտնջելոյն : Եւ եղեւ նա բժիշկ հաւատացելոցն, թէ նա ինքն բժշկէ զամենայն . եւ եղեւ դատաւոր ծածկելոց այնորիկ՝ որ եւ ոչ 'ի յայտնիսն համարեցաւ զնա թէ գիտէր նա :

Եւ զի ասէ “Առաքեաց զնոսա երկուս երկուս », ըստ նմանութ̃ե իւրոյ . այս ինքն, որպէս առաքեաց նա ձրի առանց վարձուց, սոյնպէս եւ նոքա . իբրու զի ասէ “Ձրի առէք, եւ ձրի տուք » . ըստ նմանութ̃ե իւրոյ զի ասէ . այս ինքն զի քարոզեսցեն զճշմարտութիւն, եւ արասցեն նշանս, եւ չարչարեսցին ըստ նմանութ̃ե նորա, եւ յինքեանս նկարեսցեն զնա իբրեւ 'ի պատկերի :

Եւ այն՝ որ անկաւ իբրեւ յերկնից, կամեցաւ թագչել յերկրի, եւ ոչ ետ նմա թոյլ ջուր եւ արիւնն՝ որ 'ի վերայ նորա գնացին 'ի կողից անտի կենարարին : Եւ զի 'ի վերայ օդոց թռիցէ եւ ասասցէ, մերժեցաւ նա 'ի տարածել բազկացն նորա : Եւ զի փախեաւ անկաւ նա յամրոցս իւր, եւ անդ դարձեալ վատթարեցոյց զնա . յայնմիկ՝ զի ասէ . “Անկցին 'ի կողմանէ քումմէ հազարք եւ բիւրք », եւ այլն եւս : Եւ զի փախեցաւ նա եւ գնաց 'ի տուն ապաւինի իւրոյ, սակայն եւ անդի եւս հալածեաց զնա 'ի ժամանակի իբրեւ ելոյծ նա զկապեալսն եւ հան զարգելեալսն : Նա եւ յայսմանէ եւս խիթայր նա . եւ հաւանեցոյց զխաչահանուսն 'ի յասելն՝ եթէ “Էջ 'ի խաչէ այտի, զի տեսցուք եւ հաւատասցուք 'ի քեզ » . եթէ գոնեայ այսուիկ մնասցէ նա յամրոցսն իբրեւ զխորշակ :

«Տեսանէի ես, ասէ, զսատանայ զի անկաւ իբրև զփայլակն յերկնից»: Ոչ եթէ զի 'ի նմա էր նա, որպէս ոչ այն՝ որ ասացն «Ի վերոյ քան զաստեղս երկնից արկայ զաթոռ իմ». այլ 'ի մեծութէ անտի իւրմէ և յիշխանութենէ տէրութեան իւրոյ տեսանէի ես, ասէ, զսատանայ զի անկաւ յերկնից իբրև ըզփայլակն: Ոչ եթէ յերկնից անկաւ. քանզի և փայլակն յերկնից անկանել ոչ կարէ, այլ ամպք ծնանին զնա: Իսկ ընդէ՞ր ասաց՝ թէ յերկնից. այս ինքն իբրև յերկնից, զոր օրինակ փայլակն. զի յանկարծակի 'ի մի յական թօթափել անկաւ սատանայ 'ի ներքոյ յաղթութե խաչին: Զկնի այնր զի մարդք դուզնաքեայք, զի օծան զառաքելութի առաքչի իւրեանց, և առաքեցան յանկարծակի նշանօքն հիւանդութեց, ցաւոց և այսոց պղծոց: Եդեալ է եթէ անկաւ սատանայ յիշխանութէ իւրմէ յանկարծակի, որպէս և փայլակն յամպոյ: Զոր օրինակ փայլակն զի ելանէ 'ի տեղւոջէ իւրմէ, և այլ ոչ դառնայ անդրէն., սոյնպէս անկաւ և սատանայ, և 'ի վերայ իշխանութե իւրոյ այլ ոչ ևս հաստատի: Փոխանակ զի ընթացոյց ստուգութիւն զօձն առ գարշապարն, բարձրացոյց ողորմութիւնն զգարշապարն 'ի ձեռն խաչին. զի եղիցի 'ի վերոյ քան զօձն իշխանութբ: Ցայտ առնէ այն՝ զի ասէ զկնի նորա. «Եւ զամենայն, ասէ, զօրութի թշնամոյն». այն՝ որ 'ի ձեռն խաչին եղև կործան: Եւ զի ասէ «Ահա ետու ձեզ իշխանութի կոխել զօձս և զքարբս». զի խափանեաց նա զմոլորութի, որ թագաւորեալ էր 'ի ձեռն օձին. որպէս զի թագաւորեսցէ ճշմարտութի այնորիկ՝ որ ետ զիշխանութի կոխել 'ի վերայ օձից և քարբից. այս ինքն 'ի վերայ թագաւորաց նոցա. զի եհար նա զգարշապարն Եւայի, կոխեաց զնա ատն Մարիամայ:

Եւ այն՝ զի ասէ «Գոհանամ զքէն հայր երկնաւոր». յոյժ ասէ. «Գոհանամ զքէն, ա̃ծ հայր, տէր երկնից և երկրի. զի, ասէ, ծածկեցեր զայս յիմաստնոց և 'ի գիտնոց, և յայտնեցեր տղայոց»: Զի իմաստունք մաքառին ընդդէմ հաւատոց, և ոչ ընդունին զպարզուղեղս, ծածկեցաւ 'ի նոցանէ: «Ոչ ոք գիտէ զՀայր՝ եթէ ոչ Որդի»: Իսկ ո՞վ է որ ճա-

նաչէ զմիտս՝ եթէ ոչ Բանն որ եղանէ 'ի նմանէ ։ Նա է որ 'ի վերոյ է քան զմիտս , և ամենայն խորհուրդք խլրտան 'ի նմանէ , և խոնարհ գտանին խլրտմունք նոցա ։ Եթէ տեսանելով և լսելով լինի գիտութիւն , հարկ է եթէ ամենայն որ միանգամ ետես զտէր մեր՝ գիտէր զնա . նա և նոքա իսկ եթէ էր , ասէ , գիտացեալ , ոչ արդեօք 'ի խաչ հանեալ լինէր . և զի ասէ . “Հայր Թող սոցա , զի ոչ գիտեն „ ։ Նա և արեգակն և լուսին և արմատք և քարինք պատուականք երևէին , այլ ոչ Ճանաչին ։

Արդ Որդի խորհուրդ է Հօր ։ Արդ որ գիտէ ըզծառ , ուրախ լինի պտղով նորա . վասն այսորիկ ասէ . “Ոչ ոք Ճանաչէ զՀայր , եթէ ոչ Որդի „ . որպէս զի կապեսցէ զգիտութիւն զերկոցունց 'ի միմեանս ։ Կամեցաւ՝ եղև ծանուցեալ , ա՟ծ վասն կամաց իւրոց , և որդի վասն գործոց իւրոց ։ Այնոքիկ՝ որ հայհոյեն , վասն Հոգւոյն սրբոյ , ասեն , գրեալ է “Ոչ ոք Ճանաչէ զՀայր , եթէ ոչ Որդի . և ոչ զՈրդի , եթէ ոչ Հայր „ ։ Եւ յայսմիկ , ասեն , յայտ արար՝ եթէ Հոգին ոչ գիտէ ։ Եթէ այդ այդպէս իցէ , յորժամ ասէ եթէ “Ոչ գիտէ զմարդոյն , եթէ ոչ որ 'ի նմա . սոյնպէս և զա՟յն ինչ ոք ոչ գիտէ , եթէ ոչ Հոգին ա՟յ „ . եթէ այդ այդպէս իցէ , Որդի ո՞չ գիտէ ։ “Եկայք առ իս , ասէ , վաստակեալք և աշխատեալք , և ոյք ունիք բեռինս ծանունս , և ես հանգուցանեմ զձեզ „ ։ Եւ զի կաթեաց 'ի լսելիս նոցա բարբառն հանգստեան , ընթացեալ գնացին զկնի նորա բազումք ։ Եւ զի մի դոյզնաբար աշակերտեսցեն զուսումն վարդապետութե՟ նորա , ասէ ցնոսա . “Որ ոչ ատեայ զանձն իւր , աշակերտ նա իմ ոչ կարէ լինել ։ Ո՞վ իցէ 'ի ձէնջ , որ կամիցի շինել աշտարակ , և ոչ նախ նստիցի համարիցէ զծախսն իւր „ , այլովքն հանդերձ ։ Ոչ եթէ բանիւք պիտոյ էր զի աշակերտեսցին նմա , այլ գործովք . վասն այսորիկ նեղ և անձուկ է Ճանապարհըն կենաց . այս ինքն այնոցիկ՝ որ մարմնովն վարին ։

## ԳԼՈՒԽ ԺԱ

"ԱԶԳՍ այս ազգ չար է և շնացող. նշան խնդրէ, և նշան մի տացի նմա, բայց նշանն Յունանու մարգարէին. զի որպէս եղև Յունան 'ի պորտ ձկանն զերիս տիւս և զերիս գիշերս, այնպէս պարտ է մտանել որդւոյ մարդոյ 'ի սիրտ երկրի զերիս տիւս և զերիս գիշերս,,: Ոչ եթէ վասն թուոյ երից աւուրցն փոյթ ինչ էր տեառն մերոյ ասել, այլ վասն զի բժշկեաց նա զցաւագնոտս նոցա, և յարոյց զմեռեալս նոցա: Եւ յետ այսր անպատուումն նշանաց և անգիր վկայութեանցն զայս ասացին կուրացեալքն որ ոչն տեսանէին. "կամիմք մեք զի նշանս ինչ, ասեն, տեսցուք 'ի քէն,,: Իսկ նա եթող զթագաւորս և զմարգարէս վկայս իւր, և եկն առ նինուէացիսն, այնոքիկ՝ որ նշան ինչ 'ի Յունանէ ոչ տեսին. զի 'ի վախճանի դատապարտեսցեն զայնոսիկ՝ որ յետ բազում նշանացն զոր տեսին, ուրացան յարարչէ անտի նշանացն: Քարոզեաց Յովնան զկործանումն 'ի վերայ նինուէացւոցն. արկ 'ի նոսա սոսկումն և դողումն, և սերմանեաց 'ի նոսա հիացումն. և ետուն նոքա նմա օրայ զապաշաւ ոգւոց, և պտուղ ապաշխարութեան: Ընտրեցան հեթանոսք, և մերժեցան անթլփատք. կեցին կռապաշտք, և դարձան մեղաւորք առ ամօթի թլփատելոցն: Արդ նոքա են՝ որ դատապարտելոցն են զուրացեալսն՝ որ ոչ հաւատացին:

"Նշան, ասէ, մի տացի նոցա, բայց նշանն Յունանու մարգարէի,,: Զի նշանն Յովնանու յերկոցունց կողմանց պաշտօնեայ լինէր նինուէացւոց. կամ թէ արհամարհեսցեն, իջցեն կենդանոյն 'ի դժոխս իբրև զնա. կամ թէ ապաշխարեսցեն, կեցցեն 'ի մահուանէ ըստ նմանութեան նորա. որպէս և տէրն մեր՝ զի եղև 'ի գլորումն և 'ի կանգնումն: Կամ կեցցեն ապաւինամբն նորա, կամ մեռանին մահուամբն նորա: "Արք, ասէ, նինուէացիք,,. կապեաց զնոսա 'ի միւս ևս: Նշան յերկնից խնդրէին, իբրև որոտումն Շմուէլի: Եցոյց՝ եթէ 'ի խորոց ելանէ քարոզութիւն, զոր

դուքն կամիք 'ի բարձանց լսել նմա : Քանզի լուան 'ի բարձանց, և ոչ հաւատացին, որպէս թէ 'ի խորոցն ել Յունան : Զի յետ ելանելոյն նշան չարի եղև նինուէացոցն, զի քարոզեաց կործանումն քաղաքի նոցա . սոյնպէս և աշակերտքն յետ յարութեան տեառն մերոյ :

«Այսպէս, ասէ, եղիցի որդի մարդոյ 'ի սիրտ երկրի» : Զի կանխեսցէ ցուցցէ նոցա՝ ոչ եթէ նովաւ կարէին սպանանել զնա . զի ահա աւանիկ յառաջ քան զհազար ամն նկարեալ էր[1] խորհուրդ մահու նորա 'ի Յովնան : Ուր սպանաւ Հաբէլ, անդ էր արդեօք բերանն երկրի : «Երկիր, ասէ, եբաց զբերան իւր, և ընկալաւ զարիւն եղբօր քո» : Եւ ուր թաղեցաւ տէր մեր, անդ է արդեօք սիրտ երկրի . «Եղիցի, ասէ, որդի մարդոյ 'ի սիրտ երկրի . որպէս եղև, ասէ, Յովնան 'ի պորտ ձկանն» : Զոր օրինակ ոչ ապականեցաւ ինչ 'ի նմա, սոյնպէս և տէր մեր 'ի մէջ դժոխոց . այն իսկ է զի ասէ . «Ոչ թողեր զանձն իմ 'ի դժոխս, և ոչ ետուր սրբոյ քում տեսանել զապականութիւն» : Եւ զոր օրինակ ել Յունան 'ի ծովէ անտի, և քարոզեաց նինուէացոցն, և դարձան և կեցին, սոյնպէս և տէր մեր իբրև կենդանացոյց զմարմինն իւր 'ի դժոխոց, առաքեաց զառաքեալսն իւր 'ի մէջ հեթանոսաց, և դարձան կատարեալք, և կեցին լիապէս : Իսկ երեք աւուրք իջիցն և ելիցն՝ զմահըն զերկոցունց պատմեաց :

«Եւ դշխոյն, ասէ, հարաւոյ դատապարտեսցէ զնա» . զի նա ինքն է օրինակ եկեղեցւոյ : Զոր օրինակ եկն նա առ Սողոմոն, սոյնպէս և եկեղեցի առ տէր մեր . և որպէս նայն դատապարտէ զնա, սոյնպէս և եկեղեցի : Զի եթէ նա՝ որ ցանկացաւ տեսանել զանցաւոր իմաստութիւնն զմահկանացու թագաւորին՝ դատի զժողովուրդն, որչափ ևս առաւել եկեղեցի . զի զթագաւորն՝ որ ոչ անցանէ, և զիմաստութիւն նորա՝ որ ոչ լինի մոռացեալ : «Զի եթէ չարչարիմք ընդ նմա, ապա և ընդ նմա փառաւորիմք» :

«Այլ այսն պեղծ յորժամ ելանէ 'ի մարդոյ» :

1 Յօրինակին 'ի լուսանցսն ջնջաբերեալ էր :

Եւ զայս զի ասաց նոցա, զի նշան խնդրէին զնա, ած նոցա զայս օրինակ՝ եթէ զի՞նչ օգուտ է ձեզ եթէ բժշկիք դուք առ ժամանակ մի, իբրու չիցէք հաւատացեալք։ Զի եթէ երկմտէք յետ բժշկելոյն ձերոյ, չար ևս քան զառաջին ցաւն լինի ձեզ. ըստ օրինակին զոր ետ առաջի նոցա. “Երթայ, ասէ, այսն պիղծ՝ առնու եւթն այլ ևս զընկերս իւր որ չար ևս իցեն քան զնա, և գան բնակին 'ի նմա, և լինի մարդոյն այնմիկ յետինն չար քան զառաջինն. այսպէս եղիցի և ազգիս այսմիկ,,։ Նման է այս՝ եթէ անդ բժշկեաց նա զՄարիամ Մակդաղենացի, այն՝ որ գրեալն է թէ եւթն դեւն հանեալ էր 'ի նմանէ։ Վասն այնորիկ ած նա զգործս զայս առաջի նոցա վասն օրինակի Ճառիցն՝ զոր արկեալ էր նորա։ Զի 'ի նմին իսկ վայրի ասաց վասն կանանցն՝ որ եկեալն էին ընդ նմա, որ բժշկեալն էին 'ի ցաւոց և յայսոց պղծոց. “Մարիամ, ասէ, Մակդաղենացի՝ յորմէ զեւթն դև հանեալ էր. և Յովհաննա կին Քուզայ հազարապետին Հերովդի, և Շուշան,,, այլովք հանդերձ։ “Եւ լինի չար մարդոյն յետինն քան զառաջինն,,. զի ոչ եթէ դարձեալ գայ Քրիստոս մարմնով միւսանգամ բժշկել զցաւս չարաչարս ձրի առանց հաւատոց։

“Այլ այսն պիղծ յորժամ ելանէ 'ի մարդոյն,,. դնէ զԻսրայէլ 'ի նմանութիւն յիմարի, զի զգեցեալ է զոգի. գիտ, ասէ, Իսրայէլ և այլ ևս. և զանձն իւր 'ի նմանութիւն բժշկի։ Եւ զի սա իսկ այս բժիշկ 'ի ժողովուրդ անդ նոցա ծագեաց զքաղցրութիւն իւր, և նշանօք և արուեստիւք կատարեաց զբանս մարգարէիցն իբրև զայն՝ զի ասէ. “Եթէ ինձ ոչ հաւատայք, գոնեայ գործոցն հաւատացէք,,։ Եւ զի 'ի մէջ նոցա սփռեաց զողորմութիւն իւր, փութացեալ տագնապեցաւ կռապաշտութիւն յերեսաց նոցա, և փախեաւ գնաց հեթանոսութիւն նոցա 'ի մէջ ազգացն հեթանոսաց։ Եւ իբրև զի թէ առ ժամանակ մի բժշկեցաւ նա 'ի հիւանդութենէ անտի մոլորութեան, և մերժեցաւ գնաց կռապաշտութիւն նորա 'ի հեռաստան յերեսաց Ճառագայթից կենարարին, և զի բռնութիւն աքանչելեացն նորա եթող ժողովուրդն զկռապաշտութիւն իւր, և ոչ եթէ կամօք իւրովք անարգեաց

զնա, 'ի ժամանակի իբրեւ թոյլ ետ ազատութեան նոցա՝ եթէ անձամբ իւրով առաքինեսցի, յետ վերանալոյ նորա դարձաւ նա անդրէն յառաջին 'ի գնացս իւր. վասն այսորիկ եւթն ընկեր նորա։ "Եւ լինի յետին մարդոյն չար քան զառաջինն". զի կայ մնայ կատարած մոլորութեան առ նոսա։

Բայց դարձեալ դնէ այս պեղծ զիսրայէլ յանուն մարդոյ, 'ի ժամանակի մինչ յեգիպտոսն բնակեալն էին, եւ այս պեղծ գոյր 'ի նոսա, մինչ դեռ Փարաւոնի 'ի հնազանդութեան կային։ Եւ իբրեւ առաքեաց նոցա փրկիչ հանել զնոսա, փախեաւ 'ի նոցանէ այսն պեղծ, եւ բժշկեցան։ "Առաքեաց զբանն իւր եւ բժշկեաց զնոսա, եւ փրկեաց զնոսա յապականութենէ"։ Անցոյց զնոսա ընդ ծով զի սրբեսցին, եւ ոչ կամեցան. եւ անցոյց զնոսա ընդ եռանդն հրոյն, եւ ոչ մաքրեցան. որպէս եւ Առաքեալն իսկ վկայեաց։ Իսկ այսն պեղծ որ 'ի նոցանէն մերժեցաւ, գնաց շրջեցաւ ընդ անջրդի տեղիս. այս ինքն ընդ հեթանոսս, զի գտցէ իւր հանգիստ, այլ ոչ եգիտ. զի եւ հեթանոսք լուան զձայն բարբառոյ զայնորիկ՝ որ ասացն, ասէ. "Որ միանգամ ծարաւի իցէք ջրոյ". եւ դարձեալ. "Հեթանոսք յուսասցին 'ի նա". եւ "Ետու զքեզ յուխտ ազգի եւ 'ի լոյս հեթանոսաց"։ Եւ զի եղեւ յանապատն հեթանոսաց 'ի ձահիճս ջուրց, եգիտ նա իւր հանգիստ 'ի հեթանոսս. վասն այսորիկ "Դարձայց ես 'ի տուն իմ յառաջինն", եւթն ընկերօք իմովք։ Եւ եմուտ բնակեցաւ 'ի ժողովուրդն ըստ թուոյ աւուրց շաբաթու, եւ խափանեաց զամենայն սպաս պաշտաման նոցա։

Եւ դարձեալ եւթն այսքն որ 'ի նոսայն բնակեցին, այնք են՝ զոր ասացն Երեմիա. ասէ. "Յղացաւ եւ ծնաւ եւթն". ուռեաւ որովայն նորա, ծնաւ նա մի որթ յանապատին, երկու Յորոբովամու, եւ ըզպատկերն չորեքդիմի Մանասէին։ Եւ զի ասէ "Եմուտ արեգակն". զի բնակեալ է 'ի խաւարի 'ի լուսոյ անտի մարգարէութեան. "Գիշեր, ասէ, ձեզ 'ի տեսանելոյ, եւ խաւարեսցի ձեզ յառաւօտէ". զի երթայ դարձեալ շրջի յորժամ ելանէ 'ի մարդոյ։ Այս բնութիւն իսկ այսպէս լինի։ Ետ վճիռ 'ի վերայ նորա.

«Այսպէս, ասէ, եղիցի ազգիս այսմիկ»․ այս ինքն զի յաւուրս մարգարէիցն եղեալ գնացեալ էր 'ի նոցանէն այսն պեղծ․ զի նա ինքն է մեղք։ Զի առ նա զգրուանն 'ի միջոյ նոցա, և եդ 'ի Բաբելոն․ և ստուգեցին և մարգարէքն՝ եթէ երարձ 'ի նոցանէ զմեղսն․ յայնմիկ՝ զի ասէ․ «Տղայն հարիւրամեան մեռցի, և հարիւրամեանն որ մեղանչէ, անիծեալ լիցի»։ Դարձեալ ընկէց զնոսա յաւուրսն տեառն մերոյ․ և եգիտ զնոսա զի լի էին նախանձու 'ի վերայ փրկչին իւրեանց։ Եւ այսուիկ մեծացան չարիք նոցա քան զառաջինն․ զի մարգարէից սպանմունք հատուցին, և զՔրիստոս 'ի խաչ հանին․ վասն այսորիկ խոտեցան անարգեցան իբրև զանօթ մի անպիտան։

«Երանի իցեն որովայնին՝ որ կրեացն զքեզ»։ Մարկիոն ասէ․ փորձելով փորձէին զնա՝ եթէ իցէ՞ նա ծնեալ։ Եւ այնու դարձեալ զի ասէ «Ահաւանիկ մայր քո և եղբարք քո խնդրեն զքեզ», նոյն իսկ է․ և ետես զմարմին նորա և ուտելն նորա․ ընդէ՞ր․ ասէ՝ զի ծածկեսցէ զմեծութիւն իւր, և տացէ նոցա կարծիս թէ մարմնաւոր իցէ նա, զի ոչ լինէին նմա բաւական*։ Իսկ 'ի ծննդենէ անտի ընդէ՞ր լինէր յուրաստ․ զի եթէ յուրաստ լինելով իւրով զայս կամէր նոցա ցուցանել՝ թէ չէր նա ծնունդ, դարձեալ միւսանգամ ոչ շրջէր առնէր նա զանձն իւր եղբայր աշակերտացն ծնելոց։ Զի եթէ յայնմանէ՝ որ յուրաստն եղև անդ՝ ստուգի թէ չէ նա ծնեալ, սակայն յայսմանէ որ աստ ասաց՝ արժան է հաւատալ թէ ծնեալ է։ Զի եթէ մայրենի յուրաստս լինելոյ մոռացեալ լինի հարազատութիւն, սոյնպէս և խոստովանութիւն եղբարց յայտ լինի ազգատոհմ հայրութեն։ Եւ եթէ վասն զի ոչն եղև խոստովան զմօրէն և զեղբարց իւրոց, այս եցոյց նոցա թէ չիք նորա հարք։ Թէ այդ այդպէս իցէ, ահաւանիկ ասաց նա՝ թայ «Չիք ոք բարի, բայց մի»։ Արդ նա է և Հօրն սուրբ, և հրեշտակք ընտրեալք ո՞չ են բարիք․ ասէ ցնա․

* Ցայս վայր Մարկիոնի բանք են, որպէս և գրիչն 'ի լուսանցս օրինակին ասէ․ «Զայս Մարկիոն ասաց զամենայն, լաւ գիտեա»։ Եւ ապա զհետ գան բանք Եփրեմայ ըստ նշանակելոյ անդէն յօրինակին Եփ․ և 'ի լուսանցսն՝ թէ «Հայրիկս 'ի վիճումն եղաւ, գիտացիր լաւ»։

“Զի՞, ասէ, կոչես զիս բարի”․ զոր ինչ անդ ասաց՝ թէ զի՞ կոչես զիս յղացեալ և ծնեալ։

“Երանի իցէ, ասէ, որովայնին՝ որ կրեաց զքեզ”։ Իսկ նա առ զերանութիւնն 'ի մօրէ անտի իւրմէ, և ետ զնա երկրպագուաց իւրոց․ զի 'ի Մարիամ ժամանակեան միոյ էր, և յերկրպագուս նորա յաւիտեանս ժամանակաց։ “Երանի, ասէ, որ լուիցեն բզբանն ԱՅ և պահեսցեն”։ “Որ ունիցի ականջս լսելոյ լուիցէ”։ Եւ որ ունէր ականջս, լսէր․ զի ձայնն այն վասն ողորմութեն նորա յամենայն յականջս անց։ Այլ ինքեանք ականջքն վասն ազատութեանն իւրեանց յորս կամին զարթնուն 'ի նմա․ և են դարձեալ զի զարթնուն 'ի նմա, և ոչ զայն ինչ զոր խնդրէ զուարթութե իւրում՝ գործեն 'ի նմա։ Ծածկեաց 'ի մարմնոյ՝ որ ինչ աչաց տեսանել խիստ է։ Ցայտնեաց եցոյց՝ ինչ որ խորհրդոցն տեսանել դիւրին էր։ Տեսիլ նորա աչաց խիստ էր, իսկ վարդապետութին նորա ականջաց դիւրին էր․ և ոչ եթէ զի ընդէր ոչ տեսին զմեծութին նորա՝ լինի պատուհասեալ, այլ զի ընդէր ոչ ընկալան զբանս մեծութեն նորա։ Արդ են բանք՝ որ թէպէտ սերմանին 'ի լսելիս, սակայն արմատք նոցա անպտուղ են․ եթէ զարմատս հանդերձ պտղովն աճեցուցանեն։ Անկան երեք ցորեանք յերիս լսելիս, և պտուղ ոչ արարին։

“Ահա ատասիկ ել սերմանահան, ասէ, սերմանել սերմանիս․ և 'ի սերմանելն անդ իւրում՝ էր որ անկանէր առ ճանապարհաւն, և էր որ անկանէր 'ի վերայ առապարի, և էր որ անկանէր 'ի մէջ փշոց, և էր որ անկանէր յերկիր պարարտ բարիոք”։ Արդ եթէ սերմանահանն մի էր, և երկիր մի է արմատուք, չորք բաժինք երևեցան, և յայն 'ի բարիոքն և 'ի պարարտ․ զիմ՞րդ իբրու մի է բնութ՟ իւրով և գործով իւրով, և սերմանիս սրբութե ընկալաւ 'ի սուրբ ձեռանէն, զիմ՞րդ երեք բաժինք երևեցան յաճելն նորա, և երեսնաւորք, վաթսնաւորք․ և որ ունիցի՝ տացի նմա։ Եւ ընդէ՞ր սերմանեաց առ ճանապարհաւն, զի կոխան եղև 'ի նմա սերմանիքն, և զնոսա քաղեցին թռչունք․ և երկիրն այն փշալիցն, և նա երկիր էր բարիոք, և եբեր փուշ․ և վասն այնր առա-

պարին եթէ ընդէր սերմանեաց 'ի նմա սերմանա-
հանն զսերմանիս իւր : Սերմանահանն մի է, և զսեր-
մանիս իւր հաւատարութեամբ ցանեաց առանց ակնա-
ռութեան . բայց ամենայն երկիր, ըստ որում ընքնի
ցոյց զսերմն իւր պտղովն իւրով . զի ցուցցէ բանիւն
իւրով թէ ոչ օտար նորա բանի ինչ ունի ազատու-
թեան [1] արդարանալ, և ոչ զականջս ամուլս զրկեաց
նա 'ի սերմանեաց անդի սուրբ բանից իւրոց :

Այն՝ որ անկաւն առ ճանապարհաւն, նա ինքն է
նմանութիւն ոգւոց զրկողաց . իբրև զայն՝ որ զմի քան-
քարն առ, և անարգեաց զքարերար տուիչն նորա :
Եւ զի ոչ կամեցաւ ընդունել զսերմանիսն նորա,
եղև նա անց և կոխան ամենայն չարեաց : Զի վասն
այնորիկ ոչ եղև յերկրի անդ նորա տեղի վարդապե-
տին իբրև մշակի մտանել պատառել զխստութիւն նո-
րա և սերմանել զնա : Իսկ զչարն 'ի նմանութիւն թռչ-
նոց գրեաց՝ թէ յափշտակեաց զնա . յայտ արար
յայսմ վայրի՝ թէ ոչ բռնութեամբ ինչ յափշտակէ 'ի
սրտէ զուսումն վարդապետութեան, որ տուեալ լինի
նմա : Զի ահա աւանիկ ըստ օրինակին զոր եցոյց, 'ի
դուռն լսելեաց կայր ձայն աւետարանին . որպէս և
հատն ցորենոյ 'ի վերայ երեսաց երկրի, այն՝ որ ոչն
անփոփեաց յարգանդ իւր զսերմանիս՝ որ անկան 'ի
նմա, զի չէ տուեալ թռչնոց նկրտել զկնի սերմա-
նեաց, այն՝ որ անփոփեացն երկիրն 'ի ներքոյ թևոց
իւրոց :

Իսկ այն՝ որ 'ի վերայ առապարին էր, ցոյց բարե-
բարն զողորմութիւն գթութեան իւրոյ . զի թէպէտ և
ոչ լինէր գործել խստութեան նորա, սակայն ոչ խնայ-
եաց 'ի նմանէն զսերմանիսն իւր : Զի նոքա են որ
դառնան յաշակերտութենէ անտի նորա, իբրև զայնո-
սիկ՝ որ ասացին . “Խիստ է, ասեն, բանդ այդ, ո՞ կա-
րէ լսել զդա ,, : Նման Յուդայ, զի լուաւ զբանսն
նորա, և ծաղկեցաւ նշանօք նորա, և 'ի ժամանակի
փորձութեան եղև անպտուղ [2] :

Իսկ երկիրն փշալից յընդունել զսերմանիսն, զզօ-
րութիւն իւր փշոց և տատասկի ետ : Յայտ արար վար-

1 Յօրինակին ղաղափութեն :

2 Յօրինակին Նա պտուղ :

դապետն զսէրն իւր յայնմիկ՝ զի սերմանեաց յօժար զսերմանիսն իւր յերկիր յաղթիչ յօտար վաստակոյն, թէպէտ և թագաւորեալ փուշն յերկրի անդ. զի եղիցի առանց պատասխանւոյ, սերմանեաց 'ի նա զիւրն առատապէս:

Մատեաւ մեծատունն առ տէր մեր ուրախութբ և ասէ. «Զայս ամեն արարեալ է իմ 'ի մանկութէ իմմէ»: Ա՛ռ տէր մեր սրբեաց և ետ նմա մերկ սերմանիս. «Եթէ կամիս կատարեալ լինել, երթ վաճառեա զինչս քո զամենայն զոր ունիս»: Եւ իբրև ետես նա թէ եկն եհաս կատարած սերմանն, զի յամենայն փշոց հեղձուցչի իւրոյ ազատեսցի, գտաւ տրտմեալ վասն մեծութե իւրոյ: Զի նա ինքն է փուշ յապաղիչ նորա. իսկ երկիրն բարիոք և պարարտ՝ ոգիք, որ գործեալ են ստուգութեն: Նման այնոցիկ որ կոչեցանն, և թողին զամենայն ինչս իւրեանց, և գնացին զկնի նորա:

Իսկ երեսնաւորն, վաթսնաւորն և հարիւրաւորն՝ ասի վասն ընթացից, որ 'ի մանկութէ, յերիտասարդութէ և 'ի ծերութէ. իբրու երկիր մի է և սերմն մի է, ըստ երկարոյն այսպէս ժողովէ և զթիւ, իբրու մի քան զմի առաւել էին արմատեւք: Սակայն ցոյց բարերարն զքաղցրութի իւր. զի իբրև եկին առնուլ զվարձս որոշեալ արմատեւք, յետինք ընդ առաջինսն վարձս հատարակ առին:

Դարձեալ երկիր բարիոք և պարարտ՝ թէպէտ և մի են կամքն բարերարք որ ընկալանն ուրախութբ զսերմանիսն բարեաց, սակայն եղեն նոքա փոփոխեալ երեսնաւորին, վաթսնաւորին և հարիւրաւորին: Յայտ արար՝ թէ ամենայն մասունք երկրի ըստ կարի իւրեանց, և լինի ըստ զօրութե իւրեանց. աճեցուցին զնա ուրախութբ իբրև զայն զքանքարացն՝ որ հնգիւ և տասամբք իւրաքանչիւր ըստ իւրում կարի. զի այն՝ հարիւրաւորն գայ, թուի թէ կատարումն է նա ընտրութեն՝ որ առ կնիք զմահ վկայութե փոխանակ այ: Իսկ վաթսնաւորքն այնոքիկ են՝ որ կոչեցան և ետուն զմարմինս իւրեանց 'ի տանջանս չարչարանաց փոխանակ այ իւրեանց, և մահուն փոխանակ տեառն իւրեանց ոչ ժամանեցին. մնացին 'ի վախ-

ճան բարիոք ։ Իսկ երեմնաւորն չափ է հանապազորդս բարիոք երկրի ։ Այնոքիկ որք ընտրեցան յաշակերտութիւն, և ոչ յարեան 'ի վերայ նոցա ժամանակք հալածմանցն, և պսակեցան բարիոք վաստակովք իւրեանց իբրև զերկիր մի՝ զի պսակեալ իցէ պտղով իւրով, բայց յընտրութիւն մարտիրոսութեան և վկայութեան ոչ կոչեցան ։ Եւ այն զի ասէ՝ եթէ "Նա ոչ գիտէ, զի երկիրն յինքենէ բերէ պտուղ"․ ոչ եթէ ոչ գիտէին, այլ զի ոչ աշխատի նա 'ի բոյս նորա ։

"Տէր, ո՞չ դու սերմանիս սրբութեան ցորենոյ սերմանեցեր յագարակին քում․ արդ ուստի՞ եղև որոմն ։ Ասէ ցնոսա․ այդ գործ թշնամւոյ է"․ այս ո՞չ է նորա․ և եթէ ոք իբրև 'ի մէնջ է, պաշտեսցի 'ի նմա․ հարցցուք զնա, եթէ բարերարն ըստ իւրում սերմանն սերմանեաց 'ի մասին անդ՝ որ 'ի նմանէն է, և եթէ այսպէս իցէ՝ ասասցէ մեզ, զի՞արդ մասն 'ի նմանէն սերմանեալ, և 'ի նմանէն սերմանելի․ և եթէ 'ի չարին սահմանեաց, թէ այդպէս է՝ նա սերմանեաց 'ի մէջ որոմանն, կամ չարին որայն է ։

"Գուա՛րձեալ նմանեալ է արքայութիւնն հատոյ, զի փոքր է նա քան զամենայն սերմանիս"․ այս ինքն վասն փոքրկութեան քարոզութեանն որ 'ի սկզբանէն էր, ասաց․ իբրև զայն՝ զի ասէ․ "Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ" ։ "Եւ յորժամ բուսանի, ասէ, աճէ ծառանայ և լինի քան զամենայն բանջար մեծ"․ զի թագաւորեաց աւետարանն նորա մինչև 'ի ծագս երկրի ։ "Ընդ ամենայն երկիր ել, ասէ, բարբառ աւետեաց նոցա" ։ "Եւ գան, ասէ, թռչունք երկնից և բնակեն յոստս նորա"․ հեթանոսք աշխատեալք հանգչին 'ի վերայ հաւատոյն․ "Եկայք, ասէ, առ իս ամենայն աշխատեալք" ։ Եթէ ոչ էր ծնեալ տեառն մերոյ 'ի կնոջէ, և ոչ ծագեալ 'ի կնոջէ, և ոչ չարչարեալ, պարտ էր նմանեցուցանել զանձն իւր թռչնոյ՝ որ եկն յերկնից, այն որ և մարմինն իւր ընդ նմա եկն ։ Այլ զի յայտ արասցէ ստուգութիւն՝ եթէ մարմին առ նա, նմանացոյց զանձն իւր հատոյ՝ որ սերմանեցաւ յերկրի, և առ իւր մարմին յերկրէ, այն՝ որ 'ի վերայ նորա հանգեաւ թռչունն․ և վկայէ Յովհաննէս մկրտիչ․ "Ես, ասէ, տեսի զՀոգին ըստ նմանութեան մար-

մնոյ աղաւնոյ , զի էջ հանգեաւ 'ի վերայ նորա ,, ։

Դարձեալ նմանեցոյց զնա խմորոյ՝ որ խառնեցաւ յալեւր , զի գործն զնա 'ի ծածուկ դարձուցանել յիւր 'ի նմանութ՟ին անդր , ոչ եթէ իբր վարի նա 'ի բռնութ՟է զանկուածոյն , այլ ծածուկ զօրութ՟բ իւրով զամենայն զնա առ ինքն ձգէ · սոյնպէս և աւետարանն նորա ։ Խմոր դարձեալ 'ի զանկուած՝ մարմին նորա 'ի զանկուած տանն Ադամայ ։

Դարձեալ ասէ · “Նմանեալ է ուռկանի , զի արկեալ է զնա 'ի ծով , և յամենայն ազգաց ժողովէ յինքն ,, ։ Այլ յորժամ ասէ յամենայն ազգաց , գիտասջիր եթէ յամենայն լեզուաց ։ Բայց դարձեալ յետ այսր ընտրութ՟ե սոցա՝ որ 'ի ծովէս է , այս ինքն յաշխարհէ է , այլ միւս ևս ընտրութիւն լինի նոցա ։ Այս ահ և երկիւղ է · և յորժամ հանեն զնա արտաքս , և մատչին ընտրել զբարին բարի , և զխոտանն 'ի բաց ընկենուլ · ձկունք են որ մտին յուռկանն նորա , մարդիկ 'ի հաւատս նորա · իսկ բարիքն այնոքիկ են՝ որ սկսան և կատարեցին զաւետարանն նորա · և խոտանն այնոքիկ են՝ զորս մերժեաց և ընկեաց եկեղեցի 'ի միջոյ իւրմէ վասն ուրացութ՟են նոցա ։

“Վասն այսորիկ եկն նա 'ի քաղաք իւր և ուսուցանէր զնոսա 'ի ժողովս նոցա ,, ։ Եւ ո՞չ էր այլ ժողովուրդ կամ այլ երկիր , բայց միայն Հրէից ։ Այլ զի կշտամբեալ յանդիմանեսցի ստութ՟ին մարկիոնացոցն , ասէ զկնի նորա · “Մուտ նա , ասէ , ըստ սովորութ՟են իւրում 'ի ժողովս նոցա յաւուր շաբաթու ,, ։ Եւ ո՞ր սովորութ՟ին այնորիկ՝ որ այժմդ եկն · զի այն որ եկն նոր 'ի Գալիլիա · և ոչ սկսաւ նա ուսուցանել արտաքոյ քան զժողովուրդն , այլ 'ի ժողովրդեանն ։ Զի 'ի պաշտամանէ անդի նոցա յայտ էն իրքս՝ եթէ վասն այ՟ նոցա խօսէր նա ընդ նոսա · ապա թէ ոչ՝ արտաքոյ քան զժողովուրդ նոցա պարտ էր քարոզել նոցա ։ Մուտ 'ի Բեթսաիդա առ Հրէայսն , և ոչ առնէր յայտ՝ եթէ ասացին ինչ նմա , բայց միայն զայս · “Բժիշկ բժշկեա զանձն քո ,, ։ Եւ առին վարեցին հանին զնա և ածին առ կողմն լերինն · և այս չէ ինչ նման՝ թէ 'ի ցասումն ածէր զնոսա բանն զոր ասացին նոքա ։ Ապա եթէ վասն արարչին խօսեցաւ

ընդ նոսա, և վասն այսորիկ ետուն նմա պատասխանի, և վարեցին ածին ընկենուլ զնա, վասն էր յայլում վայրի ոչ առնէ յայտ իբրև զայս: Եւ զի քաղաքակիցք իւր ատէին զնա, վկայութիւն է այս զի ասէ. "Ոչ է մարգարէ ընդունելի 'ի քաղաքի իւրում":

Ոչ Անաթովթ ընկալաւ զԵրեմիա, և ոչ Թշբէ զԵղիա, և ոչ Աւելմահուլա զԵղիշա, և ոչ Հռամա զՇմուէլ, և ոչ ժողովուրդն զՄովսէս, և ոչ Իսրայէլ զտէր մեր: Արդ Եղիա անարգէ զկանայս նոցա, և Եղիշա զարս նոցա. և Թերահաւատք կոչեցան նախատանօք. և զԱսորիս յարգէ առաւել քան զնոսա. վասն այսորիկ լցան բարկութեամբ: Բայց պատճառք այս է. "Բժիշկ, ասեն, բժշկեա զանձն քո". այս ինքն ապրեցո զանձն քո 'ի մէնջ, մինչ դեռ դու կամիս զմեզ բժշկել: Թէպէտ և կարօտ էին բժշկութեան, սակայն ոչ կարէր բժշկել զնոսա վասն թերահաւատութեան նոցա: Վասն ազատութեան իւրեանց ընկեցին զնա, վասն ծնութեան իւրոյ ոչ անկաւ. Թէպէտ և ժպրհութիւն ընկէց զնա, սակայն օդն հնազանդեալ 'ի վերայ թևոց իւրոց ընկալաւ. և զի ոչ անկաւ, թէ գոնեայ այսուիկ հաւատս ուսուցէ անհաւատիցն: Թերևս վասն այսորիկ ասէ՝ ընկալան զնա գալիլեացիքն. յայնմանէ՝ զի տեսին զնա զի 'ի մէջ նոցա առնէրն, ոչ ևս այլ համարձակեցան առնել ինչ նմա. և զի այս էր առաջին բժշկութիւն, աջ նորա հիւանդացեալ էր. զի վասն այսորիկ իսկ նախանձայոյզ եղեն 'ի վերայ նորա որդիք Նազարէթայ 'ի գործութէ անտի գլխոյն ձախոյ, որ նախանձեցաւ ընդ բժշկութի աջոյն, այն՝ որ 'ի խորհուրդս տօնի եղեալ էր, և լուծաւ յամենայն պէտս ծնութեն:

"Մարգարէ, ասէ, 'ի քաղաքի իւրում, այս ինքն 'ի ժողովրդեան իւրում, չէ ընդունելի": Եղիա 'ի Թշբեայ էր, և ոչ ասաց՝ թէ Եղիա 'ի Թշբէ ոչ եղև ընդունելի, այլ ամենայն Իսրայէլի: Ապա եթէ ոչ՝ ցուցցեն մեզ եթէ Թշբեացիքն հալածեցին զնա, և իսրայէլացիքն ընկալան: Եւ ո՞վ ասէ. բայց կին մի այրի 'ի Ծարեփթան հեթանոսաց. "Բազում, ասէ, այրիք էին, ոչ 'ի Թշբէ, այլ 'ի տան Իսրայէլի. և

առ մի 'ի նոցանէն ոչ առաքեցաւ „ : Սոյնպէս և քո֊
րոտք ոչ 'ի գեօղս Եղիշայի , այլ 'ի տան Իսրայէլի :
Եւ այսպէս կնքեաց՝ թէ "Ոչ կարէր , ոչ 'ի Նազա֊
րէթ , այլ 'ի տան Իսրայէլի՝ զօրութիւնս ինչ առ֊
նել „ :

Նայլ նազօրացիք իբրև տեսին թէ անարգէր նա
զամենայն երկիրն իսրայէլացւոց գոյիւ իւրով , և պա֊
տուէր անչափ զհեթանոսս , յարեան այսուհետև ա֊
ւրին ածին ընկեցին զնա իբրև մարդ՝ նախանձաւորք
փոխանակ աբրահամեան զաւակին : Ջնոսա ; ասեն ,
պատուեաց ա̃ծ քան զամենայն հեթանոսս 'ի պատ֊
ճառս նազարէթայ : Եդ տէր մեր երկուս օրինակս ,
որ 'ի մէջ ժողովրդեանն և հեթանոսաց մեկնեն :
Զոր օրինակ 'ի պատճառս տաճարին ցոյց միւս ևս
այլ տաճար , զի նա ինքն է մարմին նորա . և պատ֊
ճառս արտօրայիցն հունձս մարդկան 'ի Շամրին : Զի
ամենայն ժողովուրդն ազգատոհմ մարգարէին էր ,
և ազգն եղբարք նորա :

Պատուեաց զնա հարիւրապետն , և զարմացեալ
էր ընդ նա . պատուեաց զնա տաճիկ ասորին , և ըս֊
քանչացեալ էր ընդ նա . մին իբրև զՆեեման , և
միւսն իբրև զայրին 'ի Ծարեփթան : Եղիա փախեաւ
'ի հեթանոսս . բայց տէր մեր արգել զաշակերտ֊
սն , զի և ողջոյն մի տայցեն հեթանոսաց : Եւ զտա֊
ճիկ ասորին հազիւ մինչև ընդունէր , եցոյց և յայտ
արար տէր մեր այսուիկ՝ եթէ եղանելոց է բժշկութին
'ի մէջ հեթանոսաց : Բայց դարձեալ զի ետ զանձն
ընկենուլ , զի այսպէս կարծէր սատանայ՝ եթէ յեր֊
կեղէ իւրմէ ոչ արկ զինքն 'ի վայր յաշտարակէ ան֊
տի տաճարին : Եւ իբրև ընկեցինն զնա և ոչ անկաւ ,
անկաւ սատանայ յարքայութէն իւրմէ իբրև զայն՝ զի
քարինս հաց ոչ արար , զի մի տացէ զցանկութի մե֊
ղաւորին : Զի ահա աւանիկ արար զնա յանապատի
անդ հացիւն , և 'ի Կանա Գալիլիա գինովն :

"Տուր , ասէ , բերել զգլուխ Յովաննու մկրտչին „ :
Ո՛վ Հերովդէս , զի՞նչ գործես դու . մի տար դու ըղ֊
գլուխն արդար պարտաւոր կողին : Այլ այն՝ որ յաղ֊
թեացն Ադամայ 'ի ձեռն կողին՝ որ ընդ նմա իսկ ա֊
մուսնացաւ , նոյն յաղթեաց Հերովդի 'ի ձեռն կո֊

ղին՝ որ ընդ նմա իսկ ամուսնացաւ ։ Գլուխն որ իբրև զճրագ եղաւ 'ի վերայ սկտեղն, ահա աւասիկ յամենայն ազգս ազգաց լուցեալ է, և խայտառակէ զշնութի սպանողացն ։ Այս է բերանն, որ լռեցուցին զի մի խօսեսցի․ և սաստկացեալ բորբոքեցաւ քարոզութի լռութե նորա առաւել քան զձայնի նորա ։ Եւ 'ի կաքաւելն, ասեն, դստերն Հերովդիադայ խորամանկութբ արարին․ Հերովդէս և Հերովդիադա, զի նա երդուիցէ, և նա խնդրեսցէ։

ԳԼՈՒԽ ԺԲ

ԱՐԱՐ Տէր մեր 'ի սակաւ հացէ բազում հաց յանապատի անդ․ և 'ի Կանա փոխեաց զջուրն 'ի գինի ։ Յառաջագոյն կանխեաց ընդելույց և կրթեաց զբերանս նոցա հացիւ իւրով և գինով, մինչև եղիցի ժամանակ, զի տացէ նոցա զարիւն իւր և զմարմինն ճաշակելով։ Կերակրեաց զնոսա 'ի շահ անցաւոր հացին և գինոյն, զի հաստուսցէ զնոսա 'ի շահ կենարար մարմնոյ և արեանն․ Ետ նոցա զմանուածն առանց արծաթոյ, զի գիտասցեն եթէ ձրի են առաւել պարգևքն նորա ։ Ետ նոցա ձրի զայն ինչ՝ որ գնոց կարէին գնել 'ի նմանէ․ այլ ոչ ետ նոցա գնոյ զայն ինչ՝ զոր կամէին գնել, զի գիտասցեն՝ եթէ ոչ պահանջէն 'ի նոցանէ գինս․ այն զի ոչ գոյր նոցա տալ նմա զգինս հացին և գինոյն՝ որ կարէին նոքա, այլ տալ նմա զգինս մարմնոյ և արեան նորա՝ ոչ կարէին նոքա ։ Այս զի ոչ եթէ ձրի միայն ետ նա մեզ, այլ և պատրեաց զմեզ պատրանօք․ Ետ մեզ զայն մանուածն ձրի, զի յորդորեսցէ զմեզ երթալ առնուլ զայն ինչ՝ որ առաւել իցէ առանց գնոց ։ Զայն զմանուածս հացին և գինոյն զոր ետ, զբերան անուշացուցանէին․ իսկ այն մարմնոյ և արեան՝ մտաց օգտակարք լինէին․ յորդորեաց զմեզ այնուիկ՝ որ զքիմսն քաղցրացուցանէ, զի ձգեսցէ զմեզ առ այն ինչ՝ որ զոգիսն կեցուցանէ ։ Վասն այսորիկ խառնեաց եդ զանուշութին 'ի գինին զոր արար, զի յայտ արասցէ եթէ որպիսի գանձք ծածկեալ կան 'ի կենարար արիւն նորա ։

Ի սկիզբն նշանաց իւրոց արար գինի ուրախարար բազմականացն, զի յայտ արասցէ՝ եթէ արիւն նորա հանդերձեալ է ուրախ առնել զամենայն ազգս հեթանոսաց։ Ամենայն որ միանգամ ուրախութիւնք իցեն, կապեալ են ՚ի գինի. և ամենայն որ միանգամ փրկութիւնք եղեն, ՚ի խորհուրդ արեան նորա կապեալ են։ Եւ գինի անոյշ փոփոխիչ խորհրդոց, զի գիտասցեն եթէ ուսումն փոփոխիչ խորհրդոց արբուցանէ նոցա. զջուրսն առաջինս փոփոխեաց ՚ի Թակոյկսն ՚ի գինի, և զպատուիրանսն առաջին դարձոյց ՚ի կատարումն։ Զջուրսն ած յառաւելութիւն, և զօրէնսն ած ՚ի կատարումն. մինչ նոքայն էին՝ ջուր ընպէին բազմականքն, այլ ոչ եթէ իբրև զջուրս ընպէին զնոսա։ Թէպէտ և զպատուիրանս առաջինս լսեմք մեք, սակայն իբրև ՚ի վախճանի ճաշակեմք զնոսա։ Այսուհետև շրջեցաւ անապատակն ընդ ապատակին, և եթէ զկատարումն զայս գործեմք մեք, "Որ հարկանէ ըզծնօտ քո, մատո դու նմա և զմիւս ևս ծնօտն կողմն"։

Արդ հայեաց դու ընդ արարչութիւն նորա, զիարդ խառնեալ է ընդ ամենայն ինչ։ Իբրև առ տէր մեր զհացն սակաւ, և յական թօթափել բազմացոյց զնա. զայն ինչ զոր առնեն և շրջեն տասն ամիս վաստակով և աշխատութեամբ, տասն մատունք նորա վաղվաղակի արարին։ Եդ զձեռս ՚ի ներքոյ հացին իբրև զերկիր, և խօսեցաւ ՚ի վերայ նորա իբրև զորոտումն, և զշարժել շրթանց նորա ցանեաց ՚ի վերայ նորա իբրև զանձրև, և շոգի բերանոյ նորա ՚ի տեղ արևու, և պսակեալ կատարեաց սրտմտութեամբ նուրբ ժամուն՝ զոր ինչ ընդ երկար ամենայն առնէ։ Արդ հացն ըզսակաւութիւն իւր մոռանայր, և ՚ի միջոյ սակաւութեան նորա բազմութիւն ծնանէր. զի նմանեսցէ օրհնըչին առաջնոյ՝ զի ասէ. "Աճեցէք և բազմացարուք և լցէք զերկիր". զի նկանքն իբրև ամուլք և անորդիք աճեցին օրհնութեամբք նորա, և բազմացան նշխարքն որ ՚ի նոցանէն ծնան։

Եցոյց դարձեալ զբարութիւն բանիւ իւրոյ առ հրամայեցեալսն, և զերագութիւն պարգևաց իւրոց առառողսն նոցա. այլ ոչ եթէ որչափ կարէր բազմացուցանել՝ և զհացն այնպէս բազմացոյց, այլ որչափ

բաւական էին կերողքն ուտել ։ Արդ արուեստք նորա ոչ եթէ ըստ զօրութե նորա կշռեցան , այլ ըստ քաղցելոց կշռեցան ․ զի եթէ ըստ զօրութիւն նորա կշռէին արուեստքն նորա , չիք ինչ հնար թուել՝ թէ որչափ իցէ. յաղթութի զօրութե նորա ։ Այլ կշռեցան արուեստքն նորա ըստ քաղցութին հազարացն , և յաղթեցին նմա թիւ երկոտասան սակառոյն ։ Ամենայն արուեստագէտք , ցանկուն կարօտելոցն բազմագոյն է քան զզօրուն արուեստագիտացն ․ զի ոչ եթէ որչափ կարօտեալք ցանկանան, այնչափ կարեն առնել և արուեստագէտքն ․ բայց առաւելագոյն էր արարչութիւն նորա քան զկարօտեալսն ։ Եւ զի ասէ ․ "Ամփոփեցէք զնշխարս սեղանոյն , զի մի ինչ ամենևին կորիցէ անտի ,, , զի մի կարծեսցեն զնմանէն եթէ առ աչօք ինչ արար ․ այլ յորժամ պահեսցին նշխարքն մի օր և երկուս , հաւատասցեն եթէ ճշմարտութբ արար , և ոչ է նա տեսիլ ընդունայն ։

Արդ իբրև յագեցան , տեսին եթէ յանապատի անդ կերակրեաց զնոսա , որպէս Մովսէսն աղօթիւք , սկսան աղաղակել և ասել․ "Ճշմարիտ սա է մարգարէն , որ ասացեալ է թէ գալոց է յաշխարհ ,, ․ զՄովսէսին երկրորդեցին , զի ասէ ․ "Մարգարէ յարուսցէ ձեզ տէր , ոչ եթէ դոյզն ոք ; այլ իբրև զիս ,, ․ որ լցուսցէ զձեզ հացիւ յանապատի ։ "Իբրև զիս ,, ասէ ։ Ի վերայ ծովու գնաց , և ամպով երևեցաւ , և զեկեղեցի իւր 'ի թլփատութէ խնայեաց ,. և Յովհաննէս կուսան փոխանակ Յեշուայ որդւոյ Նաւեայ զօրավար այ կացոյց , և նմա ետ զՄարիամ զեկեղեցի իւր , որպէս Մովսէս Յեշուայ զժողովուրդն , զի կատարեսցի այն՝ զի ասէ , "Իբրև զիս ,, ։

"Նա իբրև եգև , ասէ , ընդ երեկս օր , յարեան աշակերտքն և ելին 'ի նաւ , գնացին գալ 'ի Կափառնաում ․ և տէր մեր ել 'ի լեառն կալ յաղօթս առանձինն ,, ։ "Ահաւասիկ , ասէ , 'ի վերայ լերանց ոտք աւետարանչի ,, ։ Ով է սա , ինքն իսկ մեկնէ ․ "Որ աւետարանէ , ասէ , զխաղաղութի ,, ․ ո՞ւմ ․ հեթանոսաց ․ "Խօսեսցի , ասէ , զխաղաղութի ընդ հեթանոսս ,, ։ Արա Յուդա զտօնս տարեկանաց քոց ․ քանզի 'ի ժամանակի անդ տօնին բաղարջակերաց

արար տէր մեր նշան հացին, ասէ մարգարէն. "Արա, Յուդա, զտօն տարեկանաց քոց". զի եկեալ հասեալ է տօն տարեկանի մերոյ։ "Եւ կատարեա զուխտս քո". զի եկն եհաս գառն ճշմարտութեան, և խափանեցան ուխտքն հինք, և կատարեցաւ յիշատակ նոցա։ "Վասն զի ոչ, ասէ, այլ ևս յաւելլաւ նա գործել 'ի քեզ անօրէնութիւն". ո՛վ. իշխանութիւն արքայութեան, կամ քահանայութեան։ Վասն էր ոչ յաւելլու. զի ապականելոց է նա։ "Ամենայն, ասէ, իշխանութիւնն արքայութեան և քահանայութեան կորնչելոց է։

Արդ մինչ դեռ նստէին նոքա 'ի նաւի անդ, և հողմակոծէին 'ի նաւի անդ, և ծովն խռովեալ էր 'ի վերայ նոցա, եկն տէր մեր երևեցաւ նոցա. և նոցա այսպէս թուեցաւ՝ թէ դև իցէ այն՝ որ երևեցաւ նոցա։ Զի հաստատեալ գիտէին նոքա եթէ զծանրութիւն մարմնոյ զգեցեալ էր նա, և վասն այսորիկ կարծէին նոքա՝ եթէ ծանրութիւն մարմնոյ դժուարին է 'ի վերայ ջուրց գնալ։ Եւ եթէ այս այսպէս իցէ, ոչ անմտութեամբ զարհուրեցան։ Ապա եթէ որպէս ասես դու, ո՛վ Մարկիոն, եթէ Յիսուս մարմին չէր զգեցեալ, զարմանալ նոցա վասն գնացիցն նորա 'ի վերայ ջուրց՝ չէր արժան. զի չէր դժուարին հոգոյն 'ի վերայ ջուրց գնալ։ Արդ վասն որո՞յ զարհուրեցան նոքա. եթէ առանց մարմնոյ գիտէին զնա, անմտութեամբ զարհուրեցան և հարին զաղաղակ. եթէ մարմնաւոր էր, բարւոք զարհուրեցան, զի իբրև նորա տեսին, մարմնաւոր՝ զի գնայր 'ի վերայ ալեաց ծովուն և ոչ ընկղմէր։ Եթէ վասն զի գիշերն էր՝ չէր[1] դժուարին հոգևորին, որ իբրև կամեցաւ՝ 'ի լերին անդ իբրև զարեգակն երևեցաւ։ Եւ քանզի գիտաց և տէր մեր եթէ բարւոք զարհուրեցան, քաջալերեաց զնոսա և ասէ. "Ես եմ, ասէ, մի՛ երկնչիք". այս ինքն ես եմ այն մարմնաւորն՝ զոր դուքն իսկ գիտէք։

Իսկ Շմաւոն հասու եղև եթէ վասն մարմնոյ իւրոյ ասաց՝ թէ ես եմ, պատասխանի ետ նմա և ասէ.

1 Յօրինակին չար։

եթէ այդ այդպէս իցէ, և ես մարմին զգեցեալ եմ. և եթէ գնացից և ես 'ի վերայ ջուրց, ապա գիտեմ թէ և դու նովին մարմնով՝ զոր ես գիտեմ զքեզ՝ գնացեր ։ Եւ իբրև էջ գնալ, և սկսաւ ընկղմել, ոչ զլացաւ զնա. զի ոչ ասաց նմա անհաւատ, այլ թերահաւատ ։ Եւ եբարձ կալաւ ծովն 'ի վեր զտէր մեր ։ Վասն Ճանապարհին՝ որ հնազանդեաց առաքելոց իւրոց յաշխարհս, ծով յայտ արար. և անդ կատարեցաւ այն՝ զի ասէ. "Դու տիրես զօրութեանց ծովու, և զխռովութիւն ալեաց նորա դու ցածուցանես ։

"Իբրև եկն, ասէ, տէր մեր և ել 'ի նաւ Շմաւոնիւ հանդերձ ; և հանդարտեալ դադարեցին հողմքն ", ։ Դսրովեալ լիցի և Արիանոսն, զի հակառակ լինի ծննդեանն, բանիւ՝ որ ասացին որ 'ի նաւի անդ էին. "Եկին, ասէ, մատեան առաջի տեառն մերոյ, սկսան երկիր պագանել նմա և ասել. արդարև որդի աստուծոյ ես դու ". այն որ գրեալն էր վասն նորա. "Տեսին, ասէ, զքեզ ջուրք և երկեան, և խորք խռովեցան, և շաւեղք քո 'ի ջուրս բազումս, և հետք քո ոչ եւս երևի ", ։ Եւ խոստովան եղեն բանիւ իւրեանց՝ թէ արդարև որդի է նա աստուծոյ, այն՝ որ այս ամենայն վասն նորա եղեն խօսեցեալ ։

"Ո՜վ ինչ, ասեն, նշանս արասցես, զի տեսցուք և հաւատասցուք 'ի քեզ ", ։ Եւ ահաւանիկ բազում արուեստք նորա առաջի նոցա ծագեալ կային. և քանզի միում ցանկացեալ էին, անարգեցին նոքա զամենայն՝ որ միանգամ արար նա. իբրև զի թէ ոչ լուր համբաւոյ նորա կաթեաց յականջս նոցա երբէք ։ Իսկ ո՞ր իցէ այն զոր կամէինն. բայց այն՝ զի ասացինն իսկ նմա յայտնապէս. "Հարքն մեր, ասեն, մանանայ կերան յանապատին, որպէս և գրեալ է. հաց երկնից ետ նոցա ուտել ", ։ Որպէս ոք զի ասէ. եթէ առնես մեզ այնպիսի նշան. ապա թէ ոչ՝ և տեսեալ չէ իսկ մեր զքեզ. զի Մովսէս այսպէս ասաց մեզ՝ եթէ "Մարգարէ իբրև զիս յարուսցէ ձեզ ", ։ Եւ իբրև ետես զնոսա՝ եթէ Մովսէսիւ պարծին նոքա, և զնովաւ արհամարհեն, պահեաց զայս. ոչ եթէ զի ոչ կարէր տալ նոցա, այլ գիտէր թէ ոչ ինչ օգուտ է նոցա. զի ահաւանիկ արար նոցա Մով-

սէս, և ինչ ոչ օգտեցան. բայց զի դարձան յետս յուխտէ նորա, և ապականեցին զգործս իւրեանց։

Արդ ինքն տէր մեր ոչ եթէ իբրև անարգէր զպարգևս առաքչին իւրոյ, այլ իբրև դարովէր նա զընդունելումն նոցա. զի գիտէր նա թէ որպիսի կատարած առ դառնացութիւն նոցա, ասէ ցնոսա. “Այս է հաց՝ որ իջեալ է յերկնից, զի կերիցէ ոք 'ի նմանէն և մեռցի՞„. ոչ՝ ասէ. որ է այն՝ որ ամենայն աշխարհի տուեալ լինի. այլ Մովսէսին ոչ էր կատարեալ, վասն այնորիկ նոցա միայն տուաւ։ Եւ զի յայտ արասցէ վասն պարգևաց իւրոց՝ թէ վերագոյն են քան զՄովսիսին, և կատարեալ կոչումն հեթանոսաց քան զխստապարանոց ժողովրդեանն, ասէ. “Ամենայն որ կերիցէ 'ի հացէ աստի յայսմանէ, կեցցէ յաւիտեան. զի հաց ա̃յ էջ յերկնից, և ամենայն աշխարհի տուեալ լինի„։ “Ոչ ոք, ասէ, կարէ գալ առ իս, եթէ ոչ Հայր իմ՝ որ զիս առաքեաց՝ ձգեսցէ զնա առ ինքն„. որպէս զի զարթիցէ 'ի նոսա այս ուսումն՝ տուեալ 'ի նոսա յա̃յ։ Եւ ո՞ւր այն՝ զի ասէ. “Ես եմ Ճանապարհ. և դուռն ոչխարացն„։ Եւ երկու՝ զի կատարեսցին իւրաքանչիւր 'ի նոցանէ՝ թէ ա̃ծ ձգեաց զնա, և լիցին գրաւեալ այսուիկ։ Զի այնոքիկ որ եկին առ նա, յանուն հօր յորջորջեցան; և որք կորեան՝ յանուն սատանայի. և ոչ ոք 'ի նոցանէ կորեաւ, բայց որդին կորստեան. որպէս ժողովուրդն որ մեղաւ՝ յանուն Մովսէսի կոչեցաւ, զի զՄովսիսէ կախեալ կայր։ Որ բամբասէ զհայր իւր կամ զմայր իւր, մահու մեռցի. և որ հայհոյէ զա̃ծ, խաչեսցի. և ընդ պատիւ հարց իբրև զիւրն եդ, որպէս և մարգարէն հաւասարեաց. “Եթէ հայր եմ ես, ասէ, ո՞ւր է պատիւ իմ. և եթէ տէր եմ, ո՞ւր է երկեղ իմ„։ Նա և տէր մեր ստուգեաց զնա. ասէ. “Ա̃ծ ասաց. պատուեա դու զհայր քո և զմայր. և դուք ասէք իւրաքանչիւր հօր և մօր ձերոյ. աղէ դու, պատարագ է զոր ինչ յինէն օգտեսցիս„։ Եւ այս որդի, որ այսպիսի օրէնս եդիք սմա, ոչ այնուհետև փոյթ ինչ առնէ նա պատուել զհայր իւր և մայր։ Թերևս վասն նորին իսկ փարիսեցոյն՝ որ գրգռեաց 'ի նա զընկերսն իւր, թէ և սմա ևս՝ որ կոչեցաս զիս 'ի Ճաշ՝ ոչ առ-

նում ակն վասն խորտկացս սորա, որպէս և դուքդ. զի և նա ոչ զհայր և ոչ զմայր իւր պատուէր։ Եւ զի ասէ. “Ամենայն տունկ՝ որ ոչ 'ի Հօրէ իմմէ յերկնաւորէ տնկեալ է, արմատաքի խլեսցի„, վասն պատուիրանացն ծերոցն նոցա։

“Աղաղակէր և գայր զկնի նորա կինն և ասէր. ողորմեաց ինձ. և նա բնաւ ամենևին ոչ ետ նմա պատասխանի„։ Արդ լռութիւն տեառն մերոյ աղաղակաւ եղ, և ծնոյց բերան տաճկասորոյն։ Անարգեաց զնա լռութբ, և նա ոչ մնաց. և թշնամանեաց զնա խօսիւքն, և նա ոչ արգելաւ. և յարգեաց զԻսրայէլ թշնամանող, և նա ոչ նախանձեցաւ։ Դարձաւ կինն և փոքրկացոյց զանձն իւր, և մեծացոյց զԻսրայէլ. յայնմիկ՝ զի ասէ. “Եւ շունք 'ի փշրանաց սեղանոյ տեառն իւրեանց կերակրին„. որպէս զի եղիցին Հրեայք տեարք հեթանոսաց։ Մատեան աշակերտքն և սկսան աղաչել և խնդրել 'ի նմանէ, զի արձակեսցէ զնա։ Ետ նոցա փորձ զժտութեան սիրոյն հեթանոսաց. կոչեաց զնոսա շունս, և զԻսրայէլ որդիս։ Զսէրն և զորբութի ստացան հեթանոսք առաւելեալք 'ի շունս, և զկատաղութի շանց ստացան Իսրայէլացիքն առաւելեալք յորդիս։ “Ոչ է, ասէ, բարիոք առնուլ զհաց մանկանց և արկանել շանց„։ Ելից արկ 'ի յականջս նորա զանփոյթ մեծ իրս, զի հաւատքն նորա յայտնեսցին։ Լուր դու զբարբառ նորա. “Այո տէր„. և ոչ ամաչեաց վասն օգտութե իւրոյ յանուն շանցն։ Վասն այսորիկ “Քեզ ասեմ, կին դու. մեծ ոմն են հաւատք քո„։ Եւ զի անուանեաց զհեթանոսս 'ի շունս, առաքեաց զպարգևսն իւր 'ի հաց։

Արդ զի արար նա զարուեստս 'ի մէջ Իսրայէլի, զի ուսուսցէ նոցա եթէ այն՝ որ հակառակ լինի նմա, ընդդէմ զօրութեանն բարձրելոյ կայ հակառակ. զի ինքն իսկ Իսրայէլ՝ որ անուանեալ Յեշովայ որդոյ Նաւեայ, յանձն առ յայնմ ժամանակի, իբրև եկն եհաս տէր անուանն՝ ոչ ծանեան զնա։ Իսկ զաւակն Քանանու 'ի նշմարէ անդի որ յայնմ ժամանակի տեսին 'ի վերայ Յեշովայ որդոյ Նաւեայ, ծանեան զճշմարիտ կերպարանսն նկարօք իւրովք։ Եւ իբրև էլ այսս

այս պեղծ 'ի զաւակէ անտի Քանանու, այն՝ որ 'ի նմա-նութէ. աստի ծանեաւ զճշմարտութին, դարձաւ ե-մուտ այսն պեղծ յիսրայէլ, այն՝ որ ժամանակս բա-զումս կրթեցաւ նմանութե ճշմարտութեն: Աղե-կարծ եղև նա նոցա յորժամ եկն տէրն նմանու-թեց: Այլ սոյն իսկ այսս այս զգեցեալ էր զնոսա 'ի ժամանակին՝ իբրև եկին նոքա 'ի դիտելոյ անդի զեր-կիրն. և յարեան կուտեցան մոլեգնեցան 'ի վերայ Մովսէսի քարկոծել զնա: Արար խաղաղութիւն, և ցածոյց զկատաղութի նոցա:

Նոյնս այս որ կոտորեաց յերեսաց նոցա զհսկայա-զունսն, և գնաց չոգաւ եմուտ այսս այս 'ի քանա-նացիսն. և եկին նոքա տալ պատերազմ ընդ Յեսուայ որդւոյ Նաւեայ: Այլ իբրև եկն Յիսուս, ճշմարիտ հաւատովքն քանանացոց հալածեաց զայսն յաղթ-կանէ անտի. զի նա ինքն է խորհուրդ ազգին քանա-նացոց: Եւ ելին նոքա ընդ առաջ այսր անուան պէս-պէս երկրպագութիք: Եւ եթէ հայիս դու ընդ իս-րայէլացիսն այսօր, գտանես՝ զի ամենայն ցասումն և սրտմտութի և բարկութի հեռ և նախանձ հեթա-նոսաց 'ի նոսա բնակեալ են:

Այլ մի լի բովանդակ երթար դու, ով լսող, զկնի ճառին այսորին և եւթն ընկերաց իւրոց. այլ զզօրու-թի նմանութեն կամ զզօրութիւն առակին լեր դու առնուլ առողջութիւն. և մի լինիր դու թարթա-փեալ ընդ ամենայն կողմանս նմանութեն, կամ ընդ ամենայն հանդերձս առակին: Զի ուր բազմութիւն առակին է հանդերձ ժամանակեան միոյ լինի բա-նին, և մերկանայ զաւելորդն, և երևի ինքն ճշմար-տութե իւրով: Եւ զոր օրինակ քանանացիքն որ մարտ պատերազմի եդին ընդդէմ անուանս այսորիկ՝ սպա-ռեցան ելին յաշխարհէ անտի իւրեանց, սոյնպէս և իսրայէլացիքն խլեցան ելին 'ի բնակութենէ անտի իւրեանց:

Տէր մեր իբրև որսորդ առ աղբիւրն ջուր եկն խնդ-րեաց: Ջուր, զի տացէ ջուր 'ի պատճառս ջրոյ: Եւ խնդրեաց զըմպելի իբրև ծարաւի, զի բացցէ դուռն արբուցանել զծարաւութին: Խնդրեաց 'ի նմանէ, զի ուսուսցէ զնա՝ զի դարձցի նա և խնդրեսցէ 'ի նմա-

նէն ։ Ոչ գարշեցաւ մեծատունն խնդրել իբրև զկարօտեալ, զի կարօտութիւն ուսուցէ խնդրութիւն. և ոչ զանգիտեաց նա յամօթոյ խօսել ընդ կնոջն միայնոյ, զի ուսուսցէ մեզ՝ թէ այն որ 'ի ճշմարտութե հաստատուն կայ, մի խռովեսցի ։ “Զարմացան, ասէ, զի կայր և խօսէր ընդ կնոջն„ ։ Արձակեաց զաշակերտս առ յինքենէ, զի մի հալածեսցեն զորսն նորա ։ Արկ կուտ աղաւնոյն, զի նովաւ որսասցէն զամենայն երամն ։ Եհարց զնա յետս ընդդէմ, զի խոստովանեսցի նա ուղեղ ։ “Տուր ինձ, ասէ, ջուր ըմպել„. ահա սկիզբն խառնելոյ ։ Խնդրեաց ջուր, և խոստացաւ ջուր կենդանութե. խնդրեաց, և մնաց 'ի խնդրելոյ անտի իւրմէ, զոր օրինակ և նա 'ի սափորոյ անտի իւրմէ. մնացին պատճառք, զի եկն եհաս ճշմարտութիւնն, զի և վասն նորա էին պատճառքն ։

“Տուր ինձ, ասէ, ջուր ըմպելոյ ։ Ասէ ցնա կինն. դու աւազակ հրեայ ոմն ես ։ Ասէ ցնա. եթէ գիտէիր դու„. և յայտ առնէր նմա՝ եթէ ոչ գիտէր, այն՝ որ յանգիտութէ մոլորեալն էր. այլ ուղղեաց զնա 'ի գիտութի ճշմարտութե ։ Այլ կամեցաւ նա առ սակաւ սակաւ բառնալ զքօղ առագաստին 'ի սրտէ անտի նորա. զի եթէ էր յայտնեալ նորա զառաջինն՝ եթէ ես եմ Քրիստոս, զազրայր նա 'ի նմանէ, և ոչ աշակերտէր նա 'ի յուսումն վարդապետութե նորա ։ “Եթէ գիտէիր դու, ասէ, զայն՝ որ ասացն քեզ, եթէ տուր ինձ ջուր այդի ըմպել, դու խնդրէիր 'ի նմանէն ։ Ասէ ցնա կինն. դու քանզի դոյլ ոչ ունիս, և ջրհորս խոր է ։ Ասէ ցնա. իմ ջուրք յերկնից իջանեն„ ։ Ուսումն է նա բարձանց՝ ըմպելի երկնաւոր. և որ միանգամ ըմպեն անտի, և այլ ոչ ևս ծարաւանան ։ Մի է մկրտութի հաւատացելոց ։ “Որ ըմպէ 'ի ջրոյ աստի յայսմանէ, զոր ես տայցեմ նմա, մի ծարաւեսցէ նա մինչև յաւիտեան ։ Ասէ ցնա կինն. տէր, տուր ինձ, ասէ, 'ի ջրոյ այդի յայդմանէ, զի մի ծարաւեցայց և մի եկից այլ յայս ջրհոր հանել ջուր 'ի սմանէ„ ։

“Ասէ ցնա. երթ դու կոչեա առ իս զայր քո„ ։ Բաց նմա դուռն յայտնել նմա զծածկեալս իբրև զմար-

գարէ։ «Հինգ, ասէ, այր փոխեալ է քո, և որ արդն ունիս՝ չէ քո այր։ Ասէ ցնա կինն. տէր, ինձ այսպէս թուիս՝ թէ մարգարէ ոմն իցես դու»։ Յայսրում վայրի հան վերացոյց զնա յայլ աշտիճան։ «Հարքն մեր, ասէ, 'ի լերինս յայսմիկ երկիր պագին։ Ասէ ցնա. ոչ յայսմ լերին, և ոչ յԵրուսաղէմ. այլ երկրպագուք ճշմարիտ երկիր պագցեն հոգով և ճշմարտութեամբ»։ Ի կատարումն կրթէր զնա։ Եւ զի յայտ արասցէ՝ եթէ ոչ է նա երկիր լաւացող, 'ի ձեռն նորա ցոյց՝ զոր մատոյց նմա վկայ, եթէ սերմանիքն նորա հարիւրաւորք հնձեցան։ «Ահաւանիկ, ասէ, Քրիստոս գայ. և յորժամ եկեսցէ նա, զամենայն ինչ տացէ մեզ։ Ասէ ցնա. ես եմ՝ որ խօսիմս ընդ քեզ»։ Եթէ դու ես թագաւոր, զիա՞րդ խնդրէիր յինէն ջուր։ Արդ զառաջինն ոչ ծանոյց նմա զանձն իւր. այլ նախ հրեայ, ապա մարգարէ, և ապա Քրիստոս. յաշտիճանէ յաշտիճան կարգեաց կացոյց զնա 'ի վերայ գլխոյն աշտիճանաց։ Զառաջինն ետես զնա իբրև զայր ծարաւի, ապա հրեայ, ապա մարգարէ, ապա ա̃ծ. իբրև զայր ծարաւի հաւանեցոյց, և իբրև 'ի հրէէ զազրացաւ, և իբրև զգիտուն հարց, և իբրև 'ի մարգարէէ յանդիմանեցաւ, և իբրև Քրիստոսի երկիր եպագ։

Արդ քանզի է անարգ առնուլ կնութե̃ զկին շամարիտ, զի հայեցան նոքա ընդ Յուդայ, զի արգել նա զՇէղովմ 'ի Թամարայ, յաղթահարեցաւ կին և շնացաւ, յայնմիկ՝ զի ասէ. «Եւ որ արդն ունիս, չէ քո այր»։ Եւ զի խոստովան եղև նա զմեղմն իւր, հաւատացին նմա. զի սովոր իսկ են լսելիք մեր հանդչել 'ի վերայ չարին. մանաւանդ զի տեսին նոքա դարձեալ՝ եթէ ինքեանք ոչ գիտացին զայն ինչ զոր յայտնեաց նա նմա, ածին զմտաւ իբրև իմաստունք. ասեն. եթէ Քրիստոս իցէ նա, ոչ եթէ այսու միայն գոյ նորա ցուցանել զառաքինութիւնն իւր, այլ բազում իրօք. որպէս և բազում իսկ իրօք առաքինացաւ 'ի մէջ նոցա։ Իբրև տեսին զարուեստն և զյայտնութի̃ւս մեծամեծս սքանչելեաց կնոջն շամարտացոյ, հատին 'ի բաց զպատճառսն, զի մի՛ լիցի նոցա 'ի նախատինս 'ի Հրէից անտի։ Եթէ 'ի վերայ յայտնու-

թեն, ասեն, կնոջն չնացելոյ եղեալ է աւանիկ հիմն հաւատոյ նոցա. վասն այսորիկ իսկ ասեն ցկինն. ոչ այսուհետև, ասեն, 'ի քոց բանից անտի հաւատամք մեք 'ի սա, այլ վասն զի լուաք մեք զվարդապետութի̃ սորա, և տեսաքս զգործս սորա զի մ̃ծ է. գիտացաք եթէ արդարեւ սա իսկ է Ճշմարիտ Քրիստոսն։ Նա և իրաւունք իսկ էին գիտութեանն մերոյ լինել հիմն հաւատոցն մերոց։

Եւ զի ասէ. "Հարքն մեր 'ի լերինս յայսմիկ երկիր պագին", վասն Յակոբու և որդոց նորա ասաց. զի երկիր պագանէին 'ի լեառն Սիւքեմ, կամ 'ի Բեթէլ, կամ 'ի լեառն Սամգրիազիմ։ Եւ զի ասէ. "Ոչ յայսմ լերին, և ոչ յԵրուսաղէմ երկրպագցեն", այն իսկ է զի ասէն. "Յամենայն տեղիս ուր և յիշեսցեն զանուն իմ"։ Եւ դարձեալ քանզի ասաց՝ բայ "Դուք ասէք՝ եթէ յԵրուսաղէմ աւեթ է տեղի երկրպագութե̃, և հարք մեր 'ի լերինս յայսմիկ երկիր պագին". և զի ցուցցէ նմա՝ եթէ Աստուած ոչ մարմնապէս է, ասէ. "Արդարեւ ասեմ քեզ. ոչ յայսմ լերին և ոչ յԵրուսաղէմ երկիր պագցեն. այլ երկրպագուք Ճշմարիտ երկիր պագանիցեն Հօր 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ Ճշմարտութբ̃"։ "Ոչ, ասէ, յայսմ լերին, և ոչ յԵրուսաղէմ երկիր պագցեն". յայտ արար այսուիկ՝ եթէ ընդ ամենայն երկիր լինելոց է երկրպագութի 'ի հատանել թզենոյ, որ խափանիչ է երկրպագութե̃։

"Եթէ կամիս, ասէ, տէր՝ կարող ես դու զիս բժշկել"։ Բորոտին այսպէս թուեցաւ, եթէ որպէս Եղիշայն՝ պահէ նա զօրէնսն. զի ոչ ել նա առ Նեեմանն. լոյծ զայս յայտնիկ՝ զի մերձեցաւ առ նա։ Զի յայտ արասցէ՝ եթէ օրէնսդրչին օրէնք ինչ ոչ մեղանչեն. կամ կարծիս ինչ կարծեաց զնմանէ, եթէ օտար իցէ նա օրինացն՝ բժշկեաց զնա ծածկապէս և յայտնապէս, թէ գուցէ այն՝ որ բժշկեցաւն մարմնապէս, հարեալ լիցին հոգեպէս։ "Երթ դու ցոյց զանձն քո". այս ինքն վասն քահանայիցն. զի երկեաւ նա մերձեալ առ նա, զի մի պղծեսցէ զնա. այլ մերձեցաւ առ նա ինքն, զի ցուցցէ նմա՝ եթէ ոչ միայն ոչ պղծի նա, այլ և 'ի պղծոց փախչի 'ի նը-

մանէն պղծութիւն իւր սաստելովն նորա ։ Զայս ինչ զոր եցոյց տէր մեր առն բորոտի, փորձելովն գործոյն զնոյն նմանեցոյց ։ Յաւալջ քան զփորձելն հաւատովքն` գիտէր զնա . իսկ փորձն անմտացն է ։ Արդ բարկանայր տէր մեր 'ի վերայ երկոցունց . եթէ ոչ մերձեսցի նա 'ի բորոտն, ստուգեալ լինէր այնու կարծիքն մտաց իւրոց` եթէ երկեաւ նա 'ի բորոտուէ անտի ։ Եւ եթէ մերձեսցի, ընթանայր միւս ևս այլ 'ի խորհուրդս նորա` եթէ օտար է նա օրինացն ։ Վասն այսորիկ ձգեալ ձեռին իւրոյ` ցոյց զմ̃ծութիւն իւր, և հալածեաց զպղծութիւնն, և բանիւ բերանոյ իւրոյ ցոյց զընտրութիւն իւր, և հալածեաց զօտարութիւն ։ Կամ վասն զի հրեայ էր նա, և լուեալ էր նորա 'ի քահանայից անտի . զի ասեն [1] Յիսուս հակառակ է օրինացն, և թշնամի է գրոց . վասն այսորիկ թուեցաւ նմա թէ ոչ կամի նա ընդ բժշկութիւն Հրէիցն ։

“Եթէ կամիս, ասէ, կարող ես դու„ ։ Դէմք խնդրողացն և պատգամք խիթացելոց . զի կարող ես դու, ասէ, գիտեմ ես . այլ եթէ կամիս դու, չեմ տեղեակ ։ Արդ տէր մեր զերկոսին ցոյց նմա փոխանակ երկուց . սաստ 'ի բարկանալ իւրում, և ողորմութի 'ի բժշկելն իւրում ։ Ընդդէմ այսորիկ որ ասաց` եթէ կամիս, բարկացաւ . և ընդդէմ այնորիկ` կարող ես դու, բժշկեցաւ . զի սրբեսցէ զանձն առն բորոտի 'ի կարծեաց, որպէս և զմարմին նորա 'ի պղծութէ ։ Ուսուցանէ նմա` թէ երթ առ եղծեալսըն` որ ոչ ուսուցին զքեզ, և մատո պատարագ փոխանակ սրբութե քո, որպէս ուսոյց քեզ Մովսէս ։ Եւ զի ասէ` մի ումեք, զի մի կարծեսցեն քահանայքն` եթէ վասն զի տրտնջեցին, ըստ մտի եղև նոցա, և մատոյց պատարագ ։ Լուռ լեր, ասէ, և յորժամ երթաս առ նոսա, և հարցանիցեն զքեզ եթէ որպէս բժշկեցար, ուսանին եթէ փոյթ է նմա վասն պատուիրանացն Մովսէսի, զի մի իցեն արհամարհեալ ։

“Եթէ կամիս, ասէ, կարող ես դու զիս սրբել„ ։ Հայեցաւ այրն եթէ ոչ զամենայն մեռեալս կեցու-

[1] Յօրինակին այսպէս էն ։

ցանէ հանդերձ ամենայն արատովք. զի ոչ բժշկեաց, այնուհետեւ կարծեաց նա՝ թէ զոր կամի բժշկէ, ասէ ցնա. «Տէր, եթէ կամիս, կարող ես դու սրբել զիս»: Վասն այնորիկ ցասմամբ ցոյց՝ եթէ ոչ ակնառութ̃բ ինչ բժշկէ նա. Եւ յայնմիկ՝ զի հաւատաց նա «Եթէ կամիս, ասէ, կարող ես դու», ցոյց եթէ ոչ է նա զլացող հաւատոց: Եւ դարձեալ ետես ըզքահանայսն, զի թէպէտ վաստակէին պէսպէս հրամանօք որ ասացեալ յօրէնս վասն բորոտուէ, սակայն ոչ բժշկէին, թեթեւացաւ յաչս նորա[1] պաշտօն օրինացն. վասն այսորիկ ասէ. «Դու եթէ կամիս, կարող ես զիս սրբել»: Վասն այսորիկ կարծեաց մտացըն ցասեաւ նա. եւ երկու՝ եթէ երթ դու ցոյց զանձն քո քահանայիցն, եւ կատարեա զօրէնսն զոր արհամարհեսն»: Բայց դարձեալ զի կարծեաց նա զայս վասն նորա. զի ետես զի լուծանէր նա ինչ ինչ յօրինաց անտի: Դարձեալ ասի՝ եթէ ոչ նմա ցասեաւ նա, այլ բորոտութէ նորա:

«Եթէ կամիս, ասէ, կարող ես դու զիս բժշկել: Եւ ձգեաց զձեռն»: Եւ այս զոր ձգեաց զձեռն իւր, լուծանել օրինաց է ասելն. զի ըստ օրինաց՝ ամենայն որ միանգամ մերձենայ 'ի բորոտ՝ պղծի նա: Այլ նա ոչ եթէ 'ի բորոտն մերձեցաւ, այլ զաջն իւր լի բժշկութ̃բ կարկառ նմա: Բայց սակայն եթէ հակառակ ցոյց զանձն իւր օրինացն, երկրորդեսցուք զընթերցուածն՝ որ զկնին է: Եցոյց եթէ բարիոք է բընութ̃ի, յայնմիկ՝ զի ելից նա զպակասութ̃ին նորա. Եւ յայսմիկ՝ զի առաքեաց զնա առ քահանայսն, յայսըմ վայրի զքահանայութ̃ին հաստատեաց նա: Հրամայեաց նմա դարձեալ, զի մատուսցէ վասն սրբութէ իւրոյ պատարագ. ո՛չ ահա զօրէնսն ստուգեաց նա, որպէս եւ հրամայեաց Մովսէս: Զի բազում հրամանս առեալ էր նոցա վասն բորոտութեան, եւ շահել ինչ ոչ կարացին. այլ եկն Քրիստոս, եւ եկն բժշկութիւն բանիւք, եւ ջնջեաց զբազում համարմն զոր համարէին օրէնք լինել բորոտութէն: «Երթ, ասէ, դու առ քահանայսն վասն վկայութէ նոցա».

1 Յօրինակին 'ի լուսանցսն բերոցին:

զի հրամայեալ է, ասէ, յառաջ քան զորբութիւնն հայեսցին ընդ բորոտութին, և յետ բորոտութենն եղիցին վկայք ։ Վասն պատուիրանացն հին օրինացն Մովսէսի ասաց, և զնոսա ած Քրիստոս վկայ վարդապետութե իւրոյ, որպէս հրամայեաց Մովսէս. զի մի՛ խափանեսցին 'ի նմանէ, այլ քարոզք ևս եղիցին նորա առաջի ժողովրդեանն ։

## ԳԼՈՒԽ ԺԳ

«Էր անդ, ասէ, այր մի՝ որոյ երեսուն և ութ ամ էր հիւանդութե նորա. ասէ ցնա տէր մեր. կամիս՝ եթէ ողջ լիցիս». ապա ոչ կամէր ։ «Ասէ ցնա հիւանդն. ոչ գոյ իմ պահակ, զի յորժամ ջուրքն յուզին՝ առցէ իջուսցէ զիս» ։ Զայլ հարց զնա, և նա զայլ պատասխանի ետ նմա. «Ոչ գոյ իմ, ասէ, պահակ՝ որ իջուցանէ զիս. այլ մինչև ես անդ դանդաղիմ՝ թէ շարեցայց, այլ ևս վաղագոյն իջանէ քան զիս». և զերեսուն և զութ ամ ոչ գտաւ նմա ոք ։ Ցամօթ լիցին Հրեայքն՝ որ ոչ հաւատան եթէ մկրտութիւն զմեղս թողու. զի եթէ հաւատան նոքա եթէ հրեշտակն ջուրքն Շիլուհեայ բժշկէր զհիւանդսն, ո՞րչափ ևս առաւել տէր հրեշտակացն սպիտակացուցանէ զապխտակուցս մկրտութն ։ Եւ զի կարծեաց նա՝ եթէ ջուրքքն միայն լինի օգտութի, ասէ ցնա. «Արի առ զմահիճս քո և գնա» ։ Մեղաւոր էր և անհաւատ. և վկայէ այն՝ զի ասէ. «Ցայսմ հետէ մի՛ մեղանչէր» ։ Եմուտ ստուգութին խնդրել 'ի փողոցսն հաւատս, և ոչ եգիտ. բժշկեաց ողորմութին զայրն, զի մի՛ գնասցեն անտի շնորհքն դատարկ ։

«Յոտն կաց, ասէ, առ զմահիճս քո և գնա 'ի տուն քո». և ո՞չ շատ էր այս՝ թէ արի գնա. ո՞չ ահա զքանչելիք էին և այս, եթէ այն՝ որ ոչն կարէր շրջշրջել յանկողնի իւրում, յառնելն վաղվաղակի և գնալ ։ Այլ զի ցուցցէ եթէ զկատարեալ առողջութին ետ նմա, և զմահիճսն ետ առնուլ ընդ անձինն ։ Եւ ոչ եթէ որպէս հիւանդք, զի առ սակաւ սակաւ դառնան. «Յոտն կաց, ասէ, առ զմահիճս քո և

գնա„ ։ Զի թէպէտ և նա լռեաց, մահիճք նորա աղաղակեցին. բայց Հրեայքն իբրև տեսին, ասեն ցնա. "Ո՞վ ասաց քեզ՝ թէ առ զմահիճս քո„. և թողին, ասէ, նոքա հարցանել թէ ով բժշկեաց զքեզ, ասեն. "Ո՞վ հրամայեաց քեզ առնուլ զմահիճսն ընդ անձին 'ի յաւուր շաբաթու„ ։ Ո՛վ կոյրք անմիտք և խուլք անզգայք, զի՞ է զի զմին թողէք, և զմիւսն հարցէք ։ Եւ քանզի նոքա կոյրաբար հարցին, սակայն այն որ բժշկեցաւն՝ լուսաւորաբար ետ նոցա զպատասխանին, զի ջատագով էր նա ճարտար լուսաւոր՝ որ առաքեցաւ 'ի բժշկէ անտի իմաստնոյ վասն ուղղութեան թիւրոցն ։ "Ո՛վ, ասեն, հրամեաց քեզ առնուլ զմահիճս քո ընդ անձին„ ։

Եւ զի կամեցան նոքա ծածկել զսքանչելիսն բժշկութեան նորա, և պատուհասել զայն՝ որ առ զմահիճսն իւր ընդ անձին, յայտնապէս քարոզեաց զբժշկութիւն նորա, և կշտամբեալ յանդիմանեաց զուրացութիւն նոցա ։ Ասէ ցնոսա, ոչ եթէ զայն՝ զոր կամէին լսել, այլ զայն՝ զոր խիթային հաւատալ. "Այն, ասէ, որ բժշկեաց զիս, նա ասաց ցիս. արի առ զմահիճս քո և գնա ։ Ասեն ցնա. իսկ ո՞վ իցէ նա ։ Ասէ ոչ գիտեմ„. քանզի Յիսուս իբրև ետես զամբոխն, խոյս ետ 'ի տեղւոջէ անտի. և յետ ժամանակեան միոյ ետես զնա և ասէ ցնա. "Ողջացար աւադիկ, յայսմ հետէ մի՛ մեղանչեր„, գուցէ այլ ոք պիտոյ լինիցի քեզ. ընդդէմ այնր՝ զի ասաց. "Բայց ոչ գոյ ոք իմ„ ։ Եւ ապա գնաց այրն պատմեաց Հրէիցն, եթէ Յիսուս էր այն՝ որ բժշկեացն զիս ։ Եւ իբրև պատուհասէին զնա թէ ընդէր բժշկեաց յաւուր շաբաթու, ասէ ցնոսա. "Հայր իմ մինչև ցայսօր գործ գործէ, վասն այսորիկ և ես գործեմ„ ։ Բայց Հրեայք վասն այսորիկ հալածէին զփրկիչն, ոչ միայն զի բժշկէրն նա 'ի յաւուր շաբաթու, այլ զի և հայր իւր կոչէր զա̃ծ, և զանձն իւր հաւասար առնէր ա̃յ ։

Արդ 'ի միտ առ դու. զի ոչ արար նա պատասխանի՝ թէ ոչ լուծի զնա, այլ լուծի զնա, որպէս հայրն իմ յերկինս ։ "Հայր իմ, ասէ, գործ գործէ, և ես գործեմ„ ։ Զի եթէ գործք և արարածք և հրեշ-

տակք և լուսաւորք և ցօղք և անձրևք և աղբիւրք և գետք ոչ խափանին 'ի յաւուր շաբաթու, ոչ հրեշտակըք արգելեալ լինին 'ի սպասուէ պաշտաման իւրեանց յաւուր շաբաթու, և ոչ երկինք 'ի ցօղոյ և յանձրևաց, ոչ լուսաւորք 'ի գնացից իւրեանց, և ոչ երկիր 'ի պտղոյ, և ոչ մարդիկ 'ի զոգի առնլոյ, և 'ի ծննդոց որդոց. այլ ծնանին 'ի յաւուր շաբաթու և չիք պատուիրան, և թլփատին յաւուր ութերորդի, և բարձեալ են օրէնք հանդերձ այլովք՝ որ անթիւ են. և եթէ արարածք այսպէս, ո՞րչափ ևս արարիչն. վասն այսորիկ “Տէր է շաբաթու որդի մարդոյ”։

Իբրու 'ի միւս վայրի գտանեմք մեք 'ի ժամանակին, իբրև պատուհասէին նոքա զաշակերտսն նորա վասն զհասկսն փշրելոյ. ասէ ցնոսա. “Ո՞չ իցէ երբէք ընթերցեալ ձեր, ասէ, զինչ արարն Դաւիթ, զիարդ եկեր նա զհացն պատարագաց. զի ոչ էր պարտ նմա ուտել, և ոչ որ ընդ նմայն էին”։ Արդ խելամուտ լեր մտաց բանիցս, և տես զզօրութիւն բանիցս՝ որ ծածկեալ է 'ի նոսա. “Հալածէին զնա, ասէ, զի զանձն իւր հաւասար առնէր այ”։ Զի 'ի ժամանակին իբրև պատուհասէին զաշակերտս նորա, ած նոցա վկայութի զԴաւթայ, այն՝ որ թէպէտ և մարգարէ էր, թագաւոր և արդար էր, սակայն մարդ էր, և առաքեալքն մարդիկ էին. և արժան էր ծառային վկայ լինել ընկերաց իւրոց։ Իսկ ուր զնայն կամեցան պատուհասել, ոչ ած նոցա վկայութի զԴաւթայ՝ զի մարդ էր, և ոչ զերկնից՝ զի և նոքա արարածք են, և ոչ զհրեշտակաց և սրովբէից և զուարթնոց՝ զի ամենեքին 'ի պաշտօն առաքին, այլ եթող նա զամենայն ոք զվերինս և զներքինս և զաշխարհս և զարարածս և զերկինս և զամենայն որ 'ի նոսա, և ած զվկայութեն տեառն ամենայն բնութեց, և զայ ամենայն արարածոց. “Հայր իմ, ասէ, մինչև ցայսօր գործէ, վասն այսորիկ և ես գործեմ”։

Եւ զկոյրն զոր առաքեաց նա երթալ լուանալ 'ի Սիլուհա, զի յայտ արասցէ եթէ ոչ էր երկմտեալ վասն նորա՝ եթէ բժշկէ զնա. և երկու՝ զի 'ի հարցանելն երթեալ քարոզեսցէ զիրսն, և երևեսցին և նորա ևս հաւատք. և այն իբրև ձայն էր՝ զի ասէ.

"Արի առ զմահիճս քո,, . և տեսցեն 'ի յաւուր շաբաթու և հարցցեն ։ Արդ ոչ եթէ վասն մյ եղաւ, այլ վասն մարդոյ . վասն այսորիկ տուիչն նորա տէր է նորա ։ Տեսցուք գործով զայն՝ որ ասացաւն բանիւ՝ եթէ իցե՞մ ես տուիչ նորա թէ ոչ ։ Ահաւանիկ կոյրն վկայէ, և ահա հիւանդքն քարոզեն ։ Պահեաց տէրն մեր զամենայն օրէնս 'ի տեղւոջ իւրեանց, զի ցուցցէ եթէ պահելի են . զի դատապարտեսցեն պահելովն իւրեանց զապականիչս իւրեանց ։ Եւ ելոյծ 'ի նոցանէ ինչ ինչ 'ի բարիս, զի ցուցցէ եթէ բարիոք իշխանութի ունի նա 'ի վերայ ամենայն ընչի . և զի յայտ արասցէ բժշկութբ իւրով թէ տէր է նա օրինացն, յայնմիկ՝ զի ունկնդիր լինէին նմա արարածք, այնմիկ՝ որ իշխանութիւն ունի ըստ կամաց Հօր 'ի վերայ շաբաթու ։

Արդ 'ի լուծանել շաբաթուն ուսաք մեք զայն՝ զի ասէ . "Հայր իմ մինչև ցայսօր գործ գործէ,, ։ Եւ զի յանդիմանեսցէ զնոսա, զի նոքա ոչ 'ի բարիս լուծին զօրէնսն . այլ ոչ նախատեաց զնոսա, զի հանէին իւրաքանչիւր ոք զեզն և զգրաստ իւր ։ Այլ ուսոյց նոցա եթէ բարիոք է զբարիս գործել յաւուր շաբաթու . վկայութի առ 'ի նոցանէ . զի եթէ զգուշութբ պահէին զնա և օգտէին, ոչ օտարացուցանէր նա զպատուիրանս Հօր իւրոյ . այլ զի ոչ կատարեցին ինչ մի օրինօք, վասն այսորիկ եբարձ զնոսա ։ Տես ըզպատուիրանսն նեղեալս, իբրու կապեալ էն, և ուխք ոչ լուծանէին . և տես զայնասիկ, իբրու ինքն օրէնսդիրն սոցա ելոյծ զնոսա բազում իրօք ։ Բայց էէրէէկն ժողովուրդն՝ որ առնէր զկամս շաբաթուն, բարձաւ շաբաթն բռնութե, զի երևեսցի գործն ազատութե ։ Այլ քննեա դու զինչ գործ է նորա . այս ինքն 'ի պահպանութէ անտի նորա ուսանիմք մեք զինչ են կամք հրամանատուին նորա ։ Արդ այն՝ որ առանց շաբաթուն շաբաթ կատարէ ազատութեամբ, ոչ . . . . . . . առաւել է ազատութի ոգոյ քան զհարկ շաբաթուն ։

"Որպէս, ասէ, Հայր կենդանութի ունի յանձին իւրում, սոյնպէս և Որդոյն ետ,, ։ Եթէ անձն Հօր օտար է 'ի կենդանութէ, և ունի նա կենդանութիւն

նման բնութեն, և վասն Որդւոյ իբրև զայս միտս լուր ։ Այլ՝ եթէ յինքեան զկենդանին կենդանութիւն է, կենդանութիւն նորա ոչ է արգելեալ 'ի ներքոյ պատճառանաց․ սոյնպէս և վասն Որդւոյն լուր դու իբրև զայն վասն Հօր, զի ունի կենդանութիւն յանձն իւր ։ Եթէ վասն այսր որ գրեալ է, թէ "Սոյնպէս և Որդւոյն ետ", և վասն այսր կարծես դու՝ եթէ 'ի վերոյ քան զպարգևսն Հօր ոչ ունէր Որդի կենդանութիւն յանձն իւր, ապականեցեր դու զառաջին միտսն․ զի անձն իբրև օտարացեալ 'ի կենդանութենէ համարեալ է քեզ ։ Այլ դիր դու զմարմինն 'ի միջի, զի հանգիցէ 'ի վերայ նորա ետն․ իբրև զայն՝ որ զկնի նորա ասէ․ "Ետ նմա իշխանութիւն, զի դատաստանս դատեսցի որդի մարդոյ" ։ Արդ զետն հանդերձ . . . իշխանութեամբ՝ լուր դու, զի զտամն Հօր զկեանս . . . . . . . գոյութում և իցէ, ոչ է էակից նորա, այլ յաւելուած իմն լինելոյ․ և չէ ինչ նման պատուաստել նոցա 'ի նա․ ապա եթէ պատուաստի 'ի նա, լինի նա այնուհետև 'ի նըմանէն գոյակիցն նորա հանդերձ օտարացեալ էութեան նորա ։ Եւ եթէ 'ի վերայ ոչ գոյութեան ետ զկեանս էութեան նորա, նոյն է ։

Այլ թերևս ասիցես, ոչ ետ ։ Ասացի՝ բամ դիր զպատճառս մարմնոյն 'ի միջի, և լուր առանց հակառակութեան՝ եթէ այնմիկ ետ, որ զիշխանութիւն դատաստանին առ ։ Նա և մարգարէն ևս վկայեաց վասն ետին և վասն իշխանութեան դատաստանին․ զի և իշխանութիւն ազատութեան ունի նա, յայնմիկ՝ զի ասէ․ "Որոյ իշխանութիւն իւր եղաւ 'ի վերայ թիկանց իւրոց"․ Հայր, ասէ, զոք ոչ դատի․ այլ զամենայն դատաստանս 'ի ձեռս Որդւոյ իւրոյ ետ" ։ Այսուհետև որ խնդրէ զվրէժ անձին իւրոյ, զտէրն ամենայնի ուսանի արհամարհել․ զի ոչ գիտաց զայն՝ որ առաւելն է քան զնա՝ մատուցանել առաջի նորա զյանցանսն ։ Վասն այնորիկ անուանեցաւ Քրիստոս դատաւոր, զի աշակերտքն զմիմեանս մի դատեսցին․ զի յաւելեալ ասացաւ դարձեալ՝ թէ և 'ի վախճանի նա է դատելոց, զի ոք աստէն զանձն իւր մի պահանջեսցէ ։ Կոչեցաւ Քրիստոս գլուխ, զի աշակերտք նորա իբրև անդամք միմեանց արգահատեսցեն․ զի յանդիմանէ

աչք զոտք, և սիրտ յանդիմանէ զօրօվայն և սաստէ ապաշաւելով այլոց անդամոցն։ Արդ տես դու որչափ խիստ են դատաստանք մարդոյն այնորիկ՝ որ խնդրէ զվրէժ անձին իւրոյ արդարութք, զի անարգեաց նա զդատաւորն հասարակաց։

«Նա է, ասէ, ճրագն՝ որ լուցանէր»։ որ ըստ աճելն իւրում՝ և սպառումն իւր, զի 'ի գիշերի անդ լուսաւորէր. որպէս զի յայտ արասցէ՝ թէ ըստ գալն իշխանութե արեգական՝ անցանէն, և սպառի ճառագայթք նորա։ «Ոչ եթէ 'ի մարդկանէ, ասէ, առնում ես ինչ վկայութի. զի ունիմ ես վկայութիւն՝ որ մեծ ևս է քան զՅովհաննուն»։ Եւ եթէ 'ի մարդկանէ ոչ առնու, Յովհաննէս զի՞ ևս կանխեաց յառաջագոյն եկն։ Այլ զի մի՛ զարհուրեսցին 'ի մեծութէ անտի, եկն փոքրկութին առաջի նորա ամենայն իրօք. մկրտութք ջուրցն առաջի մկրտութե Հոգոյն։ Եւ զի վկայեսցէ այն, որ գիտէր զծնունդն իւր եթէ 'ի քահանայէ էր, 'ի վերայ այնորիկ՝ որ ծածկեալ էր զյղութիւն նորա որ 'ի Հոգոյն էր. զի գիտասցեն եթէ նովին իսկ Հոգոյն մարգարէն պատմեաց Յովհաննէս։

Վասն այսորիկ որ պատուհասեցաւ 'ի դպրաց անտի թէ զօրէնս Մովսիսի ..... Եւ եթէ 'ի մարդկանէ առտի ոչ ընդունի վկայութիւն, վասն էր երթայր նա առ Յովհաննէս առնուլ 'ի նմանէ վկայութի։ Այլ Յովհաննէս յա՛յ. առաքեցաւ, «Այն՝ որ առաքեացն զիս, նա ասաց ցիս» ասէ։ Արդ Հայր 'ի ձեռն Յովհաննու 'ի վերայ նորա վկայէ, որպէս և ասաց իսկ՝ եթէ «Մովսէս վասն իմ գրեաց», այլովքն հանդերձ։ Եւ զի ասէ «Մովսէս գլխովին է չարախօս ձեր»։ Մովսէս, ասէ, վասն իմ գրեաց։ «Եթէ յարիցէ, ասէ, մարգարէ, և արասցէ նշան ինչ կամ արուեստ, և լինիցի նշանն՝ ընդունելի լիցի, զի մարգարէ է նա. և եթէ ոչ լինի՝ մի՛ հաւատայք, զի սուտ է»։ վասն այսր Մովսէս վասն իմ գրեաց։ Եւ զի ասէ. «Մովսէս գլխովին է չարախօս ձեր»։ զի ոչ բանի նորա հաւատայք, և ոչ գործոց իմոց։ «Ո՞վ 'ի ձէնջ յանդիմանեսցէ զիս վասն մեղաց»։ զի յայտնաբար աւասիկ մարգարէանամ։ Արդ նշանքն որ վասն նոցա

գրեալ էր՝ թէ ընդունելի լիցի մարգարէն ով և իցէ, թէ այր իցէն՝ վասն այսորիկ յինքնին իսկ գործքըն զոր գործեմ՝ վկայեն վասն իմ։ Արդ Մովսէս յինքնին գլխովին չարախօս է զձէնջ. զի զամենայն զոր միանգամ ասաց նա՝ կատարեալ է, զի ընդ. բանն գործն ընթանայ։ Եւ եթէ այլ ա̃ծ ոչ քարոզեցի ձեզ, բայց միայն՝ լուր, Իսրայէլ, տէր ա̃ծ քո տէր մի է. և նա առաքեաց զիս, և առ նա յաղօթս կամ և գոհանամ՝ ուսուցի ձեզ, զիա՞րդ ոչ հաւատայցէք ինձ։

Արդ որպէս եղև Մովսէս հաւատարիմ յԵգիպտոս 'ի մէջ եղբարց իւրոց և Փարաւոնի. եթէ նշանօք, ահաւանիկ և կախարդք արարին իբրև զնա։ Արդ զիա՞րդ հաւատացին նմա թէ ա̃ծ առաքեաց զնա, իբրև յայտնութի՜ 'ի վերայ նոցա 'ի ձեռն մարգարէի ոչ եղև, և յերկնից նոցա բարբառ ոչ եկն։ Այլ նշանիւք և արուեստիւք հաւատացին նմա. և 'ի լսելոյ անտի հաւատացին՝ եթէ ա̃ծ հարցն իւրեանց առաքեաց զնա. և Ճշմարտութե՜ բանին վկայեցին Ճառագայթքն. այլ դժուարին էր հաւատալ 'ի նա վասն այնոցիկ՝ որ հակառակ կացին, "Արարին, ասէ, կախարդքն իբրև զնա", եթէ 'ի վախճան յաղթութե՜ ոչ էր կացեալ նշանացն նորա։ Եւ իբրև թէ խօսեցաւ ա̃ծ ընդ նմա՝ եղև հաւատարիմ։ Չև եւս էր տեսեալ նոցա աչօք իւրեանց, և լուեալ ականջօք իւրեանց։ Եթէ վասն արուեստիցն, իբր ոչ գիտէին, եղև՞ պատասխանի նոցա փոխանակ Քրիստոսի՝ թէ արժան է նմա հաւատալ 'ի լինել վասն նշանաց և արուեստից իւրոց։

Իսկ կուրին ըստ հաւատոց իւրոց՝ այսպէս աշտիճանեցաւ և բժշկութի՜ նորա, զի տացէ նմա տէր մեր աչս ծածուկս և յայտնիս։ Փոքր մի հաւատաց, փոքր մի ետ տեսանել նմա։ Իբրև ծագեաց փոքր մի լոյս յաչս նորա, ծագեաց լոյս մեծ 'ի խորհուրդս նորա. կատարեցան հաւատք նորա 'ի ներքոյ, և պսակեցաւ տեսիլ նորա արտաքոյ։ "Տեսանէր, ասէ, զամենայն ինչ համարձակ"։ Իբրև 'ի վերայ աշտիճանի առաջնոյ և փոքու հաստատեաց տէր մեր զհաւատսն ակարս. և իբրև հզօրացան 'ի տկար աշտիճանէ անտի, վազեցին ելին յաշտիճան կատարեալ։

## ԳԼՈՒԽ ԺԴ

"Զո՞վ, ասէ, ուստեք ասեն զինէն մարդիկն թէ իցէ որդի մարդոյ ։ Ասեն ցնա . ոմն ասէ՝ թէ Եղիա իցէ, ոմն ասէ՝ Երեմիա իցէ" ։ Եւ այլք զի ոչ եղեն բաւական տեսողք նշանաց նորա հաւասար թարգմանել զմեծութիւն նորա, այլ նմանեցուցին զնա Եղիայի վասն նախանձու տան հօր իւրոյ . այլք Երեմիայի վասն սրբութեան նորա յորովայնէ . այլք Յովհաննու վասն մկրտութեան նորա, և ըզանչելեաց ծնանելեացն նորա . զի յայտ են իրքս՝ եթէ ըզանչանալ[1] էր ծառայիցն նորա, ծնաւ 'ի տեսանելիսն[2] իւր զփոփոխումն ։ "Իսկ դուք, ասէ, զո՞վ ուստեք ասէք զինէն թէ իցեմ" ։ Շմաւոն գլուխ և գլխաւորն խօսեցաւ . "Դու ես, ասէ, որդի Քրիստոս, որդի այ կենդանւոյ" ։ Եւ "Երանի իցէ, ասէ, քեզ՝ Շմաւոն . և դրունք դժոխոց քեզ մի՛ յաղթահարեսցեն" . այս ինքն զի ոչ քակին հաւատք . զի զոր նայն շինէ, ո՞ կարէ քակել . և զոր ինչ նա կործանէ, ո՞ կարէ կանգնել զայն ։ Կամեցաւ ամորեստանեայն քակել զտաճարն զոր շինեաց, քակեաց զաթոռ արքայութեան նորա . սոյնպէս և Նիկանովր ։ Կամեցաւ դարձեալ Ախաբ շինել զԵրեքով կործանեալ, կործանեցաւ արքայութիւն նորա ։

Եւ զի շինեաց զեկեղեցի նորա, շինեցաւ աշտարակ՝ որ բաւական են հիմունք նորա ամենայնի, որ շինեալ լինի 'ի վերայ նոցա ։ Որպէս բաժանեցաւ մի լեզուն 'ի բազում լեզուս, զի յերկինս մի՛ ելցեն . այս ինքն անխայեալ լիցին՝ զի մի՛ յաշտարակն ապաւտան լիցին, այլ յարդարութիւն . զի ոչ եթէ խոլք ծնան 'ի վերայ նոցա զջրհեղեղն եթէ 'ի բարձունս ապաւինեսցին, այլ անօրէնութիւն հեղձոյց և ապաշխարութիւն փրկեաց . այս ինքն արդարութիւն ապրեցոյց ։ Զոր օրինակ 'ի բաժանելն այնոցիկ խափանեցաւ աշտարակն երկրաւոր և պատրաստութիւն ժամա-

1 Յօրինակին դժանալ ։ 2 Յօրինակին 'ի լուսանցան 'ի փեսողն ։

նակեան և տունն ապաւինին աշխատութեան, ետ նոցա կենարարն առ յինքենէ աշտարակ՝ որ վերացուցանէ հանէ 'ի բարձունս, և ծառ՝ որոյ պտուղ իւր դեղ կենաց է ։

“Դու ես, ասէ, վէմ„․ այն վէմ՝ զոր ուղղեացն, զի գայթագղեսցի նովաւ սատանայ ։ Դարձաւ սատանայ և կամեցաւ դնել զնա առաջի տեառն մերոյ, զի գայթագղեսցի նովաւ, յայնմիկ՝ զի ասէ․ “Քաւ լիցի, տէր„ ։ Այլ մեք ոչ ասեմք եթէ այսպէս խորհեցաւ սատանայ ։ Եցոյց մեզ նա յայնմիկ, զի ասաց “Երթ անդր, սատանայ, գայթագղութիւն ես դու ինձ„ ։ Առ ընկեաց զնա 'ի յետոյ իւրոյ, զի գայթագղեսցին կողմնակիցք նորա․ զի յետս յետ չոգան և զարկան զգետնի ։ Եւ այն՝ զի ասէ “Մի ումեք ասիցէք վասն իմ եթէ Քրիստոս իցեմ„․ զի ոչ եթէ, ասէ, բանիւք միայն ցուցանէք դուք զճշմարտութիւնն վասն իմ, այլ և գործովք և՛ արդեամբք․ իբրև զայն՝ որ պատուէրն ետ նոցա մինչ դեռ իջանէին 'ի լեռնէ անտի․ ասէ․ “Զգոյշ եղիցիք՝ մի ումեք ասիցէք զտեսիլդ զայդ զոր տեսէքդ, մինչև որդի մարդոյ 'ի մեռելոց յարիցէ„ ։

Եւ զի ասէ․ “Ահաւասիկ ելանեմք մեք յԵրուսաղէմ, և կատարի ամենայն ինչ՝ որ միանգամ գրեալ է վասն իմ․ զի պարտ է որդւոյ մարդոյ 'ի խաչ ելանել և մեռանել„, այլովքն հանդերձ ։ Դարձաւ սատանայ և մարտ պատերազմի եդ ընդ տեառն մերում 'ի բերան Շմաւոնի գլխոյն եկեղեցւոյ, որպէս և Եւայիւն ։ “Քաւ լիցի քեզ, ասէ, տէր՝ յայսցանէ„ ։ Ասէ ցնա․ յետս երթ, սատանայ․ ոչ ուսեալ ես դու՝ եթէ վասն էր եղև գալըստն իմ․ այլ որպէս եղէ ես մանուկ, և 'ի մսուր եդայ, և ուրախ արարի զծնեալսն, սոյնպէս պարտ է ինձ իջանել 'ի դժոխս, և մխիթարել զմեռեալս, առ արդարսն այնոսիկ՝ որ յաւիտենից սպասէին, և աչս ունէին տեսանել զիս ։ “Մարգարէք, ասէ, և արդարք և թագաւորք ցանկացան„․ և “Աբրահամ ցանկացաւ տեսանել զօր իմ„ ։ Իջից ես, տեսից զնա ։ Իսկ ո՞վ իցէ նա որ ոչն կամեցաւ եթէ ելից ես 'ի խաչ, և ազատեցից զարարածս, բայց միայն սատանայ ։ Արդ երթ

յետս իմ, զի ոչ խորհիս դու զա̃յն, այլ զմարդկանըս : Զի աչք որոսորդք էին տգետք, և ոչ էին կըրթեալ լսելիք նոցա 'ի բարբառ մարգարէութե̃ն :

"Իցեն ոմանք' որ այժմ աստ իսկ կայցեն առ իս, մի ճաշակեսցեն զմահ„ . զի յայտ արասցէ, եթէ յափշտակելոց են կենդանիք ընդ յօդս երկնից : Դարձեալ կոչեաց առ ինքն զԵղիա յափշտակեալ, և զՄովսէս կենդանացեալ, և երիս վկայս 'ի քարոզաց անտի : Սոքա են սիւնք . այս ինքն որ բարձեալ ունին զվկայութի̃ արքայութե̃ն : Եւ Շմաւոն յանգիտութե̃ իւրում գիտութիւն մեծ խօսեցաւ, զի գիտաց զՄովսէս և զԵղիա . որպէս և գիտաց Յովհաննէս Հոգով զտէր մեր 'ի ժամանակին' իբրև եկն առ նա, զի վկայեաց իսկ' եթէ "Ես ոչ գիտէի զնա„ : Արդ եթէ Հոգին յայտնեաց նոցա, 'ի բերան Շմաւոնի ինքն Հոգին խօսէր զոր ինչ ոչ գիտէր նա : Ի նոյն իսկ յայն 'ի Մովսիսին և յԵղիային պատեալ է երեք տաղաւարքն, սակայն հաղորդեալ է ազատութիւնն ընդ Հոգին :

Բայց դարձեալ եցոյց նոցա յառաջ քան զմահ իւր 'ի ժամանակին' իբրև փոխեցան կերպարանք երեսացն նորա . զի թէպէտ և նա իցէ, սակայն նորոգի . և եթէ նորոգի, գիտասցեն թէ նա իսկ է : Զի յորժամ յարիցէ նա 'ի մեռելոց և յայլակերպս լիցի, մի երկմտիցեն' կանխեաց յառաջագոյն և ընդելոյց զնոսա : Եւ եթէ այս է արքայութի̃ն զոր ընդունի յետ յարութե̃ն, ընդէ՞ր ոչ երևէր այսու նմանութե̃, և վասն է՞ր . այլ զի ոչ կարէին հայել նոքա ընդ նա . և գիտասցեն թէ և նոքա սոյնպէս նորոգելոց են : Եւ զի ած նա զերկուսն, զի հաւատարիմ լիցի յարութի̃ն կենդանութե̃' զոր առնելոց է 'ի վախճան կատարածի : Թէ ոյք մեռեալքն են իբրև զՄովսէս յառնեն, և ոյք կենդանի իցեն' իբրև զԵղիա թըռչին . զի տէր է նա բարձանց և խորոց :

Արդ իբրև երևեցան Մովսէս և Եղիա, ասէ Շմաւոն . "Եթէ կամիս, տէր, արասցուք աստ երիս տաղաւարս„ : Զի ետես նա զլեառնն' զի հանգուցեալ էր 'ի հակառակութենէ անտի դպրացն, և հաճոյ եղև նմա . և բուրեաց եհաս 'ի հաստատելիս նորա հաս

անուշութե̃ արքայութե̃ն, և քաղցրացաւ նմա. և տեսեալ նա զփառս նորա փոխանակ անարգանացն նորա, և ուրախ եղև ընդ ընակիլն իւրեանց ընդ Մովսեսի և ընդ Եղիայի, և ցնծացաւ՝ զի հեռացաւ 'ի Կայիափայէ և 'ի Հերովդեսէ: Եւ իբրև արգահատէր նմա իբրև զառաջինն, զի ասաց՝ քաւ լիցի քեզ, ասաց և յայսմ վայրի. "Արասցուք աստ երիս տաղաւարս": Եւ այն՝ զի ասէր "Ոչ գիտէր զինչ խօսէր", զի հանդերձեալ էր տէր մեր 'ի խաչ ելանել: Կամ վասն զի տաղաւարք ոչ եթէ աստ լինին տուեալք, այլ յաշխարհն որ գալոցն է: "Արարէք ձեզ, ասէ, բարեկամս, զի ընկալցին զձեզ յարկս իւրեանց յաւիտենից": Եւ դարձեալ, "Ոչ գիտէր զինչ խօսէր", յայնմիկ՝ զի 'ի թիւ տաղաւարացն ընդ Մովսեսի և ընդ Եղիայի համարեցաւ զնա. վասն այսորիկ լուսաւորեաց զնա ձայնն ա̃ծեղէն յերկնից և ասէ. "Դա է որդի իմ սիրելի". որպէս զի մեկնեալ լիցի տէրն 'ի ծառայից անտի:

Իսկ վասն է՞ր Մովսէս և Եղիա երևեցան առ նա: Այլ քանզի 'ի ժամանակի անդ յորժամ էհարցն զնոսա; եթէ զո՞վ ուստեք ասեն զինէն մարդիկս թէ իցեմ, ասեն ցնա. ոմն ասեն թէ Եղիա իցէ, և ոմն ասեն եթէ Երեմիա իցէ, և ոմն ասէ թէ մարգարէ ոք 'ի մարգարէից անտի իցէ, զի յայտ արասցէ նոցա՝ թէ ոչ Եղիա է նա, և ոչ մարգարէ ոք 'ի մարգարէից, երևեցան նոցա Մովսէս և Եղիա. զի գիտասցեն՝ եթէ տէր է նա մարգարէիցն: Փոխեաց զկերպարանս երեսաց իւրոց 'ի լերին անդ մինչև մեռեալ էր, զի մի՛ երկմտեսցեն վասն փոխելոյ զկերպարանս երեսաց իւրոց յետ մահու իւրոյ: Եւ զի գիտասցեն եթէ այն՝ որ փոխեաց զհանդերձ զոր զգեցեալ էր, նոյն կարէ կենդանացուցանել զմարմինն զոր զգեցեալ էր. զի այն՝ որ ետ նմա զհոգին՝ զանմահատոյց փառսն, կարող է կենդանացուցանել զնա 'ի մահուանէ անտի զոր ամենայն մարդ ճաշակէ:

Իսկ եթէ օտար է նա, զիա՞րդ Մովսէս և Եղիա խօսէին ընդ նմա. և ո՞չ է այն՝ որ կենդանացոյց զՄովսէս, և ած զԵղիա. և ահա աւանիկ յառաջ ժամանակօք աստուծին վարեալ էր զնոսա: Եւ եթէ բանու-

թ̃ եւ և իջոյց նա զեղիա, սա չէ բարերար, և 'ի
գրկաց ստուգին յափշտակեաց իջոյց իւր վկայ։ Եւ ե-
թէ առանց նորա քննեաց կաց 'ի վերայ Մովսիսի,
գողութ̃ հաղորդեցաւ. զի և զոսկերս անգամ զորս
թագոյց ստոյգն յերեսաց մարդկանէ, նա 'ի գերեզ-
մանաց կրկտեաց հան զնոսա։ Եւ իբրև եղև ձայնն
յերկնից՝ թէ «Դա է որդի իմ սիրելի, դմա լուի-
ջիք», ո՞ւր էր արդեօք ստոյգն. թէ գուցէ երկեաւ
նա և թագեաւ, և ոչ եկն 'ի ձայն նորա։ Կամ թէ
ձայնն օտարին ա՞նց պատգահիկ, և ոչ լուաւ նմա.
և աչաւանիկ նա 'ի վերոյ քան զերկինս է, որպէս
և ասեն, և ստոյգն 'ի վերոյ քան զերկինս։ Եւ զիա՞րդ-
անց 'ի վերոյ նորա այս ձայն բարբառոյ, և ոչ գիտաց
նա. և եթէ գիտաց, ընդէ՞ր լռեաց յայսմ ամենայն
խրոխտումն զոր խրոխտացաւ 'ի վերայ նորա։ Դմա,
ասէ, լուիջիք և կեաք դուք։ Թէ այդ այդպէս իցէ,
ամենայն ոք այլում ձայնի լսէ, մահու մեռանի։ Կամ
եթէ գուցէ ուխտ ինչ արարին 'ի մէջ իւրեանց, զի
'ի միում ժամանակի ասասցէ մին՝ թէ ես եմ 'ի սկըզ-
բանէ և առ յապա, և չիք այլ ոք՝ ոչ առաջին և ոչ
զկնի իմ. և 'ի միւսում ժամանակի ասասցէ միւս
ես. դա է որդի իմ սիրելի, դմա լուիջիք։

«Այլ մինչ դեռ իջանէին, ասէ, 'ի լեռնէ անտի,
պատուէր տայր նոցա և ասէր. զգոյշ եղիջիք մի ու-
մեք ասէք զտեսիլդ զայդ զոր տեսէք»։ Վասն որո՞յ.
այլ քանզի գիտէր՝ եթէ ոչ հաւատան նոցա, այլ
իբրև զմոլեկանս համարէին զնոսա՝ եթէ զեղիա ուս-
տի գիտէիք, և աչաւանիկ Մովսէս թաղեալ է, և
ոք 'ի վերայ գերեզմանի նորա ոչ եկաց. և լինէր
այնուհետև հայհոյութի և գայթագղութի յայս-
միկ։ Ասէ. կացէք մնացէք դուք մինչև ընդունիցիք զզօ-
րութի. զի յորժամ պատմիցէք և ոչ հաւատասցեն,
կեցուսջիք զմեռեալս վասն նոցա դարովութե, և վասն
ձերոց փառացդ. և դադարեալ կացէք մնացէք մինչև
պատառեսցին գերեզմանք. և ելցեն արդարք նորք
և հինք, և եկեսցեն յերուսաղէմ քաղաք թագաւորի
մեծի. և ապա այնուհետև հաւատան նոքա՝ եթէ
այն որ յարոյց զնոսա, նոյն յարոյց և զՄովսէս. և
տեսցուք, ասեն, եթէ 'ի Գալիլիէ. և իջուցանէ ըզ-

*նոսա ։ Եկին արդարք բազումք 'ի ձայն նորա 'ի ներքուստ 'ի դժոխոց . փոխանակ նոյն ելին արդարք բազումք ։ Եւ եթէ մեռեալք լուան նմա և եկին, ո՞րչափ ևս առաւել Եղիա կենդանին ։ Արդ այսուիկ՝ որ ելանեն 'ի գերեզմանաց անտի, ուսանին զայն ըզՄովսէսին և զԵղիայն ։ Եւ վասն այսորիկ ասէ . "Մի՛ ումեք յայտնիցէք, մինչև որդի մարդոյ 'ի մեռելոց յարիցէ" ։*

*Եւ զի մի՛ ասիցեն եթէ խաբանօք մոլորեցոյց զաշակերտսն իւր, և ահա քարոզեն շրջին՝ եթէ Մովսէս և Եղիա խօսեցան ընդ նմա . Մովսէս առ օրէնս մի 'ի լեռնէ անտի, և Եղիա եկն նախանձու խնդրել զվրէժ օրինացն՝ որ գրեալն է . ասէ . "Գնացէք դուք ընդ իս խոստորնակս" ։ Եւ դարձեալ զի երկոքին նոքա ինչ ոչ ստացան . վասն այսորիկ երկոքին սիրելիք միմեանց երևեցան առ այն՝ որ սիրէր զամենեսին առ հասարակ ։ Նա և ա̃ծ արար հաւասարութի̃ւ 'ի մի վայրի անուանց նոցա ։ "Յիշեցէք դուք, ասէ, զօրէնս Մովսիսի ծառայի իմոյ" . և "Ահա առաքեմ ես ձեզ զԵղիա մարգարէ" ։ Եւ զի յետ վեց աւուր առ զնոսա և եհան 'ի լեառնն, խորհուրդ վեցերորդ հազար ամացն ։*

*Եւ ընդէ՞ր զամենայն աշակերտսն ոչ առ տարաւ ընդ իւր ։ Այլ վասն զի ընդ նոսա էր Յուդա օտարացեալն յարքայութենէն, և տանել ոչ էր արժանի, և թողուլ զնա միայն՝ ոչ էր օրէն . զի մարդկանն նա իբրև զկատարեալ համարեալ էր վասն ընտրութե̃ այնորիկ՝ որ ընտրեացն զնա, զի չև ևս էին յայտնեալ գողութիւք նորա . զի եթէ էր յայտնեալ անօրէնութե̃ նորա, գիտէին զնա այնուհետև աշակերտքն ընկերք նորա ։ Բայց տէր մեր գիտէր թէ նա ինքն է մատնիչն նորա . և իբրև ասէր նա՝ թէ մի ոմն 'ի ձէնջ մատնելոց է զիս, ասէին նոքա՝ ահա նա է, օտարացուցանէր զնա յընկերաց անտի իւրոց ։ Եւ ընդէ՞ր ընտրեաց, կամ ընդէ՞ր առեաց զնա . այլ դարձաւ արար հազարապետ քսակակալ ։ Զի յայտ արասցէ զկատարեալ սէրն իւր, և զշնորհս ողորմութե̃ իւրոյ ։ Եւ դարձեալ զի ուսուսցէ տէր մեր զեկեղեցի իւր . զի թէպէտ և լինին 'ի նմա վարդապետք*

սուտք ; սակայն աթոռն ճշմարիտ է . զի ոչ խափանե-ցաւ աթոռն Յուդայ նմին մատնչին ։ Եւ դարձեալ զի թէպէտ և հազարապետք անօրէնք իցեն , սակայն ինքնին հազարապետութեն ճշմարիտ է տնտեսութի ։ Արդ լուաց նա զոտս նորա . այլ որ յարեաւն՝ չոգաւ նոքօք առ սպանողս նորա , և համբուրեաց նա զբե-րան նորա՝ որ նովաւ ետ նշան մահու ունելեաց նո-րա . և կարկառ ետ հաց ձեռին այնմիկ՝ որ կարկառ առ զգինս նորա , և վաճառեաց զնա 'ի սպանումն ։

“Ոչ , ասէ , պարտ է մարգարէի կորնչել արտա-քոյ քան զԵրուսաղէմ„ . այն իսկ է զի ասէ . “Մի ուրեք իշխեր դու զենուլ անխտիր զպատարագս զատ-կաց քոց , այլ 'ի տեղւոջ ուր և ընտրեսցէ իւր տէր ած քո բնակեցուցանել զանուն իւր անդ „ . որպէս և Առաքեալ իսկ վկայեաց՝ թէ “Զատիկ մեր զենաւ Քրիստոս „ . զի յայտ արասցէ՝ եթէ օրինակ է 'ի մէջ Իսրայելի , և ճշմարտութի 'ի ձեռն Յիսուսի ։

Իսկ այն՝ զի ասէ “Ո՛վ ազգ չար թիւր և անհա-ւատ „ , վասն այնորիկ՝ զի յանդիմանեաց նա զաշա-կերտս նորա ։ “Ոչ , ասէ , կարացին բժշկել զնա „ . զի նա այսպէս կարծեաց վասն նոցա՝ թէ չև ևս են կատարեալ արուեստագիտութբ վարդապետին իւ-րեանց ։ Եհաս այս և առ աշակերտսն , և կացոյց զնո-սա 'ի մէջ ծփանաց ։ Եկին ուսանել 'ի նմանէ՝ եթէ վասն էր ոչ կարացաք բժշկել ։ Արգելաւ յաշակեր-տացն բժշկելն վասն հայհոյչացն և անհաւատից ։ Սա , ասեն , “Բեեզղեբուղաւ իշխանաւն դիւաց հանէ դա զդևս* „ ։ Ասեն զայլն զայն . այս. աշակերտք նորա ոչ են կատարեալապէս ուսեալ զարուեստագիտու-թի նորա . իսկ ընդէ՞ր ոչ բժշկեցին զնա ։ Վասն այ-սորիկ “Ո՛վ ազգ թիւր „ ։ Եւ վասն այնորիկ ընտրեաց եւթանասուն և երկուս նոյնժամայն , և առաքեաց զնոսա առ յինքենէ , և բժշկեցին զնոսա սքանչելա-պէս . զի կշտամբեալ յանդիմանեցին նոքա , որպէս կարծիս կարծեցին ։

* Յօրինակին 'ի լուսանցսն կրկնի այս բան այսպէս Սա ասէն Բէեզղէ-բուղ է իշխանն դիւաց . և յաւե-լու գրիչն թէ “Մին տողն կրկնա-կան է „ ։

Եւ զի ասէ. «Մինչև յե՞րբ իցեմ ընդ ձեզ». թէ յորժամ սպանանիցեն զնա, տեսանիցեն զանուն նորա իբրև առնիցէ զօրութիւս և սքանչելիս: Եւ զինչ են արուեստագիտութիւնն: Ասէ ցայրն. «Որ հաւատայ, ամենայն հնար գոյ նմա»: Եւ ցնոսա ասէ. «Վասն թերահաւատութեան ձերոյ»: Եւ զի թեթևացուցէ զծանրութիւն յաշակերտաց անտի իւրոց, ասէ. «Քեզ ասեմ, այս պեղծ, խուլ և համր». զի յայտ արասցէ եթէ նմա՝ վասն զի Ած է՝ մեկին է ամենայն ինչ: Այլ զիա՞րդ լսէր նոցա այսն պեղծ, խուլ և համր: Այլ ոչ եթէ այսն խուփ ինչ էր քան զմարդիկն հաւատացեալս. այլ զի արգելցէ փոքր մի զհայհոյիչսն, զի մի ձաղեսցեն զաշակերտսն նորա: «Ցայն վայր, ասէ, չև ևս էին աշակերտքն նորա հաստատեալ 'ի նա»: Եւ զի ասէ «Ել գնա 'ի դմանէ, և այլ մի ևս մտաներ 'ի դա», վասն ազատութեան իւրոյ յայտ արար: Զի խորհեցաւ այսն դարձեալ միւսանգամ դառնալ առ նա, կապեաց զնա և ասէ. այլ մի ևս իշխեր դառնալ այդրէն:

Կանխեաց յառաջագոյն քան զՇմաւոն և ասէ ցնա. «Թագաւորք երկրի յումմէ՞ առնուն զհարկս. յորդւո՞ց եթէ յօտարաց»: Քանզի պատճառս եկին գտանել 'ի վերայ նորա, զի ոչ եթէ յամենեցունց պահանջէին: Այլ վարդապետն չէր տուեն, թերևս ասեն, ոչ տայցէ. և ունիմք մեք զնա իբրև զապըստամբող մի. և թէ տայցէ, համարեալ լինի նա այնուհետև իբրև զօտար: Զի թէպէտ և իբրև զօտար համարեալ էին և ղևտացիք, սակայն քանզի տէր է ժառանգութեան նոցա՝ իբրև որդիք են նոքա, և ոչ ոք պահանջէ զնոսա. զի թագաւորն Հրէից զքահանայսն ոչ պահանջէր: Արդ յայտ առնէր նա՝ եթէ պատճառս եկեալ խնդրեն քեզ, ո՛վ Շմաւոն, դպիրքըն և փարիսեցիք փորձել զմեզ. զի ոչ համարեցան զնա իբրև զքահանայ: Բայց նա ոչ ետ նոցա պատճառս զինչ և խնդրէին. զի 'ի պահանջելն իւրեանց յայտ արասցեն՝ թէ յամենայն մարդկանէ օտար է նա: Ուսոյց նմա՝ թէ ղևտացիքն ոչ տան, զի ազատք են յախմիկ:

Եւ զի ասէ. «Զի մի դու գայթագղութեան դիցես

նոցա „, այս ինքն զի մի՛ վատթար երեւեսցին նոցա, յորժամ յայտնես՝ թէ պատճառս կայ, զդոյն իսկ կամին յայտնել և յօդել, “Գնա դու 'ի ծով և ընկեա անդ զցանցս „ • քանզի համարեցան նոքա զնա օտար, ուսուսցէ զնոսա ծովն՝ զի ոչ եթէ միայն քահանայ եմ ես, այլ և թագաւոր • արդ երթ տուր և դու իբրև զիս 'ի յօտարաց ։ Եւ քանզի յանձն առ Շմաւոն տալ, իբրև առ նա զցանցսն երթալ ընկենուլ՝ ընդ նմա երթային և նոքա ։ Եւ իբրև եհան նա զձուկնն որ ունէր զսատերն 'ի բերան իւրում զպատկեր արքայութեան, դսրովեալ ամաչեցին ամբարտաւանքն՝ որ ոչն համարեցան զնա զետացի, զայն՝ որում ծովն և ձուկն վկայեցին, եթէ թագաւոր է նա և քահանայ ։ Արդ զգալուստ այսմ քահանայապետի ամենայն արարածք գիտացին, և ընթացան բերել նմա պտուղ ամենայն բնութիւք ըստ ազգի իւրում ։ Ետուն բերել վերինք ողջոյն 'ի ձեռն Գաբրիէլի • զօրութիւք երկնից 'ի ձեռն աստեղն • հեթանոսք զմոգսն, և մարգարէք լռեցեալք զդպիրսն • 'ի Բեթղեհէմ գեղջէ ծագելոց է, ասեն ։ Սատերն որ նկարեցաւ 'ի փոր ձկանն, և ընկալաւ զտիպս թագաւորի 'ի ներքուստ 'ի ջուրց անտի, ետ օրինակ խնդրոյն կազելոյն և հակառակութեան • զի դարձաւ շրջեցաւ ունկնդրութի ծովուն առ օտարն ։

Ինկին մատեան հարցանել զնա՝ եթէ “Արժա՞ն է ումեք արձակել զկին իւր ։ Պատասխանի ետ նոցա և ասէ • ոչ է արժան ։ Ասեն ցնա • Մովսէս համարձակեաց մեզ, ընդէ՞ր ոչ է արժան ։ Մովսէս, ասէ, վասն խստասրտութե ձերոյ համարձակեաց ձեզ, այլ 'ի սկզբանէ արարածոց այս չէր եղեալ „ ։ Արդ յայտ է 'ի ձեռն այս միոյ պատուիրանիս, եթէ այն ինչ՝ որ վասն խստասրտութե ժողովրդեանն եդաւ 'ի ձեռն Մովսիսի, զնոսա արժան է խափանել • զի փոփոխումն եղև խստապարանոցայ ժողովրդեանն ընդ ժողովուրդսըն՝ որ սիրեաց զհաւատսն Աբրահամու ։ Զի այն՝ որ ասէ “Մի՛ սպանաներ, մի՛ շնար „, և այլ ևս, յառաջ քան զօրէնս պահեալ լինէին ։ Եւ յօրէնս քարոզեցաւ • բայց 'ի ձեռն աւետարանին կատարեցաւ • զի ամենայն պատուիրանք օրինացն, որ վասն իրաց ինչ

եղև և եմուտ նոցա, նոքա լուեցին. ոչ եթէ խափանեալ լոյսի հինն, այլ զի հաստատեալ լոյսի նորին։

Տասն դրամն և հարիւր ոչխարն. 'ի կատարմանէ անտի արդարութեանն մոլորեցաւ այն՝ որ մոլորեցաւ։ Օրինաւորացն առակեաց զայս առակ։ Կամ յարդարութենէ անտի բնութեանն մոլորեցաւ այն՝ որ մոլորեցաւն։ Կամ զպատկերն Ադամայ առակեաց 'ի դրամ։ Ընդէ՞ր լինի ուրախութիւն վասն մեղաւորաց՝ զի ապաշխարեն առաւել, քան վասն արդարոց՝ զի ոչ մեղան։ Այլ քանզի ուրախութիւն զկնի տրտմութեան լինի. և զի եղև նոցա տրտմութիւն զի մեղան, լինի ուրախութիւն յորժամ ապաշխարեն։ "Ուրախ լինել, ասէ, պարտ էր. զի եղբայրս քո այս մեռեալ էր և եկեաց և կենդանի եղև", և այլ ևս։ Եւ ուրախութիւն և տրտմութիւն հոգւոց չարչարանք են, զիա՞րդ յերկինս տրտմեցուցանեն և ուրախ առնեն։ Այլ դատապարտեցան 'ի մեղս, անուանեցաւ տրտմութիւն 'ի վերինսն, զի մեք լիցուք չարչարեալք։ Զի եթէ զհրեշտակս տրտմեցուցանեն մեղքն մեր, քանի՞ ևս արժան է մեզ ապաշխարել. իբրև զայն՝ զի ասէ. Զղջացայ ես, զի արարի զմարդն"։

Այլ միւս ևս առակ երկուցն որդւոց եղբարցն։ "Եւ իբրև վատնեաց, ասէ, զինչս իւր որդին կրտսեր"։ Բայց միտք՝ որ եդեալ են 'ի բանիս յայսմիկ, այս է. եթէ այն՝ որ դառնայ սրտի մտօք, լինի ուրախութիւն յերկինս վասն նորա, այլովք հանդերձ։

Միւս ևս առակ հազարապետին, զորմէ ամբաստան եղեն ծառայք առ տէրն։ Սակայն անօրէն իմաստութիւն գաւառապետին մեղաց գովեցաւ առաջի տեառնն. զի մեղօք վատնեաց զգանձս առաջինս, և անօրէնութեամբ դարձեալ և խորամանկութեամբ եթող զպարտսն վերջինս։ Բայց գովեցաւ նա, զի ոչ իւրով հնարեաց ստացաւ իւր ինչ՝ որ նորա լիցի. այս ինքն բարեկամս և կերակրիչս։ Այլ Ադամ իւրով ստացաւ նա իւր ինչ՝ որ ոչ էր իւր, այս ինքն փուշս ցաւօք հանդերձ։ Գնեցէք ձեզ, ասէ, ո՜վ որդիք Ադամայ, այսու անցաւորօքս որ ոչ են ձեր զայն զձերն՝ որ ոչ անցանեն։

"Քանի՞ցս անգամ, ասէ, եթէ մեղիցէ ինձ եղ-

բայրն իմ թողից նմա · մինչև յեւթն անգամ շա՞տ
է ։ Ասէ ցնա · մինչև ցեւթանասնեկին եւթն՝ եւթն
անգամ ,, · բայց միայն զօրն մի տայցէ նմա , զի մի՛ թա֊
գաւորեսցէ նա փոքուն 'ի վերայ բազմին · զի բարկու֊
թի՛ բարեկամաց նորա և թշնամեաց վնասակար է , և
'ի նմանէն վառեալ բորբոքին ամենայն չարիք իբրև
'ի չար շտեմարանէ · և ժպրհութե՛ իւրով ժպիրհն
զանցանել տիրել 'ի վերայ ամենայն աւուրն ։ Վասն
այսորիկ կանխեաց յառաջագոյն բժիշկն , և փակեաց
զճանապարհն , և հնազանդեաց զօրն ամենայն 'ի
հաշտութի՛ նորա , յայնմիկ՝ զի մինչև ցեւթանասուն ան֊
գամ եւթն եւթն ։ Եւ զի կարծեաց եթէ կատարած
գոյ ողորմութե՛ց , և թիւ է շնորհաց , և թիւն եհաս
յաւուրս և 'ի ժամս իւրեանց · և կշտամբեալ յան֊
դիմանեցաւ յայնմիկ՝ զի անց թիւն թողութեան ըստ
թիւ յանցանացն · իսկ ո՞վ յանցանիցէ 'ի միում ա֊
ւուր զայս ամենայն ։ Մի՛ զի պարտաւորեցաւ նա յայ֊
սըմ կողման՝ յաղթեսցէ նա պարտաւորելո՛յն , որ
յանցուցանէ զմեզ վասն յուսոյ թողութեանս այսո֊
ցիկ ։ Զի 'ի կատարեալ անդ էր և 'ի կատարած , և
յիջանել արեգականն կատարի օրն , և լուծանէ ըզ֊
վկայութիւնն ։

Արդ ետ խրատ ծածուկ լոյսն մեր՝ եթէ մինչ դեռ
լոյս յայտնի կայ , դարձցուք 'ի բարկութե՛ անտի ·
զի մի՛ կնքեսցէ 'ի վերայ մեր վկայն 'ի կատարել անդ ,
և լուսաւորն 'ի կատարածին ։ Զի ազատութի՛ս մեր
յամենայն զօրութե՛ յղենայ , և վաղվաղակի անցու֊
ցանէ քանիցս անգամ և ծնանի և աճեցուցանէ
զպտուղ նմանող սերմանեաց զոր ընկալաւ ։ Վասն
այսորիկ Առաքեալ ասէ · "Արեգակն 'ի վերայ բար֊
կութե՛ ձերոյ մի՛ մտցէ · և մի՛ տայք տեղի սատանայի ,,
հասանել պտղոց նորա զոր սերմանէ 'ի մեզ · այլ
մինչ դեռ մատաղն իցեն սերմանիքն՝ հատցուք , և
մինչ չև իցէ տուեալ զպտուղն՝ խլեսցուք ։ Զի ոչ լի֊
նի վաղվաղակի սպանումն առանց նախանձու · քան֊
զի ոչ կատարել կարէ զգործ իւր թշնամին առանց
զինու իւրոյ ։

Որպէս ամենայն պիտոյիւք այցելու եղև Քրիստոս
հօտիցն իւրոց , սոյնպէս և յայսմ միանձն 'ի տրտմու֊

թէ աստի մխիթարեաց զնոսա, 'ի յասել անդ իւրում. ուր մի իցէ, անդ եմ և ես, զի մի տրտմեսցին ամենայն միանձունք. զի նա ինքն է ուրախութիւն մեր, և ընդ մեզ է նա: Եւ ուր երկու իցեն, անդ իցեմ և ես. զի ողորմութիւն շնորհացն նորա հովանի է 'ի վերայ մեր: Եւ յորժամ երեք իցեմք, իբրև յեկեղեցի ժողովիմք. զի նա ինքն է մարմին կատարեալ դրօշմ Քրիստոսի: Եւ այն՝ զի ասէ "Հրեշտակք դոցա յերկինս տեսանեն զերեսս Հօր իմոյ". այս ինքն աղօթք նոցա:

Նաւ եղև իբրև եկին պատմեցին նմա վասն գալելիացոցն, որոց զարիւնն Պեղատոս խառնեաց ընդ ողջակեզս նոցա 'ի տօնի անդ թագաւորութեան Հերովդի, 'ի ժամանակին իբրև եհատ նա զգլուխն Յովհաննու սրով, զի անիրաւութիւն սպանաւ և առանց օրինաց. զօրս արար Պեղատոս, և յղեաց կոտորեաց զամենեսին որ միանգամ գտան 'ի քաղմականի անդ: Եւ զի Հերովդի ոչ ինչ կարաց առնել, սատակեաց կոքոյս զտաքսատս զօրաց նորա վասն անարգանացն նորա: Եւ քարկացաւ 'ի նմանէ մինչև յօրն դատաստանին տեառն մերոյ, զի եղեն պատճառք հաշտութեան 'ի մէջ նոցա: Պեղատոս առ խառնեաց զարիւնս նոցա ընդ ողջակեզս նոցա, զի արգելեալ էին նոքա յիշխանութենէ անտի Հռոմոց, զի մի իշխեսցեն մատուցանել ողջակեզս պատարագաց: Եգիտ զնոսա Պեղատոս զի անցին զօրինօք, և մատուցին ողջակեզս պատարագաց, և կոտորեաց զնոսա անդէն 'ի տեղւոջ 'ի նմին ժամանակի. վասն այսորիկ ասէ. "Խառնեաց զարիւնս նոցա ընդ ողջակեզս նոցա": Կամ փորձելով իսկ եկին փորձել զնա[1] իբրև զայն զհարկացն. զի տեսցեն եթէ հաճոյ լիցի նմա կոտորելն նոցա վասն ողջակիզացն իւրեանց, ահա եղև նա հակառակ օրինացն, և փոխանակ հեթանոսաց. և եթէ լինի նա 'ի կոյս օրինացն, եղիցին զնմանէն ամբաստան առաջի Պեղատոսի՝ թէ հակառակորդ է արքայութեան Հռոմոց:

Մի՛ւս ևս այլ առակ: "Այն միոջ, ասէ, տնկեալ

1 Յօրինակին 'ի լուսանցսն զՔրիստոս:

էր յայգւոջ իւրում Թզենի. և ասէ ցմշակն „. այս ինքն օրէնք զօրէնսն երեսս առ: "Այս երեք ամք են, ասէ, զի գամ խնդրել զպտուղ 'ի Թզենոյ անտի „. վասն երից գերութեանցն որ նոքօք գերեցան՝ զի խրատեսցին, և ոչ խրատեցան: "Զօր տարապարտ, ասէ, հարի ես զորդիսն ձեր, և խրատ ոչ ընկալան „: Եւ զի յայտ արասցէ՝ թէ յետ այնորիկ երկայնամիտ եղև նա առ նա, յասել անդ իւրում ցմշակն "Հատ զդա 'ի բաց: Պատասխանի ետ մշակն և ասէ ցնա. Թող զսա այս ամ ևս „: Ցանձն առ երկայնամիտ լինել նոցա. այս ինքն ժամանակն այն եւթանասունն եւթներորդացն: Քանզի 'ի ժամանակ դարձի անդ իւրեանց կատարին նոցա երեք ամք. սոյնպէս մի ամ վասն այնր ժամանակի՝ որ յառաջ քան զգալուստ նորա է, զի 'ի դատակնքի անդ նորա սահմանեցաւ վճիռ 'ի վերայ նոցա: Պտուղ հաւատոցն խնդրեցաւ 'ի նոցանէ, և տալ նմա ոչ գտաւ: Բանն 'ի տեղւոջ իւրում կատարեցաւ, զի ասէ. "Խնդրեցի ես 'ի նոցանէ այր մի խրամակարկատ, և ոչ գտի 'ի նոսա „:

Երեք ամք այն է, զի եցոյց 'ի նոսա զանձն իւր՝ եթէ փրկիչ է նա. և զի կամեցաւ նա լուծել զնա, նմանեցաւ գործն այնմ առաջնոյն՝ զի ասաց Հայր ցՄովսէս. "Թոյլ տուր ինձ ջնջել զդոսա յերեսաց իմոց „. ետ նմա պատճառս աղաչել խնդրել յինքենէ: Սոյնպէս և յայսմ վայրի եցոյց մշակին՝ եթէ կամեցաւ լուծել զնա. յայտ արար զհաւանութիւն իւր մշակն, և եցոյց զգթութիւն իւր ողորմածն: Եթէ յամէ՝ եթէ ոչ արասցէ պտուղ, լուեսցի 'ի մշակէ անտի. ոչ եթէ վրէժխնդիրն եհատ իբրև զայն զՄովսէսին, իբրև հաւանեցոյցն և լուելի եղև ինքն: Ասէ. վասն զի մերձեալ է օրն կործանման նոցա, և հասեալ է որ ինչ անցանելոց է ընդ նոսա: Եթէ չար էին բռունք դպրացն, ոչ էին ծանունք բանք նոցա. եթէ պտուղք էին բանք նոցա և սուրբ էին մատունք նոցա, միով 'ի մատանէ՝ որպէս և կարծեաց վասն նորա մշակն, և յանձն առ վասն նորա տէր այգոյն: Եւ եթէ մշակին խոնարհեցաւ ուսուցանել նմա զբարս Թզենոյն, փորձելովն գիտաց զբարսն. զի եկն խնդրեաց զերիս ամն՝ զգիտութիւն նորա փորձէր: Ոչ ասեմք՝ եթէ

որոմն իցեն նոքա, և մարթի ընտրել զնոսա. և սուրբ ցորեան իցեն նոքա, զի մարթի և խոտել զնոսա։

«Ոչ, ասէ, ելանեմ 'ի տօնի աստ». այս ինքն 'ի խաչ։ Ոչ ասաց եթէ 'ի տօնն, այլ 'ի տօնի, զի ոչ եղբարք նորա հաւատացեալ էին 'ի նա։ Ասեն ցնա. «Ոչ, ասէ, որ զգաղտնի ինչ գործէ», և այլ ևս։ Եւ զի մատնել կամէին զնա, վասն այսորիկ խաբեաց զնոսա. ոչ ելանեմ, ասէ։ Եւ զի ստուգեսցի այն՝ եթէ մատնել խնդրէին զնա և սպանանել, յայնմանէ՝ զի 'ի ծածուկ ել չոգաւ նա 'ի տօն անդր։

Եւ զի ասէ «Ընդէ՞ր խնդրէք սպանանել»։ Երեք կարգք եղեն տեառն մերոյ. մի՝ ածութե նորա միայնութք, և երկուս՝ ածութեն և մարդկութե նորա խառնութք, և երեք՝ մարդկութե նորա միանձուք։ «Ի սկզբանէ Բան և ած», այս ածութեն. «Եւ ոչ ոք է, ասէ, որ ել յերկինս, բայց եթէ որ էջն յերկնից որդի մարդոյ», այս խառնութեն. և զի ասէ «Ընդէ՞ր խնդրէք սպանանել զիս զայր մի՝ որ զճշմարտութի խօսիմ», այս մարդկութեն։

## ԳԼՈՒԽ ԺԵ

ԵԿՆ մեծատունն առ դատաւորն կաշառով քաղցրը լեզուոյ պատրախառն. եցոյց դատաւորն՝ եթէ կաշառք և ակնառութի 'ի դատաստանի նորա չիք։ Զի՞ կոչես զիս բարերար. զի առ այն ինչ՝ զոր դու յինէն կամիս ուսանել, ես ստոյգ եմ։ Այլ առ կինն մեղաւոր ստոյգն բարերար եղև. զի նա իբր առ Թողիչ եկն, բայց սա իբրև առ օրէնսդիրն, այն՝ որ անփոփեաց զողորմութի գթութե իւրոյ 'ի ժամու անդ օրէնսդրին, և ասէ. «Ամենայն որ սպանանէ, մեռցի»։ «Զինչ ինչ, ասէ, արարից զի կեցից»։ Զսաստկութի ստուգութե իւրոյ եցոյց դատաւորն։ Այլ իբրև եցոյց և օրէնսպահն թէ արարեալ է նորա ըզպահպանութիս օրինացն, յայնժամ զուարթացաւ ցնծալով ընդ առաջ նորա օրէնսդիրն. այս ինքն՝ եթէ այն քննութիւն որ յառաջն էր՝ ինչ ոչ օգնէ, բայց այս պահպանութիս օգնէ։ «Եթէ կամիս, ա-

սէ, 'ի կեանս յաւիտենից մտանել, պահեա զպատուիրանս ,, ։ Մարդահաճութիւս բարիոքս բազում գիտաց կոչել ակնառութք ։ Այլ Որդի զմին բարերար գիտաց եթէ բարերար է, որ ոչ յայլ ումեքէ ուսաւ բարի առնել. զի անուամբն որով պատուեաց մեծատունն զՈրդի սուտակասպասութն, նովին այնու իսկ անուամբ պատուեաց Որդի զՀայր ճշմարտութք. ոչ իբրեւ հաճոյ լինի նմա, այլ իբրեւ վկայէ նմա ։

Դարձեալ կոչեաց զնա բարերար. իբրեւ յանօթտայ նմա, որպէս եւ տան ոմանք ընկերաց իւրեանց զանուանս բարիոքս ։ Փախեաւ տէր մեր յայնմանէ, զի ետ նմա մարդ. զի յայտ արասցէ՝ թէ 'ի Հօրէ ստացեալ ունի նա զայս բարերարութիւս բնութք եւ ծննդեամբ, եւ ոչ անուամբ ։ Մի միայն է, ասէ, բարերար. եւ ոչ լռեաց, այլ յաւել եւ՝ Հայր, ասէ. զի յայտ արասցէ՝ եթէ Որդի բարերար գոյ նորա նման նմա ։ Կոչեաց զնա վարդապետ բարերար իբրեւ զմի 'ի բարերար վարդապետաց ։ Չիք, ասէ, ոք բարերար որպէս եւ կարծեցերդ. բայց միայն մի ածն Հայրն ։ Ած՝ զի ասաց, զի յայտ արասցէ եթէ վասն որոյ խօսի. այլ Հայր, զի յայտ արասցէ՝ եթէ չէ մարթ կոչել Հայր, եթէ ոչ վասն Որդւոյ ։ Եւ զի հանդերձեալ էին առնել աստուածս բազումս, յերկինս, ասէ, այլ ոք չիք բարերար, բայց միայն մի Հայր՝ որ յերկինսն է ։ Ոչ եթէ ած եւ ած, այլ ած յայ, եւ բարերար 'ի բարերարէ ։ Ած 'ի յայնմիկ, զի ասէ՝ Հայր ։ Արդ եթէ լսես դու վասն բարիոք ծառայ, նոյնժամայն ձգտեալ լինի վկայութի բարիոք եւ 'ի վերայ պտղոյ նորա ։ Արդ քանզի իբրեւ յօրինաց եկն օրինաւորն ուսանել, իբրեւ յօրինաց արար նմա պատասխանի՝ եթէ "Ես եմ, եւ չիք այլ ոք բայց յինէն ,, ։ Սոյնպէս եւ յայսմ վայրի "Չիք, ասէ, բարերար, բայց միայն մի ,, . եւ երկոքեան մի են. եւ այն՝ զի ասէ. "Լուր, Իսրայէլ, տէր ած քո տէր մի է ,, ։

Բայց դարձեալ մեծացաւ նա ըստ օրհնութեցն օրինացն, եւ յուսացաւ նա յերկրաւոր մեծութիւն իւր զոր խոստացան օրէնքն. եւ եկն նա իբրեւ յուսացեալ՝ առնուլ վկայութի 'ի տեառնէ մերմէ զմեծու-

թենն իւրոյ և զգործոցն իւրոց։ Հարց զնա վասն օրինացն, իբրու պատրաստեալ էր նա յետոյ հարցանել մի ըստ միոջէ, եթէ այն որ պահեն՝ մինչ հատուցումն լինի՞ նմա աստէն յերկրի։ Այլ թող տէր մեր 'ի պահպանութեց անտի օրինացն սակաւիկ մի. զի յորժամ եկեսցէ նա ասել՝ թէ զի՞նչ ևս պակաս եմ անտի։ Իբրու նա հայէր եթէ ահաւանիկ երկրորդէ նմա տէր մեր զմնացորդսն զայն՝ որովք կատարեալն էր, որպէս և Պաւղոսն, ած նմա տէր մեր զայն ինչ՝ ոչ եթէ որում հայէր լսել, այլ զայն ինչ՝ զոր ոչն կամէր, և ոչ անկանէր 'ի սիրտ նորա լսել։ Երկրորդեաց նմա զճշմարտութիւն օրինացն, և յաւել նմա կնիք զհաստատուն կերակրոցն։ Երթ, ասէ, դիր զայդ մեծութիւն զերկրաւոր յերկինս, և յուսա 'ի դա, զի քեզ իսկ պահեալ է։ Որքան յերկրի է, չարաչար յուսացեալ ես դու 'ի դա. և ուր գանձքն քո իցեն, անդ և սիրտ քո իցէ և ոչ յերկրի։ Եւ փոխանակ կաթին և մեղու տղայոց, բևեռք և խաչ կատարելոց։

Եւ զի ետես նա զնա, եթէ 'ի սկզբանէ իսկ ամենայն սիրտ իւր յաստէն յերկրէ թաղեալ էր, զարմացոյց թօթափեաց զնա 'ի փշոյ անտի երկրէն, և ընթացոյց զնա յերկինս. Ոչ ոք ասէ բարեբար բայց միայն մի՝ որ յերկինս է։ Փոխանակ երկրի եցոյց նմա զերկինս, և փոխանակ հարցն իւրոց՝ մի հայր։ Եթէ, ասէ, բարեբար մի . . . յերկինս է նա։ Վերացոյց զսէրդ քո յերկրէ աստի յերկինս առ բարեբար՝ զոր սիրես դու։ Այլ իբրև դարձաւ նա, ասէ տէր մեր. «Որչափ դժուարին է որ յինչս յուսացեալ են», զի յուսացեալ են՝ թէ շահ օգտի վասն այսորիկ որոշեաց. բայց դժուարին է նոցա զի 'ի ձեռն խաչի մտցեն յարքայութիւն։ Ինձ, ասէ, դատաւորիս քում եթէ ոչ տաս գործս, ոչ առնուս կեանս։ «Մի ևս, ասէ, պիտոյ է քեզ»։ Արդ զպակասութիւն հնոյն ելից նորին. վասն այսորիկ եկի կատարել զնոսա։ Զի թէ օրէնքն օրհնեն՝ թէ ստացարուք և մեծացարուք, և դու թօթափես զմեզ 'ի ստացուածոց։ Մի ևս պիտոյ է քեզ. ահաւասիկ այս կատարումն քո թերութի է օրինացն։

Բայց գիտասջիր, թէ որ տայ ստացուածս, և միւսն ևս պահէ զնոսա՝ զի մի՛ լիցին գողացեալ, մի են նոքա. մին ետ մեծութիւն յերկրի, և միւսն ևս պատրաստեաց տուն գանձուն յերկինս: Արդ օրէնքըն ետուն զերկրի ստացուածս, և տէր մեր զքարձանց ստացուածս. այս ինքն մի մի 'ի ստացուածոց անտի, որպէս և հնար գոյ ստանալ ստացուածս յերկրի յորժամ սպանեն զժառանգաւորն նոցա. այլ ստացուածք քարձանց յորժամ սպանեալ լինին՝ ստանան զնոսա: Ետ ած մեծութի հարց, զի յորդորեսցէ նովաւ զհրեայսն՝ զի նմանեսցեն նոքա հարց իւրեանց, և 'ի հարց գտեալ ուսցին զկերակրչութի աղքատաց: Բայց որդիք հայեցան ընդ մեծութի հարց, և ոչ ընդ արդարութի նոցա. այլ հեթանոսք հայեցան ընդ արդարութիւն, և ոչ ընդ ստացուածս նոցա. և ահաւանիկ ասաց նմա՝ բայ "Զայս արասցես և կեցցես": Զիարդ է դժուարին. այլ դժուարին է նոցա 'ի դուռն կատարելոցն և խաչելոցն մտանել 'ի նա: Զոր օրինակ գոյ դուռն կուսանաց, և գոյ դուռն և աշխարհականաց. և 'ի դուռնն իւրեանց աշխարհականքն կարեն մտանել յարքայութիւն, բայց 'ի դուռըն կուսանաց դժուարին է նոցա մտանել 'ի նա: Նա և տէր մեր զայս ասաց, դժուարին քա մտանել, ոչ եթէ ոչ գոյ հնար:

Փարիսեցիք խնդրողք պատճառանաց պատճառս կամէին գտանել. եկն մի 'ի նոցանէ փորձել զտէր մեր՝ տեսանել եթէ զկատարումն զոր եցոյց զօրէնսըն լուծանէ. Նոյնժամայն եխից տէր մեր զբերան փորձչին, յայնմիկ՝ զի ասէ "Չիք բարերար, բայց մի". և երկու, "Զպատուիրանս գիտես դու": Մերժեաց զօտարութիւն, զի մի՛ անուանեսցի. յայտ արար՝ եթէ պատուիրանքն կենարարք կանխագոյն են քան զնա: Դարձեալ եցոյց եթէ կարէք դուք կեալ: Եւ դարձեալ երիցս անգամ զի հայեցաւ ընդ նա սիրով, զի յայտ արասցէ՝ եթէ որչափ են սիրելի նորա կատարեալք առաջին օրինացն, յայնմիկ՝ զի ասէ "Միւս ևս պիտոյ է քեզ". զի ցուցցէ՝ եթէ ոչ է 'ի զուր և 'ի տարապարտ գալուստ նորա: Եւ դարձեալ թերութի լիութե ոչ է օտար. զի եթէ ստեաց փարիսեցին

յայնմիկ զի ասաց՝ թէ արարեալ է իմ, ո՞ արգելոյր զնա ստել և ասել՝ թէ և զայս ես առնեմ. զի սուտ մարդ ոչ ինչ երկնչի 'ի ստել ։ Այլ զի մի՛ ամաչեսցէ նա յասել անդ ի կրում՝ եթէ արարեալ է իմ զայս, ո՞չ ամաչէր նա յայնցանէ՝ որք գիտէին զնա թէ ոչ արար ։

Եւ երկու՝ զի տրտմեցաւ նա, և արդարեւ ճշմարիտ տրտմեցաւ նա, յայնմանէ՝ զի ետես տէր եթէ տրտմեցաւ նա. զի եթէ էր ստեալ նորա, ոչ տրտմէր նա, զի և ոչ առնել պատրաստեալ լինէր նա. այլ իբրև այր մի՝ որ կարծէր եթէ կատարեալ իցէ նա, եկն ցուցանել յայտ առնել զգովեստն իւր. այլ իբրև ետես նա՝ թէ թերի է, տրտմեցաւ նա. զի ետես զի մնացին պարծանքն նորա. զի արդարութիւն նորա ըստ պարծանաց օրինաց գործեալ էր նորա, և առեալ էր զբարութիւս փոխանակ ընդ նորա ։ Եւ զի հայեցաւ ընդ նա սիրով, զի ցուցցէ եթէ որչափ սիրելի են նորա որ ընթանան 'ի կատարումն ։ Իբրու պաշտէ սոյն իսկ այս զայն՝ որ 'ի ներքոյն է քան զնա, սակայն նմա որ 'ի վերոյն է քան զնա՝ անսամ ։ Սիրեաց զնա, զի յայտ արասցէ եթէ որչափ սիրեցեալ է այն՝ որ 'ի վերին աշտիճանն ձկտի ։

Եւ այն՝ զի ասէ "Վարդապետ բարերար", կաշառովք կանխեաց նա ։ Յառաջագոյն կաշառեաց զտէր մեր. այլ տէր մեր հան ընկէց 'ի բաց զպատճառս աչառանացն, զի ցուցցէ՝ եթէ զարդարն պարտ է ասել և լսել. և զի հայեցաւ ընդ նա սիրով, բայց թերեւս այսուիկ պարտեսցի մտցէ նա 'ի կատարումն՝ որ նովաւ գործեալ լինէին. զի արդարեւ առ ինքն ։ Այլ քանզի արդարութիւն նորա ըստ օրինացն է, զի վասն յուսոյ բարութեանց որ աստէն է՝ գործէին նոքա, յուսացաւ նա 'ի մեծութիւնն իւր, իբրև զի թէ վարձք իցեն այն արդարութեանն նորա ։ Վասն այսորիկ դըժուարին է մեծատանցն, և որք յուսացեալ են յայսմիկ, եթէ ինչք, ասեն, իւրեանց վարձք հատուցման վաստակոց իւրեանց են. զի ոչ կարեն թողուլ զինչս իւրեանց՝ որք կարծեն թէ հատուցումն իցեն փոխանակ ընդ արդարութեանն իւրեանց ։ Զի մի՛ ասիցէ՝ եթէ զառաջինն ցասմամբ իսկ եղ ընդ առաջ իմ, և

վասն այնորիկ մերժեաց զիս պատճառանօք, ասէ. “Մի միայն է բարերար „. և նա՝ թէ այդպէս է՝ ո՞չ է բարերար. զի ահաւանիկ որդի բարերարի կոչի նա. վասն այսորիկ հայեցաւ ընդ նա սիրով, զի յայտ արասցէ՝ թէ նա ինքնին մերժեաց զանձն իւր։ Եւ նա է մեծատունն՝ որ զգեցեալն էր զծիրանիս. յայնմանէ՝ զի ասէ “Հայր իմ Աբրահամ „, և յայնմանէ՝ զի ասէ “Անդ են Մովսէս և մարգարէքն „, ահաւանիկ իսրայելեան էր նա։

“Ոչ իք, ասէ, բարերար, բայց միայն մի „։ Եւ դու, տէր, ո՞չ ես բարերար։ Մի միայն է, ասէ, բարերար Հայր՝ որ յերկինս է։ Եւ գալուստ քո ո՞չ ահա բարերարութիւն է։ Այլ ես, ասէ, ոչ եմ եկեալ յանձնէ իմմէ։ Եւ գործքդ քո բարիոք ո՞չ ահա բարերար են։ Հայր իմ, ասէ, որ յիս է, նա գործէ զգործս զայս։ Եւ նոր քարոզութիւնդ քո ո՞չ ահա բարերարութիւն են։ Այն, ասէ, որ առաքեաց զիս, նա ետ ինձ պատուէր զինչ խօսեցայց և զինչ ասացից։ Եթէ գալուստ քո և բանքդ քո և գործդ քո 'ի Հօրէ են, ո՞չ ահա բարերար ես դու 'ի բարերարէ։ Այլ մարգարէն և վասն Հոգւոյ ասաց. “Հոգի քո բարի, ասէ, առաջնորդեսցէ ինձ „, և այլ ևս։ Արդ քանզի դարձաւ մեծատունն, ոչ ետ նմա տէր պատճառս փախչել նոքօք. որպէս զի կշտամբեալ յանդիմանեսցի փախչութիւն նորա։ Քանզի պատուէր նոր տալոց էր, հաստատեաց զօրէնսն, և պատուեաց զտէր օրինացն. զի մի ասասցէ՝ եթէ հակառակ է սա երկոցունց նոցա, և նա ևս մուծցէ նոր օտարութիւն։ Զի ահաւանիկ եցոյց՝ եթէ ընդունելի էր աղքատութիւն յառաջ քան զնա. զի հրեշտակքն տարան զնա 'ի գոգն Աբրահամու։

“Օի՞, ասէ, կարդաս զիս բարերար „։ Օրինակեաց զխոնարհութիւն նորա, զի զՀայր պատուեսցէ. զի ահաւանիկ յայլ տեղիս կոչեաց զանձն իւր բարերար, յասել անդ իւրում՝ եթէ “Ակն քո չար է, ասէ. այլ ես առատ եմ „. և դարձեալ. “Հովիւ քաջ տայ զանձն իւր փոխանակ խաշինն իւրոյ „, և այլ ևս։ Եւ զի ասէ “Զի՞ կոչես զիս բարերար „, ընդդէմ մտաց դնելոյ նորա ետ նմա զպատասխանին.

զի նա այսպէս կարծէր վասն նորա՝ եթէ 'ի յերկրէ աստի իցէ նա, և իբրև զմի ոք 'ի վարդապետաց անտի իսրայէլացոց իցէ նա ։

Մարդ հայեցաւ ընդ նա իբրև զմարդ, և կոչեաց զնա բարերար իբրև զա̃ծ․ և վասն այսորիկ "Զի՞ կոչես զիս բարերար„․ այս ինքն, եթէ արդարև ճշմարիտ է քեզ՝ եթէ 'ի վերուստ եկեալ եմ, և որդի եմ բարերարի, բարիոք կոչեցեր զիս բարերար․ և եթէ յերկրէ աստի եմ, որպէս դու կարծեցեր, չարաչար կոչեցեր զիս բարերար ։ Զի եթէ էր կոչեցեալ զնա ա̃ծ բարերար, և նորա հրաժարեալ էր, գոյր թերևս տեղի բանի նորա ։ Վարդապետ կոչեաց զնա, և ոչ Աստուած․ և զիա՞րդ հրաժարէր նա յանուանէ աստի յայսմանէ, այն՝ որ ասացն վասն անձին իւրոյ՝ եթէ "Հովիւ քաջ տայ զանձն իւր փոխանակ խաշանց իւրոց„ ։ Եւ ահա ամենայն վարդապետք՝ որ ուսուցանեն զուսումն սրբութե̃ն, և ամենայն ստոյգք և արդարք՝ բարերարք կոչին ։ "Բարի, ասէ, առնէ տէր բարեաց„ ։ Եւ դարձեալ․ "Որ սերմանէր սերմանիս ցորենոյ սրբութե̃ն, նա ինքն է որդի մարդոյ, և սերմըն բարեաց որդիք արքայութե̃ն„ ։ Եւ զիա՞րդ մարթի լինել սերմն բարիոք, և սերմանահանն չար․ և զիա՞րդ հրաժարէր նա 'ի բարերար անուանէ անտի, և կցորդ առնէր զանձն իւր տէրութե̃ ա̃ծութե̃ն և երկրպագութեան . . . մի 'ի չարեաց անտի 'ի սէր առաջնորդութեան համարձակեցաւ մտանել 'ի վերայ մարդկութե̃ն ։ Վասն այսորիկ պեղծ համարեցաւ տէրն մեր զամբարտաւանութիւն առաջի ա̃յ․ փոխանակ զի պեղծ առնէ նա զմարդիկ առաջի ա̃յ ։ Արդ զխոնարհութի̃ արար սանձս մարդկութեանս, զի նովաւ անսաց կամացն օրինացն առաջնորդաց իւրոց ։

Հաւասար էր մահ մեծատանն և Ղազարու, այլ ոչ էր հաւասար հատուցումն յետ մահուն Ղազարու․ այն զի և ոչ ծառայքն անգամ կամէին մատչել 'ի նա, 'ի վերայ բազկաց հրեշտակաց փառաւոր լինէր ։ Եւ զի ոչ ետ նմա մեծատունն տեղի 'ի տան իւրում, գոգն Աբրահամու եղև բանակետղ նորա ։ Այլ մեծատանն կրկին էին տանջանք իւր․ մին՝ զի տանջէր նա, և միւս՝ զի հայէր նա ընդ Ղազար՝ զի

ուրախ լինէր ։ Զքահանայս ժողովրդեանն առաքեաց 'ի մեծատունն՝ որ զգեցեալ էր զծիրանիս, որ չիք ինչ պատուական քան զնա. և զաշակերտսն 'ի խաչին առաքեաց 'ի Ղազար, զի ոչ ոք էր տկարացեալ իբրև զնա ։ Զանունն բարեկամաց իւրոց յայտնեաց 'ի ձեռն բարեկամին Ղազարու սիրելոյ իւրոյ, և զանունն թշնամեաց իւրոց դարձեալ կամեցաւ յայտնել յայնմիկ՝ զի ասէ. “Եթէ Մովսիսի և մարգարէիցն ոչ լսեն ,, , այլովք հանդերձ ։ Արդ ոչ եթէ որ կենդանիքն են՝ նոքա են կենդանիք, և ոչ եթէ որ թաղեալ են՝ նոքա են մեռեալ ։

Արդ տես, որչափ գրգեալ փափկացաւ մեծատունն, այնպէս և վատթարացեալ խոնարհեցաւ. և որչափ տկարացեալն էր Ղազար, նոյնպէս և մեծ եղև և պսակումն իւր ։ Եւ վասն որոյ արդեօք զԱբրահամ ևեթ քան զամենայն արդարս տեսանէր նա, և զՂազար 'ի գոգն նորա. այլ քանզի բարերար աղքատաց էր Աբրահամ, վասն այնորիկ ետես նա զնա. զի ուսուսցէ մեզ, զի մի յուսասցուք 'ի թողութիւն վախճանի, իբրու պտուղ թողութեան ոչ երևեսցի 'ի մեզ ։ Զի եթէ Աբրահամ, այն որ բարեկամն էր օտարաց, այն որ 'ի վերայ սոդոմայեցւոցն արար զողորմութիւն, ոչ կարաց ողորմել 'ի վերայ այնորիկ՝ որ ոչն գթացաւ 'ի վերայ Ղազարու, զիա՞րդ լինիմք մեք յուսացեալ՝ եթէ լինիցի մեզ թողութիւն ։ Զի նա կարդայր նմա հայր իմ, և Աբրահամ կոչէր զնա որդեակ իմ, և օգնել ինչ նմա ոչ կարաց ։ “Յիշեա դու, ասէ, որդեակ իմ, զի ընկալար զբարիսն քո 'ի կեանս քո, և Ղազար զչարչարանսն իւր ,, ։

Վասն վարձկանացն զոր կալաւ 'ի վարձու, տիրագոյն յերիսն և 'ի վեցն և յինն. և իբրև սկսաւ տալ վերջնոյն, առաջինքն այսպէս համարէին՝ թէ աւելի ինչ առցեն. և նա հաւասարեաց զնոսա ։ Եւ իբրև տրտնջեցին նոքա, ասէ. “Եթէ ես առատ եմ, ակն քո ընդէ՞ր է չար ,, ։ Այլ 'ի նոսա, ասէ, շնորհք եղեն, և սոքա զուարթ երեսօք աղաղակեն վասն վարձուց իւրեանց ։ Արդ հայեաց դու ընդ բանս ընդ այս զիարդ ասացաւ. իբրև եհարց նա զնոսա՝ եթէ “Ընդէ՞ր զօրս ցերեկ դատարկ կայցէք ,, , ասացին ցնա. “Ոչ ոք եկն

կալաւ զմեզ 'ի վարձու „ ։ Արդ նոքա պատրաստեալ էին , քանզի ոչ ոք կալաւ զնոսա 'ի վարձու ․ զի այն՝ որ առ 'ի չգոյի զարթուցչի ննջէ և երթայ՝ յայտ է , և այն՝ որ վասն դատարկութեան իւրոյ ննջէ , և որոշեալ է ․ զի մին վասն գործոյն իւրոյ շնորհ ունի զարթուցչին իւրոյ , և միւսն ևս վասն դատարկութեան իւրոյ թշնամանս հատուցանէ զարթուցչաց իւրոց ։ Յայտ է նստել դատարկութեան վատին քան զնըստել ժրոյն ։

Օժիրսն , որ առ ոչ գոյի գործոյն և գործավարի՝ խափանեալ կային դատարկ , ձայն վարձեաց զնոսա , և բան զարթոյց զնոսա ․ և վասն ժրութե՟ իւրեանց և ոչ վարձս անգամ արկին նորա , որպէս առաջինքն ։ Կշռեաց զվաստակս նոցա գիտու՟ք , և հաւասարեաց զնոսա և 'ի վարձու անդ ։ Այլ զայս առակ զոր եբեր 'ի մէջ , զի մի ոք ասիցէ՝ եթէ ոչ կոչեցայ ես մինչ տղայն էի , չեմ այսուհետև ընդունելի ։ Յայտ արար՝ թէ յորժամ դառնայ մարդ , յամենայն ժամ ընդունելի լինի ։ Եւ զի ոչ սկսաւ տալ նախ առաջնոցն , զի յուսացեալ էին վասն վարձուց իւրեանց ․ զի մի թուեսցի վերջնոցն՝ թէ սակաւ ինչ առնուցուն , սկսաւ նա տալ նախ վերջնոցն ։

Դարձեալ զի եկն նա ընդ առաւօտսն և յերիսն և 'ի վեցն և յինն և 'ի մետասանն , լսի վասն սկզբան քարոզութե՟ նորա , և իբրև կարգելոյն մինչ 'ի խաչելութե՟ անդր , զի 'ի մետասան ժամու անդ եմուտ աւազակն 'ի յայգին դրախտ ։ Եւ զի մի պատուհասեալ լիցի վասն այսր , յայտ արար զկամս իւր ․ զի եթէ էր ուրուք 'ի վարձու կալեալ զնա , վաստակէր նա ․ "Ոչ ոք , ասէ , կալաւ զմեզ 'ի վարձու „ ։

Որպէս տուաք մեք ա՟ծութե՟ն՝ որ ինչ յոյժ խոնարհագոյն է քան զնա , տայ նա մեզ՝ ինչ որ յոյժ բարձրագոյն է քան զմեզ ։ Վարձեալ եղաք 'ի գործ վաստակոյ ըստ զօրութե՟ մեր , այլ հրաւիրեալ եղաք 'ի հատուցումն վարձուց աւելի քան զզօրութի՟ մեր ։ Այլ 'ի վախճան կատարածի տայցեն նմա փառք հաւատացեալք ըստ ազատութե՟ իւրեանց , և ապըստամբք ըստ բռնութե՟ նորա՝ որ կայ 'ի վերայ նոցա , այնմիկ՝ որ ետն ազատութի՟ աստ , և բռնութի՟ անդ ,

և բարեաց և չարեաց. զի ոչ բարիքն անօրինին եթէ կամեսցին, և ոչ չարքն արդարանան եթէ կամեսցին։ Ի գործ այգոյն ոչ ողորմութիւն Նորա պատուհասեցաւ, և ոչ ստուգութիւն Նորա եպերեցաւ։ Ստուգութիւն իւրով եդ՝ որպէս և ուխտեաց, ողորմութեամբ իւրով գթացաւ՝ որպէս և կամեցաւ. յայտ արար՝ եթէ վասն այսորիկ տէրն մեր առակեաց զառակն "Կամ թէ չունիցիմ ես իշխանութիւն 'ի տան իմում գործել զինչ կամիմ"։ Զի եթէ 'ի վերայ դատու և 'ի վերայ վախճանի կատարի, վասն էր եմուտ այս՝ զի ասէ. "Եթէ ակն քո չար է"։ Ո՞ ետ թոյլ վերջին արդարոցն կեալ՝ որպէս և առաջինքն, և ոչ վաստակեցին. կամ 'ի նոսին իսկ յայնոսիկ՝ որ եղենն կալեալ 'ի վարձու ընդ առաւօտուն՝ ո՞չ գոյին 'ի նոսա տղայք որ մեռան. ա՛հաւանիկ Հաբէլ առաջին տղայ մեռաւ, տրտնջէ՞ վասն նորա Շէթ՝ որ եղև փոխանակ ընդ նորա։

Այլ իբրև տեսին Յակովբոս և Յովհաննէս զՄովսէս և զԵղիա ընդ տեառն մերում, ցանկացան ասել. "Տուր մեզ իշխանութիւն նստել մի ընդ աջմէ քումմէ և մի ընդ ահեկէ"։ Ըստ նմանութեան այնոցիկ՝ որ 'ի լերինն, "Կամիմք մեք, ասեն, զի որ զինչ խնդրեսցուք մեք, արասցես մեզ"։ Ասէ ցնոսա. արարից ձեզ, և ոչ արար։ Ոչ եթէ ոչ գիտէր նա զինչ խնդրէին նոքա, այլ տեղեակ իսկ էր թէ լուէին նոքա եթէ ոչ էր նորա խոստացեալ նոցա՝ եթէ արարից ձեզ, զի մի՛ արգելցէ նա զխնդրուածս նոցա 'ի բերանըս նոցա. այլ յորժամ յայտնեսցեն նոքա և այլքն զխորհուրդս իւրեանց, դարձցի նա խրատել զնոսա ամենեսին առ հասարակ։ Եւ զի եհարց նա յայտնապէս յանդիման ընկերաց իւրոց և տրտմեցան ամենեքին, վասն այնորիկ արգել զնա և ոչ ետ, զի մի լիցի նա թշնամութիւն 'ի մէջ նոցա։ Ետես զնոսա զի միամտութեամբ խնդրեցին, և զամենայն խնդրուածս նոցա՝ քանզի տուեալ իսկ էր։ Եւ եթէ ոչ էր նա ճշմարիտ առ խոստումն առաջին, թէ այդ այդպէս է, և ոչ երկրորդ և ոչ երրորդն. և եթէ ճշմարիտ էր, տուեալ իսկ էր. և զի Շմաւոնին ետ, և 'ի նոցանէն արգել, զի ամենեցուն խնդրեաց. ասէ. "Զինչ

որդեօք լինիցի մեզ », և ոչ ինձ. զի եթէ անձին իւրում միայն խնդրեալ էր նորա, և 'ի նմանէն արգելլոյր։ Այլ Շմաւոնս ամենեցուն հասարակաց խնդրեաց, և տէր մեր ամենեցուն եա. և մի ոք 'ի նոցանէն 'ի խնդրելն Շմաւոնի ոչ տրտմեցաւ, այլ զամենեսին ուրախ արար. Թէպէտ և ոչ էր տուեալ, սակայն յայնմ ժամու յորում և խնդրեցինն՝ ոչ էր արժան նոցա առնուլ։ Այլ էր զոր լուան նոքա զի ասաց, և նոքա զայլ խնդրեցին. ասէ. "Ահաւասիկ երթամք մեք յԵրուսաղէմ, և ունին և 'ի խաչ հանեն զնա »։ Եւ թողին նոքա ցուցանել զսէրն իւրեանց զոր ունէին առ նա, զի ընդ նմա անարգեսցին և մեռցին, և սկսան ցուցանել նոքա զսէրն զոր ունէին առանձինն առ նա։ "Տուր մեզ, ասէ, զի նստցուք ընդ աջմէ քումմէ և ընդ ահեկէ »։

Ամենայն զոր պատմեաց Յիսուս առաջի նոցա, զան . . . . . . . . . զի ցուցցէ՝ թէ ով ընթանայ չարչարել ընդ նմա։ "Եթէ չարչարիմք, ասէ, ընդ նմա, ընդ նմա փառաւորիմք »։ Եւ եթէ զի ոչ ունէր իշխանութ̃ի, վասն այնորիկ ոչ ետ, իսկ զիա՞րդ ետ զնա երկոտասանիցն. ե՞տ՝ թէ ոչ. եթէ ոչ ետ, չէ հաստատուն խոստումն նորա. եթէ հաստատուն է, ահա տուեալ է զնա միանգամ ամենեցունց։ Ապա թէ ոչ զիա՞րդ կատարի այն՝ զի ասէ. "Ամենայն որ ինչ միանգամ ունի Հայր իմ, այն իմ է. և զոր ես ունիմ, այն Հօր իմոյ է »։ Այլ քանզի եկին նոքա ընտրել իւրեանց տեղիս յառաջ քան զընկերս իւրեանց, ասէ ցնոսա տէր մեր. "Կարէ՞ք դուք ըմպել զբաժակն, զոր ես ըմպելոցն եմ ». զի յայտ արասցէ՝ եթէ գնոց գնի նա. իբրև զի ասէ. "Վասն այսորիկ և ա̃ծ վերացոյց և բարձրացոյց զնա »։ Իբրև ուսանն նոքա եթէ գործովք գնի նա, ասէ. արդ զի ուսարուք եթէ գործովք լինի ստացեալ, թերևս իցեն՝ զի ընթացան կամ ընթանայցեն աւելի քան զձեզ. սակայն 'ի միտս Հօրն նկարեալ էր այն՝ որ մեծն է ընթացիւք իւրովք առաւել քան զամենայն մարդ, և նմա պատրաստեալ է։ Արդ քանզի ընտրութիւն առանց գործոց եկին առնուլ զնա, մերժեաց զնա տէր մեր առ յինքենէ. և եցոյց՝ թէ ոչ ունի

իշխանութիւն ։ զի մի՛ տրտմեցուսցէ զնոսա. իբրու զայն՝ զի ծսէ. «Զայն ժամ ոչ ոք գիտէ», զի մի հարցցեն վասն նորա ։ «Ոչ է, ասէ, ձեզ տուեալ ըդ-ժամանակս գիտել և զքարիս» ։ Արդ եդ տէր զխըն-դրուածս որդւոցն Զեբեդեայ իբրև զպսակ 'ի միջի. եթէ այն՝ որ առաքինանայ 'ի պատերազմի անդ նորա, պսակեսցի նովաւ ։ «Եւ քննեսցէ, ասէ, զմիտս սրտից նորա, և եղիցին փառք իւրաքանչիւր մարդոյ 'ի մէնջ յայ» ։

Յաղօթս կայր, ասէ, Զակքէոս 'ի միտս իւր և ա-սէ. երանի իցէ ամենայնի, որ արժանի եղև՝ թէ մտցէ այս արդար այր 'ի վանս նորա ։ Եւ ասէ ցնա տէր. «Փութա էջ այտի Զակքէ» ։ Նա իբրև ետես՝ թէ ծանեաւ զխորհուրդս նորա, ասէ. որովհետև զայս խորհուրդ գիտաց նա, զամենայն որ միանգամ գործեալ է իմ՝ գիտէ նա. վասն այսորիկ . . . այն «Որ միանգամ, ասէ, զուրուք տարապարտուց ա-ռեալ իցէ իմ, հատուցից զայն չորեքկին» ։ «Փու-թա, ասէ, և էջ 'ի թզենոյ այտի, զի առ քեզ լի-նելոց եմ» ։ Մոռացեալ լիցի առաջին թզենին Ադա-մայ երկրորդ թզենեաւն մաքսապետին, և անունն Ադամայ պարտաւորի 'ի ձեռն Զակքէի արդարոյ ։ «Ահա՛, ասէ, տէր՝ զկէս ամենայն ընչից իմոց տաց աղքատաց. և զամենայն որ ինչ միանգամ 'ի տա-րապարտուց զուրուք առեալ իցէ իմ, հատուցից զայն չորեքկին» ։ Վասն այսորիկ «Այսօր եղև փըր-կութի տանս այսմիկ» ։ Ցամօթ լիցի ժողովուրդն ու-րացող յանկարծակի աշակերտութեամբն. զի երեկ յափշտակող, և այսօր տուիչ ։ երեկ մաքսաւոր, և այսօր աշակերտ ։

Արդ եթող Զակքէ զարդար օրէնս, և ել նա խորհրդով խուլ 'ի թզենի անդ ։ Խորհուրդ է խլա-ցեալ լսելեացն նորա. բայց նկարեցաւ յելանել անդ նորա 'ի թզենին՝ խորհուրդ փրկութեն նորա ։ Զի եթող նա զխորհուրդս ներքինս, և ել նա վերա-ցաւ 'ի յօդսն միջինս, զի հայեսցի ընդ բարձրեալ ածութեն. այլ փութացոյց տէր մեր և իջոյց զնա 'ի խուլ թզենոյ անտի. և խորհրդիւ Նոյենոյն 'ի գործոցն նորա, զի մի կայցէ մնասցէ նա 'ի խլութե անդ. այլ

եռասցի նա 'ի սէրն տեառն մերոյ ։ Ձուլեաց զնա՝ զի եղծցէ զհնութիւն նորա , զի նկարեսցէ 'ի նմա մարդն նոր ։ Այլ զի գիտասցէ՝ եթէ ծնունդ նոր լինէր անդ , ասէ . "Քանզի և սա ինքն իսկ որդի Աբրահամու է ։

Եկն լոյս յաշխարհ , զի կուրաց տացէ տեսանել , և թերահաւատից հաւատս ուսուսցէ ։ Եւ իբրև եկն եհաս նա առ կոյրն , աղաղակել սկսաւ և ասէ . "Յիսուս որդի Դաւթի , ողորմեաց ինձ ,, ։ Ո՛վ մուրացիկն ; որ կարկառեալ էր զձեռն իւր առնուլ դանկ 'ի մարդկանէ , և գտաւ ընդունել պարգևս յայ ։ "Յիսուս որդի , ասէ , Դաւթի՝ ողորմեաց ինձ ,, ։ Եւ բարիոք իմացաւ նա՝ եթէ որդի է նա Դաւթի , այն՝ որ արար զողորմութիւն 'ի վերայ կուրաց և կաղացն յեբուսացոց ։ Զի՞նչ արդեւք պատասխանի ետ նմա ։ "Հայեաց , ասէ , հաւատք քո կեցուցին զքեզ ,, ։ Եւ ոչ ասաց նմա եթէ հաւատք քո ետուն քեզ տեսանել . զի յայտ արասցէ՝ եթէ նախ կեանս ետ նմա , և ապա զբանալ աչացն ։ Սատանին , ասէ , և արգելուին զկոյրս զայս , զի մի եկեսցէ առ Յիսուս . վասն այսորիկ յաւել ևս յաղաղակել իւրում ։ Իբրև եհարց թէ ո՛վ իցէ այն , ասեն . Յիսուս Նազովրացին ։ Գիտաց նա՝ թէ ոչ սիրով ասացին նմա , թող նա զայն թշնամեացն , և կալաւ նա զայն զբարեկամացն . "Որդի Դաւթի , ողորմեաց ինձ ,, . զի արգելուին զնա՝ թէ գուցէ բանալ աչաց նորա և տեսանէն և մաշին ընդ այն ։ "Կոյր մի , ասէ , նստէր յանցս ճանապարհաց . և անուն էր նորա Բարտիմէոս որդի Տիմէի , և ընկէց զձորձս իւր և եկն ,, ։ Իբրև ետես տէր մեր՝ եթէ աչք ներքին լուսաւոր են , այլ աչք արտաքինք բնաւ և ոչ սակաւ տեսանեն , լուսաւորեաց զաչս արտաքինս իբրև զաչս ներքինս . զի յորժամ կամեսցի դարձեալ ընթանալ գալ առ նա , երևեսցի նմա ։ Իսկ այնոքիկ՝ որ վաճառէին 'ի ներքս 'ի տաճարի անդ զոչխարս և զարջառս այնք էին՝ զոր ժողովէին քահանայք 'ի պատարագէ անտի ։

Եւ փարիսեցին այն՝ որ կայր յաղօթս , ստոյգ էին որ միանգամ ասէր նա . բայց պարծանօք խօսեցաւ ։ Եւ նա խօսեցաւ զմեղս իւր խոնարհութեամբ ։ Հաճոյ

եղև նմա այն՝ որ խոստովանեացն զմեղս իւր քան զայն՝ որ խոստովանեաց զարդարութիւն իւր։ Եւ զմեղս ծանր է մարդոյ խոստովանել փաղփաղակի քան զարդարութիւն. և ա͞ծ ընդ այն հայի՝ որ բարձեալ ունի զծանրութիւն։ Արդ երևեցաւ մաքսաւորն, զի բարձեալ ունէր աւելի քան զնա. և իջանէր արդարացեալ քան զնա, այսու միով միայն՝ որ խոնարհեցաւս։ Զի թէ մեղաւոր էր փարիսեցին, յաղօթսն իւր մեղս 'ի վերայ մեղաց յաւել դարձեալ։ Արդ 'ի մեղաց անտի արդարացոյց նա զմաքսաւորն։ Եւ եթէ զի յաղօթսն եկաց, ահաւանիկ աղօթք նորա բարկացութիւն եղև. արդ 'ի բարկացութէ անտի յայնմանէ ժառանգեա դու զաղօթս մաքսաւորին։

## ԳԼՈՒԽ ԺԶ

Սու զի ասէ «Անէծ նա զթզենին», զի գրեալ է այսպէս. ասէ. «Յորժամ հնձիցես դու զհունձս արտոյ քո, թող զափնիսն աղքատաց. և յորժամ թափես դու զձիթենիսն քո, դոյնպէս արասցես. այսպէս և զամենայն ինչս քո արասցես»։ Իսկ տէր թզենոյն ոչ եղև ունկնդիր օրինացն, այլ արհամարհեաց զնա. և եկն տէր մեր, եգիտ զի ոչ թողեալ էր 'ի նմա ձիռ՝ անէծ զնա, զի այլ մի կերիցէ 'ի նմանէ տէր նորա, որպէս զի նա ոչ եթող որբոց և այրեաց։ Դարձեալ զոր օրինակ գերգեսացիքն զի եդին իւրեանց սահման՝ զի մի ելցեն առ նա, հեղձոյց զխոզս նոցա, զի զմիտս նոցա զուարթացուսցէ, զի ելցեն առ նա յակամայ կամս։ Սոյնպէս և տէր թզենոյն եդ 'ի մտի իւրում, զի մի ելցէ նա առ նա։ Ցամաքեցոյց զթզենի նորա, զի ելցէ առ նա ակամայ. զի յամենայն պատճառս ընդ կեանս մարդկութե կամէր նա։ Կամ զի ասաց նա՝ բայ «Քակեցէք զտաճարդ զայդ, և յերիր յաւուր կանգնեցից զդա», ասեն ցնա. Զքառասուն և զվեց ամ շինեցաւ տաճարս այս, և արդ դու յերիր յաւուր կանգնեսս զդա». և յայտնէ՝ թէ ոչ հաւատային 'ի նա։ Նա և իբրև ցուցանէին նմա զշարդ տաճարին, ասէ. եկեսցեն ա-

ուրք զի քակտեսցի, և Երուսաղէմ աւերեսցի ։

Այլ զի յայտ արասցէ զիշխանութ͞ի ա͞ծութեան իւրոյ, անէծ զթզենին՝ և ցամաքեցաւ, եթէ մերձաւոր գործոյն զոր տեսանեն՝ հաւատարիմ լիցի այն՝ որ լինելոցն է ։ Եւ զի անէծ զնա, զի մի լիցի այնուհետև ծնեալ 'ի նմա պտուղ ըստ օրինացն, զի ոչ ընկալաւ նա զօրհնումն ։ Խնդրեաց պտուղ 'ի թզենոյ անտի ոչ 'ի ժամանակի իւրում, զի եղիցի խորհուրդ այնմիկ՝ որ լուացաւ զօրհնումն 'ի ժամանակի իւրում ։ Զի եթէ 'ի ժամանակի իւրում խնդրեալ էր 'ի նմա պտուղ, ոչ ոք ճանաչէր եթէ առակ օրինակի եղև նա անդ ։ Փոխանակ թզենոյն յայտ արար՝ եթէ զԵրուսաղէմ յանդիմանէ ․ զի խնդրեաց 'ի նմա սէր, յայնմ՝ որ ատեաց զպտուղ ապաշխարողաց ։ "Քաղցեաւ, ասէ, և պնտեցաւ եկն առ թզենի անդր ․ և զի ոչ եգիտ 'ի նմա ինչ, անէծ զնա „ ։ Եւ եթէ այն՝ զի քաղցեաւն՝ տուեալ լիցի մարմնոյն, այս ինքն յորժամ կամի զօրութիւն, իսկ խնդրել պտղոյն ոչ 'ի ժամանակի՝ զի՞նչ մօտ էր առ այն, որ և զգաղտնիս սրտի գիտէր նա ։ Այլ խելամուտ լեր դու, զի ոչ եթէ վասն քաղցոյն իւրոյ անէծ նա զթզենին ․ զի թէպէտ և էր ժամանակ նորա, և ոչ կանխեցին պահեցին զնա՝ զի գտցէ 'ի նմա, սակայն ցամաքելոյ և խլելոյ չէր նա պարտ ։

Իսկ ոմանք ասեն՝ եթէ թզենին Երուսաղէմ է, զի ոչ ետ պտուղ ․ և 'ի ձեռն թզենոյն, ասեն, զքաղաքն անպտուղ անէծ ․ և որ քաղցեաւն, ասեն, ապաշխարութե͞ քաղցեաւ, և եկն խնդրել յԵրուսաղէմ և ոչ եգիտ ։ Եւ ածեն յարեն 'ի նա զայն զմիւս ևս՝ զի ասէ ․ "Առն միոջ էր թզենի մի յայգւոջ իւրում „ ․ և զերկուսին զնոսա յԵրուսաղէմ անուանեն ։ Արդ եթէ Երուսաղէմ է այն՝ յորում խնդրեացն 'ի նմա պտուղ, ընդէ՞ր իբրու ոչ էր ժամանակ նորա տալ պտուղ՝ անէծ զնա զի խլեսցի ։ Եւ եթէ ժամանակ նորա ոչ էր, զիա՞րդ լի բանն Առաքելոյ զոր ասաց՝ եթէ "Ի կատարած ժամանակաց առաքեսցէ ա͞ծ զՈրդի իւր „ ։ Եւ եթէ 'ի ժամանակի իւրում եղև գալուստ անդրանկանն, զիա՞րդ թզենին ոչ 'ի ժամանակի իւրում համեմատեալ լինէր ընդ Երու-

սաղէմ, որոյ ժամանակն իւր էր ։ Վաստակեսցուք յընթերցուածի աստ, զի 'ի սմանէ գտցուք լուծումն խնդրոյ մերում ։ Զի ահաւասիկ մինչ դեռ մտանէր նա յԵրուսաղէմ, գրեալ է՝ եթէ «Ետես տէր զնա, և ելաց 'ի վերայ նորա, և ասէ ցնա. եթէ գիտացեալ էր քո գոնեայ զօրս զայս քո»։ Արդ եթէ օրն նորա էր, որչափ ևս առաւել և ժամանակն նորա. Եւ եթէ 'ի ժամանակի իւրում էր, և օր իւր էր ։ Սակայն Թզենոյն ոչ էր ժամանակ իւր. յայտ է թէ այլ իմն Թզենին է, և այլ իմն Երուսաղէմ.

Արդ վասն հարցուածոց Թզենոյն տեսցուք Թէր ոչ է նա Երուսաղէմ, որպէս այլքն ասեն ։ Արդ նման է այս՝ եթէ ինչ մի խորհեցան առաքեալքն 'ի միամտութեան իւրեանց, որպէս սովոր իսկ էին, և երկմտեցին ։ Եւ զի երկեցուսցէ զնոսա սքանչելեօքն, ցամաքեցոյց զԹզենին առաջի նոցա ։ «Իբրև դարձան, ասէ, ասեն ցնա. ահաւադիկ Թզենին զոր անիծեր, զիարդ ցամաքեցաւ վաղվաղակի ։ Ասէ ցնոսա. և դուք եթէ ունիջիք հաւատս և ոչ երկմտիցէք 'ի սրտի ձերում, ասասջիք լերինդ այդմիկ՝ և փոխեսցի» ։ Արդ եթէ առակ օրինակի էր նա, ոչ էր նմա պարտ ասել՝ եթէ ունիջիք հաւատս. այլ՝ եթէ իցէ 'ի ձեզ իմաստութիւն ։ Արդ նշան է նմա, և ոչ առակ ։

Դարձեալ ասեն, եթէ այն զի ասէ՝ եթէ «Ասասջիք լերինդ այդմիկ», չէ նա, ասեն, լեառն՝ այլ դև, կամ որ ինչ նման է նմա ։ Արդ ո՞ր դև մերձ էր մինչ տէր մեր զայս ասէր ։ Եւ զի լեառն մերձ էր անդ, յայտ է զի 'ի լեառն ձիթենեաց եկն նա, զի 'ի նմա իսկ էր Թզենին. և այնոցիկ ասաց՝ որ ընդ լեառն հայէին, եթէ «Ասասջիք, ասէ, լերինդ այդմիկ, եղիցի»։ Եթէ դև իսկ էր ըստ բանի նոցա, և այն զի ասէ՝ անկիր 'ի ծով, վասն որոյ եթէ ոք դև հանէ՝ 'ի ծո՞վ առաքէ զնա ։ Այլ թերևս գոյ նոցա պատճառք, եթէ ահաւանիկ տէր մեր զի եհան նա զդևս ։ Ստոյգ է, և չէ սուտ ։ Եւ եթէ նա առաքեաց զնոսա 'ի ծով անդր, զայս գիրք ոչ ասացին. զի յայտ էին պատճառք նոցա եթէ վասն որոյ մտին 'ի խոզս անդր. զի սքանչելիքս այս փութացուցանեն և հանեն զմակիչս քա-

ղպքին առ նա. այնոքիկ՝ որ եկանել առ նա կամօք իւրեանց ոչ առին յանձն ։

Իսկ եթէ այս են պատճառք, զի՞նչ պիտոյ էր. այն՝ զի ասէ. «Եթէ ասասջիք լերինդ այդմիկ՝ երթ անկիր 'ի ծով» ։ Այլ զի ետես զնոսա՝ զի զարմացեալ էին ընդ ցամաքել թզենոյն, ասէ ցնոսա. «Եթէ հաւատասջիք և ոչ երկմտիցէք», այլովքն հանդերձ. որպէս ասաց ցՆաթանայէլ. «Եթէ հաւատացես, մեծամեծ ևս քան զայս տեսցես» ։ Եթէ ոչ՝ ասէ, երկմտիցէք, ոչ եթէ զթզենւոյն միայն՝ որ 'ի լերինս յայսմիկ իցէ՝ արասցէ այսպէս, այլ և ինքն գլխովին ամենայն լեառնն հանդերձ ծառովք իւրովք դարձցի և անկցի 'ի մէջ ծովու ։ Եւ զի յայտ արասցէ նոցա՝ եթէ բանն իւր կենդանի է, և նա կեցուցանէ և նա դատի, ցամաքեցոյց նովաւ զթզենին դալար, և բժըշկեաց նովաւ զձեռն գօսացեալ ։

Որդ վասն էր այն քաղցրն և բարերարն, որ յամենայն տեղիս 'ի փոքրկանց մեծամեծս եցոյց, և 'ի թերեաց կատարեալս, վասն որո՞յ հրամայեաց թզենոյն ցամաքել ։ Եւ զցաւս ամենայն մարդկան բժըշկեաց, և զջուրն փոխեաց 'ի գինի, և 'ի սակաւ հացէն արար բազում, և զկոյրս եբաց, և զբորոտս սըրբեաց, և զմեռեալս կեցոյց, և զթզենին միայն յայտ եղև թէ ցամաքեցոյց ։ Այլ քանզի մերձեալ էր ժամանակ չարչարելոյ նորա, զի մի՛ ոք կարծիցէ եթէ վասն զի ոչ կարաց ապրեցուցանել նա զանձն իւր՝ ըմբռնեցաւ, անէծ զթզենին, զի բարեկամացն եղիցի նշան, և թշնամեաց աքանչելիք. զի աշակերտքն հաստատեսցին 'ի բանի անդ նորա, և օտարք զարմասցին ընդ զօրութիւն նորա ։ Քանզի զամենայն ինչ բարիոք գործեաց, և մերձ էր 'ի չարչարել, կարծեալ լինէր նա՝ որպէս և կարծեցաւ իսկ՝ և վասն զի ոչ գոյր 'ի նմա զօրութի, ըմբռնեցաւ ։ Եւ կանխեաց եցոյց 'ի ձեռն անշունչ տնկոյն զոր ցամաքեցոյց՝ եթէ կարող է նա և զխաչահանուսն իւրով բանիւ սատակել. որպէս և աստ յայսմ վայրի զայս պաշտեաց վասն ածեղէն զօրութեն իւրոյ, մի՛ զրկեսցի նա տկար մասամբն մարմնոյն ։ Սոյնպէս և Շմաւոնի ասաց. «Դարձո զսուր քո 'ի տեղի իւր» ։

Արդ այն՝ որ եկն առնուլ զտոյժս ծածուկս 'ի մարդկութենէ աստի, յերիս տեղիս տոյժս յայտնիս արկ 'ի վերայ նորա։ Զգերեզմանս. քակեաց և փշրեաց, և զխոզսն 'ի ծովու անդ հեղձոյց, և զԹզենին յարմատոյ ցամաքեցոյց. զի 'ի քակել գերեզմանացն հաւատացելոց պատառեսցին սիրտք անհաւատիցն. և 'ի հեղձուլ երամակին խոզիցն հեղձցի մոլորութիւն ապստամբողացն։ Եւ 'ի ցամաքել Թզենոյն առանց յանցանաց աւերեսցի Երուսաղէմ վասն յանցանաց իւրոց։ "Քաղցեաւ, ասէ, և պնտեցաւ եկն առ Թզենի անդ"։ Առ յականէ տեսողացն, և առ յունկանէ լսողացն զտեսիլ իւր և զբան իւր լսեցուցանէր։ "Զարմացեալ էին, ասէ, աշակերտք նորա թէ զիարդ այնպէս վաղվաղակի ցամաքեցաւ"։ զի բնութի Թզենոյն յորժամ հատանի, վասն բազում դալարութեն իւրոյ 'ի բազում ամիսս ցամաքի. վասն այսորիկ իբրև նշան ընտրեաց զնա, զի նովաւ ցուցցէ զճաշակս զօրութեն իւրոյ։ Զի կակղամարմ և տերևի յառաջ քան զամենայն ծառս՝ այս յայտ է. որպէս և տէր մեր ինքնին ասաց 'ի յառակի անդ՝ եթէ "Ի Թզենոյ անտի ուսարուք զառակն. զի յորժամ ոստքն կակղասցին և տերևն ելցէ՝ և բուսցի, գիտէք թէ մերձ է ամառն"։ Տես զի վասն բազում խոնաւութեն նորա կանուխ ծաղկով դնէ զնա։ Արդ սահմանեա դու զառնութի զօրութենն նորա, զի վերին առաջնորդութին կնքեսցի։ Ոչ եբաց նա զբերան իւր առ ունելիսն նորա, որպէս և եբաց նա առ Թզենին։ Արդ ցամաքեցոյց զնա, զի իսրայէլացիքն դալարասցին՝ և ոչ կամեցան. և ըմբռնեցաւ՝ զի կամեցաւ, որպէս զի եկն նա յերկնից՝ զի հաճոյ եղև նմա։

Դարձեալ ասի՝. եթէ 'ի ժամանակի յորժամ մեղաւ, ասէ, Ադամ, և մերկացաւ 'ի փառաց անտի զոր զգեցեալն էր, և տերևովն Թզենոյն զմերկութիւն ծածկեաց, եկն տէր մեր և համբեր չարչարանաց փոխանակ ընդ նորա, զի բժշկեսցէ զվէրս հարուածոցն Ադամայ, և զի հանդերձ փառաց՝ մերկութեն նորա տացէ։ Վասն այսորիկ ցամաքեցոյց զԹզենին, որպէս զի յայտ արասցէ՝ եթէ ոչ այնուհետև պիտոյ է տերև Թզենոյն 'ի հանդերձ Ադամայ. քանզի դար-

ձաւնա անդրէն 'ի փառս առաջինս, այն՝ որ մինչ դեռ ունէր զնոսա՝ ոչ էր նա կարօտ տերևոյն, և ոչ վասն մաշկեղէն հանդերձից: Զէ այնուհետև պիտոյ թզենին, զի ցամաքեցաւ. այն՝ որ մինչ դալարն էր, հանդերձ ամօթոյ էր տերևն նորա, և զգեստ կատականաց:

Նու այն՝ զի ասէ "Եւ ոչ ոք ել յերկինս, բայց եթէ որ էջն յերկնից որդի մարդոյ". քանզի նշան խնդրէին 'ի նմանէ, ասէ ցնոսա. "Իսկ արդ եթէ զերկրաւորս ասացի ձեզ և ոչ հաւատացէք, եթէ զերկնից ասացից ձեզ զիա՞րդ հաւատասջիք": "Եւ ոչ ոք է՝ որ ել յերկինս". և եթէ եկեսցէ և եղիցի ինձ վկայ առ ձեզ: Եւ զի գիտէր եթէ պատրաստեալ էին ասել եթէ ոչ մարմին ելանէ, ասէ ցնոսա. "Բայց եթէ որ էջն յերկնից": Ոչ եթէ մարմին էջ յերկնից, այլ քան զյղութիւն Մարիամու. և ոչ 'ի զաւակէ մարդոյ եղև, այլ Գաբրիէլ ինքն էջ յերկնից, իբրու բարձեալ ունէր ողջոյն 'ի բերան իւրում. վասն այսորիկ ասաց՝ թէ որ էջն յերկնից:

Դարձեալ ասասցուք, եթէ քանզի զկնի բանին Նիկոդեմոսի ասէ ցնա տէր. "Դու ես վարդապետ Իսրայէլի, և զայդ ո՞չ գիտես", զո՞ր. արդեւք արժան էր նմա գիտել. այլ զայն զօրինացն և զմարգարէիցն, զթանալ զոպային, և զսրսկումն ջուրցն, և զմկրտութիւն սրբութեան, այլովք հանդերձ: Արդ եթէ ոչ էին նկարեալ օրինակքս այս առաջի գալստեանն Որդւոյ, զրկելով զրկեաց տէր մեր զՆիկոդեմոս. ապա եթէ ծածկեալ էր նորա 'ի գիրսն անդ իւր և ոչ որոշեաց, բարւոք թափեաց զքուն նորա, և ողջացոյց զհիւանդութիւն նորա 'ի ձեռն հեզ և խոնարհ ձայնին իւրոյ. և յուշ արար նմա զմկրտութիւն քաւութեան՝ որ էին 'ի մէջ Իսրայէլի: Նա և Զաքարիայի իբրև աւետարանեցաւ եթէ լինի նորա որդի՝ երկմտեցաւ, կապեցաւ լեզու նորա, այն՝ որով զայլսն ուսուցանէր: Սոյնպէս և Նիկոդեմոս. այս ամենայն օրինակք եդեալ էին առաջի նորա, և ոչ հաւատաց. վասն այնորիկ եպերեաց զնա, այս ինքն խոնարհութեամբ: Զի ետես թէ հիւանդ է և մերձ յողջանալ, և զի ոչ իմացաւ զառաջինսն՝ որ յօրէնսն գրեալ էր, եցոյց նմա տէր

մեր զմկրտութիւն կատարեալ քաւութիւն մարմնոցն և հոգւոցն ։

Ոչ արդեօք 'ի միտ առեր, ո՛ Նիկոդեմոս, եթէ Յակոբ՝ որ առանց որովայնի և առանց արգանդի ծնաւ յանդրանկութիւս, և Նեեման առանց արգանդի նորոգեցաւ 'ի ժամանակին իբրև ասաց նմա Եղիշա, զի չոգաւ լուացաւ և սրբեցաւ, և դարձաւ շրջեցաւ և եղև մարմին նորա իբրև զտղայոյ. նոյնպէս և Մարիամ ո՞չ ահա յայտ է այս՝ եթէ նշան է նա մկրտութեան որ տուաւ հեթանոսաց. զի զոպայն նորա սպիտակացոյց զներկեալ զպախն ։ Եւ այս են զարմանք, զի Նեեման հաւատաց, և առնու հող յերկրէ անտի իսրայելացւոց, և Նիկոդեմոս հարցանէր զտէր մեր վասն երկնաւորացն. վասն այսորիկ "Եթէ զերկրաւորս ասացի ձեզ ոչ հաւատայցէք, եթէ զերկնից ասացից ձեզ զիա՞րդ հաւատասջիք"։ Զհոգին, ասէ, ոչ գիտէք ուստի գայ կամ յո երթայ". այս ինքն եթէ յայտնեաց ոչ լինի հասու, ո՞վ իցէ որ քննիցէ զծածկեալսն որ ինչ յերկինսն են. և ոչ ոք է որ ել յերկինս, բայց եթէ այն՝ որ էջն 'ի նմանէն որդի մարդոյ ։ Զի յայտ արասցէ վասն տեղւոյն աստուածութեան՝ եթէ ոչ ոք ել և ոչ ելանէ ։

Ասէ ցնա ։ և մա՞րթ ինչ է առն ծերոյ անդրէն յարգանդ մօր իւրոյ կրկին մտանել, և անդրէն 'ի դուրս ծնանել. և ահա որովայն մօրն նորա 'ի ծնանելն նորա պղծի. նոյնպէս և ծնունդն նորա ըստ օրինացն ։ Բայց տէր մեր ոչ եթող զնա 'ի հիւանդութեան անդ նորա. այլ ետ նմա զլուսաւոր հիւանդութիւն ասելով. "Եթէ ոչ ոք ծնցի 'ի ջուր և 'ի Հոգի, ոչ կարէ մտանել յարքայութիւն այ"։ Այն՝ որ եթէ կամեցեալ էր, խելամուտ լինէր նա յայնմանէ՝ որ ինչ յառաջն էր քան զնա, և յօրինակէ անտի՝ եթէ մարմնոյ պիտոյ է մկրտութեան ջուրցն հաղորդութեան համդերձ Հոգւովն ։ "Որ 'ի մարմնոյ անտի ծնեալ է՝ մարմին է, և որ 'ի Հոգւոյն ծնեալ է՝ հոգի է"։ Զի 'ի հաւատս աշակերտէր զնա, ասէ՝ ծնունդ մարմնոյն երևի, այլ ծնունդ մկրտութեան հոգւոյ է. այս ինքն ոչ երևի ։ "Եթէ ունիջիք հաւատ դուք, ասէ, որչափ ապէ քան զհատ մանանխոյ, ասէիք լերինդ այդմիկ թէ փոխեաց և փո-

խէր ։ Եւ զամենայն ինչ՝ որ զինչ միանգամ յաղօթս ձեր հաւատովք խնդրեսջիք յա̃յ, տացի ձեզ „ ։ Եւ իբրև մերձեցաւ այս յաչս նոցա, ասեն ցնա. “Յաւել մեզ հաւատս „ ։

Նհար օձն զԱդամ 'ի դրախտի անդ՝ և սպան զնա, և զխրայէլ 'ի բանակի անդ՝ և կոտորեաց զնոսա ։ “Եւ որպէս Մովսէս, ասէ, բարձրացոյց զօձն յանապատի, սոյնպէս բարձրանալ պարտ է որդւոյ մարդոյ „ ։ Զի զոր օրինակ այսու նշանաւ զոր բևեռեաց Մովսէս 'ի խաչի անդ՝ ապրեցին և կեցին մարմնապէս՝ որք մարմնապէս հայէին 'ի նա, սոյնպէս բևեռեալ մարմնոյն Քրիստոսի՝ որ կախեցաւն զխաչափայտէն՝ ապրին և կեան, որք հաւատացին և հայեցան 'ի նա ։ Յայտ եղև չարչարանօքն՝ որ ոչն չարչարի այն բնութե̃ իւրով, եթէ չարչարելոց է խաչելութե̃ն այն՝ որ ոչն մեռանի բնութե̃ իւրով ։

Ի դատաւորն մեղաց զինչ անօրէնութի̃ և չարութի̃ էր 'ի նմա. կամ 'ի դատաւորն արդար ողորմութի̃ և ստուգութի̃ գոյր 'ի նմա. յանօրէնութե̃ իւրում ոչ կամեցաւ նա դատ առնել այրոյն, և առ չարութե̃ իւրով ոչ կամեցաւ հանգուցանել զնա ։ Իսկ ստուգութի̃ն ա̃յ պահանջել գիտէ, և ողորմութի̃ նորա կեցուցանել ձանաչէ ։ Արդ անօրէնութիւն նորա հակառակ էր ստուգութեան նորա, և չարութիւն դառնին ընդդէմ ողորմութե̃ն քաղցրոյն ։ Արդ խիստ էր անօրէնութի̃ սորա, զի համարձակեցաւ և անց զերկիւղիւն ա̃յ. խիստ էր և ժպրհութի̃ նորա, զի արհամարհեաց զամօթն մարդկան ։ Արդ խիստ էին սոքա երկոքին. բայց խիստ ևս է քան զերկոսեան զուսա ժտութի̃ ։ Զի անօրէնութի̃ այն՝ որ ապստամբ եղև յա̃յ, և ժպրհութի̃ ամբարհաւաձեցաւ 'ի մարդկանէ, ժտութի̃ այրոյն խոնարհեցոյց զնոսա երկոսին, և զկնի կամաց իւրոց ած̃ զնոսա, զի դատ արասցեն նմա ընդ ոսոխի իւրում ։ Զայս երկուս ոստս դառինս փոփոխեաց ժտութի̃ն, զի տացէ նմա զպտուղ քաղցր՝ որ օտար են նոցա ։ Արդ նորա դատաստանս ուղիղս, և հատուցումն արդար կնոջն զրկելոյ յետ չարութեան նորա, հանգիստ տառապեալ լլկելոյն ։ Եւ զոր ինչ անօրէնութի̃ն վրէժ խնդրել ոչ գիտէ, և չարութի̃

հանգուցանել ոչ ճանաչէ։ Արդ եթէ զայս երկուս չարիս դառնինս նեղեաց ժտութի, զի տացէն մեզ պտուղ բարիոք՝ որ օտար է նոցա, որչա՞փ ևս առաւել մեք՝ եթէ ժտիմք բռնադատել զողորմութիւն այ, զի տացէն մեզ զպտուղ բնութե իւրեանց. այս ինքն ստուգութին զվրէժ մեր խնդրեսցէ, և ողորմութին զի հանգուսցէ զմեզ 'ի հատուցումն ուղիղ։ Զրկելոց պտուղ է ստուգութին, և տալ հանգիստ ցաւագնելոց պտուղ է ողորմութին։

«Եկին, ասէ, և ասեն՝ ցնա. որո՞վ իշխանութբ առնես դու զայս. մինչ դեռ նա, ասէ, ուսուցանէր զժողովուրդսն և աւետարանէր նոցա»։ Եւ եթէ ուսումն էր, զիա՞րդ գործ անուանեցին զնա։ Այլ յայտ է՝ եթէ զճշմարտութիւն բանիցն իւրոց 'ի վկայութի ածէ գործոցն իւրոց. իբրև զայն՝ զի ասէ. «Եթէ ինձ ոչ հաւատայք, գոնեայ գործոյն հաւատացէք»։ Որո՞վ իշխանութբ առնես դու զայդ»։ Ի դէմս պահանջողաց հարցանէին զնա. և նա ոչ ասաց նոցա, զի ոչ սիրով մերձեցան առ նա իբրու թէ ուսցին, այլ իբրև ապստամբողք։ Դարձաւ նա եհարց զնոսա՝ եթէ «Մկրտութին Յովհաննու ուստի՞ էր»։ և նեղեաց զնոսա բան նորա, զի խոստովան եղիցին՝ եթէ ոչ հաւատացին. «Յերկնից էր, ասէ, թէ 'ի մարդկանէ աստի։ Նոքա սկսան խորհել 'ի միտս իւրեանց և ասել. եթէ ասեմք եթէ յերկնից է, ասէ ցմեզ. իսկ ընդէ՞ր ոչ հաւատացէք նմա. և եթէ ասեմք 'ի մարդկանէ անտի, երկնչիմք 'ի ժողովրդենէ աստի»։ Եւ այն թէ ասացեն՝ թէ յերկնից, ոչ ասացին եթէ երկնչիմք յայ։ Արդ 'ի մարդկանէ աստի երկնչէին և ոչ յայ։

«Զիա՞րդ, ասէ, թուի ձեզ այն. առն միոջ էին երկու որդիք»։ Եւ զի կոչեաց զնոսա որդիս, զի յորդորեսցէ զնոսա 'ի գործ իւր։ Այո, ասէ, տէր. և նա կոչեաց նմա որդեակ. և նա ետ նմա պատասխանի՝ տէր. ոչ եթէ հայր կոչեաց զնա, և զբան նորա կատարեաց։ «Ո՞վ 'ի նոցանէն արար զկամս հօր իւրոյ»։ և նոքա հատին արդարութբ և ասեն, երկրորդն։ Ոչ ասաց նա՝ թէ ո՞վ 'ի նոցանէն երևի ձեզ՝ զի ասաց եթէ ես երթամ. այլ ո՞վ, ասէ, արար զկամս հօր իւրոյ։ «Վասն այսորիկ մաքսաւորք, ասէ, և պոռնիկք

յառաջեսցեն քան զձեզ յարքայութիւն երկնից”· զի դուք բանիւք խոստանայք, և նոքա առաւել ևս ընթանան։ “Եկն, ասէ, առ ձեզ Յովհաննէս ’ի ճանապարհ արդարութեան”· այս ինքն զի ոչ յափշտակեաց նա անձին իւրոյ զպատիւ տեառն իւր։ Այլ իբրև կարծեցին վասն նորա թէ նա իցէ Քրիստոսն, ասաց նոցա՝ թէ և ոչ զխրացս կօշկաց նորա արժան եմ առնլոյ։

Միւս ևս այլ առակ։ “Այր մի տանուտէր տնկեաց իւր այգի”· այն իսկ է զի ասէ· “Այգի փոխեցեր յեգիպտոսէ, սատակեցեր զհեթանոսս, և տնկեցեր զնա և ցանկով պարսպեաց զնա՝ օրէնքն, և գուբ հնծանս հանդերձեաց ’ի նմա՝ սեղանն, և շինեաց ’ի նմա աշտարակ՝ տաճարն”, այլովքն հանդերձ։ Եւ առաքեաց զծառայս իւր, զի բերցեն նմա պտուղ· ոչ առաջինսն և ոչ միջինսն և ոչ վերջինսն առին· յետոյ առաքեաց զորդին, ոչ եթէ զի վերջին էր նա, այլ յետոյ երևեցաւ, այն՝ որ երբեմն էր իսկ։ որպէս և վկայեաց Յովհաննէս՝ եթէ “Այր գալոց է զկնի իմ, որ առաջին իսկ է”։ Եւ ոչ եթէ զի ոչ էր նա գիտակ, եթէ ոչ են կարող առաջինքն զոր առաքեաց, այլ զի բարձցէ ’ի միջոյ զբամբասանս յամառութեան։ Ոչ, ասեն, կարէր եթէ ’ի ձեռն օրինացն ուղղել պատրաստել զամենայն զոր կամէր։ Արդ առաքեաց զի լռեցուսցէ· այլ իբրև տեսին նոքա զորդին զի գայր՝ ասեն· “Սա է ժառանգ այգոյս, եկայք սպանցուք զսա, և մեր լինի այնուհետև ժառանգութիւն այգոյս”։ Զնա սպանին, և ժառանգութիւն նոցա դարձաւ և տուաւ հեթանոսաց, որպէս և ասաց իսկ՝ եթէ “Որ ունիցի տացի նմա և յաւելցի, և որ ոչն ունիցի՝ և զայն զոր յափշտակեացն՝ հանցեն ’ի նմանէ”։

Մուծանէ զնոսա ’ի դատ առաջի նոցա և ասէ՝ եթէ որո՞ւմ արժանի են մշակքն։ Հաստանէին ինքեանք ’ի վերայ անձանց իւրեանց և ասեն “Զչարսն չարեօք սատակեսցէ”, և այլ ևս։ Մեկնէ նա յետոյ և ասէ եթէ “Ո՞չ, ասէ, իցէ երբեք ընթերցեալ ձեր, եթէ զվէմն զոր անարգեցին շինողքն՝ նա եղև գլուխ անկեան”։ Ո՞ր վէմ· այն՝ որ ադամանդեան կոչի· զի ահաւասիկ ասէ· “Դնեմ ես ադամանդ ’ի մէջ նոցա որդւոցն Իսրայէլի”։ Եւ զի յայտ արասցէ՝ թէ նա է,

ասէ զնմանէն 'ի դէմս հաւատութեան նորա, եթէ "Ամենայն որ հարցի ընդ նա՝ փշրեսցի, և յորոյ վերայ անկցի՝ մանրեսցէ և հոսեսցէ զնա": Զի ժողովեցան 'ի վերայ նորա գլուխք ժողովրդեանն, և կամեցան իջուցանել զնա, զի ոչ քաղցրացաւ նոցա ուսումն վարդապետութեան նորա:. Եւ զի ասէ "Յորոյ վերայ անկցի՝ մանրեսցէ և հոսեսցէ զնա", զի խափանեաց նա զպաշտամունս կռոցն, այլովք հանդերձ. զի "Վէմն, ասէ, որ հարկանէր զպատկերն, եղև 'ի լեառն մեծ, և լցաւ 'ի նմանէն ամենայն երկիր":

Իսկ այն՝ որ առաքեցինն առ նա զաշակերտսն իւրեանց հերովդիանոսօքն հանդերձ՝ եթէ տացե՞ն ըզհարկս, զի նոքա այսպէս կարծէին վասն նորա՝ եթէ յափշտակել իւր կամի զարքայութիւն Իսրայելի, զի որդի Դաւթի կարդային զնա, կամեցան տեսանել նոքա՝ եթէ հրամայէ՞ տալ զհարկս կայսեր՝ թէ ոչ: Զի եթէ ասիցէ թէ մի՛ տայք, գտցեն 'ի վերայ նորա պատճառս, եթէ 'ի վերայ անձին իւրոյ քարոզէ եթէ թագաւոր իցէ: Զի ոչ զի մի՛ տայցեն՝ կամէին նոքա, այլ զի սպանցեն զնա: Եւ զի յայտ արասցէ նոցա՝ եթէ ուսումն վարդապետութեան նորա վերագոյն է յայսմանէ և ընդ կեանս մարդկան կամի, ասէ. տուք զկայսեր կայսեր, բայց զայ զոր ինչ պարտիք՝ հատուցէք:

"Եկին, ասէ, սադուկեցիքն և ասեն ցնա՝ եթէ չիք յարութիւն մեռելոց": Կոչէին նոքա սադուկեցիք, այս ինքն արդարք, եթէ ոչ ասեն վարձուք մեք պաշտեմք զած: Զի ոչ հային յարութիւն մեռելոց. վասն այսորիկ արդարս անուանեն զանձինս իւրեանց: Առանց վարձուց, ասեն, պարտ է մեզ սիրել զած: "Մովսէս, ասէ, նահապետ հրամայեաց մեզ, եթէ ոք մեռցի անորդի, արասցէ զկին նորա եղբայր նորա: Արդ կին մի եղև եւթն առն. արդ 'ի յարութեան մեռելոց ու՞մ 'ի նոցանէ լինիցի նա". Է՞ յոյս՝ եթէ միւսանգամ ամուսնութիւն գոյ անդ: Եւ եթէ 'ի յարութեան անդ մեռելոց ամուսնութեան ակնկալութիւն ունին հրեայք, ոչ է մեծ եթէ ուրանան այժմ 'ի սրբութենէ: "Յայժ, ասէ, մոլորեալ էք դուք. զի որդիք ժամանակաց աշխարհիս այսորիկ կանայս առնուն, և այլ ևս. իսկ որ այնմ աշխարհի արժանի եղեն,

նոքա իբրև զհրեշտակս են „ ։ Եւ եթէ մարդիկ՝ որ նմանողք լինին հրեշտակաց՝ ոչ ամուսնանան, զի՞նչ եւս ասասցուք 'ի վերայ այնոցիկ՝ որ համարձակին և հայհոյել զհրեշտակս ։

“Սէր, ասէ, պատուիրան առաջին և մեծ յօրէնսն ։ Ասէ ցնա. զի սիրեսցես զտէր ա՟ծ քո, և զմերձաւորն քո իբրև զանձն քո „ ։ Զի ոչ սէրն ա՟յ թողու զմեզ կորնչել, և ոչ սէր մարդոյն տայ մեզ յանցանել. զի չիք մարդ՝ որ յանցանէ յայնմիկ զոր սիրէն ։ Իսկ ո՞ր միտք իցեն՝ որ կարեն լինել շտեմարան ամենայն սիրոյ որդւոց մարմնոյ իւրոյ ։ Կամ ո՞ր խորհուրդք կարիցեն ածեցուցանել յինքեանս զսէրն ամենայն ոգւոց, զոր սերմանեաց 'ի նոսա պատուիրանն այն, որ նա ինքն է մաճակալ սիրոյ ։ “Սիրեա, ասէ, զընկերն քո իբրև զանձն քո „ ։ Սակաւ են անդամք մեր լինել անօթք երագ և մեծամտուն կամացն ա՟ծութեան. բայց միայն պտուղ է, որ 'ի նմանէն բաւական լինի կամացն նորա ։ Զոր ինչ կամի ա՟ծ գործել, բնութ՟ե ա՟ծութ՟են կար է կատարել զկամսն. զի կամի նա կեցուցանել զորդիս մարդկան ։ Ընթացան հրեշտակք մասամբք իւրեանց, և թագաւորք կողմամբք իւրեանց, և մարգարէք նշանօք իւրեանց, և մարդիկ ոչ փրկեցան մինչև էջ յերկնից այն՝ որ բուռն հարկանէ զձեռանէ և յարուցանէ ։ Արդ երկու պատուիրանօք իբրև երկու թեւովք թռչի ամենայն աշակերտութ՟իւս. այս ինքն սիրով ա՟յ և մարդկան ։

Եւ այն վիրաւորն Հրեայքն են, և շամարտացով զքահանայսն և զղևտացիսն նախատեաց, զի ոչ արարին ողորմութ՟ի 'ի վերայ որդւոց ազգին իւրեանց ։ Ասէ ցնա. և դու նոյնպէս արասցես 'ի վերայ հրէին որդւոյ ժողովրդեան քում ։ Ոչ եթէ շամարիտ լեր դու՝ ասաց. և նա իսկ այսպէս եհարց՝ եթէ ով է մերձաւոր իմ, զի նա ինքն է սիրելի իմ, եցոյց նմա տէր մեր վիրաւոր հրեայ ։ Զի ահաւասիկ շամարտացի թշնամի է և հեթանոսաց, ընդէ՞ր ոչ առաքեաց նա զառակ իւր յորդի ոք 'ի հեթանոսաց ։ Եւ զքահանայս արդեօք և զղևտացիսն ո՞չ ահա յամօթ արար զնոսա, զի ոչ արարին ողորմութ՟ի 'ի վերայ որդւոց ազգին իւրեանց ։ Զի եթէ որդի հեթանոսաց էր, օտարութ՟ի

եմոյծ նա յայսմ վայրի. զի ոչ անխայէին նոքա 'ի
վերայ հեթանոսաց. և նմա ասաց՝ բայ այսպէս ա-
րասցես: Արդ աղէ ասասցեն մեզ. և հրամայե՞ն օրէնք
զթալ 'ի վերայ վիրաւորին մերոյ՝ թէ ոչ: Եթէ այդ-
այդպէս իցէ, տէր մեր զվրէժ շամարտացո՞յն եկն խըն-
դրել արդեւք. մանաւանդ զի ասաց նմա՝ թէ իբրև
զայնոսիկ որ ոչն արարին ողորմութի՛, դու մի՛ առներ: Եւ
զի յայտ արասցէ՝ եթէ հրեայ է, ասէ՝ յԵրուսաղէմէ
յԵրիքով: Իսկ շամարտացիք բնակեալ էին անդ, զի
թագաւորք առաջինք գերեցին ածին բնակեցուցին
զնոսա անդ: Կատարած պատգամին յայտ առնէ վասն
նորա, ողորմութե՛ է: "Ո՞վ 'ի նոցանէ, ասէ, թուի
քեզ՝ թէ եղև մերձաւոր վիրաւորին: Ասէ ցնա. որ
արար զողորմութի՛ն". և ահա շամարտացի էր: Արդ
յայտ եղև՝ եթէ ոչ 'ի վերայ որդոց ազգին իւրոյ եղև
մերձաւոր: Եւ թէպէտ, ասէ, տոհմայինք և քահա-
նայք որ ցաւելոյն պարտ է փոյթ առնել նոցա, ակնար-
կեսցեն անփոյթ արասցեն զորդիս ազգին իւրեանց,
և լիցի՝ թէ իցես դու 'ի շամարտացոց յայնցանէ՝ որ
հակառակորդք իցեն, սակայն մի՛ արհամարհիցես, այլ
այնպէս համարեալ լիցի քեզ ցաւագնոտն իբրև զմեր-
ձաւորն քո, և մեծաւ հոգաբարձութե՛ բժշկեա զնա:

Եւ զի ասէ. "Տէր մեր աղաղակէր և ասէր. եթէ
ոք 'ի ձէնջ ծարաւի իցէ, եկեսցէ առ իս և արբցէ". այն
իսկ է մարգարէին զոր ասէ. "Որ միանգամ ծարաւի
իցէ": Մարգարէն առաքեաց յաղբիւր, և կատա-
րիչ մարգարէիցն կոչէ ըմպել: Այն իսկ է զոր ասաց
Զգօնութի՛. ասէ. "Կերայք զհաց իմ, և արբէք զգինի
իմ զոր խառնեցի. և 'ի բաց արարէք 'ի ձէնջ զան-
զգամութի՛ պակասամտութե՛ ձերոյ, և կեցջիք":

Եւ քանզի հպարտացեալ և ձեռն յանձին հարեալ
էին, և պարծէին անուամբն Աբրահամու, բայց ըղ-
գործս սատանի գործէին, ասէ ցնոսա. մի՛ ընտրէք դուք
զանուն միոյ և գործ միւսոյ. կամ գործեցէք դուք
զգործ այնորիկ՝ յոյր անուն պարծիք, կամ ընկալա-
րուք դուք զանուն զայնորիկ՝ որոյ գործքն իւր զօրա-
նան 'ի ձեզ: "Եթէ որդիք, ասէ, Աբրահամու էիք,
զգործսն Աբրահամու գործէիք". զի յայտ արասցէ՝
եթէ վիհ մեծ է 'ի մէջ անուանն Աբրահամու և 'ի

մէջ գործոյն զոր գործէքն ։ Ասէ . "Դուք որդիք սատանայի էք, այն՝ որ 'ի սկզբանէ իսկ մարդասպան է "։ Եւ զի ասէ "Ընդէ՞ր խնդրէք զիս սպանանել. Աբրահամ զայս ոչ արար". և զի զայս կանխագոյն ասաց նոցա, մի՝ զի զգուշացուցանէ զնոսա 'ի սպանմանէ անտի, և երկու՝ զի առցէ 'ի նոցանէ գրաւական թէ ով խնդրէ սպանանել զքեզ. զի յորժամ սպանցեն, դատապարտեսցին ։ Աբրահամ, ասէ, զայս ոչ արար. այլ փոխանակ այսր ողորմելով ողորմեցաւ նա 'ի վերայ չարագործացն, այս ինքն 'ի վերայ սոդոմայեցւոցն ։ Արդ զի՞նչ է նոցա Աբրահամ 'ի վերայ մեղաւորաց ողորմածն, այնոցիկ՝ որ խնդրէին սպանանել զտէրն արդարոց։ Իսկ շամարիտն որ կոչեցին տեառն մերում, զի շամարտացիքն վասն անձանց իւրեանց ընդդէմ Հրէիցն ասեն՝ եթէ որդիք Աբրահամու եմք . և Հրեայքն ընդդէմ նոցա ասեն՝ թէ մեք եմք որդիք Աբրահամու ։ Իսկ տէր մեր ասէ Հրէիցն . "Եթէ որդիք էիք դուք, ասէ, Աբրահամու, զգործսն Աբրահամու գործէիք "։ Հրէիցն այսպէս թուեցաւ թէ 'ի կողմ շամարտացւոց ինչ կայ բան նորա . իբրու զի ինքն զգեցեալ է զկերպարանս Հրէի . վասն այսորիկ ասացին ցնա՝ թէ "Շամարտացի ես դու " ասէ ։

"Աբրահամ, ասէ, ցանկացաւ տեսանել զօր իմ. ետես և ուրախ եղև "։ Զո՞ր օր . զայն՝ որ ասացաւ նմա, եթէ "Ի զաւակի քում օրհնեսցին ամենայն հեթանոսք "։ Իսկ ետեսն և ուրախ եղև, զի գիտաց նա զխորհուրդ գառինն զփրկութիւն ամենայն հեթանոսաց ։ "Յիսուն ամ, ասեն, քո չիք, և զԱբրահամ տեսե՞ր դու ։ Ասէ ցնոսա . մինչ չև Աբրահամ եղեալ էր, ես էի իսկ "։ Եւ քանզի էր նա, և ծածկեալ էր 'ի ժամանակի իբրև փրկեցաւ Իսահակ 'ի ձեռն գառին, եցոյց զնշանն իւր . իսկ իբրև էջ զաւակ սորին այսր փրկեալ գառամբն յերկրէն եգիպտացւոց, և եղև անդ ժամանակս բազումս, այն ինչ՝ որ նկարեցաւն յառաջ ժամանակօք Սահակաւ, և նոքա նովին նմանութեամբ գառամբն փրկեցան ։ Եւ յայնմ ժամանակէ հետէ զենուլին գառինս, մինչև եկն եհաս գառն ճշմարիտ ։ Եւ իբրև մերձեցաւ առ նա Յովհաննէս, քարոզեաց և ասէ . "Ահաւանիկ գառ-

նըն տյ »: Եւ զի եկն գառն ճշմարտութեն, խափանե-
ցան որ նմանութիք էին:

Իսկ զի հայհոյեցին վասն այնր զոր ասաց նոցա՝ ե-
թէ «Յառաջ քան զլինելն Աբրահամու եմ ես. և
մինչ չև Աբրահամ եղեալ էր՝ ես էի իսկ », դիպե-
ցոյց զանձն իւր կուրի միոյ, որ յորովայնէ մօր իւ-
րոյ կոյր էր: Եւ հարցին ցնա աշակերտքն՝ եթէ ո՞յր
մեղ է, ասէ նա ցնոսա. ոչ դորա և ոչ ընդանեաց
դորա, այլ զի յայտնի լիցին գործքն տյ 'ի դմա. և
ինձ պարտ է գործել զգործս Հօր իմոյ՝ որ առա-
քեացն զիս մինչ դեռ աւուր կայ. այս ինքն մինչ դեռ
ընդ ձեզ իցեմ: Գայ գիշեր, և վերանայ Որդի 'ի բար-
ձունս առ Հայր իւր. և դուք որ լոյսդ էք աշխարհի,
'ի մառն մտանէք, և լինի խափանումն նշանացս վասն
անհաւատութե բազմաց: Եւ իբրև զայս ասաց, ե-
թուք 'ի գետին, և արար կաւ 'ի թքոյ անտի իւրմէ.
և արար աչս 'ի կաւոյ անտի, և ծագեաց լոյս 'ի հո-
ղոյ անտի. որպէս և արար իսկ 'ի սկզբանէ մինչ դեռ
ստուերն երկնից խաւարն 'ի վերայ ամենայնի սփռ-
եալ էր. և հրամայեաց լուսոյ, և 'ի խաւարէ ան-
տի ծնաւ: Սոյնպէս և 'յայսմ վայրի ստեղծաւ 'ի
թքոյ անտի իւրմէ, և ելից զպակասութի ստեղծուա-
ծոյն զայնորիկ՝ որ 'ի սկզբանէն էր. զի յայտ արաս-
ցէ՝ եթէ այն որ ձեռին նորա լցաւ թերութի բնու-
թեն, 'ի ձեռն նորա կատարեցաւ և ստեղծուածն՝
որ 'ի սկզբանէ: Եւ զի ոչ կամեցան հաւատալ եթէ
յառաջ էր նա քան զԱբրահամ, հաւատացոյց զնո-
սա գործն՝ եթէ որդի է նա այնորիկ՝ որ 'ի ձեռս իւ-
րում ստեղծ յերկրէ զԱդամ առաջին: Զի ահա-
ւանիկ զպակասութի նորա 'ի ձեռն հողոյն ելից և
կատարեաց:

Իսկ զի կշտամբեսցէ դարձեալ զայնոսիկ՝ ոյք ա-
սէին թէ 'ի չորից արարածոց կաց մարդ. զի ահա-
ւանիկ յերկրէ անտի և 'ի թքոյն կազմեաց զպակա-
սութի անդամոցն: Եւ զայս վասն օգտութե նոցա. քան-
զի նշանք յորդորէին զնոսա և տային նոցա հաւա-
տալ: «Հրեայք, ասէ, նշանս խնդրեն »: Զի ոչ եթէ
Շիլոհամ եբաց զաչս կուրին, որպէս և ոչ ջուրքն Յոր-
դանանու բժշկեցին զՆեեմանն, այլ հրամանն գոր-

ծեաց ։ Նա և ջուրքն քաւութեան մերոյ ոչ եթէ նոքա սրբեն , այլ անուանքն որ 'ի վերայ նորա լինին յիշեալ՝ նոքա լինին քաւիչք մեր ։ Արդ զի ծեփեաց կաւոյն զաչս նորա , զի լուասցեն այլք զկուրութիս սրտից իւրեանց ։ Եւ զի յորժամ հարցանէ երթայ 'ի մէջ մարդկան՝ թէ ու՞ր է Շիլոհա , տեսանէին ընդ կաւն զի ծեփեալ էր զաչս նորա ։ Հարցին զնա և ուսանէին 'ի նմանէ . ասեն . աղէ երթայք ընդ նմա . և գնացին ընդ նմա տեսանել թէ արդարեւ բանայցեն աչք նորա ։

Զգեալ երթային յայտնապէս ականիքն զկոյրն՝ որ տեսանէր 'ի ներքոյ . և ձգեալ երթայր 'ի ծածուկ կոյրն զականիսն՝ որ կուրացեալ էին 'ի ներքոյ ։ Լուաց նա զկաւն յաչաց անտի իւրոց , և երևեցաւ նմա . լուացին և նոքա զկուրութի̃ սրտից իւրեանց , և երևեցան նոցա ։ Եւ յորժամ զմիոյ կուրի զաչս բանայր տէր մեր՝ յայնմ ժամու յայտնապէս , զկուրաց բազմաց զաչսն բանայր 'ի ծածուկ ։ Եւ կոյրն շատատես եղև նա տեառն մերում իբրև զվաճառ , զի նովաւ վարձեցաւ տէր մեր զկոյրս բազումս 'ի կուրութենէ սրտից ։ Զի ծածկեալ են 'ի փոքր բարբառս նորա գանձք մեծամեծք , և նկարեալ էր 'ի գործ բժշկութեան խորհուրդ նորա՝ թէ որդի է նա արարչին ։ “Երթ , ասէ , լուա զերեսս քո „ . զի կարծիցէ ոք թէ առ արուեստագիտութի̃ մերձ է այս բժշկութի̃՝ առաւել քան առ զօրութի̃ , յղեաց զնա լուանալ . զի ցուցցէ՝ եթէ ոչ էր երկմտեալ վասն նորա թէ բժշկէ զնա . և 'ի հարցանելն և 'ի բանալն քարոզեսցէ զիրսն , և երևեսցին և նորա ևս հաւատք ։

Արդ թուքն նորա եղև բանալի աչաց փակելոյ ։ Եւ զաչս և զբիբս առ ջուրցն բժշկեաց , և 'ի միջոյ ջուրց առակաւն մերձեցոյց զսրբութի̃ իւր առ պակասութի̃ն ։ Եւ յորժամ թքցեն ընդ երեսս նորա , յանդիմանեալ կշտամբեսցէ զնոսա աչք կուրաց՝ որ բացան թքոյն նորա ։ Այլ ոչ երևի նոցա կշտամբանք իւրեանց՝ թէ 'ի պատճառս աչաց կուրաց որ բացան՝ ասաց նա , թէ “Որ տեսանիցեն՝ կուրասցին „ . այս ինքն առ կոյրսն՝ զի տեսցեն զնա մարմնապէս , և առ ականիսն՝ զի ոչ երևէր նոցա հոգեպէս ։ “Կաւ , ա-

սեն, արար 'ի շաբաթու աւուր»: Թողլին նոքա զայն՝ որ բժշկեացն, և սկսան եպերել զառնելըն. իբրև զայն՝ որ աստուածային առն այնմիկ՝ որոյ երեսուն և ութ ամ էր հիւանդութեն նորա. «Ո՞վ, ասեն, հրամեաց քեզ առնուլ զմահիճս քո». և ոչ եթէ սա՞ բժըշկեաց զքեզ: Սոյնպէս և յայսմ վայրի «Կաւ, ասեն, արար 'ի շաբաթու աւուր»: Եւ առանց կաւու ո՞չ նախանձեցան ընդ նա, և օտարացուցին զնա 'ի ժամանակին իբրև բժշկեաց նա զայրն զայն զջրգողեալ՝ որ ձայնիւն բժշկեցաւ: Զի՞նչ արար նմա իբրև բժշկեաց զնա. 'ի ձեռն բանին պարզեցաւ նա և յստակեցաւ: Արդ որ խօսի, զչ. . . . . լուծանէ՞ ըստ նոցա բանիցն. այո: Թէ այդ այդպէս իցէ, ո՞վ շատ ելոյծ զնա. փըրկի՞չն մեր որ բժշկեացն, եթէ նոքա որ խօսեցան նախանձու 'ի վերայ բարերարին իւրեանց:

Եւ զի ասէ. «Ամենեքեան որ յառաջ քան զիս եկին, գողք էին և աւազակք», վն Թեւդայի և Յուդայ ասաց:

## ԳԼՈՒԽ ԺԵ

«Եւ անդ էր, ասէ, հիւանդ մի, Ղազար անուն էր նորա: Եւ առաքեցին առ տէր մեր քորքն նորա և ասեն. տէր, ահաւանիկ զոր դու սիրէիր՝ հիւանդացեալ և անգեալ կայ»: Արդ համեմատեա դու զբարբառս կենարարին, և ուսիր եթէ նմանող են միմեանց: Առ կոյրն ասէ. «Ոչ դորա մեղ է, և ոչ ընտանեաց դորա, այլ զի յայտնի լիցին գործքն այ 'ի դմա». և 'ի հիւանդութենն Ղազարու ասէ. «Այս հիւանդութին չէ 'ի մահ, այլ վասն փառացն այ, զի փառաւորեսցի Որդի այ 'ի նմա»: «Ասէ ցաշակերտսըն. եկայք երթիցուք մեք 'ի հրէաստան: Ասեն ցնա. Հրեայքն խնդրեն զքեզ սպանել, և դու դարձեալ միւսանգամ երթա՞ս անդր»: Այլ ուր չարչարանքն են, ասէ, անդ ընթանայ բժիշկ. առ քարկոծիչսն երթամ ես, զի փոխանակ քարկոծչացն եղիցին նոքա Թարգմանիչք: «Հաւատացին, ասէ, անդ բազումք 'ի նա»:

«Ո՞չ, ասէ, երկոտասան ժամ է յաւուր. եթէ ոք

զնայ լուսով, նա ոչ գայթագղի, զի տեսանէ զլոյս »։ Զայս կամեցաւ առակաւ և օրինակաւ ուսուցանել առաքելոցն՝ թէ մինչ կատարի ամ աւետեաց, զի նա ինքն է մայր ամոց, ոչ գայթագղին Հրեայք 'ի սպանմանն նորա, այն՝ որ 'ի նմա թագաւորելոց էր խաւարն 'ի վերայ Սիոնի ։ "Ո՞չ երկոտասան ժամք են աւուր ». այս ինքն զի՞ երկնչիք դուք 'ի քարկոծելոյ Հրէից ընդ ձեզ եմ ես. սակայն ոք 'ի ձէնջ ընդ իս և փոխանակ իմ ոչ չարչարի ։ Այլ հասանէ ձեզ խաւար լի չարչարանօք յորժամ վերանամ 'ի ձէնջ, և թողում զձեզ ։ Եւ առնջիք զպսակս, որպէս ես զի պսակեցայ և վերացայ 'ի ձէնջ ։ "Եկայք, ասեն, երթիցուք, զի և մեք ընդ նմա մեռցուք » ։ Ստուգեալ էին, թէ երթան ընդ նմա՝ քարկոծին. վասն այսորիկ մխիթարեաց և քաջալերեաց զնա, և եբարձ 'ի նցէ զերկիւղն ։

"Ղազար, ասէ, բարեկամ մեր մեռաւ. և ես ուրախ եմ վասն ձեր » ։ Եւ եթէ ուրախ եղև, վասն էր ելաց նա իբր չողքան ։ Տես դու ցայն վայր եթէ նոքին իսկ մերձաւորքն որչափ ինչ հեռի եղեն 'ի նմանէ ։ Եւ զոր օրինակ մարդ՝ որ ամենայն բնութիւք թաղեալ կան 'ի նմա, և զմի 'ի նոցանէ 'ի տեղոջ իւրում ծագէ զնա, սոյնպէս և տէր մեր զքաղցութի[1] առ հաց, և արտասուք առ սիրելին ։ Ամենայն բժիշկք յառաջագոյն մինչ չև մեռեալ իցէ մարդոյն՝ աշխատին և վաստակեն յոյժ. իսկ բժիշկն Ղազարու մեռեալ հայէր նմա, զի 'ի մահու անդ նորա յուցցէ բժիշկն զքաջութի առաքինութե իւրոյ ։ Ուրախ եղև իբրև լուաւ, և ելաց իբրև եկն ։ Յայտ արար՝ եթէ մեռաւ նա մինչ չև նորա եկեալ էր, և եհարց եթէ ո՞ւր եդիք զնա. զկնի գալոյն ելաց ։ Դարձեալ թէ 'ի յարութենն մեռելոց ասաց անդ մեծամեծս բանիւք, և յայտ արար և կնքեաց գործով, զի հաւատարիմ լինիցի եթէ ճշմարիտ մարդկութի էառ նա ։ Վասն այսորիկ ելաց և յայտ արար զհաւատոյն Մարիամու և Մարթայի, զի երկիր պագին նմա, և խոստովան եղեն նմա առաջի այլոց, այնոցիկ՝ որ խոստովան լինին 'ի նա ։ Ասեն. հրամանն ետուն եթէ 'ի բաց արասցեն զնա ։

1 Յօրինակին պտղղցութն ։

Իսկ այն՝ զի ասէ «Տէր, եթէ աստ լեալ էիր», քանզի յղեցին առ նա՝ և նա ոչ կամեցաւ գալ, գիտացին եթէ այսպէս կամք եղեն տեառն՝ զի մեռցի Ղազար. և ոչ ինքն եկն, և ոչ առաքեաց թէ բժշկեսցի։ Իսկ այն՝ զի ասէ «Եթէ աստ լեալ էիր դու». փոխանակ զի կամիս դու, լուր զնա։ Բայց դարձեալ, քանզի լուեալ էր նոցա յաշակերտաց անտի՝ թէ յոր ժամ ննջեաց նա, զարթեան ալիքն։ Եւ դարձեալ, ՚ի ժամանակին մինչ ոչն էր ընդ նոսա, զարթեան և խռովեցան զբօսանք ծովու։ Խօսեցան մարդկապէս եթէ ուր լոյս է, անդ ոչ մտանէ խաւար. և ուր կեանքն են, ոչ համարձակի մահ։ Ելաց նա, զի յայտ արասցէ՝ եթէ մեռաւ. և զի բացցէ դուռն ասելոյ «Միթէ սա՞ եբաց զաչս կուրին»։ Կամեցան արգելուլ զնա միով. խոստովան եղեն ՚ի նա ակամայ միւսով։ Ո՛վ կեցուցիչ Ղազարու, կեցո զանձն քո։ Խոստովան եղեն դարձեալ և յայնմիկ՝ որ ուրացան զտէր։

«Արդ, ասէ, հոտեալ իցէ»։ Եթէ նստէիր դու առ ոտս նորա որպէս Մարիամ, լսէիր դու ՚ի նմանէ որպէս Մարիամ՝ թէ նմա ամենայն ինչ դիւրին է։ «Ես իսկ եմ, ասէ, յարութիւն և կեանք. ամենայն որ հաւատայ յիս, թէպէտ և մեռանի, կենդանի է նա»։ Յայտ է՝ եթէ որ կենդանի է և հաւատայ յիս, յաւիտենից նա ոչ մեռանի։ Այս ինքն ոչ եթէ յաւիտենից մնայ նա ՚ի մահու անդ, զի կենդանանայ. նա և ոչ յաւիտենից տիրէ ձեռն մահու։ Բայց ոմանք վասն կատարածի աշխարհիս ասեն զնա, եթէ այնոքիկ՝ որոց գալուստն հասանէ՝ ոչ մեռանին. իբրև զայն՝ զի ասէ. «Որ մնացեալն լինին ՚ի գալստեանն՝ ոչ ննջեսցեն»։

Արտասուեաց տէր մեր ՚ի վերայ Ղազարու, զի ցուցցէ եթէ ոչ կարէ յարուցանել զնա. և իբրև կարծեցին նոքա այսպէս, ած յայտնեաց զծածուկ կատակութին նոցա, զայն՝ զի ասէին. «Ոչ կարէ սա այսպիսի ինչ առնել՝ թէ և սա մի մեռցի»։ Թերևս ասիցես, եթէ ոչ ասացին նոքա եթէ ոչ կարէ յարուցանել զնա։ Այլ նոքա որ ինչ ընդդէմ ածութեն բախէր՝ ասացին. զի եթէ լալով ելաց, յայտ արար՝ եթէ ոչ կամէր ընդ մեռանել նորա։ Արդ ոչ

բռնադատէր բնութ՟ն նորա զմահն որպէս ա՟յ, զի մի թողցէ զմահ տիրել 'ի վերայ նորա ։ Արդ իբրև ցուցին նոքա. զայսն կատակութ՟ իւրեանց, դարձաւ նա եցոյց զա՟ծութ՟ին իւր ։ Եւ այն՝ որ խռովեցաւ, իբրև զայն՝ զի ասէ. "Մինչև յե՞րբ իցեմ ընդ ձեզ և անսայից ես ձեզ „. և իբրև զայն է՝ զի ասէ. "Զանձրացաւ անձն իմ ազգաւն այնուիկ „։ Փորձեցին զիս, ասէ, տասն անգամ. և սոքա քսան անգամ, տասն տասն ։

Գնաց երթալ հանել զմեռեալն 'ի գերեզմանէն. և հարցանէ՝ եթէ "Ո՞ւր եդիք զնա ։ Եւ արտասուէր, ասէ, տէր մեր „ ։ Արդ եղէն արտասուք նորա իբրև զանձրև, և Ղազար իբրև ցորեան, և գերեզմանն իբր զերկիր ։ Ետ զձայն իւր իբրև զորոտումն ։ Խռովեցաւ մահ 'ի ձայնէ անտի. ոստեաւ Ղազար իբրև ցորեան, ել և երկիր եպագ տեառն իւրոյ կենարարի ։ Ժամանակէր նա զնշանս իւր, և ժամանակեալ լինէր նոցա. որպէս եցոյց զանձն իւր կուրին՝ որ յորովայնէ մօր իւրոյ կոյր էր ։ Եւ եկաց մնաց անդէն 'ի տեղւոջն զերկուս աւուրս մինչև մեռցի Ղազար ։ Կեցոյց զՂազար, և մեռաւ ինքն փոխանակ ընդ նորա ։ Իբրև եհան զնա 'ի գերեզմանէ անտի և բազմեցաւ ընդ նըմա, թաղեցաւ ինքն 'ի խորհուրդ իւղոյն զոր արկ նա[1] 'ի վերայ գլխոյ նորա ։ Արդ խայտառակեցաւ մահ և ագահութիւն յետ չորից աւուրց. խայտառակեցաւ և զօրութիւն մահու, զի դարձոյց անդրէն զմեռեալն. զի գիտացէ՝ թէ նմա դիւրին է յետ երից աւուրց թողուլ զնա ։ Զի բերանն այն՝ որ կարդաց և եհան զմեռեալն 'ի գերեզմանէն չորեքօրեայ, ճշմարիտ է խոստումն նորա՝ եթէ յերիր աւուր ինքն գլխովին կենդանանայ և յառնէ ։ Խայտառակեցաւ անդ ագահութիւն, այն՝ որ 'ի մէջ Յուդայ դարանակալն եղև նմա, և երեսուն արծաթով վաճառեաց զնա. յանդիմանեցաւ՝ եթէ ոչ վասն զի արար զանձն իւր ա՟ծ՝ փոյթ ինչ էր նմա մատնել զնա. որպէս ոչ վասն աղքատաց փոյթ ինչ էր նմա վաճառեալ զեւղն ։

1 Ցօրինակին 'ի լուսանցան Մարիամ։

Արդ եկն նա 'ի Բեթանիա, և յարոյց զսիրելին իւր, և թաղեաց ինքն զանձն իւր 'ի խորհուրդ իւրոյն։ Ուրախ արար զՄարիամ և զՄարթա, և խայտառակեաց զդժոխս և զագահութին. զդժոխս՝ զի ոչ յաւիտենից լաւանայ 'ի վերայ նորա, և զագահութին՝ զի ոչ թէ յաւիտենից վաճառէ զնա։ Զի նա յերիր աւուր ասաց՝ բայ յառնել. զի յորժամ լուիցեն եթէ դժուարին է այս, հայեսցին նոքա 'ի չորեքօրեայն՝ որ յարեաւն։ Ասաց նա՝ որ ինչ դժուարին է քան զնա. զի այնուիկ զոր կատարեաց առ Ղազար, հաւատարիմ լիցի վասն այնորիկ՝ զոր ասացն վասն անձին իւրոյ. "Մատիք, ասէ, և 'ի բաց արարէք զվէմն"։ Եւ այն՝ որ կեցոյց զմեռեալն և դարձոյց անդրէն զշունչն, ո՞չ կարէր բանալ զգերեզման և 'ի բաց առնել զվէմն. և այն՝ որ ասաց աշակերտացն, եթէ ունիցիք հաւատս քան զհատ մանանխոյ, ասասջիք լերինդ թէ փոխեաց՝ և փոխեսցի յերեսաց ձերոց, զվէմն 'ի բերանոյ անտի գերեզմանին ո՞չ կարէր փոխել բանիւ։ Այլ կարէր նա և զվէմն բանիւ իւրով վերացուցանել, այն՝ որ ձայնիւ իւրով մինչ դեռ 'ի խաչի անդ կայր, զվէմն և զգերեզմանս պատառեաց։ Այլ քանզի բարեկամ նորա էր Ղազար, ասէ. բացէք դուք ձեզէն, զի հարցի հոտ նեխոյն 'ի քիմս ձեր. և լուծէք զնա դուք ինքնին որով պատեցէքն զնա, զի ծանիցիք զգործս ձեռաց ձերոց։

Վասն այսորիկ 'ի ժամ մահուան նորա ոչ դիպեցոյց տէր մեր զանձն իւր 'ի գեօղ անդր, զի մի՛ ասիցեն եթէ ուխտ ինչ արարին 'ի միջի իւրեանց։ "Եւ եթէ թոյլ տամք, ասեն, ամենեքին հաւատան 'ի նա. և գայցեն այնուհետև Հռոմք, և բառնայցեն զազգս մեր, զօրէնս և զտեղիս". զի ընդ իշխանութ̃ Հռոմոց հնազանդեալ էին։ Այլ եկն տէր մեր, և թագաւորեաց նշանօք իւրովք, և աշխարհ գնաց զկնի նորա։ Գուցէ, ասէ, լուիցեն հեթանոսք եթէ թագաւոր ծնաւ նոցա. զի որդի Դաւթի կոչեցին զնա։ Եւ ոչ այսչափ միայն, այլ և խորհեցան իսկ յափշտակել և առնել զնա թագաւոր։ Վասն այսորիկ ասէին՝ ըսպանցուք, զի մի՛ գայցեն Հռոմք, և աւարեսցեն ըզքաղաքս մեր և զազգս։

Շմաւոն բորոտ հաւատայր, և տէր մեր բարի առնէր. Եւ 'ի միջոյ հաւատոցն և բարերարութեն հալածեցաւ բորոտութիւն: Իսկ զիա՞րդ կարէր բորոտութիւն կալ մնալ 'ի մարմնի անդ Շմաւոնի, մինչ տեսանէր զսրբիչ բորոտութեան զի բազմեալ էր 'ի տան Շմաւոնի: Թէպէտ և մարդկութիւն նորա 'ի տան Շմաւոնի բազմեալ էր, սակայն աստուածութիւն նորա 'ի միտս Շմաւոնի լուծեալ էր. որպէս և 'ի Շմաւոն 'ի համանուն նորա: Արդ զիա՞րդ կարէր մեռեալ բորոտութիւն կալ մնալ 'ի տեսանել անդ իւրում զՂազար մեռեալ՝ զի կենդանացաւ և յարեաւ: "Եթէ աստ լեալ էիր, ասէ, ոչ էր մեռեալ եղբայր մեր": Արդ զի՞ բորոտեցաւ Շմաւոն, իբրու սրբիչ բորոտութեան 'ի տան նորա բազմեալ էր. և զիա՞րդ մարթ էր լինել 'ի միում բազմականին զօրութիւն հալածիչ, և բորոտութիւն հալածական. թերևս իբրև զայն զՋակքէի մաքսապետի. "Այսօր եղև, ասէ, կեանք տանս այսորիկ": Վարձս պաշտաման նորա ետ նմա զսրբութիւնն:

"Սուր խորհուրդ արարին, ասէ, քահանայապետքըն, զի և զՂազար սպանցեն": Եւ օրէնք հրամայեն՝ եթէ որ սպանէ, մեռցի: Եւ յորժամ սպանանէք զնա, դարձեալ ո՞չ կարէ կեցուցանել զնա. ո՞չ ահա պարտ էր ձեզ երկնչել, զի մի՛ սպանցէ զձեզ բան բերանոյ նորա, այն՝ որ կեցոյցն զՂազար: Այլ Կայէնի այսպէս թուեցաւ՝ եթէ սպանեմ մարդ, և խաբեմ զԱստուած: Եւ մարդ սպանաւ, զի մահկանացու է. այլ Աստուած ոչ խաբեցաւ, զի գիտակ է ամենայնի:

"Մարթ էր, ասէ, վաճառել զեւղդ զայդ երեք հարիւր դահեկանի, և տալ աղքատաց". և ասաց Յուդա, այն՝ որ վասն զի ետես զնա տէր մեր զի քաղցեալ էր արծաթոյ, հազարապետ քսակակալ 'ի վերայ արծաթոյն արար զնա զի յագեսցի, զի մի՛ եղիցի նա վասն արծաթոյն մատնիչ. զի լաւ էր նմա գողանալ արծաթ, և ոչ մատնել զարարիչն արծաթոյ: Ո՞ւմ պիտոյ էր անդ քսակ, ուր հինգ նկանակ հացն, կամ ուր 'ի ջրոյ անտի գինի, կամ դեղ աչաց որդւոյն Տիմէի դնել, կամ ուր պահանջէին եր-

կուս երկուս դրամս ։ «Մի՛ խնդայք, ասէ, զի այսք հնազանդին ձեզ» . զի աւանիկ Յուդա սկարիովտայ հանէր զդևս ։ «Այլ խնդացէք, ասէ, զի անուանք ձեր գրեալ են յերկինս ընդ հրեշտակս» . և Յուդա գրեալ է յերկիր ընդ խաչահանուսն ։ Հան Յուդա զդևս, զի ինքն թշնամին * տեառն մերոյ պատմեսցէ խաչահանուաց ընկերացն իւրոց՝ թէ արդարեւ Բեղզեբուղաւ հանէ տէր մեր զդևսն , և զի յամօթ լիցի մատնիչն՝ եթէ դևք երկեան 'ի գողոց և ելին, գող արծաթոյն յարարչէ անտի արծաթոյն ոչ երկեաւ ։ Թերևս զայս ոչ յիշեաց, և արկ խիղդ անձին իւրում և հեղձաւ ։ Եւ զի մի ասիցեն եթէ ընտրեաց իւր մատնիչ 'ի դէմս աշակերտի և ոչ գիտաց, ասէ. «Մի ոմն 'ի ձէնջ սատանայ է» . իբրու զանուն Յուդայ ոչ յիշեաց, զի մի խայտառակեսցէ զնա՝ եթէ կամեցեալ էր ապաշխարել ։ Եւ 'ի լուանալ անդ՝ ոչ արար զսկիզբն 'ի Շմաւոնէ 'ի գլխոյ անտի աշակերտացն . զի եթէ գլուխն հրեշտակացն եթող յայնմ ժամու զպատիւն փառաց իւրոց , զի՞արդ կարէր գլուխ աշակերտացն կալ յաստիճան պատուի իւրոյ . այլ ուսաւ նմանել գլխոյն հրեշտակաց ։ Պատիւ բարձրեալ բնութեն տեառն մերոյ զպատիւ խոնարհութեան մարդկութեան իւրոյ զգեցեալ էր 'ի ժամու անդ լուանալոյն ։

ԳԼՈՒԽ ԺԸ

«ԼՈՒԾԷՔ, ասէ ; զովանակդ և ածէք առ իս» ։ Ի մարոյ սկսաւ, և առ յովանակն կատարեաց . 'ի Բեթղահէմ մարով, և յԵրուսաղէմ յովանակով ։ Իբրև եկն եհաս յԵրուսաղէմ , ետես զնա և սկսաւ լալ 'ի վերայ նորա ։ Աբրահամ ետես զօրն նորա և ուրախ եղև . իսկ նա ետես զԵրուսաղէմ և ելաց 'ի վերայ նորա . ելաց զի ոչ ուրախ եղև սա ։ «Եթէ գիտէիր դու, ասէ, գոնէ զայս զօրս զխաղաղութեան քո .

* Ի լուսանցս օրինակին գրեալ էր . «զՅուդայ ասէ Բեղզեբուղ , զի նա զդև հանէր» ։

այլ ծածկեցաւ, ասէ, խաղաղութիւն յերեսաց քոց„։ Աբրահամ հայր քո զօր իմ միայն ետես և ուրախ եղև. իսկ դու և զօր և զտէր աւուրն։ Սա է որ ելաց փոխանակ այնոցիկ՝ որ ոչն եղեն ուրախ ընդդէմ օգնականին իւրեանց։ Ելաց դարձեալ վասն աւերածին՝ որ լինէր քաղաքին. իբրև զայն՝ զի ասէ. “Լացէք դուք 'ի վերայ անձանց ձերոց, զի եկեսցեն աւուրք՝ զի ասասցեն լերանց եթէ ծածկէք զմեզ„, այլովքն հանդերձ։ “Ետես Աբրահամ զօր իմ և ուրախ եղև„ գառամբն ծառոյն. զի նա ելոյծ և արձակեաց զԻսահակ կապեալ. որպէս և ելոյծ տէր մեր զկապանս հեթանոսաց 'ի ձեռն խաչին։ Ի Բաղաամայ ծածկեցաւ տեսիլն հրեշտակին. և 'ի ժողովրդենէ անտի՝ որ զխորհուրդս Բաղաամու գիտէր, ծածկեցաւ տէրն խաղաղութեան. 'ի Նմանէ ծածկեցաւ խաղաղութիւնն, 'ի Նոցանէն և տէրն խաղաղութեան։

Աղաղակէին մանկտին և ասէին. “Օրհնութիւն որդւոյ Դաւթի„։ Քահանայապետք և դպիրք բարկացան և ասեն ցնա. “Ոչ լսես դու զինչ ասեն սոքա„. այս ինքն ասեն՝ եթէ ոչ են քեզ քաղցր օրհնութիւնքս մեր. լռեցո դու զնոսա։ Առ ծնունդն նորա և առ մահն նորա տղայքն անմեղք ընդելուզեալ էին 'ի պսակի անդ չարչարանացն նորա։ Ցնծացաւ մանուկն Յովհաննէս ընդ առաջ նորա 'ի մէջ որովայնին. և կոտորեցան մանկտին 'ի ծննդեան անդ նորա, և եղեն ողկոյզք հարսանեաց նորա։ Եւ աղաղակեցին մանկտին դարձեալ զօրհնութիւնս նորա իբրև եկն եհաս 'ի ժամանակ ծննդեան նորա սպանման։ Խռովեցաւ Երուսաղէմ 'ի ծննդեան անդ նորա. որպէս խռովեցան դարձեալ և տագնապեցաւ յաւուրն՝ յորում եմուտ անդր։ Իբրև լուան դպիրքն և զչարացան, և ասեն ցնա “Սաստեա դու մարդկանդ զի լռեսցեն„, ասէ ցնոսա. “Եթէ դոքա լռեսցեն, սակայն քարինքդ աղաղակեսցեն„։ Իսկ նոքա ընտրեցին իւրեանց զի մանկտին աղաղակեսցեն և ոչ քարինքն. եթէ գուցէ յաղաղակել բնութեանց քարանց 'ի միտ ուրեք առնուցուն կուրացեալքն, սակայն պահեցաւ 'ի սոյն իսկ այս աղաղակել քարանցն 'ի ժամանակ խաչելութեան

նորա · զի 'ի լռել խօսնոցն, խուլք քարոզեցին զմեծութիւն նորա ։

“Այժմիկ դատաստանք են աշխարհի · այժմիկ և իշխան աշխարհիս այսորիկ ընկեցեալ լինի արտաքս ”։ Իշխան ոչ արարածոց և ոչ մարդկան ամենայնի ։ Յայնմիկ՝ զի արտաքս ընկեցեալ լինի, յայտ արար՝ եթէ ոչ է նա գոյ, և ոչ իշխանութիւն ունի նա ։ Որով իւիք ընկեցեալ լինի նա արտաքս, Յովհաննէս մեկնէ · “Ահաւասիկ գառն ա̃յ, որ բառնայ զմեղս աշխարհի ”։ Եւ զի իշխան կոչեցաւ նա, իբր զայն՝ զի ասէ · “Աստուածքն հեթանոսաց չեն աստուածք ”· և “Ոչ է մեզ մարտ պատերազմի ընդ մարմնոյ և արեան, այլ ընդ պետութ̃իս և ընդ իշխանութ̃իս և ընդ աշխարհակալս աշխարհիս խաւարիս այսորիկ՝ որ 'ի ներքոյ երկնից ”· իբրև զայն է՝ զի ասէ · “Որոց ա̃ծ աշխարհիս այսորիկ կուրացոյց զմիտս նոցա, զի մի՛ հաւատասցեն ”։ Սոյնպէս և այս իշխան աշխարհիս ընկեցեալ լինի արտաքս ։ Դարձեալ ասէ 'ի միում վայրի · “Որոց ա̃ծն իւրեանց պորտն իւրեանց է, և փառքն ամօթն իւրեանց ”։

“Մեք, ասեն, լուաք յօրինաց՝ եթէ Քրիստոսն յաւիտեան կեայ ”· այն իսկ է զոր ասէ · “Մի՛ պակասեսցէ, ասէ, մինչև եկեսցէ՝ որոյ իւրն է ”· և “Մարգարէ, ասէ, յարուսցէ ձեզ տէր Աստուած իբրև զիս, նմա լուիջիք ”։ “Եւ դու, ասեն, ասես՝ թէ պարտ է վերանալ որդւոյ մարդոյ ”։ Այս ինքն զի նոքա զկատարած աշխարհիս ասեն՝ որ գայ, զի մի գալուստ ասեն ։ Կամ վասն ամենայն մարգարէութ̃են ասացին՝ զի լուաքն յօրինաց ։ Իբրև զայն՝ զի ասէ · “Որպէս և գրեալ է յօրէնս նորա, եթէ ատեցին զիս տարապարտուց ”։ Եւ 'ի Դաւիթ գրեալ է այս · “Ջատելութ̃ին 'ի նանիր ատեցին զիս ”· և “Մեղաւորք՝ որ ատեն զիս տարապարտուց ”։ Ուր թագաւորն է, անդէն և արքայութ̃ին · վասն այսորիկ ասաց · “Արքայութ̃ի ա̃յ 'ի ներքս 'ի սրտի ձերում է · ոչ, ասէ, գոյ արքայութ̃ի ա̃յ աւուրբք խտրելոյ ”· զի պահին նոքա զժամանակս և զազգս՝ եթէ ահա 'ի նոցանէ ծագելոց է ։ Քանզի լուեալ զնմանէ երեսուն ամաւ յառաջ, և բազմացան համբաւք 'ի պատ-

Ճառս ծննդեան նորա, և ընդ այն ամս իսկ յարեաւ Թեւդաս և ընկերք իւր. զի զնոսա կոչեաց աւազակս, զի կանխեցին յառաջագոյն գողանալ. և սկսան, ասէ, յափշտակել զանունն Քրիստոսի յամենայն կողմանց։ Վասն այսորիկ յամօթ արար զնոսա տէր մեր, զի ոչ եթէ 'ի ծածուկ և պահովք խնդրէին զնա տեսանել։

“Ուրախ լեր, ասէ, դուստր սիոնի, զի ահաւասիկ թագաւոր գայ 'ի քեզ. և ծագեսցէ աստղն Յակոբայ. և ծագեսցի ձեզ պաշտօնէից անուան իմոյ զարեգակն արդարութեան. և սա, ասէ, սրբէ զազգս բազումս”։ Սկսաւ տէր մեր յամօթ առնել զնոսա, զի 'ի ծածուկ դարանօք եկին։ Գողք են և աւազակք, զի ոչ ցուցին զանձինս իւրեանց յայտնապէս։ Ահաւասիկ տէր խաշինն իբրև մտանէր 'ի գաւիթ իւր ընդ դուռնն, այս ինքն 'ի ժառանգութիւն իւր համարձակութեամբ, նշանօք և արուեստիւք քաջութեամբ, ահա 'ի ներքս 'ի սրտի ձերում է վկայութեամբքն իւրովք. ոչ թաքստեամբք, եթէ կարօտասցին խնդրողք նորա պահպանութեամբք խորելոյ։ “Եթէ ոչ գործեմ զգործս, ասէ, մի հաւատայք ինձ”։ Եւ նոքա յայտնէին՝ թէ ոչ էին Քրիստոսք. վասն այսորիկ 'ի ծածուկ խնդրէին գողանալ զմարդկութիւնս։ Յանդիմանէր զնոսա հպարտութեան ամբարտաւանութեանն՝ որ էր 'ի նոսա, և ստութեանն կեղծաւորութեան զոր զգենուին. վասն այսորիկ երկնչէին նոքա յայտնել։ Իցէ, ասէ, մեծ ոք ասաց Թեւդաս. եթէ յանձն առցեն նմա՝ փորձեսցէ զնոսա. և եթէ ոչ լինիցի նա, իբրու թէ վասն այլոյ ուրուք ասաց, իբրու ինքն, ասէ, վասն անձին իւրոյ ասէր։ Եւ անտի եւ այն՝ զի ասէին. “Ահա Քրիստոս յորժամ եկեսցէ, ոչ ոք գիտէ ուստի է”։

Նղծաւ ապականեցաւ այն՝ զի ասէր. “Ի Բեթղահէմ գեղջէ ծնանելոց է Քրիստոս”։ Եւ զի բազմացան Քրիստոսք, անցեալ կային 'ի մէջ բազում խորհրդոց. ասեն. թերևս գիտասցեն իրիցունք մեր՝ թէ սա իցէ արդարեւ Քրիստոս ճշմարիտ քան զամենեսին։ Եւ վասն այնորիկ ասաց նա նոցա. “Եթէ այլ ոք եկեսցէ յանուն անձին իւրոյ, նմա հաւա-

տասջիք „ ։ Քանզի բազումք գնացին զկնի նորա . վասն այսորիկ պատմէ նա վասն համարձակութեանն լինելոյ գալստեան իւրոյ, որպէս և ծնունդ իւր ։ "Եթէ ասիցեն ձեզ՝ եթէ ահաւասիկ աստ է, մի՛ հաւատայք . որպէս փայլակն, ասէ, զի փայլէ „ ։ Եւ որպէս եկին գողք 'ի պատճառս ծննդեան նորա, գան և աւազակք 'ի պատճառս գալստեանն նորա, և բազմանան համբաւք ։ Մի՛ այսուհետև ելանիցէք խնդրել զնա, զի մի՛ վարիցէք . կամ առ խուովիչն, կամ զի մի՛ իցէք որսացեալ ։ Արդ քանզի նա ինքն է տէր արքայութեանն, նա ինքնին կամեցաւ և սրբեաց զգաւառն զբարձունս և զվերինս յանձն իւր, և նա սրբեաց ըզներքինս ։ Իսկ այն՝ զի ասէ "Մաքրեսցէ զտուն արքայութե իւրոյ յամենայն գայթագղութէ „ , վասն երկրի և արարածոց . զի նորոգէ զնոսա, և բնակեցուցանէ 'ի նոսա զարդարս իւր ։

"Վայ ձեզ, ասէ, օրէնսգիտացդ, զի թագուցանէք դուք զփականս „ . այս ինքն զի ծածկեցին զգիտութիւն յայտնութէ տեառն մերոյ, որ 'ի մարգարէս անդ էր ։ Զի եթէ ինքն տէր մեր դուռն է, որպէս և ասաց, յայտ է թէ և փականք գիտութեն նորա են . ընդ այս դուռն կենաց ոչ կամեցան մտանել դպիրքն և փարիսեցիքն . իբրև զայն զի ասէ . "Ահաւասիկ արքայութին 'ի ներքս 'ի սրտի ձերում է „ . այս ինքն վասն անձին իւրոյ, զի 'ի միջի նոցա կայր ։ Զգեցան մեղք հնարօք զանօթս իւրեանց, և կացին 'ի վերայ կամրջին՝ որ անցուցանէր 'ի տուն կենաց . զի շունչք և ոգիք 'ի տունն կենաց մի՛ կայցեն ։ "Թագուցէք, ասէ, զփականս „ ։

Նաև զի ասէ զկնի նոցա . "Եկեսցէ արիւն ամենայն արդարոց „ . փոխանակ զի սպանին նոքա զվրէժխնդիրն սպանմանն նոցա, և խնդրի վրէժ նոցա 'ի ձեռաց նոցա ։ Զի այն՝ որ զդատաւոր սպանանէ, բարեկամ է նա սպանողաց . յայնմիկ՝ զի իբր առ 'ի նմանէն՝ ջնջեաց նա զվրէժխնդրութիւն, և ընդարձակեաց ճանապարհ սպանողաց ։ Եւ զի ասէ "Յարենէ անտի Աբէլի արդարոյ մինչև ցարիւնն Զաքարիայ „ , ոչ եթէ մինչև անդր միայն, այլ մինչև ցայսօր ասէ ։ Քանզի ինքն 'ի միջի նոցա կայր, զարեան իւրոյ զվրէժխնդ-

դրութին ոչ արար, մինչ չև ևս էր սպանեալ զնա. զի մի ասիցեն՝ եթէ հանդերձեալ էր այս լինել: Արդ ետ վճիռ դատաստանի վասն առաջնոցն, զի զգուշասցին վասն վերջնոցն. և ետ ապաշխարութի վասն սպանանելոյն զնա, այն զի ոչ սպանման մարգարէիցն չիք ապաշխարութի ըստ օրինացն. զի այսպէս ասէ. “Որ սպանանէ, մեռցի „. և ոչ ասէ՝ տես, թէ դարձցի՝ թող նմա. վասն իւրոյ սպանութեն ետ նոցա ապաշխարութի՝ եթէ կամեսցին: Սպանութք վերջնոցս խոստովան եղև ժողովուրդն՝ եթէ հաղորդ և կցորդ են նոքա սպանման առաջնոցն. և խոստովանութք բերանոյ իւրոյ նուաղեցաւ 'ի ձայնէ անտի ճշմարտութեն. զի կոչեաց 'ի սպանումն մարգարէիցն զհարսն իւր, և ոչ ամաչեաց: Եւ զոր օրինակ հաղորդեաց և կցորդեաց նա զորդիս նոցա՝ որ ոչ էին ծնեալ՝ 'ի սպանումն փրկչին, սոյնպէս հաղորդեաց և կցորդեաց զկամս չարութե նոցա և իբրև ոչ գիտէին՝ 'ի սպանումն մարգարէիցն. զի ծանեան նոքա զորդին՝ թէ տէր է այգւոյն, և գիտացին եթէ վրէժխնդիր է նա՝ և զէնին զնա:

Կանխեաց յառաջագոյն Մովսէս և ետ նոցա պատուէր հրամանի, զի 'ի միում տեղւոջ մատուսցեն զպատարագս իւրեանց, և 'ի նմին զգառն զենուցեն, և խորհուրդ փրկութե արասցեն: Եւ ոչ սպան զնա Հերովդէս ընդ մանկտին բեթղեհեմացոց, և ոչ նազօրեցիքըն՝ իբրև ընկեցին զնա 'ի լեռնէ անտի, զի ոչ ունէր նա հրաման արտաքոյ քան զԵրուսաղէմ մեռանել: “Եւ ոչ, ասէ, պարտ է մարգարէի կորնչել արտաքոյ քան զԵրուսաղէմ „: Տես դու, զի թէպէտ և Երուսաղէմ սպան զնա, սակայն և Հերովդէս և Նազարէթ խառնեալ են 'ի մահու անդ նորա, և խնդրի ևս 'ի նոցանէ վրէժ սպանման նորա: Եւ ուսիր դու այսուիկ՝ եթէ ոչ 'ի բնակչաց անտի Երուսաղէմի միայն խնդրի վրէժ արեան նորա, այլ և յամենայնէ՝ որ միանգամ ետես զնա և ելաց զնա՝ կշտամբեալ յանդիմանի 'ի սպանման անդ նորա: Եւ զի ասէ. “Ընդ մէջ տաճարին և ընդ մէջ սեղանոյն „, յայնմիկ զչարութի նոցա յայտ արար, զի ոչ ամաչեցին և ոչ 'ի տեղւոջէ անտի քաւութեն: Եւ զի ասէ. “Քանիցս անգամ կամեցայ

ժողովել զձեզ„ , այն իսկ է՝ որ ասէ. “Ահաւասիկ, ասէ, այս երեք ամք են, զի գամ խնդրեմ զպտուղ ’ի թզենոյ այտի և ոչ գտանեմ„ ։ “Եթէ ոք լուիցէ բանից իմոց և ոչ պահիցէ զնոսա, ես ոչ դիտեմ զնա„ ։ Եւ ո՞ւր է այն՝ զի ասէ “Հայր զոք ոչ դատի, այլ զամենայն դատաստանն ետ ’ի ձեռս Որդւոյ իւրոյ„ ։ Այլ քանզի բժիշկ է նա մարդկութեան, ասէ. “Ոչ եկի ես յաշխարհս եթէ դատեցից զաշխարհ, այլ զի փրկեցից զաշխարհս„ ։ Եւ զի յայտ արասցէ՝ եթէ ամենայն դատաստանք նորա են, ուստի զայն՝ որ ասէ. “Որ ոչ ընդունի զբանս իմ, բանն, ասէ, զոր ես խօսեցայն՝ նա դատի զնա„ ։

Եւ այն՝ զի ասէ. “Յորժամ տեսանիցէք դուք զնշան երկեղի աւերածոյն նորա„. քանզի բազում անգամ աւերեցաւ նա, և դարձեալ շինեցաւ, ասաց նա ապականութ͞ի ընդ աւերածն նորա, և զպղծութ͞ի սրբութ͞ե նորա. զի զկնի այսր հանգչի ’ի վերայ ապականութ͞ե. այս ինքն զի մնացեալ լինի ։ Զի կանգնեցին Հոռոմք դրօշս ’ի տաճարի անդ ներքոյ իբրու զի նկարեալ էր ’ի նոսա արծուի, որպէս և ասաց իսկ՝ թէ ’ի վերայ թևոց պղծութ͞են ապականութ͞ե ։ “Նշան, ասէ, երկեղի աւերածոյ նորա՝ որ ասացաւ ’ի Դանիելէ մարգարէէ„ ։ Իսկ այլք ասեն նշան աւերածոյն նորա՝ խոզի գլուխ ետուն բերել ’ի Հոռոմոց, և դնել ’ի տաճարի անդ ’ի ներքս ’ի ձեռն Պեղատոսի ։ Եւ զի ասէ. “Որ ’ի վերայ տանեացն կայցէ„, այլովք հանդերձ. զի ոչ փրկին նոքա որպէս հանապազն, զի չիք ’ի վերայ նոցա փոյթ հոգաբարձութ͞ե նորա ։ Եւ զի ասէ. “Վայ իցէ այնոցիկ՝ որ յղիքն իցեն„, և այլն ևս. վասն այնոցիկ՝ որ տանջեցան ’ի պաշարման անդ Երուսաղէմի ’ի ձեռաց Հոռոմոց. “Եղիցի, ասէ, նեղութիւն ժողովրդեանս այսմիկ„. մինչև զորդիսն իւրեանց անգամ կերան կանայք ։

“Յաղօթս կացէք և խնդրեցէք, զի մի լինիցի փախուստն ձեր ձմերանի, և մի ’ի յօր շաբաթ„. զի մի վարիցիք դուք ’ի ժամանակի՝ յորում չիցէ ’ի նմա գործել. զոր օրինակ ձմեռն առանց պտղոյ է, և շաբաթ առանց գործոյ. այսպէս մի վարիցիք դուք յորժամ ոչ ունիցիք պտուղ և ոչ գործս ։ Ի ձմեռն և ’ի

շաբաթ՝ մին բռնութե՟, և միւսն կամաց. ձմերանն բռնութե՟, և շաբաթուն կամաց։ Արդ ոչ բռնութ՟ի այլոց և ոչ կամք ձեր շարժեսցեն զձեզ 'ի գործոյ անե-տի տեառն ա՟յ ձերոյ։ Բայց դարձեալ ձմեռն և շաբաթ՝ յայտ արար նոցա եթէ չար գալոց է 'ի վերայ նոցա։ Եւ իբրև յայտնեաց նոցա զբարկութի՟ն իւր, և եցոյց նոցա եթէ գալոց է 'ի վերայ նոցա արդարութ՟ք, դարձաւ փութացաւ 'ի վերայ նոցա ողորմութ՟ք, և ուսոյց նոցա զի յաղօթս կայցեն։ Ոչ անցուցանել զսահման պատժոցն խստութե՟ որ 'ի վերայ նոցա կայր, այլ փոփոխել զժամանակն և զօրն զչարին մեծի՝ որ ընդդէմ նոցա է։ Զի ողորմութ՟ք իւրով հաղորդեցաւ նա 'ի յասել անդ իւրում, եթէ 'ի գալ նեղութե՟՝ Ճշմարիտ է, և զի փախիջիք դուք՝ հանդերձեալ է. բայց յաղօթս կացջիք, զի այս հիացութ՟ի և ստրջումն ձմեռն մի՛ եկեսցէ 'ի վերայ ձեր. այն զի 'ի նմա թէ ապրեսջիք դուք՝ ոչ կամեցարուք, և փախչել յերեսաց նեղութ՟է անտի ոչ կարէք դուք. և վասն շաբաթուն, զի 'ի վերայ դատարկութե՟ն ձերոյ մի՛ հասցէ ձեզ նեղութ՟ի։

Յայտ արար զհոգաբարձութի՟ն իւր վասն օրինացն իբրև զմանուկ օրինացն. և վերակացու եղև նոցա, զի մի՛ լուծցին օրէնքն Մովսէսի։ Եթէ գուցէ, ասէ, յորժամ գտցին 'ի ձեզ անմեղք և միամիտք, իբրու թէ պահիցեն զշաբաթ յաւուրն պատերազմին, իբրու այն՝ թէ զուխտն կտակարանաց պահիցէք, և սատակիցեն զձեզ իբրև զայնոսիկ՝ որ յայրի անդ սատակեցան։ Ի ձմեռն դարձեալ և 'ի շաբաթ՝ ձմեռն հանգիստ ամենայն աշխատութե՟ ամարայնոյ, և շաբաթ եւթն օր. այս ինքն 'ի յաւուրն գալստեան. իբրև զայն զի ասէ. ցարդ ես կայ շաբաթն ա՟յ, զի շաբաթ կատարած է գործոց։ Իբրև զայն՝ զի ասէ. “Յաղօթս կացէք, զի արժանի լիցիք զերծանել յայսմ ամենայնէ որ լինելոց է „. ասաց, ասեն, վասն հատուցման յԵրուսաղէմ, իբրու յայտ առնէ վասն կատարածի աշխարհիս։ “Լինի ձեզ, ասէ, փախուստ „. զի շտապ տագնապի հասանէ յարութե՟ անդ ամենայնի՝ որ ոչ լինին կատարեալ զկնի նորա։ Իսկ այլք ասեն՝ եթէ վասն առաքելոցն միայն ասացաւ, զի 'ի յուրբաթու

անդր խաւարեալ արեգականն քաջալերեալ էին. և 'ի շաբաթու անդ մեծաբանեցան Հրեայք. և 'ի ձմեռն զի ցուրտ է: "Եւ եթէ ոչ էր, ասէ, ո՞յ կարճել զաւուրսն զայնոսիկ, ոչ ապրէր ամենայն մարմին[1]": Ոչ եթէ չափ աւուրցն կարճի ըստ ժամուց, այլ ինքն ժամանակն փոքրկանայ վասն ընտրելոցն, զի մի բազմասցին նեղութիւնք նոցա, այլ կարճեսցին. այս ինքն հասցէ փրկութիւն:

Եւ զի ասէ. "Զայն ժամ ոչ ոք գիտէ, ոչ հրեշտակք, և ոչ Որդի". զի արգելցէ զնոսա, զի մի հարցցեն զնա վասն ժամուն գալստեան նորա: "Ոչ է, ասէ, ձեզ գործ գիտել զաւուրս և զժամանակս": Այլ ծածկեաց զնա՝ զի արթունք լինիցիմք, և կարծիցէ իւրաքանչիւր մարդ 'ի մէնջ՝ եթէ 'ի ժամանակի իւրում ծագիցէ: Զի եթէ յայտնեալ էր՝ թէ երբ գայ նա, անհամ լինէր գալուստ նորա, և ոչ լինէր ցանկալի 'ի վերայ ազգացս և դարուցն՝ յորում յայտնելոց էր 'ի նոսա: Այլ ասաց՝ բա գայ, և ոչ եդ սահման՝ թէ երբ. և ահա ամենայն ազգք և դարք ծարաւի են նովաւ: Զի թէպէտ և ետ զնշանսն գալըստեանն իւրոյ, սակայն ոչ բովանդակի սահմանն նոցա. զի բազում փոփոխելով եկին և անցին, իբրու կան ևս, զի նմանեալ է յետին գալըստն նորա առաջնումն: Զի ցանկացեալ էին նմա արդարք և մարգարէք, զի կարծէին եթէ յաւուրս նոցա յայտնելոց է. սոյնպէս ցանկացեալ են հաւատացեալք այսօր ընդունել զնա իւրաքանչիւր 'ի նոցանէն 'ի ժամանակի իւրում, յայնմիկ՝ զի ոչ ասաց յայտ զօրն ծագելոյ իւրոյ. մանաւանդ զի մի ոք կարծեսցէ զնմանէ՝ իբրու թէ 'ի ներքոյ հրամանի՝ և ժամու է նա, այն՝ որ 'ի ներքոյ քան զնա են թիւք և ժամանակք ըստ իշխանութեան տէրութեան իւրոյ: Եւ այն ինչ որ նովաւ հաստեցաւ, զիա՞րդ է ծածկեալ 'ի նմանէն. զի ահաւասիկ նա ինքնին պատմեաց նոցա և զնշանս գալստեան իւրոյ: Սակայն ահաւանիկ գրեալ է և զգիտելն, վասն էր զմինն երկրորդեն, և զմիւսն թողուն: Եւ եթէ զժամանակն գիտէր և ժամն ծածկեալ էր 'ի նմանէ, ահա ժամա-

1 Յօրինակին 'ի լուսանցսն նշեալ է:

շաբաթ՝ մին բռնութե, և միւսն կամաց. ձմերանն բռնութե, և շաբաթուն կամաց։ Արդ ոչ բռնութի այլոց և ոչ կամք ձեր շարժեսցեն զձեզ 'ի գործոյ անտի տեառն այ ձերոյ։ Բայց դարձեալ ձմեռն և շաբաթ՝ յայտ արար նոցա եթէ չար գալոց է 'ի վերայ նոցա։ Եւ իբրև յայտնեաց նոցա զբարկութին իւր, և եցոյց նոցա եթէ գալոց է 'ի վերայ նոցա արդարութք, դարձաւ փութացաւ 'ի վերայ նոցա ողորմութք, և ուսոյց նոցա զի յաղօթս կայցեն։ Ոչ անցուցանել զսահման պատժոցն խստութե որ 'ի վերայ նոցա կայր, այլ փոփոխել զժամանակն և զօրն զչարին մեծի՝ որ ընդդէմ նոցա է։ Զի ողորմութք իւրով հաղորդեցաւ նա 'ի յասել անդ իւրում, եթէ 'ի գալ նեղութե՝ Ճշմարիտ է, և զի փախիջիք դուք՝ հանդերձեալ է. բայց յաղօթս կացջիք, զի այս հիացութի և սորջումն ձմեռն մի եկեսցէ 'ի վերայ ձեր. այն զի 'ի նմա թէ ապրեսջիք դուք՝ ոչ կամեցարուք, և փախչել յերեսաց նեղութէ անտի ոչ կարէք դուք. և վասն շաբաթուն, զի 'ի վերայ դատարկութեն ձերոյ մի հասցէ ձեզ նեղութի։

Յայտ արար զհոգաբարձութին իւր վասն օրինացն իբրև զմանուկ օրինացն. և վերակացու եղև նոցա, զի մի լուծցին օրէնքն Մովսէսի։ Եթէ գուցէ, ասէ, յորժամ գտցին 'ի ձեզ անմեղք և միամիտք, իբրու թէ պահիցեն զշաբաթ յաւուրն պատերազմին, իբրու այն՝ թէ զուխտն կտակարանաց պահիցէք, և սատակիցեն զձեզ իբրև զայնոսիկ՝ որ յայրի անդ սատակեցան։ Ի ձմեռն դարձեալ և 'ի շաբաթ՝ ձմեռն հանգիստ ամենայն աշխատութե ամարայնոյ, և շաբաթ եւթն օր. այս ինքն 'ի յաւուրն գալստեան. իբրև զայն զի ասէ. ցարդ ես կայ շաբաթն այ, զի շաբաթ կատարած է գործոց։ Իբրև զայն՝ զի ասէ. “Յաղօթս կացէք, զի արժանի լիցիք զերծանել յայսմ ամենայնէ որ լինելոց է „. ասաց, ասեն, վասն հատուցման յԵրուսաղէմ, իբրու յայտ առնէ վասն կատարածի աշխարհիս։ “Լինի ձեզ, ասէ, փախուստ „. զի շտապ տագնապի հասանէ յարութե անդ ամենայնի՝ որ ոչ լինին կատարեալ զկնի նորա։ Իսկ այլք ասեն՝ եթէ վասն առաքելոցն միայն ասացաւ, զի 'ի յուրբաթու

անդր խաւարեալ արեգակն քաղջալերեալ էին. և 'ի շաբաթու անդ մեծաբանեցան Հրեայք. և 'ի ձմեռն զի ցուրտ է: "Եւ եթէ ոչ էր, ասէ, ո՞յ կարճէր զաւուրսն զայնոսիկ, ոչ ապրէր ամենայն մարմին [1]": Ոչ եթէ չափ աւուրցն կարճի ըստ ժամուց, այլ ինքն ժամանակն փոքրկանայ վասն ընտրելոցն, զի մի բազմասցին նեղութիւք նոցա, այլ կարճեսցին. այս ինքն հասցէ փրկութիւն:

Իսկ զի ասէ. "Զայն ժամ ոչ ոք գիտէ, ոչ հրեշտակք, և ոչ Որդի". զի արգելցէ զնոսա, զի մի հարցցեն զնա վասն ժամուն գալստեան նորա: "Ոչ է, ասէ, ձեզ գործ գիտել զաւուրս և զժամանակս": Այլ ծածկեաց զնա՝ զի արթունք լինիցիմք, և կարծիցէ իւրաքանչիւր մարդ 'ի մէնջ՝ եթէ 'ի ժամանակի իւրում ծագիցէ: Զի եթէ յայտնեալ էր՝ թէ երբ գայ նա, անհամ լինէր գալուստ նորա, և ոչ լինէր ցանկալի 'ի վերայ ազգացս և դարուցն՝ յորում յայտնելոց էր 'ի նոսա: Այլ ասաց՝ բա գայ, և ոչ եդ սահման՝ թէ երբ. և ահա ամենայն ազգք և դարք ծարաւի են նմա: Զի թէպէտ և ետ զնշանն գալստեանն իւրոյ, սակայն ոչ բովանդակի սահմանն նոցա. զի բազում փոփոխելով եկին և անցին, իբրու կան ևս, զի նմանեալ է յետին գալստեան նորա առաջնումն: Զի ցանկացեալ էին նմա արդարք և մարգարէք, զի կարծէին եթէ յաւուրս նոցա յայտնելոց է. սոյնպէս ցանկացեալ են հաւատացեալք այսօր ընդունել զնա իւրաքանչիւր 'ի նոցանէն 'ի ժամանակի իւրում, յայնմիկ՝ զի ոչ ասաց յայտ զօրն ծագելոյ իւրոյ. մանաւանդ զի մի ոք կարծեսցէ զնմանէ՝ իբրու թէ 'ի ներքոյ հրամանի՝ և ժամու է նա, այն՝ որ 'ի ներքոյ քան զնա են թիւք և ժամանակք ըստ իշխանութեան տէրութեան իւրոյ: Եւ այն ինչ որ նմա հաստեցաւ, զիա՞րդ է ծածկեալ 'ի նմանէն. զի ահաւասիկ նա ինքնին պատմեաց նոցա և զնշանս գալստեան իւրոյ: Սակայն ահաւանիկ գրեալ է և զգիտելն, վասն է՞ր զմինն երկրորդեն, և զմիւսն թողուն: Եւ եթէ զժամանակն գիտէր և ժամն ծածկեալ էր 'ի նմանէ, ահա ժաման-

1 Յօրինակին 'ի լուսանցան մուծեալ:

Նախն ժամ է, և ժամն ժամանակ։ “Այս, ասէ, այժմ ոսկր յոսկերաց իմոց„. զի նա ինքն է թօթափումն մի արտևանացն. և “Յայնմ ժամանակի, ասէ, և յայնմ ժամու ցնծացաւ Յիսուս յոգի իւր. և “Արթուն լերուք, ասէ, և յաղօթս կացէք, զի ոչ գիտէք դուք զժամանակն„, և այլն ևս։

Զօրն զայն, ասէ, ոչ ոք գիտէ, ոչ հրեշտակ և ոչ Որդի„. իբրև զայն՝ զի ասէ. “Երթայք յինէն անիծեալք հօր իմոյ 'ի հուրն յաւիտենից, զի ոչ գիտեմ զձեզ„։ Այլ զոր օրինակ իբրու գիտէ նա զմեղաւորս, և վասն գործոցն իւրեանց ասէ ոչ գիտեմ զձեզ, սոյնպէս իբրու գիտէ նա զժամ գալստեանն իւրոյ, վասն զի մի՛ հարցցեն զնա վասն նորա, ասաց՝ բայ ոչ գիտեմ զնա։ Այլ աղէ զայս ասասցուք՝ եթէ գիտէ՞ նա զՀայր եթէ ոչ։ Եւ գիտակ է նմա, որպէս և գրեալ է, եթէ “Ոչ ոք գիտէ զՀայր, եթէ ոչ Որդի. և ոչ զՈրդի ոք գիտէ, եթէ ոչ Հայր„. զիա՞րդ զժամ գալստեան նորա ոչ գիտէ։ Զի եթէ զՀայր գիտէ, ո՞վ արդեւք իցէ որ մեծն է քան զՀայր՝ զի ոչ գիտէ զնա. կամ ո՞ր են պատճառք՝ զի թաքոյց 'ի նմանէ զժամ գալստեան նորա, եթէ այսուիկ փոքրկասցի նա քան զնա, և լինիցի յայտ բնութիւն նորա՝ իբր թէ արարած իցէ։ Եթէ այդ այդպէս իցէ, յորժամ յայտնի 'ի նմա ժամ, և հարկանի փող զի իջցէ յերկնից, լինի նա իբրև զնա։ Եւ դարձեալ ասէ. “Խորհուրդ Աստուծոյ Քրիստոս է, որ նովաւ յայտնեցան ամենայն ծածկեալք իմաստութեան և գիտութեան„։ Եթէ այս ամենայն ծածկեալք նովաւ յայտնեցան, զիա՞րդ ժամ գալստեան նորա ծածկեալ է 'ի նմանէն։ Եթէ զօրն յորում գայ 'ի նմա ոչ գիտէ, և զորս ոչն եկն ի նոսա ոչ գիտէ։ Եւ Հոգին, որ նովաւ հաստեցան՝ որպէս ասեն՝ գիտէ, զի զխորս Աստուծոյ քննէ, և Որդի ո՞չ գիտէ։ Նոքա վասն ժամու հարցին, և նա ած եմոյծ զօրն և ասաց՝ եթէ ոչ գիտեմ. մի՝ զի արգելցէ զնոսա զի մի՛ հարցցեն, և միւս՝ զի լիցին օգնականք նշանքն։ Որպէս հիւանդութիւն առ հիւանդ, զի զօր մահուան իւրոյ ոչ գիտէ։ Այլ յարդեաց նա զնշանսն իւր, զի յօրէ յառաջնմէ ամենայն ազգք և դար կարծիցեն՝ եթէ յաւուր իւրում ծագելոց է գալուստն։

Արթուն կացէք, զի մարմին յորժամ ննջէ, տիրէ 'ի վերայ մեր բնութեան, և ոչ ըստ կամաց մերոց գործի 'ի մեզ. ըստ սաստկութեան բնութեանն տիրէ գործն։ Եւ շունչ՝ յորժամ թագաւորէ 'ի վերայ նորա քուն ծանրութեան, այս ինքն կարճամտութեան և տրտմութեան, տիրէ 'ի վերայ նորա թշնամի, և գործէ նովաւ ինչ՝ զոր ոչ կամի զնա։ Ի վերայ բնութեան տիրէ բռնութիւն, և 'ի վերայ շնչոյ տիրէ թշնամի։ Արդ զարթուն կալ՝ զոր ասաց տէր մեր՝ երկոցուն կողմանցն ասաց, զի մի մարմինն հանգիցէ 'ի քուն ծանրութեան, և մի շունչ 'ի դանդաղութիւն վեհերոտութեան. իբրև զայն՝ զի ասէ. "Սթափեցարուք արդարութեամբ". և "Զարթեայ և ես ընդ քեզ եմ". և "Դուք մի ձանձրանայցէք". և վասն այսորիկ ոչ ձանձրանամք 'ի պաշտօնս յայս զոր ունիմք։

Եւ զի ասէ "Երկու իցեն յագարակի 'ի միում մահիճս", վասն հիացութեան որ գալոց էր 'ի վերայ նոցա յաւերածի անդ Երուսաղէմի. իբրև զայն՝ զի ասէ. "Եթէ մնասցեն անդ տասն այր"։ Եւ արծուիս զթշնամիսն կոչեաց, որ եկին 'ի վերայ նորա. զի նա ինքն է կեր. իբր զայն՝ զի ասէ. "Արագունք են երիվարք նորա քան զարծուիս"։ Իսկ այլք 'ի վերայ մարմնոյ և շնչոյ ասեն զայս։ Դարձեալ ասի վասն կատարածի աշխարհիս. և անկցի ահ և երկեւղ 'ի վերայ ամենայն մարդոյ, զի պատրաստք եղիցին. իբրև զայն՝ զի ասէ. "Եղիցին գօտիք ձեր պնդեալ ընդ մէջս"։ Կամ վասն որդոյ և մեղաւորի, զի ոչ կարէ փրկել զնա։ Եւ երկանս զաշխարհս կոչեաց, և արծուիս զարդարս թեւօք երագ։ Եւ զի ասէ. "Ո՞վ իցէ գաւառապետ ծառայ հաւատարիմ բարեգործ և իմաստուն". իբրև զայս ամենայն վկայեաց 'ի վերայ նորա։ Սակայն եթէ ոչ լինի հաւատարիմ յինչսն՝ որ յանձն եղև նմա, կորեսցէ զնա ընդ մէջ, և բարժանեսցէ դիցէ զբաժին նորա ընդ կեղծաւորս և ընդ անհաւատս, և անդ լիցի նմա, ասէ, լալ աչաց և կրճել ատամանց։

"Հինգ 'ի նոցանէ, ասէ, յիմարք էին, և հինգ իմաստունք"։ Այլ իմաստութիւն ոչ զկուսութիւն նոցա անուանեաց, զի ահաւանիկ ամենեքին նոքա կուսանք էին. այլ զգործս նոցա զբարիս անուանեաց իմաստու-

թ՟ն ։ Զի եթէ սրբութ՟ն հրեշտակաց նմանող լինի կուսութ՟ին քո, տես դու զհրեշտակացն՝ սուրբ է և 'ի նախանձուէ, այլովք հանդերձ ։ Եւ զոր օրինակ ոչ պարտաւորեցար դու 'ի շնութ՟է, սոյնպէս մի՛ պարտաւորիր դու 'ի սրտմտութ՟է և 'ի բարկութենէ ։

Այն դարձեալ որ ոչ սերմանեաց զքանքարն իւր, զրկեցան 'ի նմանէ շնորհք արմտեաց իբրև յամուլ երկրէ ։ Իսկ զերկիրն զոր ասաց՝ բայ թագոյց զնա, զխորհուրդս նորա առակեաց յերկիր չարուտ[1], որ զպտուղ ոչ տայ ։ “Առէք, ասէ, 'ի սմանէ զքանքարն„․ այս ինքն զհաւատոն․ զի ոչ ստացաւ նա իւր վարս ուղեղս հաւատոց ։ Ոչ եցոյց զլացութ՟ի տէր մեր այն հինգ քանքարի, զի մի՛ ասիցեն եթէ աւելի քան զկար մեր ետ մեզ ։ Անուանեաց առ մին, զի այնու՝ որ զհինգն ունիցին՝ կշտամբեալ յանդիմանեսցի այն՝ որ զմին ունիցի ։ Եւ զի ասէ․ “Եղիցին գօտիք ձեր, ասէ, պընդեալ ընդ մէջս ձեր„, զի պատրաստ իցեմք սրբութ՟ք ։ “Եւ լուցեալ ճրագունք ձեր„․ զի աշխարհս իբրև զգիշեր է, և լուսոյն արդարոց կարօտ է․ իբրև զայն՝ զի ասէ․ “Լուսաւորեսցի լոյս ձեր առաջի մարդկան, զի տեսցեն զգործս ձեր բարիս, և փառաւորեսցեն զհայր ձեր՝ որ յերկինս է„ ։

Ձեռքն իմաստունք քաղցրութ՟ք նորա խոնարհեցան լուանալ զոտոն զմատնիչս նորա, որ փոխանակ ընդ լուանալոյն հատոյց նոցա բևեռս խաչի ։ Եւ այն՝ որ նովաւ հաստեցան ամենայն արարածք, խոնարհեցոյց զանձն իւր առ ոտս տկարս լուանալ, և եղև ատելի փարիսեցոց, և հալածական 'ի քահանայից ։ Որպէս զի նովաւ հաստեցան ամենայն արարածք 'ի լինելն իւրեանց, իբրև եղև ինքն միջնորդ՝ սոյնպէս մեծացաւ փրկութ՟ի նոցա որ 'ի նմանէն․ զի հնազանդեալ էին նոքա յառաջին ժառանգութ՟է անտի ։ Եւ զի խոնարհեալ անկեալ էին նոքա 'ի ներքոյ տէրութ՟ե անիծիցն, խոնարհեցոյց նա զանձն իւր 'ի ներքոյ նոցա, զի զամենեսին զնոսա վերացուսցէ և բարձրացուսցէ․ որպէս և առաջին խոնարհեցուցիչն նոցա խրատու իբրև հոգաբարձ վերակացու մատեաւ առ

1 Յօրինակին 'ի լուսանցան չորոտ ։

նոսա ։ Արդ ընաւ ամենեւին հպարտութի և ամբարտաւանութիւն գործել ինչ ոչ կարէ, եթէ բնութեք ոչ վարէ ։ Իսկ ամենայն բարութիք 'ի ներքոյ քան զսէր արգելեալ և փակեալ կան, և գանձաւոր նոցա սէր է ։

## ԳԼՈՒԽ ԺԹ

“Մի ոմն 'ի ձէնջ, ասէ, որ հաց ուտէ ընդ իս, նա է որ մատնելոց է զիս ․ և ահաւասիկ ձեռն մատնչի իմոյ ընդ իս 'ի սեղանս մխեալ ։ Եւ որդի մարդոյ երթայ, որպէս և գրեալ է վասն նորա „ ։ Եւ այսուիկ ողբալով ողբայր նա սիրով զանօրէն ապականիչն ․ “Լաւ էր նմա՝ եթէ ոչ էր ծնեալ „ ։ Արդ եթէ հանդերձեալ էր նա 'ի խաչ ելանել, յո՞ր կողմ խոնարհեցուցանեմք զբանն ․ առ կանուխգիտութի՞ն, եթէ առ ոչգիտութին ․ եթէ առ խաբէութի՞ն՝ այն զի ասէ “Լաւ էր նմա՝ թէ ոչ էր ծնեալ „ ․ և ո՞ր պատճառք արգելլին զապաշխարութի նորա՝ զի մի լիցի արժանի ընդունելութեան ։

Եթէ այս եպերանք և բամբասանք են քո, առ դու քեզ օրինակ զօձն, և մի բամբասիր և մի պատուհասեր զիս ․ այս ինքն զիս փոխանակ վարդապետին իմոյ ։ Զի եթէ հանդերձեալ էր Ադամ յանցանել, յո՞ր փառս ժողովես դու զեպերանս զայնր՝ որ ելից զբերան օձին հողով, և կարճեաց զնա 'ի հանգըստենէ գնացից իւրոց ։ Ապ՝ եթէ ոչ հանդերձեալ էր Ադամայ յանցանել առանց գրգռչին, արդարութք եդան պատիժքն 'ի վերայ գլխոյ նորա [1] ։ Թէպէտ և լիցի՝ զի հանդերձեալ էր այնմիկ՝ որ եղեն պատճառք, առնու զհանդերձուին, կանխագոյն յիրաւի ածին 'ի վերայ զպատիժս պատուհասից ․ այլ Ադամ վասն այսր փորձելոյ լուծութեանս զոր գտաք 'ի նա, և առանց պատճառանաց օձին յայլ յանցանս ժողովեալ լինէր նա առանց փորձելոյ զնա ։ Սոյնպէս և այն՝ որ 'ի խաչն ել, կամ արդիւք առանց պատճառանաց ուրուք 'ի խաչ ելանել հանդերձեալ էր ․ Թէպէտ և

1 Ցօրինակին 'ի լուսանցսն օձին ։

չիցէ նմանն, զի ոչ տան մեզ թոյլ ընթերցուածք հեբրայեցոց այլովքն հանդերձ։ Սէր եհան 'ի վեր զխորհուրդն, և յայտնեաց երկիւղին. զի յորժամ սէրն 'ի վերայ լանջացն տեառն մերոյ իշխեալ էր, երկիւղն ակնարկելովն ակնարկէր։

Եթէ արդարեւ ճշմարիտ է այն, յորժամ ետն զհացն աշակերտացն իւրոց՝ զխորհուրդն մարմնոյ իւրոյ ետ նոցա, եղիցի հաւատալի և այս՝ եթէ յորժամ ետ նա զհացն սպանողին իւրոյ, 'ի խորհուրդ սպանման մարմնոյ իւրոյ ետ զնա նմա։ Եւ զի եթաց նա, զի արասցէ անդ հաղորդութեան կատարեալ սպանման. զի եղիցի նա մարմնին թաթաւել արեամբն նորա։ Կամ վասն այսորիկ եթաց զնա, զի մի՛ տացէ ընդ նմա զկտակարանս. լուաց զնա, և ապա ետ նմա. լուացաւ առաջինն, զի վերջինովն պատրաստեալ էր։ Ագահութիւն Յուդայի որոշեալ մեկնեաց զնա 'ի կատարեալ անդամոցն նորա. որպէս և կենարարն մեր քաղցր վարդապետութեամբն իւրով եցոյց վասն նորա՝ եթէ ոչ է նա 'ի մարմնոյ անտի եկեղեցւոյ նորա, այլ փոշի է նա՝ որ կռուաւ 'ի յոտս նոցա։ Եւ վասն այսորիկ 'ի յայնմ գիշերի՝ յորում որոշէրն և մեկնէրն զնա առ 'ի նոցանէն, զաղտն որ կռուեալ էր յոտս նոցա՝ լուաց 'ի նոցանէն. զի ուսուսցէ զմեզ վասն Յուդայի, այն որ համարեալ էր՝ թէ նա իցէ ոտք մարմնոյ իբրև զվերջին երկոտասանիցն. զի ջուրբ լուաց զնա յոտից անտի աշակերտացն՝ զաղտն զմասնն հրոյ. որպէս և 'ի ձեռն ջրոյ որոշեաց նա զՅուդա յառաքելոց անտի, իբրև եթաց զհացն ջուրբ և ետ նմա. քանզի ոչ եղև նա արժանի հացին՝ որ տուեալ լինէր հանդերձ զինովն երկոտասանիցն, զի ոչ էր օրէն ընդունել նովաւ զփրկիչն 'ի մահուանէ, այն որ մատնիչն է 'ի մահ։

Ի ժամէ անտի յորժամ եբեկ զմարմին իւր աշակերտացն իւրոց, և ետ զմարմինն իւր առաքելոցն իւրոց, թուեալ լինի նորա երեք աւուրք, զի 'ի մեռեալս համարեցաւ նա. որպէս է Ադամ, զի յորմէ հետէ եկեր նա 'ի ծառոյ անտի, եկեաց նա ամս բազումս. սակայն իբրև անց նա զպատուիրանաւն, համարեցաւ նա 'ի թիւ մեռելոց. զի այսպէս ասաց նմա՝

եթէ "Յորում աւուր կերիցես, 'ի նմին մեռցիս"․ իբրեւ զայն՝ զի ասէ․ "Զչորեքհարիւր ամ եղիցի զաւակ քո"․ և յօրէ անտի յորմէ ասացաւ բանն՝ համարեալ լինին ամք։ Սոյնպէս և տէր մեր․ կամ ուրբաթն եղեալ լինի երկու աւուրք, և շաբաթն մի։ Եւ զի ետ նոցա զմարմին իւր յուտել, 'ի խորհուրդ մահուան նորա․ եմուտ նա 'ի փորն նոցա իբրեւ յերկիր։ Եւ զի ոչ օրհնեաց Ադամ 'ի ժամանակի իբրեւ կթեաց զպտուղն իբրեւ զապստամբող, օրհնեաց տէր մեր և եբեկ․ և եմուտ հացն, հատոյց զագահութիւն՝ զոր զլացաւն Ադամ։ Կամ երեք աւուրք վասն իջին և ելանելոյն․ այս ինքն ուրբաթն և շաբաթն և միաշաբաթին։

Իսկ զի ասէ․ "Յայսմ հետէ ոչ արբից յայսմ ծնընդենէ որթոյս մինչեւ յարքայութիւն Հօր իմոյ", զի ցուցցէ զկանոնախնդրութիւնն իւր՝ եթէ մերձ է նա փոխիլ 'ի նոցանէն։ Այն զի ասէ "Մինչեւ յարքայութիւն Հօր իմոյ"․ այս ինքն մինչեւ յարութիւն[1] նորա։ Յայտ իսկ առնէ Ղուկաս 'ի Գործս առաքելոցն, եթէ "Յետ յարութեան 'ի քառասուն աւուրքն ժամանակ կերաք ընդ նմա, ասէ, և արբաք 'ի միաշաբաթոջ անդ"․ իբրեւ զայն՝ զի ասէ․ "Մի ճաշակեսցեն զմահ մինչեւ տեսցեն զարքայութիւն Աստուծոյ"․ և զկնի վեց աւուր գործեցաւ։

Իսկ զի ասէ․ "Ահաւասիկ սատանայ առ օճան մաղել զձեզ իբրեւ զցորեան․ և ես, ասէ, աղաչեցի զՀայր իմ վասն քո, զի մի պակասեսցեն հաւատք քո"․ և ոչ ասաց նմա՝ թէ ես աղաչեցի վասն քո, զի մի փորձեսցիս․ այլ զի մի պակասեսցեն։ Եւ զի ասէ "Ցոյց մեզ զՀայր քո և շատ է մեզ", մարմնապէս խնդրեաց զնա Փիլիպպոս տեսանել զՀայր․ այս ինքն մարմնաւոր աչօք ըստ սովորութեան առաջին արդարոցըն, որ տեսանէին հրեշտակք և հրեշտակապետք։ Վասն այսորիկ տէր մեր վասն Աստուածեղէն տեսլեանն, որ գիտութեամբ աչօք տեսանէ, ետ նմա զպատասխանին․ զի ոչ ասաց նմա՝ եթէ ոչ տեսանէք, զի ահաւանիկ երեւէր նա արտաքին տեսլեամբ իւրով․ այլ զի

1 Յօրինակին 'ի լուսանցսն յարքայութեն։

ոչ, ասէ, ծաներուք զիս. զի ծածկեալ էր մեծու̃ն նորա: Այս ինքն՝ թէ յորժամ ծանիցէք զիս՝ թէ չիցեմ յայտնի, որպէս զի և քան ոչ երևին, և տեսանէք դուք զՀայր իմ, զայն՝ որ ոչն երևի: Եւ այսր վկայ Առաքեալ ինքնին է յասել անդ իւրում վասն տեառն մերոյ. "Նա ինքն է, ասէ, պատկեր կերպարանացն այ̃, այն՝ որ ոչն երևի", այլովք հանդերձ:

"Որ հաւատայ յիս, ասէ, զգործսն զոր ես գործեմ, և նա գործեսցէ. և ևս մեծամեծս գործիցէ": Եւ ո՞ւր այն՝ զի ասէ, թէ "Ձիք աշակերտ լաւ քան զվարդապետ իւր": Եւ ահաւասիկ Մովսէս երիս թագաւորս միայն կոտորեաց, և Յեսու երեսուն. և նա եկաց յաղօթս, աղաչեաց և ոչ եմուտ. և Յեսու եմուտ և ժառանգեցոյց. և Շմուէլ մեծացաւ առաւել քան որ մերձն առ նա յայնմ ժամու էին. և Եղիշա կրկին քան զվարդապետ իւր ընկալաւ յետ վերանալոյն, նմանութիւն տեառն փրկչին մերոյ՝ զի գործեցին աշակերտքն նորա կրկին նշանօք նորա: Յամենայն մարդ գոյր մասն թշնամոյն. բայց միայն 'ի տեառն մերում, զի ոչ էին: "Եւ առ իս, ասէ, ինչ ոչ գտանէ զիւր. և ես յաղթեցի աշխարհի": Այլ զպարգևսն դատաստանի զոր առ տէր մեր, բաժանեցին 'ի միասին ընդ նմա աշակերտք նորա. և զի դատին նոքա, զի ցուցցէ եթէ ոչ ա̃ծ միայն յաղթեաց՝ և ահա դատի, այլ և մարդիկ յաղթեցին և դատին զայնոսիկ՝ որ կարէինն յաղթել իբրև զնոսայն և յետս կացին: "Արք, ասէ, արդարք դատեսցեն զնոսա":

"Որ ոչն ունիցի, ասէ, իւր սուսեր, գնեսցէ, ասէ, իւր սուսեր". զի կրթեսցէ զնոսա խոնարհութբ̃: Ահաւասիկ մի յայնց երկուց սուսերաց Շմաւոն ինքնին ունէր. եթէ յորժամ ցուցանէ զնախանձ իւր 'ի ձեռն սուսերին իւրոյ, ուսուսցէ նմա զայն՝ զի ասէ. "Որ հարկանէ զծնօտ քո": Մոռացաւ Շմաւոն սիրոյն զայս: Կամ զի ցուցցէ նմա՝ եթէ մի՛ միայն յաւուր՝ յորում ոչ գտցին 'ի մեզ իրքս այս՝ արգելցուք 'ի նոցանէ, և ոչ յորժամ ոչ հասանիցէ ձեռն մեր, այլ թէպէտ գտցին մեզ իբրև զսուսերս զայս՝ որ 'ի ձեռին քում իցէ, սակայն դու մի՛ հաղորդիր նոքօք: Եւ զի յայտ արասցէ՝ եթէ վասն խրատու յանդիմանութե̃ն է, և

ոչ վասն պատերազմի արկ նա զձառումն սուսերին, ասէ "Շատ են երկուքդ": Զի եթէ վասն պատերազմի էր, ամենեցուն արժան էր առնուլ սուսեր, զի 'ի Հրէից անտի էին նոքա, այնոքիկ՝ որ սրովն և արեամբն ծարաւեալ էին, որպէս և զերկուսն 'ի նոցանէն: Իբրև ետես՝ թէ սրտմտութիւն հարցն իւրեանց թագուցեալ կայր 'ի նոսա, խնդրեաց իւր պատճառս՝ զի յայտնեսցէ զծածուկ սրտմտութիւն նոցա, որպէս զի խայտառակեսցէ և հալածեսցէ զնա 'ի մտաց անտի նոցա:

Իբրև կատարէին աւուրք գործոյ նորա 'ի Հրէաստանի, դարձոյց զերեսս իւր երթալ յԵրուսաղէմ: Եւ արձակեաց նա զայս երկուս բարկացողս առաջի իւր. սոյնպէս և Յուդայի սկարիովտայ կանխեաց յառաջագոյն և ասաց նմա. ասէ. "Վայ իցէ մարդոյն այնմիկ": Եւ թէ էր ապաշաւել նորա՝ որպէս ապաշաւեաց Շմաւոն, կամ որպէս խրատեցան երկուքն, յանխծից ապրեալ լինէր, և զտեղի իւր և զաթոռ իւր ժառանգէր: Եւ զի 'ի պատճառս սուսերացն ուսցին նոքա, թէ և զօրն և զժամ՝ յորում մատնելոցն էր նա՝ գիտէր նա. և զի ուսցին բարեկամք զխոնարհութիւն, և թշնամիքն զռնութիւն:

"Այս է, ասէ, պատուէր իմ": Եւ մի միայն է քո: Շատ է սա, և մի միայն և այսչափ: Թէպէտ և մի է՝ սակայն, ասէ, մի՛ սպանանէր. զի այն՝ որ սիրէ, ոչ սպանանէ: Ասէ՝ մի՛ գողանար. այլ այն՝ որ սիրէ, զիւրսն ևս տայ: Ասէ՝ մի՛ ստեր զճշմարտութիւնն. ընդդէմ ստութեան խօսի այն՝ որ սիրէն զպատուէր: Մի ասէ, նոր տայ. տամ ես ձեզ. և զի՝ այս է պատուէր իմ՝ ոչ իմացար զինչ ասաց, կոչեսցի Առաքեալ թարգմանիչ, և ասասցէ՝ եթէ "Կատարած պատուիրանի նորա սէր է": Եւ ո՞ր արդեօք զօրութիւն իցէ նորա: Այլ այն՝ զի ասէ. "Եւ զոր ինչ կամիք դուք՝ եթէ արասցեն ձեզ որդիք մարդկան, դոյնպէս արասջիք և դուք": "Սիրեսջիք, ասէ, զմիմեանս. տուք զչափն. որպէս սիրեցի ես զձեզ": Այս չէ հնար լինել. զի դու տէր ես, և սիրես զծառայս քո. իսկ մեք զի ընկերք եմք զիա՞րդ մարթեմք մեք սիրել զմիմեանս, որպէս դու սիրեցեր զմեզ: Սա-

կայն ասաց. տեսցուք ո՛րպէս: «Սէր, ասէ, մեծ ևս քան զայս այլ ոք ոչ կարէ ունել, եթէ զանձն իւր դիցէ 'ի վերայ բարեկամաց իւրոց»: Այս է սէր, զի բարեկամս իւր կոչեաց զմեզ: Եւ եթէ դնեմք զան-ձինս մեր 'ի վերայ քո, լինի՞ հաւասար սէրն մեր. այլ մեք թէպէտ և ոչ մեռցուք փոխանակ ընդ քո, սակայն մահկանացուք իսկ եմք. իսկ դու իբրև կեն-դանի ես, զչարչարանս մահուանն մերոյ կրեցեր: Արդ զիա՞րդ լուծանի այն՝ զի ասաց «Որպէս սիրեցի ես զձեզ»: Մեռարուք, ասէ, փոխանակ ընդ մի-մեանս. այլ մեք կեալ և փոխանակ ընդ միմեանս ոչ կամիմք: Եթէ ես, ասէ, որ տէրս և ա̃ծս եմ ձեր, փոխանակ ընդ ձեր մեռանիմ, ո՞րչափ ևս առաւել պարտ է ձեզ փոխանակ ընդ միմեանց մեռանել:

Ահաւասիկ, ասէ, առաքեմ ես առ ձեզ զբարե-կամս. և յայտ առնէ վասն անձին իւրոյ՝ թէ բարե-խօս է. յայնմիկ զի ասաց՝ թէ միւս ևս բարեխօս առա-քեմ առ ձեզ. այս ինքն մխիթարիչ: Թէ ա̃ծ է նա, և այն որ առաքին՝ ա̃ծ է. և եթէ վասն այնր զի առա-քէ՝ մեծ է, և վասն այնր զի եհան զնա Հոգին յա-նապատ զի փորձիցի՝ մեծ է քան զնա: Եւ զիա՞րդ ա-սէ. «Լաւ իցէ ձեզ թէ ես երթայց. զի եթէ ես ոչ երթամ, բարեխօսն ոչ գայ առ ձեզ, և ամենայն ճշմարտութ̃ի զձեզ ոչ ճանաչէ»: Եւ վասն է՞ր լաւ իցէ տեառնն երթալ, այն՝ որ ոչն եղև բաւական ցու-ցանել զամենայն ճշմարտութիւն. զի ծառայն եկն տալ զայն ինչ՝ զոր տէրն ոչ ետ: Եւ բարեխօսն ա-ռաջին վասն է՞ր ոչ պատմեաց զամենայն ճշմարտու-թ̃ին, և այս վերջինս պատմեաց մեզ ըստ նորա բա-նիցն. ամենայն ճշմարտութ̃ի է նա: Եւ զի կոչեցաւ նա տէր, զի առեալ էր նորա հրաման 'ի Հոգւոյն սրբոյ՝ եթէ զմահ մ̃ի ճաշակեսցէ մինչև տեսցէ զտէր Քրիստոս: Եւ իբրև առընկալաւ զտէր մեր 'ի գիրկս իւր, և ասէ «Արդ արձակես դու տէր զծառայս քո ըստ բանի քում 'ի խաղաղութ̃ի», արդ 'ի Հոգւոյ անտի սրբոյ առեալ նորա հրաման՝ և ասէ «Արձակես դու տ̃ր զծառայս քո». իբրև զայն՝ մինչև տեսցէ զտ̃ր Քս:

«Իսկ ոչ ոք, ասէ, գիտէ զմարդոյն, եթէ ոչ հոգի մարդոյն որ 'ի նմա, սոյնպէս և զա̃յն ինչ ոք ոչ գի-

տէ, եթէ ոչ Հոգին ա̃յ”: Ոչ եթէ Հոգի նորա ստացուած նորա է, այլ այնու օրինակաւ հաւանեցուացէ զմեզ, զի ոչ է օտար հոգիս մեր բնութեանս մերում: Բայց եթէ հոգին, ասէ, որ 'ի նմանէն. սոյնպէս և զա̃յ ինչ ոք ոչ գիտէ, բայց եթէ Հոգին նորա: Եւ զի քննէ զխորս նորա. եթէ ուսանել քննէ նա, այն որ քննին՝ փոքր է քան զայն որ քննէն: Եւ զի ասէ “Գնացէք ընդ ամենայն աշխարհ, և մկրտեցէք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյ”. և ոչ ասաց եթէ յանուն Հօր, և յանուն Որդւոյ, և յանուն Հոգւոյ. զի յայտ արասցէ՝ եթէ մի բնութիւն են նոքա, որ 'ի մի անուն անդ երիս անձունս անուանեաց: “Տաճար էք դուք, ասէ, ա̃յ, և Հոգի ա̃յ բնակեալ է 'ի ձեզ”: Եւ եթէ տաճար եմք, զիա̃րդ եմք բնակութիւն Հոգւոյն: Եւ լուսաւորեսցէ զնա՝ ասաց. ասէ. “Տաճար էք դուք Հոգւոյն սրբոյ, որ բնակեալ է 'ի ձեզ”: Եւ 'ի Գործս առաքելոցն ասէ. “Փոխանակ զի հաճոյ եղև ձեզ փորձել զՀոգին տեառն”. և “Ոչ եթէ ստեցեր դու մարդկան, այլ ա̃յ”: Արդ Հոգի ա̃ծ է, քանզի յա̃յ է: Անուն ա̃յ կայ մնայ և առ մարդոյ, զի կոչեցան ոմանք աստուածք[1]. և զանուն Հօր և զանուն Որդւոյ ունիմք մեք շնորհօք: Արդ կոչեցաւ մարդ ա̃ծ, որպէս և Մովսէս 'ի վերայ Փարաւոնի: Իսկ արդ Հոգի կենդանի ոչ երբէք անուանեցաւ: Չիք, ասէ, վասն Եւայի՝ եթէ քոյր է նա Ադամայ, կամ դուստր նորա, այլ 'ի նմանէն: Սոյնպէս ոչ գոյ ասել Հոգւոյն սրբոյ ոչ եթէ որդի նա, և ոչ եթէ քոյր, այլ 'ի նմանէն և բնակից նորա: Եւ եթէ այն որ քննէն՝ փոքր է քան զայն՝ որ քննին, ահա գրեալ է՝ թէ այն որ քննէն զսիրտս, գիտէ զինչ խորհուրդ է Հոգւոյն. եթէ այդ այդպէս իցէ, փո̃քր է քան զՀոգի:

“Իսկ վասն դատաստանաց, զի իշխան աշխարհիս այսորիկ դատապարտեալ է”. այս ինքն՝ զի ոչ եթէ նորոգ ինչ ընդունի սատանայ զպատիժս պարտապանութեան իւրոյ, իբրև յայնմ հետէ իսկ դատապարտեալ է նա:

“Եւ այն զի ասէ. “Տուր ինձ փառս առ 'ի քէն

1 Յօրինակին աստուածք:

յայտնմանէ, որ ետուր ինձ մինչ չև աշխարհ եղեալ էր 'ի ժամանակի „. և հաստէր Հայր զարարածս 'ի ձեռն Որդւոյ ըստ պատմութեան սաղմոսին, զփառս և զմեծվայելչութիւն զգեցաւ Նա. և ապա յոչընչէ կանկնեաց կացոյց զարարածս առանց արատոյ: "Տէր ա̃ծ, ասէ, մեծ եղեր յոյժ. զփառս և զմեծվայելչութիւն զգեցար, և արկեր զլոյս իբրև զօթոց. ձգեցեր զերկինս որպէս խորան „, այլովքն հանդերձ: Այլ իբրև 'ի կործանել անդ Ադամայ զգեցան արարածք զխոնարհութիւն նորա ըստ բանի Առաքելոյն՝ եթէ "Արարածք հնազանդեցան ընդունայնութեան „, և եկն Որդին արարչին բժշկել զնոսա, և յայնմ ժամուն յորում եկն բառնալ զարատս ամենայն մկրտութեամբ մահուն իւրոյ, որպէս և ասաց ինքն "Եկն եհաս ժամ, փառաւոր արա զՈրդի քո, և Որդի քո փառաւորեսցէ զքեզ „, խնդրեաց զնա ոչ իբրև կարօտեալ առնուլ, այլ զկարգն զառաջին արարչութեանն կատարեալ՝ զփառսն զայն՝ զոր զգեցաւ Նա 'ի ժամանակի իբր լինէին արարածք զգեցեալ: Զի որպէս կազմեաց Նա զառաջինն լինել նոցա շնորհօք առանց արատոյ՝ փառօքն և մեծվայելչութեամբ զոր զգեցաւ Նա, եղիցի վերջին կազմած նոցա ողորմութեամբ առանց արատոյ փառօքն զոր զգենու: Արդ այս որ ասէ՝ տուր ինձ, այն՝ զոր ունէրն Նա յառաջ քան զարարածս ընդ Հօր և առ Հօր. զի և ընթերցուածն ունի և յայտնապէս իսկ ասէ. "Փառաւոր արա զիս, ասէ, փառօքն, այնոքիկ՝ զոր ունէի ես առաջի քո մինչ չև էր աշխարհ „. Նա և յայնմիկ՝ զի ասաց "Փառաւոր արա զՈրդի քո, և Որդի քո փառաւորեսցէ զքեզ „, ոչ եթէ վասն կարօտութեան իւրոյ յայտ ինչ արար, այլ վասն կարօտեալ կամացն: Արդ ոչ՝ իբրև առնու ըզփառս Հայր յՈրդւոյ՝ իբրև կարօտեալ ընդունի զնա, և ոչ յորժամ փառաւորի Որդի 'ի Հօրէ՝ իբրև թերի գոյ 'ի նմանէն:

Տրտմեալ անձն իմ ասաց, և ոչ պատկառեաց. քանզի ճշմարիտ էր՝ որ ոչ թագոյց 'ի պատեանս հանդերձի իւրոյ. զի ցուցցէ՝ եթէ մարմին տկար զգեցեալ է նա, և 'ի շունչ՝ որ չարչարի՝ խառնեալ էր: Արդ ասաց նա զճշմարիտն՝ զի մի փոխեսցի, և թա-

քոյց՝ զի մի՛ լիցի գողացեալ. ուսուցանէր նա՝ զի մի՛ պարծեսցին 'ի գեօղ իւրեանց հաւատացեալք. և այս ուրացութի̃ է ճշմարտութե̃ն: Եւ դարձեալ ասէ. "Որ ուրանայն զիս, յուրաստ եղէց զնմանէ". և այս ահ և երկիւղ է ուրացողաց: Արդ միով խոստովանիմք, զի մի̃ յափշտակեսցէ զմեզ մոլորութի̃ւն 'ի ճշմարտութե̃ է անտի նորա. և միւսովն ոչ խոստովանիմք, զի մի̃ յափշտակեսցէ 'ի մէնջ հպարտութի̃ զշահս օգտութե̃ նորա:

"Եթէ հնար իցէ, ասէ, անցցէ յինէն բաժակս այս": Ոչ եթէ ոչ գիտէր նա՝ եթէ յերիր յաւուր յառնելոց է նա, այլ տեղեակ իսկ էր նա եթէ աշակերտքն գայթագղին, և Շմաւոն ուրանայ, և Յուդա խեղդի, և Երուսաղէմ աւերի, և Իսրայէլ ցրուի: "Եթէ հնար իցէ, ասէ, անցցէ յինէն բաժակս": Եւ այն՝ որ ասացն Շմաւոնի. 'ի ժամանակի իբրև քաւեացն զնա, "Երթ յետս իմ, սատանայ, զի ոչ խորհիս դու զԱստուծոյն, այլ զմարդկան", զիա՞րդ եթող ինքն զԱստուծոյն, և խորհեցաւ զմարդկան: Արդ ընդէ՞ր եպերեցեր դու զՇմաւոն, զի ասաց՝ եթէ քաւ լիցի քեզ տէր յայսցանէ: "Եթէ հնար իցէ, ասէ, անցցէ յինէն բաժակս այս". այն՝ որ Հօր իսկ ասաց, որ գիտէրն. և եթէ էր հնար անցանել բաժակին, գիտակ էր նա. այլ և վասն այնորիկ եկն նա, զի արբցէ զնա փախանակ ամենեցունց. և 'ի ձեռն այս բաժակի զպարտիս ամենայնի հատուսցէ, այն՝ որ մարգարէքն և փրկիչքն հատուցանել զնա մահուամբն իւրեանց ոչ կարացին:

"Հայր, ասէ, անցցէ բաժակս այս յինէն": Այն՝ որ նկարեաց զսպանումն իւր մարգարէիւքն իւրովք, և դրոշմեաց զխորհուրդ մահու իւրոյ արդարովքն իւրովք, իբրև եկն եհաս զի ինքն կատարեսցէ զնա, ոչ հրաժարելով հրաժարէր նա, իբր թէ մի̃ արբցէ զնա. զի եթէ ոչ կամէր նա ըմպել զնա, և հրաժարել 'ի նմանէն կամ էր նմա, ոչ առաքէր նա զմարմինն իւր 'ի տաճար անդր 'ի յասել անդ իւրում, "Քակեցէք, ասէ, զտաճարդ զայդ, և յերիր աւուր կանգնեցից զդա". և որդւոցն Զեբեդեայ՝ եթէ "Կարո՞ղ էք դուք ըմպել զբաժակն զոր ես ըմպելոցն եմ".

և «Մկրտութիւն կայ ինձ մկրտել»․ և «Որպէս Մովսէս բարձրացոյց զօձն յանապատի, այսպէս բարձրանայ որդի մարդոյ»․ և «Որպէս եղև Յովնան 'ի փոր ձկանն, եղիցի որդի մարդոյ 'ի սիրտ երկրի»․ և «Պարտ է նմա մեռանել և յառնել»․ և «Ցանկալով ցանկացայ ուտել զզատիկս զայս ընդ ձեզ, մինչ չև իցեմ չարչարել»․ և «Որդի մարդոյ երթայ, որպէս և գրեալ է վասն նորա»։ Զի ահաւանիկ յերեկորին՝ յորում գիշերի զանձն իւր մատնէր նա, զմարմինն իւր առաքելոցն իւրոց բաժանեաց, և զարիւն իւր աշակերտացն իւրոց բաշխեաց, և հրամանս ետ նոցա առնել յիշատակ այսմ չարչարանաց։ Եւ այն՝ որ ետ հրաման աշակերտացն իւրոց ոչ երկնչել 'ի մահուանէ, «Մի՛, ասէ, երկնչիք յայնցանէ՝ որ սպանանեն զմարմինն», զիա՞րդ երկնչէր նա 'ի մահուանէ և խնդրէր անցանել զնովաւ բաժակոյն։ Եւ այն՝ որ կրեաց յանձն իւր զթիւ ամսոց 'ի մէջ որովայնի, և զամենայն 'ի մէջ աշխարհի, և իբրև կատարեաց զաւուրս և զամիսս և զամս; և ժամքն ևեթ կային՝ խնդրէր զնովաւ անցանե՞լ բաժակին, զի ամենայն գալուստ նորա խափանեսցի։ Եւ 'ի ժամանակին իբրև էր նա յԵրուսաղէմ, զխրատն իւր լսելի առնէր, և զմեծութիւն պարգևացն իւրոց ցուցանել կամէր նա, ասէր․ «Եթէ 'ի Սոդոմ լեալ էին զօրութիւնք որ եղեն 'ի քեզ, ցարդ ևս շէն էր»․ և Սոդոմ կործանեցաւ․ այն որ մարթ էր նմա կեալ 'ի գալստեան անդ նորա, զժամանակ գալստեան նորա ոչ փոխեաց․ այսօր զի եկն գալուստ նորա՝ հրաժարեա՞լ 'ի պարգևաց անտի 'ի ձեռն չարչարելոյն իւրոյ կամէր նա․ այն՝ որ եթէ էր տուեալ յաւուրս Ղովթայ, Սոդոմ և ընկերք նորա ըստ բանի նորա ցարդ ևս շէն էին։ Եւ եթէ վասն ժողովրդեանն կամեցաւ զի մի՛ կորիցեն 'ի գալստեան անդ նորա, ամենայն յորժամ գայր նա՝ կոտորելով կոտորեալ էր նա ըզժողովուրդսն, յայնմիկ՝ զի 'ի խաչ մատնէր զնա։ Ապա եթէ նշանացն և սքանչելեաց նորա ոչ անսացին նոքա, եթէ այդ այդպէս է, ոչ 'ի խաչելութեան անդ նորա անկեալ կործանէին նոքա․ զի ահաւասիկ յառաջ քան զսպանումն նորա անկեալ կործա-

նէին նոքա ; յայնժամիկ՝ զի ոչ հաւատացին նշանացն նորա ։

“Եթէ հնար ինչ իցէ, անցցէ զինև բաժակս այս”։ Վասն փոքրկութեան զի զգեցաւ. զի ոչ եթէ ստութբ զգեցաւ, այլ ճշմարտութբ ։ Եւ եթէ ճշմարտութբ փոքրրկացաւ և փոքրկութիւն զգեցաւ, չէր ինչ մարթ փոքրկութեան ոչ երկնչել և ոչ խռովել ։ Զի մարմին առ նա, և տկարութի զգեցաւ, և ՚ի վերայ քաղցութն հանգեաւ, և աշխատութեամբ վաստակեցաւ, և քնով տկարացաւ. և իբրև եկն եհաս ժամանակ մահուն իւրոյ՝ պարտ էր իրացն այնոցիկ որ մարմնոյն էին՝ և յայսմ վայրի ևս կատարել, զի եհաս ՚ի վերայ նորա խէթ մահու. զի յայտ լիցի բնութի նորա՝ եթէ ծընունդ է նա Ադամայ, այն՝ որ թագաւորեաց ՚ի վերայ նորա մահ ըստ բանին Առաքելոյ ։ Եւ ասաց նա աշակերտացն իւրոց՝ եթէ “Արթուն կացէք և աղօթս արարէք, զի մի մտջիք ՚ի փորձութի. հոգիս, ասէ, յօժար է և պատրաստ, բայց մարմինս տկար”։ Եւ եթէ դուք յորժամ երկնչիք, ոչ եթէ հոգին որ ՚ի ձեզ է՝ երկնչի, այլ տկարութի մարմնոյ ձերոյ, զիա՞րդ ես ՚ի մահուանէ երկնչէի, եթէ ոչ զի երկեւղին մահուանն մարմնոյն զոր զգեցայ ես՝ յայտ առնել ձեզ կամէի ։

Զի եթէ Շմաւոն՝ այն որ աղախնին մի զարհուրեցոյց զնա՝ յամենայն հռոմայեցոց ոչ երկեաւ, այլ իբրև քաջալերեալ երդմնեցոյց՝ զի գլխիվայր հանցեն զնա ՚ի խաչ, և Առաքեալ իբրև գիտաց եթէ ոչ դոյզն ինչ մահ մեռանի՝ ասէ “Վախճանի ցանկացեալ եմ, և ժամանակ հանգստի իմոյ հասեալ կայ ՚ի վերայ իմ”, զիա՞րդ՝ այն որ օգնութբն նորա առաքեալքն իւր զմահ արհամարհեն, որպէս և ասաց նոցա, “Մի երկնչիք, ասէ, յայնցանէ՝ որ սպանանեն զմարմին, և զոգին ոչ կարեն սպանանել”, ինքն գլխովին ՚ի մահուանէ երկնչէր ։ Զի ահաւանիկ յառաջ քան զժամն յերկեւղի՝ որպէս կարծեցաւ՝ եթէ երկեաւ, ՚ի ժամու անդ յորում ըմբռնեցաւ՝ պիտոյ էր երկեղ, և չէք ուրեք. բժշկեաց զունկն սպանողին ։ Եւ հրամայեաց առնուլ սուսերս. ՚ի ժամ գործոյն սուսերի ասէ “Դարձո զսուր քո այդրէն ՚ի տեղի իւր”։

Կամ վասն զի 'ի ձեռն Որդւոյն հատուցեալ լինէին պարտիքս այս, և լինի դարձ հեթանոսաց, ոչ կամեցաւ զշնորհսն՝ որ լինէին աշխարհիս՝ անձին իւրում առնուլ։ Զոր օրինակ ամենայն ինչ նովաւ հաստատեցաւ, եթող զայս՝ և ասաց 'ի բերան Մովսէսի միւս ևս. ասէ. "Ետես ած զամենայն զոր արար, և ահա բարի են յոյժ"։ Եւ զայս զի ասաց, զի Հօրն նորա լիցի շնորհապարտ ամենայն արարածք։ Սոյնպէս և 'ի ժամու անդ նորոգութե նոցա հրաժարեաց 'ի նոցանէ 'ի ձեռն մահու, և ասէ. "Եղիցին կամք քո". զի Հօր լիցի շնորհապարտ ամենայն որ դառնալոց իցեն 'ի մահու անդ միածնին։ Կամ զի 'ի ժամու անդ մահուանն մարմնոյն՝ ետ մարմնոյն, ասէ զայս. յայտ է՝ եթէ ամենայն չարչարանք վասն մարմնոյն յայտ առնեն, զի երևեսցի մարմին նորա այլաղանդաց և հերձուածողաց։ Այլ այն՝ որ իբրև կամենայն տեսին, մարմին նորա ո՞չ երևեցաւ նոցա. իբրև այն՝ զի քաղցեաւն և ծարաւեաց և աշխատեցաւ և ննջեաց. սոյնպէս և երկեաւ։ Կամ զի ծանրասցի 'ի վերայ աշխարհի՝ մարդոյ. զի ասիցեն՝ եթէ առանց չարչարելոյ և առանց վաստակելոյ եղև հատուցեալ նովաւ պարտիքն մեր։ Կամ զի ուսուսցէ աշակերտացն. իւրոց յանձն առնել զկեանս և զմահ իւրեանց ած։ Զի եթէ նա որ գիտունն է՝ վասն ածգիտութեանն զարժանն խնդրեաց, ո՞րչափ ևս առաւել անգիտք տայցեն զկամս իւրեանց գիտնոյն ամենայնի։

Կամ զի սերմանեսցէ 'ի ձեռն չարչարանաց իւրոց զմխիթարութիւն յաշակերտսն անդ իւր՝ զգեցաւ զմիտս նոցա, զի եղիցի նոցա օրինակ. և արկաւ զիւրեաւ զերկեւղ նոցա, զի զնմանութիւն անձին իւրոյ ցուցցէ նոցա՝ եթէ յառաջ քան զմահ 'ի վերայ մահու մի խռովասցին։ Զի եթէ այն որ ոչն երկնչէր՝ երկեաւ և խնդրեաց ապրիլ, իբրու գիտէր թէ չէ հնար, ո՞րչափ ևս նոքա կացցեն յաղօթս յառաջ քան զփորձութիւնն, զի 'ի ժամանակի փորձութեանն ապրեսցին 'ի նմանէ։ Կամ զի 'ի ժամ փորձութեան մերոյ վայրին միտքս մեր և թարթափին խորհուրդք մեր, եկաց յաղօթս ինքն՝ զի ուսուսցէ մեզ եթէ փոխանակ մեքենայից և հնարից աղօթք պիտոյ են, զի

ստէպ ստէպ աղօթիւքն ժողովեսցին խորհուրդքն քայքայեալք ։ Կամ զի քաջալերեսցէ նա զայնոսիկ՝ որ երկնչէին 'ի մահուանէ, եցոյց թէ և նա երկեաւ. զի գիտասցեն՝ եթէ ոչ յանցուցանէ զնոսա այս, յորժամ ոչ կան մնան 'ի նմին. այն էր՝ եթէ ոչ Հայր, այլ կամք քո եղիցին. այս ինքն՝ զի մեռայց ես, ասէ, զի զբազումս կեցուցից ։ Կամ զի խաբեսցէ զմահ ։ Կամ երկեաւ նա 'ի չարչարանաց անտի, որպէս զի քաջալերեսցէ կլանել զնա, և փութասցի թքանել զնա ։

Վասն նորա խափանելոյն եղեն այս ամենայն, որք 'ի քեզ ընդդէմ նորա ծածկէին ։ Ածութիդ քո նմա ոչ եղև շօշափելի, և խորհրդոց քոց նա ոչ եղև հասու ։ Թէպէտ և անուն ա̃ծութեդ քո քարոզեցաւ, սակայն ծածկեցեր զնա աստի հանդերձիւք. զի զգեցուցեր զա̃ծեղէն անուանդ քո մարդկեղէն անուամբդ ։ Զի ամենայն որ միանգամ զնշան Ադամայ առաջնոյ 'ի վերայ մարմնոյ նորա երևէր, մարմին նորա կերակուր էր մահու. և ամենայն որ զնշան Ադամայ երկրորդի յանձն իւր բարձեալ կրէր, տէր էր նա մահու և լուծիչ մարմնոյ ։ Մին[1] 'ի ճաշակս ելյծ կամաց իւրոց զօր ետ 'ի մարմին անդ, կակղացոյց զնա՝ զի եղիցի նա կերակուր մահու ։ Եւ միւսն[2] պինդ կամօք իւրովք խստացոյց զմարմինն, զի ապստամբեսցէ 'ի բերանոյ անտի մահու ։

## ԳԼՈՒԽ Ի

“Ոչ, ասէ, որպէս իմ կամք են, այլ քո„. Հակառակ այնորիկ՝ որ խափանեաց Ադամ զկամս արարչին իւրոյ, և կացոյց զկամս թշնամոյն իւրոյ, և մատնեցաւ 'ի բերան ապստամբողին իւրոյ ։ Արդ խափանեաց տէր մեր զկամս մարմնոյ, զի կացուսցէ զկամս արարչին մարմնոյ. զի գիտէր եթէ ամենայն երանութիք 'ի կամս Հօր նորա կախեալ կան ։ “Ոչ, ասէ, իմ կամք եղիցին, այլ քո„ ։ Եւ են նորա կամք արտաքոյ քան զՀօր իւրոյ. և զիարդ ասիցէ՝ եթէ “Ոչ

1 Յօր. Մին. 'ի լուսանցսն Ադամ ։ 2 Յօր. 'ի լուսանցսն Քրիստոս ։

իմ կամք եղիցին, այլ քո կամք»։ Եւ դարձեալ ասէ՝ եթէ «Ոչ եկի ես առնել զկամս իմ, այլ զկամս այնորիկ՝ որ առաքեացն զիս»։ Իսկ նորա կամք այս են, եթէ «Որ միանգամ ետ ցիս, ոչ կորուսից ՚ի նմանէ և ոչ ինչ»։ Երևեցաւ եթէ նորա այլ կամք են. և Եսայի ասէ. «Տէր կամեցաւ, զի խոնարհեցուսցէ զնա և չարչարեսցէ զնա»։ Եւ դարձեալ ասէ. «Փոխանակ զի մատնեաց նա զանձն իւր ՚ի մահ». և յայսմ վայրի եցոյց՝ թէ իւր կամք են։ Եւ զիա՞րդ լինիցի այս. զի ահաւասիկ երկուս կամս եցոյց նմա. մի զտեառն, և մի զիւր, իբրու գործ մի է։ Այլ իբրև կամեցաւ տէր մեր հաւանեցուցանել զլսօղսն՝ եթէ ոչ այլ ոք զօրութ̃ի վարէ զնա բռնութ̃ք, երևեցաւ մոլորելոցն եթէ այլ կամք են նորա։ Եւ այն զի ասաց նա առ Ղազար՝ եթէ «Գոհանամ զքէն զի լուար ինձ, և լսես ինձ. այլ վասն ժողովրդոցս առնեմ, զի հաւատասցեն եթէ դու առաքեցեր զիս». և լսելի լինելով նորա՝ ցուցցէ եթէ յ̃այ է նա։ Եւ այս հաճէ վասն ամենայնի. վասն զի յայտ արասցէ եթէ ՚ի Հօրէ է նա, եւ Հօր զամենեսին զնոսա. և երևի ինքն նոքօք իբրև կարօտեալ վասն պատուոյ Հօր իւրոյ, զի ՚ի կամս իւր արար զամենայն։ Եւ չիք բռնութ̃ի որ իջոյց զնա ՚ի խոնարհութիւն. զի յամօթ եղիցին այնոքիկ որ ասեն՝ եթէ զօրութ̃իք խաւարի յաղթեցին տեառն մերոյ. զի ահաւանիկ զօրութ̃իք խաւարի աղաղակելով աղաղակէին և ասէին ցնա. «Եթէ դու ես որդի ա̃յ. և աղաչէին զնա, զի մի՛ առաքեսցէ զնոսա ՚ի գեհեն»։ Եթէ ՚ի գեհենէ աղաչեցին զնա զի ապրեսցին, զիա՞րդ յաղթէին նոքա նմա։

Եւ եղև, ասէ, քիրտն նորա իբրև զշիթք արեան»։ Քրտնեցաւ նա, զի ողջացուսցէ զԱդամ հիւանդոտ։ «Ի քիրտն երեսաց քոց, ասէ, կերիցես զհաց քո»։ Եւ զի ՚ի պարտիզի անդ եկաց յաղօթս, զի դարձուսցէ զնա անդրէն ՚ի դրախտ անդ իւր։

Արթուն կալ, ասէ, ընդ իս կոչեցի զձեզ, զի մի՛ մատնեցայց. արդ զի մատնելոց եմ ես, ննջեցէք այսուհետև և հանգերուք։ Յուդա սկիզբն արքայութ̃ե, Յուդա խլիչ արքայութ̃ե։ Իբրև մատնեաց զնա նենգութ̃ք համբուրիւն՝ Հոռոմոց, ընդ նմին մատ-

նեաց և զվրէժ նորա Հոռոմոց, զի խնդրեսցեն 'ի նմա-
նէն : Եկն ընուլ զմեծ խորխորատ իւր անօրէնն. վասն
այսորիկ մեկնեաց քաղցրութբ՟ ա՟ծն մեր, զի ցուց-
ցէ նմա թէ ինքն բարերարն և աղբիւրն ողորմութեց
յասեմն անդ իւրում "Յուդա, համբուրելո՞վ եկիր
դու մատնել զորդի մարդոյ", զի յայտ արասցէ՝ եթէ
զորդին ա՟յ մատնել նա ոչ կարէր : "Հապա վասն որոյ
եկիր դու ընկեր". զի թշնամութ՟ն ընկերութ՟ն ա-
նուանէ : Կացոյց կողմն[1] ընդդէմ նորա, մատեաւ ա-
շակերտն նենգաւոր առ վարդապետն ճշմարիտ, զի
համբուրեսցէ զնա : Եւ զհոգին զոր փչեաց 'ի նա,
ձգեաց եհան 'ի նմանէն. զի ոչ կամեցաւ լինել նա 'ի
խաչանց անտի նորա գայլն ապականիչ : Ասէ՝ զի և
այն զոր ունէր, բարձաւ 'ի նմանէն :

Իսկ տէր մեր ասէ ցնոսա. "Զո՞ խնդրէք". զի նոցա
այսպէս թուեցաւ՝ թէ ոչ կարէ նա ապրեցուցանել
զանձն իւր 'ի ձեռաց նոցա : Ասեն ցնա. "ԶՅիսուս
նազօրացի": Ասէ ցնոսա Յիսուս. "Ես եմ": Մինչ
դեռ Յուդա ընդ նոսա կայր, յետս յետս չոգան և
զարկան զգետնի : Կուրացան առաջի նորա իբրև
ոչ կամէին. զի ուսցին՝ եթէ իւրով կամաւ ետ զանձն
իւր 'ի ձեռս նոցա : Եւ իբրև ոչ ամաչեցին 'ի զօրու-
թենէ անտի որ կործանեաց զնոսա, ձգեցին զպեղծ
զձեռս իւրեանց և կալան զարբիչս իւրեանց : Եւ եհատ
զունկնն զմիոյ 'ի նոցանէ Շմաւոն. իսկ բարերարն քաղ-
ցրութբ՟ իւրով առ բժշկեաց զնա անդէն 'ի բարձր
տեղւոջ անդ իւրում, զայն[2] որ վասն յանցանաց իւ-
րոց 'ի խորս ներքինս անկաւ : "Դարձո՛ զսուր քո անդ-
րէն 'ի տեղի իւր": Այն՝ որ բանն իւր սուսեր է,
սուսերի կարօտ ինչ ոչ էր նա. և այն՝ որ բժշկեաց
զունկնն զայն զհատեալ, կարող էր նա և զանդամս
միաբանեալս քայքայել : Եւ զի մի միոյն ևեթ ցուց-
ցէ զզօրութ՟ն բնութ՟ն իւրոյ, եցոյց զնա յամենե-
սին 'ի նոսա՝ 'ի ժամանակի իբրև յետս յետս չոգան
և զարկան զերկրի : Եւ զի մի՛ միայն որոյ ունկն բժըշ-
կեցաւ՝ արգելեալ փակեսցի 'ի ներքոյ շնորհաց, ար-
գելեալ փակեաց զունելոյն իւր զամենեսին, զի գիտա-

1 Յօր. 'ի լուսանցսն դէմն : 2 Յօր. 'ի լուսանցսն Ադամոյ :

ցեն թէ զով եկեալ ունին։ Զի այն՝ որ շնորհօք իւրովք կազմեաց զունկն 'ի տեղւոջ իւրում, նովին դարձեալ շնորհօքն նորա կարացին կանգնել այնոքիկ՝ որ զարկանին զերկրի։ Այլ իբրև եցոյց նա սակաւիկ մի զգոյ զօրութեն իւրոյ, անդրէն կործանեցան և անկան ամենեքին՝ որ միանգամ ունելքն էին նորա։ Արդ սուսերն խորհրդով հանեալ, զի բանն Մովսէսի հաստատեսցի. "Ամենայն անձն որ ոչ լուիցէ մարգարէին այնմիկ, մահու մեռցի"։ Այլ քանզի տէր մեր սահման էր ստուգութե, և սկիզբն էր ողորմութե, ամփոփեաց զսուսերն իւր 'ի պատեանս իւր, և դարձոյց զստուգութիւն անդրէն 'ի տեղի իւր, և հաղորդեցաւ ողորմութե 'ի բժշկութիւն նորա։ Զունկնն 'ի տեղւոջն իւրում բևեռեաց, զի զպակասութիւն ստուգութեն արդեամբք ողորմութիւն կատարեաց։ Այլ հատոյց վարձս բժշկութե նորա այն՝ որ ունկն իւր բժշկեցաւ՝ ատելութի փոխանակ սիրոյ։ Եւ այնոքիկ որ զարկան զերկրի, և զօրութե նորա կանգնեցան, հատուցին նմա կապանս փոխանակ օգնականութեց նորա։ "Կապեցին, ասէ, զնա և ածին"։

Պօղոս աշակերտացն չարչարեցաւ և փորձեցաւ, զի եղիցի նա բժիշկ վիրաւորացն. եթէ գուցէ ամաչեսցեն յանցաւորք ապաշխարել, 'ի ձեռն Շմաւոնի յանցաւորի յորդորեաց զնոսա գալ առ այն՝ որ վերագոյն է քան զամենայն յանցուածս։ Ի գիշերի ուրացաւ Շմաւոն, 'ի տուէ խոստովանեաց. առ խարոյկի անդ ուրացաւ, առ խարոյկի խոստովանեաց. ուր ուրացաւն՝ երկիր վկայէ, և ուր խոստովանեացն՝ ծով և ցամաք, երկու ճնութիւք։ Եւ զի խոտորեցաւ լեզու նորա և ուրացաւ, եմոյծ զանձն իւր 'ի լուծ, և եհար զուս իւր 'ի խաչ անդր. մինչև աղաչեաց և հաւանեցոյց, զի գլխիվայր հանցեն զնա 'ի խաչ։

"Յայսմ հետէ, ասէ, տեսջիք դուք զորդի մարդոյ, զի գայցէ ընդ ամպս լուսաւորս ընդ երկնից հրեշտակս"։ Յայնժամ քահանայապետն ձեռն զօձիւք արկ և պատառեաց զպատմուճան իւր, զի նեղեցաւ նա 'ի զօրութէ անտի նոր գինոյն։ Այլ զայս ասասցուք՝ եթէ զայն ինչ զոր հանդերձեալ էր ած 'ի ձեռն միածնին իւրոյ, կանխեաց յառաջագոյն և

նկարեաց զնա 'ի բնութիս, և յաւել դրոշմեաց զնա յարդարս: Ցարեգ ամենեան պատառեն ծաղիկք զծոցս իւրեանց[1] և ելանեն. և թողուն զնոսա մերկ, և լինին ինքեանք պսակ այլոց: Ցարեգ ամենեան դարձեալ պատառեաց քահանայապետն զքահանայութի իւր, և եթող զնա մերկ, եկն սփռեցաւ 'ի վերայ փրկչին մերոյ: Լռեցոյց զբանս նոցա, և բազմացուցին 'ի վերայ նորա զամբաւսն. խօսեցաւ զի հարցին, և պատառեաց զհանդերձս նոցա: Եւ առին ածին զնա 'ի դուռն, և ետուն 'ի ձեռս Պեղատոսի. և նոքա ոչ մտին 'ի ներքս 'ի հրապարակն, զի մի պղծեսցին, զի նախ զգառն կերիցեն սրբութ: Ո՛վ փարիսեցիք, ահա լուարուք դուք եթէ սա է գառնն այ, սա է որ բառնայ զենմամբ իւրով զմեղս աշխարհի. զի՞նչ հարկ է եթէ յաւուրն յորում զենեալ լինէր գառնն փրկութեան ձերոյ՝ զենուլ զայս գառն փրկութե մերոյ:

Նոյն տէր մեր ջատագով ճշմարտութեն. և եկն, ասէ, լռութբ իւրով առաջի Պեղատոսի փոխանակ ճշմարտութեն որ զրկեցաւն: Զոր ինչ այլք դատաստանօք առնուն զյաղթութին, տէր մեր լռութբ իւրով առ զյաղթութին. զի պարտիքն ամծեղէն լռութեն յաղթութի են ճշմարիտ վարդապետութեն: Առ վարդապետութին խօսող էր, առ դատաստանն լռէր. ոչ լռեաց յայնցանէ, զի զմեզ մեծացուցանէին. և ոչ մարտեաւ ընդ նոսա, զի դառնացուցանէին: Բանք չարախօսաց նորա իբրև պսակ գլխոյ նորա բոլորեալ լինէին. լռեաց, զի 'ի լռել անդ նորա առաւել ևս աղաղակեսցեն, զի ամենայն ձայնիւք զարդարեսցի պսակն նորա. զի եթէ էր նորա խօսեալ, լռեցուցանէր ճշմարտութբ իւրով զուխտն, այնոքիկ՝ որ 'ի պսակի անդ վաստակէին: Դատապարտեցին զնա փոխանակ զի ասաց նա զճշմարիտն. այլ ոչ դատապարտեցաւ, զի դատապարտութի նորա յաղթութին էր. և ոչ ինչ եղև նմա փոյթ հաւանեցուցանել զնոսա: Եթէ մեռանել կամէր նա, տալն պատասխանի վահան էր ընդդէմ մահու. լռեաց նա, զի եթէ խօսէր նա՝ որ ճշմարիտն ասէր, և առաջի ճշմարտութե նորա

1 Ցօրինակին 'ի լուսանցսն Երէէ:

տութն ոչ կարէր կեալ: «Բարձ 'ի մէնջ զդա, բարձ 'ի մէնջ» առ Պեղատոս աղաղակէին: Իսկ յերկրորդել և յերրորդել նորա 'ի մարգարէն, որ արքայութէ նորա լեալ էր, «Ես, ասէ, զթագաւորդ ձեր 'ի խաչ հանեմ»: Խորհուրդ արեանն՝ որ ցանեցաւ 'ի վերայ դրանց նոցա, արգել 'ի նոցանէ զմահաբեր հրեշտակն ապականիչ: Իսկ առ այս դառն ճշմարտութեան ձկտեցուցին զհայհոյութիւն իւրեանց, և հրաժարեցին 'ի սմանէ, և խնդրեցին զԲարաբաս զապականիչ:

Զի զգեցուցին նմա հանդերձ ծիրանի, եբարձ նա զարքայութիւն Իսրայէլի: Եւ դարձեալ իբրև մերկացուցին, զի յայտ արասցէ թէ և զմահ ևս ընդնոսին թողու: Բայց դարձեալ զի արկին զնովաւ ծիրանիս, եթէ որպէս զրպարտեցին զնա հարկօքն՝ եթէ նա, ասեն, արգելու՝ զի մի հարկս տայցեն կայսեր, սոյնպէս և ծիրանիւքն կամեցան սպանանել զնա: Եւթէ ահաւանիկ, ասեն, զանձն իւր 'ի թագաւորութն մատուցանէ: Ի կատարելն իւրեանց զմահ, մարգարէացան նոքա իբրև զԿայիափայն: Եւ պսակն 'ի փշոց, զի կատակեսցեն զնա, շրջեցաւ և եղև զլացութի նոցա 'ի բարութիւն. որպէս զի իւրովն դատապարտեսցի թշնամին. զի եբարձ նա պսակաւն իւրով զանէծսն Ադամայ առաջնոյ. «Փուշ և տատասկ բուսուսցէ քեզ»: Եւ թքին ընդ երեսս նորա, փչեաց 'ի նոսա Հոգի սուրբ: Զի եդին 'ի ձեռն նորա զեղէգնն, եղև նա ցուպ աշխարհի. զի ծերացաւ և 'ի վերայ նորա յեցաւ: Եւ զոր օրինակ եղեգամբ հաստատին և ստուգին դատակնիք դատաւորաց, սոյնպէս և նա եղեգամբն գրեաց և արձակեաց զնա 'ի տանէ իւրմէ:

«Իբրև ետես, ասէ, Յուդա եթէ դատապարտեցաւ տէր մեր՝ զղջացաւ, և չոգաւ դարձոյց զերեսուն արծաթն առ քահանայսն և ասէ. մեղայ զի մատնեցի զարիւն արդար: Ասեն ցնա. մեզ չէ փոյթ, դու գիտես. և ընկեաց զարծաթն 'ի տաճարն և գնաց, և չոգաւ խեղդեցաւ և մեռաւ»: Եթող նա՝ զի եղիցի քարոզ մոլորութեան զոր գործեաց, և համարեցաւ թէ ապրեցայց յամօթոյ բազմաց, և թափեցայց յակընկորութէ, և կոտորեաց զերասանակս իւր՝ եթէ ոչ

ինչ երթալ ընդ նմա յետ փոխելոյ նորա աստի. և արկաւ խեղդ և մեռաւ: Եւ զի մի պղծեսցի ողորմութիւն պատժովքն նորա, ոչ գտաւ նմա սպանող յորդւոց անտի խաղաղութե̃ և ճշմարտութե̃: Այլ ինքնին խեղդեաց և հեղձոյց զանձն իւր. զի ցուցցէ՝ եթէ յաւուրն յետնում նոյնպէս հանդերձեալ է չարութիւն նորա սատակել և կորուսանել զանձն իւր: Արդ ո՞ պարտի զվրէժ արեանն այնորիկ՝ որ եկն 'ի նմանութիւն մարդոյ. այլ այն՝ որ զգեցաւն զնմանութի̃ մարդկութեան և մատնեաց զնա. ոչ եթէ զի կարող էր նա դատապարտել և մատնել զնա, այլ զի կամեցաւ մատնել զնա. և ոչ նա սատակէ զչարութիւնն, այլ ինքն սատակեսցէ զանձն իւր 'ի գործս իւր: Արդ եսպան զայն՝ որ ոչն մեռանի՝ 'ի դէմս մարդկան, և եղև պարտապան վրիժուն ա̃յ. զի վրիժուն ա̃յ սատակեսցի և կորիցէ այն՝ որ աստուածն կոչեցաւ: Ամենայն որ ձգէ նետ թշնամոյ իւրոյ, և դառնայ նետն հարկանէ զայն՝ որ ձգեացն զնա, զնետն փշրէ և զաղեղն նիւթ հրոյ առնէ. նոյնպէս և սատանայ իբրև ետես եթէ մահ Որդոյ յաղթութիւն է աշխարհի, և խաչն նորա ազատիչ է արարածոց, եմուտ 'ի Յուդա յանօթն իւր. և չոգաւ խեղդ արկաւ և հեղձաւ: Եւ այն՝ զի ասէ “Հեղաւ փորն նորա„, 'ի վերայ այնորիկ՝ յորոյ վերայ եկաց, և արկ զխեղդն անձին իւրոյ. իբրև հատաւ շուանն խեղդի նորա, անկաւ ինքն և հերձաւ ընդ մէջ: Իսկ այլք ասեն զդուրս փակեաց և պնտեաց 'ի ներքոյ. մինչև նեխեցաւ և հեղաւ ամենայն փորն նորա, ոչ ոք եբաց զդուրս տանն հայելոյ 'ի ներքս:

“Ոչ է արժան, ասեն, ընդունել զարծաթդ զայդ 'ի գանձ„: Երկեան նոքա յընթերցուածոց անտի, և կամեցան խափանել զնա: Այլ 'ի ժամանակի իբրև անկաւ արծաթն 'ի տաճար անդր, սրբեցաւ նա: Եւ զի գնեցին նովաւ զգերեզմանն, երանի թէ վասն ա̃յ արարեալ էր նոցա, զի և այս խորհուրդ մեծ է: Եթէ զարծաթն զայն 'ի տանէ անտի սրբութե̃ ետուն, ընդէ՞ր ոչ էր արժան ընդունել զնա 'ի գանձ ուստի ետուն, զի՞ ոչ էր արժան. զի եթէ նոցա ոչ անտի տրուեալ էր, դո՞յր նոցա ասել: Արդ քան զո՞ր արծաթ-

պերճ էր նա․ քան զսուսեր Գողիադու պե՛րճ էր նա, որ պատեցաւ կտաւով և եդաւ 'ի թիկանց սեղանոյն կողմանէ․ կամ քան զոսկին եգիպտացոց․ կամ քան զոսկին զոր սրբեաց Դաւիթ յամենայն թագաւորութե՟ց․ կամ քան զպսակն զոր եդ 'ի գլուխ նորա մարգարտով, և երգեաց հոգով․ կամ քան զպատարագն զոր բերին փղշտացիք, և եղև անդ յաւիտեանս ժամանակաց․ կամ Նաբուգոդոնոսո՞ր տարաւ զամենայն սպաս պաշտամանն և եդ 'ի տուն կռոց իւրոց․ և ահա տապանակն 'ի տուն Դագոնայ եմուտ, ո՞վ կարէ պղծել զսուրբ և զորբիչ։ Ահա եթէ վասն զի արար զանձն իւր ա՟ծ, գնեցին նովաւ։ Զսեղանն արժան էր դրուագել նովաւ․ այլ զմարգարէութի՟ն կամեցաւ խաբել։

Իսկ իբրև բարձեալ էր ինքնին զխաչափայտն իւր և երթայր, գտին կալան նոքա այր մի կիւրենացի, այս ինքն 'ի հեթանոսաց․ և եդին 'ի վերայ նորա զխաչափայտն։ Բարիոք եւտուն զխաչափայտն հեթանոսաց ինքեանք անձամբ իւրեանց․ մերժեցին յինքեանց ապստամբողքն զգալուստն՝ որ բարձեալ բերէր զամենայն երանութիւնս։ Եւ 'ի մերժել իւրեանց զնա յինքեանց ընկեցին 'ի վերայ հեթանոսաց նախանձուն իւրեանց։ Նախանձուն իւրեանց ընկեցին զնա, և առ նոցա նախանձուն եղև նա ընկալեալ 'ի նոցանէն․ և ընկալաւ զնոսա, զի նախանձ արկցէ նա անարգչաց իւրոց ընդունելովքն իւրովք։ Եւ զի ինքն բարձեալ ունէր զխաչափայտն իւր, վասն նշանի յաղթութեան իւրոյ յայտ արար։ Եւ զի ոչ այլոց բռնութեամբ վարեցաւ 'ի մահ, ասէ "Իշխանութի՟ ունիմ ես 'ի վերայ անձին իմոյ դնել զնա և առնուլ զնա"։ Եւ զի ո՞ւր այլ․ այլ եբարձ զնա։ Եւ զի յայտ արասցէ՝ եթէ վասն մարդկան բռնալեաց նորա ելանէ նա 'ի խաչ, այն՝ որ մեղք ոչ գտանէին 'ի նա։

Իսկ զի ասէ, թէ "Ընդ փայտ դալար զայս առնեն", առակաւ ասաց նա․ դալար՝ վասն ա՟ծախառնութե՟ իւրոյ, և չոր՝ վասն այնոցիկ որք ընկալան զպարգևս նորա։ Դարձեալ դալար՝ պտղաբեր լինի, իբրև զայն զի ասէ "Վասն որո՞յ գործոյ իմոյ քարկոծ առնէք

դուք զիս ,, ։ Եւ եթէ ես զի յայնցանէ ոչ գտէք յիս , “Ո՞վ ’ի ձէնջ յանդիմանեսցէ զիս վասն մեղաց ,, յորոյ վերայ պատճառս գտանէք , դուք որչափ ևս ։ Կամ դալար՝ զի արար սքանչելիս , և չոր՝ արդարքն , որ զօրութիւս ոչ արարին ։ Այլ դալար՝ զի կերան ’ի պտղոյ նորա , և ուրախ եղեն ’ի մրգոց նորա ․ այսպէս ատեցին զնա , և ապականեցին զչորն արդիւք՝ որ զբողբոջ պտկոյն իւրեանց չև իցէ բացեալ , այս ինքն զդոյզն արդարսն՝ որ ոչն առնեն նշանս ․ և զի՞նչ ևս գործեսցեն ։

“Իբրև հանին զնա ’ի խաչ , հանին ընդ նմա ևս այլ երկուս չարագործս , զի կատարեսցի այն զի ասէ ․ ընդ անօրէնս համարեցաւ ,, ։ Մին՝ և թէպէտ ոչ գիտեմք եթէ թլփատեալ էր , սակայն բանիւք իւրովք թլփատելոյ նմանէր ։ Եւ զմիւսն ևս թէպէտ և ոչ գիտեմք մեք՝ թէ անթլփատ է , սակայն բանիւք իւրովք անթլփատից նմանէր ։ Մին ասէ ․ “Ո՞չ ես դու Քրիստոս ,, ․ այս ինքն արքայ , ըստ բանիցն թլփատելոցն խաչահանուացն ։ Եւ միւսն ևս ասէ ․ “Յիշեա զիս յարքայութեան քում ,, ․ որպէս անթլփատքն գրեցին՝ թէ “Սա է Քրիստոսն արքայն Հրէից ,, ։ Անթլփատք խոստովանէին ’ի Քրիստոս՝ եթէ արքայ է Հրէից , և ոչ իւրեանց ․ և Հրեայք խոստովան լինէին ’ի կայսր՝ յարքայն հեթանոսաց օտարաց ։ Ժողովուրդն որ խոստովան եղեն յարքայութիւն անցաւոր , եղեն անցաւորք իբրև զնա ․ իսկ որ ’ի ճշմարիտ արքայութիւն խոստովան եղեն , մտանեն ’ի դրախտն փափկութեան ըստ աւետեաց արքայութեանն ։ Յորում խոստովան եղեն նոքա , ’ի նմանէն եղև կործանումն քաղաքի նոցա ․ և յարքայութիւն տեառն մերում խոստովան եղեն հեթանոսք , ’ի նմանէն լինի կենդանութիւն մարմնոյ նոցա ։

“Ո՞չ դու ես , ասէ , Քրիստոսն ․ փրկեա զանձն քո և զմեզ ընդ քեզ ,, ։ Եւ զի ոչ իջոյց զնա ’ի խաչէ անտի , որպէս և խնդրեաց , զի մեծացուսցէ զայն՝ որ ընդ աջմէ խաչին էր , որ ’ի խաչելեանն հաւատաց ․ զի նշանաւ դիւրին՞ է ամենայն ումեք աշակերտել ։ Իսկ այն որ հզօրն է, այս ինքն իբրու ինքնանեղեաց ճշմարտութեան անարգողն՝ զի երկիր պագցեն նմա, վասն այսորիկ ասէ “Տկարն այ̃ զօրագոյն է քան զմար-

գիրկ », առ տկարութե̃ն խաչին զամենայն ազգս հնազանդեաց: Կարկառ զբազուկս քո առ խաչն, զի կարկառեսցէ առ քեզ բազուկն տեառն խաչելոյ. զի այն՝ որ ոչն կարկառու զձեռն իւր առ խաչն նորա, ոչ կարէ հպել զձեռն իւր առ սեղանն նր̃: Զի զրկեալ լինիցին 'ի սեղանոյ անտի նորա՝ որք հրաժարեցան առ նա քաղցեալք, և եկին առ նա յագեալք: Մի՛ յագիր և գար դու առ սեղան Որդւոյ, զի մի՛ յարուսցէ զքեզ 'ի սեղանոյ անտի իւրմէ՝ իբրու քաղցեալ իցես դու:

Իսկ զի յափշտակեաց սատանայ 'ի ստուգութենէն զմի յաշակերտաց անտի նորա, և զայն[1] 'ի խաչ ելեալն բռնութեամբ վասն մեղաց իւրոց՝ արար զնա 'ի խաչ ելեալ ազատութ̃ վասն հաւատոց իւրոց: Որպէս արար սատանայ զայն որ ընտրեալն էր շնորհօք իւրովք՝ զի եղիցի՝ նա խոտեալ անարգեալ ազատութ̃՝ փոխանակ աթոռոյն պատրաստեաց նմա խեղդ, սոյնպէս և փոխանակ խաչին՝ դրախտն փափկութե̃: Եւ քանզի ոչ էր արժան ձեռացն այնոցիկ՝ որ կարկառն յանցանել զպատուիրանաւն յայն ծառ գիտութե̃, եթէ նոքին. իսկ կարկառեսցին առնուլ զպարգևսն տն̃յ, զայնր զոր արհամարհեաց 'ի ծառոյ անտի կենաց, վասն այսորիկ առ տէր. մեր՝ պրկեաց զնա 'ի վերայ խաչին, զի սպանցեն զսպանողն իւրեանց, և ապա եկեսցեն առ կեանսն առ սիրելին իւրեանց. և վասն այսորիկ "Ընդ իս իցես 'ի դրախտին փափկութե̃»: "Յիշեա զիս, ասէ, տէր՝ յարքայութե̃ քում»: Եւ զի ետես աչօք հաւատոյ իւրոց զպատիւ տեառն մերոյ փոխանակ անարգանացն նորա, և զփառս փոխանակ խոնարհութե̃ նորա, ասէ՝ յիշեա զիս: Ասէ, վասն զի ոչ մոռացայ ես այնուիկ՝ որ այժմս երևին բևեռուվք և խաչիւս զայնոսիկ՝ որ 'ի կատարածի անդ, որ ոչ երանելին զարքայութե̃ն քում և զփառացն քոց:

Իբրև ետես տէր մեր՝ եթէ մեծացան հաւատքն նորա քան զբազմաց, և ոչ ինչ փոյթ եղև նմա վասն նեղութե̃ իւրոյ, այլ վասն թողութե̃ մեղաց մեծացոյց զնա առաւել քան զբազումս, զի ոչ խնդրեաց զնա[2] 'ի խնդրել անդ նորա՝ հատուցմն մօտաւոր հա-

1 Յօր. 'ի լուս. տապղակն:　　2 Յօր. 'ի լուսանցսն գրչին տապղակն:

ւատոցն նորա, զի փոքր. և նուազ երևէր անձն իւր յաչս իւր՝ զի աւազակ էր, վասն այսորիկ և տէր մեր կարճեաց զերկար պարգևացն իւրոց, և ետ խոստումն մօտաւոր զայսօրն, և ոչ 'ի կատարածի ։ Արդ յայտ արար եթէ մեծատուն է ողորմութիւն նորա, զի 'ի ժամանակի յորում ընկալաւ զփոխարէնն զհաւատոյ յաւազակէ անտի, դարձոյց նմա և ետ պարգևս ձրի անչափս. սփռեաց զգանձս իւր ձրի առաջի նորա, և ամբարձ զնա նոյնժամայն 'ի դրախտ անդր նորա, և տարաւ եմոյծ կացոյց զնա 'ի վերայ գանձուց իւրոց ։ “Ընդ իս, ասէ, իցես 'ի դրախտի անդ փափկութեան„ ։

Արդ 'ի ձեռն աւազակին բացաւ դրախտն, և ոչ 'ի ձեռն միոյ ուրուք յարդարոց անտի ։ Քանզի 'ի ձեռն Ադամայ արդարոյ որ պարտաւորեցաւն՝ փակեցաւ, սոյնպէս 'ի ձեռն պարտաւորին որ յաղթեաց՝ բացաւ ։ Եւ զի ընտրեցին նոքա զաւազակն [1] և զնա անարգեցին, ընտրեաց նա զաւազակն և անարգեաց զնոսա ։ Եւ ո՞ւր է այն՝ զի ասէ. “Եթէ ոք ոչ առնու զմարմին իմ, ոչ ընդունի նա զկեանս„ ։ Այլ այն Առաքելոյն, թէ “Որք միանգամ մկրտեցաք 'ի Քրիստոս, 'ի մահ անդր նորա մկրտեցաք„. զի 'ի խորհուրդ անդ ջրոյն և արեանն որ բխեցին 'ի կողից անտի նորա, ընկալաւ աւազակն զարսկումն թողութ̃ե մեղաց. “Ընդ իս, ասէ, իցես 'ի ներքս 'ի դրախտի անդ փափկութ̃ե„ ։

Եւ զի ետուն նմա ըմպել զքացախն և զլեղին, փոխանակ զի ուրախ արար զնոսա անոյշ գինովն իւրով կարկառին նոքա քացախ. և փոխանակ ընդ ղեղոյն քաղցրացոյց զօրութ̃ի գթութ̃ե նորա զդառնութիւն հեթանոսաց ։ Եւ զի ոչ պատառեցաւ պատմուճան նորա, խորհուրդ է նա ա̃ծուէ̃ նորա՝ զի ոչ բաժանի, զի ոչ է նա զօդելոյն ։ Եւ հանդերձ նորա որ 'ի չորս մասունս բաժանեցաւ, օրինակ է աւետարանի նորա, որ ընդ չորս կողմանս աշխարհիս հանդերձեալ էր ելանել ։ Բաշխեցէք զմարմին նորա վասն սիրոյ նորա 'ի միջի ձերում, զայնորիկ՝ որ բաժանեաց

1 Յօրինակին զաւաքն ։

զհանդերձս իւր խաչահանուաց իւրոց վասն սիրոյ ձերոյ։ Առէք կլէք դուք ամենեքին զամենայն զնա, որպէս էառ եկուլ նա զմահ ձեր ամենեցուն միայն առանձին։ Բացէք նմա զդրունս սրտից ձերոց, այնմիկ՝ որ եբաց ձեզ զդրունս արքայութեան իւրոյ։ Մարիամ տեսանէր զտէր մեր այնուիկ՝ որ անկաւ զլանջօքն նորա. և Յովհաննէս տեսանէր զտէր մեր այնուիկ՝ որ 'ի միջոյ իւրմէ ծնաւ զնա. վասն այսորիկ և առաւել քան ամենեցուն աշակերտացն յանձն արար նմա զնա։

Նա զի խաւարեցան խորհուրդք խաչահանուացն, և ոչ տեսին եթէ ո՛ր արեգակն բևեռեալ կայ 'ի խաչափայտին, խաւարեցաւ արեգակն լուսատու աչաց. և իբրև խաւարեցան աչք նոցա, ապա լուսաւորեցան սակաւիկ մի խորհուրդք նոցա։ "Վայ էր վայ էր մեզ, ասէ, որդի էր սա այ"։ Տեսէ՞ք, զի մինչ մածաւ խաւար զարտաքին աչօք, ոչ բարձաւ խաւար 'ի ներքին խորհրդոց անտի. զի խաւարելոցն խաւար բնակիցն իւրեանց։ Ուսոյց նոցա եթէ զինչ խաւարութիւն է արեգականն՝ որ բևեռեցին ընդ խաչափայտին։ Այլ 'ի ժամանակին իբրև ծագեաց արեգակն արդարութեան սրբելովն զաղօտս և բանալով զկոյրս, 'ի ձեռն այսր լուսոյ ոչ երևեցաւ կուրացն՝ թէ եկն եհաս արքայն Երուսաղէմի։ Իսկ իբրև խաւարեցաւ 'ի նոցանէ արեգակն բնութեան, ապա երևեցաւ նոցա 'ի ձեռն խաւարին՝ եթէ եկեալ հասեալ է խլումն քաղաքի նոցա։ Եկեալ հասեալ են, ասէ, աւասիկ դատաստանք աւերածոյն Երուսաղէմի։ Արդ ոչ ընկալաւ նա զայն՝ որ շինեացն զնա. կայ 'ի քեզ տեսանել իբրու խլէ զնա։

Այլ յայսմհետէ և ոչ այս ևս. կայ 'ի քեզ տեսանել, ո՛վ հրեայ, զի տեսեր դու զքաղաքն քո խլեալ աւերեալ. աւերեալ քաղաքաւն քո ուսիր դու՝ եթէ ո՛վ է այն՝ որ տնկեաց զեկեղեցի։ Եւ զի ցրուեցան քայքայեցան ծնունդքն Երուսաղէմի ընդ ամենայն ազգս հեթանոսաց, ուսիր դու՝ եթէ ո՛վ է այն որ ժողովեաց ամփոփեաց զամենայն ազգսն հեթանոսաց 'ի ներքս եկեղեցւոյ։ Եթէ ոչ հաւանեցուցանեն զքեզ գիրկք արամբոյն՝ որ անզաւակեցաւ, հաւանեցուցանեն ըզքեզ գիրկք ամլոյս՝ որ բարձեալ ունին։ Եւ եթէ ա-

ւերն և կործանումն նորա քեզ ոչ երևի, պտուղ և ծնունդք նորա՝ ՚ի քեզ ոչ երևին արդիւք. և եթէ նա աւեր և թափուր երևի քեզ, և սա դարձեալ արամբի ոչ երևի քեզ։ Զիա՞րդ երևի քեզ յընթեռնուլն յայնմ վայրի. և եթէ "Բազում եղեն, ասէ, որդիք այրոյն քան զորդիս արամբոյն"։ Եւ եթէ ոչ երևի քեզ զաւրութ̄ն գրոց, ընդէ՞ր շլացուցանես դու զաչս քո աշ-խատութ̄ք ընթերցուածոց։ Չղջ տոհմակիցն քո՝ քանզի ոչ կարէր համբերել լուսատու Ճառագայթից արեգականն, հրաժարեաց նա ՚ի տուընջեան, ՚ի գիշերի՝ որ ազգակիցն իւր է՝ ելանէ թռչել. և դու եթէ ոչ լինիս կալ հայել ընդ ծածուկ լոյսն գրոց, հրաժարեա՛ ՚ի լինելոյ քեզ աշխատ գիրսն ընթեռնլոյ յամենայն ժամէ։ Չղջիկան ՚ի գիշերի փոխանակ տուընջեան է. և քո փոխանակ տ̄յ՝ որ գրեալ է ՚ի մարգարէս որթն զոր արարին Ճարտարապետքն, կամ պաղ երկիր այսմ՝ զոր քարոզեցին մարգարէքն քո, կամ պաղ երկիր այնմիկ՝ զոր ձուլեցին հարքն քո։ Նա և Յեշու որդի Նաւեայ ասաց, թէ "Ընտրեցէք ձեզ այսօր զով պաշտէքդ, զա̄ծ՝ եթէ զաստուածս"։ Իսկ սիրտ քո նոցա զաստուածս։ Գոյ քո փոխանակ գրոց և մարգարէից մոլիքն հեթանոսաց. փոխանակ օրհնութեանց երգք պարու։ Զայս զոր ընկեցաք ՚ի մէնջ, ձեզ տուաք. և զայն զոր դուքն անարգեցէքն, մեզ հասին։ Եթէ ոչ խոստացեալ է մեզ ամենեցուն մի արքայութ̄ն երկնից, բաւական է ձեզ ամենեցուն մի գեհեն։

"Ա̄ծ ա̄ծ իմ, ընդէ՞ր թողեր զիս"։ Պարտաւորեցաւ ՚ի մահուանէ, լռեցոյց զնա մինչ չև ՚ի խաչ ելեալ էր. և դարձեալ յաղթեաց մահու յաղաղակել անդ իւրում. իբրև ՚ի խաչն ել։ Եւ մինչ մահ զմին ՚ի խաչի անդ կապէր, բազումք որ կապեալ կային ՚ի դժոխս՝ միոյն կապանօքն արձակեալ լինէին։ Ճշմարիտն ձայնիւ ՚ի Ճշմարտութեանն կցորդեցաւ՝ թէ "Էլի էլի ընդէ՞ր թողեր զիս"։ Իսկ այպանողք ստութ̄ք իւրեանց կցորդէին. "Տեսցուք, ասեն, եթէ գա՞յ Եղիա իջուցանել զդա"։ Եւ զի այպն արարին նոքա զձայնն առաջին՝ թէ իբր է, զի ոչ իջոյց զնա Եղիա, դարձաւ և աղաղակեաց ձայն երկրորդ. և լուան և պատաս-

խանի ետուն նմա մեռեալք. զի ցուցցէ՝ եթէ մեռեալք որ ոչ լսեն՝ լուան նմա, որչափ եւս առաւել կենդանիք լսեն նմա։ Եւ զիա՛րդ՝ իբրու Հօր իւրում կարդայր նա, եւ մեռեալք փոխանակ ընդ Հօրն նորա պատասխանի տային նմա։ Այլ Հայր՝ որ լուաւ նմա ՚ի ձեռն մեռելոցն, խրատեցին եւ հաւանեցին կենդանիք լսել նմա։ Արդ փոխանակ զի կամակորեցան նոքա ընդ ճշմարտութեան ձայնին առաջնոյ, ուղղեաց զնոսա բռնութեամբ իւրով ձայնն երկրորդ։ Զի ձայնն առաջին ծաղր էր ՚ի բերանս նոցա, եւ այպն կատականաց ՚ի բանս նոցա. իսկ ձայնն երկրորդ վայ է ՚ի բերանս նոցա, եւ թախծել ձեռաց ՚ի կուրծս նոցա։ Փոխանակ զի թշնամանեցաւ ձայն առաջին, առաքեցաւ զվրէժ խնդրել զթշնամեացն նորա ձայնն երկրորդ։ Եթէ գալոց է Եղիա առ ինքեանս՝ հաւատան նոքա, որպէս եւ գրեալ է. իսկ եթէ առ նա եկեսցէ Եղիա՝ այպն կատականաց առնէին։ Արդ իբրեւ մարգարէացան նոքա վասն յուսահատութեան իւրեանց եւ վասն աւերածոյ քաղաքին իւրեանց, ընդդէմ նորայոցն ցուցանէին՝ եթէ առ ինքեանս ոչ է գալոց Եղիա։

Եւ իբրեւ ձեռք նորա բեւեռեալ էին, զբեւեռիչս ձեռաց իւրոց կշտամբէր եւ յանդիմանէր կաւն, որ վասն բանալոյ զաչս կուրացն ՚ի ձեռս նորա ստեղծաւ։ Զի ձեռք նորա որ կարող էին բանալ զաչս կուրացն, զի տեսցեն զնա՝ թէ եւ կարող էին կուրացուցանել զխաչահանուսն, զի մի՛ տեսցեն զնա։ Եւ հաստատուն ոտիւք իւրովք՝ որ խիստ կապանօք հնազանդեալ էին, խստադոյն ալիք՝ որ կապեցանն եւ հնազանդեցան ՚ի ներքոյ ոտիցն նորա, զկապօղս նորա կշտամբեալ յանդիմանէին. զի ոտք նորա որ կարող եղեն գնալ ՚ի վերայ մկանաց ալեացն՝ զի մի՛ ընկղմեսցէ զնա, կարող էին կոխել զմկանունս թշնամեացն՝ զի մի՛ հանցեն զնա ՚ի խաչ։

Այլ իբրեւ կախեցին նոքա զմարմինն զփայտէ, այն՝ որ ՚ի նմա էին գանձք կենաց հեթանոսաց, ետես նա զերկիրն հեթանոսաց՝ զի ընկալաւ զգանձս զայս։ Նա եւ Յուսէփ իսկ ասաց՝ եթէ “Հանէք զոսկերս իմ աստի„. զի որչափ գանձն այն ոսկերք եղեալ կայր յեր-

կիրն յայնմիկ 'ի պղծուտ ; առնէր 'ի վերայ նորա ա̄ծ զողորմութի գթութեան իւրոյ . վասն այնորիկ իսկ դարձան նոքա յերկրէն բաբելացոց : Եւ եթէ արդարոցն այսպէս, ո՞րչափ ևս տեառնն իւրեանց : Բևեռեցան բևեռօք ձեռքն, որ նոքա լուծին զմեզ 'ի կապանաց անտի մահու : Ձեռք՝ որ լուծին զկապանս մեր, և կապեցին զկապօղս մեր : Զարմանք են այս, զի մեռեալք զկենդանին սպանանէին, և սպանեալն զի զմեռեալս կեցուցանէր : Եւ բազմացուցին ձկտեցուցին զորտմտութի իւրեանց 'ի բարձունս, որպէս զի բազմացոյց խոնարհեցոյց նա զմեծութի իւր 'ի խորս : Այս է մեռեալ՝ որ գողացաւ մահ, և տարաւ, ասէ, եմոյծ զնա 'ի դժոխս . և յարեաւ արար կապուտ կողոպուտ զայլն գերութե նորա : Գողացաւ տարաւ եմոյծ զնա մինչ դեռ ննջէր . և իբրև զարթեաւ նա և շրջեցաւ, գողացաւ զգողն իւր : Այս է խաչ, խաչիչ խաչահանուաց իւրոց . և այս է գերի, գերիչ գերեվարաց իւրոց : Խաչ մահուդ քո եղև աղբիւր կենաց մեռելուէս մերում . և որ միանգամ արբին յաղբերէդ քումմէ, անձեցուցին նոքօք պտուղ նմանող ըմպելոյդ քում : Եկեր մահ զկեանսն, որ ծածկեալ կային 'ի մարմինսն մահկանացու . և ոչ գիտաց, զի նովին իսկ մարմնով ճաշակեալ էին : Փութացաւ եկուլ զնա քաղցելաբար, և վաղվաղեաց դարձոյց զնա 'ի հարկէ : Եւ զի ընդ ունկնն Եւայի եմուտ մահ, ընդ ունկն Մարիամու մտին կեանք : Եւ քանզի զպատիսն փայտիւն պարտաւորեցաւ, և նա իբրև եկն՝ փայտիւն հատոյց զնա :

Օ սքանչելիսն նորա միմեամբք խափանէին . “Սա է, ասեն, որ եբաց զաչս կուրին, ո՞չ կարէր առնել՝ թէ և սա ևս մի մեռցի” : Եւ իբրև կեցոյց զսա ևս, ասեն . “Զսա ևս կեցոյց, և զանձն իւր ոչ կարէ կեցուցանել” : Որչափ նոքա լուծանէին զառաջինսն, ևս մեծ քան զայն ցուցանէր : Փոխանակ կուրին մեռեալ չորեքօրեայ, և փոխանակ մեռելոյն ժողովս մեռելոց զոր եհան 'ի դժոխոց : Եւ իբրև այպն առնէին վերջնովքն՝ եթէ իբր ոչ, զի ասեն, կարէ առնել զնոսա, լինէին վկայք առաջնոցն՝ թէ արար : “Սա, ասեն, որ եբաց զաչս կուրին . զայլս, դար-

ձեւալ ասեն, կեցուցանէր„: Արդ յորժամ առցէ զգրաւականս նոցա երկուցումբք, մի՛ զի յայտ արասցէ զծածուկ կատակութիւնս նոցա՝ եթէ ոչ, ասեն, կարէ առնել. և միւս ևս՝ զի եղիցին վկայքն նորա՝ թէ կարող էր առնել. “Զայլս, ասեն, ապրեցուցանէր, զինքն ոչ կարէ ապրեցուցանել„: Ի նմանէն և նովին այպն առնելով զնա բարձրացուցին զնա: Զի թէպէտ և այնուիկ՝ որ ոչն իջոյց 'ի խաչէ անտի, ցուցին թէ տկար է նա, սակայն այնուիկ՝ զի ասէին զայլս կեցուցանէր, վկայ եղեն նորա՝ թէ կենարար է նա: Եւ ահա Եղիշէ 'ի մահուն իւրում կեցոյց և յարոյց մեռեալ, զի նկարեսցէ զխորհուրդ զայնորիկ՝ որ 'ի մահու անդ իւրում եբաց զգերեզմանս. և եհան զմեռեալս, զի դսրովեսցեն զմեռուցիչս նորա:

Արդ յայպն առնել նոցա զնա, եթէ զայլ, ասեն, ապրեցուցանէր, զինքն ոչ կարէ ապրեցուցանել, ոսկերքն Եղիշայի զնոսա այպն առնէին. որք իբրև կեցուցին զայլս, զինքեանս կեցուցանել ոչ կամեցան: Ոչ կամեցան կեցուցանել, քանզի և՛ մեռեալք իսկ ոչ էին. զի եթէ մեռեալ էին, և զայլս ոչ կեցուցանէին. ապա եթէ մեռեալ կեցուցանէին նոքա, ոչ են կարօտ կեանք հանգիստ կենդանեաց՝ եթէ ցանկասցին կենաց, որ ամենայն չարեօք ճաշակեալ են: Եւ եթէ մարմին մեռելոյն այնորիկ՝ իբր ոչ եթէ սիրով և հանճարով ինչ մերձեցաւ առ ոսկերսն Եղիշայի, ա՛ռ 'ի նոցանէն զկեանս նորս՝ որ յաղթեցին մահու, ո՛րչափ ևս առաւել առցեն հաւատացեալք 'ի մարմնոյ անտի Որդւոյն զկեանս անմահութե՛ն: Արդ այն՝ որ հրամայեաց մահու և դարձոյց անդրէն զոգին, կարող էր հրամայել խաչին զի թողցէ զնա: Այլ զի և այսուիկ մի՛ եղիցի նոցա տալ պատասխանի, հրամայեաց վիմաց և պատառեցան, և մահու՝ և ոչ արգել զարդարս ելանել 'ի ձայն նորա: Ուսան դժոխք զճաշակ ձայնի. նոցա՛, զի հանդերձեսցեն զանձինս իւրեանց ձայնին յետնումն՝ որ թափուր առնէ զնոսա:

Ապա եթէ կարծիցեն նոքա եթէ վասն տկարութե՛ Որդւոյն թշնամանեցաւ մարմինն հանդերձն նորա, փղշտացոց նմանող լինին. զի կարծեցին՝ եթէ

վասն տկարութե̃ ա̃յ անարգեցին և թշնամանեցին զտապանակն նորա։ Եւ եթէ ասիցեն՝ եթէ փղշտացիք եւս վրէժ հատուցման, աւելի ևս քան զնոսա խաչահանութիւնքն. զի փղշտացոց բժշկեցան հարուածք նոցա, և բնակեցին յաշխարհի իւրեանց։ Իսկ Թլփատեալքն և անթլփատքն նորոգին աւանիկ օր ըստ օրէ 'ի վերայ նոցա ցաւք նոցա. զի և 'ի քաղաքի անդ իւրեանց ոչ թողան, և ոչ մտանել այլ ևս կարեն անդր։ Եւ եթէ վասն մարմնոյն՝ որ սպանին և թաղեցին՝ յաճախեն մեզ նախատինք, այլ նախատինք նոցա ամօթ է նոցա. զի մարմինն կենդանացաւ և յարեաւ, և ել նստաւ ընդ աջմէ ա̃յ։ Իսկ զտախտակմն զոր կափեացա̃ծ, և գրեաց 'ի նոսա զանուանսն սուրբս, այն որ տապանակն փառաց վասն նոցա կազմեցաւ, Մովսէս խորտակեաց զնոսա. և բեկորք նոցա ոչ կցեցան, և խնցիք նորա իբրև զխեցիան մարմնոյ ոչ յօդեցան. և կենդանութիւն և նորոգումն և ոչ իբրև մարմնոց մեղաւորաց եղև նոցա։ Եւ մի՛ ասիցես՝ թէ ոչ լուծաւ սուրբն յարգանդի անդ. Երեմիա աւանիկ յանդիմանէ զնոսա, եթէ "Մինչ չև նկարեալ էր իմ զքեզ յորովայնի՝ ծանեայ զքեզ, և մինչ չև ելեալ էր քո յարգանդէ՝ սուրբ արարի զքեզ"։

Եւ եթէ դարձեալ խաչիւն նորա յաւելուն 'ի կատակել, օձքն անապատի դսրովեն զնոսա, զի անիծեալ օձիւն բժշկեցան հաւատացեալք. զի համարձակեցան և կոչեցին զխաչն յանուն անիծեալ։ Եւ պատուեցին զխոյն, որ 'ի ծառ անդ էր. զի է վկայ նորա գառն ճշմարտութե̃ և խաչն լուսոյ, որ փոխանակ Իսահակայ կապեցելոյ փրկեաց նա զաշխարհս կապեալ. զի ժողովուրդ էր նա անիծեալ՝ անիծելովն փրկեաց զնոսա. և հեթանոսք կենարարաւն ամենայնի բժշկեցան. և մատնեցին յանէծս օձին՝ որ 'ի վերայ նոցա 'ի ձեռն Մովսէսի տարածեցաւ։ Պաշտելովն պաշտեցին և երկիր պագին օձին պղնձոյ, որ փոխանակ մարմնոյն ապականեաց զոգիս։ Այն՝ որ ոչ կամէր հայել ընդ օձն ընդ այն, ո՞ւմ արդեւք ստնանէր հարուածովքն նր̃. ոչ էին արժանի նոքա հայել ընդ ա̃ծ, ընդ օձն՝ որ նմանող էր նոցա՝ հայե-

ցան և ապրեցան ։ Եւ զի գիտէր նա՝ եթէ օտարացուցանեն ժողովուրդն զՈրդի, ուստի զնոսա օձիւն, զի յամօթ արասցէ զխաչահանուանն, զի զխորհուրդ փրկչին մերոյ պաշտեաց նա ։

Իսկ զի այրեցաւ տեղի սրբութեն, և խլեցաւ տաճարն, զի նկարեսցեն զխորհուրդ նորա ․ զի նման է մարմին նորա մարմնոյ նորա, և նման են քարելացիքն խաչահանուացն ։ Եւ եթէ ասասցես, եթէ զնոսա վասն մեղաց արար ած, և տաճարն և սեղանն զինչ մեղան ․ կենդանի եղեն ընկերք իւր ։ Եւ եթէ մխիթարութի եղեն նոքա ստուգութեանն, զի 'ի ձեռն այսց հատուցմանց եկին հասին նոցա պարգևքն աւետեաց, սոյնպէս մխիթարեցաւ ստուգութին մարմնով այնուիկ՝ որ 'ի խաչն ել ․ որպէս և տաճարաւն այնուիկ՝ որ խլեցաւ ։ “Ի ծառայս իւր, ասէ, մխիթարի„ ։

Առաջին դովեստ արարչին այս է, զի գործեաց գործս ․ և երկրորդ այս՝ զի յայտնեաց զանձն իւր գործոց իւրոց ։ Եւ որպէս ծանեաւ նա զնոսա, կամեցաւ նա զի ծանիցեն զնա ։ Բխեաց ել 'ի նմանէ անուն ածութեն, և եկն հանգեաւ 'ի վերայ Մովսէսի ․ զի գիտասցեն եգիպտացիքն զած ամենայնի ։ Բխեաց և ել 'ի նմանէ Բանն, և եկն բնակեցաւ 'ի մարմնի ․ զի գիտասցեն արարածք զՀայրն ամենայնի ։ Արդ յանուն ածութե ածութի նորա քարոզեցաւ, և յանուն ծննդեան հայրութիւն նորա յայտ եղև ։ Եգիպտացիքն ոչ լուան Մովսէսի և տանջեցան գաւազանաւն նորա ․ իսկ հաւատացին յՈրդի, և փըրկեցան խաչիւն նորա ։ Ցպոմն նշանաւ խաչին կանխեցին յառաջագոյն և ուսան հեթանոսք զփորձ խաչին ․ եգիպտացիքն նշանօք, և ամաղէկացիքն պատերազմաւ ։ Եւ վասն այսորիկ իբրև տգէտք նշանաւ խաչին յառաջեցին ուղղեցան ։ Այլ իբրև երևեցաւ 'ի վերայ նոցա խաչն, իբրև լուսաւորք և իմաստունք գտան յուսումն վարդապետութե նորա ։ Իսկ զիսրայէլացիսն ած խորհրդով խաչին յարգէր և գրգէր զնոսա ։ Այլ իբրև երևեցաւ այն՝ որ նշանօք նորա պատուեալ լինէին նոքա, արարին զնա 'ի գլխովին նշան ամենայն թշնամանաց, կից ընկենուլ և ան-

գուշել։ Եւ եթէ ուսաւ այն՝ որ գրգանօքն լկտութե գրգէր և փափկանայր, «Գիրացաւ լայնացաւ, ասէ, Իսրայէլ և կիցս ընկէց», փափկացան 'ի մանկութե իւրեանց օրինակօք խաչին. իսկ 'ի կատարածի իւրեանց ծառայութեն կափոյց զնոսա 'ի մէջ հեթանոսաց։ «Որ փափկասունն լինի, ասէ, 'ի մանկութեան իւրում, 'ի ծառայութի մատնեսցի»։

Եկն առ նոսա պատկերն Ճշմարիտ խորհրդոց նոցա, և այլակերպեցաւ նա 'ի նոցանէ, իբրու թէ ընդ երկար ժամանակս բազում նմանութեք նորա կըրթեալ լինէին։ Եւ ոչ ծանեան նոքա զմարմինն զայն՝ որ ընդ հովանեաւ նորա ծածկեցան յանապատի անդ։ Փայտին օրինակաւ նորա քաղցրացան ջուրք նոցա, և օձին նշանաւ նորա 'ի հարուածոց անտի օձիցն փրկեցան. և անդ պարտաւորեցաւ շաբաթ և թլփատութի, զի մի 'ի նոցանէ ապրեցուցանել զնոսա ոչ կարաց։ Սոքա են որ խորշեցանն յերեսաց անտի, այն՝ որ կերպարանքն նորա հանապազօր առաջի նոցա նկարեալ լինէին։ Օտարացաւ նա նոցա վասն գունոց Ճշմարիտ դեղոյ նորա, զի նոքօք փայլէր նա իբրու անհատ գեղով։ Ամենայն մարգարէք զնմանութի գունոց նորա ցուցանէին. զի ոչ էր կատարեալ տեսիլն գաւազանին իբրև զտեսիլ խաչին, և ոչ էր կատարեալ գեղ փայտին որ քաղցրացան նովաւ ջուրքն իբրև զայնորիկ՝ որ քաղցրացան նովաւ հեթանոսք։ Ուր և միանգամ նմանութի մարդոյ, շարժեցան և սարսեցին յերեսաց նորա արարածք. ծոմն յերեսաց գաւազանի նորա, հարուածք օձիցն յերեսաց նշանի նորա, դառնութիւն ջուրցն խորհրդոյն յերեսաց նորա։ Ուր և երևեցաւ Ճշմարտութիւն, փութացեալ յանդիմանեցան որք միանգամ արատովք ծածկեալ էին։ Այս է աղբիւր՝ որ բխէ զերանութիս առանց նախանձու ընպելեաց, որ ընդ միմեանս ոչ նախանձին։ Բխեցին ջուրք, և վարժեցան ընդ ամենայն կողմանս, զի ոք ընդ ընպելի ընկերի իւրոյ մի հայեսցի։

## ԳԼՈՒԽ ․ԻԱ

«Ի ՁԵՌՍ քո, ասէ, յանձն առնեմ զոգի իմ»։ Ած̃ութիւն նորա զմարդկութիւն նորա յանձն առնէր, զի թող լիք զնա չարչարել։ Այսպէս որոշեցաւ 'ի նը-մանէն. ոչ իբրու այն' զի հատցէ 'ի նմանէն, այլ իբրու ծածկեալ է զօրութեամբ իւրով 'ի սպանելոյն և 'ի սպանողացն։ Զի եթէ երևէր նա, այն որ մեռա-նէրն' ոչ երկնչէր։ Եթէ էր նորա յայտնեալ, սպա-նողքն ոչ կարէին սպանանել զնա. այլ պահելով պահէր զնա, զի մի կորիցէ. իբրու պահապանն գիտէր և պահել ոչ գիտէր, և ապա յետոյ յայտնեցաւ և եցոյց երկոցունց, և սպանելոյն' զի ոչ թողաւ, և սպանողացն' զի ոչ եղեն բաւական կատարել զգործս իւրեանց զգերեզմանն պահել և զմեռեալն արգե-լուլ։ Եւ ստուգեաց զխոստումն իւր արդեամբք մահ-կանացուաց. եցոյց և կատարեաց և յայտ արար' թէ մարթ է մարդկութեան նորա չարչարել, զի մեռաւ ա-ւանիկ. և եցոյց' եթէ կարող են որք մեռանին' կեալ. և յարոյց զնա, և ստուգեցան հաւատք նորա լսո-ղաց, և գիտաց թշնամին զդատապարտութիւն իւր' իբրև արեգակն խաւարեցաւ, և վարագոյր տաճա-րին հերձաւ, և պահապանքն դղրդեցան, և գերեզ-մանք բացան, և մեռեալք յարեան։

Ունաւ Ած̃ մարդախառն, ոչ զծնունդ անձին իւ-րոյ, այլ զծնունդ ամուսնին իւրոյ. ընդ այնմիկ' որոյ բնութիւն իւր էր ծնանել ըստ մարմնոյ. ոչ էր հնար այլ ազգ ինչ մտանել առ ծնունդ, բայց եթէ ոք նո-քիմբք անդամօք նկարեսցի. և ոչ առ մահ, եթէ ոչ նոքօք և նոքիմբք յօդեսցի։ Արդ կարգեաց ած նա զմարմինն 'ի դրրաց արգանդին մինչև 'ի դուռս գերեզ-մանին։ Երաց ծննդեամբ իւրով զարգանդն ծած-կեալ, երաց յարութեամբ իւրով զգերեզմանն պա-տեալ պաշարեալ։ Եւ եդ զխաչն իւր 'ի միջի, եթէ որք ծնանին յորովայնէ գալ առ մահ' դիպեսցի նոցա նախ խաչն ծառն կենաց, զի ամփոփեսցեն ամայես-ցեն զպտուղ նորա 'ի մարմինս իւրեանց, եթէ յոր-

ժամ ամփոփէ զամենայն զնոսա մահ յորովայն իւր, պատառեսցեն զնա և ելցեն 'ի միջոյ նորա: Արդ 'ի մահու անդ ոչ էր նա ընդ նմա, ոչ վասն զի կամեցաւ 'ի բաց լինել 'ի նմանէ, այլ քանզի ոչ կարէր մահ մերձենալ 'ի տեղին ուր կեանքն էին սպանողք մահու: Իսկ 'ի ծնունդ ընդ նմա էր, քանզի ծնունդ առ ա̃ծութիւն ոչ է օտար. զի ծնունդ ըսկիզբն է եղելոց, և զամենայն եղեալս հաղորդէ, և կցորդէ զնորա արարչութիւն զօրութեանն արարչին: Իսկ մահ կորուստ է ամենայն՝ ինչ որ և է. և ա̃ծ գոյ է, որ ոչ լուծանի. և վասն այսորիկ մեռելուն լինել ոչ կարէ: Ոչ եթէ ուսանել եկն առ մեզ, այլ զի կատարեսցէ լրութ̃ իւրով զպակասութ̃իս մեր:

Մարմինն դարձեալ բնութ̃ իւրով չարչարեցաւ չարչարելեաւ[1] շնչովն հանդերձ. զի շունչ զգայ զչարչարութիւն: Արդ չարչարեցաւ մարդկութ̃ի նորա վասն մարմնոյն, և զգաց զչարչարանսն իւր վասն շնչոյն: "Հոգի, ասէ, եկեսցէ, և զօրութիւն հովանի լիցի": Արդ այն իսկ այս մարմին կենաց եղև հաց և կերակուր հաւատացելոց: "Հոգի, ասէ, եկեսցէ, և զօրութիւն բարձրելոյ. քանզի այն՝ որ ծնանելոցն է 'ի քէն, Որդի ա̃յ կոչեսցի կոչելով". այս ինքն վասն մարմնոյն որ 'ի նմանէ է՝ ասաց: Իսկ այնոքիկ՝ որ ասեն թէ նմանութ̃ի էր մարմինն փրկչին մերոյ, որպէս հրեշտակքն զի կերան 'ի տանն Աբրահամու, կշտամբեալ յանդիմանին. զի վասն նոցա ոչ է գրեալ՝ եթէ թշնամանեցան և տանջեցան և սպանան և խաչեցան, զի փոխեցան կերպարանք նոցա. զի ոչ մարմնաւորք ճըշմարիտ էին, այլ կերպարանօք առին՝ որպէս արժան էր՝ վասն օգտութ̃ե տեսողաց: Եւ զի մի կարծեսցեն վասն տեառն մերոյ՝ եթէ այնպէս իցէ, վասն այնորիկ ծնաւ նա. զի եղանելովն իւրով 'ի յարգանդէ անդի խափանեսցէ և լուծցէ զկարծիս նմանութ̃ե մտացն: Եւ եթէ որդի էր նա օտարի, արեգակնն ոչ լինէր խաւարեալ խաչի նորա: Այլ այն արարիչն լոյս առաւել ևս սփռէր, զի բարձաւն թշնամին նորա յերեսաց նորա, և զլոյսն 'ի վերայ հրէիցն ծագէր, զի

1 Յօրինակին 'ի լուսանցսն չարչարելով ընթե̃ռլ:

կատարեցին զկամս նորա ։ Եւ վարագոյրն փառաց զտաճարն զգեցանէր, զի սրբեցաւ 'ի տրտմութենէ անտի թշնամոյն իւրոյ. և ել գնաց 'ի նմանէն լուծիչ օրինացն իւրոց ։ Եւ եթէ հայր օտարին ած զխաւարն, ահա չիք նորա այս ։ Եւ ոչ եթէ էրն որ ածէր նա. մի՛ զի բարերար է նա, և երկու՛ վասն այնր զի ասաց "Թող նոցա, ասէ, զի ոչ գիտեն զինչ գործեն" ։ Այլ զի դարձոյց զարեգակնն 'ի խաւար, զի որչափ լուսով գնացին նոքա՝ ոչ ծանեան զնա ։ Եւ հանին զնա 'ի խաչ. Թերևս արդ զի խաւարն սփռեցաւ 'ի վերայ նոցա՝ ծանիցեն զնա ։

Նաև վարագոյրն զի պատառեցաւ, զի ցուցցէ եթէ պատառեաց 'ի նոցանէ զարքայութիւն, և ետ նա ժողովրդեանն՝ որ տայ զպտուղ ։ Կամ նմանութիւն նկարեաց պատառելովն վարագուրին՝ եթէ տաճարն կործանելոց է, զի շունչն նորա գնաց ։ Եւ զի քահանայապետն պատառեաց զպատմուճան իւր անօրէնութեամբ, պատառեաց հոգին զվարագոյրն, զի քարոզեսցէ գործով զհամարձակութիւն ժպրհութեան նոցա ընդ արարածս ։ Զի պատառեաց զքահանայութիւնն իւր և մերկացաւ 'ի նմանէն, պատառեաց և նա զվարագոյրն և ել ինքն և հան ընդ իւր զամենայն ինչ ։ Կամ զի որպէս լուծաւ և ընկեցաւ տաճարն՝ յորում ընկեց Յուդա զարծաթն, սոյնպէս և դուռն ընդ որ նայն եմուտ՝ վարագոյրն իւր ձգեաց յինքն և պատառեաց. քանզի մերկացին 'ի նմանէ զհանդերձն նորա, պատառեաց զվարագոյրն ։ Սիրտ քարեղէն պայթեաց, և սիրտք նոցա ոչ ապաշաւեցին ։

Յաղթեաց եգիպտացոցն յարեգ ամսեան, և լուսաւոր եղև հեբրայեցոցն նսամբ յարեգ ամսեան. Խաւարեցաւ արեգակն, զի հատուցին զփոխարէնն յետս ընդդէմ ։ Փոխանակ այնր զի հերձեաց զծովն, պատառեաց հոգին զվարագոյրն, զի թագաւորն փառաց անարգել 'ի խաչ ելեալ 'ի վերայ գագաթանն. այլ զի ոչ վասն այսօրինակ պատառէ զվարագոյրն տաճարին արդարութեամբ ։ Ընդ չարչարելն նորա չարչարեցան արարածք. արեգակն ծածկեաց զերեսս իւր, զի մի՛ տեսցէ զնա մինչ դեռ 'ի խաչի անդ կայցէ. զլոյս իւր յինքն ամփոփեաց, զի ընդ ամենայնի մեռ-

ցի ։ Եւ զի զերիս ժամսն խաւարեցաւ և ապա լուսացաւ, և քարոզեսցէ վասն տեառն իւրոյ՝ եթէ յաւուրն երրորդի ծագելոց է 'ի դժոխոց ։ Եւ լերինք շարժեցան, գերեզմանք բացան, և վարագոյրն պատառեցաւ. և իբրև զի սգով վասն աւերածոյ տաճարին որ լինելոցն էր՝ ողբայր ։ Կամ զի դատապարտեաց զնա բերան մարդկութեան, աղաղակեաց արդարացոյց զնա բերան արարածոց ։ Լռեցին նոքա, և աղաղակեցին քարինք, որպէս և ասաց իսկ նա. և վարագոյրն իսկ պատառեաց զականջս նոցա, զի սեղմեալ խցեալ էին. և ետ փառս զի զլացան նոքա ։

Իբրև ետես հոգին զսիրելին իւր զի կախեալ և խայտառակեալ կայր, ձգեաց յինքն և պատառեաց զհանդերձն զարդուն իւրոյ. քանզի տեսին խորհուրդք զգառնն խորհրդոյ, պատառեցին զվարագոյրն և ելին ընդ առաջ նորա ։ Կամ զի 'ի տաճար անդ բնակեալ էր հոգին մարգարէութեան, որ էջ քարոզել մարդկան վասն գալստեան նորա, նոյնժամայն թըռեաւ, ել աւետիս տալ վերնայնոցն վասն վերանալոյ նորա ընդ երկինս ։ Եւ զի պատառեցան գերեզմանքն, զի յայտ արասցէ՝ թէ կարող էր զփայտն խաչին պատառել. այլ ոչ պատառեաց զնա, զայն՝ որ նովաւ պատառելոց էր արքայութիւն Իսրայէլի. և ոչ խորտակեաց զնա, զայն՝ որ նովաւ խորտակելոց էին մեղքն 'ի միջոյ հեթանոսաց. դարձաւ հոգին՝ պատառեաց փոխանակ ընդ նորա զվարագոյրն ։ Եւ զի ցուցցէ՝ թէ ել գնաց նա, կոչեաց իւր վկայս ելանելոյն իւրոյ, զարդարսն՝ որ ելին 'ի գերեզմանաց անտի ։ Արդ երկոքին ելքն միմեամբք լինէին քարոզեալ ։ Եւ զի նովին հոգովն լինէր օծեալ և սրբեալ արքայութիւն և քահանայութիւն, ել գնաց հոգին յաղբիւրն երկուցունց, զի գիտասցէ եթէ ցամաքեցան նոքա երկոքին 'ի ձեռն այնորիկ՝ որ եբարձն զերկոսին զնոսա ։ Մեք եթէ գիտէաք եթէ հատանել ծկոյթոյ մերոյ լինի բժշկութիւն այնմիկ՝ որ ամենայն ինքն ապականեալ է, սակայն ոչ կամիմք առնել զայն ինչ զոր գիտեմք ։ Իսկ ած գիտէր՝ եթէ սպանմամբն Որդւոյ իւրոյ կեայ մարդկութիւնն, և ոչ դարձաւ 'ի նմանէ յայնմանէ առնել զնա ։

Ծառայս բազումս ունէր Աբրահամ, ընդէ՞ր ոչ ասաց նմա մատուցանել զմի 'ի նոցանէն. այլ քանզի ոչ լինէր երեւեալ սէրն Աբրահամու ծառայիւն իւրով, այլ պիտոյ էր որդւոյն նորա, զի նովաւ յայտ լիցի սէրն Աբրահամու։ Սոյնպէս և էին ծառայքն ա̃յ, և միով 'ի նոցանէ ոչ եցոյց զսէրն իւր առ արարածսն իւր. այլ Որդւովն իւրով, զի նովաւ քարոզեսցի սէր նորա առ մեզ։ "Այսպէս, ասէ, սիրեաց ա̃ծ զաշխարհ, որպէս և զՈրդին իւր միածին"։ Արդ նո՞ հաստատեաց ա̃ծ զաշխարհ, բայց եթէ սիրովն իւրով. և սոյնպէս զՈրդի ծնաւ։ Եթէ ոչ էր մեղուցեալ Ադամայ, զիա՞րդ բնակեալ լինէին մարդիկ. մեկնեսցեն մեզ Հրեայքն։ Սոյնպէս թէ ոչ էր սպանեալ զՔրիստոս, այլով իւիք կարող էր ա̃ծ կեցուցանել զժողովուրդն և զհեթանոսս։ Եւ խրատ Ադամայ ուտել 'ի ծառոյ անտի, իբրու նմա այսպէս թուէր՝ եթէ այնուիկ մնասեսցէ նմա, զի ոչ գիտաց նա զտեսչութի̃ն ա̃յ. զի զչարութի̃ն նորա ա̃ծ 'ի բարիս դարձոյց. իբրև զայն՝ զի ասէ. "Եթէ էր, ասէ, գիտացեալ, ոչ արդեօք 'ի խաչ լինէր հանեալ զտէրն փառաց"։ Զի իբրու նոքա անօրէնութիւն գործեցին, նա 'ի փառս դարձոյց զգործս նոցա։

Եւ զի ասէ. "Կային 'ի հեռաստանէ ծանօթքն Յիսուսի", զի կատարեսցի այն՝ զի ասէ. "Ծանօթք իմ և մերձաւորք իմ հեռի եղեն յինէն"։ Յառաջ քան զշաբաթ սպանին զնա, մինչ դեռ ժամ կայր մահուն. յառաջ քան զշաբաթ թաղեցին զնա, մինչ դեռ կայր տեղի սգոյ. քանզի շաբաթ սահման է վաստակոց, և 'ի նմա 'ի ներքս են ամենայն տրտմութի̃ք, զի չիք 'ի նմա տեղի վաստակոյ և ոչ մասն ապականութեան։

ՅԱբրահամէ սկիզբն արարին խորհուրդք փայտի և գառինն նկարելոյ։ Իսահակ խորհուրդ է գառինն. ծառայն և Յակոբ եցոյց փայտ, որ ազգակից է ջրոյ։ Արդ արժանի եղև փայտն զի կախեսցի զնմանէն. քանզի ոսկր. նորա ոչ բեկաւ 'ի նմա. երկու փայտիւ քարշէր պատուղն նորա, և ծովու փայտիւ կողոպտին գանձք նորա։ Սոյնպէս և մարմնոյ և շնչոյ։ Սա է որ կափեցաւ 'ի սրտմտութենէ կատաղեացն իբրև խուլ և համր

լռութեամբ իւրով, և եղև աճեցուցիչ 'ի բարձունս մարդկութեան թեթևութեան իւրով։

«Նա մի 'ի զինուորաց անտի եհար զնա տիգով»։ Թշնամանօք իւրովք եհար նա զբարեկամն իւր, և պատուեաց զնոսա դարձեալ. և թշնամանեաց զթշնամանողսն, զի ուսցին թշնամիք նորա զստուգութիւն նորա, և բարեկամք նորա զողորմութիւն նորա։ Զի աղբիւրն որ 'ի կողից անտի նորա ել, եցոյց և յայտ արար զարիւնն՝ որ ընկալան, և ելին ջուրքն՝ որ փութային 'ի քաւել։ Արիւն տեսլեամբ իւրով աղաղակէ 'ի վերայ սպանողացն նորա, և ջուրն խորհրդեամբ իւրով 'ի սրբել զբարեկամս նորա։ Եւ զի գիտասցեն՝ թէ յետ մեռանելոյն կենդանի է. և որչափ նոքա յաճախէին 'ի չարչարել զնա, գանձք որ ծածկեալ էին 'ի նմա՝ յայտնի լինէին։ Մեծութիւն երկնաւոր 'ի մի մի յանդամոց նորա տարածեալ լինէին. և յորժամ մատչէին առ նոսա ապականիչքն, բխէին՝ մեծացուցանելով զբարեկամս նորա, և սոսկ լինել խաչահանուացն նորա։ Ընթացայ ես առ ամենայն անդամս քո, և յամենեցունց զամենայն պարգևսն ընկալայ, և կողմամբն խոցեալ տիգաւն մտի ես 'ի դրախտն ցանկեալ։ Տիգաւն մոցուք թաթաղուն կողմամբն, իբրու մերկացեալ իցեմք զդրախտն առեալ կողիւն։ Քանզի հուրն որ վառեցաւ յԱդամ, 'ի կողէ անտի իւրմէ վառեցաւ 'ի նմա. վասն այսորիկ բացաւ կողն Ադամայ երկրորդի, և ել 'ի նմանէ բխումն ջուրց 'ի շիջուցանել զհուրն Ադամայ առաջնոյ։

Նա քանզի յարենէ է ամենայն կենդանութիւն, ել և արիւն ողորմութեան. խորհուրդ կենդանութեան այնմիկ՝ որ արժանին եղև արդարութեան մեռելութեան։ Ի ձեռն միջնորդին չարի վառեցաւ 'ի վերայ նոցա հուրն, և 'ի ձեռն միջնորդի բարոյ բխեցին 'ի նոսա ջուրք շիջուցիչք։ Չիք ոք չար քան զայն՝ որ խաբեացն զԱդամ, զի ոչ ինչ յանցեաւ նա. և չիք համեմատ նմա, բայց այն՝ որ խոցեացն զտէր մեր յետ մեռանելոյ նորա։ Արդ չարութիւն այն նովաւ յաղթեաց և նովին յաղթահարեցաւ։ Ել արիւնն, որ նովաւ գնեաց զմեզ 'ի ծառայութենէ անտի մահու. իսկ ջուրն, զի ամենայն որ մերձենայ առ արիւնն ա-

զատիչ իւր, եղիցի լուանալ զայն ծառայութիւն չարութեա՛ն զոր հնազանդեալ էր նմա երբեմն ։ Եւ արիւն և ջուր, զի նա ինքն է եկեղեցի նորա, և 'ի վերայ նորա շինեցաւ ։ Որպէս Ադամն, զի առաւ կինն 'ի կողմանէ անտի նորա ։ Կողն Ադամայ կինն իւր, և արիւնն տեառն մերոյ եկեղեցի իւր ։ Ի կողէ անտի Ադամայ մահ, և 'ի կողէ անտի տեառն մերոյ կեանք ։ Ձէթ Քրիստոս, զի բխեն 'ի նմանէ կաթն և ջուր և եւղն. կաթն տղայոց, և ջուր երիտասարդաց, և եւղ ցաւագնոտաց ։ Սոյնպէս ջուրն և արիւնն, ձէթ 'ի սպանման անդ իւրում եւ զայս ։

Հալածեաց նախանձ զԴաւիթ, և հեռ նախանձու զորդին Դաւթի ։ Պաշարեցաւ Դաւիթ 'ի յայրի անդ ներքնումն, և որդին Դաւթի 'ի գժոխս ներքինս ։ Կարծեաց Դաւիթ եթէ պարտաւորեցաւ, և որդին Դաւթի եթէ յաղթահարեցաւ. պարտաւորեցաւ Շաւուղ և դսրովեցաւ, և յաղթահարեցաւ մահ և կործանեցաւ ։ Աղաղակեաց Դաւիթ՝ ո՞ւր է գեղեարդըն քո, արքայ. և որդին Դաւթի, թէ ո՞ւր է յաղթութիւն քո մահ ։ Զգեաց Սաւուղ զգեղեարդն Դաւթայ, թէպէտ և ոչ եհար զնա, սակայն որմն վկայ է հարուածոյն նորա. հարին խաչահանուինքն զորդին Դաւթի տիգաւ, թէպէտ և զօրութիւն ոչ խոցեցաւ; սակայն մարմինն վկայէ վասն հարուածոց նորա ։ Ոչ ազդեցաւ Դաւթայ, և ոչ որդին Դաւթայ վնասեցաւ ։ Որմն և գեղեարդն և այրն կշտամբեալ յանդիմանեն զՇաւուղ, և մարմինն և խաչն և գերեզմանն դսրովեն զհեբրայեցիսն ։ Չիք այն՝ որ բարձրացաւ քան զմարդ, և ոչ որ խոնարհեցաւ քան զԱծ. չիք այն՝ որ բարձրացաւ քան զմարդ, այն որ ձգել ձեռին իւրում առ ծառ անդ՝ համեմատ արարչին իւրոյ լինել կամեցաւ. և չիք այն՝ որ խոնարհեցաւ քան զԱծ, այն որ տարածելով ձեռաց իւրոց 'ի վերայ խաչին՝ զյանցանսն որ մտին 'ի ձգել ձեռինն առաջնոյ՝ ջնջեաց ։

Տարածեաց զձեռս իւր 'ի վերայ խաչափայտին, զի սպանցէ զմահ՝ որ 'ի ձեռն փայտին ։ Վայել էր իսկ մարմնոյն՝ թէ որով իւիք խոցեցաւն, նովիմբ բժըշկեսցի. և արժան իսկ էր այնմիկ՝ որ բարձրացաւն,

եթէ որով իւիք մեծացաւ նա՝ նովին վատթարեցի, զի երևեցի զօրութիւն որ զամենայն փոփոխէ ։ Զի նետիւն որով վիրաւորեալն եղաք, եղև նա մեզ դեղ կենաց. և զէնն որով առաքինացաւ թշնամին, եղև նա նմա 'ի դողումն և 'ի սոսկումն. զի դեղովն որով մեռաւ կենդանութիւն մեր, նովին մեռցի և մահն սպանողն մեր ։ Առ բարձ զնոսա 'ի վերայ փայտին՝ զկեանս Ադամայ զսպանեալն փայտիւն, զի տարցի մուծցէ բնակեցուսցէ զնա 'ի ներքոյ թևոցն ծառոյն կենաց ։ Յաւուրն յորում եղև սպին, 'ի նմին կնքեցաւ սպին. ուրբաթն՝ որ վարեաց 'ի նմա զբևեռսըն, նոյն կորզեաց հան 'ի նմանէ զբևեռսն ներքս 'ի դժոխս ։ Ի մէջ կենդանեաց խոցեցին զկողն նորա, 'ի մէջ մեռելոց կնքեցաւ կողմն նորա ։ Վէրն որ կնքեցաւ՝ զիա՞րդ յետ տասն աւուր քակտեցաւ, և մտին 'ի նմա մատունք ։

Տարածեալ էին բազուկքն Մովսիսի, և պրկեաց զնոսա ա՟ծ սփռելով, մինչև անկեալ կործանեցան թշնամիք նորա ։ Պրկեցին նոքա զձեռս Որդոյն նորա 'ի վերայ խաչափայտին, և փոխանակ զի արարին նոքա խոտորնակ նորայոցն, արար նոցա և հակառակ տարածելոցն ձեռացն նորա ։ Անկան, և այլ ոչ ևս լինի նոցա կանգնումն ։ Սոյնպէս և հեթանոսաց՝ որք հաւատային՝ 'ի ձեռսն տարածեալս, քանզի երևեցոյց զնոսա փորձ, հրամայելոյն այնորիկ զոր արարն նոցա Մովսէս, արարին նոքա խոտորնակ ընդ այնորիկ, եղև նոցա խոտոր վասն այնորիկ ։ Եւ զմահն խաչին զի մեռաւ, զի կատարեսցի այն՝ զի ասէ. "Իբրև զոչխար 'ի սպանդ, և իբրև զորոջ առաջի կտրչի" ։ Նախ մեռանել և ապա կտրել, դժուարին է բնութիւն տեսանել՝ եթէ վասն նորա է ասացեալ ։ Այլ քանզի հրամանաւն՝ որ ել 'ի բերանոյ անտի դատաւորին՝ սպանաւ նա, և ապա եկին պրկեցին զնա 'ի վերայ խաչափայտին, պրկեալ կայր իբրև 'ի վերայ երկրի՝ նմանութիւն ոչխարի առաջի կտրչի ։ Եւ դարձեալ զի մեռաւ զմահ խաչին, զի նկարեսցի նմա խորհուրդ. զի 'ի մահու անդ նորա կանգնէին և յառնէին ամենայն մեռեալք. յայնմանէ՝ զի և նա ինքն իսկ մինչ դեռ 'ի խաչին կայր, կանգուն կայր 'ի մէջ խաչին իւրոյ,

որպէս և ակն պատուական 'ի լանջս քահանայապետին : Յերուսաղէմ, ասեն, 'ի մէջ երկրի է վասն ընտրութեան, զի եդ անդ զօրէնս իւր . զի ելցէ ճառագայթքըն նորա լուսատու լինել ամենայն ծագաց երկրի : Եւ քանզի անդ էր, անդ ցցեաց և ողորմութիւն նորա զխաչն նորա, զի տարածեսցէ զբազուկս իւր ընդ ամենայն կողմանս՝ բառնալ ունել զշունչս և զոգիս ամենայն տիեզերաց :

Մեռաւ Յիսուս աշխարհի, զի ոք աշխարհի մի կեցցէ . և շրջեցաւ 'ի մէջ մարմնոց խաչապէս, զի ոք լկտութեամբ մի գնասցէ նովաւ : Մեռաւ աշխարհիս մերոյ մարմնով իւրով, զի կեցուսցէ աշխարհին իւրոյ մարմնով իւրով . և մեռոյց զկեանս մարմնոյ, զի և մեք մարմնով մարմնապէս մի կեցցուք : Եղև նա վարդապետ ուսուցիչ ոչ այլոց նեղութեամբք, այլ անձինն իւրոյ չարչարանօք . և ինքն յառաջագոյն կանխեաց ճաշակեաց զդառնութիւնս, զի եցոյց մեզ՝ զի մի ոք աշակերտեսցի նմա անուամբք, այլ չարչարանօք . իբրու նա է տեղի մեծ, որ բաւական եղև ընդարձակութիւն նորա ամենայն լրութեան մարմնապէս : Նեղապէս էր նա, զի որք պատճառանօք մի աշակերտեսցին նմա . Ճաշակ՝ որ յամենայն եցոյց և ետ մեզ . Այլ է խնդիր վասն այնորիկ՝ որ երևեցաւն յաշխարհի, այլ է հաւանութիւն վասն այնր՝ որ զկնի երևելոցն է . յաշխարհ եղև նա 'ի վերոյ քան զաշխարհ :

Ակն բանին ճշմարտութեան յաշխարհ . և ըստ իւրոյ ճշմարտութեանն որ առ մեզ է՝ ուսոյց մեզ, զի գընասցուք ընդ նմա : Դուռն է նեղ . այլազգունեաց տէր մեր զանձն իւր մարդկութեամբ, զի մի խորշեսցին . և եմուտ յաշխարհի տան, զի կողոպտիչ է նորա : Եւ դարձեալ մերկացաւ զվարս և զգնացս աշխարհիս, զի մի կալցին զնա աստէն յաշխարհիս . "Եւ առ իս, ասէ, զիւր ինչ ոչ գտանէ" : Արդ ոչ կարաց համբերել աշխարհս, և ոչ փոքր ժամանակեան գնացս նորա . քանզի ծերացան ցանկութիւնք նորա 'ի փոքր ժամանակն նորա, և իբրև 'ի ծերութենէ յապականել . և ընդ նոսին և այն՝ որ նոքօքն թագաւորեալ էր, և զամենայն մարմին նոքօք կամէր կապել : Զգեցաւ մարմին, և անմահս արար զնոսա՝ զմարմինսն զգե-

ցեալ [1]։ Մահու մերկանալ մարմնոյն նորա 'ի վերայ խաչափայտին, մերկանալ մահուն մերոյ է. և զգենուլ մարմնոյն նորա՝ որ 'ի գերեզմանէն, մերկանալ կենաց է՝ որ յաշխարհէ։ Ոչ թողացոյց զմեզ ժամանակ գրգանացն նորա, և զարմացոյց զմեզ մեծութի պատերազմին նորա։ Եւ ոչ պատրեաց զմեզ ուղեղ պարգևացն նորա, և ոչ խոտորեաց զմեզ սաստկութիւն պարէիցն նորա, և ոչ կափոյց զմեզ որոգայթ մենքենայիցն նորա, և ոչ թագաւորեաց 'ի միջի մերում ծպանող գեղեարդն նորա՝ ախոյեանն և լուծիչն նորա։

Երկու մկրտութիւնք գտան առ տէր մեր սրբիչն ամենայնի. մի ջրոյն, և միւս ևս խաչին. զի ուսուսցէ այնուիկ՝ որ չարչարանացն էր, վասն այնր՝ որ ջրոցըն էր։ Քանզի ապաշխարութի մեղաւորաց խաչելութիւն է նոցա՝ որ բևեռէ և հաստատէ զանդամս նոցա ծածկապէս, զի ցանկութեամբք մի գնասցեն. և զայնոսիկ քարոզեաց Յովհաննէս նախ քան զտէր։ Արդ երկու մկրտութիւնք պիտոյ է արդարոց և մեղաւորաց. և եթէ մի է, առանց ընկերին իւրոյ ոչ կեցուցանէ։ Եւ եթէ ասիցես՝ եթէ չիք հալածանք յայտնիք, գոն հալածանք 'ի ծածուկ։ Ահա հալածէ քննութի զհաւատս քո, խոստովան լեր առանց քննութե 'ի տէր։ Ոչ են չար հալածանք թագաւորաց քան զհալածանս քննողաց, և ոչ են խիստ քերանք քան զհերձուածս, և ոչ տանջանք քան զհարցուածս, և ոչ մորթանք քան զմաքառումն, և ոչ հատանել պարանոցի քան զերկմտութի։ Հալածէ զքեզ հեռ, խոստովան լեր 'ի սէր. հալածէ նախանձ, խոստովան լեր 'ի միաբանութիւն, հալածէ ցանկութի, երթ զհետ հեզութե։ Այսպէս և անօրէնութի, խոստովան լեր 'ի ստուգութի. սոյնպէս և կարասի, խոստովան լեր 'ի տէր մեր, որ տէրն է հասարակաց։ Այս ամենայն հալածիչք հալածէ ըզմարտիրոսս 'ի խաղաղութե անդ։ Եւ զի առաքինացան նոքա 'ի ծածուկ հալածչօքն, պսակեցան նոքա յայտնի հալածչօքն։ Կրթեաց դու այնոքիւք՝ որ 'ի

1 Յօրինակին 'ի լուսանցան փոխեալ։

ծածուկն են. զի ժուժկալ լինիցիս դու այնու կալ առաջի այնոցիկ՝ որ երեւին ։ Ապա եթէ 'ի հալածչաց անտի որ 'ի ներքսեն 'ի քեզ՝ պարտաւորիս դու, զիա՞րդ հայիս դու յաղթել հալածչացն՝ որ արտաքս են քան զքեզ ։

Մե՛ծ են թշնամանք խաչին քան զազգս և զդարս ։ Զի թէ մահն Ադամայ զամենայն տոհմն մարդկան մեռոյց, ո՞վ լինէր բաւական կալ առաջի մեծի թշնամանացն պատուականին ։ Եւ եթէ ոչ էր մեկնեալ ստուգութեն յայնմ ժամու յողորմութէ անտի, ո՞ կարէր գիմակալ լինել զօրութե ստուգութեն. և ո՞ ներէր մեզ եթէ ողորմութեն ոչ էր թողեալ մեզ ։ Արդ գթացաւ 'ի մեզ ողորմութին նորա մինչ դեռ կախեալ կայր զփայտէն. և վասն պատուոյ ստուգութեն [1] անարգեաց և թշնամանեաց նաւ զգիտունս, և կոչեաց զնոսա անգէտս. "Զի ոչ, ասէ, գիտեն զինչ գործեն" ։ Վկայեաց ստուգութին նորա, և այգոյն առակաւ յանդիմանեաց զմեզ [2], եթէ գիտացին, ասէ, մշակք զժառանգ այգոյն ։ Եւ ոչ իբրև մերձեցաւ նա առ նոսա, այլ մինչ դեռ հեռագոյնն էր խորհեցան սպանանել զժառանգն, զի կեցցէ 'ի բախտ նոցա ժառանգութիւնն ։

Եւ զի մի՛ համարձակեսցի ոք 'ի վերայ ստուգութեն նորա, և հայհոյեսցէ զողորմութիւնն նորա՝ եթէ զի եկն նա՝ ոչ գիտացին զնա, և զինչ օգուտ եղև՝ ոչ իմացան, և ընդէր ծածկեաց զանձն իւր 'ի ժողովրդենէ անտի և յայտնեաց հեթանոսաց, արար պատասխանի ստուգութի նորա՝ զի մի՛ ոք բծեսցէ զստուգութին նորա. կանխեաց յառաջագոյն և եցոյց՝ եթէ գիտէին նոքա զնա ։ Եւ զի գովեսցի ողորմութի նորա թողութին և քաւութին իւրով, ասաց վասն նոցա՝ եթէ ոչ գիտացին զնա, Մարիամ Եւայիւ, և Յովսէփ Յովսեփաւ ։ Քանզի և այն՝ որ խնդրեացն զմարմինն նորա, Յովսէփ անուն էր. և այն առաջինն արդար էր, ասէ, զի մի՛ առակեսցէ զՄարիամ ։ Եւ միւս ևս դարձեալ արդար էր, զի ոչ եղև յար 'ի խորհուրդս և 'ի գործս նոցա ընդ չարախօսսն. որպէս զի յայտ լիցի՝

1 Յօրինակին սրբութեն ։ 2 Յօրինակին 'ի լուսանցան գնոսա ։

եթէ անուանն այնմիկ, որում յանձն եղև զառաջինն իբրև ծնաւ, ետ դարձեալ զի պատեսցէ զնա 'ի մեռանել անդ իւրում, զի առցէ նա վարձս կատարեալս · զի եղև նա սպասաւոր պաշտօնեայ ծննդեան նորա յայրի անդ, և մարմնոյ նորա 'ի գերեզմանի անդ ։

Եւ զի կնքեցին զգերեզման նորա՝ փոխանակ ընդ նորա եղև, և ընդդէմ նոցա իբրև զԴանիէլին և զՂազարուն. Դանիէլին 'ի տեսանելն իւրեանց զկնիքն իւրեանց 'ի վերայ գբոյն, գիտասցեն՝ եթէ ոչ զօրութի ապրեցոյց զայն, որ 'ի գուբ անդ էր ։ Եւ 'ի տեսանելն իւրեանց 'ի վերայ դրաց գերեզմանին, երևեսցի նոցա եթէ զօրութի է՝ որ մեկին է նմա ամենայն ։ Զմարմինն հան 'ի կնքել գերեզմանէ անդի, և կնիք գերեզմանին եղև վկայ վասն կնքոյ որովայնին՝ որ կնքեացն զնա ։ Իբրու կնքեալ էին կուսութիւնքն նորա, եւ որդին կենդանոյն 'ի միջոյ նորա. և անդրանիկ էր նա յամենայն տեղիս ։ Եդաւ վէմն 'ի դուռն գերեզմանին, վէմն ընդդէմ վիմի · զի պահեսցէ վէմ զվէմն՝ զոր անարգեցին շինօղքն ։ Եւ այն՝ որ առաւն ձեռօք, զի պահեսցէ զայն՝ որ հատաւն առանց ձեռին, և այն՝ յորոյ վերայ հրեշտակն նստաւ, զայն՝ որ Յակոբ եդ ընդ մնարս իւր. և այն՝ որ կնքօմն իւրով, զի պահեսցէ զայն՝ որ կնքօմն նորա լինին պահեալ հաւատացեալք ։ Արդ եւ դուռնն կենաց 'ի դրաց անտի մահու. «Այս է, ասէ, դուռն՝ զի արդարք մտանեն ընդ սա» ։ Իբրև արգելաւ նա, արձակեաց զարգելեալսն, և մահուամբն նորա մեռեալք կեցին, և ձայնիւն նորա լռեցեալքն աղաղակեցին, և յարութեամբն նորա շարժումն եղև. և ելանելովն իւրով 'ի գերեզմանէ անդի՝ տարաւ եմոյծ զհեթանոսս յեկեղեցի ։

Մարիամ կանխեաց չոգաւ 'ի գերեզման անդ, և նա յարուցեալ էր. և ոք զժամ յարութեան նորա ոչ գիտաց, այլ Մարիամ ասաց աշակերտացն. զի ոչ վայել էր այնմիկ՝ որ անսահման էր՝ եթէ ժամ յարութեան գրեսցեն նմա ։ Եւ զի ոչ լցան երեք աւուրքն, ասեն՝ վասն զի հեղձոյց զանձն իւր Յուդա, բազումք պարսաւեցին զնա՝ եթէ վասն էր փոխանակ այնորիկ

և անձին իւրում ոչ կարաց կեալ․ կորոյս զանձն իւր։ Եւ զի բարձցէ զայս կարծիս դնել մտացն 'ի միջոյ անտի, կանխեաց յառաջագոյն յարեաւ նա քան զուխտըն եղեալ։ Բայց դարձեալ եթէ աշակերտքն, ասեն, թերեցան։ Զի թէ այն՝ որ գլուխն էր նոցա Շմաւոն, երդուաւ և ուրացաւ 'ի նմանէն, որչափ ևս որ զկնի նորա էին․ և վասն այսորիկ կանխեաց յառաջագոյն հաստատեաց զտկարացեալ խորհուրդս նոցա, զի մի՛ յողդողդեսցին։ Զի և ոչ նոքա որ որդիքն էին աջուն, ասեն, համապազորդ յուսացեալ էին՝ եթէ արդարեւ ելանէ նա 'ի դժոխոց։ Եւ քանզի մինչև ցայս ժամ ոչ էր ուրուք գործել զայս, վասն այնորիկ ձեպեցաւ իմաստութիւն վասն մխիթարութէ նոցա։ Կամ յօրէ անտի յայնմանէ յորում 'ի խաչն ել, համդերձ աւուրքն յորում յարեաւն 'ի նմա, համարեալ լինին նորա երեք աւուրք իջանելոյն և ելանելոյն։ Կամ այն իսկ է, յօրէ անտի յորում ետ նոցա զմարմին և զարիւնն իւր՝ կատարեցան երեք աւուրք։

Իսկ զի եթող նա զհանդերձն պատանաց իւրոց 'ի գերեզմանին անդէն, զի մտցէ Ադամ 'ի դրախտն անդ առանց հանդերձի, որպէս և էր իսկ յառաջ մինչ չև մեղուցեալ էր․ փոխանակ զի զգեցաւ նա յելանել անդ իւրում, մերկացի 'ի մտանել անդ իւրում։ Կամ վասն այնորիկ եթող զնոսա անդէն, զի նկարեսցէ զխորհուրդ յարութեան մեռելոց․ զի զոր օրինակ ինքն փառօք իւրովք յարեաւ և ոչ հանդերձիւ, սոյնպէս և մեք գործովք մերովք։

Եւ զի հաւանեցուցին նոքա արծաթով եթէ աշակերտքն նորա գողացան զնա մինչ մեք 'ի քունն էաք, իմաստնացոյց զնոսա ձայնիւն իւրով, զի զմեռեալսն 'ի ներքոյ դժոխոց եհան։ Եւ դարձեալ զի ոչ էր նա կարօտ գողովքն՝ եթէ վկայք եղիցին յարութեն նորա։ Այն՝ որ կեցոյց զմեռեալս, և դարձոյց զշունչ, կարող էր զգերեզմանն բանալ, և զվէմն թաւալեցուցանել․ և յառնել անդ իւրում դարձեալ հորդեաց ճանապարհ առաջի իւր։ Արդարքն որ նմանող եղեն յիստակ մանկտոյն, երկինք ծածկեցին զլոյս իւրեանց, և օդք ներկան խաւարաւ, եր-

կիր պատառեաց զվէմս իւր, հոգին պատառեաց ըզվարագոյրն, դժոխք արձակեցին զմեռեալսն իւրեանց ։

Եթէ վասն մեղաց մեռաւ Ադամ, այն՝ որ եբարձ զմեղսն՝ պարտ էր և զմահն բառնալ ։ Այլ որպէս Ադամայն ասացաւ, եթէ “Յորում աւուր ուտիցես, մահու մեռցիս”, և յաւուր յորում եկեր՝ ոչ մեռաւ, բայց զառհաւատչեայն մահու ընկալաւ նա մերկութեամբն իւրով 'ի փառաց անտի, և հանապազօր հոգայր վասն մահուն, յայսմ օրինակի և, զկեանսն որ Քրիստոսին կերաք մեք զմարմին նորա փոխանակ պտղոյ ծառոյն, և եդև մեզ սեղան նորա փոխանակ դրախտին փափկութեան, և լուացան անէծքն արեամբ նորա արդարով, և յուսովն յարութեան հանդերձեալ յուսոյն ակն ունիմք, և արդէն իսկ նորա կենօք շըրջիմք մեք, զի առհաւատչեայ նոքա եղեն մեզ ։

Իսկ զի ցուցցէ դարձեալ, եթէ թշնամեաց նորա չիք նոցա իշխանութիւն բնաւ հարկանել զնմանէն, իսկ բարեկամաց նորա գոյ իշխանութիւն այլով իւիք մերձենալ առ նա՝ սիրով և երկեղիւ, իբրու չարչարիցեն զնա յայնմիկ՝ զի ուտեն զնա, զխորհուրդ մարմնոյն այնորիկ, ուսուցէ զնոսա և նա զկերօղսն իւր, զի չարչարեսցեն ընդ նմա զմարմինս իւրեանց ։ Եթէ զոր օրինակ ուրախ արար նա զնոսա չարչարանօքն իւրովք, սոյնպէս ուրախ արասցեն զնա և նոքա չարչարանօքն իւրեանց ։ Դարձեալ ասեն, եթէ քանզի ոչ էր առեալ Մարիամու զխորհուրդ մարմնոյն և արեան նորա, զի տացէ օրինակ՝ եթէ ոչ միայն թշնամիքն նորա ոչ մերձեցին 'ի խորհուրդն նորա, որպէս և Սկարիովտայն, այլ և ոչ 'ի բարեկամաց անտի նորա՝ որք ոչն իցեն դրոշմեալ իբրև զՄարիամ ։ Բայց դարձեալ քանզի ձգել ձեռինն Եւայի հնազանդեցոյց զմարմինն զայն 'ի ներքոյ մահու, և պսակեաց զնա ամենայն չարչարանօք, ոչ ետ Մարիամայ մերձենալ 'ի նա․ այլ պահեաց զնա բազկին այնմիկ՝ զոր նստոյց ընդ աջմէ իւրմէ, և ձեռինն՝ զոր պսակեաց զնա ամենայն երանութեամբ յետ վերանալոյն իւրոյ ։

Բայց դարձեալ քանզի երկմտեցաւ Մարիամ վասն նորա, զի լուաւ նա՝ թէ յարեաւ նա, և եկն և ետես զնա և ասէ․ “Եթէ դու բարձեր, ասէ, զնա”․

զի ցուցցէ նմա՝ թէ ճշմարիտ յարեաւ նա, ասէ. «Եւ առ հայր իմ ելանեմ ես»։ Ոչ եթէ մինչ ելանէ առ հայր, ոչ մերձենայ 'ի նա. այլ զի երկմտեցաւ, մինչև ելանեմ ես, ասէ, առ հայր իմ, ոչ մերձենաս յիս. այն իսկ է զի ասէ. «Եւ քո ինքն ընդ անձն 'ի գլխովին անցցէ սուր». այս ինքն ուրացումն։ Եւ եթէ զի երկմտեցաւ նա վասն յարութեան նորա, արգել զնա զի մի մերձեսցի 'ի նա, ահա Թովմաս երկմտեցաւ վասն նորա, և մերձեցաւ 'ի նա։ Այլ զայս ասասցուք, եթէ զոր օրինակ մարգարէացաւ նա վասն չարչարանաց իւրոց յառաջ քան զչարչարանս իւր, և վասն յարութեան իւրոյ յառաջ քան զյարութիւն իւր, սոյնպէս և յայսմ վայրի կանխեցաւ մարգարէանալ վասն վերանալոյն իւրոյ։ Արդ այնուիկ զի ասէ «Մի մերձենար յիս», ամանալով ասաց լից զնա նոր քարոզութիւն վերանալոյն իւրոյ։ «Երթ, ասէ, ասա եղբարց իմոց՝ եթէ ելանեմ ես առ հայր իմ և առ հայր ձեր, և առ ած իմ և առ ած ձեր»։ «Մի, ասէ, մերձենար յիս, զի չև ևս եմ ելեալ առ հայր իմ»։ Եւ ահա զկղէոպեանսն օրհնեաց, և ընդ աշակերտսն եկեր; և Թովմայի զկողմն իւր եցոյց, արդ ընդէ՞ր արգել զՄարիամ զի մի մերձեսցի 'ի նա. Թերևս վասն զի յանձն արար զնա Յովհաննու յիւրում տեղւոջ, «Կին դու, ասէ, ահա որդի քո». սակայն ոչ նշանն առաջին առանց նորա, և ոչ սկիզբն դժոխոց առանց նորա։ Թէպէտ և ոչ մերձեցաւ 'ի նա, սակայն հաստատեցաւ։

Իսկ զի ասէ. «Չև ևս եմ ելեալ առ հայր իմ», թուի եթէ ընդդէմ խորհրդոցն Մարիամայ ետ նմա զպատասխանին։ Ուսոյց զնա՝ որպէս և զառաքեալսն՝ եթէ հանդերձեալ է նա վերանալ ընդ երկինս, և գալ մարմնով 'ի վախճան կատարածի, և տալ նմա զպարգևսն զոր խոստացաւ նմա. և զի յանկարծակի ծանեաւն զնա, վարեցան միտք նորա առ վերջին գալուստն, և թուեցաւ նմա թէ եկն եհաս արքայութիւն երկնից. վասն այսորիկ ասաց՝ թէ «Չև ևս եմ ելեալ առ հայր իմ»։ Եւ միւս ևս՝ զի ծնունդ է նա նոր, և գլխաւոր 'ի դժոխոց. այն՝ որ նուաղաւ կորնչէին ազգք և դարք և տոհմք. զի յայսմիկ յայտ արասցէ՝

եթէ 'ի յարութեան անդ ոչ ոք դառնայ, ոչ հարք յորդիս, և ոչ որդիք 'ի հարս իւրեանց. այլ դառնան ամենեքին յայս, զի արժանի եղիցին ողորմութեան վերանալ ելանել առ հայր։

Իսկ զի ասէ. “Երթամ ես առ Հայր իմ և առ Հայր ձեր, առ ա̃ծ իմ և առ ա̃ծ ձեր„։ Եւ եթէ որպէս գրեալն լսի, և Հայր՝ եթէ այդպէս է՝ յերկինս էր, և ոչ յերկրի. և եթէ էր և նա յերկրի, զիա՞րդ երթայր որդի առ նա յերկինս։ Եւ եթէ ոչ էր որդի յերկինս, և ոչ Հայր յերկրի, ասէ, է. “Եւ ես առ քեզ գամ, Հայր իմ„. և ոչ ասաց ա̃ծ իմ։ Իբրև խօսեցաւ ընդ նմա, կոչեաց զնա Հայր. զի յայտ արասցէ՝ եթէ 'ի նմանէ է նա։ Եւ իբրև առաքեաց առ աշակերտսն իւր՝ եթէ “Երթամ ես„, կոչեաց զնա ա̃ծ իմ. զի ցուցէ զթերութիւն իւր որ ընդ նոսա է։ Եւ դարձեալ ասէ. “Ոչ եմ ես միայն, զի Հայր իմ ընդ իս է„. և “Ես 'ի Հայր, և Հայր յիս. և մի եմք„։ “Երթամ ես առ Հայր իմ և առ Հայր ձեր, և առ ա̃ծ իմ և առ ա̃ծ ձեր„. և ոչ ասաց՝ եթէ առ Հայր մեր և առ ա̃ծ մեր, այլ առ Հայր իմ և ապա առ Հայր ձեր, և առ ա̃ծ իմ և ապա առ ա̃ծ ձեր։ Եթէ հաւասարապէս ասացեալ էր զպատգամսն, թերևս դիւր տեղի բանի նոցա։ Հայր իմ և Հայր ձեր, և ա̃ծ իմ և ա̃ծ ձեր՝ երկոքեան սոքա վասն մարդկութեան նորա ասացան. վասն մարմնոյն ասաց զերթալն, և ոչ վասն Բանին ա̃յ, իբրև զայն, “Առ Հայր ձեր„. իբրու մարդիկ են նոքա։ Սոյնպէս և վասն մարդկութեան նորա ասացաւ, իբրու զայն դարձեալ՝ զի ասէ. “Հայր մեր որ 'ի յերկինս է„։

Իսկ Շմաւոնի զի ասացաւ նմա՝ եթէ “Եկ զկնի իմ„, վասն մահու ասաց նմա։ Դարձաւ նա և հայեցաւ և տես նա զաշակերտն զայն, եդ և ասէ ցնա. “Եւ ասաց տէր„. զի ասէ ցնա. “Քեզ զի՞ փոյթ է„. զի՞նչ չարուտ ասաց։ Այլ ինքն Շմաւոն զի հաւանեցուցէ տէր մեր զայն՝ զի և նա եկեսցէ՝ ասէր։ Արդ ուստի տէր մեր հարցուածովն Շմաւոնի՝ եթէ իշխանութի ունի նա, որպէս և հայրն իւր, 'ի վերայ մահու՝ ասէ. “Եթէ կամիմ„. այլ ոչ կամեցաւ՝ զի պսակեսցին նոքա առաքինութեամբք մահուն նորա։

Եւ զի ետ տէր մեր ձէթ աշակերտացն, խորհուրդ զանուան իւրոյ. և զի ընդ ամենայնի ամենայն եղև. իբրև ինքն տէր է, և ետ լոյս ճրագաց, և հալածեաց զխաւար և զգործս իւր: Իսկ սուրբ և մխիթարութիւն անուանք իւրեանց ընթանան յաշխարհի, և 'ի վերայ ամենայն մարդոյ հասանեն անդանք: Եւ ոչ էին հաւասար յառաջ քան զգալուստ տեառն մերոյ արդեամբք, որպէս և անուամբ: Իսկ սուրբ արդեամբք էր. որպէս զի և այժմ վասն որոշելոյ այնորիկ՝ որ վախճանեցաւ: Իսկ մխիթարութիւն անուամբն միայն էր իբրև մարգարէութիւն: Եւ զայս անուանս տէր մեր ընկալաւ 'ի վերայ իւր արդեամբքն. զի ընդ ամենայն արարածս նորա բաժանեցան անդանք նորա, և նկարեցան առակք օրինակաց նորա. և ամենայն յղացեալ էին ծնանել զնա, այս ինքն յայտնել զնա:

Արդ մխիթարութիւն որ յառաջագոյն էր կարգեալ, ետ զնա մեզ արդեամբք յարութեան անդ իւրում, և 'ի ժողովել աշակերտացն իւրոց 'ի Կափառնաում քաղաք մխիթարութեան. և սուրբն որ արդեամբք էր, բանիւք միայն անուանի այսօր, և ընթերցուածն Եսայեայ ուսուցանէ. "Տես դու զհոգին որ էջ, և փրկութիւն որ քարոզեաց", և այլ ևս: Եւ քանզի պարտիքն մեր ապստամբեցին 'ի վերայ ամենայնի մեծութեան իւրեանց, յայնմիկ զի ոչ եղեն բաւական նոցա մարգարէքն և ոչ քահանայքն և ոչ արդարք և ոչ թագաւորք, նա իբրև եկն տեառնորդին՝ յամենայն տեղիս գերիչ ամենայնի է նա: Եւ ոչ հատոյց նա ըզպարտիսն մեր, և ոչ յորովայնի անդ և ոչ ծննդեամբն և ոչ մկրտութեամբն, մինչ զի 'ի խաչ մատնեցաւ և զմահ ճաշակեաց, զի մահն նորա եղիցի հատուցիչ պարտեացն մերոց. զի նովաւ հատուցան նոքա, այնոքիկ՝ որ ամենայն արարածք ոչ եղեն բաւական հատուցանել զնա:

Եւ քանզի առհաւատչեայ կենաց 'ի հնազանդեցելոց անտի մահու առ նա իւր, և 'ի բնութէ անտի յորոյ վերայ մահն թագաւորեաց՝ վերացաւ և նստոյց զնա ընդ աջմէ զպանտատանոցն ներքնոց: Եւ առաքեաց նոցա դարձեալ առհաւատչեայ ճշմարիտ 'ի բնութէ անտի իւրմէ Հոգի բարեխօս՝ առհաւատչեայ կենաց.

Եւ եթէ 'ի ծառայութենէ անտի մեղաց ազատեցաք մեք, ծառայքն ազատեցաք. այլ ոչ ազատքն ծառայք 'ի ձեռն ծառայիցն: Լուր դու զայս երկուս գործս սքանչելիս. ո՞վ բաժանեաց զլեզուս. Հայր: Մեղաւո՞րք էին նոքա որ շփոթեցանն՝ եթէ արդարք. մեղաւորք: Իսկ Հոգին որ առաքեցաւ՝ առ ո՞ եկն. առ առաքեալսն: Ո՞չ ահա արդարք էին նոքա. այո: Եւ զիա՞րդ Հայր մեղաւորացն բաժանեաց զլեզուս, և Հոգին՝ արդարոց և առաքելոց: Եթէ այդպէս է, մեծ և պատուական է գործն Նորա քան զՀօր: Վերացոյց ցան ընդ իւր զմարմինն մեր, զի եղիցի նա բարեխօս տոհմակցաց իւրոց, և զի նովաւ լիցին երևելի ներքինքս 'ի դուռն վերին արքային. նա և ինքն իսկ ծնութիւն մերովն խոնարհեցաւ էջ առ մեզ:

## ԳԼՈՒԽ ԻԲ

«ՐԱՑՑ դուք կայցէք մնացէք յԵրուսաղէմ մինչև ընկալջիք զաւետիսն Հօր իմոյ»: այն իսկ է Յովելայն՝ զի ասէ. «Մարգարէասցին որդիք ձեր և դստերք ձեր. արիւն և հուր»: արիւն վասն խաչելութեանն Նորա, և հուր՝ այն իսկ լեզուացն: Եւ զի մեկնեցան նոքա որբամուք իբրև մեռաւ տէրն մեր, հեթանոսք որ եկին 'ի տօն անդր, առաքեաց զճարտարապետսն իւր, զի հաստատեսցեն նոքա զհաւատսն՝ որ դղրդուեցան. և առաքեաց զսիւնս իւր հաստատունս, զի բարձեալ ունիցին նոքա 'ի վեր զխորհուրդս նոցա՝ որ նուաղեցան: Եւ տեսին նոքա յաշակերտսն անդ Նորա զայն զօրութիւն, որ թուեցաւ նոցա՝ թէ չիջաւ Նա հանդերձ մարմնովն 'ի վերայ խաչին: Եւ իբրև տեսին նոքա՝ եթէ կեցուցանէ զմեռեալս անուն սպանելոյն, մեծացաւ յաչս նոցա մահն Նորա քան զկեանս Նորա: Զի 'ի կեանս անդ իւր ինքն 'ի գլխովին իսկ կեցուցանէր. իսկ իբրև թուեցաւ եթէ մեռաւ Նա, սկսաւ անուն մեռելոյն գործել սքանչելիս ընդ մահ. զի ցուցցէ և յայտ արասցէ, զի եթէ իբրու մեռեալ էր՝ անուն Նորա հնազանդեաց զմահ, զիա՞րդ կարէր կալ մահ առաջի կենդանի զօրութեան Նորա:

[illegible] յանցանքն որ լինէին ազգի տանն Յուդայ [illegible] լինէին և ազգին արքայութեան Եփրեմի. ոչ [illegible] նոցա իբրև զայս։ Եւ յայտնիկ յայտ է՝ թէ ինչ [illegible] ծածկեալ գոյր յազգի տանն Յուդայ։ Արդ գի-տասջիր՝ եթէ այն որ ծածկեալն էր 'ի նմա, եթէ ան-գէն 'ի նմայն է և այսօր, և կայ նմա պատիւն որպէս և հանապազն։ Ապա եթէ պատիւն նորա ոչ ուրեք է, և այն յայտնի քաւութեան բարձաւ 'ի նմանէն։ Այն ինչ որ ծածկեալն էր 'ի նմա, և քանզի ծածկե-ցաւ նա 'ի հեթանոսս, գնաց զկնի նորա և պատիւն իւր։ Եւ ահա մարգարէքն հանապազօր մարգարէա-նային. յայտնիկ՝ զի հանապազօր ընթերցեալ լինէին և հաւատարիմք։ Եւ ահա նշանք հանապազօր գոր-ծին, զի առաջի նոցա հաւատովք նկարեալ էին ա-ռաջինք և միջինք, և պատարագք հանապազօր մա-տուցեալ լինէին իբրև այն առաջինք, և որպէս տանն Յովնադաբայ։

Բայց են ոմանք, որ զդրօշակաց ճշմարտութեան բուռն հարին և կախեցան։ Այլ վասն զօրութեան իւ-րոյ ոչ ետ նոցա թոյլ գլորել։ Մի խնդրեր դու զզօ-րութիւն բանից, որ կաղապարեն իցեն ճառք արտա-քուստ արտաքս։ Այլ հայեաց դու ընդ միտս նո-ցա՝ եթէ յոր վայր կատարին, և վասն որոյ պատ-ճեն. և մի ապաւինիր դու 'ի դարձուածս, այլ 'ի մե-ծութիւն առողջ հաւանութեանն։ Կտակարանքն՝ որ նորքս նկարեաց Հոգին զանգամն Քրիստոսի՝ ցու-ցանել յայտնել խորհրդովք զծածուկ ակներևարանս[1] նորա, նշանակեաց զմեծամեծս անուամբք, և պատ-մեաց զծածկեալս յայտնեաց. դրոշմեաց զժամա-նակս, և եցոյց զթիւս. կարգեաց զժամս, և եդ խորհուրդս յանուանս, և համճառ 'ի մեկնութիւն։ Խնամատութիւն առաջնոց արդեամբք երևեցաւ առաւել քան զանունսն. և զմեծութիւն մտաց լաւութեամբ ընտրեցին իւրեանց առաւել քան զկրթութիւն լեզուի։

Յամենայն իբրև յոյ երկիր. գիտասցես դու՝ եթէ լաւ է զարծել զլաւն, և խորհեաց դու՝ եթէ չար է խորհել զչարն. զի զամենայն ինչ զոր խոր-

1 Յայտնակերպն ակներևաբար։

Հիմ դու միանգամ, թէպէտ և ոչ գործիցես զնա, սակայն տպովք կնքեցաւ 'ի միտս քո չարութիւն. և նկարեցաւ 'ի քեզ պատկեր բարեաց: Մարդ բարիոք՝ միտք ա̃յ և իմաստութիւն խորհրդական, մարգարէ է նա կարօտելոց իւրոց: Որ թողու զճշմարտութիւն, և ապաւինի 'ի նմանութիւն նորա, ինքն իսկ ապաւէնն նորա մատնէ զնա 'ի մահ: Ստացուածս զոր ոչ կարես դու պահել զնոսա, մի խնդրեր դու զնոսա յա̃յ. զի պարգևք ա̃յ ոչ լինին բարձեալ: Զարթո զանձն քո, զի յիմաստութենէ անտի նորա զարժանն ծանիցես. և 'ի կամաց անտի նորա ոչ ինչ պատուիրանաւ լինելոց է: Որ ըստ մտի լինի չարաց, նա ինքնին չար քան զնոսա է: Բանք որ ոչ սուրբ են, ձայն են նոքա և հնչիւն: Շատխօսութիւն 'ի յանցանաց ոչ ապրի. բազմախօսութիւն նշան անխրատ է: ՅՊղատոն հարցանեն ընկերք իւր՝ աշակերտք Սոկրատու, եթէ ո՞ր 'ի բարութ̃եց ընտիր է: Ասէ ցնոսա. Նախ իմաստութ̃ի, զի այլ իրք յափշտակին, և ամենեցուն հակառակորդ գոյ, մեծութ̃է աղքատութ̃ի, սիրոյ մահ, փառաց թշնամութ̃ի, և զօրութ̃է հիւանդութ̃ի. իսկ մեծութիւն մտաց մշտնջենաւոր է, զմեծատունս սփոփէ 'ի ձգնութենէ մեծութ̃է, զաղքատս մխիթարէ 'ի ցանկութենէ կարօտութ̃է, զծերս հաստատէ, զտղայս խրատէ, զերիտասարդութ̃ի ցածուցանէ. սովոր իսկ է քանի անգամ ընդ նեղութիս 'ի վերայ լաստափայտի կալ. զի զօրութ̃ի է նա՝ որ յաղթէ ա̃մի:

Դիւրին էին նմա դժուարինք մեր, և մեկին է նմա անհնարինքն մեր. որպէս և ուսոյց զմեզ ինքն յինքենէ յառաջին գալստեան անդ իւրում, որ խոնարհութեամբ և լի շնորհօք էր. և ուսոյց մեզ՝ եթէ բազում են թիւ խնդրուածոց մերոց քան զմեզ. յայնմիկ զի զլսելիս իւր խոնարհեցուցանէ առ մեզ, և զպարգևսն իւր յիմանալ կամաց մերոց: Զի եցոյց մեզ՝ եթէ ոչ 'ի բազում բանիցն մերոց լինին նոքա տուեալ, այլ սիրով իշխեցուցանէ ամենայն զանձուց, 'ի ժամանակի իբրև զգաստացոյց զմեզ զպարգևն և փարխսացովքն՝ որք ընդ երկարելին զաղօթս, և ձկտեցուցանէին զագահութ̃իս: Այլ ուսոյց զմեզ ողորմածն լռութ̃ի վասն անձին իւրոյ, զի սոքա գրեալ են առ-

նմա ։ Արդարացոյց փոքր բանիւք զմաքսաւորն, և իջոյց զնա գովեստեամբ որդւոց բարձանց՝ խնդացողք ընդ ապաշխարողս. և ձայնն նորա աղաղակեաց Զակքէի, և եղև բարբառն նորա խախաց 'ի ներքս 'ի սիրտն նորա, և իջոյց զնա 'ի թզենւոյ անտի, և խորհրդիւ նորա 'ի գործոց անտի նորա. և եղև ձայնն նորա չափ և սահման մեղաց այնմիկ՝ որ անչափ անիրաւեցաւն ։ Եւ նա ինքն է՝ որ հրամայեաց զողորմութիւն իւր 'ի վերայ որդւոյն Տիմէի, իբրև ետես զկարօտութի՟ նորա. 'ի մէջ ստէպ ձայնիցն նորա հրեշտակք խօսունք օգնութեանց նորա ։ Որպէս և կինն մեղաւոր, զի եղև ինքն բժիշկ վիրացն իւրոց դեղովքն զոր էառ. և եկն առ այն՝ որ դիւրին էր նմա ամենայն, զի ամենայն իւիք խառնեացէ զթողութի՟ն նորա որ ողջացուցիչն է ամենայն ցաւոց ։

Սա է որ սիրէ զարդարս, և գթայ 'ի վերայ մեղաւորաց. սա է արդարացուցիչ բարեաց, և ջատագով ընդդէմ չարեաց ։ Վասն արդարոց փոխանակ ապաշխարողաց մարտեաւ. և իբրև տրտնջեցին համապազորդք գործով վասն դատարկացն հաւասարեալ վարձիւք և ոչ գործովք, զբանս նոցա որ ընդդէմ ողորմեցելոցն է՝ արար զնոսա ընդդէմ հատուցելոցն. յայնմիկ՝ զի թէպէտ և ոչ եղեն ողորմեալք, սակայն և ոչ զլացեալք եղեն ։ Փոխանակ փառաց նոցա եղև՝ զի ոչ ողորմեցաւ նոցա, զի մի զրկեացէ նա զտուրութի՟ն յիւրոյ անտի. զի եղեն երևեալք հատուցեալք տուրութեանն, յախոյանէ՝ որ ողորմեալք են շնորհաց ։ Որպէս և վայելէր իսկ որ ոչն պատուհասի, զի արասցէ առ տկարսն՝ ինչ որ առաւել իցէ քան զըստուգութիւնն ։ Այլ և վայելէր այնմիկ իսկ որ իմաստունն է, զի արասցէ՝ ինչ որ ոչ պարտաւի քան զողորմութի՟ն ։ Ապա եթէ պահանջեացէ և տպանեցէ, մի՛թէ բնութի՟ չարահամ՝ երևի նմա. քաւ լիցի ։ Կամ եթէ գթասցէ և ողորմեսցի, միթէ անիրաւութի՟ն յողդողդեաց զնա ։ Այլ ոչ յորժամ դատապարտէ զնա, 'ի մէջ ծփանաց ինչ կայ վասն ուխտի՝ եթէ թերևս ապաշխարէ այր, նա իբրև անգէտ ։ Եւ ոչ եթէ գթասցի և ողորմեսցի՝ 'ի մէջ ահի երկեւղի բնակեալ էին խորհուրդք նորա, եթէ դուցէ դառ-

նայ՝ իբրև անիմաստ։ Այլ իբրև կանխագիտութին նորա 'ի նմա է, և նոյն ինքն լինի անօթ սպասու պաշտաման բարերար կամացն նորա։ Եւ զստոյգն յորժամ դատի կամ ողորմի, ծագեալ է առաջի նորա կատարած երկոցունց, զի ոչ է ծածկեալ այս 'ի չափողէ անտի։ Աշխարհիս չարչարեալ ընդ մի մի 'ի մէնջ, այս ինքն մեք անձամբ, իսկ նա գիտութբ միայն. որպէս զի և մեք ընդ այն ոք՝ որ չարչարի ջերմամբ, մեք գիտութբն միայն չարչարիմք ընդ նմա։

Ըստ ողորմութեց քոց այն որ նոքօք բանայ դուռըն օգնութեց քոց, երևի մեզ այս։ Տէր մեր իբրու մաքառի մեզ ընդդէմ մեր։ Եթէ ընդ ամենայնի ընդ որ մարտիցէ զօրութբ քո, ընդ ամենայնում յաղթեսցէ կամօք քովք։ Եւ մեք անօթք եմք զլացողք. զի 'ի միջոյ հեստութեցն նոցա բոլորեսցի 'ի նոցանէն յաղթութի արարչին նոցա։ Իբրև առանց ուխտի երևելոյ այս ոչ է հնար, զի մի եղիցուք կապեալք ազատութբ՝ իբրու պիտոյ է նա մեզ, զի մի թօթափեսցուք մեք յարձակութի կամաց մերոց։ Այլ զի անկցի 'ի վերայ մեր մի սէր նորա հնազանդել առանց բռնութե, իբրու նեղէ վասն օգնութե մերոյ։ Իսկ որոց առանց բամբասանաց է իշխանութի նորա բաւական է 'ի թողութի յանցանաց մերոց վասն փառաց նորա. և նոքա ոչ եթէ վասն զի օգնեն մեզ՝ խօսիմք զնոսա, այն զի ոչ ամաչեմք իսկ՝ եթէ զօգտութի մեր 'ի գրոց անտի տեառն մերոյ խնդրեմք մեք։

Օ՜ինչ կարօտ ես դու զգանձ մեր տալ քեզ, բայց եթէ այսմ՝ զի ընդարձակեսցուք զգիրկս մեր առնուլ 'ի դեղոյ այտի քումմէ, իբրու տայցեմք քեզ զկամմն ունկնդիր լինելոյն մերով։ Զի ամենայն գործք քո զուարձացեալ են պսակօք իւրեանց, այնոքիկ՝ որ պսակեացն զնոսա իմաստուն բերանդ քո, յայնմիկ՝ զի ասացեր “Ահա բարի են յոյժ„։ Եւ զոր միանգամ օրհնեմք մեք զքեզ, և նոքօք պարտաւորիմք մեք։ Արգելեալ են գոհութիք մեր 'ի ներքոյ փոքրկութե քան զքոյն զկանուխն։ Եւ մի վասն ստուգութեդ քո դիցի սահման ողորմութեցդ քոց, և բովանդակեսցին ընդ նոսա շնորհքն քո, և փոքրկացիս դու ընդ մեզ մեծդ քան զմեզ՝ յորժամ եռա-

ցուցես զողորմութիւնդ քո վրէժխնդրութեանդ քո, և արգելցես զշնորհքդ քո յընթացից իւրոց 'ի կանխել կորստեան մերում: Զի ողորմութիւնքդ քո են անօթք փառաց քոց առ տկարութիւնս մեր. զի նոքա քարոզեսցեն մեզ վասն բարութեանցն մերոց առ 'ի քէն:

Արդ արժան է լռեցուցանել զմիանձնութիւն ստուգութեանդ քո 'ի յորդ ողորմութենէ այտի քոց: Եւ որպէս զի ոչ գիտացեր սկիզբն, և մի զկատարածն կոչեսցես, և յամենայն կողմանց տրտմութիւն սերմանեսցեն ծառայից քոց՝ հաստատեալք ողորմութեամբքդ քով, և զօրացեալք շնորհօքդ քով: Արդ մի զրկեր զքեզ 'ի տանէ քում. յորժամ ցրուեսցես զնա 'ի կորուստ, և անհամեսցին աղիւն մերով, այն՝ զոր ետուր մեզ զճաշակս առողջ ողորմութենցդ քոց. յայնմիկ՝ զի ասացեր, եթէ աշխարհ շնորհօք շինեսցի: Եւ կարճեսցես զողորմութիւնդ քո 'ի մէնջ՝ ջատագով օգնութեց մերոց: Զի կեանք Ադամայ եղեն քարոզ ողորմութեանցդ քոց, զի յարուցէ իւր ժառանգ կորուսանել զժառանգութիւն իւր: Եւ կամեցար դարձեալ միւսանգամ ապաշխարութեամբ ստանալ զնա յերկրորդում, զայն՝ որ երկոքումբք աւանիկ հնարի ապստամբել 'ի կերակրչութենէ այտի քումմէ. որ նա ինքն է հալածիչ կենաց նորա: Ընդ արքայութիւն քո և ողորմութեանդ քո արարեր զՀաբէլ աւանդ առաջին 'ի ներքս 'ի դժոխս, զի նեղեսցի հանել արձակել զնա 'ի միջոյ իւրմէ արդարութեամբ. զի 'ի պատճառս նորա բացցի դուռնն արգելչին ամենայնի, և ունայնասցին գիրկքն՝ որ 'ի վերայ ամենայնի լաւանայլին: Զի եթէ Ադամ էր անդ մտեալ զառաջինն, քանզի իւր էր նա, դառնայր նա կալ մնալ անդէն յաւիտեան ժամանակս: Որպէս արարեր դու ընտանեացն Նոյի վասն նորա, և դստերացն Ղովթայ վասն հօր իւրեանց, վայել էր իսկ՝ թէ և Հաբէլ եղիցի բուրուառ 'ի սկզբան ողորմութենցն՝ որ ելանէ քեզ և յարութեան անդ մեռելոց, քան թէ կացցէ Ադամ և գլխարկէ սուգ. սուգ զգեցեալ անդրանիկն դժոխոց, և գլուխն խաւարի:

Այսուհետև որչափ ինչ ուրախ եղեն ողորմութիւնքդ քո յայսմ վայրի, զի եղեն սանձք հակառակորդացն մերոց. նա և իբրև զղջացան խորհուրդք քո, այն զի

ոչ ինչ է մարթ նորա զղջանալ և ապաշաւել վասն կանուխ գիտութեան իւրեանց. զի յայտնի են նոցա ամենայն բովանդակութիւնք և ամենայն կատարած. և կանխագոյն է առ նոսա վախճան կատարածի իւրով քան սկիզբն 'ի լինել իւրում. Արդ վասն զի պատառեսցեն զդատակնիքն զոր հաստատեաց եդ ստուգութիւդ քո, զի դարձեալ միւսանգամ իբրև վարձուք մխիթարութեանդ քո տացի մեզ մնացորդ մնացութեան 'ի զաւակ, և 'ի խմոր մարդկութեան. Եւ արար բանալ դրաց շնորհացդ քոց, զի մտցեն խնդրեսցեն 'ի քէն փոխանակ ընդ մեր, յայնմիկ՝ զի լուան 'ի քէն զձայն դատախազութեան մերոյ. զի նա ինքն է պատճառք յարութեան մերոյ, յայնմիկ՝ զի ասացեր եթէ կնճիռն մարդոյ չար է հանապազօր. Զի նովաւ բացաւ բերան ստուգութեան 'ի ջնջել զմեզ. սակայն և նովաւ արձակեցաւ լեզուն շնորհացդ 'ի կեցուցանել զմեզ. Դատապարտեաց զմեզ այսուիկ ստուգութիւդ վասն ազատութեան մերոյ, և շրջեցան արդարացուցին զմեզ նովաւ շնորհքդ վասն բնութեանս մերում, յայնմիկ՝ զի յաւելեր անդ 'ի մանկութեանէ իւրմէ. Զի այն՝ որ կանխեաց յառաջագոյն ընտրեաց զբարեկամսն իւր, եցոյց մեզ՝ եթէ ոչ 'ի գնաց ժամուցն լինիմք մեք դատեալ առաջի նորա, այլ նկարեալ և կնքեալ և չափեալ գործովք իւրեանց.

Ամենայն որ միանգամ մտանէ յաշխարհ 'ի մեծ խորհուրդս նորա, իբրև որդի նորա զպատկերս մեր զգեցաւ վասն փառացն մերոց, որ նովաւ 'ի դատաստան մահու մատուցաք զքեզ. Թէպէտ և երևի խիստ ստուգութիւդ քո; սակայն ծնունդն գործոց մերոց աճէ մեզ վասն արկլին փոխարինին մերոյ 'ի վերայ նորա, և հատուցմամբն փոխարինին մերոյ առ 'ի նմանէն. Զի եթէ արձակեսցի ազատութիւնս մեր 'ի ձեռաց անտի չարին, անօթ է նա՝ զոր պատրաստեաց արարիչն. զի նովաւ ցուցցէ ազատութիւն զառաքինութիւնս իւր, նովաւ բազմանայ և յաճախէ զարդ յաղթութեաս մերոյ 'ի պատերազմի. Բովք են որ նեղութիւնքն երկանց իւրոց 'ի կազմութիւն լինի. ամենայն գեղովք ածցէ զմեզ, զի զարդ արքայութեան լինիցիմք. Յաճախեսցուք 'ի ճանաչել զայս իր, և յաճախեսցուք 'ի

կշտամբել յանդիմանել զանձն մեր, և զխորամանկ գիտութիւն մեր։

Ո՛վ ողորմութիւնք արձակեալք. և զեղումն ՚ի վերայ ամենայնի։ Առ ո՛ւմ մնացին, բայց եթէ ՚ի քեզ, Տէր մեր. զի ՚ի ձեռն մահու քո, գթած ամենայնի, կեանս յամենիսեան դիպեցուցեր. և սպանմամբդ քո բացեր զգանձս ողորմութեանց քոց։ Զի թէպէտ և սովորութեամբ Տէր Տէր մեր կարդամք, մի՛ զրկեր զանուն տէրութեանդ քո ՚ի բերանոց մերոց. այլ վկայութեամբ բերանոց մերոց աւելի կարես դու ունել զմեզ։ Դու ես ծածկեալ յամենի տեսլեամբ իւրով, նկարեալ յամենիսեան ՚ի պատճառս ամենայն խլրտմանց իւրոց։ Զի նկարեն զնա մեզ գործք նորա զարարիչն, և ուսուցանեն մեզ զնա արարածք նորա զհաստիչն. զի կարող իցես շօշափել զնա՝ զայն զծածկեալն քննութիւնք իւրովք, և զյայտնին պարգեւօք իւրովք։ Դժուարին է մատչել առ նա, և դիւրին է մերձենալ առ նա։

Քեզ երկրպագել յամենայնէ զսէր նորա առ սակաւ է։ Քեզ ձայն՝ որ ամենայն ինչ իբրու սակաւ են նմա, որոշէ զմեզ ՚ի միմեանց աներևոյթ պատկերօք, իբրու կապեալ են տակք արմատոց նոցա ՚ի մի պատկեր Ադամայ, զի մի՛ թարթափեսցին միտք մեր մեծութիւնք՝ ամենայն կարուցն։ Քեզ ածիչ մեր յաշխարհ, և իշխեցուցիչ մեր ամենայնի՝ որ ՚ի նմանէ, և հանիչ մեր ՚ի նմանէն ժամօք զոր ոչ կարծիցեմք։ Քեզ որ ետուր բան ՚ի բերանս մեր. և արարեր զմեզ ջատագով խնդրուածոցն մերոց։ Քեզ կարդայ Ադամ ՚ի խաղաղութեան իւրում և զաւակք նորա, իբրու արգելեալ և փակեալ են ամենեքին ՚ի ներքոյ շնորհացդ քոց։ Զքեզ օրհնեն հողմք ՚ի գնացուցանելն իւրեանց զջուրս։ Զքեզ փառաւորէ երկիր բացեալ արգանդաւ իւրով, և փութայ տալ զպտուղ ՚ի ժամու իւրում։ Զքեզ օրհնեն ծով ալեօք իւրեանց իբրև բերանովք, իբրու լինին ձայնք նոցա քարոզ տէրութեանդ քում՝ որ է ՚ի վերայ նոցա։ Զքեզ փառաւորեն ծառք, իբրու բռնադատին ՚ի շնչելոց հողմոցն, զի ունկնդիր լիցին յղութեան և ծննդեան։ Զքեզ օրհնեն բոյս որոշմամբք իւրովք,

և ծաղիկք գունովք իւրեանց՝ 'ի դիւել իւրեանց զառատութին անձրևաց քոց հանդերձ առնլովն զցօղն։ Ժողովեցին և մերձեցուցին զբերանս իւրեանց առ միմեանս, իբրու բանադատին առ 'ի միմեանց. և 'ի ձեռն ամենեցունց, իբրու սակաւ իցեն խաղալեացդ քոց, զօդեցին յամենեցունց օրհնութիդ քո'ի սատարել իւրեանց 'ի նմա իբրև ճարտարապետք ամենեքին 'ի գոհութե այդր քում։ Այսուհետև և մեր այս է, զի լի կամօք մերովք առ քեզ ձկտեսցուք. և քո այս է, զի սակաւիկ մի 'ի քէն ամենայնէ առ մեզ խոնարհեսցիս։ Զի եղիցի մեզ հոգիդ քո ճշմարտութի 'ի քէն. զի նովաւ կալցի և եղցէ տկարութիս մեր, այն՝ որ առանց պարգևացդ քոց առ քեզ տէրդ պարգևաց մերոց հասանել ոչ կարէ։

Իսկ քանզի պատրանօք գայլոյն յանապատի թողեալ եղեաք արտաքոյ խաղաղութե ցպոյն գթած հովուին մերոյ, այլ յանդիմանեցաւ հանգիստն մեր ապաշաւելոց ոգոցն՝ որ փորձեացն զնա։ Ոչ է նա հանգիստ ճշմարիտ, այլ բիծ է նա հանգստեան. կողոպտէ զօգիս 'ի ծածուկ, յողդողդէ զմարմինն յայտնի, հարկանէ 'ի ծածուկ՝ զի ոգին զղջասցի և մարմինն սղտորեսցի. և որչափ ուրախ եղև նա 'ի ծածուկ, տրտմեցաւ յայտնի 'ի փութալ պահել զհանգիստն սպանող։ Զի ապականեաց զնա զղջումն ոգոցն կենարարն, այն՝ որ եմուտ զկնի նորա 'ի կատարած մտաց. զի արբ զնա ծարաւով, և փափագեցոյց զնա արբենալով, և փոխեաց զնա խրատելով։ Այս է դեղ կենաց, զի արար զմարմին իւր ստին անմեղութես մերոյ, և զարիւն իւր աղբիւր հալածիչ արբուցանելովն իւրով ծարաւութես մերում. և եղև նա ամենայն ամենայնիւ մեզ սեղան ամենայն բարութեց։

Ոի թէպէտ և օրհնութիւնքս մեր քեզ սակաւ իցեն, սակայն զմեզ աճեցուցանեն գալ հասանել նոքօք 'ի բանակետղդ պարգևաց քոց։ Թէպէտ և գոհութիւնքս մեր 'ի վերայ մեծութեցդ քոց քեզ ինչ ոչ յաւելուն, սակայն զտկարութիս մեր մոռացուցանել զբաղմամբ իւրեանց նկարեն։ Թէպէտ և աղօթքս մեր տկար ձայնիւք են, սակայն յորդ և բուռն զօրութեմբ են. մեզ լինին հանիչք առ քեզ, և քեզ

և անձին իւրում ոչ կարաց կեալ. կորոյս զանձն իւր ։ Եւ զի բարձցէ զայս կարծիս գնել մտացն 'ի միջոյ անտի, կանխեաց յառաջագոյն յարեաւ նա քան զուխտըն եդեալ ։ Բայց դարձեալ եթէ աշակերտքն, ասեն, Թերեւցա՞ն ։ Զի թէ այն՝ որ գլուխն էր նոցա Շմաւոն, երդուաւ և ուրացաւ 'ի նմանէն, ո՞րչափ ևս որ զկնի նորա էին. և վասն այսորիկ կանխեաց յառաջագոյն հաստատեաց զտկարացեալ խորհուրդս նոցա, զի մի՛ յողդողդեսցին ։ Զի և ոչ նոքա որ որդիքն էին աջուն, ասեն, համապազօրդ յուսացեալ էին՝ եթէ արդարեւ ելանէ նա 'ի դժոխոց ։ Եւ քանզի մինչև ցայս ժամ ոչ էր ուրուք գործել զայս, վասն այնորիկ ձեպեցաւ իմաստութին վասն մխիթարութե նոցա ։ Կամ յօրէ անտի յայնմանէ յորում 'ի խաչն ել, համդերձ աւուրքն յորում յարեաւն 'ի նմա, համարեալ լինին նորա երեք աւուրք իջանելոյն և ելանելոյն ։ Կամ այն իսկ է, յօրէ անտի յորում եա նոցա զմարմինն և զարիւնն իւր՝ կատարեցան երեք աւուրք ։

Իսկ զի եթող նա զհանդերձն պատանաց իւրոց 'ի գերեզմանին անդէն, զի մտցէ Ադամ 'ի դրախտն անդ առանց հանդերձի, որպէս և էր իսկ յառաջ մինչ չև մեղուցեալ էր. փոխանակ զի զգեցաւ նա յելանել անդ իւրում, մերկասցի 'ի մտանել անդ իւրում ։ Կամ վասն այնորիկ եթող զնոսա անդէն, զի նկարեսցէ զխորհուրդ յարութեան մեռելոց. զի զոր օրինակ ինքն փառօք իւրովք յարեաւ և ոչ հանդերձիւ, սոյնպէս և մեք գործովք մերովք ։

Եւ զի հաւանեցուցին նոքա արծաթով եթէ աշակերտքն նորա գողացան զնա մինչ մեք 'ի քունն էաք, իմաստնացոյց զնոսա ձայնիւն իւրով, զի զմեռեալսն 'ի ներքոյ դժոխոց եհան ։ Եւ դարձեալ զի ոչ էր նա կարօտ գողովքն՝ եթէ վկայք եղիցին յարութեն նորա ։ Այն՝ որ կեցոյց զմեռեալս, և դարձոյց զշունչ, կարող էր զգերեզմանն բանալ, և զվէմն թաւալեցուցանել. և յառնել անդ իւրում դարձեալ հորդեաց ճանապարհ առաջի իւր ։ Արդարքն որ նմանող եղեն յիստակ մանկտոյն, երկինք ծածկեցին զլոյս իւրեանց, և օդք ներկան խաւարաւ, եր-

կիր պատառեաց զվէմս իւր, հոգին պատառեաց ըզվարագոյրն, դժոխք արձակեցին զմեռեալսն իւրեանց ։

Եթէ վասն մեղաց մեռաւ Ադամ, այն՝ որ եբարձ զմեղսն՝ պարտ էր և զմահն բառնալ։ Այլ որպէս Ադամայն ասացաւ, եթէ "Յորում աւուր ուտիցես, մահու մեռցիս", և յաւուր յորում եկեր՝ ոչ մեռաւ, բայց զառհաւատչեայն մահու ընկալաւ նա մերկութեամբն իւրով 'ի փառաց անտի, և հանապազօր հոգայր վասն մահուն, յայսմ օրինակի և, զկեանսն որ Քրիստոսին կերաք մեք զմարմին նորա փոխանակ պտղոյ ծառոյն, և եղև մեզ սեղան նորա փոխանակ դրախտին փափկութեան, և լուացան անէծքն արեամբ նորա արդարով, և յուսոյն յարութեան հանդերձեալ յուսոյն ակն ունիմք, և արդէն իսկ նորա կենօք շրջիմք մեք, զի առհաւատչեայ նոքա եղեն մեզ ։

Եւ զի ցուցցէ դարձեալ, եթէ թշնամեաց նորա չիք նոցա իշխանութիւն բուռն հարկանել զնմանէն, իսկ բարեկամաց նորա գոյ իշխանութիւն այլով իւիք մերձենալ առ նա՝ սիրով և երկեղիւ, իբրու չարչարիցեն զնա յայնմիկ՝ զի ուտեն զնա, զխորհուրդ մարմնոյն այնորիկ, ուսուցէ զնոսա և նա զկերօղսն իւր, զի չարչարեսցեն ընդ նմա զմարմինս իւրեանց ։ Եթէ զոր օրինակ ուրախ արար նա զնոսա չարչարանօքն իւրովք, նոյնպէս ուրախ արասցեն զնա և նոքա չարչարանօքն իւրեանց ։ Դարձեալ ասեն, եթէ քանզի ոչ էր առեալ Մարիամու զխորհուրդ մարմնոյն և արեան նորա, զի տացէ օրինակ՝ եթէ ոչ միայն թշնամիքն նորա ոչ մերձեցին 'ի խորհուրդն նորա, որպէս և Սկարիովտայն, այլ և ոչ 'ի բարեկամաց անտի նորա՝ որք ոչն իցեն դրոշմեալ իբրև զՄարիամ ։ Բայց դարձեալ քանզի ձգել ձեռինն Եւայի հնազանդեցոյց զմարմինն զայն 'ի ներքոյ մահու, և պսակեաց զնա ամենայն չարչարանօք, ոչ ետ Մարիամայ մերձենալ 'ի նա. այլ պահեաց զնա բազկին այնմիկ՝ զոր նստոյց ընդ աջմէ իւրմէ, և ձեռինն՝ զոր պսակեաց զնա ամենայն երանութեամբ յետ վերանալոյն իւրոյ ։

Բայց դարձեալ քանզի երկմտեցաւ Մարիամ վասն նորա, զի լուաւ նա՝ թէ յարեաւ նա, և եկն և եստես զնա և ասէ. "Եթէ դու բարձեր, ասէ, զնա".

զի ցուցցէ նմա՝ թէ ճշմարիտ յարեաւ նա, ասէ. «Եւ առ հայր իմ ելանեմ ես»։ Ոչ եթէ մինչ ելանէ առ հայր, ոչ մերձենայ 'ի նա. այլ զի երկմտեցաւ, մինչև ելանեմ ես, ասէ, առ հայր իմ, ոչ մերձենաս յիս. այն իսկ է զի ասէ. «Եւ քո ինքն ընդ անձն 'ի գլխովին անցցէ սուր». այս ինքն ուրացումն։ Եւ եթէ զի երկմտեցաւ նա վասն յարութեան նորա, արգել զնա զի մի մերձեսցի 'ի նա, ահա Թովմաս երկմտեցաւ վասն նորա, և մերձեցաւ 'ի նա։ Այլ զայս ասասցուք, եթէ զոր օրինակ մարգարէացաւ նա վասն չարչարանաց իւրոց յառաջ քան զչարչարանս իւր, և վասն յարութեան իւրոյ յառաջ քան զյարութիւն իւր, սոյնպէս և յայսմ վայրի կամեցաւ մարգարէանալ վասն վերանալոյն իւրոյ։ Արդ այնուիկ զի ասէ «Մի մերձենար յիս», ամանալով ամաց լից զնա նոր քարոզութիւն վերանալոյն իւրոյ։ «Երթ, ասէ, ասա եղբարց իմոց՝ եթէ ելանեմ ես առ հայր իմ և առ հայր ձեր, և առ Աստուած իմ և առ Աստուած ձեր»։ «Մի, ասէ, մերձենար յիս, զի չև ևս եմ ելեալ առ հայր իմ»։ Եւ ահա զկղէոպեանսն օրհնեաց, և ընդ աշակերտսն եկեր; և Թովմայի զկողմն իւր եցոյց, արդ ընդէ՞ր արգել զՄարիամ զի մի մերձեսցի 'ի նա. թերևս վասն զի յանձն արար զնա Յովհաննու յիւրում տեղւոջ, «Կին դու, ասէ, ահա որդի քո». սակայն ոչ նշանն առաջին առանց նորա, և ոչ սկիզբն դժոխոց առանց նորա։ Թէպէտ և ոչ մերձեցաւ 'ի նա, սակայն հաստատեցաւ։

Իսկ զի ասէ. «Չև ևս եմ ելեալ առ հայր իմ», թուի եթէ ընդդէմ խորհրդոցն Մարիամայ ետ նմա զպատասխանին։ Ուսոյց զնա՝ որպէս և զառաքեալսն՝ եթէ հանդերձեալ է նա վերանալ ընդ երկինս, և գալ մարմնով 'ի վախճան կատարածի, և տալ նմա զպարգևսն զոր խոստացաւ նմա. և զի յանկարծակի ծանեաւն զնա, վարեցան միտք նորա առ վերջին գալուստն, և թուեցաւ նմա թէ եկն եհաս արքայութիւն երկնից. վասն այսորիկ ասաց՝ թէ «Չև ևս եմ ելեալ առ հայր իմ»։ Եւ միւս ևս՝ զի ծնունդ է նա նոր, և գլխաւոր 'ի դժոխոց. այն՝ որ նուաճաւ կործանէին ազգք և դարք և տոհմք. զի յայսմիկ յայտ արասցէ՝

եթէ 'ի յարութեան անդ ոչ ոք դառնայ, ոչ հարք յորդիս, և ոչ որդիք 'ի հարս իւրեանց. այլ դառնան ամենեքին յայս, զի արժանի եղիցին ողորմութեան վերանալ ելանել առ հայր:

Իսկ զի ասէ. «Ելանեմ ես առ հայր իմ և առ հայր ձեր, առ ա՟ծ իմ և առ ա՟ծ ձեր»: Եւ եթէ որպէս գրեալն լսի, և հայր՝ եթէ այդպէս է՝ յերկինս էր, և ոչ յերկրի. և եթէ էր և նա յերկրի, զիա՞րդ երթայր որդի առ նա յերկինս: Եւ եթէ ոչ էր որդի յերկինս, և ոչ հայր յերկրի, ասէ, է. «Եւ ես առ քեզ գամ, հայր իմ». և ոչ ասաց ա՟ծ իմ: Իբրև խօսեցաւ ընդ նմա, կոչեաց զնա հայր. զի յայտ արասցէ՝ եթէ 'ի նմանէ է նա: Եւ իբրև առաքեաց առ աշակերտսն իւր՝ եթէ «Ելանեմ ես», կոչեաց զնա ա՟ծ իմ. զի ցուցէ զթերութիւն իւր որ ընդ նոսա է: Եւ դարձեալ ասէ. «Ոչ եմ ես միայն, զի հայր իմ ընդ իս է». և «Ես 'ի հայր, և հայր յիս. և մի եմք»: «Ելանեմ ես առ հայր իմ և առ հայր ձեր, և առ ա՟ծ իմ և առ ա՟ծ ձեր». և ոչ ասաց՝ եթէ առ հայր մեր և առ ա՟ծ մեր, այլ առ հայր իմ և ապա առ հայր ձեր, և առ ա՟ծ իմ և ապա առ ա՟ծ ձեր: Եթէ հաւասարապէս ասացեալ էր զպատգամսն, թերևս դոյր տեղի բանի նոցա: Հայր իմ և հայր ձեր, և ա՟ծ իմ և ա՟ծ ձեր՝ երկոքեան սոքա վասն մարդկութեան նորա ասացան. վասն մարմնոյն ասաց զերթալն, և ոչ վասն Բանին ա՟յ, իբրև զայն, «Առ հայր ձեր». իբրու մարդիկ են նոքա: Սոյնպէս և վասն մարդկութեան նորա ասացաւ, իբրու զայն դարձեալ՝ զի ասէ. «Հայր մեր որ 'ի յերկինս է»:

Իսկ Շմաւոնի զի ասացաւ նմա՝ եթէ «Եկ զկնի իմ», վասն մահու ասաց նմա: Դարձաւ նա և հայեցաւ և տես նա զաշակերտն զայն, եդ և ասէ ցնա. «Եւ ասաց տէր». զի ասէ ցնա. «Քեզ զի՞ փոյթ է». զի՞նչ չարուստ ասաց: Այլ իմքն Շմաւոն զի հաւանեցուցէ տէր մեր զայն՝ զի և նա եկեսցէ՝ ասէր: Արդ ուսոյց տէր մեր հարցուածոյն Շմաւոնի՝ եթէ իշխանութիւն ունի նա, որպէս և հայրն իւր, 'ի վերայ մահու՝ ասէ. «Եթէ կամիմ». այլ ոչ կամեցաւ՝ զի պսակեսցին նոքա առաքինութեամբ մահուն նորա:

Եւ զի ետ տէր մեր ձէթ աշակերտացն, խորհուրդ զանուան իւրոյ. և զի ընդ ամենայնի ամենայն եղև. իբրև ինքն տիւ է, և ետ լոյս ճրագաց, և հալածեաց զխաւար և զգործս իւր: Իսկ սուգ և մխիթարութիւն անուանք իւրեանց ընթանան յաշխարհի, և 'ի վերայ ամենայն մարդոյ հասանեն անդադար: Եւ ոչ էին հաւասար յառաջ քան զգալուստ տեառն մերոյ արդեամբք, որպէս և անուամբ: Իսկ սուգ արդեամբք էր. որպէս զի և այժմ վասն որոշելոյ այնորիկ՝ որ վախճանեցաւ: Իսկ մխիթարութիւն անուամբն միայն էր իբրև մարգարէութեամբ: Եւ զայս անուանս տէր մեր ընկալաւ 'ի վերայ իւր արդեամբքն. զի ընդ ամենայն արարածս նորա բաժանեցան անգամք նորա, և նկարեցան առակք օրինակաց նորա. և ամենայն յղացեալ էին ծնանել զնա, այս ինքն յայտնել զնա:

Արդ մխիթարութիւն որ յառաջագոյն էր կարգեալ, ետ զնա մեզ արդեամբք յարութեան անդ իւրում, և 'ի ժողովել աշակերտացն իւրոց 'ի Կափառնաում քաղաք մխիթարութեան. և սուգն որ արդեամբք էր, բանիւք միայն անուանի այսօր, և ընթերցուածն Եսայեայ ուսուցանէ. "Տես դու զհոգին որ էջ, և փրկութիւն որ քարոզեաց", և այլ ևս: Եւ քանզի պարտիքն մեր ապստամբեցին 'ի վերայ ամենայնի մեծութեան իւրեանց, յայնմիկ զի ոչ եղեն բաւական նոցա մարգարէքն և ոչ քահանայքն և ոչ արդարք և ոչ թագաւորք, նա՝ իբրև եկն տեառնորդին՝ յամենայն տեղիս գերիչ ամենայնի է նա: Եւ ոչ հատոյց նա ըզպարտիսն մեր, և ոչ յորովայնի անդ և ոչ ծննդեամբն և ոչ մկրտութեամբն, մինչ զի 'ի խաչ մատնեցաւ և զմահ ճաշակեաց, զի մահն նորա եղիցի հատուցիչ պարտեացն մերոց. զի նովաւ հատուցան նոքա, այնոքիկ՝ որ ամենայն արարածք ոչ եղեն բաւական հատուցանել զնա:

Եւ քանզի առհաւատչեայ կենաց 'ի հնազանդեցելոց անտի մահու առ նա իւր, և 'ի բնութէ անտի յորոյ վերայ մահն թագաւորեաց՝ վերացաւ և նստոյց զնա ընդ աջմէ զպանտանոգն ներքնոց: Եւ առաքեաց նոցա դարձեալ առհաւատչեայ ճշմարիտ 'ի բնութէ անտի իւրմէ Հոգի բարեխօս՝ առհաւատչեայ կենաց.

Եւ եթէ 'ի ծառայութենէ անտի մեղաց ազատեցաք
մեք, ծառայքն ազատեցաք. այլ ոչ ազատին ծառայք
'ի ձեռն ծառայից։ Լուր դու զայս երկուս գործս
սքանչելիս. ո՞վ բաժանեաց զլեզուս. Հայր։ Մեղաւո՞րք
էին նոքա որ շփոթեցանն՝ եթէ արդարք. մեղաւորք։
Իսկ Հոգին որ առաքեցաւ՝ առ ո՞ եկն. առ առա-
քեալսն։ Ո՞չ ահա արդարք էին նոքա. այո։ Եւ զի՞րդ
Հայր մեղաւորացն բաժանեաց զլեզուս, եւ Հոգին՝
արդարոց եւ առաքելոց։ Եթէ այդպէս է, մեծ եւ
պատուական է գործն նորա քան զՀօր։ Վերացոյց
հան ընդ իւր զմարմինն մեր, զի եղիցի նա բարեխօս
տոհմակցաց իւրոց, եւ զի նովաւ լիցին երեւելի ներ-
քինքս 'ի դուռն վերին արքային. Նա եւ ինքն իսկ ծնու-
թեան մերումն խոնարհեցաւ էջ առ մեզ։

## ԳԼՈՒԽ ԻԲ

«ԲԱՅՑ դուք կացէք մնացէք յԵրուսաղէմ մինչեւ
ընկալջիք զաւետիսն Հօր իմոյ». այն իսկ է Յովելայն՝
զի ասէ. «Մարգարէասցին որդիք ձեր եւ դստերք ձեր.
արիւն եւ հուր». արիւն վասն խաչելութեան նորա, եւ
հուր՝ այն իսկ լեզուացն։ Եւ զի մեկնեցան նոքա տրտ-
մուք իբրեւ մեռաւ տէրն մեր, հեթանոսք որ եկինն 'ի
տօն անդր, առաքեաց զճարտարապետսն իւր, զի հաս-
տատեսցեն նոքա զհաւատսն՝ որ դրդուեցան. եւ առա-
քեաց զսիւնս իւր հաստատունս, զի բարձեալ ունիցին
նոքա 'ի վեր զխորհուրդս նոցա՝ որ. նուաղեցան։ Եւ
տեսին նոքա յաշակերտսն անդ նորա զայն զօրութիւն,
որ թուեցաւ նոցա՝ թէ չէջաւ նա հանդերձ մարմնովն
'ի վերայ խաչին։ Եւ իբրեւ տեսին նոքա՝ եթէ կեցու-
ցանէ զմեռեալս անուն սպանելոյն, մեծացաւ յաչս
նոցա մահն նորա քան զկեանս նորա։ Զի 'ի կեանս
անդ իւր ինքն 'ի գլխովին իսկ կեցուցանէր. իսկ իբրեւ
թուեցաւ եթէ մեռաւ նա, սկսաւ անուն մեռելոյն գոր-
ծել սքանչելիս ընդ մահ. զի ցուցցէ եւ յայտ արաս-
ցէ, զի եթէ իբրու մեռեալ էր՝ անուն նորա հնազան-
դեաց զմահ, զիա՞րդ կարէր կալ մահ առաջի կենդա-
նի զօրութեան նորա։

Մենայն յանցանք որ լինէին ազգի տանն Յուդայ անցեալ լինէին և ազգին արքայութեան Եփրեմի. ոչ գոյր նոցա իբրև զայս։ Եւ յայսմիկ յայտ է՝ թէ ինչ մի ծածկեալ գոյր յազգի տանն Յուդայ։ Արդ գիտասցէ՝ եթէ այն որ ծածկեալն էր 'ի նմա, եթէ անդէն 'ի նմայն է և այսօր, և կայ նմա պատիւն որպէս և հանապազն։ Ապա եթէ պատիւն նորա ոչ ուրեք է, և այն յայտնի քաւութիւն բարձաւ 'ի նմանէն։ Այն ինչ որ ծածկեալն էր 'ի նմա, և քանզի ծածկեցաւ նա 'ի հեթանոսս, գնաց զկնի նորա և պատիւն իւր։ Եւ ահա մարգարէքն հանապազօր մարգարէանային. յայսմիկ՝ զի հանապազօր ընթերցեալ լինէին և հաւատարիմք։ Եւ ահա նշանք հանապազօր գործին, զի առաջի նոցա հաւատովք նկարեալ էին առաջինք և միջինք, և պատարագք հանապազօր մատուցեալ լինէին իբրև այն առաջինք, և որպէս տունն Յովնադաբայ։

Բայց են ոմանք, որ զդրօշակաց ճշմարտութեան բունն հարին և կախեցան։ Այլ վասն պղծութեան իւրոյ ոչ ետ նոցա թոյլ գլորել։ Մի խնդրեր դու զզօրութիւն բանից, որ կաղագոյնք իցեն ճառք արտաքուստ արտաքս։ Այլ հայեաց դու ընդ միտս նոցա՝ եթէ յոր վայր կատարին, և վասն որոյ պատմեն. և մի տպաւորիր դու 'ի դարձուածս, այլ 'ի մեծութիւն առողջ հաւանութեանն։ Կտակարանքն՝ որ նորքօք նկարեաց հոգին զանգամսն Քրիստոսի՝ ցուցանել յայտնել խորհրդովք զծածուկ զկերպարանս[1] նորա, նշանակեաց զմեծամեծս անուամբք, և պատմեաց զծածկեալս յայտնեօք. դրօշմեաց զժամանակս, և եցոյց զթիւս. կարգեաց զժամս, և եդ խորհուրդս յանուանս, և հանճար 'ի մեկնութիւն։ Իմաստութիւն առաջնոց արդեամբք երևեցաւ առաւել քան զբանիւք. և զմեծութիւն մտաց լռութեամբ ընտրեցին իւրեանց առաւել քան զկրթութիւն լեզուի։

Յամօթոյ իբրև յայս երկիր. գիտասցես դու՝ եթէ լաւ է գործել զլաւն, և խորհեաց դու՝ եթէ չար է խորհել զչարն. զի զամենայն ինչ զոր խոր-

1 Յօրինակին պկերպարանս։

Հէր դու միանգամ, թէպէտ և ոչ գործիցես զնա, սակայն տպովք կնքեցաւ ՚ի միտս քո չարութիւն. և նկարեցաւ ՚ի քեզ պատկեր բարեաց։ Մարդ բարիոք՝ միտք ա̃յ և իմաստութի̃ խորհրդական, մարգարէ է նա կարօտելոց խրոց։ Որ թողու զճշմարտութի̃, և ապաւինի ՚ի նմանութի̃ նորա, ինքն իսկ ապաւէնն նորա մատնէ զնա ՚ի մահ։ Ստացուածս զոր ոչ կարես դու պահել զնոսա, մի խնդրեր դու զնոսա յա̃յ. զի պարգևք ա̃յ ոչ լինին բարձեալ։ Զարթո զանձն քո, զի յիմաստութենէ անտի նորա զարժանն ծանիցես. և ՚ի կամաց անտի նորա ոչ ինչ պատուիրանաւ լինելոց է։ Որ ըստ մտի լինի չարաց, նա ինքնին չար քան զնոսա է։ Բանք որ ոչ սուրբ են, ձայն են նոքա և հնչիւն։ Շատխօսութի̃ ՚ի յանցանաց ոչ ապրի. բազմախօսութիւն նշան անխրատ է։ ՑՊղատոն հարցանէին ընկերք իւր՝ աշակերտք Սոկրատայ, եթէ ո՞ր ՚ի բարութեանց ընտիր է։ Ասէ ցնոսա. Նախ իմաստութի̃, զի այլ իրք յափշտակին, և ամենեցուն հակառակորդ գոյ, մեծութե̃ աղքատութի̃, սիրոյ մահ, փառաց թշնամութի̃, և զօրութե̃ հիւանդութի̃. իսկ մեծութիւն մնաց մշտնջենաւոր է, զմեծատունս սփոփէ ՚ի ձգնութենէ մեծութե̃, զաղքատս մխիթարէ ՚ի ցանկութենէ կարօտութե̃, զծերս հաստատէ, զտղայս խրատէ, զերիտասարդութի̃ ցածուցանէ. սովոր իսկ է քանի անգամ ընդ նեղութիս ՚ի վերայ լաստափայտի կալ. զի զօրութի̃ է նա՝ որ յաղթէ ա̃մի։

Դիւրին էին նմա դժուարինք մեր, և մեկին է նմա անհնարինքն մեր. որպէս և ուստի զմեզ ինքն յինքենէ յառաջին գալստեան անդ իւրում, որ խոնարհութեամբ և լի շնորհօք էր. և ուստի մեզ՝ եթէ բազում են թիւ խնդրուածոց մերոց քան զմեզ, յայնմիկ զի զլսելիս իւր խոնարհեցուցանէ առ մեզ, և զպարգևսն իւր յիմանալ կամաց մերոց։ Զի եցոյց մեզ՝ եթէ ոչ ՚ի բազում բանիցն մերոց լինին նոքա տուեալ, այլ սիրով իշխեցուցանէ ամենայն գանձուց, ՚ի ժամանակի իբրև զգաստացոյց զմեզ դպրօքն և փարիսացովքն՝ որք ընդերկարէին զաղօթս, և ձկտեցուցանէին զագահութիւ։ Այլ ուստի զմեզ ողորմածն լռութե̃ վասն անձին իւրոյ, զի սոքա դրեալ են առ-

նմա։ Արդարացոյց փոքր բանիւք զմաքսաւորն, և իջոյց զնա գովեստեամբ որդւոց բարձանց՝ խնդացողք ընդ ապաշխարողս. և ձայնն նորա աղաղակեաց Զակքէի, և եղև բարբառն նորա խախաց 'ի ներքս 'ի սիրտն նորա, և իջոյց զնա 'ի թզենւոյ անտի, և խորհրդիւ նորա 'ի գործոց անտի նորա. և եղև ձայնն նորա չափ և սահման մեղաց այնմիկ՝ որ անչափ անիրաւեցաւն։ Եւ նա ինքն է՝ որ հրամայեաց զողորմութիւն իւր 'ի վերայ որդւոյն Տիմէի, իբրև ետես զկարօտութի՟ նորա. 'ի մէջ ստէպ ձայնիցն նորա հրեշտակք խօսունք օգնութեանց նորա։ Որպէս և կինն մեղաւոր, զի եղև ինքն բժիշկ վիրացն իւրոց դեղովքն զոր եառ. և եկն առ այն՝ որ դիւրին էր նմա ամենայն, զի ամենայն իւիք խառնեսցէ զթողութի՟ն նորա որ ողջացուցիչն է ամենայն ցաւոց։

Սա է որ սիրէ զարդարս, և գթայ 'ի վերայ մեղաւորաց. սա է արդարացուցիչ բարեաց, և ջատագով ընդդէմ չարեաց։ Վասն արդարոց փոխանակ ապաշխարողաց մարտեաւ. և իբրև տրտնջեցին համապազորդք գործոց վասն դատարկացն հաւասարեալ վարձիւք և ոչ գործովք, զբանս նոցա որ ընդդէմ ողորմեցելոցն է՝ արար զնոսա ընդդէմ հատուցելոցն. յայնմիկ՝ զի թէպէտ և ոչ եղեն ողորմեալք, սակայն և ոչ զլացեալք եղեն։ Փոխանակ փառաց նոցա եղև՝ զի ոչ ողորմեցաւ նոցա, զի մի զրկեսցէ նա զստուգութի՟ն յիրայ անտի. զի եղեն երևեալք հատուցեալք ստուգութեանն, յայտնեցանէ՝ որ ողորմեալք են շնորհաց։ Որպէս և վայելէր իսկ որ ոչն պատուհասի, զի արասցէ առ տկարսն՝ ինչ որ առաւել իցէ քան զըստուգութիւնն։ Այլ և վայելէր այնմիկ իսկ որ իմաստունն է, զի արասցէ՝ ինչ որ ոչ պարսաւի քան զողորմութի՟ն։ Ապա եթէ պահանջեսցէ և սպանցէ, միթէ բնութի՟ չարահամ՝ երևի նմա. քաւ լիցի։ Կամ եթէ գթասցէ և ողորմեսցի, միթէ անիրաւութի՟ն յողդողդեաց զնա։ Այլ ոչ յորժամ դատապարտէ զնա, 'ի մէջ ծփմանց ինչ կայ վասն ուխտի՝ եթէ թերևս ապաշխարէ այր, նա իբրև անգէտ։ Եւ ոչ եթէ գթասցի և ողորմեսցի՝ 'ի մէջ ահի երկեւղի բնակեալ էին խորհուրդք նորա, եթէ գուցէ դառ-

նայ՝ իբրև անիմաստ ։ Այլ իբրև կանխագիտութիւն նորա 'ի նմա է, և նոյն ինքն լինի անօթ սպասու պաշտաման բարերար կամացն նորա ։ Եւ զատոյգն յորժամ դատի կամ ողորմի, ծագեալ է առաջի նորա կատարած երկոցունց, զի ոչ է ծածկեալ այս 'ի չափողէ անտի ։ Աշխարհիս չարչարեալ ընդ միմի 'ի մէնջ, այս ինքն մեք անձամբ, իսկ նա գիտութբ միայն. որպէս զի և մեք ընդ այն ոք՝ որ չարչարի ջերմամբ, մեք գիտութբն միայն չարչարիմք ընդ նմա ։

Ըստ ողորմութեց քոց այն որ նոքօք բանայ դուռըն օգնութեց քոց, երևի մեզ այս ։ Տէր մեր իբրու մաքառի մեօք ընդդէմ մեր ։ Եթէ ընդ ամենայնի ընդ որ մարտիցէ զօրութբ քո, ընդ ամենայնում յաղթեսցէ կամօք քովք ։ Եւ մեք անօթք եմք զլացողք. զի 'ի միջոյ հեստութեցն նոցա բոլորեսցի 'ի նոցանէն յաղթութի արարչին նոցա ։ Իբրև առանց ուխտի երևելոյ այս ոչ է հնար, զի մի եղիցուք կապեալք ազատութբ՝ իբրու պիտոյ է նա մեզ, զի մի թօթափեսցուք մեք յարձակութի կամաց մերոց ։ Այլ զի անկցի 'ի վերայ մեր մի սէր նորա հնազանդել առանց բռնութե, իբրու նեղէ վասն օգնութե մերոյ ։ Իսկ որոց առանց բամբասանաց է իշխանութի նորա բաւական է 'ի թողութի յանցանաց մերոց վասն փառաց նորա . և նոքա ոչ եթէ վասն զի օգնեն մեզ՝ խօսիմք զնոսա, այն զի ոչ ամաչեմք իսկ՝ եթէ զօգտութի մեր 'ի գրոց անտի տեառն մերոյ խնդրեմք մեք ։

Ո՜ ի՞նչ կարօտ ես դու զգանձ մեր տալ քեզ, բայց եթէ այսմ՝ զի ընդարձակեսցուք զգիրկս մեր առնուլ 'ի դեղոյ այտի քումմէ, իբրու տայցեմք քեզ զկամմն ունկնդիր լինելոյն մերով ։ Զի ամենայն գործք քո զուարճացեալ են պսակօք իւրեանց, այնոքիկ՝ որ պսակեացն զնոսա իմաստուն բերանդ քո, յայնմիկ՝ զի ասացեր "Ահա բարի են յոյժ" ։ Եւ զոր միանգամ օրհնեմք մեք զքեզ, և նոքօք պարծաւորիմք մեք ։ Արգելեալ են գոհութիք մեր 'ի ներքոյ փոքրկութե քան զքոյն զկանուխն ։ Եւ մի վասն ստուգութեդ քո դիցի սահման ողորմութեցդ քոց, և բովանդակեսցին ընդ նոսա շնորհքն քո, և փոքրկասցիս դու ընդ մեզ մեծդ քան զմեզ՝ յորժամ եռա-

ցուցես զողորմութիդ քո վրէժխնդրութեդ քո , և արգելցես զշնորհքդ քո յընթացից իւրոց 'ի կանխել կորստեան մերում ։ Զի ողորմութիքդ քո են անօթք փառաց քոց առ տկարութիս մեր • զի նոքա քարոզեցին մեզ վասն բարութեանցն մերոց առ 'ի քէն ։

Արդ արժան է լռեցուցանել զմիանձնութի սատուգութեդ քո 'ի յորդ ողորմութեց այտի քոց ։ Եւ որպէս զի ոչ գիտացեր սկիզբն , և մի զկատարածն կոչեսցես , և յամենայն կողմանց տրտմութի սերմանեացեն ծառայից քոց՝ հաստատեալք ողորմութեամբքդ քով , և զօրացեալք շնորհօքդ քով ։ Արդ մի զրկեր զքեզ 'ի տանէ քում • յորժամ ցրուեսցես զնա 'ի կորուստ , և անհամեսցին աղիւն մերով , այն՝ զոր ետուր մեզ զճաշակս առողջ ողորմութեցդ քոց • յայնմիկ՝ զի ասացեր , եթէ աշխարհ շնորհօք շինեսցի ։ Եւ կարճեսցես զողորմութիդ քո 'ի մէնջ՝ ջատագով օգտութեց մերոց ։ Զի կեանք Ադամայ եղեն քարոզ ողորմութեանցդ քոց , զի յարուցէ իւր ժառանգ կորուսանել զժառանգութի իւր ։ Եւ կամեցար դարձեալ միւսանգամ ապաշխարութբ ստանալ զնա յերկրորդում , զայն՝ որ երկոքումբք աւանիկ հնարի ապստամբել 'ի կերակրչութենէ այտի քումմէ • որ նա ինքն է հալածիչ կենաց նորա ։ Ընդ արքայութի քո և ողորմութբդ քո արարեր զՀաբէլ աւանդ առաջին 'ի ներքս 'ի դժոխս , զի նեղեսցի հանել արձակել զնա 'ի միջոյ իւրմէ արդարութբ • զի 'ի պատճառս նորա բացցի դուռնն արգելիչն ամենայնի , և ունայնասցին գիրկքն՝ որ 'ի վերայ ամենայնի լաւանայքին ։ Զի եթէ Ադամ էր անդ մտեալ զառաջինն , քանզի իւր էր նա , դառնայր նա կալ մնալ անդէն յաւիտեան ժամանակս ։ Որպէս արարեր դու ընտանեացն Նոյի վասն նորա , և դստերացն Ղովթայ վասն հօր իւրեանց , վայել էր իսկ՝ թէ և Հաբէլ եղիցի բուրուառ 'ի սկզբան օրհնութեցն՝ որ ելանէ քեզ և յարութե անդ մեռելոց , քան թէ կացցէ Ադամ և գլխարկէ սուգ • սուգ զգեցեալ անդրանիկն դժոխոց , և գլուխն խաւարի ։

Այսուհետև որչափ ինչ ուրախ եղեն ողորմութիքդ քո յայսմ վայրի , զի եղեն սանձք հակառակորդացն մերոց • նա և իբրև զղջացան խորհուրդք քո , այն զի

ոչ ինչ է մարթ նորա զղջանալ և ապաշաւել վասն կանուխ գիտութեան իւրեանց. զի յայտնի են նոցա ամենայն բովանդակութիւնք և ամենայն կատարած. և կանխագոյն է առ նոսա վախճան կատարածի իւրով քան սկիզբն 'ի լինել իւրում: Արդ վասն զի պատառեսցեն զդատակնիքն զոր հաստատեաց եդ ստուգութիւդ քո, զի դարձեալ միւսանգամ իբրև վարձուք մխիթարութեանդ քո տացի մեզ մնացորդ մնացութեան 'ի զաւակ, և 'ի խմոր մարդկութեան: Եւ արար բանալ դրաց շնորհացդ քոց, զի մտցեն խնդրեսցեն 'ի քէն փոխանակ ընդ մեր, յայնմիկ՝ զի լուան 'ի քէն զձայն դատախազութեան մերոյ. զի նա ինքն է պատճառք յարութեան մերոյ, յայնմիկ՝ զի ասայեր եթէ կնճիռն մարդոյ չար է հանապազօր: Զի նովաւ բացաւ բերան ստուգութեան 'ի ջնջել զմեզ. սակայն և նովաւ արձակեցաւ լեզուն շնորհացդ 'ի կեցուցանել զմեզ: Դատապարտեաց զմեզ այսուիկ ստուգութիւդ վասն ազատութեան մերոյ, և շրջեցան արդարացուցին զմեզ նովաւ շնորհքդ վասն բնութեան մերում, յայնմիկ՝ զի յաւելեր անդ 'ի մանկութենէ իւրմէ: Զի այն՝ որ կանխեաց յառաջագոյն ընտրեաց զբարեկամսն իւր, եցոյց մեզ՝ եթէ ոչ 'ի գնաց ժամուցն լինիմք մեք դատեալ առաջի նորա, այլ նկարեալ և կնքեալ և չափեալ գործովք իւրեանց:

Ամենայն որ միանգամ մտանէ յաշխարհ 'ի մեծ խորհուրդս նորա, իբրև որդի նորա զպատկերս մեր զգեցաւ վասն փառացն մերոց, որ նովաւ 'ի դատաստան մահու մատուցաք զքեզ: Թէպէտ և երևի խիստ ստուգութիւդ քո; սակայն ծնունդն գործոց մերոց աճէ մեզ վասն արկին փոխարինին մերոյ 'ի վերայ նորա, և հատուցմամբն փոխարինին մերոյ առ 'ի նմանէն: Զի եթէ արձակեսցի ազատութիւնս մեր 'ի ձեռաց անտի չարին, անօթ է նա՝ զոր պատրաստեաց արարիչն. զի նովաւ ցուցցէ ազատութիւն զառաքինութիւս իւր, նովաւ բազմանայ և յաճախէ զարդ յաղթութեաս մերոյ 'ի պատերազմի: Բովք են որ նեղութիւքն երկանց իւրոց 'ի կազմութիւն լինի. ամենայն գեղովք աճցէ զմեզ, զի զարդ արքայութեան լինիցիմք: Յաճախեսցուք 'ի ճանաչել զայս իր, և յաճախեսցուք 'ի

կշտամբել յանդիմանել զանձն մեր, և զխորամանկ գիտութիւնս մեր։

Ո՛վ ողորմութիւնք արձակեալք. և զեղումն 'ի վերայ ամենայնի։ Առ ո՛ւմ մնացին, բայց եթէ 'ի քեզ, Տէր մեր. զի 'ի ձեռն մահու քո, գթած ամենայնի, կենաց յաւիտենական դիպեցուցեր. և սպանմամբդ քո բացեր զգանձս ողորմութեանց քոց։ Զի թէպէտ և սովորութիւն Տէր Տէր մեր կարդամք, մի՛ զրկեր զանուն տէրութեանդ քո 'ի բերանոց մերոց. այլ վկայութիւն բերանոց մերոց աւելի կարես դու ունել զմեզ։ Դու ես ծածկեալ յամենի տեսլեամբ իւրով, նկարեալ յամենիսեան 'ի պատճառս ամենայն խլրտմանց իւրոց։ Զի նկարեն զնա մեզ գործք նորա զարարիչն, և ուսուցանեն մեզ զնա արարածք նորա զհաստիչն. զի կարող իցես շօշափել զնա՝ զայն զծածկեալն քննութեամբք իւրովք, և զյայտնին պարգևօք իւրովք։ Դժուարին է մատչել առ նա, և դիւրին է մերձենալ առ նա։

Քեզ երկրպագել յամենայնէ զսէր նորա առ սակաւս է։ Քեզ ձայն՝ որ ամենայն ինչ՝ իբրու սակաւ են նմա, որոշէ զմեզ 'ի միմեանց աներևոյթ պատկերօք, իբրու կապեալ են տակք արմատոց նոցա 'ի մի պատկեր Ադամայ, զի մի՛ թարթափեսցին միտք մեր մեծութեամբք՝ ամենայն կարուցն։ Քեզ ածիչ մեր յաշխարհ, և իշխեցուցիչ մեր ամենայնի՝ որ 'ի նմանէ, և հանիչ մեր 'ի նմանէն ժամօք զոր ոչ կարծիցեմք։ Քեզ որ ետուր բան 'ի բերանս մեր. և արարեր զմեզ ջատագով խնդրուածոցն մերոց։ Քեզ կարդայ Ադամ 'ի խաղաղութեան իւրում և զաւակք նորա, իբրու արգելեալ և փակեալ են ամենեքին 'ի ներքոյ շնորհացդ քոց։ Զքեզ օրհնեն հողմք 'ի գնացուցանելն իւրեանց զջուրս։ Զքեզ փառաւորէ երկիր բացեալ արգանդաւ իւրով, և փութայ տալ զպտուղ 'ի ժամու իւրում։ Զքեզ օրհնեն ծով ալեօք իւրեանց իբրև բերանովք, իբրու լինին ձայնք նոցա քարոզ տէրութեանդ քում՝ որ է 'ի վերայ նոցա։ Զքեզ փառաւորեն ծառք, իբրու թանադատին 'ի շնչելոց հողմոցն, զի ունկնդիր լիցին յղութեան և ծննդեան։ Զքեզ օրհնեն բոյս որոշմամբք իւրովք,

և ծաղիկք գունովք իւրեանց՝ 'ի դիել իւրեանց զառատութի անձրևաց քոց հանդերձ առնլովն զցօղն ։ Ժողովեսցուք և մերձեցուսցուք զբերանս իւրեանց առ միմեանս, իբրու բանադատուն առ 'ի միմեանց ․ և 'ի ձեռն ամենեցունց, իբրու սակաւ իցեն խաղալեացդ քոց, զօդեսցուք յամենեցունց օրհնութիւնդ քո 'ի սատարել իւրեանց 'ի նմա իբրև ճարտարապետք ամենեքին 'ի գոհութե այդր քում ։ Այսուհետև և մեր այս է, զի լի կամօք մերովք առ քեզ ձկտեսցուք ․ և քո այս է, զի սակաւիկ մի 'ի քէն ամենայնէ առ մեզ խոնարհեսցիս ։ Զի եղիցի մեզ հոգիդ քո ճշմարտութի 'ի քէն ․ զի նովաւ կալցի և ելցէ տկարութիւս մեր, այն՝ որ առանց պարգևացդ քոց առ քեզ տէրդ պարգևաց մերոց հասանել ոչ կարէ ։

Եւ քանզի պատրանօք գայլոյն յանապատի թողեալ եղեաք արտաքոյ խաղաղութե ցպոյն գթած հովուին մերոյ, այլ յանդիմանեցաւ հանգիստն մեր ապաշաւելոց ոգւոցն՝ որ փորձեացն զնա ։ Ոչ է նա հանգիստ ճշմարիտ, այլ բիծ է նա հանգստեան ․ կողոպտէ զոգիս 'ի ծածուկ, յողդողդէ զմարմինն յայտնի, հարկանէ 'ի ծածուկ՝ զի ոգին զղջասցի և մարմինն պղտորեսցի ․ և որչափ ուրախ եղև նա 'ի ծածուկ, տրտմեցաւ յայտնի 'ի փութալ պահել զհանգիստն սպանող ։ Զի ապականեաց զնա զղջումն ոգւոյն կենարարն, այն՝ որ եմուտ զկնի նորա 'ի կատարած մտաց ․ զի արբ զնա ծարաւով, և փափագեցոյց զնա արբենալով, և փոխեաց զնա խրատելով ։ Այս է դեղ կենաց, զի արար զմարմին իւր ստին անմեղութես մերոյ, և զարիւն իւր աղբիւր հալածիչ արբուցանելովն իւրով ծարաւութես մերում ․ և եղև նա ամենայն ամենայնիւ մեզ սեղան ամենայն բարութեց ։

Որ թէպէտ և օրհնութիւնքս մեր քեզ սակաւ իցեն, սակայն զմեզ աճեցուցանեն գալ հասանել նոքօք 'ի բանակետղդ պարգևաց քոց ։ Թէպէտ և գոհութիւնքս մեր 'ի վերայ մեծութեցդ քոց քեզ ինչ ոչ յաւելուն, սակայն զտկարութիւս մեր մոռացուցանել զբազմամբ իւրեանց նկարեն ։ Թէպէտ և աղօթքս մեր տկար ձայնիւք են, սակայն յորդ և բուռն զօրութի են ․ մեզ լինին հանիչք առ քեզ, և քեզ

լինին իջուցիչք առ մեզ ։ Ոչ եթէ զի նոքա զօրագոյնք իցեն՝ կարիցեն զայս առնել, այլ քանզի դու բարերար ես՝ ՚ի գոհութէ քումմէ տուր նոցա զայս գործել ։

Խորամանկ մատեաւ առ ունկն անմեղ, և պատուղ անարգ գործով իւրով յանուն կանխոցն ետ նոցա․ և անմեղք զլսելիս իւրեանց ետուն նմա հանգուցանել, այնոքիկ՝ որ զունկնդիր խլմամբն կարգեն, և աշխատեալ են այնոքիկ՝ որ զապստամբս հնազանդեն ։ Հանգուցեալ են դարձեալ և առլցեալ այնոքիկ՝ որ յայտնեօք զբարութիւն ուսանին․ և աշխատեալ և պակասեալ են այնոքիկ, որ քննութ̃ք ծածկութեցն ՚ի բարեաց տրտմեալ են ։ Եւ հանգուցեալ են այնոքիկ, որ ունին զծանրութ̃ի փառաց քան զայնոսիկ՝ որ բարձեալ ունին զհանգիստն ամօթոյ․ զի զայնոսիկ և անձինք իւրեանց յամօթ առնեն զնոսա, իսկ զնոսա և թշնամիքն իւրեանց գովեն զնոսա ։ Ընտրեալ են այնոքիկ՝ որ առանց բռնութէ զօրէնսն կատարեն․ և ոչ են անարգեալս այնոքիկ՝ որ՚ի ձեռն բռնութեն զօրէնսն պահեն ։ Թէպէտ և նոքա ՚ի վերին աշտիճանի անդ կան, սակայն և սոքա ՚ի միջին աշտիճան՝ որ վերագոյն է քան զներքին՝ կան․ Նոքա մերձեցան, վասն զի սիրեցին․ և սոքա ոչ հեռացան, վասն զի երկեան ։ Արդ ոչ սէրն՝ որ մերձեցան ՚ի նա՝ նորա իցէ տկար և փոքր առ նա, և ոչ յերկիւղն՝ որ ապաւինեցան ՚ի նա սոքա՝ գոյ նուաղեալ և կոխեալ առ նմա ։ Մին համարձակէ զհովանին երկեցուցիչ գաւազանին իւրոյ ՚ի վերայ ամենայնի, և ամենայն որ ետես զնա սարսեաց՝ եթէ ինչ որ նմա չար թուեացի, մի՛ արասցէ ընկերի իւրում․ և միւս ևս վերացոյց զհովանին առաքինի պսակին իւրոյ ՚ի վերայ ամենայնի․ և ամենայն որ ետես զնա, փութացաւ՝ եթէ որ ինչ նմա բարիոք թուեսցի, և այլոց արասցէ ։ Բարիոք է այս, եթէ ոք որ ինչ իւր ոչ է՝ ոչ ցանկասցի․ բայց փառաւորեալ և ծ̃ծեղէն, եթէ ոք հաղորդս և կցորդս բազումս յիւր անդր արասցէ իւր ։ Մեծամեծք են սոքա, որ վասն երկեւղի ինչ ոչ էր հրամայեալ նց̃՝ ոչ խառնեցան ։ Այլ մանկունք են նք̃ առ այնոսիկ՝ որ վասն սիրոյ և յինչ էր որ արձակեալ և համարեալ էր, ձգեցին զձեռս իւրեանց յինքեանս ։

Իսկ զի ոչ հաւասարեն և միաբանեն ընդ միմեանս բանք առաքելոցն, քանզի ոչ 'ի միասին գրեցին նոքա զաւետարանն ։ Քանզի ոչ առին նոքա հրաման, որպէս Մովսէս տախտակօք, այլ որպէս ասաց մարգարէն՝ եթէ տաց նոցա ուխտ կտակարանաց, ոչ իբր զայն, այլ զօրէնս իմ տաց 'ի խորհուրդս նոցա, և 'ի սիրտս նոցա գրեցից զնոսա ։ Եւ պատճառք կոչեցին զնոսա և գրեցին ։ Մատթէոս հեբրայեցերէն գրեաց զնա, և ապա փոխեցաւ 'ի յոյն անդր ։ Իսկ Մարկոս զհետն երթեալ էր Շմաւոնի. իբրև չոգան 'ի Հռոմ քաղաք, զի եղիցին յիշել 'ի կատարել, եթէ գուցէ ընդ երկրաւն մոռասցի նա, հաւանեցուցին զնա՝ և գրեաց որ ինչ հասու եղև ։ Իսկ Ղուկաս սկիզբն արար 'ի մկրտութենէ անտի Յովհաննու. իբրու մի վասն մարմնաւորութեն նորա ասաց, և վասն արքայութեն նորա՝ որ 'ի Դաւթայ. և միւս ևս. յԱբրահամէ սկսաւ ։ Եկն Յովհաննէս և եգիտ՝ զի յորժամ կարծիս ցուցանէին բանքն այնոցիկ՝ որ գրեցին զազգատոհմն նորա՝ եթէ մարդ է նա, գրեաց և ինքն՝ եթէ ոչ էր նա մարդ, այլ 'ի սկզբանէ էր նա Բան ։ Մատթէոս հեբրայեցերէն գրեաց զաւետարանն ։ Մարկոս հռոմայերէն 'ի Շմաւոնէ 'ի Հռոմ քաղաք ։ Ղուկաս յունարէն ։ Յովհաննէս գրեաց զնա, քանզի կաց մնաց յաշխարհի մինչև 'ի ժամանակս Տրայիանոսի ։

Մարկոս աւետարանեաց յԵգիպտոս. Յովհաննէս յԱսիա. Մատթէոս 'ի Հնդիկս և 'ի Հրէաստան. Թովմաս 'ի Պարթևս. և Յակովբոս զեբեդեայ 'ի Գալլիա. Անդրէաս 'ի սկիւթացիս և 'ի մակեդոնացիս և յաքայեցիս. Պետրոս 'ի Պոնտոս և 'ի Հռոմ և 'ի գաղատացիս և 'ի Գամիրս և 'ի բիւթոնացիս և յասիացիս և 'ի Մրծին ։ Պաւղոս յԵրուսաղէմէ մինչև 'ի Սպանիա ։ Բարթողոմէոս աւետարան զՄատթէոսի ետ Հնդկաց, և եղև անդ եպիսկոպոս., և աւետարանեաց 'ի Լիկայոնիա ։ Փիլիպպոս 'ի Յոյնս և 'ի գաղատացիս. Կրիսպոս 'ի գաղատացիս. Տիտոս 'ի կրետացիս. Ղևի ներքոյ քան զՊոնտոս. Թադէոս մի յեւթանասնից անտի յՈւռհա յաւուրս Աբգարու՝ պահապան տեղւոյ. և բժշկեաց զնա, զի հիւանդ էր ։

Յետ քառասուն ամի վերանալոյ տեառն մերոյ սկիզբըն եղև աւերածոյն Երուսաղէմի յառաջ քան զպատերազմ Տիտեայ: Ամենայն առաքեալք սփռեցան ընդ ամենայն ազգս հեթանոսաց, որպէս և հրամեաց նոցա տէր մեր՝ եթէ «Ելէք ընդ ա̃մ աշխարհ»:

Փարիսեցիքն ոչ զամենայն ինչ բաշխ է, ասեն. այլ 'ի նոցանէն եթէ յինքեանց լինին, իբրու դէպք են՝ որոց լինին և որոց ոչ լինին: Սադուկեցիք զբաշխ խափանեն, և զի չէ նա ինչ քարոզեն, և զի կատարած՝ մարդիկ 'ի նմանէն ոչ առնուն, այլ բարիք 'ի նոցանէն և չարիք առ 'ի նոցանէն և ամենայն 'ի նոցանէն: Այլ Համնացիք բաշխի տան իշխանութի̃ 'ի վերայ ամենայնի. զի չիք կամք կամ վարձ՝ որ կան, ասեն, առանց նորա՝ մարդկան: Գլիլացիք դարձեալ միւս ևս ազանդ: Հանապազորդ բնակիչք այլ միւս ևս: Մածբըրհտացիք. Շամրտացիք. Հապիոնացիք. սոքա 'ի մէջ Իսրայէլի: Սադուկեցիք յաւուրս Յովհաննու սկիզբն առարին իբրև արդարք 'ի ժողովրդենէ անտի որոշել զանձինս իւրեանց. և յարութենէ անտի մեռելոց ուրանան, յուսացեալ իւրեանց՝ եթէ ոչ ասեն արժան է վարձուք շնորհաց երկիր պագանել և պաշտել զա̃ծ: Շամրտացիք՝ և նոքա ուրանան 'ի յարութէ անտի մեռելոց. և փոխանակ Երուսաղէմի քաղաքին սրբոյ՝ լերինն Գրիմացոց երկիր պագանեն, և միոյ պարզուղիղ մարգարէի՝ որ գալոց է՝ ակն ունին, զի պատրաստեսցէ և ուղղեսցէ զայնս՝ որ ոչ երևին ըստ մարգարէութե̃ Մովսէսի: Եւ աշակերտքն Յովհաննու նովաւ պարծին. և զի մեծ է նա քան զՅիսուս ասեն. որպէս և ինքն, ասեն, վկայեաց՝ եթէ «Չիք 'ի ծնունդս կանանց մեծ քան զՅովհաննէս»: Արդ զայս ամենայն ինքն Թշնամին գործեաց, պատառումն և հերձուածս 'ի մէջ ժողովրդեան արկ. որպէս զի մկրտութի̃ն Քրիստոսի խափանեսցի, զի մի իցէ հաւատալի:

ԿԱՏԱՐԵՑԱՒ ՀԱՄԱԲԱՐԲԱՌՍ ՀՕՐ ԵՓՐԵՄԻ ՈՐ ԸՍՏ ՉՈՐԻՑՆ ԱՒԵՏԱՐԱՆԱՑ

# ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

# ԱՒԵՏԱՐԱՆԻ

ԶՈՐ ԱՐԱՐԵԱԼ Է

# ՏԵԱՌՆ ԵՓՐԵՄԻ

ԽՈՐԻՆ ԱՍՈՐԻՈՑ

ԱՄԵՆԱՅՆ գիրք՝ որ միանգամ 'ի մտաց մարդկանէ գրեալ են, և ոչ յօրինաց և 'ի մարգարէից առնուն 'ի խօսել, մատեանք են՝ ծնունդ և ըստերգծուած մտաց հակառակողաց։ Եւ եթէ ոք մտաւ չի քննել զմիտս նոցա, մոլորականս և դանդաչեալս գտանէ զնոսա. քանզի ոչ են եդեալ նոքա 'ի վերայ ճշմարիտ հիմանն գրոց սրբոց։ Մարկիոնն գրէ 'ի մատեանս իւր, որ անուանեալ կարդան Պերոն և Ենգեղիոն. այս ինքն թարգմանել կոչի 'ի մեր լեզու այսր՝ յառաջ քան զաւետարան. և ես զարմացեալ եմ զիարդ իցեն գիրք մարկիոնացոց, որում անուանել կարդան՝ յառաջ քան զաւետարան։ Ի՞բրու յուսացեալ կարծեն աշակերտքն նորա՝ եթէ սկիզբն ծնութեն յորում հաւատան, ընդ այն ժամանակս երևեցաւ յամս Պեղատոսի պոնտացւոյ, 'ի ժամանակին յորում աւետարանն գրեցաւ։ Եթէ ճշմարիտ է քեզ, ով Մարկիոն, եթէ արդարև սկիզբն ծնուէն զոր ասես դու վասն նորա՝ 'ի յաւետարանէ եղև, իսկ զիա՞րդ կամ ո՞րպէս իցեն քո գիրք՝ յառաջ քան զաւետարանն։ Եւ եթէ արդարև հաստատեալ ես դու, և իցեն քո գիրք յառաջ քան զաւետարանն, մի ասեր

եթէ Նորոգ և օտարաբար բխեաց կենարար ա̃ծուԹն , այլ էր իսկ երբեմն ասա ։ Եւ գրեալ է 'ի սկիզբն գը-րոցն այսպէս . ասէ . "Ո՛վ մեծութի̃ք մեծութե̃ց , յիմարութի̃ , զօրութի̃ և զարմանք . այն զի չիք ինչ ասել զնմանէն , և ոչ խորհել վասն նորա , և չիք իմիք նմանեցուցանել զնա „ ։

Արդ զամենայն մատեանս նորա 'ի բաց թողցուք , և ընդդէմ այսր բանի ասասցուք՝ եթէ այս ինչ զոր ասես դու , Մարկիոն , արդարեւ ճշմարիտ ոչ պատմի նա լեզուաւ , և ոչ լինի մեկնեալ խորհրդովք , և ոչ նման է նմա ։ Արդ կարկեաց լռեա լեր , և մի խօսիր վասն որոյ դուդ յամառեալ ես և ասես՝ եթէ ոչ պատմի նա , և ոչ գոյ խորհել զնմանէն , և ոչ նման է նա իմիք ։ Որչափ ինչ ստեաց Մարկիոն , զի ոչ խօ-սի նա 'ի ճշմարիտ հիմանէ անտի , և ես ցուցից . ա-սէ տէր յաւետարանի անդ իւրում , եթէ ամենայն ինչ որ միանգամ է յաշխարհէ աստի՝ նման են հա-ւատք յիբս յիրս . ասէ այսպէս՝ եթէ նման է շի-նուածոյ , գինոյ , հանդերձի , հրոյ , սերմանեաց , ար-քայութե̃ , արծաթոյ , քանքարի , տնկոյ , հատոյ մա-նանխոյ և խմորոյ ։ Արդ զիա՞րդ մարթէ ոք լսել աւե-տարանին , զի ասէ՝ այսմ ամենայնի նման են հա-ւատք կերպարանօքն իւրեանց ։ Եւ դարձեալ լուիցէ Մարկիոնի , զի ասէ՝ ոչ նման է իմիք ։ Եւ որո՞վ նման է նա այսմ ամենայնի իրաց , ես ցուցանեմ առ այժմ ։

Նման է շինուածոյ , յայսմիկ՝ զի որպէս շինուած 'ի բազում արարածոց ժողովին , յանդամոց յօդի և լինի մի տուն , սոյնպէս և մեք յամենայն ազգաց և յամենայն լեզուաց և յամենայն թագաւորութե̃ց և յամենայն մտաց ժողովիմք , և լինիմք մի միտք , կա-տարեալ ժողովուրդք , խորան սուրբ , բնակետղ ա̃յ ։ Նման են դարձեալ շինուածոյ . քանզի մարդ յոր-ժամ շինէ շինուած , ոչ արհամարհէ վասն ամենայն պիտոյից՝ որ ինչ միանգամ պէտք իցեն նմա 'ի նիւթ շինուածոցն ժողովել նմա և բերել քար , փայտ և եղեգն , հող և երկաթ և պղինձ , և զամենայն իրս պիտոյից 'ի նիւթ շինուածոյն . ապա եթէ մի մի 'ի նո-ցանէն արհամարհէ , սակայն և ոչ շինուածն նորա

պսակեալ կատարի ։ Սոյնպէս և մեք․ ոչ է մեզ պարտ արհամարհել, յայսմիկ՝ զի շինեմք մեք զհաւատս պահովք, սրբութ̃ի, տուրս տալով և հիւանդս տեսանելով, զեղքարս սիրելով, և ա̃ծպաշտութ̃ի և դրունս եկեղեցոյ կոխելով, և ստէպ ստէպ աղօթիւք կալով, և զխորհուրդս գրոց քննելով․ և եթէ զմի մի 'ի սոցանէն արհամարհեմք մեք, սակայն և ոչ հաւատք մեր շինին ։ Այլ զոր օրինակ այնոքիկ՝ որոց շինուածն իցէ՝ ոչ ննջեն, որպէս և Դաւիթ ինքնին ասէ, "Ոչ տաց քուն աչաց իմոց, և ոչ նինջ արտևանաց իմոց մինչև շինեցից զտաճար տեառն և տեղի հանգստեան ա̃յ Յակոբայ", սոյնպէս և մեք պարտիմք ընթանալ 'ի տուէ, և հսկել և տքնել 'ի գիշերի աղօթիւք և խնդրուածովք, զի և մեք շինեալ լինիցիմք 'ի վերայ հիմանն առաքելոց և մարգարէից․ որպէս և Առաքեալ ասէ ։ Զի եթէ ովք հողեղէն տունս շինեն՝ տան զանձինս իւրեանց աշխատութեան, զի արասցեն իւրեանց յարկս փոքրժամանակեանս, այլ մեք զբանակետղն յաւիտենից շինեմք անձանց մերոց, և տուն փառաց յերկինս՝ առաւել արժան է մեզ աշխատ լինել և վաստակել ։

Եւ զոր օրինակ այնոքիկ՝ որ շինեն զշինուածս՝ ոչ երբէք ամաչեն նոքա, յորժամ ոք տեսանիցէ զնոսա՝ զի քաղիցեն եղէգն, և հարկանիցեն փայտ, և գլիցեն վէմս, և կրիցեն քար, և թագուցանել զգործս իւրեանց չէ ինչ մարթ․ որպէս և մեզ չէ պարտ ումեք 'ի մէնջ ամաչել այսու քարիւք և գեղեցիկ պտղովս զոր շինեմք, և չէ ինչ մեզ մարթ թագչելոյ, և կոխել մեզ զդրունս եկեղեցոյ, և զհիւանդս տեսանելով, և տուրս տալով, և յաղօթս կալով, և ծոմ պահօք․ և եթէ ոք ամաչէ յայսմիկ, ոչ կարէ նա լինել նիւթ շինուածոյ ա̃ծութե̃ն ։ Բայց ոյք շինեն զշինուածսն, թէպէտ և ինքն շինուածն ոչ թագչի, սակայն ոչ եթէ զի տեսցեն զնոսա ընկերք իւրեանց և գովեսցեն զնոսա՝ առնեն 'ի կրել, մատուցանեն որ ինչ պիտոյ իցէ 'ի նիւթ շինուածոյն, այլ վասն անձանց իւրեանց աշխատին և վաստակին․ դարձեալ և արտաքինք տեսանեն զնոսա, զի ոչ եթէ զի գովեսցին 'ի մարդկանէ՝ վաստակին ։ Սոյնպէս և մեք․ ոչ է արժան թագչել, և

ոչ պարտիմք դարձեալ առնել[1], որպէս զի տեսցեն զմեզ մարդիկ և գովեսցեն, և ոչ վասն այլոց գովուե̃ ընթանայցեմք: Այլ որպէս ոմանք՝ զի անձանց մերոց առնեմք զողորմութիւս, և այլք՝ ոյք դիպեսցին մեզ՝ տեսանիցեն զմեզ, զի ոչ եթէ վասն նոցա աշխատիմք մեք:

Եւ զոր օրինակ որոց շինուածք իցեն՝ փութացեալ են ՚ի շինել և ՚ի կատարել զամենայն ժամանակս ամարայնոյ, զի ընդ յարկաւ[2] լինիցին և հանգիցեն յաւուրս ձմերայնոյ, զի աւուրք ամարայնոյ են շինուածոց: Իսկ այն՝ որ յաւուր ամարայնոյ ոչ շինէ իւր շինուածըս՝ անարգանս և թշնամանս հասցեն նմա յաւուրս ձմերայնոյ: Եւ որպէս եդեալ են ժամանակք շինուածոց աւուրք ամարայնոյ, սոյնպէս եդեալ է ժամանակ բնակութեան մերում որ աստէն յաշխարհի է՝ ընթանալ փութալ և շինել մեզ բնակութիւս յերկինս: Եւ որ յայսմ ժամանակի ոչ պատրաստէ և առնէ իւր տեղի հանգստեան ընդ արդարս, յետ մահուիւրոյ ոչ կարէ նա շինել և պատրաստել իւր. որպէս զի չէ ինչ մարթ շինել շինուածոց յաւուրս ձմերայնոյ: Եւ զայս առաւել զոր նմանեցոյց տէր մեր զհաւատս իւր շինուածոց մարդկան, զքանն մարգարէութեան կատարեաց: Ասէ Եսայի. "Բայց Սիովն ասաց՝ բայ եթող զիս տէր, և մոռացաւ զիս ած. միթէ մոռասցի՞ կին զմանուկ իւր, կամ ո՞չ գթասցէ ՚ի ծնունդս որովայնի իւրոյ. և եթէ մոռասցի զայս կին, սակայն ես ոչ մոռացայց՝ ասէ տէր: Ահաւադիկ ՚ի վերայ ձեռաց իմոց նկարեցի զպարիսպս քո, և առաջի աչաց իմոց ես դու յամենայն ժամ":

Դարձեալ ասէ Դաւիթ. "Զվէմն զոր անարգեցին շինողքն, նա եղև գլուխ անկեան շինուածոց. ՚ի տեառնէ եղև այս": Եւ ընդունի զայս Պաւղոս ՚ի մարգարէէ անտի և յաւետարանէ. ասէ. "Նա ինքն գլուխ անկեան շինուածոյս Քրիստոս, որ նովաւ յադի և պատշաճի ամենայն շինուածն": Եւ յայտ առնէ՝ եթէ մեք հաւատացեալս եմք շինած, և Քրիստոս գլուխ անկեան շինուածոյ: Եւ Դաւիթ ոչ եղև ան-

1 Յօրինակին առնուլ:

2 Յօրինակին արկաւ:

կիւն, զի և մի որմ շինուածոց շինեցաւ 'ի նմա՝ Թլփատութի միայն։ Իսկ Քրիստոս քանզի քարոզեաց նա զԹլփատութի և զանԹլփատութի, շինեցան 'ի նմանէ երկու որմք, և եղև ինքն գլուխ։ Եւ զխարդ և կամ որպէս եղև նա վէմ անարգեալ, յաւետարանի անդ ասէ. "Պարտ է որդւոյ մարդոյ ընդ բազում չարչարանս անցանել, խոտել և անարգել յերիցանց և 'ի դպրաց"։ Եւ որպէս զի ոչ հեռի է 'ի նմանէ անուն վիմի, Առաքեալ ինքնին ասէ վասն հոգևոր վիմին՝ որ արբուցանէր որդւոցն Իսրայէլի. "Այլ վէմն այն նա ինքն է Քրիստոս"։ Նա և զՇմաւոն զոր եԹող Քրիստոս փոխանակ ընդ իւր, զի առաջնորդեսցէ եկեղեցոյ նորա, կոչեաց զնա։ Եւ 'ի վերայ այսր առակաց մարգարէից եղաւ եկեղեցի 'ի նմանութի շինուածոց։

Վասն այսորիկ նմանեցոյց տէր մեր զհաւատս իւր շինուածոց, յայնմիկ՝ զի ասէ. "Ամենայն որ գայ առ իս, և լսէ զբանս իմ և առնէ զնոսա, նմանեցաւ առն իմաստնոյ՝ որ շինեաց զտուն իւր, փորեաց և խորեաց, և եդ զհիմն 'ի վերայ ապառաժուտ վիմի"։ Եւ յայսմիկ՝ զի ասէ փորեաց և խորեաց, յայտ առնէ մեզ՝ զի նորոգումն և հաստատութիւն զոր ընդունի ուսումն վարդապետութե՝ ոչ եԹէ գալով եկն մեզ, այլ էր իսկ 'ի մեզ երբեմն։ Եւ իբրու յաճախեցեմ 'ի փորել, ուստի կայցեմք մեք 'ի վերայ ճշմարտութեանն՝ եԹէ ոչ էր հասեալ մեզ 'ի Հօրէ 'ի յառաջնմէ 'ի յաւիտենանցն։ Եւ յորժամ հայիցիմք 'ի վէմն անդր ապառաժին՝ որ պառակեալք մեք 'ի նմա, և տեսանեմք զի հաստուն է նա յառաջին ստեղծուածոյ իւրմէ, և յորժամ անկեալ փլանի՝ տրորի հաստատութիւն նորա 'ի փլանելոյ անտի և 'ի տրորելոյ, և առնու ճարտարապետն հաստ անօԹ երկաԹեղէն, և փորէ առնու 'ի նմանէ զաւելորդն զերկիրն և ըղհողն փլեալ, և դնէ զհիմն նորա 'ի վերայ ապառաժուտ վիմին հաստատնոյ՝ որ հանդարտել կարէ զօրուԹե շինուածոց, սոյնպէս և մեք 'ի մանկութե մերոյ սուրբք և անարատք էաք 'ի վարդապետութի ածութեանն. և իբրև անկանի հաստատութի ճշմարտութե մերոյ 'ի գիջութիւն պոռնկութեան և 'ի ցանկութիւն յիմարութեան, այնուհետև ոչ կարեմք մեք հան-

դարտել զօրութեանն հաստատութէ շինուածոյն ։
Բայց յորժամ առնումք մեք 'ի ձեռն զաւետարանն փրկութէ ¹ 'ի նմանութի երկաթոյ, և քաղեմք հանեմք 'ի մէնջ զայս ամենայն զգործս չարութեց, և ապա դնեմք մեք զհիմն հաւատոյ 'ի վերայ սրտից մերոց 'ի վերայ ապառաժուտ վիմին՝ իբրու սրբեալ իցեն միտք մեր յամենայն չարեաց ․ և իբրև դնին հիմունք շինուածոյն, լինիմք մեք այնուհետև և մշակք և ճարտարապետք ։ Եւ զոր օրինակ ամենայն ինչ որ միանգամ պակաս ինչ իցէ ճարտարապետին՝ ոչ գոյ երթալ նմա ուրեք, բայց առ դուրս տեառն գործոյն, նոյնպէս և մեք գիտասցուք՝ եթէ մեծատուն է սա՝ որ տէրս է գործոյս մերոյ, յորմէ առաք մեք 'ի նմանէ առհաւատչեայ զայս շինուածս շինել նմա ։ Զի ամենայն ինչ որ միանգամ պակասիցէ մեզ նիւթ գործոյ կենաց, 'ի նմանէ խնդրեսցուք՝ զսրբութի, զողորմութի, զսէր, զլրջմտութի, զեղբայրսիրութի ․ և նա ինքնին 'ի բարեաց գանձուց իւրոց լի ձեռամբ իւրով տայ մեզ, և կոխել մեզ զդրունս նորա, և խնդրել 'ի նմանէն ։ Եւ յայսմ ամենայնի նմանեալ է վարդապետութի՛ն տեառն մերոյ շինուածոց ։

Եւ դարձեալ նմանեցուցանէ տէր մեր զհաւատսըն իւր գինոյ ․ յայնմիկ՝ զի ասէ ․ " Ոչ ոք արկանէ զգինի նոր 'ի տիկս հինս ․ ապա թէ ոչ՝ պայթուցանէ գինինն նոր զտիկս հինս ․ գինին հեղու, և տիկքն կորնչին ․ այլ արկանեն գինի նոր 'ի տիկս նորս " ։ Արդ զի՞նչ արդեօք կարծիցեն ոք նմանեցուցանիցեն, մի՞թէ նորութի՞ն օտա՞ր իցէ հնութէ ․ արդեօք կարծիցեն եթէ տիկք հինք 'ի բնէ՞ իւրեանց հնացեալ են, և երբէք նոցա նոր ոչ են եղեալ ։ Յայտ է յամենայն մարդոյ, զի յորժամ հաստատեաց զնոսա ած, կամ իբր արար զնոսա ճարտարապետն իւրեանց, նոր էին և հանդարտէին զօրութէ նոր գինոյն ․ ապա եթէ հնայցեն՝ ոչ հանդարտեն նոքա զօրութէ նոր գինոյն ։ Սոյնպէս և մեք յառաջին արարածոց մերոյ նոր, գեղեցիկք և վայելուչք էաք 'ի յընդունել զու-

¹ Յօրինակին 'ի լուսանցսն ճշմարտութէ ։

սումն վարդապետութեան տյ վասն անմեղութեան մանկութեան։ Եւ դարձեալ յետ բազում ամաց մերոց մինչ դեռ սուրբ իցեմք 'ի չարեաց՝ իբրև մանուկ հանդարտեմք ընդունել զզօրութիւն վարդապետութեան, որպէս տիկք նորք՝ զի հանդարտեն զօրութեան նոր գինոյն։ Ապա եթէ աղտեղանամք և մաշիմք 'ի ցանկութիւս յիմարութեան, 'ի զլացութիւն ագահութեան, և յարբեցութիւն գիջութեան, յայնժամ հարեալ տրորեալ մաշիմք մեք 'ի մեղս և յանօրէնութիւնս մեր. ոչ կարեմք մեք այնուհետև ընդունել զուսումն վարդապետութեան։

Եւ յայտ է այս, զի 'ի մանկութեան մերում իբրև հաստեաց զմեզ ած, ոչ դոյր 'ի մեզ այն՝ զոր համարեցան. զի նոքա հեռացեալ մերժեն զմեզ 'ի կենաց. և ապա յետոյ յարեն 'ի մեզ գործք չարութեան. որպէս տիկքն՝ զի յետոյ մաշեալ հնացեալ լինին։ Եւ վկայէ ինձ Առաքեալ յասելն իւրում, ասէ. «Մի՛ տղայք լինիք 'ի միտս ձեր, այլ 'ի չարեաց տղայացարուք դուք, զի 'ի միտս ձեր կատարեալք լինիջիք»։ Եւ իբրև գտեալ լինիմք մեք անմեղք 'ի չարէ իբրև զառաջին ստեղծուածն մեր, յայնժամ կարեմք մեք ընդունել զուսումն վարդապետութեան. և տիկքն զի հանդարտեն զօրութեան նոր գինոյն՝ որ 'ի նորութեան իւրեանց։ Որպէս և մարգարէն ասէ. «Ընդէ՞ր ասեն տուն Իսրայէլի՝ եթէ մեղք և անօրէնութիւնք մեր 'ի մեզ են, և մեք 'ի նոսին մաշեալ եմք»։ Եւ յայտ առնէ մարգարէն՝ եթէ ստեղծուածն մեր առաջին նոր էր, և մեղքն և անօրէնութիւնք առնեն հին և մաշ։

Նմանեցոյց տէր մեր զուսումն վարդապետութեան իւրոյ գինոյ, և լցեալ կատարէ զբանս մարգարէին. զի ասէ Դաւիթ. «Հանէ ած հաց յերկրէ, և գինի ուրախ առնէ զսիրտ մարդոյ»։ Եւ զոր օրինակ մարգարէն ասաց վասն գինոյ՝ եթէ ուրախարար է, նոյնպէս և ուսումն վարդապետութեան տեառն մերոյ ուրախարար մեր է։ Զոր օրինակ գինի ոչ միայն ուրախ առնէ զտրտմեալս, այլ բարձրացուցանէ զխոնարհս, և մեծացուցանէ զաղքատս, և հանէ առնու զհոգս և զտրտմութիւն յամենայն մտաց. եթէ ոք տկար իցէ զօրութբ, և ընպիցէ գինի, մոռանայ նա այնուհետև

զտկարութին զօրութեն իւրոյ վասն գինոյն ըմպելոյ . եթէ մարտիցեն ընդ նմա հսկայազունք՝ նա ինք ոչ զանգիտէ 'ի նոցանէն . և յայտ է՝ թէ որչափ ըմպէ ոք գինի և արբենայ, ոչ հոգայ, ոչ զարհուրի, ոչ տրտմի, ոչ վշտանայ ։ Սոյնպէս և ուսումն վարդապետութեն տեառն մերոյ յորժամ ըմբեմք զնա՝ և խառնի 'ի միտս մեր, և զօրացուցանէ զտկարութի մեր, և մոռանամք մեք զանաւագութիւն մեր . և հանէ առնու 'ի մէնջ զամենայն հոգս և զտրտմութիւս ։

Իսկ առաւել քան զամենայն բանս իմաստութեան գինի մխիթարէ զսիրտս սգաւորաց . զի եթէ նստեալ մխիթարեսցես զայն՝ որոց սուգն և տրտմութիւն և ցաւքն և դատաստանք իցեն, որչափ և կշռել համեմատեսցես դու զժամանակն ընդ չարչարանսն որ առաջի կան նորա, զարթուցանելով զարթուցանես դու զմիտս նորա՝ յիշել նմա զկորուստն իւր ։ Ապա եթէ արբուցանիցես և արբեցուցանես դու զնա, լռես դադարես դու 'ի նմանէն . և գինին մոռացեալ մերժէ 'ի նմանէն զամենայն չարիս և զտրտմութիւս նորա ։ Եւ այն՝ որ վառեալ բորբոքի հուր չարչարանաց իւրոց 'ի միտս իւր, որ իբրև լապտեր լուցեալ վառեալ էր, գինի լռեալ խաղաղեալ դադարեցուցանէ և 'ի քուն տանի ։ Սոյնպէս և մեք յորժամ և դէպ լինիցի մեզ իրք յաշխարհի, և խնդրիցեմք մխիթարութիւն վասն նոցա և ոչ գտանիցեմք, յորժամ դառնայցեմք առ ուսումն վարդապետութեն տեառն մերոյ՝ յայնժամ առ սակաւ սակաւ սպրդանէ մոռանէ 'ի սրտս մեր ։ Եւ իբրև խոստովան լինիմք և ցնծամք 'ի նա, լռեմք դադարեմք այնուհետև և յայսմ ամենայնէ իրաց՝ որ վառեալ այրէին զմեզ ։ Եւ յայնմիկ նմանեցաւ ուսումն վարդապետութեն տեառն մերոյ գինոյ ։

Որով դարձեալ նմանեալ է ուսումն վարդապետութեան տեառն մերոյ գինոյ, ասացից . եթէ դէպ լինի առն աղքատոյ բազմեալ 'ի տուն արքայութեան ըմպել 'ի գինոյ արքունի և արբենալ, մոռանայ այնուհետև զտուն աղքատութեան իւրոյ ։ Եւ ոտքն որ ծարաւին ածին զնա 'ի տուն արքունի, իբրև մտանէ ըմպէ նա 'ի գինոյ արքունի՝ ոչ տեղեկա-

նման ոտք նորա տանել զնա անդրէն 'ի տուն աղքատութեան իւրոյ. քանզի արբ նա գինի և արբեցաւ: Սոյնպէս և մեք յորժամ կոչիմք յեկեղեցի տեառն մերոյ, և ըմպեմք 'ի վարդապետութէ անտի նորա, և մտանէ խառնի 'ի միտս և 'ի խորհուրդս մեր, մոռանամք այնուհետև զմնակութիւն մեր զառաջին. և ոչ տեղեկանան ոտք մեր տանել զմեզ 'ի բնակութի կռապաշտութե մերոյ, և ընդ ճանապարհն՝ ընդ որ եկաքն 'ի հեթանոսութէ անտի. և ոչ ևս այլ դառնամք առ նա [1], զի մոռացեալ եղև նա մտաց մերոց վասն գինոյ ըմպելոյ:

Նաև այն՝ զի ասէ տէր մեր, «Որ հանէ քեզ ապտակ մի 'ի ծնօտ քո, մատո դու նմա և զմիւսն ևս. և որ հանէ զքաձկոն քո, տուր նմա զշապիկս քո. որ ոք ինչ խնդրէ 'ի քէն, մի արգելուր դու 'ի նմանէ. և որ առնու ոք ինչ զքո, մի խնդրեր դու զայն 'ի նմանէ», զայս ամենայն արբեալք կարեն առնել: Զի եթէ ըմպեմք արբենամք և ընկղմիմք յուսումն վարդապետութե տեառն մերոյ, և ապա կարեմք մեք առնել զայս ամենայն: Քանզի զարբեալ հարկանեն, և նա ծաղր առնէ. կորուսանէ, և ոչ խնդրէ. հանեն առնուն որ ինչ զոյ նորա, և նա ոչ զգայ. ծաղր առնեն զնա, և նա ոչ ինչ ածէ զմտաւ: Սոյնպէս և մեք յորժամ ըմպեմք զուսումն վարդապետութեան տեառն մերոյ՝ որ նա ինքն է ուրախարար՝ և արբենամք նովաւ, կարեմք մեք այնուհետև առնել զայս ամենայն զոր լուաք: Եթէ ծաղր և այպն կատականաց արասցեն զմեզ կռապաշտ հեթանոսք, այնոքիկ՝ որ ունայնացեալ աւերակ թափուր են 'ի գինոյ աստի յայսմանէ զոր արբաք, ոչ ինչ համարիմք մեք զխեղկատակութի նոցա վասն արբեցութեն մերոյ. և եթէ բամբասեն ինչ զմեզ, ոչ ինչ փոյթ է մեզ. զոխս և զսրտմտութի մեք ումեք ոչ պահեմք: Նա և զցաւս չարաչարս գինի կարէ մոռացուցանել. քանզի յորժամ մահապարտ ոք լինի, և հանեն սպանանել զնա, արբուցանեն նմա գինի՝ զի աներկիւղ և անցաւ իցէ նա. սոյնպէս և հաւատացեալք յորժամ ըմպեն զու-

1 Յօրինակին 'ի լուսանցսն ընդ նայն:

եթէ նորոգ և օտարաբար բխեաց կենարար ածուին, այլ էր իսկ երբեմն աստ։ Եւ գրեալ է 'ի սկիզբն գրոցն այսպէս. ասէ. «Ո՛վ մեծութիւնք մեծութեանց, յիմարութիւն, զօրութիւն և զարմանք. այն զի չիք ինչ ասել զնմանէն, և ոչ խորհել վասն նորա, և չիք իմիք նմանեցուցանել զնա»։

Արդ զամենայն մատեանս նորա 'ի բաց թողցուք, և ընդդէմ այսր բանի ասասցուք՝ եթէ այս ինչ զոր ասես դու, Մարկիոն, արդարեւ ճշմարիտ ոչ պատմի նա լեզուաւ, և ոչ լինի մեկնեալ խորհրդովք, և ոչ նման է նմա։ Արդ կարկեաց լուռ լեր, և մի խօսիր վասն որոյ դուդ յամառեալ ես և ասես՝ եթէ ոչ պատմի նա, և ոչ գոյ խորհել զնմանէն, և ոչ նման է նա իմիք։ Որչափ ինչ ստեաց Մարկիոն, զի ոչ խօսի նա 'ի ճշմարիտ հիմանէ անտի, և ես ցուցից. ասէ տէր՝ յաւետարանի անդ իւրում, եթէ ամենայն ինչ որ միանգամ է յաշխարհէ աստի՝ նման են հաւատք յիրս յիրս. ասէ այսպէս՝ եթէ նման է շինուածոյ, գինոյ, հանդերձի, հրոյ, սերմանեաց, արքայութեան, արծաթոյ, քանքարի, տնկոյ, հատոյ մանանխոյ և խմորոյ։ Արդ զիա՞րդ մարթէ ոք լսել աւետարանին, զի ասէ՝ այսմ ամենայնի նման են հաւատք կերպարանօքն իւրեանց։ Եւ դարձեալ լուիցէ Մարկիոնի, զի ասէ՝ ոչ նման է իմիք։ Եւ որո՛վ նման է նա այսմ ամենայնի իրաց, ես ցուցանեմ առ այժմ։

Նման է շինուածոյ, յայսմիկ՝ զի որպէս շինուած 'ի բազում արարածոց ժողովին, յանդամոց յօդի և լինի մի տուն, նոյնպէս և մեք յամենայն ազգաց և յամենայն լեզուաց և յամենայն թագաւորութեանց և յամենայն մտաց ժողովիմք, և լինիմք մի միտք, կատարեալ ժողովուրդք, խորան սուրբ, բնակետղ այ։ Նման են դարձեալ շինուածոց. քանզի մարդ յորժամ շինէ շինուած, ոչ արհամարհէ վասն ամենայն պիտոյից՝ որ ինչ միանգամ պէտք իցեն նմա 'ի նիւթ շինուածոցն ժողովել նմա և բերել քար, փայտ և եղեգն, հող և երկաթ և պղինձ, և զամենայն իրս պիտոյից 'ի նիւթ շինուածոյն. ապա եթէ մի մի 'ի նոցանէն արհամարհէ, սակայն և ոչ շինուածն նորա

պսակեալ կատարի ։ Սոյնպէս և մեք․ ոչ է մեզ պարտ արհամարհել, յայսմիկ՝ զի շինեմք մեք զհաւատս պահովք, սրբութե՟ք, տուրս տալով և հիւանդս տեսանելով, զեղքարս սիրելով, և ա՟ծպաշտութե՟ք և դրունս եկեղեցոյ կոխելով, և ստէպ ստէպ աղօթիւք կալով, և զխորհուրդս գրոց քննելով․ և եթէ զմի մի 'ի սոցանէն արհամարհեմք մեք, սակայն և ոչ հաւատք մեր շինին ։ Այլ զոր օրինակ այնոքիկ՝ որոց շինուածն իցէ՝ ոչ ննջեն, որպէս և Դաւիթ ինքնին ասէ, "Ոչ տաց քուն աչաց իմոց, և ոչ նինջ արտևանաց իմոց մինչև շինեցից զտաճար տեառն և տեղի հանգստեան ա՟յ Յակոբայ", սոյնպէս և մեք պարտիմք ընթանալ 'ի տուէ, և հսկել և տքնել 'ի գիշերի աղօթիւք և խնդրուածովք, զի և մեք շինեալ լինիցիմք 'ի վերայ հիմանն առաքելոց և մարգարէից․ որպէս և Առաքեալ ասէ ։ Զի եթէ որք հողեղէն տունս շինեն՝ տան զանձինս իւրեանց աշխատութեան, զի արասցեն իւրեանց յարկս փոքրժամանակեանս, այլ մեք զբանակետղն յաւիտենից շինեմք անձանց մերոց, և տուն փառաց յերկինս՝ առաւել արժան է մեզ աշխատելնել և վաստակել ։

Եւ զոր օրինակ այնոքիկ՝ որ շինեն զշինուածս՝ ոչ երբէք ամաչեն նոքա, յորժամ ոք տեսանիցէ զնոսա՝ զի քաղիցեն եղէգն, և հարկանիցեն փայտ, և գլիցեն վէմս, և կրիցեն քար, և թագուցանել զգործս իւրեանց չէ ինչ մարթ․ որպէս և մեզ չէ պարտ ումեք 'ի մէնջ ամաչել այսու բարիօք և գեղեցիկ պտղովս զոր շինեմք, և չէ ինչ մեզ մարթ թագչելոյ, և կոխել մեզ զդրունս եկեղեցոյ, և զհիւանդս տեսանելով, և տուրս տալով, և յաղօթս կալով, և ծոմ պահօք․ և եթէ ոք ամաչէ յայսմիկ, ոչ կարէ նա լինել նիւթ շինուածոյ ա՟ծութեան ։ Բայց ոյք շինեն զշինուածս, թէպէտ և ինքն շինուածն ոչ թագչի, սակայն ոչ եթէ զի տեսցեն զնոսա ընկերք իւրեանց և գովեսցեն զնոսա՝ առնեն 'ի կրել, մատուցանեն որ ինչ պիտոյ իցէ 'ի նիւթ շինուածոյն, այլ վասն անձանց իւրեանց աշխատին և վաստակին․ դարձեալ և արտաքինք տեսանեն զնոսա, զի ոչ եթէ զի գովեսցին 'ի մարդկանէ՝ վաստակին ։ Սոյնպէս և մեք․ ոչ է արժան թագչել, և

ոչ պարտիմք դարձեալ առնել[1], որպէս զի տեսցեն զմեզ մարդիկ և գովեսցեն, և ոչ վասն այլոց գովուե ընթանայցեմք։ Այլ որպէս ոմանք՝ զի անձանց մերոց առնեմք զողորմութիս, և այլք՝ ոյք դիպեսցին մեզ՝ տեսանիցեն զմեզ, զի ոչ եթէ վասն նոցա աշխատիմք մեք։

Եւ զոր օրինակ որոց շինուածք իցեն՝ փութացեալ են՝ի շինել և՝ի կատարել զամենայն ժամանակս ամարայնոյ, զի ընդ յարկաւ[2] լինիցին և հանգիցեն յաւուրս ձմերայնոյ, զի աւուրք ամարայնոյ են շինուածոց։ Իսկ այն՝ որ յաւուր ամարայնոյ ոչ շինէ իւր շինուածըս՝ անարգանս և թշնամանս հասցեն նմա յաւուրս ձմերայնոյ։ Եւ որպէս եղեալ են ժամանակք շինուածոց աւուրք ամարայնոյ, սոյնպէս եղեալ է ժամանակ բնակութեաս մերում որ աստէն յաշխարհի է՝ ընթանալ փութալ և շինել մեզ բնակութիս յերկինս։ Եւ որ յայսմ ժամանակի ոչ պատրաստէ և առնէ իւր տեղի հանգստեան ընդ արդարս, յետ մահու իւրոյ ոչ կարէ նա շինել և պատրաստել իւր. որպէս զի չէ ինչ մարթ շինել շինուածոց յաւուրս ձմերայնոյ։ Եւ զայս առակ զոր նմանեցոյց տէր մեր զհաւատսն իւր շինուածոց մարդկան, զբանն մարգարէութեան կատարեաց։ Ասէ Եսայի. "Բայց Սիոն ասաց՝ թէ եթող զիս տէր, և մոռացաւ զիս աստուած. միթէ մոռասցի կին զմանուկ իւր, կամ ո՞չ գթասցէ՝ի ծնունդս որովայնի իւրոյ. և եթէ մոռասցի զայս կին, սակայն ես ոչ մոռացայց՝ ասէ տէր։ Ահաւադիկ՝ի վերայ ձեռաց իմոց նկարեցի զպարիսպս քո, և առաջի աչաց իմոց ես դու յամենայն ժամ"։

Դարձեալ ասէ Դաւիթ. "Զվէմն զոր անարգեցին շինողքն, նա եղև գլուխ անկեան շինուածոց.՝ի տեառնէ եղև այս"։ Եւ ընդունի զայս Պաւղոս՝ի մարգարէէ անտի և յաւետարանէ. ասէ. "Նա ինքն գլուխ անկեան շինուածոյս Քրիստոս, որ նովաւ յարդի և պատշաճի ամենայն շինուածն"։ Եւ յայտ առնէ՝ եթէ մեք հաւատացեալս եմք շինած, և Քրիստոս գլուխ անկեան շինուածոյ։ Եւ Դաւիթ ոչ եղև ան-

1 Յօրինակին տանուլ։ 2 Յօրինակին արկաւ։

կիւն , զի և մի որմ շինուածոց շինեցաւ 'ի նմա՝ թլփատութեան միայն ։ Իսկ Քրիստոս քանզի քարոզեաց նա զթլփատութիւն և զանթլփատութիւն , շինեցան 'ի նմանէ երկու որմք , և եղև ինքն գլուխ ։ Եւ զխարդ և կամ որպէս եղև նա վէմ անարգեալ, յաւետարանի անդ ասէ . "Պարտ է որդւոյ մարդոյ ընդ բազում չարչարանս անցանել, խոտել և անարգել յերիցանց և 'ի դպրաց ,,։ Եւ որպէս զի ոչ հեռի է 'ի նմանէ անուն վիմի, Առաքեալ ինքնին ասէ վասն հոգևոր վիմին՝ որ արբուցանէր որդւոցն Իսրայելի . "Այլ վէմն այն նա ինքն է Քրիստոս ,,։ Նա և զՇմաւոն զոր եթող Քրիստոս փոխանակ ընդ իւր , զի առաջնորդեսցէ եկեղեցւոյ նորա , կոչեաց զնա ։ Եւ 'ի վերայ այսր առակաց մարգարէից եդաւ եկեղեցի 'ի նմանութիւն շինուածոց ։

Վասն այսորիկ նմանեցոյց տէր մեր զհաւատս իւր շինուածոց, յայսմիկ՝ զի ասէ . "Ամենայն որ գայ առ իս, և լսէ զբանս իմ և առնէ զնոսա, նմանեցաւ առն իմաստնոյ՝ որ շինեաց զտուն իւր, փորեաց և խորեաց, և եդ զհիմն 'ի վերայ ապառաժուտ վիմի ,,։ Եւ յայսմիկ՝ զի ասէ փորեաց և խորեաց, յայտ առնէ մեզ՝ զի նորոգումն և հաստատութիւն զոր ընդունի ուսումն վարդապետութեան ոչ եթէ գալով եկն մեզ, այլ էր իսկ 'ի մեզ երբեմն ։ Եւ իբրու յաճախեցեմ 'ի փորել, ուստի կայցեմք մեք 'ի վերայ ճշմարտութեանն՝ եթէ ոչ էր հասեալ մեզ 'ի Հօրէ 'ի յառաջնմէ 'ի յաւիտեանցն ։ Եւ յորժամ հայիցիմք 'ի վէմն անդր ապառաժին՝ որ պառակեալք մեք 'ի նմա, և տեսանեմք զի հաստատուն է նա յառաջին ստեղծուածոյ իւրմէ, և յորժամ անկեալ փլանի՝ տրորի հաստատութիւն նորա 'ի փլանելոյ անտի և 'ի տրորելոյ, և առնու ճարտարապետն հաստ անօթ երկաթեղէն, և փորէ առնու 'ի նմանէ զաւելորդն զերկիրն և ըղհողն փլեալ, և դնէ զհիմն նորա 'ի վերայ ապառաժուտ վիմին հաստատնոյ՝ որ հանդարտել կարէ զօրութեան շինուածոց, սոյնպէս և մեք 'ի մանկութեան մերոյ սուրբք և անարատք էաք 'ի վարդապետութիւն ա͞ծութեանն. և իբրև անկանի հաստատութիւն ճշմարտութեան մերոյ 'ի գիջութիւն պռնկութեան և 'ի ցանկութիւն յիմարութեան , այնուհետև ոչ կարեմք մեք հան-

դարտել զօրութեանն հաստատութեան շինուածոյն։ Բայց յորժամ առնումք մեք 'ի ձեռն զաւետարանն փրկութեան[1] 'ի նմանութիւն երկաթոյ, և քաղեմք հանեմք 'ի մէնջ զայս ամենայն զգործս չարութեանց, և ապա դնեմք մեք զհիմն հաւատոյ 'ի վերայ սրտից մերոց 'ի վերայ ապառաժուտ վիմին՝ իբրու սրբեալ իցեն միտք մեր յամենայն չարեաց. և իբրև դնին հիմունք շինուածոյն, լինիմք մեք այնուհետև և մշակք և ճարտարապետք։ Եւ զոր օրինակ ամենայն ինչ որ միանգամ պակաս ինչ իցէ ճարտարապետին՝ ոչ գոյ երթալ նմա ուրեք, բայց առ դուրս տեառն գործոյն, սոյնպէս և մեք գիտասցուք՝ եթէ մեծատուն է սա՝ որ տէրս է գործոյս մերոյ, յորմէ առաք մեք 'ի նմանէ առհաւատչեայ զայս շինուածս շինել նմա։ Զի ամենայն ինչ որ միանգամ պակասիցէ մեզ նիւթ գործոյ կենաց, 'ի նմանէ խնդրեսցուք՝ զսրբութիւն, զողորմութիւն, զսէր, զլրջմտութիւն, զեղբայրսիրութիւն. և նա ինքնին 'ի բարեաց գանձուց իւրոց լի ձեռամբ իւրով տայ մեզ, և կոխել մեզ զդրունս նորա, և խնդրել 'ի նմանէն։ Եւ յայսմ ամենայնի նմանեալ է վարդապետութիւն տեառն մերոյ շինուածոց։

Եւ դարձեալ նմանեցուցանէ տէր մեր զհաւատսոյն իւր գինոյ. յայնմիկ՝ զի ասէ. «Ոչ ոք արկանէ զգինի նոր 'ի տիկս հինս. ապա թէ ոչ՝ պայթուցանէ գինին նոր զտիկս հինս. գինին հեղու, և տիկքն կորնչին. այլ արկանեն գինի նոր 'ի տիկս նորս»։ Արդ զի՞նչ արդեօք կարծիցեն ոյք նմանեցուցանիցեն, մի՛ թէ նորութիւն օտա՞ր իցէ հնութեան. արդեօք կարծիցեն եթէ տիկք հինք 'ի բնէ՞ իւրեանց հնացեալ են, և երբեք նոցա նոր ոչ են եղեալ։ Յայտ է յամենայն մարդոյ, զի յորժամ հաստատեաց զնոսա աստուած, կամ իբր արար զնոսա ճարտարապետն իւրեանց, նոր էին և հանդարտէին զօրութեան նոր գինոյն. ապա եթէ հնայցեն՝ ոչ հանդարտեն նոքա զօրութեան նոր գինոյն։ Սոյնպէս և մեք յառաջին արարածոց մերոյ նոր, գեղեցիկք և վայելուչք եաք 'ի յընդունել զու-

1 Յօրինակին 'ի լուսանցսն ճշմարտութեան։

սումն վարդապետութեանն տ՟յ վասն անմեղութե մանկութե : Եւ դարձեալ յետ բազում ամաց մերոց մինչ դեռ սուրբ իցեմք 'ի չարեաց՝ իբրև մանուկ հանդարտեմք ընդունել զզօրութիւն վարդապետութեանն, որպէս տիկք նորք՝ զի հանդարտեն զօրութե նոր գինւոյն : Ապա եթէ աղտեղանամք և մաշիմք 'ի ցանկութիւս յիմարութե, 'ի գլացութի ագահութե, և յարբեցութի գիջութե, յայնժամ հարեալ տրորեալ մաշիմք մեք 'ի մեղս և յանօրէնութիւնս մեր . ոչ կարեմք մեք այնուհետև ընդունել զուսումն վարդապետութեան :

Եւ յայտ է այս, զի 'ի մանկութե մերում իբրև հաստեաց զմեզ Ա՟ծ, ոչ գոյր 'ի մեզ այն՝ զոր համարեցան . զի նոքա հեռացեալ մերժեն զմեզ 'ի կենաց . և ապա յետոյ յարին 'ի մեզ գործք չարութե . որպէս տիկքն՝ զի յետոյ մաշեալ հնացեալ լինին : Եւ վկայէ ինձ Առաքեալ յասելն իւրում, ասէ . "Մի՛ տղայք լինիք 'ի միտս ձեր, այլ 'ի չարեաց տղայացարուք դուք, զի 'ի միտս ձեր կատարեալք լինիջիք" : Եւ իբրև գտեալ լինիմք մեք անմեղք 'ի չարէ իբրև զառաջին ստեղծուածն մեր, յայնժամ կարեմք մեք ընդունել զուսումն վարդապետութեանն . և տիկքն զի հանդարտեն զօրութեանն նոր գինւոյն՝ որ 'ի նորութե իւրեանց : Որպէս և մարգարէն ասէ . "Ընդէ՞ր ասեն տունդ Իսրայէլի՝ եթէ մեղք և անօրէնութիւնք մեր 'ի մեզ են, և մեք 'ի նոսին մաշեալ եմք" : Եւ յայտ առնէ մարգարէն՝ եթէ ստեղծուածն մեր առաջին նոր էր, և մեղքն և անօրէնութիւնք առնեն հին և մաշ :

Նմանեցոյց տէր մեր զուսումն վարդապետութե իւրոյ գինւոյ, և լցեալ կատարէ զբանս մարգարէին . զի ասէ Դաւիթ . "Հանէ Ա՟ծ հաց յերկրէ, և գինի ուրախ առնէ զսիրտ մարդոյ" : Եւ զոր օրինակ մարգարէն ասաց վասն գինւոյ՝ եթէ ուրախարար է, նոյնպէս և ուսումն վարդապետութե տեառն մերոյ . ուրախարար մեր է : Զոր օրինակ գինի ոչ միայն ուրախ առնէ զտրտմեալս, այլ բարձրացուցանէ զխոնարհս, և մեծացուցանէ զաղքատս, և հանէ առնու զհոգս և զտրտմութիւս յամենայն մտաց . եթէ ոք տկար իցէ զօրութե, և ընպիցէ գինի, մոռանայ նա այնուհետև

զտկարութիւն զօրութեան իւրոյ վասն գինւոյն ըմպելոյ. եթէ մարտիցեն ընդ նմա հսկայազունք՝ նա ինչ ոչ զանգիտէ 'ի նոցանէն. և յայտ է՝ թէ որչափ ըմպէ ոք գինի և արբենայ, ոչ հոգայ, ոչ զարհուրի, ոչ տրտմի, ոչ վշտանայ: Սոյնպէս և ուսումն վարդապետութեան տեառն մերոյ յորժամ ըմբեմք զնա՝ և խառնի 'ի միտս մեր, և զօրացուցանէ զտկարութիւն մեր, և մոռանամք մեք զանաւագութիւն մեր. և հանէ առնու 'ի մէնջ զամենայն հոգս և զտրտմութիւնս:

Իսկ առաւել քան զամենայն բանս իմաստութեան գինի մխիթարէ զսիրտս սգաւորաց. զի եթէ նստեալ մխիթարեսցես զայն՝ որոց սուգն և տրտմութիւն և ցաւքն և դատաստանք իցեն, որչափ և կշռել համեմատեսցես դու զժամանակն ընդ չարչարանսն որ առաջի կան նորա, զարթուցանելով զարթուցանես դու զմիտս նորա՝ յիշել նմա զկորուստն իւր: Ապա եթէ արբուցանիցես և արբեցուցանես դու զնա, լռես դադարես դու 'ի նմանէն. և գինին մոռացեալ մերժէ 'ի նմանէն զամենայն չարիս և զտրտմութիւնս նորա: Եւ այն՝ որ վառեալ բորբոքի հուր չարչարանաց իւրոց 'ի միտս իւր, որ իբրև լապտեր լուցեալ վառեալ էր, գինի լռեալ խաղաղեալ դադարեցուցանէ և 'ի քուն տանի: Սոյնպէս և մեք յորժամ և դէպ լինիցի մեզ իրք յաշխարհի, և խնդրիցեմք մխիթարութիւն վասն նոցա և ոչ գտանիցեմք, յորժամ դառնայցեմք առ ուսումն վարդապետութեան տեառն մերոյ՝ յայնժամ առ սակաւ սակաւ սպրդանէ մոռանէ 'ի սրտս մեր: Եւ իբրև խոստովան լինիմք և ցնծամք 'ի նա, լռեմք դադարեմք այնուհետև և յայսմ ամենայնէ իրաց՝ որ վառեալ այրէին զմեզ: Եւ յայսմիկ նմանեցաւ ուսումն վարդապետութեան տեառն մերոյ գինւոյ:

Որով դարձեալ նմանեալ է ուսումն վարդապետութեան տեառն մերոյ գինւոյ, ասացից. եթէ դէպ լինի առն աղքատոյ բազմեալ 'ի տուն արքայութեան ըմպել 'ի գինւոյ արքունի և արբենալ, մոռանայ այնուհետև զտուն աղքատութեան իւրոյ: Եւ ոտքն որ ծարաւին ածին զնա 'ի տուն արքունի, իբրև մտանէ ըմպէ նա 'ի գինւոյ արքունի՝ ոչ տեղեկա-

նան ոտք նորա տանել զնա անդրէն 'ի տուն աղքատութեան իւրոյ. քանզի արբ նա գինի և արբեցաւ։ Սոյնպէս և մեք յորժամ կոչիմք յեկեղեցի տեառն մերոյ, և ըմպեմք 'ի վարդապետութենէ անտի նորա, և մտանէ խառնի 'ի միտս և 'ի խորհուրդս մեր, մոռանամք այնուհետև զբնակութիւն մեր զառաջին. և ոչ տեղեկանան ոտք մեր տանել զմեզ 'ի բնակութիւն կռապաշտութեան մերոյ, և ընդ ճանապարհն՝ ընդ որ եկաքն 'ի հեթանոսութենէ անտի. և ոչ ևս այլ դառնամք առ նա[1], զի մոռացեալ եղև նա մտաց մերոց վասն գինւոյ ըմպելոյ։

Նա և այն՝ զի ասէ տէր մեր, "Որ հանէ քեզ ապտակ մի 'ի ծնօտ քո, մատո դու նմա և զմիւսն ևս. և որ հանէ զբաճկոն քո, տուր նմա զշապիկս քո. որ ոք ինչ խնդրէ 'ի քէն, մի արգելուր դու 'ի նմանէ. և որ առնու ոք ինչ զքո, մի խնդրեր դու զայն 'ի նմանէ,,, զայս ամենայն արբեալք կարեն առնել։ Զի եթէ ըմպեմք արբենամք և ընկղմիմք յուսումն վարդապետութեան տեառն մերոյ, և ապա կարեմք մեք առնել զայս ամենայն։ Քանզի զարբեալ հարկանեն, և նա ծաղր առնէ. կորուսանէ, և ոչ խնդրէ. հանեն առնուն որ ինչ գոյ նորա, և նա ոչ զգայ. ծաղր առնեն զնա, և նա ոչ ինչ ածէ զմտաւ։ Սոյնպէս և մեք յորժամ ըմպեմք զուսումն վարդապետութեան տեառն մերոյ՝ որ նա ինքն է ուրախարար՝ և արբենամք նովաւ, կարեմք մեք այնուհետև առնել զայս ամենայն զոր լուաք։ Եթէ ծաղր և այպն կատականաց արասցեն զմեզ կռապաշտ հեթանոսք, այնոքիկ՝ որ ունայնացեալ աւերակ թափուր են 'ի գինւոյ աստի յայսմանէ զոր արբաք, ոչ ինչ համարիմք մեք զխեղկատակութիւն նոցա վասն արբեցութեան մերոյ. և եթէ բամբասեն ինչ զմեզ, ոչ ինչ փոյթ է մեզ. զոխս և զտրտմութիւն մեք ումեք ոչ պահեմք։ Նա և զցաւս չարաչարս գինի կարէ մոռացուցանել. քանզի յորժամ մահապարտ ոք լինի, և հանեն սպանանել զնա, արբուցանեն նմա գինի՝ զի աներկիւղ և անցաւ իցէ նա. սոյնպէս և հաւատացեալք յորժամ ըմպեն զու-

1 Յօրինակին 'ի լուսանցան ընդ. նոյն։

սումն վարդապետութեանն տեառն մերոյ՝ արքենա-նան. մահապարտեալ լինի նա առաջի դատաւորաց, և մեռանի աներկիւղ. և ոչ ինչ համարին նոքա զահ և զերկեւղ դատաւորաց, զի արբեալ են նոքա յու-սումն վարդապետութեան տեառն մերոյ։ Վասն այսո-րիկ նմանեալ է ուսումն վարդապետութեան տեառն գինոյ։

Դարձեալ նմանեալ է ուսումն վարդապետութեան տեառն մերոյ ձորձոց։ Եթէ արդարեւ ճշմարիտ իցէ մեզ՝ եթէ զուսումն իւր ճշմարիտ կոչեաց տէր մեր ձորձս, գիտասցէ զի յառաջագոյն կանխեաց Մովսէս նշանակեաց հանդերձ ձորձոց յառակս օրինակաց խորհրդոց այսր նոր վարդապետութեան։ Արար Մով-սէս Ահարոնի և որդւոցն նորա վակաս և վտաւակս և կամարս և պէսպէս նոր հանդերձս. և ած կացոյց զնոսա առաջի ա̃յ, զի հաճոյ իցեն նմա։ Իբրև անցին որդիքն Ահարոնի զօրինօք, ել հուր յերեսաց ա̃յ և եկեր զնոսա. և ասէ Մովսէս ցազգատոհմ նոցա. "Մատիք առէք, հանէք դուք զնոսա արտաքոյ բա-նակի"։ Եւ Ահարոնի, Եղիազարու, Իթամարայ ա-սէ Մովսէս. "Մի լայք, զի մի պղծիցէք դուք զհան-դերձս սրբութեան զոր ունիցիք"։ Եւ վասն այսորիկ և տէր մեր նմանեցոյց զվարդապետութիւն իւր ձորձոց։ Եւ այսպէս նմանեալ է ճշմարիտ ուսումն տեառն մե-րոյ նոր ձորձոց, և պատուական և սուրբ հանդերձի։ Քանզի ամենայն մարդ՝ որ զգեցեալ իցէ զհանդերձ պատուի, փառք և պատիւ և մեծ հրապարակ լինի նմա. վասն արտաքին հանդերձին նորա երկնչին 'ի նմանէն, և ընդանիք նորա պատուեն զնա, և բուռն տեարք որք հանեն մշակս և սատարս 'ի գործ թշնա-մանացն ոչ մերձենան առ նա վասն պատուի հան-դերձից նորա։ Սոյնպէս և մեք, քանզի զգեցեալ եմք զուսումն վարդապետութեան, առաքեալք ուրախ լինին 'ի մեզ, և հրեշտակք երկնից պատուեն և փա-ռաւորեն զմեզ, զօրք դիւաց փախչին 'ի մէնջ, և ցան-կութիւնք հնազանդին մեզ։

Այլ զոր օրինակ արգելուն և պահեն ձորձք հան-դերձի զցուրտ և զտօթ և զթշնամանս յամենայնէ՝ որ

զգեցեալն իցէ զնոսա, սոյնպէս և ուսումն վարդապետութեն տեառն մերոյ արգելու և կարճէ 'ի մէնջ զամենայն հիւանդութիւնս և զտրտմութիւնս և զթշնամանըս ։ Այլ որպէս զգեցեալն իցեն հանդերձ պատուի և փառաց՝ անխայեցան 'ի հանդերձս իւրեանց, և պահեն զնա յամենայն աղտեղութէ պղծութեան. քանզի թէ անարգիցեն և աղտեղանան հանդերձքն զոր զգեցեալ իցեն, և նոքա իսկ ծաղր և այպն կատականաց լինէին, զի հասին անարգանք և թշնամանք 'ի հանդերձս նոցա. զի թէ անարգեն զհանդերձս իւրեանց և կորուսանեն, ընդ նոսին և կորնչին պատիւ փառաց իւրեանց ։ Սոյնպէս և ոյք զգեցեալ իցեն զուսումն վարդապետութեն տեառն մերոյ, եթէ արհամարհեն զնովաւ և պղծեն զնա, յայնժամ և նոքա կորուսանեն և զպատիւն՝ որ վասն վարդապետութեն տեառն մերոյ գտին ։

Ոի եթէ ոք արտաքոյ զգեցեալ իցէ զվարդապետութի տեառն մերոյ բանիւք, և սրտիւ իւրով մերկ է 'ի բարիոք վարդապետութէ անտի, սա նմանեալ է Նաբաթու և Աբիութայ որդւոցն Ահարոնի. իբրու զգեցեալ էին զհանդերձ սրբութե, և առանց հրամանի համարձակեցան ըստ կամս իւրեանց մատուցանել զսպաս պաշտաման սեղանոյն, և այրեցան 'ի հուր ։ Սոյնպէս և ոյք ունիցին զանուն տեառն մերոյ արտաքոյ՝ և զկամս նորա ոչ առնիցեն, 'ի պատիժս պատուհասից անկանին, զի պղծեն զհանդերձ սրբութե. և դատապարտեալ պարտաւորին ։ Նա և յետ մահուանն Նաբաթու և Աբիութայ հրաման ետ Մովսէս եղբարց նոցա, զի մի լացցեն և պղծեսցեն զսուրբ հանդերձս իւրեանց ։ Եւ զոր օրինակ որդիք Ահարոնի մինչ դեռ զհանդերձս սրբութեն զգեցեալ էին, և գտան բարժանել միտք նոցա 'ի կամաց՝ մեռեալս առին զնոսա եղբարք իւրեանց, և հանին արտաքոյ բանակին, այսպէս և մեք՝ յորժամ յումեք Երկմտութի ինչ գտցի՝ և գործք ապականութեան, թէպէտ և ծածկեսցէ զանձն իւր հանդերձիւ վարդապետութե, սակայն մեռեալ մերժեն զնա արտաքոյ քան զեկեղեցի, ոյք եղբարք սիրելիք էին նորա. և իբրև զմեռեալ արտաքոյ քան զբանակն կենդա-

նութեան ընկեցեալ լինի ։ Արդ նմանեալ է աւասիկ վարդապետութեան տեառն մերոյ ձորձոց , զի զգամք մեք նովաւ ։ Եւ նմանեալ է գինւոյ, զի խառնեցաւ 'ի միտս մեր . վասն այսորիկ ոչ է օտար . զի ամենայն ինչ որ միանգամ աստիցէ, նմանեալ է կերպս կերպս ։

Նաեւ յայսմ ամենայն առակս օրինակաց զօրէնս եւ զմարգարէս կատարեաց տէր մեր ։ Ձորձքն հին եւ մաշ՝ որպէս լուաք վասն տկացն , գիտասցուք զի եւ ձորձքն հին եւ մաշ ոչ եթէ 'ի բնէ է հին եւ մաշ , այլ իբրեւ աղտեղանեան եւ պղծին՝ ապա լինին հին եւ մաշ ։ Սոյնպէս եւ վարդապետութեան տեառն մերոյ՝ որ առաքեցաւ մեզ՝ զի լի կատարեալ բովանդակ զգեցցուք զնա իբրեւ զպատմուճան փառաց , եւ նորոգեն՝ կալցուք զնա ։ Ապա եթէ աղտեղեալ մաշեալ իցեմք 'ի մեղս մեր եւ տրորեալ , թէպէտ եւ կամիմք բաժանել զվարդապետութեան տեառն մերոյ, եւ ածել զկնի այսր հնութեն՝ որ մերձեցաւ 'ի մեզ, սակայն ոչ ինչ է միաբանութեան վարդապետութեն տեառն մերոյ ընդ մաշութենս մերում ։ Վասն այսորիկ ասէ տէր մեր . “Ոչ ոք է որ առնու պատառէ կապերտ 'ի նոր ձորձոց , եւ կարէ զնա 'ի վերայ հին եւ մաշ ձորձոց „ ։

Նմանեցոյց դարձեալ զվարդապետութիւնն իւր տէր մեր հրոյ . յայնմիկ՝ զի ասէ . “Հուր եկի արկանել յերկիր , եւ կամիմ եթէ արդէն իսկ բորբոքէր „ ։ Սակայն եւ զայս զմարգարէութեն սկիզբն կատարեաց ։ Ասէ տ̃ծ ցԵրեմիա մարգարէ . “Այսպէս ասէ տէր տ̃ծ զօրութեանց . փոխանակ զի խօսեցարուք զբանս զայս , արդ ահաւասիկ տամ ես զբանս իմ 'ի բերան քո , Երեմիա , իբրեւ զհուր . եւ ժողովուրդս այս եղիցի իբրեւ զփայտ , եւ այրեսցես զնոսա „ ։ Դարձեալ ասէ ինքն Երեմիա . “Ես ասացի՝ բամ զպատգամս մարգարէութեն քո 'ի բերանի իմում եւ այլ ոչ եւս յիշեցից , եւ յանուն քո ես 'ի վերայ տանն Իսրայէլի ոչ եւս մարգարէացայց . եւ եղեն պատգամք քո 'ի բերան իմում իբրեւ զհուր, զի բորբոքի եւ վառի յամենայն ոսկերս իմ . եւ կամեցայ ես հանդարտել ժուժկալ լինել մարգարէութեն իմում 'ի սրտի իմում , եւ ոչ կարացի համբերել „ ։

Եւ յայտ արար մեզ մարգարէն՝ եթէ յա՟յ յամենակալ 'ի տեառնէ եղեւ այս, զի կոչեսցին պարգեւք նորա հուր։ Եւ եկն Յիսուս իբրեւ կատարիչ մարգարէութե՟ն, կոչեաց զվարդապետութիւն իւր հուր. զի յայտ արասցէ՝ եթէ հաւասար են առաջին մարգարէութե՟ն։ Զոր օրինակ յայտ արար և եցոյց Երեմիա վասն հրոյն՝ որ վառէր և բորբոքէր 'ի սիրտ նորա, և նմա ինչ ոչ մեղանչէր՝ այլ օգնէր նմա, և այլքն որ ոչ առնէին զկամսն ա՟յ՝ նոքա իսկ պատգամքն հուրն որ ուրախարար էր և օգնական Երեմիայ՝ այրէր և կիզոյր զնոսա, սոյնպէս և պատգամք տեառն մերոյ. կոչեաց զնոսա հուր կիզելոյ. զի հուր ոչ եթէ զճշմարտութիւն այրէ և կիզու, ոչ զոսկի և ոչ զարծաթ և ոչ զականս պատուականս, այլ զփայտ, ըղխոտ, զեղէգն, որպէս և Առաքեալ ասէ. զի լցիչ եղեւ նա աւետարանի և մարգարէութե՟ն։ Այսպէս բնակէ հուր տեառն մերոյ 'ի սիրտս մեր, և զուարճացուցանէ զմեզ։ Եթէ հաստատուն և ճշմարիտք իցեմք հաւատովք, ոչ կիզու և այրէ զմեզ, այլ արթեցուցանէ զմեզ և պնդէ՝ քարոզել զճանապարհն, և կատարել զնա որպէս զԵրեմիա։ Եւ զայնոսիկ՝ որ վեհերոտք և դատարկացեալք էին, զի պնդէր պատգամք մարգարէութե՟ն տեառն մերոյ՝ զոր լսեն և ոչ առնեն զնոսա, նոքին իսկ պատգամքն հուր լինելոց է, և այրեն զնոսա։

Դարձեալ նմանեալ է վարդապետութի՟ն տեառն մերոյ հրոյ. զի հուր 'ի վեր ևեթ վառի և բորբոքի. զի ամենայն ինչ որ միանգամ 'ի վերուստ 'ի վայր արկանեն՝ 'ի խոնարհ գնայ, բայց հուր 'ի վեր ևեթ վառի և բորբոքի։ Եւ գերեալ վարին միտք մեր ընդ բարձունս երկնից հանդերձ սիրովն տեառն մերոյ. և իբրեւ ընդունիմք զվարդապետութի՟ն տեառն մերոյ, վառի և բորբոքի իբրեւ զհուր 'ի միտս մեր։ Դարձեալ նմանեալ է վարդապետութի՟ն տեառն մերոյ հրոյ. զի յորժամ բնակէ 'ի մեզ՝ վառի 'ի միտս մեր, և բորբոքի մարմինս մեր. այրէ և կիզու 'ի մէնջ զամենայն գործս ապականութե՟ն, զպոռնկութի՟ն, զպղծութի՟ն, զկռապաշտութի՟ն, զնենգութի՟ն, զոխութի՟ն, զդառնութի՟ն, և ամենայն չարութե՟ն հանդերձ։ Եւ նովին հրով կատա-

րիմք մեք անօթք գեղեցիկք 'ի պէտս զարդու աստուածութեան որպէս ոսկի և արծաթ՝ զի մերձեցաւ [1] 'ի հուր․ և կիզու և այրէ 'ի նմանէն հուրն զամենայն զաղտ և զժանգ, և մնայ ոսկին և արծաթն ճշմարիտ։ Այսպէս այրին 'ի մէնջ հրովն տեառն մերոյ ամենայն գործք ապականութեան, և կան մնան 'ի մեզ գործք բարութեան․ որք գեղեցկանան հրովն՝ կատարին սէր, գիտութիւն, ողորմութիւն, խոնարհութիւն և յօժարութիւն։ Եւ յայսմիկ նմանեալ է վարդապետութիւն տեառն մերոյ հրոյ։ Եւ յայսմ ամենայնի գտաք՝ զի զմարգարէութիւն հաստատեաց տէր մեր Յիսուս Քրիստոս, և 'ի հետս շաւղաց մարգարէից գնայր, և զնոսին կատարէր։

Դարձեալ նմանեցուցանէ տէր մեր զբանն կենդանութեան իւրոյ սերմանեաց։ Եւ զի նմանեցուցանէ երկրի՝ որ ընդունի զսերմանիս, յայնմիկ՝ զի ասէ․ "Ահաւասիկ ել սերմանահան սերմանել զսերմանիս իւր․ և 'ի սերմանելն անդ՝ էր որ անգանէր 'ի վերայ ճանապարհի, եկն կոխան՝ և թռչունք քաղեցին զնա․ և էր որ անկաւ 'ի վերայ ապառաժի, իբրև բուսաւ՝ վաղվաղակի ցամաքեցաւ, զի ոչ գոյր հիւթ 'ի ներքոյ արմատոց նորա․ և էր որ անկաւ 'ի մէջ փշոց, աճեցին փուշքն և հեղձուցին զնա․ և էր որ անկաւ յերկիր բարիոք, բուսաւ աճեաց և ետ զպտուղ"։ Եւ 'ի մեկնել իւրում վասն բանին, ասէ․ այն որ անկաւ 'ի վերայ ճանապարհին, նոքա են՝ որ լսեն զբանն, և գայ սատանայ յափշտակէ զբանն 'ի սրտէ նոցա։ Եւ այն որ անկաւ 'ի վերայ առապարին, նոքա են՝ որ իբրև լսեն զբանն, ուրախութեամբ ընդունին զնա․ այլ քանզի արմատք ոչ գոն նորա 'ի նմա, զի երբեմն հաւատան, և 'ի ժամանակս փորձութեան ուրանան։ Եւ այն որ անկաւ 'ի մէջ փշոցն, նոքա են՝ որ լուան զբանն, և հոգք աշխարհի և զբաղումն մեծութեան և 'ի ցանկութիւն յիմարութեան հեղձնուն, և անպտուղ լինին։ Եւ այն որ անկաւ յերկիր պարարտ, նոքա են՝ որ սրբով և յստակ մտօք զբանն ճշմարտութեան լուան, և ե-

1 Յօրինակին 'ի լուսանցսն դրանէ ։

զեն պտղաբերը։ Եւ յայտ արար և եցոյց մեզ՝ եթէ զմարդս բարիոքս կոչեաց երկիր բարիոք պարարտ։

Դարձեալ և միւսանգամ և յայսմիկ ևս գտաք, եթէ կատարիչ է նա մարգարէութեան. զի Երեմիա մարգարէ ասէ. «Այսպէս ասէ տէր ած, զտունն Հրիաստանաց և զբնակիչսն Երուսաղէմի ընտրեցէք դուք ձեզ երկիր բարիոք և պարարտ. և մի սերմանէք դուք ՚ի վերայ փշոց. սրբեցարուք առաջի տեառն, և ՚ի բաց արարէք զչարիս ՚ի սրտից ձերոց՝ տունդ Յուդայ և բնակիչք Երուսաղէմի»։ Եւ զայս առակս զոր ասաց տէր մեր՝ եթէ երկիր բարիոք տայ զպտուղ կենաց, յառաջագոյն կանխեաց մարգարէն և ասաց. նա և այն՝ ուր փուշք լինէին՝ եթէ ժրանայ մշակն քաղէ հանէ զփուշն, և ապրին սերմանիք կենդանութեան, զի մարգարէն իսկ ասաց՝ եթէ մեք եմք երկիր բարիոք և պարարտ, և գործք չարութեան փուշ։ Եւ զայս ևս պարտիմք գիտել՝ եթէ փուշք ոչ եթէ այլ ուստեք լինի նմա, այլ ՚ի նմանէն և ՚ի նոյն, որպէս հնութեան ձորձոցն և տկացն. և քաղ երկրի ոչ եթէ այլ ուստեք լինի, այլ յարհամարհանաց և ՚ի ծուլանաց։ Այսպէս և ամենայն գետինք՝ որ կորուսանեն զսերմանիսն, գտանեմք մեք զի ՚ի ծուլութենէ մշակին է. զի սերմանիքն որ անկան ՚ի վերայ Ճանապարհին, ոչ եթէ ինքն երկիրն ոչ կարէ ապրեցուցանել զսերմանիսն. քանզի երկիրն յորում Ճանապարհն կուռ հարաւ, հաւասար է նա ինքն ՚ի բնէ իւրմէ ամենայն երկրի. և վասն բազմութեան ոտիցն կոխելոյ անցաւոր մարդկան և անասնոց՝ կոխեցան սերմանիքն և կորեան։ Սոյնպէս և մեք, ՚ի բնէ մերմէ երկիր եմք մեք բարիոք՝ ընդունել զսերմանիս արքայութեան, և տալ զպտուղ կենաց. բայց եթէ տայցեմք զսիրտս մեր լինելոյ անցք Ճանապարհաց խօսից օտարոտեաց, ապա յայնժամ կոխեալ լինին բարիոք սերմանիքն՝ որ սերմանեալն իցէ ՚ի մեզ։

Եւ հանապազ այսու առակօք բնութեան և արարածոց՝ յորում հաստատեաց զմեզ ած կացուցանել, և որ ինչ աւելիքն և յաւելուածքն են՝ նոքա սպանեն զմեզ. որպէս և լինին կոխան սերմանիքն՝ որ ՚ի վերայ Ճանապարհին իցեն. այն որ անցանելովն անց ընդ

երկիրն, և զրկեցաւ պտուղ նորա. կամ գուցէ արդիւք իցէ ոք՝ որ կարծիցէ եթէ Ճանապարհն ոչ եթէ անցանելով անց ընդ երկիրն պատրաստ և վնասեաց նմա։ Ապա եթէ իցէ մշակ ժրագլուխ, վաստակէ 'ի տուէ, և տքնի 'ի գիշերի, և փակէ ցանկովք զսերմանիս իւր. և շուրջ զնովաւ փորէ փոս, կայ և պահէ զնա յօտար սմբակաց։ Եւ լինի 'ի նմա պտուղ բարութե 'ի հոգաբարձութեան ժիր և պինդ մշակին։ Քանզի գիտէ մշակն՝ եթէ ոչ այլ ուստեք գոյ նմա պտուղ կենաց, բայց եթէ 'ի սերմանեաց անտի՝ որ սերմանեալ իցէ նորա։ Սոյնպէս և մեք՝ եթէ կեանք այլ ուստեք ուրեք չիք, բայց 'ի սերմանէ անտի զոր ընկալաք մեք յաւետարանէ. իբրու յամենայն ինչ վկայեն 'ի վերայ նորա մարգարէք։ Արգելցուք զականջս մեր յապստամբող լսելեաց, և զսիրտս մեր 'ի զուր տարապարտ խորհրդոց. և մի արասցուք զմիտս մեր կամուրջ անցանելոյ ամենայն մնոտի խօսից. և ապա կեամք մեք։

Սասն փշոցն ասաց մեզ տէր մեր. զի որպէս վնասեն փուշք երկրի, զի 'ի նմանէն իսկ բուսեն, այսպէս վնասակար լինին մեզ ցանկութիւնք։ Եւ եթէ ոք կարէ ցուցանել՝ թէ փուշ ոչ լինի յերկրէ, մարթ ինչ է հաւատալ նմա՝ թէ և ցանկութիւնք չարութե առաքին 'ի մեզ։ Այլ որպէս գոյ հնար քաղել հանել զփուշն և կեալ սերմանեացն, սոյնպէս և մարգարէն ասաց մեզ. ասէ. “Ընտրեցէք դուք ձեզ երկիր բարիոք և պարարտ, և մի սերմանէք 'ի վերայ փշոց. սուրբ լերուք առաջի տեառն, և 'ի բաց արարէք զչարիս 'ի սրտից ձերոց, մինչ չև իցէ ելեալ բարկութի սրտմտութե տեառն իբրև զհուր և այրեսցէ զձեզ, և ոչ ոք իցէ որ շիջուցանիցէ„։ Քանզի փուշ հրոյ ճարակ է, և ցորեան 'ի պէտս կենդանեաց։ Ապա եթէ իցեն գործք մեր չարաչար և ցաւագինք իբրև փուշք, ընդ նոսին իսկ ընդ փուշսն այրիմք 'ի հուր։ Եւ եթէ 'ի բաց առնեմք 'ի միտաց մերոց զամենայն ցանկութիւնս չարաչարս, կամք մնամք մեք այնուհետև երկիր բարիոք և պարարտ ընդ սերմանիսն բարութե՝ զոր ընդունիմք մեք, և պահեմք զնա իբրև զցորեան 'ի շտեմարանս կենաց։

Իսկ վասն ապառաժին զոր ասաց տէր մեր, զի այն որ 'ի վերայ ապառաժին են՝ փոքր մի ժամանակս զուարճանան, և անդէն ցամաքին, ժամանակաց ինչ բանն յասել զփառացն ա̃ծութեն. զի անուանս այս առապարին, տկար սերմանեօք սա ինքն ընտրեալ է 'ի պէտս շինուածոց: Եւ ած 'ի մէջ տէր մեր զառակս զայս, որպէս զի յայտ արասցէ՝ եթէ ինչ յամէն արարածոց ոչ է նմա օտար: Իսկ իւ են տկար սերմանիքն՝ որ 'ի վերայ ապառաժին իցեն: Քանզի յափշտակեն առնուն զանձրև զառաջին, և չիք 'ի նմա տեղի թանձրութե հողոյ՝ ամփոփել յինքն զհիւթ ջուրցն: Վասն այսորիկ յորժամ գան հասանեն ճառագայթք արեգականն, ոչ եթէ 'ի վերայ միոյ ապառաժուտ տեղոյն լուծանին, այլ 'ի վերայ ամենայն երկրի: Եւ տեղին ապառաժուտ՝ զի չիցէ 'ի նմա խոնաւութիւն՝ շարժի 'ի զօրութենէ անտի արեգական[1], և ամենայն սերմանիքն առ հասարակ զուարճանան 'ի ծագել այնորիկ՝ որ ցամաքեցուցանէ զսերմանիսն՝ որ 'ի վերայ ապառաժին[2] իցեն: Սոյնպէս և մեք՝ որ լուաք զվարդապետութիւն տեառն մերոյ, և ամփոփեցաք ժողովեցաք զնա 'ի սիրտս մեր, և եղեաք մեք որպէս երկիր մի բարիոք և պարարտ՝ որ ամփոփեաց յինքն զխոնաւութի. և ոյք վաղվաղակի յափշտակեն առնուն զվարդապետութին մինչ դեռ բացեալ ընթեռնուցուն զգիրսն առաջի նոցա, և ճշմարտութի վարդապետութեն ոչ դադարէ 'ի միտս նոցա, նմանեալ են նոքա ապառաժուտ երկրի. զի լինելով լինին 'ի վերայ նորա ջուրք բազումք, որպէս և 'ի վերայ ամենայն երկրի, և նա ոչ ընդունի զնոսա. և յորժամ հասանեն փորձանք ինչ 'ի նմանութի արեգական, ոչ եթէ 'ի վերայ միոյ մարդոյ՝ այն որ առակեալ իցէ յապառաժ՝ հասանեն, այլ 'ի վերայ ամենայն մարդոյ:

Իսկ ոյք պահեցին զճշմարտութի վարդապետութեն 'ի միտս իւրեանց, յիշեն նոքա՝ եթէ տէր մեր որդին ա̃յ է. հալածեցաւ, կապեցաւ, տանջեցաւ, քաղցեաւ, անարգեցաւ և չարչարեցաւ, և մեզ զոյն ուսոյց. և որչափ յիշեմք մեք զայս, խնդամք մեք,

1 Յօր. արեգական. ոմն և այլ տեղիս: 2 Յօր. ապառաժին. նոյնպէս և այլ ուրեք:

և աճեմք և սնանիմք 'ի փորձանսն մեր, որպէս զուարձանան սերմանիք ջուրբք ըմպելով. և պահէ զնոսա, և ոչ շարժին նոքա յերեսաց արեգականն ։ Իսկ ոյք ընդունին զվարդապետութիւն իբրև բժշկութի̃ շահից ժամանակեանս, և յորժամ հասանեն 'ի վերայ նոցա փորձանք ինչ՝ համարին յերեսաց ։ Եւ յայսմիկ նմանեալ են հաւատքն տեառն մեր սերմանեաց ։

Նմանեցոյց դարձեալ զհաւատսն իւր տէր մեր հատոյ մանանխոյ, յայնմիկ՝ զի ասէ տէր մեր. “Ո՞ւմ նման է արքայութիւն երկնից, կամ որո՞ւմ նմանութե̃ նմանեցուցանեմ զնա. նմանեալ է նա հատոյ մանանխոյ, որ իբրև առ զնա մարդ՝ սերմանեաց 'ի պարտիզի, և աճեաց մեծացաւ և ծառացաւ, և թռչունք երկնից բնակեցան յոստս նորա ,, ։ Եւ 'ի նմին պատգամի ասէ. “Նման է արքայութի̃ն երկնից խմորոյ, զոր առեալ կին մարդ՝ և խառնեաց զնա 'ի գրիւս երիս ալեր, մինչև ամենայն զանգուածն խմորեցաւ ,, ։ Եւ զի ծանիցուք եթէ միով միով կերպարանօք իւրեանց նմանեալ են հաւատք մեր 'ի կերպս յամենայն իրս. քանզի հատ մանանխոյ ոչ նման է խմորոյ տեսանելով իւրով. և արքայութի̃ այ̃, ասէ, երկոցունց նման է արդեամբք իւրովք ։ Նմանեալ է նա հատոյ մանանխոյ 'ի ծառանալն մեծանալն՝ լինել նմա հանգիստ թռչնոց երկնից ։ Քանզի եկն տէր մեր՝ երևեցաւ մեզ մարդ կարճ հասակաւ, անարգ, արհամարհեալ և խոնարհ, մեռաւ և թաղեցաւ իբրև զօտար, յարեաւ ա̃ծութ̃բ, և երևեցաւ փառօք, և եղև նա դադար և հանգիստ ամենայն մարդկան՝ որ առակեալ եմք 'ի թռչունս. զի դէմք մեր 'ի վեր ելեալ են, և մտօք մերովք և հաւատովք թռեաք և սլացաք և վերացաք յամենայն զգօսանաց աշխարհի, և յամենայն խորհրդոց չարաց. և անդրէն իսկ գիտացաք՝ եթէ բնակութիւն մեր յերկինս է, ուստի կենարարին տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ակն ունիմք ։

Դարձեալ նման են հաւատքն տեառն մերոյ հատոյ մանանխոյն՝ յաճելն մեծանալն և ծառանալն. քանզի սերմանին և բնակին 'ի մեզ նախ փոքրուք̃, և առ

սակաւ սակաւ աճեն և զօրանան և հաստատին արմատք նոցա 'ի միտս մեր. զի նախ զայս միայն կամիմք՝ հաւատալ յա̃ծ. և ապա յետոյ իբրև հաստատեալ լինին 'ի մեզ հաւատքն՝ մեկնիմք մեք այնուհետև 'ի հարց մերոց, և մոռացեալ մերժիմք մեք 'ի մարց մերոց, և որոշիմք մեք յազգատոհմէ մերմէ, և ոչ խառնիմք ընդ բարեկամս մեր որ յաշխարհի, և յամենայն վնացից մերոց՝ որ յաշխարհի՝ հատուցեալ լինիմք մեք. քանզի մեզ 'ի գլխովին յաղթեն հաւատք զորս ընկալաք մեք յառաջագոյն փոքրկութե̃ իբրև զհատ մանանխոյ։ Եթէ ինքնին է տէր մեր սերմն իբրև զհատ մանանխոյ, և սերմանեաց զնա հայր իւր յաշխարհի, որպէս 'ի պարտիզի. զի հօր է աշխարհ։ Եւ եթէ հաւատքն տեառն մերոյ առակեցան 'ի հատ անդր մանանխոյ, և սերմանեցաւ 'ի մեզ, գտաք մեք՝ զի նորա իսկ էաք. քանզի սերմանահանն 'ի պարտիզի իւրում սերմանեաց։

Եւ նմանեալ է խմորոյ. զի խմոր ձգիչ է և գերիչ, և համապազօր զայս ստացեալ ունի. յորժամ խառնի զանգուածն ամենայն, և փոխէ և ձգէ զամենայն զանկուածն 'ի կերպարանս անձին իւրոյ. և ոչ երբէք դառնայ խմոր և լինի ալիւր։ Սոյնպէս և արքայութիւնն ա̃յ նմանեցաւ խմորոյ, զի խառնի 'ի մեզ 'ի մարմին և 'ի հոգի և 'ի շունչ՝ 'ի նմանութիւն զանկուածոյ երից գրուաց, և ոչ երբէք վարին 'ի մարդկութիւս մեր լինել սա իբրև զմեզ. այլ յայնմիկ միայն՝ զի առնի 'ի մեզ, և զամենեսին զմեզ ձգէ և գերէ և փոխէ յա̃ծութի անդ ըստ նմանութե̃ խմորոյ։ Եւ որպէս խմոր զի նախ ինքն խառնի յալերն, և լինին ընդ նմա իբրև զանգուածն իբրև բաղարջ, այլ զօրութի̃ խմորոյն ծածկեալ 'ի զանգուածն աներևոյթ կերպարանօք, և սակաւ սակաւ մեծ զանգուածն գերեալ վարի 'ի խմոր անդր որ տեսանելովն փոքր էր քան զանգուածն՝ և դարձոյց զնա առ ինքն, և ոչ ևս այնուհետև որոշի զանգուածըն 'ի խմորոյ անտի՝ զի ընկղմեցաւ նա, այսպէս եկն ա̃ծութիւն Քրիստոսի, խառնեցաւ ընդ մարդկութիւս մեր. և եղև Քրիստոս իբրև զմեզ, և խառնեցաւ

ընդ զանգուածն մեր. և ոչ երևէր նա, եթէ ոչ էր մարդ. զոր օրինակ խմոր ոչ երևի 'ի զանգուածէ անտի իբրև խառնի նա. և առ սակաւ սակաւ մտանէն 'ի զօրութ̃է անտի Քրիստոսի 'ի ծածուկ։ Եւ իբրև խմոր ձգեցաք մեք և խառնեցաք յա̃ծութիւն անդր նորա, որպէս և նա իսկ խառնեցաւ ընդ մարդկութ̃իս մեր. և ոչ ևս որոշիմք մեք 'ի նմանէն, զի ընկղմեցաք մեք 'ի նմա։ Եւ այսպէս է բան զոր ասաց Առաքեալն. "Ընկլաւ մահ, ասէ, 'ի կենաց,,։ Յայնմիկ նմանեալ արքայութ̃ի տեառն մերոյ խմորոյ։

Սակայն և զայս գիտասցուք. զի եթէ կամիցիս դու խառնել զխմոր ընդ այլ ինչ՝ ոչ ընդունի և ոչ խառնի, ոչ ընդ ոսկի և ոչ ընդ մարգարիտ՝ որ գովլին և փառաւորեալն են. և ոչ ընդ աղբ, զի արհամարհեալ երևի. և ոչ ընդ երկաթ, որ խիստ և հաստ է. և ոչ ընդ ասր և ընդ կերպաս, զի ազնիւ և բարակ է, և ընդ այլ ինչ՝ որ խառնի և լինի պիտանացու. և այլ ինչ ոչ է՝ որ դառնայ և լինի խմոր, բայց եթէ ալիւր և խմոր՝ որ հաստատեալ են և միաբանեալ են ընդ միմեանս։ Սոյնպէս և արքայութ̃ին երկնից հաստատեալ է և խառնեալ է ընդ մեզ, և մեք հաստատեալ եմք ընդունել զնա, և ոչ ևս մեք մեկնիցիմք 'ի նմանէ։ Յամենայնի գիտել եղաք մեք՝ եթէ անկ եմք մեք ընդունել զնա, որպէս ապառաժն շինուածոյ, և որպէս երկիր սերմանեաց, և որպէս պարտէզ բանջարոյ, և որպէս ալիւր խմորոյ, և որպէս այգի տընկոց, և որպէս տիկք գինոյ, որպէս ձորձք կապերտի։ Վասն այսորիկ որպէս այս ամենայն զոր եցոյց մեզ տէր մեր առակօք օրինակօք՝ եթէ անկ են միմեանց յոր ինչ հաստատեալ են, սոյնպէս և մեք հաստատեալ եաք ընդունել զայս արքայութ̃ի՝ որ առաքեցաւ մեզ. և ինքն արքայութ̃ին հաստատեալ էր, զի առաքեսցէ մեզ։

Դարձեալ նմանեցոյց տէր մեր զհաւատոն իւր արծաթոյ, յայնմիկ՝ զի ասէ. "Այր մի ազնուական գնաց յաշխարհ հեռի՝ առնուլ իւր անտի թագ արքայութեան և դառնալ։ Կոչեաց նա զծառայս իւր տասն, և ետ նոցա մէն մի քանքար, և ասէ ցնոսա. վարձեցայք յարգեւոշիք զայդ մինչև գամ ես,,։

Այլ ինձ վայել է ասել՝ եթէ Յիսուս է այր ազնուական և մեծատուն . զի հաւատացեալ եմ ես՝ եթէ յինքնութէ̃ ա̃ծուէ̃ն է նա , որ մեծն բարձր առաւել փառաւոր մեծատուն և տէր ամենայն բնութե̃ց է՝ որ երևին և որ ոչն երևին . և հաստատիչ զարդարիչ ամենայն բնութե̃ց յերևոյթս և յաներևոյթս ։ Դարձեալ այր ազնուական , զի յազգէ անտի Յուդայ եղև նա ։ Անդ 'ի նմանէն եղեն թագաւորք և մարգարէք. թէպէտ և եղեն այլ իմաստունք , սակայն 'ի վերայ Սողոմոնի գրեալ է 'ի գրութի̃ Թագաւորաց՝ եթէ “Ոչ ումեք յառաջագոյն քան զնա տուաւ այնպիսի իմաստութի̃ , և ոչ զկնի նորա տուաւ ումեք „ ։ Եւ թէպէտ և եղեն այլ թագաւորք , սակայն առ Դաւթայ եղաւ կտակն երդմնօք վասն թագաւորութե̃ . որպէս և Երեմիա մարգարէ ասէ՝ եթէ “Մարթ ինչ իցէ ձեզ խափանել զտիւ և զգիշեր 'ի ժամու իւրեանց , ապա և երդումն իմ զոր երդուայ ես Դաւթի ծառայի իմում՝ խափանեալ լիցի , լինել նմա որդի՝ որ նստցի յաթոռ արքայութեան նորա „ ։ Եւ երևի տէր մեր՝ եթէ ա̃ծութբ̃ իւրով և մարդկութբ̃ իւրով ազնուական է ։ Իսկ ոյք կարծեն՝ եթէ Քրիստոս յայլմէ յինքնութենէ է , և յա̃յ ինչ ոչ հաստատեցաւ 'ի նմանէ , և յազնուութէ̃ [1] մարդկութեան մերժեն զնա , ոչ է արժան նոցա կոչել զնա ազնուական ։

Նաև նմանեցոյց տէր մեր զհաւատոն իւր արծաթոյ ։ Նա և 'ի Զգօնաւորութե̃ Սողոմոնի գրեալ է . ասէ . “Խնձոր ոսկի 'ի վերայ արծաթեղէն սկտեղս , բանք յանդիմանութե̃ յունկնդիր լսելիս „ ։ Եւ յայտ արար մեզ տէր մեր՝ եթէ հաւասարակից են բանքն նորա գրոցն՝ որ յառաջ քան զնա քարոզեցին ։

Դարձեալ նմանեն հաւատքն տեառն մերոյ տպաւոր արծաթոյ , որ թուեալ լինի 'ի թիւս համարոյ . զի ամենայն մարդ որ արծաթ ունի 'ի ձեռին իւրում , ամենայն ինչ գտեալ լինի առաջի նորա վասն արծաթոյն . ցորեան ; գինի , հանդերձ և կերակուր , և ամենայն ինչ որ պիտոյ իցէ կենաց և պիտոյից մարդկան ։ Սոյնպէս և մեք յորժամ ստանամք զհաւատոն ,

1 Օրինակին յազնուութե̃ մարդկութենէ մարդկութե̃ ։

նոքօք այնուհետև կարեմք մեք պահել, սիրել զեղ-բարս, տալ տուրս, լինել հալածական, և համբերել ամենայն ցանկութեանց, իբրև հաւատացեալ գիտեմք՝ եթէ կան մնան մեզ վարձք հատուցման մերոյ յեր-կինս ։ Որպէս մինչ դեռ աստէն էր տէր մեր, ամենե-քին որ միանգամ մերձենային առ նա վասն ամե-նայն ցաւոց և հիւանդութեանց, այսպէս ասէր զմի մի[1] 'ի նոցանէն . "Հաւատք քո կեցուցին զքեզ"։ Նա և առաքեալքն իբրև զհաւատսն ստացան, ապա սկսան նոքօք հանել զդևս, սրբել զբորոտս, յարուցանել զմե-ռեալս, և կենդանիս առնել զմարդիկ յերկնաւորս ։

Այս այսպէս է նմանել հաւատք արծաթոյ. զի զոր օրինակ արծաթով լինի ստացեալ ամենայն ինչ՝ որ պէտք իցեն կենաց աշխարհիս այսորիկ, սոյնպէս ինչ ամենայն որ միանգամ պիտոյ իցեն՝ որ կենացն հա-ւատովք ստացեալ լինին ։ Քանզի և զսէր այնորիկ՝ որ առաւել քան զամենայն յարգէ Առաքեալ, 'ի հաւատալ անդ մերում մարթեմք մեք ստանալ զնա հաւատովքն ։ Վասն այսորիկ նմանեալ են հաւատքն մեր արծաթոյ, զի արծաթ կարէ լնուլ զամենայն պէտս՝ որոց ունիցիմն զնա, այն՝ որ ունիցի զտիպս նմանութեան տեառն աշխարհին . զի շրջեսցին նովաւ որ ըստ հրամանի նորա լինի ։ Ապա եթէ երթանայ-ցէ ոք օտարաշխարհիկ, և ունիցի նա արծաթ գրեալ 'ի տիպս պատկերի այլոյ թագաւորի, և զգիր տեառն աշխարհին ոչ ունիցի, 'ի նեղութեան բազում մեծի 'ի միջի կայ նա. զի և ոչ փոխառուք կարօտականք ըն-դունին 'ի նմանէն ինչ որ ոչ գնայ 'ի պէտս նոցա. քան-զի և ոչ վաճառականք առնուն զնա ինչ որով ոչ օգ-տին նովաւ ։ Թէպէտ և կարի յոյժ գտանի յաշխար-հին յայնմիկ հանդերձ և կերակուր և ամենայն իրք պիտոյից, սակայն նա 'ի սովու և 'ի ցրտոյ տանջի և մեռանի, զի արծաթ խոտեալ անարգեալ ունի նա 'ի ձեռին ։

Իսկ տէր մեր 'ի քարոզել իւրում մեզ զհաւատս զայս՝ որ արծաթոյ նմանեցոյց, համարձակութ՟ ասաց

1 Յօրինակին գրեալ էր զմի մի . ուղղեցաք ըստ այլ տեղեաց հայցա-կան խնդրով բայիս ասէմ ։

ծառայից խորոց. ասէ. «Յարգեսջիք զայդ մինչև գամ ես»։ Զի գիտէր եթէ ճշմարիտ տիպք պատկերի տեառն աշխարհին գոն 'ի նմա, և յամենայն բնութս յարգի նա։ Նա և աստէն գոյ ինչ որ նման է նորայոյն զոր եբեր. զի 'ի գալստեան անդ խորում տոկոսիւք պահանջեաց։ Ապա եթէ արծաթն նման է այնմիկ որ եկն՝ ընդ նմա չիցէ աստ, իսկ վաշխն և տոկոսիք ուստի՞ լինին տուեալ. կամ զիա՞րդ ասէ Մարկիոնն՝ եթէ ոչ է նմանեալ ճանապարհ նորա ընչի։ Իբրև եկն որ զմի քանքար ունէր, այն իսկ է՝ որ նման Մարկիոնայ և այլոց աղանդոց է. և տալ պատասխանի մեծ գոյր այնմիկ՝ որ ունէր զմի քանքար. և փոխանակ զի կայր և ասէր լրբենի երեսօք, «Երկեայ ես 'ի քէն, զի այր մի ստամբակ էիր դու, և վասն այսորիկ ոչ ետու փոխ զարծաթն քո», մարթէր նմա ասել՝ եթէ փոխառուքն ոչ ընկալան զնա յինէն. ես կամեցայ գտանել նմանեալս նմանող նմին, և ոչ գտի յաւելուլ 'ի վերայ նորա։

Այլ քանզի արծաթն որ եկն տեառն մերում յայս յաշխարհս՝ յարգեցաւ եղև ընդունելի, և որք առին զնա՝ յաւելին 'ի վերայ նորա աստ իւրաքանչիւր որչափ և կարացին ժողովել, էր որ տասն կրկին, և էր որ հինգ։ Եւ սոյն իսկ այս արծաթ որ աստի ժողովեցաւ, յարգեցաւ 'ի գաւառս վերինս. և յայտ եղև՝ թէ մի է տէր այս երկուց բնութեց, վերնոյն և ներքնոյս. և վասն հրամանի նորա մի ելք արծաթոյ, գնայ այս ընդ ամենայն գաւառս և յարգի։ Եւ յայսմիկ նմանեալ են հաւատք նորա արծաթոյ։ Եւ այսու առակօք զոր ասաց տէր մեր՝ եթէ նման է արքայութն երկնից ամենայն ընչի. զի նմանեցոյց զնա՝ յայտ արար և եցոյց մեզ՝ թէ երբեմն արքայութ իցէ, և նմանեցաւ յիրս յիրս. իբրու դիւրին է նմա նուաղել և բարձրանալ, աղքատանալ, մեծանալ, մեռանել և կեալ, և ամենայն զոր կամի առնել։

Եւ զայս առակ դարձեալ զոր ասաց տէր մեր, ասէ. «Այր մի ազնուական գնաց յաշխարհ հեռի՝ առնուլ իւր անուն թագաւորութիւն և դառնալ», յայտ արար մեզ՝ թէ արքայութե բնակութե և ինքնութե նորա 'ի վեր անդր է, և անդուստ գայ այսր.

րումք մեք անօթք գեղեցիկք 'ի պէտս զարդու ա̃ծու-
թեան որպէս ոսկի և արծաթ՝ զի մերձեցաւ[1] 'ի հուր .
և կիզու և այրէ 'ի նմանէն հուրն զամենայն զաղտ և
զժանգ , և մնայ ոսկին և արծաթն ճշմարիտ ։ Այս-
պէս այրէն 'ի մէնջ հրովն տեառն մերոյ ամենայն
գործք ապականութեան, և կան մնան 'ի մեզ գործք
բարութե̃ . որք գեղեցկանան հրովն՝ կատարին սէր ,
գիտութի̃ , ողորմութի̃ , խոնարհութի̃ և յօժարու-
թի̃ ։ Եւ յայսմիկ նմանեալ է վարդապետութի̃ տեառն
մերոյ հրոյ ։ Եւ յայսմ ամենայնի գտաք՝ զի զմարգա-
րէութի̃ հաստատեաց տէր մեր Յիսուս Քրիստոս, և
'ի հետս շաւղաց մարգարէից գնայր , և զնոսին կա-
տարէր ։

Պ՝արձեալ նմանեցուցանէ տէր մեր զբանն կեն-
դանութե̃ իւրոյ սերմանեաց ։ Եւ զի նմանեցուցանէ
երկրի՝ որ ընդունի զսերմանիս , յայնմիկ՝ զի ասէ .
"Ահաւասիկ ել սերմանահան սերմանել զսերմանիս
իւր . և 'ի սերմանել անդ՝ էր որ անկանէր 'ի վերայ ճա-
նապարհի , եղև կոխան՝ և թռչունք քաղեցին զնա .
և էր որ անկաւ 'ի վերայ ապառաժի , իբրև բուսաւ՝
վաղվաղակի ցամաքեցաւ , զի ոչ գոյր հիւթ 'ի ներքոյ
արմատոց նորա . և էր որ անկաւ 'ի մէջ փշոց , աճե-
ցին փուշքն և հեղձուցին զնա . և էր որ անկաւ յեր-
կիր բարւոք , բուսաւ աճեաց և ետ զպտուղ" ։ Եւ 'ի
մեկնել իւրում վասն բանին , ասէ . այն որ անկաւ
'ի վերայ ճանապարհին , նոքա են՝ որ լսեն զբանն, և
գայ սատանայ յափշտակէ զբանն 'ի սրտէ նոցա ։ Եւ
այն որ անկաւ 'ի վերայ առապարին , նոքա են՝ որ
իբրև լսեն զբանն , ուրախութե̃ ընդունին զնա . այլ
քանզի արմատք ոչ գոն նորա 'ի նմա , զի երբեմն հաւա-
տան , և 'ի ժամանակս փորձութե̃ ուրանան ։ Եւ այն որ
անկաւ 'ի մէջ փշոցն , նոքա են՝ որ լուան զբանն , և
հոգք աշխարհի և զբաղումն մեծութե̃ և 'ի ցանկու-
թի̃ յիմարութե̃ հեղձնուն , և անպտուղ լինին ։ Եւ
այն որ անկաւ յերկիր պարարտ , նոքա են՝ որ սրբով
և յստակ մտօք զբանն ճշմարտութե̃ լուան , և ե-

1 Յօրինակին 'ի լուսանցսն մատնէ ։

զենն պտղաբերը։ Եւ յայտ արար և եցոյց մեզ՝ եթէ զմարդս բարիօքս կոչեաց երկիր բարիօք պարարտ։

Դարձեալ և միւսանգամ և յայսմիկ եւս գտաք, եթէ կատարիչ է նա մարգարէութեան. զի Երեմիա մարգարէ ասէ. «Այսպէս ասէ տէր ած, զտունն Հրիաստանաց և զբնակիչսն Երուսաղէմի ընտրեցէք դուք ձեզ երկիր բարիօք և պարարտ. և մի սերմանէք դուք ՚ի վերայ փշոց. սրբեցարուք առաջի տեառն, և ՚ի բաց արարէք զչարիս ՚ի սրտից ձերոց՝ տունդ Յուդայ և բնակիչք Երուսաղէմի»։ Եւ զայս առակս զոր ասաց տէր մեր՝ եթէ երկիր բարիօք տայ զպտուղ կենաց, յառաջագոյն կանխեաց մարգարէն և ասաց. նա և այն՝ ուր փուշք լինէին՝ եթէ ժրանայ մշակն քաղէ հանէ զփուշն, և ապրին սերմանիք կենդանութեամբ, զի մարգարէն իսկ ասաց՝ եթէ մեք եմք երկիր բարիօք և պարարտ, և գործք չարութեան փուշ։ Եւ զայս եւս պարտիմք գիտել՝ եթէ փուշք ոչ եթէ այլ ուստեք լինի նմա, այլ ՚ի նմանէն և ՚ի նոյն, որպէս հնութի̃ ձորձոյն և տկացն. և քաղ երկրի ոչ եթէ այլ ուստեք լինի, այլ յարհամարհանաց և ՚ի ծուլանաց։ Այսպէս և ամենայն գետինք՝ որ կորուսանեն զսերմանիսն, գտանեմք մեք զի ՚ի ծուլութենէ մշակին է. զի սերմանիքն որ անկան ՚ի վերայ Ճանապարհին, ոչ եթէ ինքն երկիրն ոչ կարէ ապրեցուցանել զսերմանիսն. քանզի երկիրն յորում Ճանապարհն կուռ հարաւ, հաւասար է նա ինքն ՚ի բնէ իւրմէ ամենայն երկրի. և վասն բազմութեան ոտիցն կոխելոյ անցաւոր մարդկանն և անասնոց՝ կոխեցան սերմանիքն և կորեան։ Սոյնպէս և մեք, ՚ի բնէ մերմէ երկիր եմք մեք բարիօք՝ ընդունել զսերմանիս արքայութեան, և տալ զպտուղ կենաց. բայց եթէ տայցեմք զսիրտս մեր լինելոյ անցք Ճանապարհաց խօսից օտարոտեաց, ապա յայնժամ կոխեալ լինին բարիօք սերմանիքն՝ որ սերմանեալն իցէ ՚ի մեզ։

Եւ հանապազ այսու առակօք բնութեան և արարածոց՝ յորում հաստատեաց զմեզ ած կացուցանել, և որ ինչ աւելիքն և յաւելուածքն են՝ նոքա սպանեն զմեզ. որպէս և լինին կոխան սերմանիքն՝ որ ՚ի վերայ Ճանապարհին իցեն. այն որ անցանելոցն անց ընդ-

երկիրն, և զրկեցաւ պտուղ նորա. կամ գուցէ արդիւք իցէ ոք՝ որ կարծիցէ եթէ ճանապարհն ոչ եթէ անցանելով անց ընդ երկիրն պատրաստ և վնասեաց նմա: Ապա եթէ իցէ մշակ ժրագլուխ, վաստակէ 'ի տունէ, և տքնի 'ի գիշերի, և փակէ ցանկովք զսերմանիս իւր. և շուրջ զնովաւ փորէ փոս, կայ և պահէ զնա յօտար սմբակաց: Եւ լինի 'ի նմա պտուղ բարութեան 'ի հոգաբարձութեան ժիր և պինդ մշակին: Քանզի գիտէ մշակն՝ եթէ ոչ այլ ուստեք գոյ նմա պտուղ կենաց, բայց եթէ 'ի սերմանեաց անտի՝ որ սերմանեալ իցէ նորա: Սոյնպէս և մեք՝ եթէ կեամք այլ ուստեք ուրեք չիք, բայց 'ի սերմանէ անտի զոր ընկալաք մեք յաւետարանէ. իբրու յամենայն ինչ վկայեն 'ի վերայ նորա մարգարէքն: Արգելցուք զականջս մեր յապստամբող լսելեաց, և զսիրտս մեր 'ի զուր տարապարտ խորհրդոց. և մի արասցուք զմիտս մեր կամուրջ անցանելոյ ամենայն մնոտի խօսից. և ապա կեամք մեք:

Վասն փշոցն ասաց մեզ տէր մեր. զի որպէս վնասեն փուշք երկրի, զի 'ի նմանէն իսկ բուսեն, այսպէս վնասակար լինին մեզ ցանկութիւնք: Եւ եթէ ոք կարէ ցուցանել՝ թէ փուշ ոչ լինի յերկրէ, մարթ ինչ է հաւատալ նմա՝ թէ և ցանկութիւնք չարութեան առաքին 'ի մեզ: Այլ որպէս գոյ հնար քաղել հանել զփուշսն և կեալ սերմանեացն, սոյնպէս և մարգարէն ասաց մեզ. ասէ. "Ընտրեցէք դուք ձեզ երկիր բարւոք և պարարտ, և մի սերմանէք 'ի վերայ փշոց. սուրբ լերուք առաջի տեառն, և 'ի բաց արարէք զչարիս 'ի սրտից ձերոց, մինչ չև իցէ ելեալ բարկութիւն սրտմտութեան տեառն իբրև զհուր և այրեսցէ զձեզ, և ոչ ոք իցէ որ շիջուցանիցէ„: Քանզի փուշ հրոյ ճարակ է, և ցորեան 'ի պէտս կենդանեաց: Ապա եթէ իցեն գործք մեր չարաչար և ցաւագինք իբրև փուշք, ընդ նոսին իսկ ընդ փուշսն այրիմք 'ի հուր: Եւ եթէ 'ի բաց առնեմք 'ի միտաց մերոց զամենայն ցանկութիւնս չարաչարս, կամք մնամք մեք այնուհետև երկիր բարւոք և պարարտ ընդ սերմանիսն բարութեան՝ զոր ընդունիմք մեք, և պահեմք զնա իբրև զցորեան 'ի շտեմարանսն կենաց:

Իսկ վասն ապառաժին զոր ասաց տէր մեր, զի այն որ 'ի վերայ ապառաժին են՝ փոքր մի ժամանակս զուարճանան, և անդէն ցամաքին, ժամանակաց ինձ քանն յասել զփառացն ծնութեն. զի անուանս այս առապարին, տկար սերմանեօք սա ինքն ընտրեալ է 'ի պէտս շինուածոց: Եւ ած 'ի մէջ տէր մեր զառակս զայս, որպէս զի յայտ արասցէ՝ եթէ ինչ յամեն արարածոց ոչ է նմա օտար: Իսկ իւ են տկար սերմանիքն՝ որ 'ի վերայ ապառաժին իցեն: Քանզի յափշտակեն առնուն զանձրև զառաջին, և չիք 'ի նմա տեղի թանձրութե հողոյ՝ ամփոփել յինքն զհիւթ ջուրցն: Վասն այսորիկ յորժամ գան հասանեն ճառագայթք արեգականն, ոչ եթէ 'ի վերայ միոյ ապառաժուտ տեղոյն լուծանին, այլ 'ի վերայ ամենայն երկրի: Եւ տեղին ապառաժուտ՝ զի չիցէ 'ի նմա խոնաւութիւն՝ շարժի 'ի զօրութենէ անտի արեգական[1], և ամենայն սերմանիքն առ հասարակ զուարճանան 'ի ծագել այնորիկ՝ որ ցամաքեցուցանէ զսերմանիսն՝ որ 'ի վերայ ապառաժին[2] իցեն: Սոյնպէս և մեք՝ որ լուաք զվարդապետութիւն տեառն մերոյ, և ամփոփեցաք ժողովեցաք զնա 'ի սիրտս մեր, և եղեաք մեք որպէս երկիր մի քարիոք և պարարտ՝ որ ամփոփեաց յինքն զխոնաւութի. և ոյք վաղվաղակի յափշտակեն առնուն զվարդապետութին մինչ դեռ բացեալ ընթեռնուցուն զգիրսն առաջի նոցա, և ճշմարտութի վարդապետութեն ոչ դադարէ 'ի միտս նոցա, նմանեալ են նոքա ապառաժուտ երկրի. զի լինելով լինին 'ի վերայ նորա ջուրք բազումք, որպէս և 'ի վերայ ամենայն երկրի, և նա ոչ ընդունի զնոսա. և յորժամ հասանեն փորձանք ինչ 'ի նմանութի արեգական, ոչ եթէ 'ի վերայ միոյ մարդոյ՝ այն որ առակեալ իցէ յապառաժ՝ հասանեն, այլ 'ի վերայ ամենայն մարդոյ:

Իսկ ոյք պահեցին զճշմարտութի վարդապետութեն 'ի միտս իւրեանց, յիշեն նոքա՝ եթէ տէր մեր որդին այ է. հալածեցաւ, կապեցաւ, տանջեցաւ, քաղցեաւ, անարգեցաւ և չարչարեցաւ, և մեզ զոյն ուսոյց. և որչափ յիշեմք մեք զայս, խնդամք մեք,

1 Յօր. արէգան. ոմն և այլ տեղիս: 2 Յօր. ապառաժին. նոյնպ և այլ ուրեք:

և աճեմք և սնանիմք 'ի փորձանս մեր, որպէս զուարճանան սերմանիք ջուրբք ընպելով. և պահէ զնոսա, և ոչ չարժին նոքա յերեսաց արեգականն ։ Իսկ ոյք ընդունին զվարդապետութ̃ին իբրև բժշկութ̃ի շահից ժամանակեանս, և յորժամ հասանեն 'ի վերայ նոցա փորձանք ինչ՝ համարին յերեսաց ։ Եւ յայսմիկ նմանեալ են հաւատքն տեառն մեր սերմանեաց ։

Նմանեցոյց դարձեալ զհաւատոն իւր տէր մեր հատոյ մանանխոյ, յայնմիկ՝ զի ասէ տէր մեր. «Ո՞ւմ նման է արքայութիւն երկնից, կամ որո՞ւմ նմանութ̃ նմանեցուցանեմ զնա. նմանեալ է նա հատոյ մանանխոյ, որ իբրև առ զնա մարդ՝ սերմանեաց 'ի պարտիզի, և աճեաց մեծացաւ և ծառացաւ, և թռչունք երկնից բնակեցան յոստս նորա»։ Եւ 'ի նմին պատգամին ասէ. «Նման է արքայութ̃ին երկնից խմորոյ, զոր առեալ կին մարդ՝ և խառնեաց զնա 'ի գրիւս երիս ալեր, մինչև ամենայն զանգուածն խմորեցաւ»։ Եւ զի ծանիցուք եթէ միով միով կերպարանօք իւրեանց նմանեալ են հաւատք մեր 'ի կերպս յամենայն իրս. քանզի հատ մանանխոյ ոչ նման է խմորոյ տեսանելով իւրով. և արքայութ̃ի ո̃յ, ասէ, երկոցունց նման է արդեամբք իւրովք ։ Նմանեալ է նա հատոյ մանանխոյ 'ի ծառանալն մեծանալն՝ լինել նմա հանգիստ թռչնոց երկնից ։ Քանզի եկն տէր մեր՝ երևեցաւ մեզ մարդ կարճ հասակաւ, անարգ, արհամարհեալ և խոնարհ, մեռաւ և թաղեցաւ իբրև զօտար, յարեաւ մ̃ծութ̃, և երևեցաւ փառօք, և եղև նա դադար և հանգիստ ամենայն մարդկան՝ որ առակեալ եմք 'ի թռչունս. զի դէմք մեր 'ի վեր ելեալ են, և մտօք մերովք և հաւատովք թռեաք և սլացաք և վերացաք յամենայն զբօսանաց աշխարհի, և յամենայն խորհրդոց չարաց. և անդրէն իսկ գիտացաք՝ եթէ բնակութիւն մեր յերկինս է, ուստի կենարարին տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ակն ունիմք ։

Դարձեալ նման են հաւատքն տեառն մերոյ հատոյ մանանխոյն՝ յաճելն մեծանալն և ծառանալն. քանզի սերմանին և բնակին 'ի մեզ նախ փոքրութ̃, և առ-

սակաւ սակաւ աճեն և զօրանան և հաստատին ար-
մատք նոցա 'ի միտս մեր . զի նախ զայս միայն կամիմք՝
հաւատալ յո̄ժ . և ապա յետոյ իբրև հաստատեալ
լինին 'ի մեզ հաւատքն՝ մեկնիմք մեք այնուհետև 'ի
հարց մերոց, և մոռացեալ մերժիմք մեք 'ի մարց մե-
րոց, և որոշիմք մեք յազգատոհմէ մերմէ, և ոչ
խառնիմք ընդ բարեկամս մեր որ յաշխարհի, և յա-
մենայն գնացից մերոց՝ որ յաշխարհի՝ հատուցեալ լի-
նիմք մեք. քանզի մեզ 'ի գլխովին յաղթեն հաւատք
զորս ընկալաք մեք յառաջագոյն փոքրկութ̄ք իբրև
զհատ մանանխոյ: Եթէ ինքնին է տէր մեր սերմն
իբրև զհատ մանանխոյ, և սերմանեաց զնա հայր
իւր յաշխարհի, որպէս 'ի պարտիզի. զի հօր է աշ-
խարհ: Եւ եթէ հաւատքն տեառն մերոյ առակե-
ցան 'ի հատ անդր մանանխոյ, և սերմանեցաւ 'ի մեզ,
գտաք մեք՝ զի նորա իսկ էաք. քանզի սերմանահանն
'ի պարտիզի իւրում սերմանեաց:

Եւ նմանեալ է խմորոյ. զի խմոր ձգիչ է և գե-
րիչ, և համապազօր զայս ստացեալ ունի. յորժամ
խառնի զանգուածն ամենայն, և փոխէ և ձգէ զա-
մենայն զանկուածն 'ի կերպարանս անձին իւրոյ. և
ոչ երբէք դառնայ խմոր և լինի ալիւր: Սոյնպէս և
արքայութիւնն ա̄յ նմանեցաւ խմորոյ, զի խառնի 'ի
մեզ 'ի մարմին և 'ի հոգի և 'ի շունչ՝ 'ի նմանու-
թիւն զանկուածոյ երից գրուաց, և ոչ երբէք վա-
րին 'ի մարդկութիւս մեր լինել սա իբրև զմեզ. այլ
յայնմիկ միայն՝ զի առնի 'ի մեզ, և զամենեսին զմեզ
ձգէ և գերէ և փոխէ յա̄ծութ̄ի անդ ըստ նմանու-
թ̄է խմորոյ: Եւ որպէս խմոր զի նախ ինքն խառնի
յալեւրն, և լինին ընդ նմա իբրև զանգուածն իբրև
թաղարձ, այլ զօրութ̄ի խմորոյն ծածկեալ 'ի զան-
գուածն աներևոյթ կերպարանօք, և սակաւ սակաւ
մեծ զանգուածն դերեալ վարի 'ի խմոր անդր որ
տեսանելովն փոքր էր քան զանգուածն՝ և դարձոյց
զնա առ ինքն, և ոչ ևս այնուհետև որոշի զանգուա-
ծըն 'ի խմորոյ անտի՝ զի ընկղմեցաւ նա, այսպէս եկն
ա̄ծութ̄ին Քրիստոսի, խառնեցաւ ընդ մարդկութիւս
մեր. և եղև Քրիստոս իբրև զմեզ, և խառնեցաւ

ընդ զանգուածն մեր. և ոչ երևէր նա, եթէ ոչ էր մարդ. զոր օրինակ խմոր ոչ երևի 'ի զանգուածէ անտի իբրև խառնի նա. և առ սակաւ սակաւ մտանէն 'ի զօրութէ անտի Քրիստոսի 'ի ծածուկ: Եւ իբրև խմոր ձգեցաք մեք և խառնեցաք յածութիւն անդր նորա, որպէս և նա իսկ խառնեցաւ ընդ մարդկութս մեր. և ոչ ևս որոշիմք մեք 'ի նմանէն, զի ընկղմեցաք մեք 'ի նմա: Եւ այսպէս է բան զոր ասաց Առաքեալն. "Ընկլաւ մահ, ասէ, 'ի կենաց,,: Յայնմիկ նմանեալ արքայութի տեառն մերոյ խմորոյ:

Սակայն և զայս գիտասցուք. զի եթէ կամիցիս դու խառնել զխմոր ընդ այլ ինչ՝ ոչ ընդունի և ոչ խառնի, ոչ ընդ ոսկի և ոչ ընդ մարգարիտ՝ որ դովլին և փառաւորեալն են. և ոչ ընդ աղբ, զի արհամարհեալ երևի. և ոչ ընդ երկաթ, որ խիստ և հաստ է. և ոչ ընդ ասր և ընդ կերպաս, զի ազնիւ և բարակ է, և ընդ այլ ինչ՝ որ խառնի և լինի պիտանացու. և այլ ինչ ոչ է՝ որ դառնայ և լինի խմոր, բայց եթէ ալիւր և խմոր՝ որ հաստատեալ են և միաբանեալ են ընդ միմեանս: Սոյնպէս և արքայութին երկնից հաստատեալ է և խառնեալ է ընդ մեզ, և մեք հաստատեալ եմք ընդունել զնա, և ոչ ևս մեք մեկնիցիմք 'ի նմանէ: Յամենայնի գիտել եղաք մեք՝ եթէ անկ եմք մեք ընդունել զնա, որպէս ապառաժն շինուածոյ, և որպէս երկիր սերմանեաց, և որպէս պարտէզ բանջարոյ, և որպէս ալիւր խմորոյ, և որպէս այգի տընկոց, և որպէս տիկք գինոյ, որպէս ձորձք կապերտի: Վասն այսորիկ որպէս այս ամենայն զոր եցոյց մեզ տէր մեր առակօք օրինակօք՝ եթէ անկ են միմեանց յոր ինչ հաստատեալ են, սոյնպէս և մեք հաստատեալ եմք ընդունել զայս արքայուի՝ որ առաքեցաւ մեզ. և ինքն արքայութին հաստատեալ էր, զի առաքեսցէ մեզ:

Դարձեալ նմանեցոյց տէր մեր զհաւատոն իւր արծաթոյ, յայնմիկ՝ զի ասէ. "Այր մի ազնուական գնաց յաշխարհ հեռի՝ առնուլ իւր անտի թագ. արքայութեան և դառնալ: Կոչեաց նա զծառայս իւր տասն, և ետ նոցա մէն մի քանքար, և ասէ ցնոսա. վարձեցայք յարգեւջիք զայդ մինչև գամ ես,,:

Այլ ինձ վայել է ասել՝ եթէ Յիսուս է այր ազնուական և մեծատուն. զի հաւատացեալ եմ ես՝ եթէ յինքնութէ ա̃ծութե̃ն է նա, որ մեծն բարձր առաւել փառաւոր մեծատուն և տէր ամենայն բնութեանց է՝ որ երևին և որ ոչն երևին. և հաստատիչ զարդարիչ ամենայն բնութեանց յերևոյթս և յաներևոյթս: Դարձեալ այր ազնուական, զի յազգէ անտի Յուդայ եղև նա: Անդ 'ի նմանէն եղեն թագաւորք և մարգարէք. թէպէտ և եղեն այլ իմաստունք, սակայն 'ի վերայ Սողոմոնի գրեալ է 'ի գրութ̃ն Թագաւորաց՝ եթէ "Ոչ ումեք յառաջագոյն քան զնա տուաւ այնպիսի իմաստութի, և ոչ զկնի նորա տուաւ ումեք": Եւ թէպէտ և եղեն այլ թագաւորք, սակայն առ Դաւթայ եդաւ կտակն երդմնօք վասն թագաւորութե. որպէս և Երեմիա մարգարէ ասէ՝ եթէ "Մարթ իցէ ձեզ խափանել զտիւ և զգիշեր 'ի ժամու իւրեանց, ապա և երդումն իմ զոր երդուայ ես Դաւթի ծառայի իմում՝ խափանեալ լիցի, լինել նմա որդի՝ որ նստցի յաթոռ արքայութեան նորա": Եւ երևի տէր մեր՝ եթէ ա̃ծութ̃բ իւրով և մարդկութ̃բ իւրով ազնուական է: Իսկ ոմք կարծեն՝ եթէ Քրիստոս յայլմէ յինքնութենէ է, և յայս ինչ ոչ հաստատեցաւ 'ի նմանէ, և յազնուութէ [1] մարդկութեան մերժեն զնա, ոչ է արժան նոցա կոչել զնա ազնուական:

Իւ նմանեցոյց տէր մեր զհաւատոն իւր արծաթոյ: Նա և 'ի Ջգօնաւորութե Սողոմոնի գրեալ է. ասէ. "Խնձոր ոսկի 'ի վերայ արծաթեղէն սկտեղը, բանք յանդիմանութե յունկնդիր լսելիս": Եւ յայտ արար մեզ տէր մեր՝ եթէ հաւասարակից են բանք նորա գրոցն՝ որ յառաջ քան զնա քարոզեցին:

Դարձեալ նման են հաւատքն տեառն մերոյ տպաւոր արծաթոյ, որ թուեալ լինի 'ի թիւս համարոյ. զի ամենայն մարդ որ արծաթ ունի 'ի ձեռին իւրում, ամենայն ինչ գտեալ լինի առաջի նորա վասն արծաթոյն. ցորեան; գինի, հանդերձ և կերակուր, և ամենայն ինչ որ պիտոյ իցէ կենաց և պիտոյից մարդկան: Սոյնպէս և մեք յորժամ ստանամք զհաւատոն,

1 Յօրինակին յազնուութէ մարդկութենէ մարդկութէ:

նոքօք այնուհետև կարեմք մեք պահել, սիրել զեղբարս, տալ տուրս, լինել հալածական, և համբերել ամենայն ցանկութեանց, իբրև հաւատացեալ գիտեմք՝ եթէ կան մնան մեզ վարձք հատուցման մերոյ յերկինս ։ Որպէս մինչ դեռ աստէն էր տէր մեր, ամենեքին որ միանգամ մերձենային առ նա վասն ամենայն ցաւոց և հիւանդութեանց, այսպէս ասէր զմի մի [1] 'ի նոցանէն. «Հաւատք քո կեցուցին զքեզ»։ Նա և առաքեալքն իբրև զհաւատսն ստացան, ապա սկսան նոքօք հանել զդևս, սրբել զբորոտս, յարուցանել զմեռեալս, և կենդանիս տանել զմարդիկ յերկնաւորս ։

Այս այսպէս է նմանել հաւատք արծաթոյ. զի զոր օրինակ արծաթով լինի ստացեալ ամենայն ինչ՝ որ պէտք իցեն կենաց աշխարհիս այսորիկ, նոյնպէս ինչ ամենայն որ միանգամ պիտոյ իցեն՝ որ կենացն հաւատովք ստացեալ լինին ։ Քանզի և զսէր այնորիկ՝ որ առաւել քան զամենայն յարգէ Առաքեալ, 'ի հաւատալ անդ մերում մարթեմք մեք ստանալ զնա հաւատովքն ։ Վասն այսորիկ նմանեալ են հաւատքն մեր արծաթոյ, զի արծաթ կարէ լնուլ զամենայն պէտս՝ որոց ունիցիմն զնա, այն՝ որ ունիցի զտիպս նմանութեան տեառն աշխարհին. զի շրջեսցին նովաւ որ ըստ հրամանի նորա լինի ։ Ապա եթէ երթանայցէ ոք օտարաշխարհիկ, և ունիցի նա արծաթ դրեալ 'ի տիպս պատկերի այլոյ թագաւորի, և զգիր տեառն աշխարհին ոչ ունիցի, 'ի նեղութեան բազում մեծի 'ի միջի կայ նա. զի և ոչ փոխառուք կարօտականք ընդունին 'ի նմանէն ինչ որ ոչ գնայ 'ի պէտս նոցա. քանզի և ոչ վաճառականք առնուն զնա ինչ որով ոչ օգտին նովաւ ։ Թէպէտ և կարի յոյժ գտանի յաշխարհին յայնմիկ հանդերձ և կերակուր և ամենայն իրք պիտոյից, սակայն նա 'ի սովու և 'ի ցրտոյ տանջի և մեռանի, զի արծաթ խոտեալ անարգեալ ունի նա 'ի ձեռին ։

Իսկ տէր մեր 'ի քարոզել իւրում մեզ զհաւատս զայս՝ որ արծաթոյ նմանեցոյց, համարձակութ̃ ասաց

1 Ցօրինակին գրեալ էր ըն մ մ. ուղղեցաք ըստ այլ տեղեաց հայցական խնդրով բայիս տանել ։

ծառայից իւրոց. ասէ. “Յարգեսջիք զայդ մինչև գամ ես,,: Զի գիտէր եթէ ճշմարիտ տիպք պատկերի տեառն աշխարհին գոն 'ի նմա, և յամենայն բնութ̃ս յարգի նա: Նա և աստէն գոյ ինչ որ նման է նորայոյն զոր եբեր. զի 'ի գալստեան անդ իւրում տոկոսիւք պահանջեաց: Ապա եթէ արծաթն նման է այնմիկ որ եկն՝ ընդ նմա չիցէ մստ, իսկ վաշխն և տոկոսիքն ուստի՞ լինին տուեալ. կամ զիա՞րդ ասէ Մարկիոնն՝ եթէ ոչ է նմանեալ ճանապարհ նորա ընչի: Իբրև եկն որ զմի քանքար ունէր, այն իսկ է՝ որ նման Մարկիոնայ և այլոց աղանդոց է. և տալ պատասխանի մեծ գոյր այնմիկ՝ որ ունէր զմի քանքար. և փոխանակ զի կայր և ասէր լրբենի երեսօք, “Երկեայ ես 'ի քէն, զի այր մի ստամբակ էիր դու, և վասն այսորիկ ոչ ետու փոխ զարծաթն քո,, մարթէր նմա ասել՝ եթէ փոխառուքն ոչ ընկալան զնա յինէն. ես կամեցայ գտանել նմանեալս նմանող նմին, և ոչ գտի յաւելուլ 'ի վերայ նորա:

Այլ քանզի արծաթն որ եկն տեառն մերում յայս յաշխարհս՝ յարգեցաւ եղև ընդունելի, և որք առին զնա՝ յաւելին 'ի վերայ նորա ասա իւրաքանչիւր որչափ և կարացին ժողովել, էր որ տասն կրկին, և էր որ հինգ: Եւ սոյն իսկ այս արծաթ որ աստիս ժողովեցաւ, յարգեցաւ 'ի գաւառս վերինս. և յայտ եղև՝ թէ մի է տէր այս երկուց բնութ̃ց, վերնոյն և ներքնոյս. և վասն հրամանի նորա մի ելք արծաթոյ, գնայ այս ընդ ամենայն գաւառս և յարգի: Եւ յայսմիկ նմանեալ են հաւատք նորա արծաթոյ: Եւ այսու առակօք զոր ասաց տէր մեր՝ եթէ նման է արքայութ̃ն երկնից ամենայն ընչի. զի նմանեցոյց զնա՝ յայտ արար և եցոյց մեզ՝ թէ երբն արքայութ̃ իցէ, և նմանեցաւ յիրս յիրս. իբրու դիւրին է նմա նուաճել և բարձրանալ, աղքատանալ, մեծանալ, մեռանել և կեալ, և ամենայն զոր կամի առնել:

Եւ զայս առակ դարձեալ զոր ասաց տէր մեր, ասէ. “Այր մի ազնուական գնաց յաշխարհ հեռի՝ առնուլ իւր անտի թագաւորութիւն և դառնալ,,, յայտ արար մեզ՝ թէ արքայութ̃ բնակութ̃ի և ինքնութ̃ի նորա 'ի վեր անդր է, և անդուստ գայ այսր.

վասն այսորիկ տէր մեր աստէն ընդ մեզ էր ։ Եւ արդարեւ Ճշմարիտ այր էր նա՝ զի զմարդկութի զգեցաւ, և ազնուական էր՝ վասն այնորիկ որ վերագոյնն գրեալն էր ։ Եւ զի ասէ. «Առնուլ զթագ արքայութն և դառնալ», քանզի յորժամ գայ նա ահեղ և փառաւոր գալստեամբ իւրով, թագաւոր գայ նա և ած և վճիռ և դատակնիք մահու և կենաց, ուրախութե և տանջանաց՝ յորժամ նստցի նա յաթոռ ահագին ահի և քաղցրութե. իբրու կայցեն առաջի երեսաց նորա զօրք հրեշտակաց ահիւ և երկեղիւ ։ Վասն այսորիկ այր Ճշմարիտ փոխեցաւ առ 'ի մէնջ. իբրու թագաւոր գոյ նա առ մեզ, զի գլուխ արքայութն և ածութն 'ի վեր է ։ Զի յայտ է այս ամենայն մարդոյ՝ իբրու թագաւորի այսպէս պարտ է լինել և կոչել թագաւոր, որպէս թէ իցեն նորա քաղաքք և գեօղք և արմտիք, գանձք, սպայք[1], դահիճք, նուիրակք, սպասաւորք, սուրհանդակք, գահաւորք, և սենեկապանք և ամենայն սպասք արքայութե, որ յայտ երևին առաջի աչաց իւրոց ։ Ապ' եթէ երթիցէ թագաւոր միայն լոկ, և կացցէ 'ի տեղի աւերակ, իբրու այս ամենայն սպասք հեռի իցեն 'ի նմանէ, նա և թագաւոր չէ. կամ ո՞ իցէ որ կոչիցէ նմա թագաւոր, իբրու թէ միայն կացցէ և չիցէ ոք ընդ նմա ։

Վասն այսորիկ արդարեւ Ճշմարիտ ածն մեր թագաւոր յաղթ է, որոյ իւր են երկինք և երկիր, հրեշտակ հրեշտակապետք և լուսաւորք և մահ և կեանք, իշխանութիք և պետութիք, փայլատակմունք և որոտմունք, բարձրութիք և խորութիք, և ամենայն արարածք՝ որ երևին, և որ ոչն երևի ։ Թագաւոր է և տէր ամենայն բնութեանց և վասն պատկերին կերպարանաց մարդոյ՝ զոր զգեցաւ Քրիստոս առ 'ի Հօրէ բարձրելոյ. զի նա ինքն է թագաւոր, որ ասաց՝ բայ ելանէ առնու իւր թագաւորութի և դառնայ ։ Եւ այն՝ որ մերժեն զմարդարէութին Քրիստոսի, զիա՞րդ կարծիցեն զելանել առնուլ թագաւորութն 'ի տեղւոջէ ուր չիցէ ։ Բայց եթէ իցեն ոմանք որ կարծիցեն՝ թէ երբեմն բնակեալ էր նա առանց հրեշտակաց, իշխա-

[1] Յօրինակին 'ի լուսանցսն սպասք ։

նութե̃նց և պետութե̃նց . և ինչ ոչ էր նորա, 'ի վերայ ո՞յր արդեօք կոչէր նա Թագաւոր, այս որ առանց ստացուածոց էր՝ մինչև եկն այսր ։ Եւ եթէ աստի ստացաւ նա զարքայութի̃ 'ի մարդկանէ՝ որ հաստատեալ են 'ի ճշմարիտ թագաւորէ անտի, վասն որոյ ասացին արար իւր Քրիստոս հրեշտակս, իշխանութի̃ս և պետութի̃ս, և 'ի վերայ նոցա կոչեցաւ Թագաւոր, յայտ եղև՝ եթէ արդարև ոչ Թագաւորէր, եթէ ոչ առ 'ի ճշմարիտ թագաւորէ անտի՝ որ տէրն է ամենայն բնութե̃նց ։ Զի ահաւասիկ և Քրիստոս՝ իբրև կամեցան աղանդքն հերձուածոց օտարացուցանել զնա, յայտ է՝ եթէ յարարածոց անտի թագաւորին մեծի և մեծատան ստացաւ նա իւր ստացուածս, և կոչեցաւ Թագաւոր 'ի վերայ նոցա ։

Եւ կոչեաց տէր մեր քաղաք զբնակութի̃ փառաց իւրոց, յայնմիկ՝ զի ետ նմա տասն քաղաք իշխանութե̃ այնմիկ՝ որ զտասն քանքարն շահեցաւ, և հինգ քաղաք այնմիկ՝ որ զհինգ քանքարն վարձեցաւ ։ Նա և յսկզբանն իսկ գրեալ է . ասէ՝ կոչեաց զծառայս իւր զտասն ։ Եւ իբրև եկն նա 'ի գալստեանն իւրում, և եկին տալ նմա զհամարս, երեք միայն գրեալ են որ եկին, և վասն եւթանցն ոչ ասաց մեզ զի՛ եղեն նոքա, և կամ ընդէր ոչ եկին ։ Բայց զի գրեալ է, ասէ, զի կոչեաց զծառայս իւր տասն, վասն կատարել թուոյն ամենայն աշակերտութե̃ ասաց . որպէս և 'ի սկզբանէ իսկ տասն թիւ հաստատեաց ա̃ծ թուել ամենայն լեզուաց . Յոյնք, Հոռոմք, Ասորիք, Պարթեւք . և զամենայն թիւս մինչև 'ի տասն թուէ ոք, և դառնայ 'ի վերայ միոյն՝ յաւելուլ 'ի վերայ թուոյն տասներորդի ։ Նա և յոյժ իսկ եցոյց մեզ ա̃ծ զերկայնմտութի̃ և զքաղցրութիւն իւր 'ի թիւն տասներորդ . զի մինչ 'ի տասն ազգ ներեաց ա̃ծ երկայնմտութե̃ իւրով վասն առաջին անօրէնութե̃ մարդկան, և ապա ած 'ի վերայ նոցա զջուրսն հեղեղին . և ապա եցոյց զՆոյ միայն՝ զի արդար էր ։ Նա և 'ի ծննդոց Նոյի 'ի տասն ազգ օրքեաց ա̃ծ և եհան զԱբրահամ ։ Եւ 'ի Սոդոմ տասն արդար եթէ էր գտեալ, ասէ տէր, ապրեալ լինէր նա 'ի կորստենէ անտի ։ Եւ զանօրէն յանցաւոր եգիպտացիսն տասն-

հարուածեան գաւազանաւն պատժեաց ած, և ոչ ևս այլ յաւել։ Սոյնպէս և տէր մեր ած 'ի մէջ զթիւն զտասներորդս առաջին օրինակին՝ որ եդեալ է, և զբովանդակութի ամենայն թուոյն աշակերտութեանն կոչեաց տասն։

Նու դարձեալ նոքա ամենեքին գտան երեք կերպարանօք, մին տասն քանքարաւն վարձուք, մին հնգիւ, և միւսն առանց վարձուց. այն որ զտասն քանքարն ունէր, առ նա իշխանութիւն տասն քաղաք։ Տասն քանքար զոր վարձեցաւ, զի արար և կատարեաց զամենայն զպատուիրանն. զի ամենայն պատուիրանն զոր ետ մեզ տէր մեր, 'ի տասն քանքար առակեցաւ։ Եւ այս միւս եկն վարձիւք տասն քանքարաւն, զի արար և կատարեաց զամենայն զպատուիրանս. և սա 'ի մի աստ առակեալ են ամենիքեան՝ որք լուանն և արարին և կատարեցին որ միանգամ պատուիրեցաւ նոցա։ Եւ միւսն եկն վարձիւք հինգ քանքարաւն, զի արար նա զկէս պատուիրանին զոր լուաւ, և զկէս ոչ արար. և 'ի սմա առակեալ են որ լուան ամենիքեան զպատուիրանն կենաց, և մերձեցան 'ի գործ ճանապարհին մերոյ, և ոչ կարացին կատարել։ Եւ միւս ևս եկն առանց վարձուց. և 'ի նմա առակեալ են ամենիքեան որ լուան զբանն կենդանութե, և 'ի գործ անդր նորա ոչ մերձեցան։

Նու ամենայն աշակերտք՝ որ առակեալ են 'ի թիւ կատարեալ տասինն, գան այսու երեք կերպարանօք։ Ի նոցանէն գան՝ իբրև արարեալ և կատարեալ իցէ զամենայն. և 'ի նոցանէն գան՝ իբրև արարեալ իցէ զկէսն, և զկէս ոչ արարեալ. և 'ի նոցանէն գան՝ իբրու արարեալ իցէ զկէսն կիսոյ. և 'ի նոցանէն գան՝ իբրու բնաւ ինչ ոչ իցէ արարեալ։ Այն՝ որոց արարեալ և կատարեալ իցէ զամենայն, գայ ուրախութբ, կայ առաջի տեառն և ասէ. տէր, քանքարն քո տասն քանքար վարձեցաւ. և առ նա իշխանութիւն տասն քաղաք. զի արար և կատարեաց զամենայն, առ նա զամենայն փառս անպակաս, և կոչեցան փառքն զոր ետ նմա՝ տասն քաղաք՝ վասն կատարեալ թուոյ տասինն։ Եւ այն՝ որ զհինգ քանքարն վարձեցաւ, առ նա իշխանութի հինգ քաղաք. զի քան զկէս

առաջնոյն առնու սա զփառսն յաշխարհն կենաց. և կոչեցան պարգևք նորա 'ի հինգ քաղաք՝ զկէս թուոյն տասներորդին. որպէս Առաքեալ ասէ. "Իւրաքանչիւր մարդ ըստ վաստակոց իւրեանց և զվարձ իւր ընդունի,,։ Իսկ այն՝ որ առանց վարձուց եկն, կոչեաց տէր նորա զնա անհաւատ. քանզի ոչ հաւատաց նա, և վարձեցաւ ոչ. զի որ հաւատայ՝ եթէ գոյ հատուցումն գործոց բարեաց, յայնժամ և սկսանի գործել։ Եւ եթէ զայլ մարդիկ աշակերտիցեմք, յորժամ հաւանեցուցանեմք զնոսա 'ի հաւատսն անդր՝ և յանձն առնեմք նոցա զքանն տեառն մերոյ։ Եւ զի ոչ հաւատաց նա միում այսց կերպարանաց, և անուն ևս հաւատոյ զոր ունի՝ բարձեալ լինի 'ի նմանէ 'ի կատարածի, և ապա ընկեցեալ լինի նա 'ի սատակումն և 'ի կորուստ։ Զի ամենայն որ մահապարտ լինի, նախ կողոպտեն զնա, և ապա սպանեն։ Սոյնպէս և սա որոյ զանունն միայն հաւատոց առեալ իցէ, որ առակեալ է յարծաթ և 'ի հանդերձ, և 'ի գործ անդր նորա ոչ մերձեցան, բարձեալ լինի 'ի նմանէ անուն հաւատոց՝ որ կոչեցաւ քանքար. և ապա դատապարտի նա։

Եւ զի կոչեաց տէր մեր քաղաք զբնակութիւնն փառաց իւրոց, արդարեւ նմանեալ են հաւատքն տեառն մերոյ քաղաքաց. որպէս զի տացէ թագաւոր իշխանութիւն միում ումեք 'ի ծառայից իւրոց 'ի վերայ քաղաքաց և գեղից։ Եւ բնակէ ծառայն յապարանս թագաւորին, և լուանայ զինքն յաւազանս նորա, և բազմի 'ի գահ արքայութեան նորա, և 'ի ձեմելիս նորա ձեմի նա։ Եւ յայսմիկ միայն փոքր է ծառայն իշխան քան զթագաւորն մեծ, զի տէր է նորա. և գիտէ՝ եթէ չէ ինքն գլուխ, և 'ի տեառնէ անտի իւրմէ ունի նա իշխանութիւն 'ի վերայ տէրութեան նորա։ Սոյնպէս և մեք, յորժամ առնէ ընդ մեզ տէր մեր զգթութիւն ողորմութեան իւրոյ, և հանէ զմեզ առ ինքն և 'ի տեղի իւր, բնակեմք մեք յարքայութեան նորա, և գրգեալ փափկանամք մեք 'ի լոյս անդ նորա, և ուրախ լինիմք 'ի բարութիս նորա, և ամենայն ստացուածոց նորա կցորդ և հաղորդ լինիմք մեք. բայց միայն այսուիկ փոքր իցեմք քան զնա, զի նա գլուխ

լիցէ, և մեք 'ի նմանէն առնումք իշխանութի̃ վայելել 'ի պարգևսն նորա։ Եւ յայսմիկ նմանեալ են հաւատքն տեառն մերոյ ։

Յաւետարանի անդ գրեալ է, զի նմանեցոյց տէր մեր զհաւատս իւր տնկոց. ասէ. "Այր մի տնկեաց իւր այգի, որմովք պարսպեաց, և պարսպովք ամրացոյց զնա, գուբ հնձանս հանդերձեաց 'ի նմա, և շինեաց կանգնեաց 'ի նմա աշտարակ"։ Եւ անդ 'ի նմին պատգամի յայտ առնէ՝ եթէ վաստակեաց աշխատեցաւ յայգոջ անդ մինչև 'ի ժամանակս պտղոցն, և զլացան զնա մշակքն։ Եւ դարձեալ 'ի միւսումն տեղոջ ասէ. "Ես եմ այգի, և դուք որթ էք. ամենայն որթ որ յիս տնկեալ իցէ, և պտուղ ոչ տայ, խլինա"։ Զի թէպէտ և թագուցեալ է այս յաւետարանէ անտի, զոր ընթեռնուն օտարք մարկիոնացիքն, սակայն յայնմանէ որ ինչ յԱռաքեալն գրեալ է, գոյ նոցա յանդիմանիչ՝ եթէ արդարև գրեալ էր այս յաւետարանի անդ՝ զի առաքեալ եմք մեք 'ի տունկս, և մարկիոնացիք ջնջեցին զայս։ Գրէ Առաքեալ 'ի թղթի անդ հռոմայեցոց. ասէ. "Զի եթէ տնկակիցք եղաք մեք մահուն տեառն մերոյ, սոյնպէս և յարութեն նորա"։ Եւ դարձեալ գրեալ է 'ի թղթի անդ կորնթացոց յառաջնումն՝ եթէ տունկ են նոքա այ̃. ասէ. "Ես տնկեցի, Ապաւղոս ջուր ետ, այլ ա̃ծ աճեցոյց"։

Նաև այսու առակօք զվարդապետութի̃ն մարգարէութեան լցին գիրք։ Ասէ Եսայի մարգարէ, եթէ տունկ կենաց մարդք հաւատացեալք են. և իբրև ունայնացեալք լինէին 'ի գործոց անտի կենաց, լինին նոքա այնուհետև այգի աւերեալ. ասէ. "Այգի տնկեցի 'ի տեղի սիրելի, 'ի տեղի պարարտութեան. ցանկով փակեցի, և ամրութ̃բ պարսպեցի. նոր տունկ տնկեցի, մաքրեցի, կտուեցի, կակղեցի, ձողաքարձ զարդարեցի, աշտարակ կանգնեցի, գուբ հնձան շինեցի. կացի մնացի եթէ եկեսցէ բերիցէ ինձ խաղող, եկն եբեր փուշ և տատասկ։ Արդ, արք Յուդայ և բնակիչք Երուսաղէմի, դատ արարէք ընդ իս և ընդ այգի իմ. զինչ ինչ էր առնել արդեօք այգոյ իմում,

և ես ոչ արարի նմա. կացի մնացի՝ զի եկեսցէ բերի-ցէ ինձ խաղող, ևն եբեր ինձ փուշ և տատասկ: Արդ ես ինձէն պատմեցից զինչ արարից ընդ այգի իմ. քակեցից զամրութի ցանկոյն և եղիցի 'ի յափշ-տակութիւն, կործանեցից զպարիսպս և արարից կո-խան զօրաց. լքից զայգի իմ, զի մի՛ կտուեսցի և մաքրեսցի և մի՛ կակղեսցի, բուսցի և կցեսցի 'ի նմա փուշ իբրև 'ի խոպանի. պատուէր տաց ամպոց իմոց, զի մի՛ տեղասցեն յայգի իմ. զի այգի կամարարի [1] տունն Իսրայելի է, և մարդն Յուդայ նորատունկ սիրելի. կացի մնացի զի գտցի 'ի նմա իրաւունք, և գտաւ անիրաւութի. ակն կալայ արդարութեան, և եղև զլացութիւն ,, :

Նաև յետ աւերածու այսր միոյ այգւոյս՝ վասն որոյ ասացն՝ զի նա ինքն է տունն Իսրայելի, առնէ ած զերինս աւերեալս [2] սերմանեաց և տնկոց: Ասէ Ե-սայի. "Եղիցի յաւուր յայնմիկ ամենայն տեղի՝ յորում իցէ հազար ափն այգւոյ՝ 'ի հազար հազար չափով, խո-պանասցի և 'ի փուշ դարձցի. կապարճեալք և լրա-ձիգք լրագիրկք անկցին 'ի ներքս, զի խոպանասցեալ և փշաբեր լիցի ամենայն երկիր: Եւ ամենայն լեառն որ ոչ արօրադիր ակօսաբեկ լիցի, և մի՛ հասցէ անդ երկիւղ. զի եղիցի 'ի խոպանէ և 'ի փշաբեր տեղո-ջէ՛ անտի արօտ գառին և կոխան եզին ,, : Զոր օրինակ վասն այգւոյն մեկնեաց և եցոյց մեզ մարգարէն՝ եթէ ոչ է նա այգի, այլ բարիոքութին տանն Իսրայելի կոչե-ցաւ այգի ցանկալի, և հաւատքն այ տնկեցան 'ի նո-սա իբրև այգի նորատունկ, և յորժամ դարձան նո-քա 'ի կռապաշտութի անդր՝ եղեն նոքա լերինք աւե-րեալք, բխեցին 'ի նոսա գործք չարք իբրև փուշք, սոյնպէս և մեք եաք լերինք աւերեալք. զի պտուղ այ երբէք ոչ տայաք: Ասաց, ասէ, իբրև զտունկն՝ իբրև զսերմն բնակեսցեն 'ի մեզ հաւատք, զի ցնծութե տայցեմք մեք պտուղ այ:

Օր օրինակ Եսայի քարոզեաց վասն այգւոյն՝ որ տնկեցաւ և լաւացաւ պտուղ նորա՝ զի խլեցի, և ա-

1 Յօրինակին կամարէ. ուղղեցաւ ըստ յաջորդացն:
2 Յօրինակին 'ի լուսանցսն արօրեալս:

սաց վասն լերանցն աւերելոց՝ զի ակօսաբեկ լիցի, սոյնպէս և յԵզեկիէլ գրեալ է՝ եթէ սատակելոց էր ած զտունկն առաջին իբրու զմարդիկ կարդատունկ, և զուարճացուցանէ զայլ մարդիկ՝ որ 'ի կռապաշտութեան աւերեալ և ցամաքեալ էին. և առնէ զնոսա ծառս փառաւորեալս գեղեցիկս, իբրու յառաջին ժողովրդենէ անտի առնու տունկ պատուաստէ 'ի նոսա զՅիսուս Քրիստոս, զի առեալ լիցի նա յազգէ անտի տանն Յուդայ յետ խոտելոյ առաջին արքայութե՛ն. զի քան զամենայն ոստիսն Իսրայէլի, որ կոչեցան տունկ խոտեալ և անարգեալ, ձոխ և յարգի էր ազգ տանն Յուդայ, զի 'ի նմանէ ծագեաց Յիսուս Քրիստոս: Ասէ Եզեկիէլ մարգարէ. "Այսպէս ասէ տէր կամարար. առից ես յընտիր ընտիր բարձանց մայրիցն և նոճոյն, և հանից 'ի գլխաւոր գլխաւոր՝ որ 'ի մատաղատունկն շառաւեղէ անտի. և տնկեցից ես զնոսա 'ի լերինն բարձրութե՛, և կախեցից զնա զբարձրացեալ լեռնէն Իսրայէլի. տնկեցից և հաստատեցից. ոստս արձակեսցէ, և պտուղ բերցէ. և եղիցի ծառ մեծ, և յամրութիւն ոստոց նորա հանգիցեն թռչունք երկնից, և ամենայն բարունակք նորա 'ի նա հաստատեսցին. և ծանիցեն գիտասցեն ամեն փայտք անտառի՝ եթէ ես եմ տէր, որ խոնարհեցուցանեմ զփայտս բարձրացեալս, և բարձրացուցանեմ զփայտս խոնարհեալս. ցամաքեցուցանեմ զծառ դալարացեալ, և դալարեցուցանեմ զծառ ցօսացեալ": Վասն այսորիկ յառակ օրինակաց նմանեցուցանէ զմեզ տէր մեր տնկոց ծառոց և որթոյ:

Եւ այսպէս եմք մեք նմանեալ տնկոց. զի նախ դաւաղան մի յորթոց միայն լոկ մերկ տնկի յերկրի, և ապա հաստատնայ. և ընդունի 'ի ծածուկ զօրութի՛ զորթոյ, և բարունակս և տերև և ծաղիկ և խաղող, ուստի գինի լինի. և իբրու կտրած մի որթոյ է նա մերկ, թողեալ լինի 'ի վերայ նորա մշակ՝ կակղեալ շուրջ զարմատովք նորա, և սրբեալ մաքրեալ զբարունակս նորա 'ի ցօսացեալ ծայրից անտի; և հանել զքաղ նորա, և գործել զամենայն գործ նորա 'ի ժամու իւրում. և 'ի հոգաբարձութե՛ մշակին ընդունի որթն պաշտօն՝ որ առաքի նմա յայ, արև, անձրև, ամպք,

ցօղ և հողմք քաղցրութեան, և լինի նմա պտուղ բարութե՟ որ ուրախ առնէ զտէր այգւոյն։ Ապա եթէ արհամարհեաց զնովաւ մշակն, և պակասէ նմա ըսպաս՝ դայեակ սնուցիչ, գօսացեալ ցամաքի որթն, և զրկեալ լինի պտուղ՝ այն որ հանդերձեալ էր ծնանիլ 'ի նմանէն, և ինքն չլինի կերակուր 'ի նիւթ հրոյ։ Սոյնպէս և մարդիկ՝ որ աշակերտին յարքայութիւն երկնից, և տնկին հաւատովք միանձունք. յայսմիկ զբօսանիմք կարդալ զանուն այ՟, և հաւատալ 'ի նա՝ թէ մի է ած՟ միայն. և յետ սկզբանն առանց պտղոյ եմք մեք, զի յամենայն վանատակոց և 'ի գործոցն տղայ եմք, և ապա կացեալ լինին 'ի վերայ մեր վարդապետք 'ի նմանութի՟ մշակաց։

Եւ զոր օրինակ մշակ գործէ զամենայն գործ 'ի ժամու իւրում, և մաքրէ և կտուէ զորթն, սոյնպէս և վարդապետք մատուցանեն մեզ զուսումն վարդապետութեան զգաստութե՟ և քաջալերութե՟ յարժանաւոր ժամանակի, և սաստեն մեզ, և ցուցանեն զերկեւղ, և մաքրեն բառնան 'ի մէնջ զամենայն գործս չարութե՟ իբրև զփուշ և տատասկ՝ զոր քաղէ հանէ մշակ յայգւոյ, և ընդունիմք մեք 'ի նմանութի՟ անձրևաց, ցօղոյ, արևու, ամպոյ, միգի և հողմոց՝ զընթեռնուլ գրոց, զթարգմանութի՟, զաղօթս, և զձեռնադրութի՟, և զօրհնութի՟ գովութե՟ պատարագի. և աճեմք և զուարճանամք մեք այնուիկ իբրև զայգի վայելուչ, և հաստատեալ կայցեմք մեք ընդ աջմէ տեառն մերոյ, իբրու բարձեալ ունիցիմք մեք պտուղ սրբութեան հաճոյ տեառն մերոյ. և կեցուցանիցեն զմեզ այն՝ վկայեաց վասն նորա տէր մեր և ասէ. “Եկայք օրհնեալք հօր իմոյ, ժառանգեցէք զարքայութի՟ն՝ որ պատրաստեալ իցէ ձեզ 'ի սկզբանէ աշխարհի. զի քաղցեալ էի և ետուք ինձ ուտել, ծարաւի էի և ետուք ինձ ըմպել, օտար էի և ժողովեցէք զիս, մերկ էի և զգեցուցէք զիս, հիւանդ էի և տեսէք զիս, 'ի բանդի էի և եկիք առ իս„։ Եւ յայսմիկ նմանեալ եմք տնկոյ։

Իսկ արդ իւ մարթեմք տալ զպտուղ հաճոյ այ՟, կամ զիարդ մարթեմք մեք կերակրել զՔրիստոս, հաւանեցուցանէ զմեզ աւանիկ տէր 'ի յասելն իւրում.

ասէ. «Արդարեւ ասեմ ձեզ. որչափ ինչ արարէք դուք միում ումեք յեղբարց իմոց փոքրկանց, ինձ արարէք»։ Զի յառաջագոյն կանխեաց Եսայի մարգարէ և ասէ. «Ահաւասիկ կոյս յղասցի և ծնցի մանուկ, և կարդասցեն զանուն նորա Էմմանուէլ, որ թարգմանեալ կոչի՝ ա՟ծ մեր ընդ մեզ»։ Եւ այսպէս եղև Յիսուս ա՟ծ մեր ընդ մեզ։ Քանզի ասաց, ասէ, որ ինչ միանգամ զնոսա պատուեցէք, ես պատուեցայց նոքօք. զի ընդ մեզ և 'ի մեզ է նա։ Իսկ ոյք 'ի խոնարհ արկանեն զաչս իւրեանց յեղբարց իւրեանց, յատեան դատաստանի մտանէ տէր մեր և լինի ամբաստան զնոցանէ. որպէս թէ 'ի նմանէ արկին 'ի վայր զաչս իւրեանց։

Իսկ յորս տնկեցան հաւատքն, և ոչ ընկալան զսպասն մնոդեանն, զայնոսիկ զոր համարեցաքն 'ի վերուստ՝ չորանան ցամաքին նոքա իբրու զորթ մի գոսացեալ, և զլացեալ զրկի գեղեցիկ պտուղն՝ որ հանդերձեալն էր լինել 'ի նոսա։ Եւ յորժամ եկեսցէ տէր այգոյն առնուլ զպտուղն զպտղաբեր այգոյն, և գտանէ զնոսա աւերեալս 'ի գործոց բարեաց, խլին և անկանին նոքա 'ի նիւթ հրոյ իբրև զորթ ցամաքեալ։ Եւ զոր օրինակ որթն իբրև տնկի՝ ոչ եթէ յարմտիս նորա երթան բրել տեսանել եթէ գուցէ կռուեալ և կցեալ իցէ, այլ առ ամին ցուցանէ զվկայութիւն տերևոյն 'ի ծայրս իւր, և ապա յետոյ տայ պտուղ։ Սոյնպէս և մեք, յորժամ տնկեալ լինին 'ի մեզ հաւատքն, և կալեալ լինիմք, ոչ եթէ 'ի միտս մեր գայ ոք մտանել տեսանել՝ եթէ կալեալ իցէ՝ եթէ ոչ։ Այլ որպէս որթ՝ զի ամին ցուցանէ զգոյն 'ի զուարճանալ տերևոյն, սոյնպէս և մեք՝ յորժամ հաստատեալ լինին հաւատքն 'ի միտս մեր, զառաջինն երևիմք մեք՝ զի բխէ սէր 'ի մտաց մերոց, և երևի արտաքս, և ապա լինիմք մեք պտղաբերք յայտնի։ Եւ յայսմիկ նմանեալ են հաւատքն մեր տնկոց։

Եւ դարձեալ նմանեցոյց տէր մեր զեկեղեցի իւր խաշին, և ինքն եղև հովիւ. որպէս և յաւետարանի անդ ասէ. «Ո՞վ իցէ 'ի ձէնջ՝ որոյ իցէ նորա խաշն, և մոլորիցի անտի ոչխար մի, ո՞չ թողուցու նա զինն-

տուն և զինն 'ի լեառն յանապատ, և երթիցէ զհետ կորուսելոյն մինչև խնդրիցէ և գտցէ զնա,,: Եւ յայնմիկ՝ զի ասաց աշակերտացն "Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ ,, . և յայնմիկ՝ զի ասէ "Ահաւասիկ առաքեմ զձեզ իբրև զգառինս 'ի մէջ գայլոց ,, : Եւ բազում առակօք կոչեաց զաշակերտսն հաւատացեալս և խաշինս, և ինքն եղև հովիւ : Նա և յայսմիկ զհետ օրինաց և մարգարէից գնաց տէր, զի բազում մարգարէք Թագաւորք և իշխանք՝ որ յառաջ քան զտէր մեր՝ եղեն հովիւք : Հաբէլ՝ որ հաճոյ եղև ա̃յ, 'ի սկզբանէ հովիւ էր . և Աբրահամ, զի եղաւ նմա կտակն ժառանգութեան, տէր էր խաշանց . և զՅակոբ 'ի հովուաց առ, և խօսեցաւ ընդ նմա ա̃ծ . և զՄովսէս 'ի խաշանց առ, և եղև Թագաւոր և հրեշտակ ա̃յ . և Դաւիթ 'ի խաշանց կոչեցաւ, և Թագաւորեաց 'ի վերայ Իսրայէլի : Եւ սոքա ամենեքեան ըստ կանխաց տեառն մերոյ եղեն հովիւք արօտից մարդկան, զի նախ ուսցին 'ի խաշանց անտի՝ թէ որպէս է հոգաբարձութիւն հովուին վասն հօտիցն իւրոց . զի յորժամ մոլորեսցի ոչխար 'ի հօտէ անտի, խնդրեսցէ և ածցէ և արասցէ զնա 'ի ներքոյ ձեռին իւրոյ . և խառնեսցէ զնա ընդ ընկերս նորա, և գիտէ որպէս արժան է կերակրել զհիւանդն, և օծանել զբորոտեալն, և պատել զբեկեալն :

Իսկ զի գիտասցեն՝ թէ որպէս խոնարհեցուցանէ հովիւ զանձն իւր, և աշխատի վասն հօտից իւրոց, սոյնպէս փոյթ լինիցի նոցա վասն արօտի մարդկան : Եւ վասն այսորիկ վկայէ և Եզեկիէլ մարգարէ . "Եղեն պատգամք տեառն 'ի վերայ իմ, և ասէ . որդի մարդոյ մարգարէա դու 'ի վերայ հովուացդ Իսրայէլի և ասասցես ցդոսա . այսպէս ասէ տէր կամարար . ով հովիւքդ Իսրայէլի, մի՛ եթէ հովիւք ուրուք ուրէք զանձինս արածեսցեն . ո՞չ հովիւք զխաշինս արածեն : Արդ աւադիկ զկաթնդ ուտէք, զփափուկս ագանիք, զպարարտս կրճտէք, և զխաշինս իմ ոչ արածէք . զհիւանդացեալն ոչ բժշկեցէք և զտկարացեալն ոչ զօրացուցէք, զբեկեալն ոչ պատեցէք և զչարչարեալն ոչ մխիթարեցէք, զմոլորեալն ոչ դարձուցէք և զկորուսեալն ոչ խնդրեցէք, զհաստ հա-

րուսան նենգով կործանեցէք , զհզօրն բռնութեամբ և խաբէութեամբ չարչարեցէք ․ և ցրուեցան խաշինքն իմ , քանզի ոչ գոյր նոցա հովիւ ․ և եղեն կերակուրք գազանաց անապատի ․ ցրուեցան մոլորեցան խաշինքն իմ ընդ ամենայն լերինս բարձունս , ցրուեցան ընդ ամենայն տիեզերս երկրի , և ոչ ոք էր որ խնդրէր , և ոչ այն որ դարձուցանէր ։ Վասն այսորիկ լուարուք հովիւք ամենայն զպատգամս տեառն ․ կենդանի եմ ես՝ ասէ տէր կամարար , փոխանակ զի մատնեցան խաշինք իմ յաւար , և եղեն խաշինք իմ կերակուր ամենայն գազանաց անապատին , զի ոչ գոյր 'ի վերայ նոցա հովիւ և ոչ յայց ելին խաշանց իմոց , այլ բուծանէին նոքա զանձինս իւրեանց , և զխաշինս իմ ոչ արածէին , վասն այսորիկ՝ հովիւք՝ լուարուք ըզպատգամս տեառն ․ այսպէս ասէ տէր կամարար ․ ահաւադիկ եկեալ հասեալ եմ ես 'ի վերայ հովուացդ , և պահանջեցից զխաշինս իմ 'ի ձեռաց դոցա , և դադարեցուցից զհովիւսդ խաշանց իմոց , և այլ ոչ արածեսցեն նոքա ․ և փրկեցից ես զխաշինս իմ 'ի բերանոյ նոցա , և այլ ոչ լիցին նոցա կերակուր ։ Այսպէս ասէ տէր կամարար ․ ահաւադիկ ես պահանջեցից զխաշինս իմ , և հանդէս արարից խաշանց իմոց ․ զոր օրինակ առնիցէ հովիւ հանդէս զհօտից իւրոց յաւուր միգի և մառախղի , այնպէս խնդրեցից զնոսա և ժողովեցից զնոսա յամենայն տեղեաց՝ ուր ցրուեալ իցեն նոքա անդ՝ յաւուրն միգի յաւուրն մառախղի ․ և հանից զնոսա 'ի հեթանոսաց , և ժողովեցից զնոսա 'ի գաւառաց ։ Եւ դարձեալ ասէ ․ ես ինձէն ճարակեցից զխաշինս իմ , և ես հանգուցից զնոսա , ասէ տէր ամենակալ ․ զկորուսեալդ խնդրեցից , զմոլորեալդ դարձուցից , զբեկեալդ պատեցից , զհիւանդացեալդ զօրացուցից , զգէրն և զհզօր պահեցից և արածեցից զնոսա իրաւամբք [1] և արդարութ̃ք» ։ Յայսմիկ յայտ արար մեզ՝ եթէ զամենայն թագաւորս և զիշխանս 'ի բաց մերժէ ։ Դարձեալ ասէ տէր կամարար ․ «Ահաւադիկ ես հասեալ եմ 'ի

[1] Յօրինակին՝ որպէս և ուրեք ուրեք գրեալ էր իրաւմբք ․ նոյնպէս և անիրաւութեն՝ անիրաւութէ ։

վերայ ձեր. ոչխար առ ոչխար դատեցայց, զհարուա-
ածս ընդ անաւագն ընտրեցից, և զանաւագն ընդ
հարուստն. փոխանակ զի ոգւովք դուք գրթեցէիք
խեթկէիք, և զանաւագն առ ոտն հարկանէիք, մինչ
'ի բաց մերժէիք. և ցրուեցան խաշինք իմ: Արդ փըր-
կեցից զխաշինս իմ, և այլ ոչ ևս մատնեցից զնոսա
'ի յափշտակութի̃. և դատեցայց խոյ առ խոյ, և նո-
խազ առ նոխազ: Եւ կանգնեցից կացուցից 'ի վերայ
նոցա հովիւ մի զծառայ իմ զԴաւիթ, որ հովուեսցէ
նց̃, և նա հանգուսցէ զնոսա, և եղիցի նց̃ հովիւ »:

Բանք մարգարէից համապաղ ճշմարիտ են. բայց
այս երկու բանք փոփոխեալ են 'ի միմեանց. զի զա-
ռաջինն ասէ՝ ես եղեց նոցա հովիւ, և յետոյ ասէ՝
Դաւիթ ծառայ իմ հովուեսցէ զնոսա: Սակայն հա-
ւասար և միաբան են այս պատգամք ընդ միմեանս.
իբրու ընդունելի լինել հովիւ՝ որ ա̃ծն է և մարդ, զի
նա ինքն է տէր մեր, զի ծնաւ նա 'ի զաւակէ անտի
Դաւթի. և ա̃ծ է՝ զի երկոքին կատարին 'ի նմա: Եւ
վկայէ Եսայի մարգարէ՝ եթէ ծնանելոց է ա̃ծ փըր-
կիչ. ասէ. "Մանուկ ծնաւ մեր, և որդի տուաւ մեզ.
և իշխանութի̃ն նորա տացի 'ի վերայ ուսոց իւրոց. անուն
կոչեսցի նմա սքանչելի խորհրդական, ա̃ծ, հզօր ».
քանզի ա̃ծ էր Քրիստոս, և որդի ա̃յ: Արդ լցեալ
կատարեցաւ 'ի նմա այն՝ զոր ա̃ծն ասէ. "Ես եղէց հո-
վիւ խաշանց իմոց, և ես ճարակեցից զնոսա ": Եւ զի
որդի է նա Դաւթի, ինքնին Դաւիթ եղև հովիւ. և
կատարեցաւ բանն զոր ասաց նոցա ա̃ծ. "Դաւիթ
ծառայ իմ հովուեսցէ նոցա, և նա եղիցի 'ի վերայ
նոցա հովիւ ":

Իսկ եթէ ոք ասիցէ ինձ, սա զի է որդի Դաւթի՝
զիա՞րդ մարթի կոչել զնա Դաւիթ և կատարել հո-
վուութեանն Դաւթայ, դիւրին է ինձ ցուցանել 'ի
գրոց սրբոց՝ եթէ կոչի Դաւիթ որ 'ի զաւակէ Դաւ-
թի, և ունի զաթոռն արքայութե̃ն նորա: Զի գրեալ
է 'ի մատեանս Թագաւորաց, 'ի ժամանակի իբրև
եկին զօրք որդւոցն Իսրայելի, և ասեն ցՌովբովամ
որդի Սողոմոնի "Թեթևացո 'ի մէնջ 'ի հարկաց ան-
տի հօր քո, ասէ ցնոսա. Ծկոյթ իմ ստուար է քան
զքայլթն հօր իմոյ. հայր իմ գաւազանաւ խրատէր

նոքօք այնուհետեւ կարեմք մեք պահել, սիրել զեղբարս, տալ տուրս, լինել հալածական, եւ համբերել ամենայն ցանկութեանց, իբրեւ հաւատացեալ գիտեմք՝ եթէ կան մնան մեզ վարձք հատուցման մերոյ յերկինս: Որպէս մինչ դեռ աստէն էր տէր մեր, ամենեքին որ միանգամ մերձենային առ նա վասն ամենայն ցաւոց եւ հիւանդութեանց, այսպէս ասէր զմի մի[1] ՚ի նոցանէն. «Հաւատք քո կեցուցին զքեզ»: Նա եւ առաքեալքն իբրեւ զհաւատոն ստացան, ապա սկսան նոքօք հանել զդեւս, սրբել զբորոտս, յարուցանել զմեռեալս, եւ կենդանիս առնել զմարդիկ յերկնաւորս:

Եւ այսպէս է նմանել հաւատք արծաթոյ. զի զոր օրինակ արծաթով լինի ստացեալ ամենայն ինչ՝ որ պէտք իցեն կենաց աշխարհիս այսորիկ, սոյնպէս ինչ ամենայն որ միանգամ պիտոյ իցեն՝ որ կենացն հաւատովք ստացեալ լինին: Քանզի եւ զսէր այնորիկ՝ որ առաւել քան զամենայն յարգէ Առաքեալ, ՚ի հաւատալ անդ մերում մարթեմք մեք ստանալ զնա հաւատովքն: Վասն այսորիկ նմանեալ են հաւատքն մեր արծաթոյ, զի արծաթ կարէ լնուլ զամենայն պէտս՝ որոց ունիցին զնա, այն՝ որ ունիցի զտիպս նմանութեան տեառն աշխարհին. զի շրջեսցին նովաւ որ ըստ հրամանի նորա լինի: Ապա եթէ երթանայցէ ոք օտարաշխարհիկ, եւ ունիցի նա արծաթ գրեալ ՚ի տիպս պատկերի այլոյ թագաւորի, եւ զգիր տեառն աշխարհին ոչ ունիցի, ՚ի նեղութեան բազում մեծի ՚ի միջի կայ նա. զի եւ ոչ փոխառուք կարօտականք ընդունին ՚ի նմանէն ինչ որ ոչ գնայ ՚ի պէտս նոցա. քանզի եւ ոչ վաճառականք առնուն զնա ինչ որով ոչ օգտին նովաւ: Թէպէտ եւ կարի յոյժ գտանի յաշխարհին յայնմիկ հանդերձ եւ կերակուր եւ ամենայն իրք պիտոյից, սակայն նա ՚ի սովու եւ ՚ի ցրտոյ տանջի եւ մեռանի, զի արծաթ խոտեալ անարգեալ ունի նա ՚ի ձեռին:

Իսկ տէր մեր ՚ի քարոզել իւրում մեզ զհաւատս զայս՝ որ արծաթոյ նմանեցոյց, համարձակութ̃ ասաց

1 Յօրինակին գրեալ էր մի մի. ուղղեցաք ըստ այլ տեղեաց հայցական խնդրով բայիս ասել:

ծառայից իւրոց . ասէ . “Յարգեսջիք զայդ մինչև գամ ես „ ։ Զի գիտէր եթէ ճշմարիտ տիպք պատկերի տեառն աշխարհին գոն 'ի նմա , և յամենայն բնութիս յարգի նա ։ Նա և աստէն գոյ ինչ որ նման է նորայոյն զոր եբեր . զի 'ի գալստեան անդ իւրում տոկոսիւք պահանջեաց ։ Ապա եթէ արծաթն նման է այնմիկ որ եկն՝ ընդ նմա չիցէ աստ , իսկ վաշխն և տոկոսիք ուստի՞ լինին տուեալ . կամ զիա՞րդ ասէ Մարկիոնն՝ եթէ ոչ է նմանեալ ճանապարհ նորա ընչի ։ Իբրև եկն որ զմի քանքար ունէր , այն իսկ է՝ որ նման Մարկիոնայ և այլոց աղանդոց է . և տալ պատասխանի մեծ գոյր այնմիկ՝ որ ունէր զմի քանքար . և փոխանակ զի կայր և ասէր լրբենի երեսօք , “Երկեայ ես 'ի քէն , զի այր մի ստամբակ էիր դու , և վասն այսորիկ ոչ ետու փոխ զարծաթն քո „ , մարթէր նմա ասել՝ եթէ փոխառուքն ոչ ընկալան զնա յինէն . ես կամեցայ գտանել նմանեալս նմանող նմին , և ոչ գտի յաւելուլ 'ի վերայ նորա ։

Այլ քանզի արծաթն որ եկն տեառն մերում յայս յաշխարհս՝ յարգեցաւ եղև ընդունելի , և որք առին զնա՝ յաւելին 'ի վերայ նորա աստ իւրաքանչիւր որչափ և կարացին ժողովել , էր որ տասն կրկին , և էր որ հինգ ։ Եւ սոյն իսկ այս արծաթ որ աստի ժողովեցաւ , յարգեցաւ 'ի գաւառս վերինս . և յայտ եղև՝ թէ մի է տէր այս երկուց բնութեց , վերնոյն և ներքնոյս . և վասն հրամանի նորա մի եւք արծաթոյ , գնայ այս ընդ ամենայն գաւառս և յարգի ։ Եւ յայսմիկ նմանեալ են հաւատք նորա արծաթոյ ։ Եւ այսու առակօք զոր ասաց տէր մեր՝ եթէ նման է արքայութին երկնից ամենայն ընչի . զի նմանեցոյց զնա՝ յայտ արար և եցոյց մեզ՝ թէ երբն արքայութի իցէ , և նմանեցաւ յիրս յիրս . իբրու դիւրին է նմա նուաղել և բարձրանալ , աղքատանալ , մեծանալ , մեռանել և կեալ , և ամենայն զոր կամի առնել ։

Եւ զայս առակ դարձեալ զոր ասաց տէր մեր , ասէ . “Այր մի ազնուական գնաց յաշխարհ հեռի՝ առնուլ իւր անտի թագաւորութիւն և դառնալ „ , յայտ արար մեզ՝ թէ արքայութե բնակութի և ինքնութի նորա 'ի վեր անդր է , և անդուստ գայ այսր .

վասն այսորիկ տէր մեր աստէն ընդ մեզ էր ։ Եւ արդարեւ ճշմարիտ այր էր նա՝ զի զմարդկութի̃ զգեցաւ, և ազնուական էր՝ վասն այնորիկ որ վերագոյնն գրեալն էր ։ Եւ զի ասէ. “Առնուլ զԹագ արքայութեն և դառնալ„. քանզի յորժամ գայ նա աստ եղ և փառաւոր գալստեամբ իւրով, Թագաւոր գայ նա և ա̃ծ և վճիռ և դատակնիք մահու և կենաց, ուրախութե և տանջանաց՝ յորժամ նստցի նա յաթոռ ահագին ահի և քաջալերութե. իբրու կայցեն առաջի երեսաց նորա զօրք հրեշտակաց ահիւ և երկեղիւ ։ Վասն այսորիկ այր ճշմարիտ փոխեցաւ առ 'ի մէնջ. իբրու Թագաւոր գոյ նա առ մեզ, զի գլուխ արքայութեն և ա̃ծութեն 'ի վեր է ։ Զի յայտ է այս ամենայն մարդոյ՝ իբրու Թագաւորի այսպէս պարտ է լինել և կոչել Թագաւոր, որպէս թէ իցեն նորա քաղաքք և գեօղք և արմտիք, գանձք, սպայք[1], դահիճք, նուիրակք, սպասաւորք, սուրհանդակք, գահաւորք, և սենեկապանք և ամենայն սպասք արքայութե, որ յայտ երեւին առաջի աչաց իւրոց ։ Ապ՝ եթէ երթիցէ Թագաւոր միայն լոկ, և կայցէ 'ի տեղի աւերակ, իբրու այս ամենայն սպասք հեռի իցեն 'ի նմանէ, նա և Թագաւոր չէ. կամ ո՞ իցէ որ կոչիցէ նմա Թագաւոր, իբրու թէ միայն կայցէ և չիցէ ոք ընդ նմա ։

Վասն այսորիկ արդարեւ ճշմարիտ ա̃ծն մեր Թագաւոր յաղթ է, որոյ իւր են երկինք և երկիր, հրեշտակ հրեշտակապետք և լուսաւորք և մահ և կեանք, իշխանութիք և պետութիք, փայլատակմունք և որոտմունք, բարձրութիք և խորութիք, և ամենայն արարածք՝ որ երեւին, և որ ոչն երեւի ։ Թագաւոր է և տէր ամենայն բնութեանց և վասն պատկերին կերպարանաց մարդոյ՝ զոր զգեցաւ Քրիստոս առ 'ի Հօրէ բարձրելոյ. զի նա ինքն է Թագաւոր, որ ասաց՝ բայ ելանէ առնու իւր Թագաւորութի̃ և դառնայ ։ Եւ այն՝ որ մերժեն զմարգարէութի̃ն Քրիստոսի, զի՞որդ կարծիցեն զելանել առնուլ Թագաւորութեն 'ի տեղւոջէ ուր չիցէ ։ Բայց եթէ իցեն ոմանք որ կարծիցեն՝ թէ երբեմն բնակեալ էր նա առանց հրեշտակաց, իշխա-

[1] Ցորենակէն 'ի լուսանցսն սպաստ ։

նութեց և պետութեց. և ինչ ոչ էր նորա, 'ի վերայ ոյր արդեօք կոչէր նա Թագաւոր, այս որ առանց ստացուածոց էր՝ մինչև եկն այսր: Եւ եթէ աստի ստացաւ նա զարքայութի 'ի մարդկանէ՝ որ հաստատեալ են 'ի ճշմարիտ Թագաւորէ անտի, վասն որոյ ասացին արար իւր Քրիստոս հրեշտակս, իշխանութիս և պետութիս, և 'ի վերայ նոցա կոչեցաւ Թագաւոր, յայտ եղև՝ եթէ արդարեւ ոչ Թագաւորէր, եթէ ոչ առ 'ի ճշմարիտ Թագաւորէ անտի՝ որ տէրն է ամենայն ընութեց: Զի ահաւասիկ և Քրիստոս՝ իբրև կամեցան աղանդքն հերձուածոց օտարացուցանել զնա, յայտ է՝ եթէ յարարածոց անտի Թագաւորին մեծի և մեծատան ստացաւ նա իւր ստացուածս, և կոչեցաւ Թագաւոր 'ի վերայ նոցա:

Եւ կոչեաց տէր մեր քաղաք զբնակութի փառաց իւրոց, յայնմիկ՝ զի ետ նմա տասն քաղաք իշխանութե այնմիկ՝ որ զտասն քանքարն շահեցաւ, և հինգ քաղաք այնմիկ՝ որ զհինգ քանքարն վարձեցաւ: Նա և յիսկզբանն իսկ գրեալ է. ասէ՝ կոչեաց զծառայս իւր զտասն: Եւ իբրև եկն նա 'ի գալստեանն իւրում, և եկին տալ նմա զհամարս, երեք միայն գրեալ են որ եկին, և վասն եւթանցն ոչ ասաց մեզ զի եղեն նոքա, և կամ ընդէր ոչ եկին: Բայց զի գրեալ է, ասէ, զի կոչեաց զծառայս իւր տասն, վասն կատարել թուոյն ամենայն աշակերտութե ասաց. որպէս և 'ի սկզբանէ իսկ տասն թիւ հաստատեաց ած թուել ամենայն լեզուաց. Յոյնք, Հոռոմք, Ասորիք, Պարթեւք. և զամենայն թիւս մինչև 'ի տասն թուէ ոք, և դառնայ 'ի վերայ միոյն՝ յաւելուլ 'ի վերայ թուոյն տասներորդի: Նա և յոյժ իսկ եցոյց մեզ ած զերկայնմտութի և զբարկութիւն իւր 'ի թիւն տասներորդ. զի մինչ 'ի տասն ազգ ներեաց ած երկայնմտութբ իւրով վասն առաջին անօրէնութե մարդկան, և ապա ած 'ի վերայ նոցա զջուրսն հեղեղին. և ապա եցոյց զՆոյ միայն՝ զի արդար էր: Նա և ի ծննդոց Նոյի 'ի տասն ազգ սրբեաց ած և եհան զԱբրահամ: Եւ 'ի Սոդոմ տասն արդար եթէ էր գըտեալ, ասէ տէր, ապրեալ լինէր նա 'ի կորստենէ անտի: Եւ զանօրէն յանցաւոր եգիպտացիսն տասն֊

հարուածեան գաւազանաւն պատժեաց ա՟ծ, և ոչ ևս այլ յաւել։ Սոյնպէս և տէր մեր ած 'ի մէջ զթիւն զտասներորդս առաջին օրինակին՝ որ եդեալ է, և զգովանդակութի՟ ամենայն թուոյն աշակերտութեանն կոչեաց տասն։

Իսկ դարձեալ նոքա ամենեքին գտան երեք կերպարանօք, մին տասն քանքարաւն վարձուք, մին հընգիւ, և միւսն առանց վարձուց. այն որ զտասն քանքարն ունէր, առ նա իշխանութիւն տասն քաղաք։ Տասն քանքար զոր վարձեցաւ, զի արար և կատարեաց զամենայն զպատուիրանն. զի ամենայն պատուիրանն զոր ետ մեզ տէր մեր, 'ի տասն քանքար առակեցաւ։ Եւ այս միւս եկն վարձիւք տասն քանքարաւն, զի արար և կատարեաց զամենայն զպատուիրանս. և սա 'ի մի աստ առակեալ են ամենիքեան՝ որք լուանն և արարին և կատարեցին որ միանգամ պատուիրեցաւ նոցա։ Եւ միւսն եկն վարձիւք հինգ քանքարաւն, զի արար նա զկէս պատուիրանին զոր լուաւ, և զկէս ոչ արար. և 'ի սմա առակեալ են որ լուան ամենիքեան զպատուիրանն կենաց, և մերձեցան 'ի գործ ճանապարհին մերոյ, և ոչ կարացին կատարել։ Եւ միւս ևս եկն առանց վարձուց. և 'ի նմա առակեալ են ամենիքեան որ լուան զբանն կենդանութե՟, և 'ի գործ անդր նորա ոչ մերձեցան։

Իսկ ամենայն աշակերտք՝ որ առակեալ են 'ի թիւ կատարեալ տասինն, գան այսու երեք կերպարանօք։ Ի նոցանէն գան՝ իբրև արարեալ և կատարեալ իցէ զամենայն. և 'ի նոցանէն գան՝ իբրև արարեալ իցէ զկէսն, և զկէս ոչ արարեալ. և 'ի նոցանէն գան՝ իբրու արարեալ իցէ զկէսն կէսոյ. և 'ի նոցանէն գան՝ իբրու ընաւ ինչ ոչ իցէ արարեալ։ Այն՝ որոց արարեալ և կատարեալ իցէ զամենայն, գայ ուրախութ՟բ, կայ առաջի տեառն և ասէ. տէր, քանքարն քո տասն քանքար վարձեցաւ. և առ նա իշխանութիւն տասն քաղաք. զի արար և կատարեաց զամենայն, առ նա զամենայն փառս անպակասս, և կոչեցան փառքն զոր ետ նմա՝ տասն քաղաք՝ վասն կատարեալ թուոյ տասինն։ Եւ այն՝ որ զհինգ քանքարն վարձեցաւ, առ նա իշխանու՟ի հինգ քաղաք. զի քան զկէս

առաջնոյն առնու սա զփառսն յաշխարհն կենաց. և կոչեցան պարգևք նորա 'ի հինգ քաղաք՝ զկեսն թուոյն տասներորդին. որպէս Առաքեալ ասէ. «Իւրաքանչիւր մարդ ըստ վաստակոց իւրեանց և զվարձ իւր ընդունի»: Իսկ այն՝ որ առանց վարձուց եկն, կոչեաց տէր նորա զնա անհաւատ. քանզի ոչ հաւատաց նա, և վարձեցաւ ոչ. զի որ հաւատայ՝ եթէ գոյ հատուցումն գործոց բարեաց, յայնժամ և սկսանի գործել: Եւ եթէ զայլ մարդիկ աշակերտիցեմք, յորժամ հաւանեցուցանեմք զնոսա 'ի հաւատսն անդր՝ և յանձն առնեմք նոցա զբանն տեառն մերոյ: Եւ զի ոչ հաւատաց նա միում այսց կերպարանաց, և անուն ևս հաւատոյ զոր ունի՝ բարձեալ լինի 'ի նմանէ 'ի կատարածի, և ապա ընկեցեալ լինի նա 'ի սատակումն և 'ի կորուստ: Զի ամենայն որ մահապարտ լինի, նախ կողոպտեն զնա, և ապա սպանեն: Սոյնպէս և սա որոյ զանունն միայն հաւատոց առեալ իցէ, որ առակեալ է յարծաթ և 'ի հանդերձ, և 'ի գործ անդր նորա ոչ մերձեցան, բարձեալ լինի 'ի նմանէ անուն հաւատոց՝ որ կոչեցաւ քանքար. և ապա դատապարտի նա:

Եւ զի կոչեաց տէր մեր քաղաք զբնակութիւնն փառաց իւրոց, արդարեւ նմանեալ են հաւատքն տեառն մերոյ քաղաքաց. որպէս զի տացէ թագաւոր իշխանութիւն միում ումեք 'ի ծառայից իւրոց 'ի վերայ քաղաքաց և գեղից: Եւ բնակէ ծառայն յապարանս թագաւորին, և լուանայ զինքն յաւազանս նորա, և բազմի 'ի գահ արքայութեան նորա, և 'ի ձեմելիս նորա ձեմի նա: Եւ յայսմիկ միայն փոքր է ծառայն իշխան քան զթագաւորն մեծ, զի տէր է նորա. և գիտէ՝ եթէ չէ ինքն գլուխ, և 'ի տեառնէ անտի իւրմէ ունի նա իշխանութիւն 'ի վերայ տէրութեան նորա: Սոյնպէս և մեք, յորժամ առնէ ընդ մեզ տէր մեր զգթութիւն ողորմութեան իւրոյ, և հանէ զմեզ առ ինքն և 'ի տեղի իւր, բնակեմք մեք յարքայութեան նորա, և գրգեալ փափկանամք մեք 'ի լոյս անդ նորա, և ուրախ լինիմք 'ի բարութիւնս նորա, և ամենայն ստացուածոց նորա կցորդ և հաղորդ լինիմք մեք. բայց միայն այսուիկ փոքր իցեմք քան զնա, զի նա գլուխ

լիցէ, և մեք 'ի նմանէն առնումք իշխանութ̃ին վայելել 'ի պարգևս նորա։ Եւ յայսմիկ նմանեալ են հաւատքն տեառն մերոյ։

Յաւետարանի անդ գրեալ է, զի նմանեցոյց տէր մեր զհաւատս իւր տնկոյ. ասէ. "Այր մի տնկեաց իւր այգի, որմովք պարսպեաց, և պարսպովք ամրացոյց զնա, գուբ հնձանս հանդերձեաց 'ի նմա, և շինեաց կանգնեաց 'ի նմա աշտարակ"։ Եւ անդ 'ի նմին պատգամի յայտ առնէ՝ եթէ վաստակեաց աշխատեցաւ յայգւոջ անդ մինչև 'ի ժամանակս պտղոցն, և զլացան զնա մշակքն։ Եւ դարձեալ 'ի միւսումն տեղւոջ ասէ. "Ես եմ այգի, և դուք որթ էք. ամենայն որթ որ յիս տնկեալ իցէ, և պտուղ ոչ տայ, խլի նա"։ Զի թէպէտ և թագուցեալ է այս յաւետարանէ անտի, զոր ընթեռնուն օտարք մարկիոնացիքն, սակայն յայնմանէ որ ինչ յԱռաքեալն գրեալ է, գոյ նոցա յանդիմանիչ՝ եթէ արդարև գրեալ էր այս յաւետարանի անդ՝ զի առակեալ եմք մեք 'ի տունկս, և մարկիոնացիք ջնջեցին զայս։ Գրէ Առաքեալ 'ի թղթի անդ հռոմայեցւոց. ասէ. "Զի եթէ տնկակիցք եղաք մեք մահուն տեառն մերոյ, սոյնպէս և յարութ̃են նորա"։ Եւ դարձեալ գրեալ է 'ի թղթի անդ կորնթացւոց յառաջնումն՝ եթէ տունկ են նոքա այ̃. ասէ. "Ես տնկեցի, Ապաւղոս ջուր ետ, այլ ա̃ծ աճեցոյց"։

Եւ այսու առակօք զվարդապետութ̃ին մարգարէութեան լցին գիրք։ Ասէ Եսայի մարգարէ, եթէ տունկ կենաց մարդք հաւատացեալք են. և իբրև ունայնացեալք լինէին 'ի գործոց անտի կենաց, լինին նոքա այնուհետև այգի աւերեալ. ասէ. "Այգի տնկեցի 'ի տեղի սիրելի, 'ի տեղի պարարտութեան. ցանկով փակեցի, և ամրութ̃բ պարսպեցի. նոր տունկ տնկեցի, մաքրեցի, կտուեցի, կակղեցի, ձողաբարձ զարդարեցի, աշտարակ կանկնեցի, գուբ հնձան շինեցի. կացի մ̃նացի եթէ եկեսցէ բերիցէ ինձ խաղող, եկն եբեր փուշ և տատասկ։ Արդ, արք Յուդայ և բնակիչք Երուսաղէմի, դատ արարէք ընդ իս և ընդ այգի իմ. զի̃նչ ինչ էր առնել արդեօք այգոյ իմում,

և ես ոչ արարի նմա․ կացի մնացի՝ զի եկեսցէ բերիցէ ինձ խաղող, եկն եբեր ինձ փուշ և տատասկ։ Արդ ես ինձէն պատմեցից զինչ արարից ընդ այգի իմ․ քակեցից զամրութի ցանկոյն և եղիցի 'ի յափշտակութիւն, կործանեցից զպարիսպս և արարից կոխան զօրաց․ լքից զայգի իմ, զի մի կտուեսցի և մաքրեսցի և մի կակղեսցի, բուսցի և կցեսցի 'ի նմա փուշ իբրև 'ի խոպանի․ պատուէր տաց ամպոց իմոց, զի մի' տեղասցեն յայգի իմ․ զի այգի կամարարի [1] տունն Իսրայէլի է, և մարդն Յուդայ նորատունկ սիրելի․ կացի մնացի զի գտցի 'ի նմա իրաւունք, և գտաւ անիրաւութի․ ակն կալայ արդարութեան, և եղև զլացութիւն „ ։

Եւ յետ աւերածոյ այսր միոյ այգւոյս՝ վասն որոյ ասացն՝ զի նա ինքն է տունն Իսրայէլի, առնէ մծ զլերինս աւերեալս [2] սերմանեաց և տնկոց։ Ասէ Եսայի․ "Եղիցի յաւուր յայնմիկ ամենայն տեղի՝ յորում իցէ հազար ափն այգւոյ՝ 'ի հազար հազար չափով, խոպանասցի և 'ի փուշ դարձցի․ կապարճեաւք և լիաձիգք լիագիրկք անկցին 'ի ներքս, զի խոպանացեալ և փշաբեր լիցի ամենայն երկիր։ Եւ ամենայն լեառն որ ոչ արօրադիր ակօսաբեկ լիցի, և մի հասցէ անդ երկիւղ․ զի եղիցի 'ի խոպանէ և 'ի փշաբեր տեղոջէ անտի արօտ գառին և կոխան եզին „ ։ Զոր օրինակ վասն այգւոյն մեկնեաց և եցոյց մեզ մարգարէն՝ եթէ ոչ է նա այգի, այլ բարիոքուին տանն Իսրայէլի կոչեցաւ այգի ցանկալի, և հաւատքն մր տնկեցան 'ի նոսա իբրև այգի նորատունկ, և յորժամ դարձան նոքա 'ի կռապաշտութի անդր՝ եղեն նոքա լերինք աւերեալք, բխեցին 'ի նոսա գործք չարք իբրև փուշք, նոյնպէս և մեք էաք լերինք աւերեալք․ զի պտուղ մր երբէք ոչ տայաք։ Ասաց, ասէ, իբրև զտունկն՝ իբրև զսերմն բնակեսցեն 'ի մեզ հաւատք, զի ցնծութք տայցեմք մեք պտուղ մր։

Ո որ օրինակ Եսայի քարոզեաց վասն այգւոյն՝ որ տնկեցաւ և լաւացաւ պտուղ նորա՝ զի խլեսցի, և ա-

1 Ցօրինակին կամարբէ․ ուղղեցաւ ըստ յաջորդացն։
2 Ցօրինակին 'ի լուսանցսն արօրէալս։

սաց վասն լերանցն աւերելոց՝ զի ակօսաբեկ լիցի , սոյնպէս և յԵզեկիէլ գրեալ է՝ եթէ սատակելոց էր ա՟ծ զտունկն առաջին իբրու զմարդիկ կարգատունկ , և զուարձացուցանէ զայլ մարդիկ՝ որ 'ի կռապաշտութեան աւերեալ և ցամաքեալ էին . և առնէ զնոսա ծառս փառաւորեալս գեղեցիկս , իբրու յառաջին ժողովրդենէ անտի առնու տունկ պատուաստէ 'ի նոսա զՅիսուս Քրիստոս , զի առեալ լիցի նա յազգէ անտի տանն Յուդայ յետ խոտելոյ առաջին արքայութե՟ն . զի քան զամենայն ուղիսն Իսրայէլի , որ կոչեցան տունկ խոտեալ և անարգեալ , ձօխ և յարգի էր ազգ տանն Յուդայ , զի 'ի նմանէ ծագեաց Յիսուս Քրիստոս ։ Այսէ Եզեկիէլ մարգարէ . "Այսպէս ասէ տէր կամարար . առից ես յընտիր ընտիր բարձանց մայրիցն և նոճոյն , և հանից 'ի գլխաւոր գլխաւոր՝ որ 'ի մատաղատունկն շառաւեղէ անտի . և տնկեցից ես զնոսա 'ի լերինն բարձրութե՟ , և կախեցից զնա զբարձրացեալ լեռնէն Իսրայէլի . տնկեցից և հաստատեցից . ոստս արձակեսցէ , և պտուղ բերցէ . և եղիցի ծառ մեծ , և յամրութիւն ոստոց նորա հանգիցեն թռչունք երկնից , և ամենայն բարունակք նորա 'ի նա հաստատեսցին . և ծանիցեն գիտասցեն ամեն փայտք անտառի՝ եթէ ես եմ տէր , որ խոնարհեցուցանեմ զփայտս բարձրացեալս , և բարձրացուցանեմ զփայտս խոնարհեալս . ցամաքեցուցանեմ զծառ դալարացեալ , և դալարեցուցանեմ զծառ ցօսացեալ ,, ։ Վասն այսորիկ յառակ օրինակաց նմանեցուցանէ զմեզ տէր մեր տնկոց ծառոց և որթոյ ։

Եւ այսպէս եմք մեք նմանեալ տնկոց . զի նախ գաւազան մի յորթոց միայն լոկ մերկ տնկի յերկրի , և ապա հաստանայ . և ընդունի 'ի ծածուկ զօրութե՟ զորթոյ , և բարունակս և տերև և ծաղիկ և խաղող , ուստի գինի լինի . և իբրու կտրած մի որթոյ է նա մերկ , թողեալ լինի 'ի վերայ նորա մշակ՝ կակղեալ շուրջ զարմատովք նորա , և սրբեալ մաքրեալ զբարունակս նորա 'ի ցօսացեալ ծայրից անտի ; և հանել զքաղ նորա , և գործել զամենայն գործ նորա 'ի ժամու իւրում . և 'ի հոգաբարձութե՟ մշակին ընդունի որթն պաշտօն՝ որ առաքի նմա յա՟յ , արև , անձրև , ամպք ,

ցօղ և հողմք քաղցրութեան, և լինի նմա պտուղ բարութե̃՝ որ ուրախ առնէ զտէր այգոյն։ Ապա եթէ արհամարհեաց զնովաւ մշակն, և պակասէ նմա ըսպաս՝ դայեակ սնուցիչ, գօսացեալ ցամաքի որթն, և զրկեալ լինի պտուղ՝ այն որ հանդերձեալ էր ծնանիլ 'ի նմանէն, և ինքն չլինի կերակուր 'ի նիւթ հրոյ։ Սոյնպէս և մարդիկ՝ որ աշակերտին յարքայութիւն երկնից, և տնկին հաւատովք միանձունք. յայսմիկ զբօսանիմք կարդալ զանուն ա̄յ, և հաւատալ 'ի նա՝ թէ մի է ա̄ծ միայն. և յետ սկզբանն առանց պտղոյ եմք մեք, զի յամենայն վաստակոց և 'ի գործոցն տղայ եմք, և ապա կացեալ լինին 'ի վերայ մեր վարդապետք 'ի նմանութի̃ մշակաց։

Եւ զոր օրինակ մշակ գործէ զամենայն գործ 'ի ժամու իւրում, և մաքրէ և կտուէ զորթն, սոյնպէս և վարդապետք մատուցանեն մեզ զուսումն վարդապետութեան զգաստութե̃ և քաջալերութե̃ յարժանաւոր ժամանակի, և սաստեն մեզ, և ցուցանեն զերկեւղ, և մաքրեն բառնան 'ի մէնջ զամենայն գործս չարութե̃ իբրև զփուշ և տատասկ՝ զոր քաղէ հանէ մշակ յայգոյ, և ընդունիմք մեք 'ի նմանութի̃ անձրևաց, ցօղոյ, արևու, ամպոյ, միգի և հողմոց՝ զընթեռնուլ գրոց, զթարգմանութի̃, զաղօթս, և զձեռնադրութի̃, և զօրհնութի̃ գովութե̃ պատարագի. և աճեմք և զուարճանամք մեք այնուիկ իբրև զայգի վայելուչ, և հաստատեալ կայցեմք մեք ընդ աջմէ տեառն մերոյ, իբրու բարձեալ ունիցիմք մեք պտուղ սրբութեան հաճոյ տեառն մերոյ. և կեցուցանիցեն զմեզ այն՝ վկայեաց վասն նորա տէր մեր և ասէ. “Եկայք օրհնեալք հօր իմոյ, ժառանգեցէք զարքայութի̃ն՝ որ պատրաստեալ իցէ ձեզ 'ի սկզբանէ աշխարհի. զի քաղցեալ էի և ետուք ինձ ուտել, ծարաւի էի և ետուք ինձ ըմպել, օտար էի և ժողովեցէք զիս, մերկ էի և զգեցուցէք զիս, հիւանդ էի և տեսէք զիս, 'ի բանդի էի և եկիք առ իս„։ Եւ յայսմիկ նմանեալ եմք տնկոյ։

Իսկ արդ իւ մարթեմք տալ զպտուղ հաճոյ ա̄յ, կամ զիարդ մարթեմք մեք կերակրել զքրիստոս, հաւանեցուցանէ զմեզ աւանիկ տէր 'ի յասելն իւրում.

ասէ. “Արդարեւ ասեմ ձեզ. որչափ ինչ արարէք դուք միում ումեք յեղբարց իմոց փոքրկանց, ինձ արարէք„: Զի յառաջագոյն կանխեալ Եսայի մարգարէ և ասէ. “Ահաւադիկ կոյս յղասցի և ծնցի մանուկ, և կարդասցեն զանուն նորա Էմմանուէլ, որ թարգմանեալ կոչի՝ ա̃Ծ մեր ընդ մեզ„: Եւ այսպէս եղև Յիսուս ա̃Ծ մեր ընդ մեզ: Քանզի ասաց, ասէ, որ ինչ միանգամ զնոսա պատուեցէք, ես պատուեցայց նոքօք. զի ընդ մեզ և 'ի մեզ է նա: Իսկ ոյք 'ի խոնարհ արկանեն զաչս իւրեանց յեղբարց իւրեանց, յատեան դատաստանի մտանէ տէր մեր և լինի ամբաստան զնոցանէ. որպէս թէ 'ի նմանէ արկին 'ի վայր զաչս իւրեանց:

Իսկ յորս տնկեցան հաւատքն, և ոչ ընկալան զսպասն մնդեանն, զայնոսիկ զոր համարեցաքն 'ի վերուստ՝ չորանան ցամաքին նոքա իբրու զորթ մի գօսացեալ, և զլացեալ զրկի գեղեցիկ պտուղն՝ որ հանդերձեալն էր լինել 'ի նոսա: Եւ յորժամ եկեսցէ տէր այգոյն առնուլ զպտուղն զպտղաբեր այգոյն, և գտանէ զնոսա աւերեալս 'ի գործոց բարեաց, խլին և անկանին նոքա 'ի նիւթ հրոյ իբրև զորթ ցամաքեալ: Եւ զոր օրինակ որթն իբրև տնկի՝ ոչ եթէ յարմտիս նորա երթան բրել տեսանել եթէ գուցէ կռուեալ և կցեալ իցէ, այլ առ ամին ցուցանէ զվկայութիւն տերևոյն 'ի ծայրս իւր, և ապա յետոյ տայ պտուղ: Սոյնպէս և մեք, յորժամ տնկեալ լինին 'ի մեզ հաւատքն, և կալեալ լինիմք, ոչ եթէ 'ի միտս մեր գայ ոք մտանել տեսանել՝ եթէ կալեալ իցէ՝ եթէ ոչ: Այլ որպէս որթ՝ զի ամին ցուցանէ զգոյն 'ի զուարճանալ տերևոյն, սոյնպէս և մեք՝ յորժամ հաստատեալ լինին հաւատքն 'ի միտս մեր, զառաջինն երեւիմք մեք՝ զի բխէ սէր 'ի մտաց մերոց, և երևի արտաքս, և ապա լինիմք մեք պտղաբերք յայտնի: Եւ յայսմիկ նմանեալ են հաւատքն մեր տնկոց:

Եւ դարձեալ նմանեցոյց տէր մեր զեկեղեցի իւր խաշին, և ինքն եղև հովիւ. որպէս և յաւետարանի անդ ասէ. “Ո՞վ իցէ 'ի ձէնջ՝ որոյ իցէ նորա խաշն, և մոլորիցի անտի ոչխար մի, ո՞չ թողուցու նա զինն-

տուն և զինն 'ի լեառն յանապատ, և երթիցէ զհետ կորուսելոյն մինչև խնդրիցէ և գտցէ զնա”։ Եւ յայնմիկ՝ զի ասաց աշակերտացն “Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ”. և յայնմիկ՝ զի ասէ “Ահաւասիկ առաքեմ զձեզ իբրև զգառինս 'ի մէջ գայլոց”։ Եւ բազում առակօք կոչեաց զաշակերտսն հաւատացեալս և խաշինս, և ինքն եղև հովիւ։ Նա և յայսմիկ զհետ օրինաց և մարգարէից գնաց տէր, զի բազում մարգարէք թագաւորք և իշխանք՝ որ յառաջ քան զտէր մեր՝ եղեն հովիւք։ Հաբէլ՝ որ հաճոյ եղև ա̃յ, 'ի սկզբանէ հովիւ էր. և Աբրահամ, զի եդաւ նմա կտակն ժառանգութե̃, տէր էր խաշանց. և զՅակոբ 'ի հովուաց առ, և խօսեցաւ ընդ նմա ա̃ծ. և զՄովսէս 'ի խաշանց առ, և եղև թագաւոր և հրեշտակ ա̃յ. և Դաւիթ 'ի խաշանց կոչեցաւ, և թագաւորեաց 'ի վերայ Իսրայէլի։ Եւ սոքա ամենեքեան ըստ կանխաց տեառն մերոյ եղեն հովիւք արօտից մարդկան, զի նախ ուսցին 'ի խաշանց անտի՝ թէ որպէս է հոգաբարձութի̃ հովուին վասն հօտիցն իւրոց. զի յորժամ մոլորեսցի ոչխար 'ի հօտէ անտի, խնդրեսցէ և ածցէ և արասցէ զնա 'ի ներքոյ ձեռին իւրոյ. և խառնեսցէ զնա ընդ ընկերս նորա, և գիտէ որպէս արժան է կերակրել զհիւանդն, և օծանել զբորոտեալն, և պատել զբեկեալն։

Իսկ զի գիտասցեն՝ թէ որպէս խոնարհեցուցանէ հովիւ զանձն իւր, և աշխատի վասն հօտից իւրոց, նոյնպէս փոյթ լինիցի նոցա վասն արօտի մարդկան։ Եւ վասն այսորիկ վկայէ և Եզեկիէլ մարգարէ. “Եղեն պատգամք տեառն 'ի վերայ իմ, և ասէ. որդի մարդոյ մարգարէա դու 'ի վերայ հովուացդ Իսրայէլի և ասասցես ցդոսա. այսպէս ասէ տէր կամարար. ո՛վ հովիւքդ Իսրայէլի, մի՛ եթէ հովիւք ուրուք ուրեք զանձինս արածեսցեն. ո՛չ հովիւք զխաշինս արածեն։ Արդ աւադիկ զկաթն ուտէք, զփափուկս ագանիք, զպարարտս կրճտէք, և զխաշինս իմ ոչ արածէք. զհիւանդացեալն ոչ բժշկեցէք և զտկարացեալն ոչ զօրացուցէք, զբեկեալն ոչ պատեցէք և զչարչարեալն ոչ մխիթարեցէք, զմոլորեալն ոչ դարձուցէք և զկորուսեալն ոչ խնդրեցէք, զհաստ հա

րուսան նենգով կործանեցէք, զհզօրն բռնութեամբ
և խաբէութեամբ չարչարեցէք. և ցրուեցան խաշինքն
իմ, քանզի ոչ գոյր նոցա հովիւ. և եղեն կերակուր
գազանաց անապատի. ցրուեցան մոլորեցան խաշինքն
իմ ընդ ամենայն լերինս բարձունս, ցրուեցան ընդ
ամենայն տիեզերս երկրի, և ոչ ոք էր որ խնդրէր,
և ոչ այն որ դարձուցանէր: Վասն այսորիկ լուարուք
հովիւք ամենայն զպատգամս տեառն. կենդանի եմ
ես՝ ասէ տէր կամարար, փոխանակ զի մատնեցան
խաշինք իմ յաւար, և եղեն խաշինք իմ կերակուր
ամենայն գազանաց անապատին, զի ոչ գոյր 'ի վե-
րայ նոցա հովիւ և ոչ յայց ելին խաշանց իմոց, այլ
բուծանէին նոքա զանձինս իւրեանց, և զխաշինս իմ
ոչ արածէին, վասն այսորիկ՝ հովիւք՝ լուարուք ըզ-
պատգամս տեառն. այսպէս ասէ տէր կամարար. ա-
հաւասիկ եկեալ հասեալ եմ ես 'ի վերայ հովուացդ,
և պահանջեցից զխաշինս իմ 'ի ձեռաց դոցա, և
դադարեցուցից զհովիւսդ խաշանց իմոց, և այլ ոչ
արածեսցեն նոքա. և փրկեցից ես զխաշինս իմ 'ի բե-
րանոյ նոցա, և այլ ոչ լիցին նոցա կերակուր: Այս-
պէս ասէ տէր կամարար. ահաւասիկ ես պահանջե-
ցից զխաշինս իմ, և հանդէս արարից խաշանց իմոց.
զոր օրինակ առնիցէ հովիւ հանդէս զհօտից իւրոց
յաւուր միգի և մառախղի, այնպէս խնդրեցից զնո-
սա և ժողովեցից զնոսա յամենայն տեղեաց՝ ուր
ցրուեալն իցեն նոքա անդ՝ յաւուրն միգի յաւուրն
մառախղի. և հանից զնոսա 'ի հեթանոսաց, և ժո-
ղովեցից զնոսա 'ի գաւառաց: Եւ դարձեալ ասէ. ես
ինձէն ճարակեցից զխաշինս իմ, և ես հանգուցից
զնոսա, ասէ տէր ամենակալ. զկորուսեալդ խնդրե-
ցից, զմոլորեալդ դարձուցից, զբեկեալդ պատեցից,
զհիւանդացեալդ զօրացուցից, զգէրն և զհզօր պա-
հեցից և արածեցից զնոսա իրաւամբք [1] և արդարու-
րութեամբ»: Յայսմիկ յայտ արար մեզ՝ եթէ զամենայն
թագաւորս և զիշխանս 'ի բաց մերժէ: Դարձեալ ա-
սէ տէր կամարար. «Ահաւասիկ ես հասեալ եմ 'ի

1 Յօրինակին՝ որպէս և ուրեք ուրեք գրեալ էր նշանք. նոյնպէս և անիրաւութեան՝ անիրաւութէ :

վերայ ձեր. ոչխար առ ոչխար դատեցայց, զհարուածն ընդ անաւագն ընտրեցից, և զանաւագն ընդ հարուածոյն. փոխանակ զի ոգևորք դուք գրթեցէիք խեթկէիք, և զանաւագն առ ոտն հարկանէիք, մինչ 'ի բաց մերժէիք. և ցրուեցան խաշինք իմ։ Արդ փրկեցից զխաշինս իմ, և այլ ոչ ևս մատնեցից զնոսա 'ի յափշտակութիւն. և դատեցայց խոյ առ խոյ, և նոխազ առ նոխազ։ Եւ կանգնեցից կացուցից 'ի վերայ նոցա հովիւ մի զծառայ իմ զԴաւիթ, որ հովուեսցէ նց, և նա հանգուսցէ զնոսա, և եղիցի նց հովիւ ,,։

Բանք մարգարէից հանապազ ճշմարիտ են. բայց այս երկու բանք փոփոխեալ են 'ի միմեանց. զի զառաջինն ասէ՝ ես եղեց նոցա հովիւ, և յետոյ ասէ՝ Դաւիթ ծառայ իմ հովուեսցէ զնոսա։ Սակայն հաւասար և միաբան են այս պատգամք ընդ միմեանս. իբրու ընդունելի լինել հովիւ՝ որ ածն է և մարդ, զի նա ինքն է տէր մեր, զի ծնաւ նա 'ի զաւակէ անտի Դաւթի. և ած է՝ զի երկոքին կատարին 'ի նմա։ Եւ վկայէ Եսայի մարգարէ՝ եթէ ծնանելոց է ած փրկիչ. ասէ. “Մանուկ ծնաւ մեր, և որդի տուաւ մեզ. և իշխանութին նորա տացի 'ի վերայ ուսոց իւրոց. անուն կոչեսցի նմա սքանչելի խորհրդական, ած, հզօր ,,. քանզի ած էր Քրիստոս, և որդի այ։ Արդ լցեալ կատարեցաւ 'ի նմա այն՝ զոր ածն ասէ. “Ես եղէց հովիւ խաշանց իմոց, և ես ճարակեցից զնոսա ,,։ Եւ զի որդի է նա Դաւթի, ինքնին Դաւիթ եղև հովիւ. և կատարեցաւ բանն զոր ասաց նոցա ած. “Դաւիթ ծառայ իմ հովուեսցէ նոցա, և նա եղիցի 'ի վերայ նոցա հովիւ ,,։

Իսկ եթէ ոք ասիցէ ինձ, թէ զի է որդի Դաւթի՝ զիա՞րդ մարթի կոչել զնա Դաւիթ և կատարել հովուութեանն Դաւթայ, դիւրին է ինձ ցուցանել 'ի գրոց սրբոց՝ եթէ կոչի Դաւիթ որ 'ի զաւակէ Դաւթի, և ունի զաթոռն արքայութեն նորա։ Զի գրեալ է 'ի մատեանս Թագաւորաց, 'ի ժամանակի իբրև եկին զօրք որդւոցն Իսրայէլի, և ասեն ցՌոբովամ որդի Սողոմոնի “Թեթևացո 'ի մէնջ 'ի հարկաց անտի հօր քո, ասէ ցնոսա. ծկոյթ իմ ստուար է քան զմէջն հօր իմոյ. հայր իմ գաւազանաւ խրատէր

զձեզ, բայց ես քքովք խրատեցից: Եւ ասեն ցնոսա. և յայսմհետէ չիք մեզ բաժին ընդ Դաւթայ, և ոչ ժառանգութիւն ընդ որդւոյն Յեսսեայ. այսուհետև գնացէք դուք իւրաքանչիւր 'ի խորանս ձեր, որդիք Իսրայէլի. արդ տես դու զտուն քո, Դաւիթ”: Իբր ոչ եթէ Դաւիթ էր, այլ որդի նորա. Զի եթէ սա՝ որ զաւակ միայն՝ որ ծնեալ է 'ի տանէ անդ Դաւթի, և յարդարութեան և 'ի գործոց և 'ի տէրութեան Դաւթի փոքր էր, և 'ի վերայ երկուց ազգաց միայն թագաւորեաց նա՝ կոչեցաւ Դաւիթ, ո՞րչափ ևս առաւել Քրիստոս, զի 'ի յազգէ տանն Դաւթի ծնաւ նա. զի գործք և արդարութիւնք և իրաւունք նորա մեծամեծ սքանչելի են. և 'ի ծագաց երկնից մինչև 'ի ծագս նորուն ծագեաց անուն նորա, և քարոզեցաւ փառդապետութիւն նորա, և ընդ ամենայն տեղիս հաստատեցաւ արքայութիւն նորա: Վասն այսորիկ պարտ է կոչել զնա Դաւիթ, և ընուլ նմա հովուութեն Դաւթայ: Եւ զոր օրինակ Դաւիթ նախ հովիւ եղև և ապա թագաւորեաց, նոյնպէս և Քրիստոս նախ զառաջինն եղև մեզ հովիւ, և զմոլորեալս դարձոյց 'ի կեանս, և զհիւանդացեալսն բժշկեաց, և զտկարացեալսն զօրացոյց, և զբորոտսն սրբեաց, և ապա յետոյ թագաւորէ. և գայ յերկրորդ գալստեանն իւրում թագաւոր հզօր, և Աստուած փառաւորեալ: Եւ յայսմիկ նմանեալ եկեղեցի խաշին, և Քրիստոս հովուի:

Եւ զի յայտ արասցէ՝ թէ մարդիկս կոչեցեալ են խաշն արօտի, այսպէս ասէր Եզեկիէլ 'ի նմին պատգամի. “Այլ դուք խաշինք իմ՝ խաշն արօտի իմոյ մարդիկ էք, և ես ա̃ծ ձեր եմ. ասէ տէր կամարար”: Վասն այսորիկ և Քրիստոս զի յայտ արասցէ՝ եթէ ամենայնիւ հաւասար են առաջի մարգարէութեան, կոչեաց և նա զմարդիկ խաշն՝ որք ունկնդիր եղեն նորա, և եղև նոցա հովիւ: Վասն այսորիկ ասաց տէր մեր. “Ոչ եկի լուծանել զօրէնս կամ զմարգարէս. ոչ լուծանել եկի, այլ կատարել”: Եւ իբրև համեմատեալ միաբանեմք մեք՝ եթէ այս ամենայն հովիւք, որ համարեցայ զանուանս նոցա, 'ի Քրիստոս առաքեալ են, զոմանս 'ի նոցանէ սպանին, և ոմանք 'ի

նոցանէ ապրեցան 'ի մահուանէ և Թագաւորեցին, ամենեքին որքա 'ի նմանութ՟ի պատկերի կերպարանաց Քրիստոսի են ։ Եւ զոր օրինակ նկարին պատկերք Թագաւորի 'ի մանկութ՟ե իւրում և յերիտասարդութ՟ե և 'ի ծերութ՟ե իւրում և յարքայութ՟ե, սոյնպէս և այս ամենայն հոգիք 'ի ժամանակս իւրեանց պատկերք կերպարանացն Քրիստոսի. զի պատկերն Թագաւորին զոր նըկարեն 'ի մանկութ՟ե նորա՝ ոչ է մեծ ; այլ զնմանութ՟ի տղայութ՟են պահէ. և այլ միւս ևս պատկեր կանգնեն նմա յորժամ այր լինի նա. դարձեալ և սա այս պատկեր զնմանութիւն ժամանակին պահէ. և յորժամ Թագ առնու՝ այլ միւս ևս նկարեն նմա ։ Սոյնպէս և որքա զորս համարեցայս, զի պահեցին նոքա զնմանութ՟ի կերպարանացն Քրիստոսի. և նկարեցան 'ի նմա իւրաքանչիւր 'ի նոցանէ զնմանութիւն միոյ միոյ 'ի ժամանակաց Քրիստոսի, յոր՛ և նշանակեցան նովաւ և պահեցին ։

Հաբէլ եղև հովիւ, քահանայ և վիրաւոր, և առնա յանդրանկաց խաշանց իւրոց, և մատոյց պատարագ ա՟յ, և ընդունելի եղև պատարագն զոր մատոյց 'ի խաշանց իւրոց 'ի վերայ սեղանոյն կամաց հաճութ՟ե. և յետ այսորիկ եսպան զնա եղբայր նորին, և նենգեաց զնա ։ Եւ քանզի գիտէր զնենգութ՟ի սրտին Կայենի բարձրեալն, ոչ ընկալաւ զպատարագս նորա ։ Սոյնպէս և Քրիստոս եղև հովիւ քահանայ և վիրաւոր, իբրև մատոյց ա՟յ պատարագ. և ապա վիրաւորեցաւ նա 'ի ձեռաց ժողովրդեանն՝ որ երէց էր քան զնա ծննդեամբն, զի նենգեցին զնա և մատնեցին զնա ։ Եւ զոր օրինակ ոչ ընկալաւ ա՟ծ ըզպատարագսն Կայենի՝ զի բաժանեալ էին միտք նորա, և ձեռք նորա պղծեալ էին արեամբք՝ զի լի էր նա բարկութ՟ե սպանանել զեղբայրն իւր, և պատարագ սպանելոյն արժանի եղև, սոյնպէս և ա՟ծ ընդունի զպատարագս մեր, զի երթամք մեք զկնի հովուի քահանայի և սպանելոյ. և իսրայելացիք՝ որ 'ի Քրիստոս ոչ խոստովանեն՝ զի մատուցէ զնա ա՟յ հօր իւրում, և կան մնան 'ի միտսն Հերովդիայ, և զկնի փարիսեցոց սպանողաց երթան, և ոչ լինին նոքա ընդունելի 'ի վերայ սեղանոյն հաճութեան, զի հա-

զորդք և կցորդք են նոքա արեանն Քրիստոսի ։

Նոյն Եսայի մարգարէ ․ «Ցագեալ եմ, որդ շատ է ինձ ․ զողջակէզս խոյոց և զճարպս գառանց և զարիւն ցլուց և զնոխազաց ձերոց ոչ կամիմ ընդունել, և ընաւ զյանդիմանելդ ձեր ես ոչ կամիմ ․ ընաւ ո՞ իսկ խնդրեաց զայդ 'ի ձեռաց ձերոց ․ կոխել դուք ամենեքին զգաւիթս իմ այսուհետև մի՛ յաճախեսջիք ։ Եթէ մատուցանիցէք դուք ինձ զնաշիհ պատարագացն, 'ի զուր է ձեզ ․ և եթէ արկանիցէք դուք ինձ խունկս, և այն 'ի պղծս համարեալ են ինձ ։ Զգլուխս ամսոց ձերոց և զշաբաթս ձեր ես ոչ ընդունիմ ․ զաւուրս ձեր արգոյս ոչ առնուում յանձն ․ զպահս և զդատարկութիւս և զգլուխս տարեկանաց ձերոց ատեաց անձն իմ, և յագեալ եմ արդ ձեօք ։ Ձեզ հնար, յայսմ հետէ և այլ ոչ ես ներեցից մեղաց ձերոց ․ յորժամ համբարձջիք դուք զձեռս ձեր առ իս, դարձուցից զերեսս իմ 'ի ձէնջ ․ և եթէ յաճախիցէք մատուցանել զաղօթս ձեր, ոչ լուայց ձեզ, զի ձեռք ձեր լի են արեամբ» ։ Եւ զկատարածն զոհից և զպատարագաց յայտ արար և եցոյց մեզ մարգարէն՝ եթէ աղօթք և ստուգութի են ․ և ոյք հազորդ լինին սպանողաց և պղծին արեամբ, և ոչ լինին ընդունելի աղօթք նոցա ․ զի նոքա իսկ են պատարագք, որպէս զի ոչ եղեն ընդունելի պատարագք Կայէնի ։ Եւ մեք ոյք երթամք զհետ Քրիստոսի, որ նմանեալ է Հաբելի արդարութե՛ և քահանայութեամբ և մահուամբ իւրով, ընկալեալ լիցին պատարագք մեր 'ի վերայ սեղանոյ ․ քանզի յանմեղ հօրէ արդարեւ ստոյգ հովուին մատուցեալ լինիմք մեք 'ի վերայ սեղանոյ, որպէս և Առաքեալ ասէ ․ «Աղաչեմ զձեզ, եղբարք, պատրաստեցէք զանդամս ձեր պատարագ կենդանի սուրբ հաճոյ ա̃յ» ։ Եւ դարձեալ ասէ ․ «Զօրհանապազ համարեցաք մեք իբրև զխաշն 'ի սպանումն» ։ Եւ յայսմիկ նմանեմք մեք խաշին ։ Եւ տես, զի նմանեցաւ Հաբէլ հովուին՝ արդարութեն Քրիստոսի և քահանայութեանն և մահուն իւրոյ ։

Յակոբ նահապետ հարցն, հովիւ էր խաշանց հօր իւրոյ, և հալածական եղև նա յեղբօրէն իւրմէ՝ որ երէցն էր քան զնա, և ապա ընկալաւ նա իւր խաշն

տօրի ։ Սոյնպէս և Քրիստոս եղև վարդապետ Հըրէից՝ խաշինն առաջնոյ ․ և իբրև հալածեցաւ նա 'ի Հերովդիայ արքայէ , եղև հովիւ հեթանոսաց ազգաց ։ Ի ժամանակի իբրև եղև Յակոբ հովիւ խաշինն Լաբանու , առ որոշեաց Լաբան սեփական խաշն Յակոբու , զի ամենայն ոչխար՝ որ գորշախարտ և խայտապիսակ իցէ՝ այն՝ Յակոբու լինիցի , և խաշն համակ և միագոյնք՝ զայն Լաբանու լինիցի ։ Նկարեաց Յակոբ զգաւազանսն ըստ բանին տեառն , և արկ առաջի խաշանցն ․ և նմանեցան ծնունդ խաշանցն 'ի գոյն կերպարանացն նկարուն գաւազանացն ։ Եւ գընացին խաշինքն զկնի արդար հովուին ընդ երկիրն օրհնեալ իսրայէլացոցն , զոր ոչ էր տեսեալ նոցա ։ Մայրն հասարակ միագոյնն՝ որ ծնաւ զնկարէն գառինսն , մնան 'ի պեղծ երկիրն ․ սոյնպէս և մեք ծնաք 'ի հեթանոսութենէ անտի , և եմք խայտախարիւք խայտապիսակք 'ի նշան սպիտակացեալս 'ի նմանութիւն խաչափայտին ըստ նշանաց գաւազանացն ․ և չեմք նմանեալ ամբարիշտ հարցն մերոց , զի եմք մեք ծնեալ 'ի նոցանէն ․ և ըստ նմանութե խաշանցն Յակոբու երթամք զկնի արդար հովուին ընդ երկիրն օրհնեալ , և 'ի ժառանգութի Իսրայէլի ։ Եւ հարքն մեր՝ որ ծնան զմեզ 'ի հեթանոսութեան , և նշանք 'ի գաւազանացն ոչ գտանին 'ի նոսա , կան մնան 'ի պեղծ երկրին ։ Եւ զոր օրինակ Յակոբ 'ի հալածանսն այն իւր դարձոյց զօտար խաշինսն ընդ երկիրն Իսրայէլի , սոյնպէս և Քրիստոս իբրև հալածեցաւ 'ի Հրէից անտի՝ դարձոյց զհեթանոսս մարդիկ յանծպաշտութե անդ իւր , և 'ի ժառանգութե Իսրայէլի յառաջինն ։ Եւ զոր օրինակ խաշինքն Յակոբու ոչ ինչ նմանեին այնոցիկ խաշանցն՝ որ ծնան զնոսա , սոյնպէս և մեք ոչ ինչ եմք նման կռապաշտ հարցն մերոց ․ զի յափշտակեցաք առաք 'ի մեզ զսէրն գաւազանացն , և նմանողք եղեաք նոցա ։ Եւ յայսմիկ նմանեալ եմք մեք խաշին , և Քրիստոս հովիւ ։ Այս նշանք են Քրիստոսի՝ որ նկարեցան 'ի Յակոբ հովուութեան և հալածանացն նորա ․ և զի դարձոյց զօտարոտի խաշինսն ընդ երկիրն Իսրայէլի 'ի նշանս գաւազանաց ։

Յովսեփու՝ եղբարք իւր իրիցանք էին և հովիւք ․

և առաքեաց զնա հայրն նորա՝ երթալ տեսանել
զեղբարսն իւր հովիւս. և նախանձ մեծ կալան ընդ
նմա եղբարք հովիւքն, փոխանակ զի սիրէր զնա հայ-
րըն, և խորհեցան սպանել զնա: Եւ ըստ բանի Յու-
դայի վաճառեցաւ Յուսէփ 'ի գինս արծաթոյ, և ե-
տուն բերել զհանդերձ նորա հօրն, իբրու զի թէ
գազանաբեկ լեալ իցէ: Եւ իբրև չոգաւ այս հալա-
ծականս վիրաւորեալս և վաճառեալս յերկիրն՝ ուր
ոչ գիտէին զնա անդ, եղև կերակրիչ կենարար ա-
մենայն բնակչաց աշխարհին: Եւ զի զնա տէր կացու-
ցեալ էր արքայն եգիպտացոց 'ի վերայ կենաց կեն-
դանեաց, և կերակուր այլ ուրեք ոչ գտանէր, որ
միանգամ ելին և հնազանդեցան 'ի ներքոյ ձեռին
Յովսէփայ՝ կացին: Նա և եղբարքն նորա իբրև եկին և
երկիր պագին նմա, կերակրեաց զնոսա հացիւ: Սոյն-
պէս և Քրիստոս. եղբարք նորա էին իրիցունք հո-
վիւք. առաքեաց զնա ա̅ծ հայր իւր տեսանել զհո-
վիւսն և զխաշինս նոցա. և եղբարքն նորա իսրայէլա-
ցիք խորհեցան մահ 'ի վերայ նորա, զի նախանձ կա-
լան ընդ նմա. և ըստ բանին Յուդայի վաճառեցաւ
և սպանաւ, իբր ոչ եթէ մեռաւ յետ լինելոյ նորա
վիրաւոր. և վաճառեալ՝ տէր արար զնա 'ի վերայ կե-
նաց կենդանեաց արքայն յաւիտենից. և ամենայն
որ միանգամ հաստատի 'ի նմա, կերակրէ զնա հա-
ցիւ: Եւ զոր օրինակ եղբարքն Յովսէփու իբրև պա-
գին նմա երկիր, առաւել քան զամենայն մարդ կե-
րակրեցան, սոյնպէս և իսրայէլացիք՝ զի նոքա իսկ են
սպանողք վաճառականք և հալածիչք՝ յորժամ
գան և հնազանդին Քրիստոսի, գտանեն 'ի նմանէ
զկեանս, և պատուեալ լինին: Եւ զոր օրինակ յայնմ
ժամանակի եղև սով մեծ ընդ ամենայն երկիր, և
ամենայն մարդ իւրաքանչիւր երթան 'ի գնել իւ-
րեանց կերակուր և կեալ, և իբրև չոքան որդիքն Իս-
րայէլի և բերին իւրեանց կերակուր 'ի Յովսէփայ՝
զսիրտս իւրեանց հաստատեցին հացիւն, այլ ոչ եթէ
լցեալ յագեցան մինչև չոքան նոքա 'ի քաղաքն՝ յո-
րում տէրացեալ էր վիրաւորն և վաճառեալն, և 'ի
նմա ժողովեալ և հանդերձեալ էր զհամբարս կե-
նաց: Սոյնպէս և յարդի ժամանակս սով մեծ է, զի

ամենեքեան քաղցեալ իցեմք բանիւն ա՟յ, և ամենեքին ունիցիմք մեք զուսումն վարդապետութե՟ , և զխրտս մեր միայն հաստատեմք մեք բանիւն տեառն մերոյ . և որչափ ճաշակեմք զնա , առաւել ևս փափագեմք նմա . և յորժամ երթամք մեք առ Քրիստոս , զի նա ինքն է վիրաւոր և վաճառեալ , և բնակիմք 'ի գաւառ կենաց՝ յորում Քրիստոսն իշխէ , ապա յայն ժամ լցեալ յագիմք մեք ։ Եւ զոր օրինակ չոքան որդիքն Յակոբու գնել իւրեանց կերակուրս , և կերակուր առին ճշմարիտ , և զարծաթն իւրեանց յիւրաքանչիւր բեռինս իւրեանց՝ և ինչ ոչ ետուն , սոյնպէս և մեք՝ ճշմարիտ առնումք մեք կեանս ձրի , և ինչ ոչ տամք . այլ զկեանս առանց արծաթոյ առնումք մեք , որպէս և մարգարէն ասաց ։ Զոր օրինակ զՅովսէփ ոչ ճանաչէին եղբարքն 'ի ժամանակին՝ զի եղև նա հազարապետ արքային , և եղև նա տէր և իշխան 'ի վերայ կենաց , քանզի մեծացաւ բարձրացաւ նա յոյժ 'ի ժամանակէ անտի յայնմանէ յորմէ հետէ սպանին և վաճառեցին զնա , նա և հաւատացին իսկ ոչ՝ եթէ կենդանի իցէ , սոյնպէս և Քրիստոս՝ յորժամ տեսանեն զնա սպանողք հալածիչք և վաճառականք նորա , ոչ ճանաչեն զնա վասն մեծութե՟ նորա . նա և վասն զի ոչ իսկ հաւատան եթէ բնաւ իսկ կենդանի իցէ ։ Եւ յայսմ ամենայնի նմանեալ է Քրիստոս հրամատար խաչանց ։ Եւ հովուեաց և պահեաց Յովսէփ զկերպարանս հովուութե՟ն Քրիստոսի և մահու և վաճառելոյ և կերակրելոյ նորա ։

Այլ և Դաւիթ հովիւ էր և կրտսեր եղբարց իւրոց , և հաճեցաւ 'ի նմա ա՟ծ՝ իբրև Շաւուղ արքայ յառաջ ոչ ճանաչէր զնա . այլ կոչեաց զնա Շաւուղ և մերձեցոյց առ ինքն , զի սպանցէ զԳողիադ հսկայ , զի մարտ պատերազմի եդեալ էր նորա ընդ որդիսն Իսրայէլի , և ոչ համարձակէին դիմակալ լինել նորա ։ Այլ իբրև ետես Դաւիթ զԳողիադ և սպան զնա , երանեցին դստերքն Իսրայէլի Դաւթայ և գովեցին զնա , և նախանձ կալաւ Սաւուղ ընդ Դաւթայ 'ի հալածել զնա ։ Սոյնպէս և Քրիստոս նախ հովիւ եղև , զի վարդապետ իսկ էր ։ Իբրև յաղթահարեալ լինէին որդիքն Իսրայէլի 'ի դիւաց անտի և

'ի հարուածոց, և իբրև բժշկեաց զնոսա 'ի չարաչար հարուածոց անտի, և երևեցաւ զօրութիւն նորա ժողովրդեանն՝ և գովեցին զնա, նախանձ կալաւ ընդ նմա Հերովդէս 'ի հալածել զնա: Իբրև առաքեաց Շաւուղ սպանանել զԴաւիթ, փախեաւ նա 'ի սպանանելոյ անտի անօրէն Թագաւորին, որ նշանակեալ էր նա լինել Թագաւոր փոքր ժամանակեան, և եղև ինքն Թագաւոր ճշմարիտ: Սոյնպէս և Քրիստոս ապրեցաւ 'ի մահուանէ 'ի սպանանելոյ անտի Հերովդիայ անօրէն Թագաւորին, և եղև ինքն Թագաւոր յաւիտենից յետ ապրելոյն անտի 'ի մահուանէ: Հաբէլ հովիւն առաջին նկարեցաւ 'ի սպանութեան Քրիստոսի, զի ճշմարիտ սպանաւ. և Դաւիթ այլ միւս հովիւ նկարեցաւ 'ի յարութիւն անդ Քրիստոսի 'ի մեռելոց, զի ճշմարիտ ապրեցաւ 'ի սպանութենէ անտի, և եղև Թագաւոր: Եւ յայսմիկ նմանեալ է եկեղեցի տեառն մերոյ խաշին, և ինքն նմանեալ է հովուի:

Եւ զոր օրինակ հովիւ՝ զի ինքն երթայ 'ի գլուխ խաշանցն յամենայն տեղիս 'ի դժուարինս և 'ի կակղուտս, 'ի լերինս և 'ի ծործորս, յանջրդիս և 'ի ճահիճս, և խաշինքն զկնի նորա երթան, սոյնպէս և Քրիստոս զամենայն ինչ զոր միանգամ ուսոյց մեզ, ինքն նախ արար զայն. և գնաց նովաւ առաջի մեր, զի մեք զկնի նորա երթիցուք: Զի ուսոյց մեզ՝ ասէ. “Երանի իցէ աղքատացդ հոգւով„. ինքն իսկ աղքատացաւ առաջի մեր. որպէս և Առաքեալ ասէ 'ի թղթի անդ կորնթացւոց յերկրորդումն. ասէ. “Ոչ գիտէք դուք զշնորհսն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. զի վասն ձեր աղքատացաւ մեծատունն 'ի մեծութենէ իւրմէ, զի դուք նորա աղքատութեամբն մեծասջիք„: Եւ ուսոյց մեզ տէր մեր, զի հայհոյեցաւ և սպանաւ վասն մեր. և զի ասաց մեզ, ասէ. “Երանի իցէ ձեզ յորժամ հայհոյեսցեն զձեզ, և ասասցեն բան չար զձէնջ„. իբրու նախ նորա անունն հայհոյեցաւ, իբրու նա բարերար էր ամենայն մարդոյ՝ որ մերձենայր առ նա: Եւ զի ուսոյց մեզ, թէ յորժամ մեռանիմք՝ կեամք մեք, ինքն մեռաւ առաջի մեր, և յարեաւ 'ի մեռելոց: Եւ զի

խոստացաւ մեզ նստուցանել զմեզ ընդ աջմէ Հօր իւրոյ ա̃յ, ինքն եւ յառաջագոյն քան զմեզ 'ի վերին արքայութիւն անդր, և ամենայնիւ ինքն յառաջագոյն հորդեաց մեզ ճանապարհ, որպէս հովիւ զի երթայ առաջի խաշանց իւրոց ։

Բայց սակայն զայս գիտասցուք, զի ամենայն խաշինք զհետ շաւղաց հովուին երթայ յամենայն տեղիս, և ոչխար որ մոլորի 'ի խաշանց անտի և 'ի հետոց հովուին՝ և լինի նա գէշ և կերակուր գայլոց յափշտակողաց, և անյագ քաղցեալ գազանաց ։ Սոյնպէս և մեք ամենայն եկեղեցի՝ զի նա ինքն է խաշն, երթայ զհետ շաւղաց . և անձն՝ որ օրոշի 'ի հօտէ խաշանց՝ զի նա ինքն է եկեղեցի, և 'ի հետոց անտի հովուին Քրիստոսի մոլորի, երթայ 'ի կորուստ 'ի սատակումն և 'ի տանջանս հրոյ ։ Եւ ամենայն եկեղեցի երթանայ զհետ արդար հովուին, և ընդ նմա ժողովի 'ի գաւառն կենաց ։ Եւ յայսմիկ նմանեալ եմք մեք խաշին ։

Եւ առաւել ևս քան զայս ամենայն նմանեցոյց տէր մեր կոչմամբն և սիրովն մերով և յափշտակութ̃ն՝ որ յափշտակին, և սփռւին միտք մեր առ նա, և յարիմք մեք 'ի նմա, նմանեցոյց զմեզ բնակութե̃ աշխարհիս՝ հարսինն և փեսայի, այնոցիկ՝ որ պղծեն զնոսա օտարքն, և ասեն եթէ պիղծ են . և տէր մեր յայսմ նշանակի առակեաց զճանապարհ իւր . զի Յովհաննէս ասէ . "Որ հարսն է, նա է փեսայ„ ։ Թէ և ոչ է գրեալ զայս օտարացն, սակայն յիւրեանց անտի՝ որ և նոցա իսկ գրեալ է յաւետարանին . և իբրև զմեզ ընթեռնուն, ասէ . այսպէս ասէ տէր մեր "Չէ ինչ ձեզ մարթ հրաման տալ պահելոյ մանկանց առագաստի, որչափ ժամանակս փեսայն ընդ նոսա իցէ„ ։ Եւ յայտ արար և եցոյց մեզ՝ եթէ նա ինքն է փեսայ, և մեք մանկունք երախանի և առագաստի նորա եմք ։ Դարձեալ ասէ Առաքեալ 'ի թղթի անդ եփեսացոց . այսպէս ասէ . "Իւրաքանչիւր մարդ զկին իւր իբրև զանձն իւր սիրեսցէ, որպէս և Քրիստոս սիրեաց զեկեղեցի իւր . զի անդամք եմք մեք մարմնոյ նորա . սոյնպէս և դուք իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ

զկին իւր իբրև զանձն իւր պարտի սիրել, որպէս և Քրիստոս սիրեաց զեկեղեցի իւր։ Վասն այսորիկ թողցէ մարդ զհայր իւր և զմայր իւր, և զհետ երթիցէ զկնոջ իւրոյ. և եղիցին երկոքեան մի մարմին։ Խորհուրդս այս մեծ է, այլ ես ասեմ 'ի Քրիստոս և յեկեղեցի անդր"։

Նա և յայսմիկ զգլուխ մարգարէութեան լցին գիրք մեր. զի գրեալ է յԵսայեայ մարգարէէ, ասէ. "Որպէս ուրախ լինի փեսայ առ հարսին, այսպէս ուրախ լինի 'ի քեզ ա̃ծ քո. և զոր օրինակ բնակեսցէ երիտասարդ ընդ կուսի, այսպէս բնակեսցեն որդիք քո 'ի քեզ"։ Եւ դարձեալ Դաւիթ ասէ. "Ընդ ամենայն երկիր ել բարբառ նոցա, և մինչև 'ի ծագս աշխարհի խօսք նոցա. յարևու եհար զխորան իւր, և ինքն ելանէ իբրև զփեսայ յառագաստէ իւրմէ"։ Եւ հանապազօր խօսին մարգարէք վասն ժողովրդեան եկեղեցոյ. յորժամ տայ զանձն իւր տ̃ր երկնչել 'ի նմանէ, և սպաս ունել նմա իբրև փեսայի, և սպաս կնոջ առ առն իւրում. և ընթեռնուն զբաժինս և զերկմտութիս, և երկմտեալ բաժանի ժողովուրդն որպէս կին մի՝ զի բաժանի և երկմտէ 'ի յառնէ իւրմէ, և պոռնկի ընդ նովաւ։

Ասէ Երեմիա մարգարէ վասն առաջին ժողովրդեանն. "Ահաւասիկ դատիմ ես զքեզ, փոխանակ զի ասես դու՝ բա, ասէ, ոչ է իմ մեղուցեալ. արդ զի մոլեգնիս դու 'ի պատմել զճանապարհս քո, նա և յեգիպտացոց անտի ամօթ կրեսցես դու ըստ ամօթոյն՝ որ կրեցեր դու յասորեստանեաց անտի։ Նա և առ 'ի նմանէն ևս ելցես դու ձեռն 'ի գլուխ. զի բարկացաւ տէր 'ի վերայ թիկանց ապաստանի քո, և մի՞ յաջողեսցիս դու նոքօք յասելն՝ եթէ թողցէ մարդ զկին իւր, և գնասցէ կինն առ 'ի նմանէն, և լինիցի այլում առն։ Եւ եթէ դարձեալ միւսանգամ դառնայցէ նա առ նա, ահա պղծելով պղծեսցի կինն այն. և դու շնացար պոռնկեցար ընդ հովիւս բազումս։ Դարձ դու առ իս, ասէ տէր կամարար. համբարձ դու զաչս քո 'ի վերայ շաւղաց, և տես ո՞ր տեղի է՝ որ քո ոչ իցէ պղծեալ։ Ի վերայ ճանապարհաց պատրաստեցեր զքեզ նոցա իբրև ագռաւ յանապատի,

և պղծեցեր զերկիր պոռնկութեամբ քով և չարութեամբ քով. և արգելաւ անձրև յերկնից, և ցօղ ոչ ցօղեաց. և անամօթ և լիրբ երես արարեր դու քեզ իբրև զկնոջ պոռնկի»: Եւ դարձեալ ասէ. «Որպէս սուտ կին մարդ ընկերի իւրում, այսպէս ստեցին ինձ որդիքն Իսրայէլի»:

Դարձեալ ասէ Եզեկիէլ մարգարէ. «Եղեն պատգամք տեառն 'ի վերայ իմ և ասէ. որդի մարդոյ երթ յանդիմանեա դու զԵրուսաղէմ, և յուշ արա նմա զպղծութիւնս իւր, և ասասցես ցնա. այսպէս ասէ տէր կամարար ցԵրուսաղէմ. ո՞չ ազգատոհմն քո քանանացի էր, հայր քո ամուրհացի էր, և մայր քո քետացի, ծնունդ քո՝ յորում աւուր ծնան զքեզ՝ ընաւ զպորտ քո ուրուք ոչ է հատեալ, և ջուրբք զքեզ ոչ էր ուրուք լուացեալ 'ի փրկութիւն, և աղիւ զքեզ ոչ էր յաղեալ, և 'ի խանձարուրս զքեզ ոչ էր պատեալ. քանզի ոչ անխայեաց 'ի քեզ ակն իմ, և ոչ արարի ինչ ընդ քեզ ինչ մի 'ի յայս ամենայնէ և զգուշանալ՝ թէ գոյժ ինչ անցանիցէ ընդ քեզ. այլ ընկեցեալ դնէիր դու ընդ երեսս դաշտին վասն խոտորնակ մտաց քոց, և խստացեալ սրտի քո: Յաւուրն յորում իսկ ծնան զքեզ, անցի ես առ քև, և տեսի ես զքեզ արեամբ թաթաւեալ, և ասացի ցքեզ՝ թէ կանգնեսջիր դու յարենէ քումմէ, և կեանք քո յարենէ կանգնեսցին. աճեսջիր բազմասջիր դու սրբութեամբ: Իբրև զբոյս բանջարոյ 'ի վայրի արարի զքեզ. և բազմացար և մեծացար, և եկիր մտեր դու 'ի քաղաքս քաղաքաց: Ստինք անկեալ էին քո, և մազք արձակեալ, և դու էիր մերկացեալ և խայտառակեալ. եկի հասի 'ի վերայ քո, և տեսի զքեզ զի հասեալ էր ժամանակ քո և ժամ քողաց քոց. տարածեցի զթևս իմ 'ի վերայ քո և ծածկեցի զխայտառակութիւն քո, և երդուայ քեզ և յուխտ հաստատութեան մտի ես ընդ քեզ, ասէ տէր կամարար: Եւ առի զքեզ հարսն ինձ, և լուացի զքեզ ջուրբ, և սրբեցի 'ի քէն զարիւն զապաժոյժն քո, և սրբեցի և օծի զքեզ իւղով. զարդարեցի զքեզ 'ի զարդս պէսպէսս, ագուցի զքեզ հիր և կարմիր, զարդարեցի զքեզ և առի ընդ մէջ քո բեհեզ, և արկի զքև մնչուս, և զարդարեցի

զքեզ զարդու. եդի ապարանջանս 'ի ձեռս քո, և արկի քառամանեակ 'ի պարանոցի քում. եդի գինդս 'ի յականջի քում, և արկի զականջովք քովք գոր- շապահանգս, և եդի զպսակ պարծանաց 'ի վերայ գլխոյ քո. զարդարեցի զքեզ համակ յոսկի յար- ծաթ, և արարի զհանդերձս քո բեհեզս, և զզարդս քո մնդուս զառնաւուխտ և ճաճանաւուխտ: Հան- դերձեցի զքեզ, և ետու զկերակուր քո նաշիհ և մե- ղու և ձէթ, կերար և փափկացար և լիացար. դե- ղեցկացար և գրգեցար 'ի գրգանս թագաւորութե. և ել անուն գեղեցկութե քո ընդ ամենայն հեթա- նոսս. քանզի շնորհս գեղոյ նստուցի 'ի վերայ վայել- չութե երեսաց քոց. ասէ տէր կամարար: Եւ դու հպարտացար և գեղապանծ եղեր 'ի գեղ երեսաց քոց, շնացար պոռնկեցար 'ի հոյակապ անուան քում, տարածեցեր սփռեցեր զպոռնկութիս քո յամենայն անցս ճանապարհաց նոցա, և առեր դու զհանդերձս զարդու քոյ, և արարեր կուռս կարկատունս, և պոռ- նըկեցար ընդ նոսա: Եւ այլ մի մտցես դու անդր, զի ոչ էին և ոչ իցեն: Եւ առեր դու զսպաս պարծա- նաց զոսկոյն և զարծաթոյն՝ որ տուեալ էր քեզ, և արարեր դու քեզ անտի պատկերս արուս մոլեկանս և պոռնկեցար ընդ նոսա: Եւ զարդու զհանդերձն գեղեցիկ զոր իմ քեզ տուեալ էր, այնուիկ զարդա- րեցեր դու զնոսա, զիւղս անուշունս և զխունկս հան- դերձեալս նուիրեցեր նոցա. և զհացն իմ զնաշիհ զոր ետու քեզ, և զձէթ և զմեղրն ջամբեցեր դու նոցա. և եդիր զայս ամենայն առաջի երեսաց նոցա 'ի հոտ անուշից: Եւ առեր դու զորդիսն քո և զդըս- տերսն քո զոր ինձ ծնար՝ զոհեցեր նոցա 'ի սատակու- մըն. և իբրև փոքր ինչ համարեցար զպոռնկութիւն զայն, զեներ դու զորդիսն իմ. այս իսկ մեծ եղև քան զամենայն պոռնկութիս և զպղծութիս քո: Եւ յիշեցեր դու զաւուրս տղայութե քո՝ 'ի ժամանակի զի էիր դու մերկ խայտառակեալ, թաթաւեալ զանկեալ յարիւն յապաժոյժ. և եղև վայ վայ 'ի վերայ վայի, ասէ տէր կամարար: Շինեցեր դու քեզ պոռնկոցս՝ տուն շնութեց քոց, և արարեր դու քեզ բագինս յամենայն հրապարակս քո,,: Դարձեալ ասէ. “Եւ այնպէս ոչ

եղեր դու, որպէս և կին մի պոռնիկ՝ որ ժողովէ զկա-
պէնս իւր։ Այլ եղեր դու որպէս կին մի՝ որ շնայ
ընդ արամբ իւրով. զի առնու նա գանձս յառնէ իւր-
մէ, և տայ վարձս հոմանեաց իւրոց. և ամենայն
պոռնիկ կանայք կապէնս առնուն անձանց իւրեանց,
իսկ դու տայիր վարձս սիրելեաց քոց»։

Զկնի այսր բարբառոց մարգարէիցն ստուգեցին
գիրք մեր նորք՝ եթէ արդարեւ նմանեալ է եկեղեցի
հարսին, և Քրիստոս փեսայի։ Նա և Պաւղոս ասէ.
«Խօսեցայ ես զքեզ առն միոջ իբրև զկոյս մի սուրբ
տալ զձեզ Քրիստոսի»։ Եւ այսպէս նմանեալ է Ճա-
նապարհն մեր խօսմանն և զարդու հարսանեաց։ Քան-
զի յորժամ խօսեցեալ լինի կին առն, հեռի է նա 'ի
նմանէ տեսանելով. և միջնորդքն առիթքն որ իցեն՝
կան 'ի միջի, և գան առ հարսն. և 'ի նոցանէ լսէ
նա վասն մեծութեան փեսային, և վասն փառացն գե-
ղոյ նորա, և վասն վայելչութեան նորա։ Եւ 'ի լսելեաց
անտի առթացն կաթէ և սերմանի սէր փեսային 'ի
սիրտ կուսին, և գերեալ վարին միտք նորա 'ի սէրն
նորա առ նա։ Եւ հայեցեալ ակն ունի նա թողուլ զը-
մայր իւր՝ որ ծնաւն զնա, և զհայր իւր և զեղբարս իւր
և զսովորութիւն ընդանութեան նոցա, և հայեցեալ սպասէ
ելանել 'ի տանէ ծննդեան իւրոյ՝ երթալ նմա յարիլ
'ի յայր անդր. որ զի երբեօք չտեսեալ զնա նորա,
բայց միայն անուն նորա՝ զի յիշատակեցաւ 'ի վերայ
նորա։ Սոյնպէս և մեք. եղեն մեզ առիթք առա-
քեալքն, և պատմեցին մեզ վասն մեծութեանցն
Քրիստոսի, և վասն փառաց նորա, վասն մեծվայել-
չութեան նորա, և հաւատացաք մեք նոցա. և հայե-
ցեալ ակն ունիմք մեք թողուլ զաշխարհս զայս ընա-
կութեան մերոյ, և թողուլ զհարս մեր՝ որ ծնան զմեզ,
և զմարս մեր՝ որ սնուցին զմեզ, զեղբարսն մեր և
զսովորութիւն ընդանութեան նոցա, և երթալ լինել
'յանդիման Քրիստոսի՝ որ երբեօք ոչ է տեսեալ մեր
զնա, բայց միայն անուն նորա՝ զի յիշատակեցաւ 'ի
վերայ մեր. և վառեալ բորբոքի սէրն նորա 'ի սիրտս
մեր, և գերեալ վարիմք մեք սիրովն առ նա։

Եւ զոր օրինակ փեսայ՝ զի առաքէ զփեսաւէրս,
իբրու զգեցեալ իցեն զհանդերձ փառաց՝ երթալ

առնուլ զհարսն յեղբարց իւրոց և յազգատոհմէ նոցա, և զնոսին իսկ փեսաւէրսն համարի նա իւր եղբարս և քերս, և յուսացեալ ապաստան լինի հարսն 'ի նոսա, սոյնպէս և առաքէ տէր զհրեշտակս երկնից փառօք՝ տանել յանդիման առնել զմեզ փեսային, և 'ի նոսա յուսացեալ ապաստան լինիմք մեք։ Եւ զոր օրինակ զգեցեալ լինին փեսաւէրքն զհանդերձ զարդու, և նուազագոյն են փառօք իւրեանց քան զփեսայն իւրեանց, սոյնպէս առաքեալք և հրեշտակք զգեցեալ լինին զհանդերձ փառաց, սակայն կրտսերագոյն են փառօք իւրեանց նոքա քան զՔրիստոսին։ Եւ զոր օրինակ փեսայն՝ զի նա ինքն է գլուխ ամենայն փեսաւէրաց և կոչնականաց և մանկանց առագաստի, ասէ Առաքեալ վասն Քրիստոսի՝ թէ «Նա ինքն է գլուխ ամենայն իշխանութեանց և պետութեանց»։ Զոր օրինակ աշխատի և վաստակի 'ի տան հօր իւրոյ կոյսն՝ առնել իւր հանդերձ 'ի հայրենի տանէ անդ, զի հաճոյ լիցի նորօք փեսային, սոյնպէս և մեք վաստակիմք և աշխատիմք 'ի յայսմ աշխարհի՝ յորում ծնեալս իցեմք՝ առնել պատրաստել մեզ գործս բարիս 'ի յայսմ աշխարհէ, զի և յելս մեր հաճոյ լինիցիմք նորօք Քրիստոսի։

Եւ զոր օրինակ ոչ է օտար փեսայն կուսին՝ որ խօսեցեալ իցէ նմա, զի 'ի միջի բնութենէ են նոքա, և միով ա̄յ հաստատեալ է զնոսա, և ըստ կամաց արարչին իւրեանց յարին առ միմեանս, սոյնպէս և մեք չեմք օտարք տեառն մերոյ. զի միոյն ա̄յ հաստատեալ է զմեզ, և ըստ կամաց արարչին մերոյ յարիմք մեք 'ի Քրիստոս։ Եւ զոր օրինակ կնոջ չէ մարթ փոխանակել զանկողինս առն իւրոյ ընդ առն այլում, ապա թէ ոչ շուն համարեալ լինի նա, սոյնպէս և մեք. փոխանակ սպասու անկողնոյ խնդրէ 'ի մէնջ ա̄ծ երկրպագութի̄ և գոհութիւն, որպէս և խնդրեաց յԵրուսաղէմէ։ Եւ զոր օրինակ կին որչափ ժամանակս պատուով ունի նա զայր՝ որ անուանեցաւ 'ի վերայ նորա՝ յածութի զգաստութեան է նմա, ապա եթէ խոտորի 'ի միտս իւր կինն, և այր ամենայն իբրև զիւր այրն համարեալ լինի՝ կոչի նա այնուհետև շուն և պոռնիկ, իբր ոչ եթէ այլ գործ աւելի ինչ գործէ

նա առ որ պոռնկին, այլ որպէս զայր ընդունի զնոսա, սոյնպէս և մեք՝ որչափ ժամանակս ունիմք զահ և զերկեւղ, զերկրպագութ͞ի ա͞յ և զպաշտօն նորա, զի նշանակեցաւ ա͞ծութ͞ի նորա 'ի սկզբանէ 'ի մեզ, և զգաստութ͞բ շրջիմք մեք. ապա եթէ խոտորիմք մեք յօտար ուսումն, և առնեմք մեք այլ աստուածս, լինիմք մեք այնուհետև շունք և պոռնիկք։ Եւ յայսմիկ առակեալ եմք մեք 'ի հարսն, զի երթայ յարի առ փեսայ։ Եւ որպէս հանդերձի և զարդարի հարսն զարդուք ոսկով, և նա ինքն մերկ պիտոյ է գլխովին 'ի պէտս փեսային, և հանդերձք նորա 'ի զարդ նորա հաճոյ առնեն զնա 'ի զարդ փեսային՝ առաջի նորա, և նա մերկ պիտոյ է նմա 'ի պէտս նորա, և 'ի կին անդր գլխովին ուրախ լինի նա, սոյնպէս և մեք. լինին գործք մեր բարիք և արդարութիւնք մեր հանդերձ իբրև զգեցեալ զզարդ, զի հաճոյ լիցուք նոքօք տեառն մերոյ։ Եւ մեք իսկ գլխովին պիտոյ եմք Քրիստոսի, զի նա ինքն է փեսայ։

Եւ զոր օրինակ կին յորժամ զարդարի՝ ոչ երթայ հարցանէ նա զմի 'ի յընկերաց իւրոց, եթէ գեղեցիկ իցէ նա՝ թէ ոչ. և ոչ հաւատայ նա զոք ձայն զարդուն իւրոյ՝ եթէ վայելէ նմա, այլ առնու նա իւր հայելի և հայի նա յանձն իւր, և ուրախ լինի նա յանձն իւր 'ի զարդու անդ իւրում. և գիտէ՝ եթէ հաճոյ իցէ նա անձին իւրում, ապա հաճոյ իցէ նա և փեսային՝ առ որ երթալոցն է նա։ Եւ եթէ բիծ ինչ իցէ 'ի դէմս երեսաց նորա, կամ գոյն ինչ աղտեղութ͞ե, կամ խորշ կարկամութ͞ե, ջնջէ պարզէ զնա. և ինքն զարդարէ զանձն իւր, որպէս զի հաճոյ իցէ նա փեսային։ Սոյնպէս և մեք. զի 'ի խօսման կամք Քրիստոսի փեսային, և ոչ ոք գիտէ եթէ գեղեցիկ իցեմք և եթէ տգեղք, եթէ ոչ առնումք մեք 'ի ձեռն զգիրս սուրբս 'ի նմանութ͞ի հայելոյ, և հայեցեալ 'քննեմք զանձինս մեր. և եթէ բարիօք իցեմք անձանց մերոց գործելովք մերովք, և նմանեալ իցեմք կենդանի պատուիրանացն՝ զի նոքա են հայելի, ապա և տեառն մերոյ իցեմք բարիօք։ Եւ զոր օրինակ չիք հնար յաշխարհի, եթէ ոք հայեցեալ տեսանէ զերեսս իւր, և լինիցի յաջողեալ առաջի նորա տեսա֊

նել նմա զգեղ և զտգեղութիւն անձին իւրոյ, բայց միայն հայելեաւ, սոյնպէս չիք ոք յաշխարհի՝ որ կարէ տեսանել զպատկեր անձին իւրոյ՝ եթէ տգեղ իցեն գործք նորա և եթէ գեղեցիկ. այլ ամենայն մարդ յաչս անձին իւրոյ բարիոք թուի: Այլ յորժամ առնումք 'ի ձեռն զհայելի գրոց սրբոց, ոչ որպէս միտքն մեր կարծիցեն եթէ բարիոք իցեմք՝ զարդարեմք զանձինս մեր, այլ որպէս ցուցանեն գիրք [1] մեր 'ի նմանութի̅ հայելոյն. զի Առաքեալ ասէ. "Մեք այժմիկ զփառսն տեառն օրինակաւ իբրև ընդ հայելի տեսանեմք". և 'ի նմին պատկերի նմանեմք: Որչափ հայիմք մեք 'ի գիրս, գոյ 'ի նոսա զօրութի̅ դնել առաջի երեսաց մերոց զպատկերս մեր: Եւ եղիցին նոքա մեզ հայելի, և ուրախ լիցի նա 'ի կարգս մեր բարիս. և ջնջեսցէ և բարձցէ նա 'ի մէնջ զախտս չարս, և զարատս աղտեղութե̅. և յորժամ ճանաչեն միտք մեր եթէ բարիոք իցեմք անձանց մերոց, որպէս ցուցանէ մեզ հայելին գրոց մերոց, ապա ճանաչեմք մեք եթէ հաճոյ իցեմք տեառն. և ուրախ լինի 'ի մեզ, որպէս ուրախ լինի փեսայ առ հարսին. իբրև իւիք ոչ ինչ է պակաս:

Այլ որ առիթքն միջնորդքն իցեն, նոքա պատմեն հարսինն վասն մեծութե̅ փեսային, և վասն անուան նորա, և վասն վայելչութե̅ և զօրութե̅ նորա: Սոյնպէս և զհարսնն դովեն առաջի փեսային, և պատմեն նմա վասն բնութե̅ գեղոյ կուսին զոր խօսեցան նմա, և վասն զգաստութե̅ նորա, և վասն բարիոք կարգաց նորա: Եւ յորժամ երթայ յարի հարսն առ փեսայն և ուրախ լինի 'ի նմա, տիրէ նա այնուհետև ստացուածոց նորա, և կցորդ լինի փառացն նորա: Իսկ որ առիթքն միջնորդք լիցեն, բազմեալ լինին յառագաստի անդ, և ուրախ լինին նոքա ընդ հարսինն և և ընդ փեսային. իբրու եդեալ իցէ 'ի գլուխս նոցա պսակս փառաց, և ուրախ իցեն 'ի հարսանիս անդ: Քանզի մինչ դեռ հեռագոյն էր հարսն 'ի փեսայէ անտի, նոքա ուսուցին նմա զկամսն փեսային. իբրև ետես նա զփեսայն, ուրախ եղև 'ի նմա, և ստու-

[1] Յօրինակին 'ի լուսանցսն Գեղք:

*գեալ հաստատեցան բանք միջնորդացն . և գտեալ լինի նոցա պատիւ փառաց 'ի փեսայէ անտի ։ Սոյնպէս և մեք . եղեն մեզ առաքեալքն առիթք և մըձեցուցիչք , և պատմեցին մեզ վասն մեծութեան և պատուոյ փառաց տեառն մերոյ . և մատուցին նմա բանս բարութեան , և աղօթիւք իւրեանց մատուցին զհաշտութիւն և զխնդրուածս մեր առաջի բարձրելոյն, և զամենայն կամս տեառն մերոյ ցուցին մեզ . եթէ ուսանիմք մեք զգաստութի՛ և զպարկեշտութի՛ և զսըրբութի՛ և զամենայն կամս փեսային , յորժամ երթամք յարիմք 'ի նա՝ ուրախ լինի նա 'ի մեզ . և գտեալ լինին առաքելոցն 'ի նմանէն զպատիւ փառաց . զի նոքա խրատեցին զմեզ և ուսուցին մեզ զկիրս փեսային , և մատուցին զմեզ նմա պատարագ ուրախութեան , և պատուեցան նոքա վասն մեր ։ Զի վկայէ ինքնին Պաւղոս և ասէ . "Ո՞ր վարձք իցեն մեր կամ ուրախութի՛ , կամ պսակ պարծանաց , եթէ ոչ դուք առաջի տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի 'ի գալըստեան նորա „ ։*

*Քանզի վասն այսր ամենայնի ինքնին օրէնք վկայեն . զի գրեալ է 'ի դպրութե՛ արարածոց . 'ի ժամանակի իբրև խօսէին զՐափկա Իսահակայ , կոչեաց Աբրահամ զծառայից երէց իւր . և նա ինքն էր հազարապետ տնտես նորա , և ասէ ցնա . "Բեր դիր դու զձեռն քո ընդ երանօք իմովք , և երդուիր ինձ 'ի տէր ա՛ծ՝ որոյ իւր են երկինք և երկիր , զի մի՛ առցես դու կին որդւոյ իմոյ 'ի դստերաց անտի քանանացոց , յորոց 'ի միջի բնակեալ եմ ես այժմիկ . այլ երթ դու յաշխարհ իմում և 'ի ժառանգութե՛ իմում , և անտի առցես դու կին որդւոյ իմոյ Սահակայ „ ։ Հանգիստն ա՛յ յերկրի անդ քանանացոց բնակեալ էր , և բնակիչք աշխարհիս չարք և անօրէնք էին . վասն այսորիկ ետ երդումն Աբրահամ ծառայից իւրեցուն և ասէ . "Մի՛ առնուր դու կին որդւոյ իմոյ յաշխարհէ աստի յայսմանէ „ ։ Այլ քանզի Սահակ օրհնեաց զա՛ծ , զի եղիցին տէր երկրին այնորիկ , պատուիրեաց Աբրահամ զի մի՛ առցէ Սահակայ կին 'ի չար մարդկանէ ; զի ժառանգեսցէ կին չար և ծնունդ նորա զերկիր բարութե՛ . այլ այն՝ որ արժանի իցէ ,*

եկեսցէ 'ի հեռաւոր աշխարհէ, և 'ի պերճ երկրէ, զի լինիցի նա կին որդոյն՝ որ յաւետեաց անտի ծնեալ էր, և թագաւորեսցէ նա 'ի վերայ երկրին բարուէ։ Սոյնպէս բնակեալ էր հանգիստն տեառն մոյ 'ի մէջ տանն Իսրայելի, և ոչ եղեն նոքա արժանի յարել և մերձանալ առ Քրիստոս վասն չարութեան իւրեանց։ Այլ առաքեցաւ բանն տեառն մերոյ 'ի ձեռն առաքելոց իւրոց, զի հաւանեցուսցեն և ածցեն ժողովուրդ, այս՝ որ 'ի հեթանոսաց 'ի պերճ երկրէ և 'ի նմանութեն կնոջ է՝ եկեսցէ յարեսցի առ Քրիստոս, որ ծնեալ է յաւետեաց անտի. և թագաւորեսցէ նա 'ի վերայ ժառանգութեան կենաց։

Ասէ ծառայից երեցն ցտէր իւր. "Տէր, զի եթէ ոչ կամիցի կինն գալ ընդ իս, դարձուցանելով դարձուցանեմ զորդի քո անդր"։ Ասէ Աբրահամ ցծառայն իւր. "Եթէ ոչ կամիցի կինն գալ զկնի քո, քաւեալ լինիցիր դու յերդմանէ աստի յայսմանէ. բայց միայն զորդի իմ մի տարցիս դու անդր"։ Զի եթէ ոչ եկեսցէ ծառայից երեցն 'ի հաւանեցուցանել զկին յերկրէ հեռաստանէ, պատիժ պատուհասից պարտի տեառն իւրոյ։ Ապա եթէ եկեսցէ նա, և կինն ոչ կամիցի, կինն տնանկանայ աղքատանայ 'ի ժառանգութենէ անտի յոր կոչեցաւ, և ծառայն ազատեալ լինի 'ի պատժէ պատուհասից։ Սոյնպէս և ժողովուրդս մեր 'ի հեթանոսաց է, զի կոչեցաւ սա երթալ ժառանգել զժառանգութիւն զոր երբէք ոչ իցէ սորա տեսեալ. Եթէ հաւանիմք երթալ զկնի առաքելոց աւթացն մերոց, մերձենամք մեք և յարիմք առ ծնունդն աւետեաց և առ փեսայ օրհնեալ, և ժառանգեմք մեք զարքայութիւն՝ որ երբէք ոչ իցէ տեսեալ մեր. և առաքեալքն հաւանեցուցիչքն մեր առնուն զվարձս և զպատիւ։ Ապա եթէ վեհերիցեն զանգիտիցեն և ոչ եկեսցեն քարոզել և կոչել զմեզ, պատիժս պատուհասից պարտին նոքա. որպէս և Առաքեալ ասէ. "Վայ է ինձ, եթէ ոչ աւետարանեցից"։ Ապա եթէ կոչեսցեն զմեզ, և մեք ոչ երթայցեմք, նոքա ապրեալ լինին 'ի պատժէ պատուհասից, և մեք աղքատացեալ և կարօտեալ լինիմք 'ի ժառանգութենէ անտի յոր կոչեցեալն եմք. և Քրիստոս ոչ գայ յարի

առ մեզ և բնակէ ընդ մեզ, որպէս և առ հրամանածառայն յԱբրահամէ. ասէ "Մի՛ դարձուցանիցես դու զորդին իմ անդր"։

Օւ մինչ դեռ երթայր ծառայն 'ի Ճանապարհի, և աղաչեաց նա զա͞ծ և խնդրեաց աղօթիւք, զի սիրով և յօժարութ͞բ ծանիցէ կինն վասն որոյ երթալն էր, իբրու յառաջ քան զժամանակն խոստացեալ էր լուրջ երեսօք կալ առաջի նորա, և տալ պատասխանի ժրութեամբ, զի այսպէս ասէր. "Ով տէր ա͞ծ տեառն իմոյ Աբրահամու, եթէ յաջողեսցես առաջի իմ զճանապարհս զայս այսօր, եղիցի ինձ՝ յորժամ տեսից ես զկոյս մի 'ի վերայ ջրհորոյս այսորիկ, և ասացից նմա՝ եթէ տուր ինձ սակաւ մի ջուր ըմպել, և ասասցէ ցիս՝ եթէ դու արբ, և ուղտուցդ տուր զի արբցեն, այս իցէ կին զոր պատրաստեալ իցէ տեառն ͞մյ ծառայի իւրում Սահակայ"։ Սոյնպէս և մեք իբրև ընտրեալ եաք յառաջ քան զլինել աշխարհի, ոյք լսէին առաքելոցն սիրով և յօժարութեամբ, լրջմտութեամբ և պնտութ͞բ կալ առաջի աւետարանչաց մերոց, յայնժամ մատուցեալ լինիմք մեք առ փեսայն փառաւորեալ։

Ր.յն իբրև եկն ծառայից երէցն, և եգիտ անդկոյս մի հեզ գգաստ, և սափոր ջրաւորոյ յուս իւրում, և ասէ ցնա. տուր ինձ ջուր այտի ըմբել։ Եւ նա փութացաւ վաղվաղակի իջոյց զսափորն, խոնարհեցոյց 'ի բազուկս իւր և ասէ. և դու արբ և ուղտքդ քո։ Եւ իբրև արբ ինքն և ետ ուղտուցն, ասէ ցնա ո՞յր դուստր ես դու. և ասէ ցնա, դուստր Բաթուէլի եմ ես որդոյ Նաքովրայ, զոր ծնաւ նմա Մեղքեա։ Ասէ ցնա. է՞ 'ի տան քում տեղի մեզ իջևանայ։ Եւ ասէ ցնա. կերակուր գրաստու շատ է 'ի տան մերում, և տեղի իջևանաց ընդարձակ։ Եւ առ ծառայն ապարանջանս, արկ 'ի ձեռս աղջկանն, և գինտս յականջս նորա, և անդէն 'ի վերայ աղբերն ջուրց։ Սոյնպէս և մեք յաղբիւրէ անտի մկրտութեն ժամանակիմք մեք ընդ առաքեալմն ընդ առիթմն մեր. և 'ի մկրտութենէ անտի ընդունիմք մեք զզարդ գործոց բարեաց 'ի նմանութիւն ոսկոյ և ականց պատուականաց։ Եւ այս յայտ է մեզ, եթէ ծառայից երէցն՝ որ հաւա֊

բապետն էր Աբրահամու՝ ոչ եթէ կերակրել՝ և զի ընկալցի զնա՝ եկն առ Բաթուէլ հայր Ռափկայի և առ Ղաբան եղբայր նորա, այլ զի առցէ նա զաղջիկն և տարցի 'ի ժառանգութիւն բարութեան։ Այլ հարկ էր իրացս և պիտոյ էր նախ ընդունել զնա, և զգրաստ նորա 'ի տան անդր յորում հարսինն մնալ էր, և ապա համնեալ զնա անտի՝ տանել 'ի մեծ և 'ի պատուաւոր ժառանգութիւն։ Սոյնպէս և 'ի ժամանակի իբրև առաքեաց տէր մեր զերկոտասանսն առաքեալ աւետարանել ամենայն մարդոյ զկեանսն յաւիտենից, և կոչել ժողովուրդ յերկրէ ընդ երկինս, հրաման ետ նոցա և նա։

Եւ այն՝ զի ասէ տէր մեր. «Որ կամի լինել իմ աշակերտ, զի եթէ ոչ մեկնի նա յամենայն ընչից իւրոց, ոչ կարէ նա իմ աշակերտ լինել». սակայն և զայն յառաջին մարգարէից անտի ուսոյց, զի եղիցին նոցա աշակերտք։ Եւ ուսան զգնացս նոցա և զհեզութիւն զգաստութեան նոցա, և զխորհուրդս նոցա զաղքատութեան և զմիանձնութեան որ յաստուածպաշտութեան անդ էր վարդապետաց իւրեանց։ Իբրև խորհուրդ օրինակ փրկչին մերոյ աւետարանեցաւ նոցա, և եկն ինքն և կատարեաց զխորհուրդս և զկերպարանս նոցա որ վասն նորա էր. և ստուգեցան և կնքեցան բանք նոցա որ վասն նորա էին՝ լսողաց նոցա։ Նա և ինքն փրկիչն մեր ոչ 'ի մտաց ինչ իւրոց ուսոյց, այլ ըստ կամաց հօր իւրոյ ուսոյց նա. որպէս և ասէ. «Ոչ եթէ 'ի կամաց անձին իւրոյ խօսի որդի, այլ որ ինչ տեսանէ և լսէ 'ի հօրէ իւրմէ, զայն խօսի»։ Վասն այսորիկ մի ոք կարծեսցէ եթէ յանձնէ իւրմէ ինչ խօսեցաւ տէր մեր։ Զի զնմանութիւն և զխորհուրդս՝ որ վասն նորա էին, և զպատկերս կերպարանաց գործոցն նորա՝ որով իւրք և գործէին մարգարէքն իւրաքանչիւր զոր ինչ վասն նորա էր, եկն ինքն կատարեաց և կնքեաց զնոսա լսողացն իւրեանց։

Արդ երկիցուք մեք 'ի բուռն և 'ի սաստիկ հօրէ անտի նորա, որպէս և գիրք ասեն. «Ահ մեծ է անկանել 'ի ձեռս Աստուծոյ կենդանւոյ». զի նա ինքնին գործէ որդւով իւրով զամենայն զոր կամի։ Վասն այսորիկ զոր օրինակ ինքն փրկիչն մեր և մարգարէքն և

առաքեալք նորա մեկնեալ էին յաշխարհէ աստի ամպարշտութ՟բն իւրեանց և զգաստութ՟բն իւրեանց և հոգևոր գնացիւք իւրեանց և բնակութ՟բ իւրեանց, և ուտելով և ըմպելով իւրեանց և փառաւորեալ բանիւք իւրեանց, սոյնպէս և մեք եղիցուք նմանողք վարդապետին մերոյ և ընկերաց մերոց առաջին աշակերտացն նորա. զի եղիցին մեկնեալ անձինք մեր յաշխարհէ աստի ամպարշտութ՟բ և զգաստութ՟բ, և բնակութ՟բ աշխարհիս, և ուտելով և ըմպելով, և հոգևոր գնացիւք. և 'ի բանս և 'ի խօսս աշխարհիս մի խառնակիցիք. զի եթէ գնացիւք մերովք և բնակութ՟բս և ուտելով և ըմպելով և բանիւք մերովք ոչ լինիմք մեկնեալ և ոչ լինիմք որոշեալ 'ի մարդկանէ աստի, եթէ այս ուրեմն այսպէս իցէ, ապա ընդ հողմն [1] ուրեմն և ընդ քարինս եկն խօսեցաւ տէր մեր զփառաւորեալ պատուիրանսն 'ի հօրէ իւրմէ, և ոչ առ մեզ 'ի գլխովին առաքեցաւ: Կամ թերևս զաթոռ մեծութ՟ե իւրոյ զահագին զաստիկ՝ յորժամ ուղղէ հայր նորա ըստ կամաց իւրոց, զհողմն և զքարինս դատի, և ոչ զմեզ 'ի գլխովին դատի:

Սկեսցուք այսուհետև և արասցուք զոր ինչ յանձն արար մեզ փրկիչն 'ի կամացն հօր իւրոյ. զի ա՟ծ հաւր կոչելոյ է, որպէս և գիրք ասեն: Եթէ ոք մերժեցուցանէ զանձն իւր առ անուն աշակերտութ՟ե, և ոչ է արժանի նմա, հայեսցի նա ընդ Գեեզի աշակերտն Եղիշայի. զի մերժեցաւ նա անուամբ, և արդեամբք ոչ կատարեաց: Զի եթող նա զերկնաւոր ստացուածն, և ցանկացաւ նա երկրաւոր ստացուածոց. վասն այսորիկ անարգեցաւ, և զգեցաւ զբորոտութիւն: Եւ դարձեալ հայեսցի ընդ Յուդա, զի մի էր 'ի թըւոյ երկոտասանիցն առաքելոց փրկչին մերոյ. զի և նա ցանկացաւ ընչից աշխարհիս, և անարգեցաւ նա, և ջնջեցաւ անուն նորա 'ի թուոյ անտի կենաց:

Արդ երկիցուք մեք յաշխարհէ աստի յայսմանէ և յընչից իւրոց, զի մի և մեք լինիցիմք անարգեալ և անկեալ յաշտիճանէ աստի, յորում մեքս կամք. որպէս և նոքա իսկ անարգեցան: Զի ընդդէմ դառ-

1 Օրինակքն 'ի լուսանցսն ընդ հողս. որպէս և 'ի սորին վհողս:

նալ և հակառակել ընդդէմ աշակերտութե՟ , այս է նախանձ և ագահութ՟ի և ամենայն ցանկութիւնք աշխարհիս ։ Եւ սոքա իսկ զիմաստունս և զհսկայս զհզօրս կործանեցին , և զբազումս հանէ յարքայութենէ յաւուրն յայնմիկ · զի զէն են նոքա սատանի , զի նոքօք մարտնչի նա ընդ մեզ · վասն այսորիկ կողոպտեաց հան տէր մեր զզէն նորա և ետ մեզ , յասել անդ իւրում ցմեզ · “Որ իմ պաշտօնեայ իցէ , զկնի իմ եկեսցէ „ ։ Վասն այսորիկ երթամք մեք ըզկնի նորա , և նմանողք լինիմք մեք գնացից նորա , և զգենումք մեք զնոսա իբրև զզէն · քանզի գիտէ փրկիչն մեր զխորամանկութ՟ի կեղծաւորութե՟ սատանայի , զի խռովէ և պղտորէ զմարդս հաւատացեալս · զի զոմանս պատրանօք պատրէ նա ընչիւք և ստացուածովք և այլ բազում իրօք , որպէս զի կործանեսցէ զնա · և է զի տեսանէ նա զոք զի զգեցեալ է զէն , և մարտնչի ընդ նմա , և գրոց մտաց , զի լուծցէ զուխտաւորութ՟ի և կործանեսցէ զնա · և է զի մի 'ի թուլոյ անտի ուսմանց ընկենու զնա ։ Վասն այսորիկ գթացաւ 'ի մեզ տէր մեր յասել իւրում՝ զի պահեսցուք զպատուիրանս նորա , և եկեսցէ հասցէ 'ի մեզ շնորհք ողորմութե՟ նորա՝ ապրեցուցանել զմեզ 'ի չարէ անտի · զի 'ի պահել պատուիրանացն նորա ապրիմք մեք 'ի սատանայէ՝ որ մարտնչին ընդ մեզ պէսպէս կերպարանօք · և գրգեայ 'ի վերայ մեր Հոգին սուրբ , որպէս և 'ի վերայ մարգարէիցն ։

Արդ նմանեսցուք վարդապետին մերոյ և մարգարէիցն և առաքելոցն , որ շինեցաք 'ի վերայ նոցա · որք զգեցան զզէն տեառն իւրեանց , և յաղթեցին սատանի ։ Նա և Պաւղոս երանելի ասէ · “Կամիմ ես , եղբարք , զի ինձ նմանող եղիջիք „ · յայնմիկ՝ զի ասէ · ոսկոյ և արծաթոյ ես ոչ ցանկացայ , և ոչ հանդերձից փափկութե՟ · այլ սիրեցի ես ձեռօք իմովք վաստակել և կերակրել , և տալ եւս տկարին կարօտելոյ · զի և նա եցոյց եթէ որով գնասցիւք շրջեսցուք ։ Եւ զոր օրինակ առաքեալքն դարձեալ որ միանգամ ինչք էին նոցա՝ զայն 'ի մէջ անդր բերէին , և ոչ ոք էր 'ի նոսա աղքատ · զի ամենեքին հաւասարք էին բնակութե՟ և սիրոյն իւրեանց ։ Ապա եթէ Պաւ-

ղօսի մեք ոչ լսեմք , և փրկչին մերոյ մեք ոչ անսամք , մարգարէիցն և առաքելոցն նմանողք մեք ոչ լինիմք ։ Մի՛ արասցուք այսուհետև զբանս գրոց սրբոց ընդոստ վասն տկարութե՛ն մերոյ . զի բանք այ այոն այո է , և ոչն ոչ . որպէս և Պաւղոս ասէ . "Կենդանի է բանն այ . և առաւել հատու է քան զամեն սուր երկսայրի՝ հատանել անցանել հասանել մինչև յորոշումն ոգւոց և մարմնոց , մինչև յօդս և 'ի խոստուցըս . և դատաւոր է նա մտաց և խորհրդոց՝ սրտի . և չիք ինչ արարած՝ որ թագչի 'ի նմանէն , այլ ամենայն ինչ յայտնի է առաջի նորա . զի մերկապարանոցք կալոց ե՛մք առաջի երեսաց նորա իւրաքանչիւր 'ի մէնջ՝ տալ նմա պատասխանի ,, ։ Զայս օրինակ աշակերտութե՛ զոր ասաց տէր մեր , վասն կատարմանն ասաց . զի որ կամի կատարեալ լինել , այսմ նմանեսցի ։

Նաև այն՝ զի ասէ Պաւղոս . "Իբրև տղայոց 'ի Քրիստոս կաթն ջամբեցուցի ձեզ , և ոչ ետու ձեզ հաստատուն կերակուր , զի մինչև ցայժմ դեռ մարմնով էք . նա և կարէիք ոչ ընդունել մինչ դեռ մարմնովդ էք ,, . և դարձեալ ասէ . "Կատարելոցն է հաստատուն կերակուր , այնոցիկ՝ որոց ճաշակելիքն կիրթ են՝ որոշել զչար և զբարի ,, ։ Եւ արդարև այսպէս զայս , զի ասէ , "Իբրև տղայոց 'ի Քրիստոս կաթն ջամբեցի ձեզ ,, , զի զոր օրինակ տղայն նախ կաթն դիէ , և նովաւ սնանի և սակաւ սակաւ զօրանայ 'ի սնունդ ճաշակաց կերակրոյն , և սկսանի որոշել զբարի և զչար և զքաղցր 'ի դառնէ , և ապա մատչի նա ուտել զկերակուր հացի , և զամենայն ինչ իբրև զայր , և մոռանայ զտղայութի իւր զկաթինն զոր դիեցաւ 'ի փոքրկութե՛ իւրում վասն զօրութե՛ բռնութեան իւրոյ , և կերակրոց զի կատարեցաւ 'ի չափ բնութե՛ իւրոյ զոր հաստատեաց 'ի նմա ած , սոյնպէս և մեք 'ի նմանութի կաթին ուսանիմք մեք զգիրս զառաջինս , և նոքօք սնանիմք , և առ սակաւ սակաւ զօրանամ 'ի մեզ հաւատքն մեր և պաշտօն տեառն մերոյ . և ապա սկսանիմք մեք 'ի միտ առնուլ , որոշել զբարի և զչար , և զքաղցր 'ի դառնէ ։ Յորժամ հաստատեալ լինին հաւատքն մեր 'ի սաստկութե՛ իւրեանց , և ապա յակամայ կամս մեր ընկենուն զմեզ

միտք մեր 'ի կատարումն ճշմարտութեան աւետարանին, զի նա ինքն է հաստատուն կերակուր . որպէս և Առաքեալ ասէ . "Կատարելոցն է, ասէ, հաստատուն կերակուր " : Վասն այսորիկ իսկ ասաց Առաքեալ . "Իբրև տղայոց 'ի Քրիստոս կաթն ջամբեցի ձեզ " : Քանզի զառաջինն իբրև զկաթն արբաք մեք զուսումն վարդապետութեան . և յորժամ կատարիմք և հաստատիմք 'ի նմա, յայնժամ մատուցեալ մերձենամք մեք առ պատուիրանս աւետարանին . և նա ինքն է կատարումն հասակի կատարելոց և հաստատուն կերակրոյ :

Եւ այն զի ասէ դարձեալ տէր մեր . "Ջանացիք մտանել ընդ դուռն նեղ " : Եւ զսոյն ինքն տեսանեմք՝ եթէ այս այսպէս իցէ՝ դուռն արքայութեան : Որ ցանկացեալ կամի զինուորել, և գրել զինքն 'ի թիւս համարոյ զինուորաց աստէն յերկրի, նախ զայս դնէ 'ի մտի իւրում՝ ելանել 'ի տանէ իւրմէ և յազգատոհմէ իւրմէ, հեռանալ նմա յայլ գաւառս, և անկանել նմա 'ի մարտ պատերազմի մահուան : Իբրև զինուոր՝ զի նախ ուսանի զտել և ջինջ ունել զզէն իւր, և ուսանի զիրս պատերազմի յորժամ միայն առանձինն իցէ . մինչ չև իցէ հասեալ ժամանակ պատերազմի, անկանի 'ի մէջ պատերազմողական արանց վառելոց . և ոչ այլ ինչ տեսանէ նա անդ, բայց միայն զփայլիւն զինու, և զշողալ սուսերի, և զշահատակուի հեծելոց, և զչկահիւն աղեղանց . և ոչ այլ ինչ լսէ նա անդ, բայց միայն զձայն տաւղի բախելոյ, և զհարկանել փողոց, և զստիպել սրնգի, զահ սրոյ, և զքաջալերել փողոյ : Ոմն առաջի արիւն անցուցանէ, և ոմն իբրև լսէ զձայն ահեղ բարբառոյն՝ անկեալ պարտասեալ ցամաքի յերկեղէ իւրմէ . և ոմն քաջալերեալ զօրանայ, և քաջալերին 'ի նմանէն և նիզակակիցք ընկերք իւր . և ոմն ամբառնայ զաչս իւր և տեսանէ՝ զի սուր առաջի նորա և սուր զկնի, և ասէ 'ի մտի իւրում . եթէ վատթարեալ տկարանամ յայս մարտ պատերազմի, առաջուստ իմ սուր սպանանիցէ զիս . և եթէ զթիկունս դարձուցանիցեմ, զկարթս հարկանիցեն ոյք իմք իցեն . այլ մեռայց անարգ . և համբառնայ զաչս իւր յերկինս, և կար-

դայ ա̃յ աղօթիւք , և զանձն իւր 'ի մարտ պատերազմի տայ առնաբար ։ Այս է զոր ասաց փրկիչ կենարարն մեր . ասէ . որ մերձենայ առ իս , առ հուր մերձենայ . և որ հեռի է յինէն , հեռի է 'ի կենաց ։ Սոյնպէս և մեք՝ որ ցանկացաք երկնաւոր դրանն արքայութ̃ենն , և գրեալ իցեմք 'ի թիւս կենաց ընդ զինուորս՝ ընդ մարգարէս , ընդ առաքեալս , նախ ուսանիցիմք մեք զկիրս պատերազմի՝ զպատուիրանս և զօրէնս տեառն մերոյ . և կրթիցիմք նոքօք համապազօր , և զտիմք իբրև զէն , և հաստատիմք 'ի սիրտս մեր , և ապա զգենումք զնոսա իբրև զզէն քաջ . և կարող լինիմք այնուհետև դիմակայ լինել մարտին պատերազմի յորժամ զգեցեալ իցեմք մեք զնոսա ։

Ապա թէ ոչ զգենումք զայն զէն , յորժամ լինի պատերազմ կամ հալածանք , կամ այլ ինչ հակառակութ̃ի յառնիցէ 'ի վերայ մեր , զի մարտ պատերազմի մերոյ համապազօրդ է , և զէնս հաւատոց զոր ունիցիմք , և յորժամ մերձենայ սատանայ առ մի ոք 'ի մէնջ՝ առնել ընդ նմա մարտ պատերազմի , ոմն ուրանայ առ երկեղի , և ոչ ունի նա զէն հաւատոց . և ոմն լսէ զձայն փողոյն , զի ստիպէ , և քաջալերեալ զօրանայ դիմակայ լինել նմա . և ոմն 'ի քուն կայ , և չէ արթուն . և ոմն ունի զուխտ ա̃յ , և չէ նմա հաստատուն , զի համարի նա զօտարութիւնս ունայնացեալս պաշտօնեայս ա̃յ ։ Եւ ամենիքեան սոքա 'ի թիւ համարոյ զինուորաց գրեալ լինին 'ի կոչումն աւետարանի և յաղթահարեցան 'ի սատանայէ ։ Սոյնպէս և Առաքեալ ասաց . ասէ . "Ոչ է մեզ մարտ պատերազմի ընդ մարմին և ընդ արիւն , այլ ընդ իշխանութիւնս , և ընդ աշխարհակալ աշխարհիս խաւարիս այսորիկ՝ որ 'ի ներքոյ երկնից , և ընդ այսս մոլորութեան " ։

Եւ զոր օրինակ զինուոր որ զինուորի , փոքրկութենէ 'ի մեծութ̃ի աւագութ̃ե հասանէ վասն մարտից պատերազմաց իւրոց , և վաստակոց քաջութ̃եց իւրոց , և վասն յօժարութ̃ե իւրոյ , զի հպատակութ̃բ կայ նա առաջի թագաւորի . և առնու 'ի նմանէ զպարգևս մեծամեծս , զփառս և զպատիւս և զմեծութ̃իս . և բարձրացեալ վերանայ նա յաշտիճանի

իւրում, և կայ մնդրէն 'ի դրան արքունի, և գրգեալ փափկանայ նա 'ի տան մեծութե, սոյնպէս և մեք կոչիմք փոքրութբ, և հասանեմք 'ի մեծութի վասն մարտից վաստակոց մերոց, և պատերազմաց քաջութեց մերոց, և հպատակութե մերոյ. և կամք մեք առաջի երկնաւոր արքային, և առնումք 'ի նմանէն պարգևս մեծամեծս զփառս և զպատիւ և զմեծութի, և վերացեալ բարձրանամք մեք աշտիճանօք ընդ մարգարէս և ընդ առաքեալս. և մեծանամք և բարձրանամք, և կամք առաջի երկնաւոր արքային, և գրգեալ փափկանամք 'ի տան մեծութե յերկնաւորս:

Եւ այն դարձեալ զի ասաց տէր մեր. ասէ. "Նմանեալ է արքայութիւն երկնից առն վաճառականի, զի խնդրէ նա զմարգարիտն պատուական. և եգիտ նա մարգարիտ մի պատուական և ծանրագին. չոգաւ վաճառեաց նա զամենայն ինչս իւր, և առ զնա գնոյ": Եւ զայս դարձեալ կատարեալ աշակերտութե ասաց. զի նա ինքն է մարգարիտ, և մեք վաճառականք՝ ոյք գտաք զնա: Եւ զոր օրինակ մարգարիտ պատուական զի ուրախ առնէ զսիրտ, և բարձրացուցանէ զմիտս և զոգի և զանձն այնորիկ՝ որ ունի զնա, և վայելուչ և գեղեցիկ առնէ զնա, և բարձրացեալ 'ի միտս իւր, սոյնպէս և մեք. եթէ ստանամք զմարգարիտն տեառն մերոյ, այս ինքն են պատուիրանքն, ուրախ լինի և ցնծայ անձն նորա և ոգի, և զուարճացեալ լինի սիրտ նորա 'ի ներքոյ, և գեղեցկացեալ վայելուչ լինիմք յանձինս մեր մարգարտովն մերով՝ որ 'ի ներքուստ է քան զմեզ: Եւ զոր օրինակ զմարգարիտ պատուական և ծանրագին ոչ դնեն զեղծ վայրապար 'ի տան գանձու արքայութե, այլ կապեալ ծրարեալ բազում կնքովք՝ և դնեն զնա 'ի պահեստի մեծաւ զգուշութբ, սոյնպէս և մեր մարգարիտս ծրարեալ պնդեալ և կնքեալ պէսպէս կնքովք, և եդեալ 'ի սիրտս մեր 'ի պահեստ մեծաւ զգուշութեամբ. և կայ պահի 'ի սիրտս և յանձինս և յոգիս ածպաշտութի տեառն մերոյ:

Եւ այն դարձեալ զի ասէ տէր մեր. ՙՙՆմանեալ է արքայութին երկնից մարդոյ, որ եգիտ գանձ յագարակի. և 'ի խնդութէ իւրմէ չոգաւ վաճառեաց, և գնեաց զնա ,,: Եւ զայս դարձեալ վասն կատարեալ աշակերտութէն ասաց. զի նա ինքն է գանձ՝ զոր կարգեաց զնա մեզ Հայր նորա: Այլ զոր օրինակ գանձ իբրև գտանեմք, և ոչ եթէ յայնմ ժամու գանձեցաւ նա՝ յորում եգիտան զնա, այլ գանձեալ իսկ էր մինչ կանխաւ և ըստ կամաց ոյ եգիտ զնա այն՝ որ եգիտն: Վասն այսորիկ գանձն փրկիչն մեր է, և ոչ եթէ արդէն ինչ գտաք մեք զնա, որպէս և մարկիտնացիքն ասեն. այլ գանձեալ եդեալ էր զնա Հօր իւրոյ մինչ կանխաւ, և ոչ յայտնեաց ազգացն այնոցիկ՝ որ ակն ունէին և սպասէին նմա. այլ յայտնեաց զնա մեզ յազգի աստ մերում. վասն այսորիկ առակեցաւ նա 'ի գանձ և 'ի մարգարիտ, և մեք 'ի գտակս նորա ըստ կամաց արարչին մերոյ: Եւ զոր օրինակ 'ի գանձու ոչ եթէ մի ինչ գանձ կամ մեծութիւն գոյ 'ի նմա, այլ գանձք և մեծութիք բազումք կան 'ի նմա. իբրև բանայ զնա այն՝ որ գտանէն զնա, զարմացեալ յիմարի և տագնապեալ փութայ յանձն իւր, և խառնեալ է ընդ ուրախութի սրտի նորա ահ և երկիւղ. և հայեցեալ դէտ ակն ունին աչք նորա յայսկոյս յայնկոյս, և համբառնայ զաչս իւր յերկինս. և ոչ է նմա պիտոյ հաց կամ ջուր 'ի հոգոց և 'ի վաստակոց և 'ի տքնութէ ուրախութեց իւրոց, զի մեծ են քան զինքն գիւտք նորա զոր եգիտ: Սոյնպէս և փրկիչն մեր՝ որ յայտնեաց 'ի մեզ զՀայրն նորա, եբաց զգանձս բերանոյ իւրոյ զուրախութեց. և ոչ եթէ մի ինչ միայն մեծութի և գանձ բխեաց 'ի նմանէն, այլ մեծութիք և գանձք բազումք: Եւ յորժամ նստեալ ածիցեմք զմտաւ մերով զմեծութիւն և զգանձսն Հօր նորա, զարմացեալ յիմարի սիրտ մեր 'ի խնդութենէ ուրախութե իւրոյ, զի խառնեալ է ընդ նմա ահ և երկեւղ վասն մեծութէն զոր գտաք. և վաստակով և տքնութբ և հոգովք 'ի տուէ և 'ի գիշերի փոյթ յանձին ունիմք վասն գանձուն մերոյ. և ոչ քաղցենամք և ծարաւեմք. և ամբարձեալ են աչք մեր յերկինս համապազօր:

Եւ այն դարձեալ զի ասաց տէր մեր. ասէ. “Յորժամ կոչեսցէ ոք զքեզ 'ի հարսանիս կամ 'ի կոչունս, մի երթար դու բազմիր յերեց գահու անդ. գուցէ գայցէ մտանիցէ ոք 'ի կոչնականաց անտի այր պատուական քան զքեզ, և գայցէ այն՝ որ զքեզ և զնա զերկոսին կոչեցեալ իցէ՝ և ասիցէ, արի տեղի արա սմա. և ապա ամօթով 'ի խոնարհագոյն տեղի անդր մատչիցիս: Այլ յորժամ կոչեսցեն զքեզ, երթիջիր բազմեսջիր դու 'ի խոնարհագոյն վայրի. յորժամ եկեսցէ որոյ կոչեալն է զքեզ, ասիցէ՝ բարեկամ 'ի վեր մատիր և բազմեաց, յայնժամ եղիցին քեզ փառք առաջի ամենայն բազմականացն. զի ամենայն որ բարձրացուցանէ զանձն իւր խոնարհեսցի, և որ խոնարհեցուցանէ զանձն իւր բարձրասցի ,,: Եւ զայս բան զոր ասաց, զի հայեցաւ ետես՝ զի բարձրընտիր լինէին: Եւ սոյն իսկ այս բան 'ի վերայ եկեղեցոյ կատարի. զի տէր մեր է տէր բազմականաց, և մեք կոչնականք նորա՝ որ կոչեցեալ եմք 'ի բազմական անդր. և սոյն ինքն այսպէս կատարի: Այլ զոր օրինակ մարդ յորժամ հրաւիրէ զկոչնականսն, նախ բանիւ հրաւիրէ զնոսա, և ապա յետոյ գան հասանեն 'ի բազմական անդր, սոյնպէս և փրկիչն մեր նախ բանիւ իւրով հրաւիրեաց զմեզ, և ապա յետոյ երթամք մեք 'ի բազմականն:

Եւ նայեցաւ ետես տէր մեր՝ զի բարձրընտիր լինէին 'ի բազմականի անդ, 'ի վերայ մեր կատարի այս. զի ջանամք մեք այսօր լինել գլուխ առաջնորդ, և ոչ ջանամք գործել զգործս արժանի առաջնորդութե: Եւ արհամարհեալ են յաչս մեր այսօր այնոքիկ՝ որ խոնարհեցուցանեն զանձինս իւրեանց յաշխարհի. որպէս և ասաց տէր մեր. ասէ. “Որ բարձր արասցէ զանձն՝ խոնարհեսցի, և որ խոնարհ արասցէ զանձն՝ բարձրասցի ,,: Վասն այսորիկ իսկ բազմին նոքա յերեց գահու անդ, փոխանակ զի խոնարհ արարին զանձինս իւրեանց, և պահեցին զպատուիրանս տեառն իւրեանց: Այնոքիկ՝ որ հայեցաւ ետես փրկիչն մեր՝ զի նեղէին և բարձրընտիր լինէին նոքա 'ի բազմականի անդ, նոքա են՝ որ ջանան մատուցանել զանձինս իւ-

րեանց կալ 'ի գլուխ ժողովրդոց ։ Եւ ինքեանք անձամբ անձանց իւրեանց ընտրեցին զայս , և ոչ եթէ արդարութե՟ ինչ էին խորհուրդք նոցա . բայց ընդրութի՟ անձանց իւրեանց էր . այլ ընդրութի՟ յա՟յ այս է , յորժամ պահեսցես և զգուշասցիս զպատուիրանօք նորա , և լուսաւոր եղիցին գործք քո 'ի մէջ մարդկան . իբրու ոչ կամիցիս դու եթէ գիտասցէ ոք ըզգործսն քո զոր գործես դու , բայց միայն ա՟ծ . իբրու ինքնին գործք քո ոչ տան քեզ թոյլ թագչել , զոր օրինակ ոչ տան թոյլ գործքն բարիոք փրկչին մերոյ թագչել նմա , և մարգարէիցն և առաքելոց ։ Արդ այսպիսոյս վայել է առաջնորդութիւն . զի մինչ չև լեալ իցէ նա առաջնորդ , լուսաւոր էին գործք իւր 'ի մէջ մարդկան , և փառաւորեալ 'ի նմա ա՟ծ

Յորժամ լինի այնպիսի գլուխ առաջնորդ զօրութե՟ իւրով և բարիոք գործովք իւրովք , զի զարթուցանէ զբազումս , և բժշկին նովաւ բազում մարդիկ , զի դառնան առ ա՟ծ և կեան . զի առաջնորդ կայ 'ի գլուխ ժողովրդեան ։ Եւ նման բժշկի է նա . զի բժիշկ զվէրս առողջացուցանէ դեղովք իւրովք , և նա դեղով կենդանի բանիւք ա՟յ բժշկէ զախտս բեկեալս , և զանձինս տառապեալս ։ Եւ զոր օրինակ բժիշկ զի տեսանէ զվէրն , և իմաստութե՟ իւրով գիտէ որպիսի դեղ պիտոյ է նմա , սոյնպէս և բժիշկ իմաստուն եկեղեցոյ յորժամ տեսանէ զոք՝ զի բեկեալ է սիրտ նորա , և տրտմեալ է ոգի նորա , գիտէ որպիսի դեղ պիտոյ է նմա՝ 'ի գրոց սրբոց բժշկել զնա մխիթարութե՟ 'ի ցաւոց անձին նորա ։ Որպէս Մովսէս՝ զի եղև առաջնորդ , և առաջնորդեաց արդարութե՟ . և հովիւ , և հովուեաց բարւոք . և բժիշկ , և բժշկեաց առողջութե՟ զժողովուրդ Յակոբու ։ Արդ այսպիսի առաջնորդ վայել է առաջնորդութեան ։

Եւ զի ասաց փրկիչն մեր . ասէ . “Յաղօթս կացէք և խնդրեցէք , զի մի՛ լիցի ձեզ փախուստ 'ի ձմեռն , և մի՛ յօր շաբաթ ,, . վասն դառնութեան յայտնելոյ թշնամոյն ասաց , որ լինելոց է 'ի վերայ երկրի ։ Եւ շաբաթանան երկինք և երկիր և ամենայն արարածք , զի լինելոց է շտապ տագնապի , և ձայն ահեղ բար-

բառոց, և դողումն և սասկումն 'ի վերայ երկրի. և լքեալ լինէին ձեռք ամենայն մարդկան 'ի խռովութենէ ահին բարբառոյ: Վասն այսորիկ ասէ. "Յաղօթս կացէք, զի մի՛ լիցի ձեզ փախուստ 'ի ձմեռն, և մի՛ յօր շաբաթ". զի 'ի վերայ նորա եկին հասին ձմեռն և օր շաբաթ: Եւ շաբաթեցոյց ա՟ծ զերուսաղէմ, և խափանեաց զշաբաթս նորա, և զօրէնս նորա, և զիրաւունս չարաչար բնակչացն նորա 'ի վախճան կատարածի աւուրցն խաչահանութեան նորա. և եղև շտապ տագնապի, և ձայն ահեղ բարբառոյ, և ահ և երկիւղ 'ի վերայ երկրին այնորիկ. և լքան ձեռք աշակերտացն յերկեղէ ահին. և խաւարեցաւ արեգակն: Վասն այսորիկ ասէ. "Յաղօթս կացէք, զի արժանի լիջիք զերծանել յայնմ ամենայնէ՝ որ լինելոցն է": Որպէս և յաւուրսն իւր յորժամ հանէին զնա Հրեայքն 'ի խաչ, եղև ձայն ահեղ բարբառոյ, ահ և երկիւղ և հալածանք և տրտմութիւն աշակերտացն վասն տեառն իւրեանց: Սոյնպէս և մեզ եթէ դիպի օրն այն, լինելոց է 'ի վերայ մեր շտապ տագնապի, և ձայն ահեղ բարբառոյ, և ահ և երկիւղ, խռովութի՟ւն և հալածանք, սուգ և տրտմութի՟ւն վասն տեառն մերոյ: Եւ զոր օրինակ նոցա իսկ՝ զի այգն առաւօտուն մերձ էր նոցա վասն աւետեացն ուրախութե՟ան տեառն իւրեանց, սոյնպէս և մեք եթէ դիպիմք աւուրն այնմիկ՝ այգն առաւօտուն մերձ լինի մեզ յաւետիս և յուրախութի՟ւն տ՟ն մերոյ. որպէս և ասաց փրկիչն մեր. ասէ. "Վ՟ն ընտրելոցն կարճեսցին աւուրքն այնոքիկ":

Եւ այն դարձեալ զի ասէ. "Եղիցի ելանել ոգւոց մարդկան 'ի խռովութենէ երկեղին, և 'ի ձայն ահեղ բարբառոյն իբրև ծով զի յուզի": Վասն այսորիկ զգուշացոյց զմեզ փրկիչն մեր, զի ցուցեաց նմա վասն մեր: Եւ զոր օրինակ մարդ ոք զի թաղիցէ հուր 'ի տան իւրում 'ի ներքուստ, և ինքն ննջիցէ 'ի վերնումտան, և ծխեսցի ծուխ բազում, և ելանիցէ հասանիցէ ծուխն մինչև 'ի նա 'ի ծակուց առաստաղացն և ընդ որմածերպս պրշակին և լնուցու տունն ծխով, և զարթչիցի մարդն առ ահի երկեղի իւրում և ասիցէ 'ի միտ իւրում. վայ զինև և զի՞նչ անցք ընդ իս անցին. Թերևս հուրն որ թաղեալ էր իմ, բորբոքե-

ցաւ անդրէն ։ Սոյնպէս և սատանայի՝ աղդ լինի նմա վասն հրոյն՝ որ թաղեալ է նմա 'ի դժոխս ներքինս , թէ բորբոքեցաւ 'ի վառել . վասն այսորիկ մոլեգնի և կատաղի՝ սատակել կորուսանել զմարդիկ ինքն զօրօք իւրովք հանդերձ ։

Վասն այսորիկ պատուիրեաց մեզ տէր մեր և ասէ . "Եթէ ասիցեն ձեզ՝ ահաւասիկ Քրիստոս աստ է կամ անդ է , մի՛ ելանիցէք՝ զի մի՛ վարիցիք ,, . զոր օրինակ ոչ ուրեք աշակերտքն վասն Հրէիցն իբրև հանեին զնա 'ի խաչ . բայց իբրև յարեաւ նա 'ի մեռելոց , և ապա երևեցան և ապրեցան նոքա 'ի սպանողաց անտի իւրեանց , և տեսին զնա ։ Վասն այսորիկ պարտիմք մեք յառաջագոյն քան զյառնել մարդոյն անօրէնութե ուսուցանել և խրատել զմարդիկ , և զգնացս նորա և զխորամանկութս նորա զոր հանդերձեալ է գործել 'ի վերայ երկրի . զի նմանող մյ առնէ զանձն իւր ամենայն նշանօք և արուեստիւք . զի առաքէ զնա վասն փորձանաց աշխարհի։ Այսպէս տայ նմա մծ իշխանութ , որպէս և Դանիէլ ինքնին ասաց . ասէ . "Ի վերայ ամենայն աստուածոց և դից պաշտաման բարձրասցի . և վերանայ ամբարտաւանութբ , նշանօք և արուեստիւք ստովք և փորձանօք ,,։ Նա և փրկիչն մեր ասաց . ասէ . "Եթէ կարասցէ հնարս առնել , մոլորեցուցանէ զբազումս յընտրելոց ,, ։

Վասն այսորիկ պարտ է մեզ զգուշացուցանել և քարոզել տգետ մարդկան , զի անգէտք են 'ի գիտութէ գրոց . գուցէ յանկարծակի ուրեք յառնիցէ , և մոլորեցուսցէ նշանօքն զոր գործէ . զի նմանեցուցանէ զինքն Քրիստոսի , զի մի՛ երթիցեն զկնի նորա ։ Եւ պահանջին նոքա 'ի ձեռաց մերոց , զի ոչ զգուշացուցաք նոցա . այլ զգուշացուցաք զնոսա յայսմիկ՝ եթէ բնաւ ամենևին մի՛ իմիք հաւատասցեն յայն ձայն բարբառոյ յահեղ յահէ երկեղէ՝ որ լինելոցն է , և 'ի նշանացն զոր լսեն , զի մի՛ հաւատասցեն նոցա . բայց այս նշանաց , որ լինելոցն է յերկինս՝ հաւատասցեն ։ Յորժամ տեսանիցեն զարեգակն և զլուսին զի խաւարեսցին , և զնշանն որ լինելոց է յերկինս , այս ինքն է զխաչն լուսոյ՝ որ ձգելոց է յերկինս՝ յայսմիկ ևեթ հաւատասցեն , և ոչ այլ իմիք . որպէս ասաց

տէր մեր. ասէ. "Յաւուրսն յայնոսիկ յետ նեղուեն այնորիկ արեգակն խաւարեսցի, և լուսին ոչ տացէ զլոյս իւր, և շարժեսցին զօրութիւնք երկնից. և ապա երևեսցի նշան որդւոյ մարդոյ յերկինս, և տեսցեն զնա ամենայն ազգք երկրի, և զորդի մարդոյ՝ զի գայցէ ընդ ամպս լուսաւորս,,: Եւ իբրև զգուշացուցանեմք զնոսա, կատարեսցի 'ի վերայ մեր այն՝ զոր ասաց Դանիէլ. ասէ. "Ծագեսցեն իբրև զլուսաւորս յերկնից, որք արդարացուցանեն զբազումս,,: Եւ զի ասեն մարդիկս, բան յապուշ կրթէ զմիտս մարդկան՝ և զլուխ նորա մինչև յերկինս հասանէ, մի հաւատայք նոցա, քանզի մարդ է նա իբրև զմեզ: Դանիէլ և մարգարէքն յայտ առնեն վասն նորա. զի 'ի ժամանակի իբրև ետես նա զտեսիլ թագաւորացն, և անուանեաց զնոսա յեղջիւրս և 'ի գազանս, և զնոյն իսկ ընդ նոսա գազան և եղջիւր կոչեաց: Արդ՝ մարդ է նա իբրև զմեզ: Ահա և Եսայի մարգարէ դարձեալ ասէ, 'ի ժամանակի իբրև ասէր նա վասն արքային բաբելացւոց. "Դու, ասէ, ասէիր 'ի սրտի քում, ելից 'ի վեր յերկինս, և 'ի վերոյ քան զաստեղս ա͞յ արկից զաթոռ իմ, և բնակեցայց ես 'ի լերինս բարձունս 'ի կողմանս հիւսիսոյ. և ելից 'ի բարձունս ամպոց, և 'ի նմանութե͞ կացից բարձրելոյ,,. իբրու մարդ էր նա իբրև զմեզ, սակայն այսպէս ամբարտաւանեաց, և բարձրացաւ և վերացաւ 'ի սրտի իւրում. զի զարթոյց զնա ա͞ծ խրատել նովաւ զերկիր:

Եւ դարձեալ հայեսցուք ընդ Մովսէս և ընդ այնոսիկ՝ որ հակառակն կային ընդ նմա, և արարին յանդիման նմա զօրութիւնս և զնշանս և զսքանչելիս, փորձութիւնս և տեսիլս ահագինս երկեղի զոր ետ ա͞ծ թանձրաստեղծացն: Եւ զի փառաւոր լեցի ինքն՝ որով իւիք առնելոցն էր նոքօք. և զի քարոզեսցի անուն նորա ընդ ամենայն տեղիս, որպէս և ինքն ասաց. ասէ. "Վասն այսորիկ ցուցի զքեզ հակառակ ինձ, զի պատմեցից 'ի քեզ զզօրութիւն իմ և զփառս իմ 'ի ներքոյ ամենայն երկնից,,: Եւ նոքա թէպէտ և մարդիկ են իբրև զմեզ, սակայն այսպէս յայտ առնեն վասն նոցա գիրք, զի վերացան բարձրացան և ամպարտաւանեցան յոյժ արքայութե͞ տէրութե͞ և բռ-

նութիւն իւրեանց 'ի վերայ ամենայն աստուածոց, և պաշտօնեայ՝ որ անուանեալ կոչին յերկրի. և ոմանք զօրութիւն և նշանօք և սքանչելի տեսլիւք և ահագին արուեստիւք: Սոյնպէս և մարդն մեղաց որ գալոց է 'ի վախճան աշխարհիս, իբրու մարդ է նա իբրև զմեզ, սակայն լինելոց են 'ի ձեռն նորա զօրութիւնք և նշանք և փորձութիւնք և տեսիլք սքանչելիք. որպէս և տէրն ինքնին ասաց: Եւ ոչ որպէս բազում մարդիկ ասեն 'ի գիտութեան իւրեանց. ասեն՝ գլուխ նորա յամբս հասանէ, և առնէ նշանս մեծամեծս: Եւ եթէ ընդ նշանս հայլին ըստ մեծութեան զօրութեան, ասեն՝ հայեսցին ընդ այնոսիկ, որ հակառակ եղեն Մովսէսի. զի յանդիման իսկ նորա արարին նշանս և զօրութիւնս և տեսիլս ահագինս:

Սովին իսկ այսու հակառակաւ մերով արարին զայս ամենայն. և այն որ գալոցն է, այսու հակառակաւ գայ. և լինելոց են նշանք մեծամեծք 'ի ձեռն նորա վասն փորձանաց աշխարհի. և վասն բազում անօրէնութեան որ լինի յերկրի՝ առաքի նա 'ի փորձանս, զի փորձեսցի աշխարհ նովաւ, և ընտրեալք և արդարք փորձեսցին նովաւ. որպէս և Դանիէլ իսկ մարգարէ ասէ: Եւ դուցէ ոք ասիցէ՝ թէ որ ինչ Դանիէլ ասաց, 'ի Մակաբայեցիս անդ կատարեցաւ. և գողացեալ լինին միտք նորա այսու: Այլ յայսմիկ իմասցի այն՝ որ միայն զի զամենայն ինչ զոր միանգամ հաստեաց ա̃ծ, երկուս երկուս հաստատեաց յանդիման միմեանց. հաստատեաց զխաւար յանդիման լուսոյ, և զմահ հակառակ կենաց, և զչար հակառակ բարոյ: Արդ զամենայն ինչ զոր հաստատեալ է նորա՝ այսպէս են, յանդիման միմեանց կան ըստ փառաց հրամանի նորա: Սոյնպէս և ժողովուրդն իսրայէլացոց օրինակ մեր էր. վարք և պաշտօն մեր գործեցան նոքօք. և եղև փոփոխումն ժողովուրդ ընդ ժողովուրդ, և սեղան ընդ սեղան, և եկեղեցի ընդ Երուսաղէմ, և օրէնք ընդ օրէնս. որպէս և Առաքեալ ասէ: Որպէս եղև փոփոխումն 'ի քահանայութեան անդ նորա, սոյնպէս և օրինացն հարկ եղև փոփոխումն լինել. Թէպէտ և օրէնքն մի են, սակայն կատարած օրինացն Քրիստոս է: Վասն այսորիկ որպէս յորդիսն Իսրայ-

էլի օրէնքն մեր և վարք մեր և ճանապարհք պաշտաման մերոյ՝ զոր գործեցան նոքօք յառաջագոյն, և եկաք հասաք մեք, և գործեցաւ կատարեցաւ մեօք ամենայն ինչ զոր եցոյց վասն մեր Հոգին սուրբ նոքօք իբրև ակնարկելով ։

Որպէս և չորք Թագաւորք տանն Աղեքսանդրեայ յորժամ յարեան և հնազանդեցին զամենայն երկիր, և տիրեցին 'ի վերայ նորա, օրինակ են նոքա չորից Թագաւորացն՝ որ լինելոց են 'ի վախճան ժամանակի. յայտ արարին՝ եթէ կոխեն և հնազանդեն, և ուտեն զամենայն երկիր, և տիրեն 'ի նմա ։ Եւ որպէս յարեաւ Անտիոքոս լիրբ երեսօք և բուռն զօրութեամբ գլխոյ նոցա, և վերացաւ բարձրացաւ ամբարտաւանութեամբ խռովութեամբ և բռնութեամբ 'ի վերայ ամենայնի՝ որ անուանեալ կոչի աստուածս և պաշտօն յերկրին Երուսաղեմացոց, նոյնպէս և այն՝ որ յառնելոցն է 'ի վախճան չորից Թագաւորաց, որ յառնելոց են 'ի վախճան կատարածի աշխարհի, զի հպարտանայ ամբարտաւանէ և բարձրանայ 'ի վ՟ր ա՟մէ որ անուանեալ կոչի աստուածս և պաշտօն յերկրի ։

Այլ յորժամ յարիցեն չորք Թագաւորք 'ըստ նմանութեան առաջնոցն, ապա կատարեալ լինին ակնարկեալ պատկերին՝ որ վասն նոցա գործեցաւ նոքօք. զի ցուցին վասն նոցա յառաջ քան ժամանակն, որպէս և մեք իսրայէլացովքն ։ Եւ այսպէս ակն ունիմք՝ եթէ յաւուրց չորից Թագաւորացն շինին աւերակք. որպէս և յաւետարանի անդ Մարկոս ասէ. "Յորժամ տեսանիցէք, ասէ, զպեղծն յանապատի, զի կայցէ նա 'ի տեղոջ՝ ուր ոչ է արժան. որ ընթեռնուն 'ի միտ առցէ,, ։ Եւ զի՞նչ մեկնութիւն է պղծոյն զոր ասէ, բայց եթէ շարժումն և երերումն, և խռովումն և քակտումն. զի խլէին և քակէին և շարժէին և երերէին որդիք մարդկան 'ի տեղոջէ 'ի տեղի՝ բնակել նոցա յաւերակսն յոր շինելն շինէին. և լքցին ձեռք մարդկան որ 'ի վերայ ամենայն երկրի իցեն. որպէս և գրեալ է 'ի չորեքգլխեան աւետարանի անդ Մարկոս. և բազումք յիմաստնոց բերեն զբանս զայս 'ի վերայ Երուսաղէմի և Հեթանոսաց, զի կոչեցեալ ասեն պեղծք՝' 'ի ժամանակի, ասեն, յորժամ պաշարեցին

զնա, և աւերեցաւ: Այլ տէր մեր քանզի ցուցաց նմա վասն մեր՝ յայտ արար մեզ զԵրուսաղէմին, և եցոյց մեզ և որ ինչ 'ի վախճանի անդ լինելոցն է. և զԵրուսաղէմին մերկնեալ ասաց, յայսմիկ՝ զի ասաց նոցա. "Յորժամ տեսանիցէք դուք պատեալ պաշարեալ զօրօք զԵրուսաղէմ, յայնժամ գիտասջիք զի հասեալ է աւեր նորա": Եւ զԵրուսաղէմ պատեցին պաշարեցին զօրօք, և աւերեցաւ: Եւ դարձեալ զայս զոր ասէ Մատթէոս. "Յորժամ տեսանիցէք դուք զպղծն ապականութեան, զի կացցէ նա 'ի տեղւոջ սրբութեան յԵրուսաղէմ", 'ի Դանիէլ մարգարէէ քարոզեցաւ. որ ընթեռնու 'ի միտ առցէ: Վասն այսորիկ գիտեմք՝ եթէ Երուսաղէմ աւերեցաւ, և կատարեցան ամենայն ինչ որ խօսեցան վասն նորա մարգարէքն:

Որդ. մարդոյն մեղաց չլինի նա. ապա թէ ոչ՝ զիա՞րդ ստուգի խաբէութիւն նորա, որ գայն և մոլորեցուցանէ: Ահաւասիկ և Առաքեալ ասէ, ասաց 'ի զգուշացուցանելն անդ իւրում վասն յետին ժամանակաց. "Մի՛ ոք, ասէ, զձեզ խաբեսցէ, և մի՛ իւիք իրօք, եթէ ահաւասիկ ասեն հասեալ օր տեառն. զի եթէ ոչ նախ եկեսցէ ապստամբութիւն յառաջ, և յայտնեսցի մարդն մեղաց՝ որդին կորստեան, հակառակորդն, հպարտացեալ լինի 'ի վերայ ամենայնի՝ որ անուանեալ լինի աստուած կամ պաշտօն": Զի գալ մտանել նմա 'ի տաճար անդր այ, նստել և երևեցուցանել զանձն եթէ ած իցէ: Եւ յո՞ր տաճար նստի նա. ո՞չ ահա յԵրուսաղէմ վասն խաբէութեան իւրոյ. ահաւասիկ ես եմ Քրիստոս, այն՝ որ խօսեցան վասն իմ մարգարէքն: Եւ զի՞նչ այլ ևս ասիցէ՝ զի նստցի նա 'ի տաճար անդ նոցա. զի առնէ զանձն իւր ած 'ի նոսա: Զայս գիտեմք եթէ այս այսպէս է, զի առնէ զանձն իւր ած, և նստի նա ըստ նմանութեան: Նա և Առաքեալ իսկ յայտ արար զխաբէութիւն նորա զարդիս և որ լինելոցն է, յայնմիկ՝ զի ասէ. "Խորհուրդն անօրէնութեան արդէն իսկ զօրանայ. բայց ցայն վայր մինչև 'ի միջոց բարձցի իշխան, և ապա յայտնեսցի անօրէնն որդին կորստեան": Վասն այսորիկ յակնարկելոյ անտի բանիցն գիտեմք մեք. զի անդ ասէ Դանիէլ վասն եւթներորդացն՝

դառնալ և շինել զԵրուսաղէմ հրապարակս և փողոցս 'ի կատարած ժամանակի. և յետ վաթսուն և երկուց եւթներորդացն մեռցի Քրիստոս, և քաղաքն սրբութե̄ յապականութիւն դարձցի Թագաւորաւն հանդերձ՝ որ գալոցն է. և կատարածն նորա 'ի հեղեղատ մինչև 'ի պատերազմ համառօտ ապականաւն ։

Նաև զսոյն իսկ այս՝ է ինչ 'ի սմանէ, որ գործեցաւ կատարեցաւ, և է ինչ 'ի սմանէ՝ որ կայ ևս լինել. և որ կայն ևս լինել 'ի նմանէ՝ այս է՝ զոր ասաց Դանիէլ, զի յերկրորդ գալստեան իւրում հեղեղատեսցէ զնա տէր մեր ։ Իսկ ո՞ր է նա. բայց այն՝ զի նստի 'ի նմա մոլորեցուցիչն ստուգութե̄. զի չինէ զնա 'ի հեղեղատ հրոյ բարկութե̄. զի 'ի նմա լինելոց է դատաստանք ։ Եւ այն զի ասաց Մատթէոս. "Յորժամ տեսանիցէք դուք զպեղծն ապականութե̄, զի կացցէ նա 'ի տեղի սրբութե̄", վասն ապականութե̄՝ որ ապականէ և աւերէ, և յառնէ 'ի ձեռաց անօրինին. յայտ արար և եցոյց Հոգին Մատթէոսիւ յիշատակօք սրտի նորա 'ի բերանոյ տեառն իւրոյ. "Յորժամ տեսանիցէք դուք, ասէ, զայն նշան, յայնմ ժամանակի որ 'ի հրէաստանի իցեն՝ փախիցեն 'ի լերինս"։ Եւ ո՞վ իցէ հրէաստան, բայց եթէ կաթողիկէ եկեղեցի՝ որ անուանեցաւ հրէաստան, և հաւատաց 'ի նա. քանզի նա իսկ է հրէաստան, զի յազգէ Յուդայ է նա. և զանձն իւր կոչեաց նա հրէաստան, և որք 'ի նմանէն՝ կոչեցան հրէաստան. և զգուշացոյց նոցա ։

Յորժամ տեսանիցէք դուք, ասէ, զպեղծն ապականութե̄ և յաւերածոյն Երուսաղէմի, զի յառնելոցն է 'ի հեղեղատն հրոյն և 'ի փորձանս աշխարհի, և ընտրելոցն որ լինելոց է յանօրէնութենէ անտի, յայնմ ժամանակի դուք, ասէ, որ 'ի հրէաստանիդ իցէք, վասն եկեղեցոյ իւրոյ ասաց, փախերուք, ասէ, 'ի լերինս ։ Եւ եթէ ոք ասիցէ զոր միանգամ ասաց աւետարան վասն յետին ժամանակաց, սակայն բան 'ի վերայ Երուսաղէմի կատարեալ լինի, 'ի ժամանակի իբրև պաշարեցին զնա զօրք և աւարեցան. այնմիկ որ իմանայ՝ յայնմիկ իմասցի. զի ամենայն մարգարէքն թէպէտ և մարգարէանային վասն տեառն մե-

րում, սակայն ոչ նմանեալ լինէին նշանքն միմեանց զոր ցուցանէին վասն նորա ։ Ոմն 'ի կուսէ յայտ արար և եցոյց վասն նորա՝ թէ ծնանելոց է . ոմն զխաչահանութիւն նորա եցոյց 'ի վերայ նորա . և ոմն զի ընդամբս գալոց է նա՝ եցոյց վասն նորա . և այլք ամենեքին այսպէս իւիք իւիք յայտ արարին և ցուցին ։ Եւ եկն նա, և գործեցաւ կատարեցաւ և ստուգեցաւ նովաւ ամենայն ինչ զոր ինչ միանգամ ասացին վասն նորա ։ Սոյնպէս և բանքն տեառն մերոյ՝ որ ասաց, մեկնեալ և զատեալ են նշանք, և ոչ են նմանեալ միմեանց, վասն յետին ժամանակացն զոր եցոյց մեզ . քանզի Հոգին սուրբ յայտ առնէր և ցուցանէր յայնըմ ժամանակի՝ որ ինչ լինելոց էր յայսմ ժամանակի 'ի տեղիս տեղիս՝ 'ի վախճան կատարածի . քանզի 'ի մարդկանէ աստի ծածկեալ լինին մերձեալ ժամանակին յանզուարթութեան իւրեանց, որպէս և ասացեալ է ։ Եւ ողորմութեամբ յայտնի նա այնոցիկ՝ որք արժանի լինին քարոզել զնա յայնմ ժամանակի իւրաքանչիւր 'ի տեղւոջ իւրում . և բազմացին փառք նորա, որպէս և բերան տեառն վկայեաց ։

Արդ Մարկոսիւ եցոյց և յայտ արար Հոգին ըստ յիշատակի բանից տեառն իւրոյ, թէ չինելոց են աւերակք՝ որ չեն արժանի . և Մատթէոսիւն յայտ արար զապականելն և զաւերելն Երուսաղէմի, զի յառնելոց է խաբէութեամբ 'ի հեղեղատ հրոյն ։ Յայսմ ժամանակի որ յառնելոց է այժմ, և վասն Երուսաղեմի մեկնեաց և յայտ արար մեզ, և վասն այնոցիկ՝ որ հաւատացին 'ի նա ։ “Յայնմ ժամանակի յորժամ տեսանիցէք դուք զԵրուսաղէմ պատեալ պաշարեալ զօրօք, գիտասջիք զի հասեալ է աւեր նորա ,, ։ Եւ պատեալ պաշարեցին զնա զօրք և աւերեցաւ, որպէս և ասաց ։ Եւ այն աւեր և բարկութիւն և նեղութիւն որ եկն եհաս նմա 'ի վախճան աւուրց իւրոց, օրինակ է նա գործոց նեղութեան՝ որ լինելոցն է մեզ առ յապայ, գործեցաւ և ցուցաւ նովաւ ։ Եւ զի ասացն հաւատացելոց իւրոց . յայնմ ժամանակի յորժամ տեսանիցէք դուք, ասէ, զնշան երկեղի աւերածոյն Երուսաղէմի՝ զոր ասացեալ է վասն նորա, յայնժամ դուք, ասէ, որ 'ի հրեաստանի իցէք՝ որ յիտ հաւատա

ցէք՝ զի ես ինքն եմ հրէաստան, փախերուք 'ի լերինս մինչ չև իցէ արգելեալ և փակել զձեզ 'ի ներքոյ չարչարանաց։ Եւ սոյն իսկ այս 'ի վերայ մեր դառնայ և կատարի. քանզի բանն որ գրեալ է, յերկոսին կողմանս շրջի. որպէս դարձաւ շրջեցաւ Իսրայէլ 'ի մեզ, զի և մեք իցեմք յօժարք և արթունք. զի յորժամ տեսանեմք զաւերակսն որ աւերեալ են 'ի բարկութէ անտի, զի կանգնի և շինի 'ի ժողովել զօրացն բազմաց, զի ժողովի և երթայ անդր։ Յորժամ տեսանիցէք զայս նշան երկեղի զայնր նեղութեն մեծի՝ եթէ մերձենայ և գայ 'ի վերայ մեր, փախիցուք 'ի լերինս մինչ չև անկեալ իցեմք 'ի ձեռս. զի ամենայն ինչ որ միանգամ եղև գործեցաւ յառաջինս, օրինակ է և գործ մեր՝ որ գործեցաւ և ցուցաւ նոքօք՝ եթէ բարի իցէ և եթէ չար. զի մեօք լցեալ կատարեսցին ամենեքին ճշմարտութբ։ Որպէս և ցուցանէ և յայտ առնէ Հոգին, և քննութի գրոց, որպէս և գրեալ է։

Եւ որպէս կարծեմ, այսպէս թուի ինձ. զի 'ի մերձենալ 'ի վախճանի աշխարհիս աւերակք միջագետացն շինին որպէս և գրեալ է յաւետարանի անդ Մարկոսի. և յետ աւերակացն շինելոյ ելանէ համբաւ յաշխարհի իբրև ակնարկելով յառաջ քան զփոքր մի ժամանակ։ Ահաւասիկ, ասեն, Հրեայք ժողովին. և դու գիտասջիր եթէ ժողովին նքք 'ի սուտ հաւատս, և մոլար զօրութ անդր։ Վայ իցէ դարուն այնմիկ՝ յորում յարիցեն 'ի նմա չորք թագաւորք ըստ նմանութ առաջնոցն. զի թաղեալ կայ 'ի նմա լալումն և ողբումն և հալածանք և նեղութիք մեծամեծք դառնութե. որպէս զի երկինք և երկիր շաբաթանան 'ի դարուն յայնմիկ։ Յայնմ ժամանակի որոյ միտք առ իւր իցեն, գործ ինչ յաշխարհի մի գործեսցէ. բայց միայն աղօթք և պաղատանք և խնդրուածք, որպէս զի կարասցէ ապրել և փախչել և յաղթել։ Զի 'ի վախճան կատարածի չորից թագաւորաց խռովին և պղտորին ամենայն թագաւորութիք երկրի պատերազմով և ճակատամարտովք թագաւորաց՝ որ յարիցեն 'ի վերայ ամենայն երկրի ըստ իշխանութե օգոյս այսորիկ, որպէս և գրեալ է։ Որպէս և ասաց դարձեալ տէր մեր.

ահա աւասիկ լսէք դուք զձայն մարտի և զձայն պատերազմի. «Յայնմ ժամանակի զգոյշ լերուք, զի մի խռովեսջիք»:

Եւ ապա յարիցէ փորձիչն յետ պատերազմիցն և ճակատամարտիցն, և եղիցին 'ի նմա փոքր մի ժամանակ, և ապա բարձրասցի, որպէս գիրք ասեն. զի յանկարծակի յարիցէ և կորուսցէ զբազումս: Զի գալուստ փորձչին նախ նշանօք և արուեստիւք և զօրութե̃ք փորձանօք և սքանչելի և ահագին տեսլեօք, զի գայ նա գերեալ զաշխարհս 'ի մահ. ահա աւասիկ ես եմ Քրիստոս, և հաւատան 'ի նա ամենայն Հրեայք. քանզի սիրտք իւրեանց յաւերեալ գաւառս իւրեանց եղեալ են: Ահա աւասիկ, ասեն, գայ Քրիստոս, և մեք ամենեքեան անդր ժողովիմք: Եւ ըստ ցանկութե̃ն նոցա գայ նա, և անդր ժողովէ զնոսա, որպէս և ասաց Առաքեալ. «Վասն այսորիկ, ասէ, առաքէ նոցա ա̃ծ մոլար զօրութի̃, զի հաւատասցեն նոքա 'ի ստութի̃ անդր, և նովաւ դատապարտեսցին նոքա»: Հաւատան 'ի նա, և ապա եղիցի նեղութի̃ մեծ, սուգ և տրտմութի̃, ահ և երկիւղ և խռովութի̃ և արհաւիրք մեծամեծք, և եղիցին սրտաթափք որդիք մարդկան, որպէս զի ելցեն հոգիք նոցա 'ի մեծ յահագին յերկեղէ անտի. բազումք 'ի նոցանէն ոգէթափք լինին 'ի ձայնէ բարբառոյ և 'ի խռովութենէ երկեղին և 'ի լինելոյ անտի շտապ տագնապին 'ի ներքոյ ամենայն երկնից: Եւ ոչ հարք յորդիս դառնան, և ոչ որդիք 'ի հարս. զի սարսեալ կան ամենայն ոգիք 'ի խռովութենէ անձին իւրեանց. և հայեցեալ լինին աչք մարդկան յայսկոյս յայնկոյս 'ի ձայնէ շարժմանն, և 'ի զարմանալոյ անտի սքանչելի երկեղին:

Այս իցէ այնոցիկ՝ ոյք յղիքն իցեն, և որ ունիցին մանկունս ստընդայս[1] ընդ աւուրսն ընդ այնոսիկ. զի որք յղիք իցեն, եփլին և տրորին մանկունք իւրեանց 'ի մէջս իւրեանց. և որ ունիցին զմանկունս ստընտիայս, տեսանեն զչարչարանս որդոցն իւրեանց: Եւ լինին երկինք և երկիր թափուր յաւերակ յաչս

1 Յօրինակին ստընդայց:

մարդկան իբրև զծով խռովեալ ալեաց իւրոց յերկեղէ անտի՝ որ լինելոցն է 'ի նմա․ զի այսպէս խռովին նովաւ ամենայն արարածք, և երկինք և երկիր 'ի սուգ մտանեն նովաւ վասն որդոյ այ̃․ զի անցուցանէ զնոսա ընդ եռանդն, քննէ և սրբէ զհաւատացեալսն և զընդրեալս։ Զոր օրինակ ոսկի, զի մտանէ 'ի բովս հրոյ և քննի և փորձի և երևեալ լինի ընտրութի̃ նորա, և յորժամ ելանէ նա 'ի բովէ անտի հրոյն, և թացեալ լինի նա ջրով, և ապա երկպատիկ երևեալ լինի ընտրութի̃ նորա, սոյնպէս անցանեն ընդ եռանդն և քննին և ընտրին և երևեալ լինին որդիք արքայութե̃ զօրութի̃ք, նշանօք և փորձանօք և ահագին տեսլեամբք և սքանչելեօքն զոր առնէ նա։ Բովլ է նա մեզ 'ի քննութի̃․ և ապա յետ այսորիկ դարձցի և թացցէ զմեզ 'ի մկրտութի̃ անդր արեան սրոյն չարչարանացն իւրոց իբրև զոսկի՝ յորժամ ելանէ 'ի բովոց հրոյն․ և ապա թանայ յետոյ նա ջուրբ, և գեղեցկանայ և լուսաւորի։

Վասն այսորիկ պարտ է մեզ յառաջ քան զառնել փորձչին ուսուցանել և ցուցանել անմեղ մարդկան՝ որ տգէտ են 'ի լսելեաց գրոց․ քանզի բազումք են որ ոչ գիտեն՝ եթէ նախ սուտ Քրիստոսն գալոց է, և ապա որդի այ̃ գայ զկնի նորա։ Զի եթէ ոչ զգուշացուցանեմք մեք յայսմ հետէ և անդր, և նա յանկարծակի յարիցէ և գայթագղեսցին միտք նոցա զկնի նորա, և ասիցեն՝ ահաւասիկ սա իցէ Քրիստոս։ Ի տեսանել անդ իւրեանց զխռովութիւնս և զարհաւիրս, և 'ի լսել անդ իւրեանց վասն զօրութե̃ցն և սքանչելեաց զոր առնէ, լինիցին նոքա իբրև զայնոսիկ՝ որ երթայցեն զուղիղ ճանապարհ, և դիպեսցի նոցա տեղի մի՝ զի ճանապարհակիցք իցեն, և կասցեն հայեսցին յաջ յահեակ՝ զի ոչ գիտիցեն զինչ գործեսցեն, կամ ընդ որ ճանապարհ երթայցեն․ զի չիցէ նոցա առաջնորդ՝ որ ցուցանիցէ նոցա ճանապարհ զվախճանին յորում կանն, 'ի տեսանել անդ իւրեանց ըղձայն ահեղ բարբառոյն և զխռովութիւս և զարհաւիրս ևս և սքանչելիսն զոր լսիցեն, զի այսպէս յաղեկարծում ժամու յարիցէ նա։ Եւ ամենայն մարդ դարձեալ լինի առ ինքն՝ փախչել թագչել և ապրե-

ցուցանել զանձն իւր յափշտակութենէ անտի որ լինելոցն է ։

Այլ լինի այնուհետեւ մարդիկ զոր ոչ սնուցաք և ցուցաք զնշանսն և զորոշեալ վախճան 'ի նեղ Ճանապարհին՝ յորում եկն յառաջագոյն, զի լինիցին կախեալ աչք նոցա ։ Ի հայել անդ իւրեանց՝ ասիցեն. սա է արդեօք Քրիստոս, կամ թէ չիցէ սա, առ չգոյի առաջնորդ՝ որ ցուցանիցէ նոցա զնշանս և զելս ուղեղ Ճանապարհի. այն զի վաստակեցին և եկին 'ի նմա պահօք և աղօթիւք և արդարութեամբ վաստակոցն և խաչելութեամբ տեառն իւրեանց՝ զի վասն նոցա ել 'ի խաչ, և քարոզութեամբ առաքելոցն ։ Եթէ կորնչին նոքա, պահանջեալ լինին 'ի ձեռաց մերոց. զի կերաք մեք զպտուղ երախայրեաց նոցա, զոր պատուեցին զմեզ 'ի միամտութենէ. և զնոսա ոչ պահեցաք ։ Զի ոչխարք են նոքա Քրիստոսի, զորս ետ և յանձն արար զնոսա մեզ արածել և պահել զնոսա. և արածեցաք մեք զանձինս մեր, և զնոսա ոչ պահեցաք, որպէս և գրեալ է ։ Եւ մեք իբրու թէ փախչիմք և թագուցանեմք զանձինս մեր ապրել 'ի յափշտակութենէ անտի տագնապին ահին երկեղի և ելանել ոգոց մարդկան ։ Եւ ոչ գիտեն այնոքիկ՝ որք զանձինս իւրեանց ոչ ունին 'ի զուարթութեն այսր փութոյ յօժարութեն, զիշխանութի յանձն առնելոյս յորում կամքս. թէպէտ և թագչին յաներեւոյթ տեղիս, սակայն կորուսեալ են անձինք իւրեանց վասն հեծութեան ոգոցն որ կորնչին, որ յանձն եղև նոցա յառաջ քան զժամանակս ։

Վասն այսորիկ պարտ է մեզ յօժարեցուցանել և զօրացուցանել վասն որոյ Քրիստոսն 'ի խաչ ել և յանձն արար զնա մեզ, յայնմիկ՝ զի ասաց. ասէ. “Որ ոչ ժողովէ ընդ իս, ցրուելով ցրուէ „. ուսուցանել և ցուցանել, և առաքել քարոզել մանկանցն կաթողիկէ եկեղեցւոյ յառաջ քան զհեղեղ և զյափշտակութի մոլորութեն որ գալոց է 'ի վերայ աշխարհի 'ի քննութի և 'ի փորձութի, և մեք անպարտք իցեմք և անարատք. քանզի յայնմ ժամանակի դրունք քաղաքաց փակին, և գեօղք և լերինք քննեալ լինին, և անցք Ճանապարհաց և կամուրջք գետոց արգե-

լեալ լինելն վասն մեր ըստ իշխանութեան հրամանի բանի նորա. որպէս զի ոչ ոք կարասցէ փախչել և ապրել 'ի նմանէն: Եւ այս ամենայն վասն ընտրելոցն այ, մինչև դատի և չարչարէ զմեզ: Եւ ապա քննեսցի և ընտրեսցի զօրութիւն և պնդութիւն իւրաքանչիւր 'ի մէնջ: Վասն այսորիկ ասաց տէր մեր, զայնոսիկ՝ որ 'ի նմանեն են՝ զի յայնմ ժամանակի արթուն իցեն, փախչել 'ի լերինս մինչ չև արգելեալ իցեն 'ի ներքոյ չարչարանացն. զի յառաջ քան զչարչարանսն ըստ շաւղաց գրոց գայ նա. որպէս զի հաւատասցէ 'ի նա աշխարհ՝ եթէ Քրիստոս է նա ճշմարիտ: Զի ընդ Հրեայս իբրու թէ այժմ, ասէ, յայտնեցայ 'ի գրոց անտի մարգարէիցն, զի սպասէիք և ակն ունէիք ինձ յառաջագոյն. և ընդ մեզ դարձեալ իբրու թէ ահաւասիկ, ասէ, եկի մեծութբ. և այն որ երբեմն խոնարհութեամբ եկի, արդ ահաւասիկ մեծութբ եկի. և կատարեցան ինև երկոքին, և այս խորհուրդ մտաց մերոց. զի յորժամ յառնէ այն՝ որ խորհի և բաժանէ զմիտս իւրաքանչիւր 'ի մէնջ այսու խորհրրդովք, ոմն այսպէս և ոմն այնպէս, որպէս և այս օրս. զի ահա չև ևս եղեալ են նեղութիւնք՝ թէ խորհուրդք խռովեցին:

Վասն այսորիկ զգուշացոյց զմեզ Առաքեալ յասել իւրում. մի երկնչիք, ասէ, և մի խռովիք 'ի տագնապ յահագին խռովութենէ անտի. յայնմիկ՝ զի ասաց մեզ. «Այսուհետև, ասէ, մեք մարմնով զոք ոչ գիտեմք. թէպէտ և գիտէաք՝ զՔրիստոս գիտէաք. այլ այսուհետև ոչ ևս մարմնով գիտեմք». վասն գալստեան այնորիկ՝ որ գալոցն է ըստ նմանութեան Քրիստոսի՝ զի մի հաւատասցեն նմա, ասաց: Քանզի տէր մեր Յիսուս Քրիստոս հոգով յայտնի, և գայ յերկնից մարմնով, և դատի զկենդանիս և զմեռեալս. սոյնպէս և նա այսու մոլորութբ. զի ըստ նմանութեան Քրիստոսի գալոց է: Ահաւասիկ նախ զկենդանիս դատիմ, և ապա զմեռեալս. վասն այսորիկ խիստ և դառն է նեղութիւն այն: Եւ ապա յետ նեղութեան և ճգնութեան մեծի, եղիցի սակաւիկ մի խաղաղութիւն յուրախութիւն ապականութեան 'ի չարչարանս և յայպն կատականաց դառնութեան:

Նւ իբրև սկիզբն լցի կատարեալ չափոյն՝ որ տըւեալ է նմա 'ի քննութի և 'ի փորձանս, պատասխանի տայցեն նմա հրեշտակք և ասասցեն. Երբ յարուցանէ ադոնայի ած մեր հայրն քո զմեռեալս, և տեսանեմք մեք զհարսն մեր. և զեղբարսն մեր, զի սպասէաք և ակն ունէաք քեզ 'ի դարս դարս. և ըզմարգարէսն մեր՝ որ մարգարէացան վասն քո յառաջագոյն վասն այսր գալստեան քո։ Եւ դատիս դու զմեռեալս, և առնումք մեք զվրէժ 'ի թշնամեաց անօրինաց, որք աւերեցին զսուրբ սրբութիւն մեր. որք կոխան արարին և պղծեցին զնա, և զմեզ հանին ընկեցին 'ի միջոյ նորա, և ցրուեցաք մեք ընդ ամենայն տեղիս և ընդ քաղաքս ըստ բարուէ այ մերոյ, զոր բարկացուցին զնա հարքն մեր կռովքն իւրեանց։

Եւ մինչ դեռ նոքա զայս խօսիցին, նիշ նշանի խաչին տեառն մերոյ երևեալ լինի յերկինս։ Եւ իբրև տեսանեն, կան հիացեալ զարմացեալ յիմարեալ դողացեալ զահի հարեալ. և արկցեն զաչս իւրեանց 'ի խոնարհ, և անկեալ կործանեսցին 'ի վերայ երեսաց իւրեանց 'ի վերայ երկրի՝ յամօթ և 'ի լալումն և 'ի յողբումն։ Եւ ապա հալածեալք և լքեալք և աշխատեալք և վաստակեալք՝ որ յայնմ ժամանակի իցեն, համբառնան զգլուխս իւրեանց 'ի ներքոյ քարանձաւաց՝ որ թագուցեալ իցեն յայրս և 'ի քարածերպս և 'ի սորս երկրի, յամենայն կողմանց թագստեան յաւետիս տեառն իւրեանց. զի տեսանեն յերկինս զնիշ նշանի խաչի նորա։ Եւ ընկղմեալ լինի սուգ տրտմութե նոցա յուրախութի անճառ՝ թռչել ընդ օդս երկնից իբրև ձագք աղաւնոյ յորժամ սկիզբն լինիցի բուսանել թևոց նոցա, կամիցին թռչել և ոչ կարիցեն. նախ թևակոխեսցեն, և ապա համբարձցին։

Արդ այսպէս իցեմք արթունք, և զգեցեալ իցեմք զուարթութի յամենայն ժամ վաստակովք և տըքնութեամբ և հոգովք և զմտաւ ածելով 'ի տուէ և 'ի գիշերի պէսպէսն նշանիւք և արուեստիւք, որ ինչ գրոց գրեալ է զարդիս՝ որ յայտնելոց է 'ի վերայ մեր։ Որպէս և նոյ՝ զի վաստակէր և տքնէր 'ի զուարթութիւն անդր նշանացն ժամանակին որ պատուիրեցաւ նմա։ Եւ որպէս Աբրահամ՝ զի արթուն էր յաւետիս

անդր իւրում սպասէրն և ակն ունէր ։ Եւ որպէս
Յոբն՝ զի արթուն էր 'ի փորձանս անդր արդարութե
իւրոյ, և պահեաց 'ի զուարթութեն անդ իւրում ըզ-
համբերութի փորձանաց իւրում 'ի վաստակ և յաշ-
խատութի արդարութե. իւրոյ ։ Եւ որպէս Մովսէս՝
զի արթուն էր 'ի գթութե անդ իւրում, և աղօ-
թիւք խնդրուածոց իւրոց վասն ժողովրդեանն՝ ո-
րում առաջնորդէրն ։ Եւ որպէս Ահարոն 'ի փառս
անդ. իւրում ։ Եւ որպէս Դանիէլ և ընկերք իւր 'ի
զուարթութե անդ հաւատոցն իւրեանց ։ Այսպէս ամե-
նայն մարգարէքն արթուն էին իւիք իւիք ըստ գոր-
ծոցն որ տուեալ էր նոցա ։ Արդ սոյնպէս և մեք որ
եղեաք շինեալ 'ի վերայ նոցա, զի և մեք արթունք ի-
ցեմք իբրև զնոսա վաստակովք տքնութեքն, և զմր-
տաւ ածելով 'ի տուէ և 'ի գիշերի 'ի նշանս անդր
ժամանակաց և 'ի նմանութիւն նոցա, և 'ի նմանու-
թիս դարձեալ նշանացն՝ որ լինելոցն են, և զարմա-
ցուցանեն զմեզ յանկարծակի ։ Զի զտեսցուք մեք նո-
քօք յորէ յայսմանէ 'ի միտս մեր. գուցէ յարիցէ 'ի
վերայ մեր օրն այն յանկարծակի, և ոչ գտանիցիմք
պատրաստական աւուրն այնմիկ ։

Եթէ ոք ասիցէ՝ եթէ ոչ յամս իմ, և ոչ յաւուրս
այս, զի ես որ օր մեռանիմ, այն իսկ է օրն իմ. իսկ
այնպիսին որ զայն ասէ, 'ի քուն կայ և կուրացեալ
է, և յաղթահարեալ է 'ի մեղաց անտի, և ոչ սգաս-
տացեալ. իբրև այն՝ զի նստցի 'ի վեր՝ աւանդին՝ որ
աւանդեցաւ նմա, և լինի յանկարծակի զրկեալ 'ի
նմանէ, զի ոչ էր արթուն. և ոչ զարթուցանէ յայսմ
ժամանակի պատերազմիս, որպէս և ասաց տէր մեր
ցՇմաւոն. "Զարթիր, ասէ, և պահեա զեղբարս քո"։
Զի ամենայն որ սիրէն զաշխարհս և զհանդերձ փափ-
կութե և զայլսպէս կերակուրս, և զանօթս գեղեցիկս
ստանայ, այնպիսին մեղաց ծառայ է և նորա պաշտօ-
նեայ է. Թէպէտ և կարի յոյժ աղքատ իցէ և աշխար-
հիս ցանկացեալ է, և չիցէ ցանկացեալ հոգևոր ճա-
նապարհին երկնից. որպէս և գրեալ է. "Մարմին,
ասէ, ցանկայ՝ որ ինչ զհասէ ոգոյ. և հոգի ցանկայ՝
որ ոչ կամք են մարմնոյ. և երկոքեան հակառակ են մի-
մեանց"։ Եւ մեկնեաց և ասաց Պաւղոս երանելի՝ մար-

գարէ և առաքեալ ըստ պատուէր հրամանի տեառն մերոյ. «Զի եթէ հոգով գնայք և հոգով վարիք, մի եթէ զամենայն ինչ զայն առնիցէք զոր կամիցիք. ոչ եթէ չունիմք իշխանութիւն յայսմիկ, այլ զի մի տրտմեցի Հոգին սուրբ՝ որ բնակեալ 'ի մեզ, և ամբաստան լինիցի նա զմէնջ առ ա՟ծ»: Զի Որդի ա՟յ Յ՟ս Ք՟ս և մարգարէքն և առաքեալքն որ եկին յաշխարհ, ոչ եթէ արտաքնոյն հակառակ կացին, այլ ներքնոցն՝ որոց ճշմարտութիւն յան՟ն եղև, և ոչ առնէին: Այլ մեք պահեսցուք զՀոգին սուրբ պարկեշտութ՟ք, միաբանութ՟ք և զուարթութ՟ք. և առցուք մեզ հայելի գրոց և տեսցուք նովաւ զանձինս մեր. և որ միանգամ սպիք նշանակեալք և պիսակուց չարութեանց իցեն 'ի մեզ, ջնջեսցուք և լուասցուք 'ի մէնջ, զի մի և մեք խոտան գտանիցիմք իբրև զնոսա՝ զի ոչ կալան զանձինս իւրեանց 'ի զուարթութեան:

Արդ եղիցուք մեք արթունք յայսմ օրէ հետէ յայտնութեան գալստեան ապստամբութեան՝ որ յայտնելոց է 'ի վերայ երկրի պէսպէս կերպարանօք. և ժառանգեսցուք զայս զուարթութիւն և զյօժարութիւն փութոյս այնոցիկ՝ որ գալոցն են զկնի մեր: Զի պատերազմ յորժամ լինի, փող հարկանի 'ի նմա. և նոյն խուկ փողն նմա ձայնս արկանէ, և զպատերազմօղս կոչէ: Եւ երկու ձայնք են փողոյն, և մեկնեալ զատեալ են 'ի միմեանց ձայնք նորա. առաջին ձայնն 'ի մեծութիւն հրաւիրէ, և միւսն և ո՛ի մարտ պատերազմի, իբրու ինքն մի է. որպ՟ և գրեալ է յօրէնսն Մովսէսի և յԵրեմիայ մարգարէի:

Այսուհետև պարտ է մեզ յայսմ օրէ հետէ վառել, հանդերձել և պատրաստել, դիմակաց լինել այնմիկ՝ որ վառին, հանդերձի և պատրաստի ընդդէմ մեր պէսպէս հնարիւք և խորամանկութ՟ք, նշանօք և արուեստիւք զօրութեանց իւրոց 'ի զարհուրեցուցանել զմեզ մեծամեծ փորձանօք յանկարծակի: Զի նախ 'ի սկիզբն յայտնութեան իւրոյ նշանօք, փորձանօք, զօրութ՟ք և ահագին տեսլեամբք գայ: Նա և զօրութիւնք և նշանք և տեսիլքն նորա օրինակ են տեսլեանն զոր ցուցանէ վասն երկեղի. և իբրև զկախարդացն՝ զի զտեսիլ և զօրինակ միայն ցուցանեն. և այն ինչ զոր տեսլեամբն և օրինակաւն ցուցանեն՝ այսուիք ցուցանեն, զի հնազան-

դին նոցա և առնեն զկամս նոցա, և անսան նոցա զամենայն զոր միանգամ կամին ցուցանել յաշխարհի. եթէ հրով իցէ՝ անսան նոցա, և եթէ մեռեալ ոք իցէ մեռանել և կեալ՝ տուեալ լինի 'ի ձեռս նոցա, և եթէ օձիւք իցէ, և եթէ որ միանգամ ինչ իցէ. որպէս և գիրք ցուցանեն. և յաչս մարդկան այս իբրև սքանչելի ինչ են։ Արդ սոյնպէս և այն որ աղբիւրն է այն վտակաց՝ որ յայտնելոց է, զօրութիւ̃քն այսոյն առնէ և ցուցանէ սքանչելի օրինակ տեսլեանց նշանացն. զոր միանգամ կամի ցուցանել, տուեալ լինին 'ի ձեռս նորա. զամենայն որ միանգամ ցուցանէ սքանչելիսն, նոքօք ցուցանէ. քանզի այս է, և ամենայնի ում կամի՝ նմանէ վասն երկեղի ընտրելոցն։ Վասն այսորիկ ասէ Առաքեալ. սուտ են զօրութիւ̃քն և նշանքն նորա։

Եւ ապա եկեսցէ Եղիա զկնի նորա՝ դարձուցանել զսիրտս ամենայն մնեղեայ առ ա̃ծ. զՀրեայսն՝ զի մի հաւատասցեն 'ի նա, և զաշխարհս ամենայն դարձեալ՝ զի մի կորիցեն. որպէս և գրեալ է. "Նախ Եղիա եկեսցէ, զի զամենայն պատրաստեսցէ"։ Եւ այս է պատրաստութիւն զոր պատրաստէ Եղիա. զի դարձուցանէ զսիրտս ամենայն մարդկան առ ա̃ծ՝ եթէ լսեն նմա։ Քանզի աղօթութ̃ առաքի նա յաշխարհ, զի մի կորիցեն. զի հաստատեսցեն և կայցեն 'ի հաւատս, և համբերեսցեն նեղութ̃են մեծի, և մի հաւատասցեն նմա։ Եւ ապա յետ նշանացն և զօրութ̃են և փորձութ̃եցն զոր առնէ, դառնայ կոտորել զամենայն և զոր միանգամ գտանէ պէսպէս չարչարանօք՝ որ աներևոյթ իցեն յաչաց մերոց։ Վասն այսորիկ ասաց Տէր մեր. ասէ. "Վասն ընտրելոցն կարճեսցին աւուրքն այնոքիկ"։ Եւ սգասցին զուարթունք երկնից սուգ մեծ յոյժ վասն ամենայն մարդկան։

Եւ ապա իբրև դադարեսցեն նեղութիւ̃քն, խաւարեսցի արեգակն և լուսին, և շարժեսցին և թօթափեսցին աստեղք երկնից։ Եւ ապա երևեսցի նշան " նորա յերկինս խաչ լուսոյ, որ ձգի յերկինս եւթնօրեայ մի[1] ժամանակս։ Եւ ապա կոծեսցին ազգք 'ի վերայ ազգի յիմարութ̃ զարմանալով ահին և եր-

[1] Յօրինակին կրկնեալ էր մի մի ։

կեղին և խռովութեն և մոլորութեն զոր մոլորեսցին, զի կացին նոքա մեզ հակառակ ։

Եւ այն զի՞ ասաց տէր մեր ։ "Յայնմ յաւուր յորում յայտնելոց է որդի մարդոյ, յայնմ ժամանակի եթէ ոք կայցէ 'ի վերայ տանեաց, և կարասի իւր 'ի տան իւրում կայցէ, մի՛ իջցէ առնուլ անտի. և որ յանդին իցէ, սոյնպէս մի՛ դարձցի անդրէն յետս. յիշեցէք դուք զկինն Ղովտայ. որ կամի ապրեցուցանել զանձն իւր, կորուսցէ զնա. և որ կորուսանէ զանձն իւր, գտցէ զնա,,. Եւ զայս զի ասաց տէր մեր, զի իցեմք մեք արթուն հանապազօր, սպասել և ակն ունել՝ այնոցիկ որ առաքինն վասն մեր յափշտակել ընդ մեզ ընդ առաջ իւր՝ զտիւն ամենայն և զգիշերն ամենայն յորում միաշաբաթին մտանէ ։ Եթէ 'ի վերայ տանեաց իցեմք և եթէ արտաքոյ ուրեք, իցեմք պատրաստ. և եթէ իցեմք մեծաւ զգուշութբ, և եղիցուք համբառնալ զաչս մեր ընդ արեւելս [1] 'ի բարձունս երկնից՝ հայել ընդ նշան խաչին զտիւն ամենայն և զգիշերն ամենայն, զի յայտնելոց է տէր մեր ։ Եւ եղիցուք մեք կալ և ունել զանձինս մեր պատրաստական մեծաւ զգուշութբ զտիւն ամենայն և զգիշերն ամենայն՝ յորում միաշաբաթին մտանէ ։

Եւ մի՛ դարձցուք առնուլ ինչ, քանզի մերկ վերանալոց եմք մեք հոգւով, շնչով և մարմնով. որպէս և Եղիայն՝ զի մերկ վերացաւ յափշտակեցաւ ընդ երկինս հոգւով, շնչով և մարմնով. զի ոչ եթէ ձորձս ինչ տարաւ ընդ իւր. և զի ոչ էառ նա ընդ իւր՝ յայտ է, զի և զնափորտն անգամ զոր ունէր՝ և զայն ևս թող աստէն ։ Եւ դուցէ մինչ դեռ կամիցիմք դառնալ առնուլ ինչ մի, յայնժամ մեք զրկեալ գտանիցիմք յափշտակելոյ անտի ուրախութեցն, և կորիցեն վաստակքն մեր և համբերութիք նեղութեն մեծի զոր համբերեցաք. և լինիցիմք այնուհետև փոխանակ ընդ յափշտակելոյն ընդ բարձունս երկնից, յափշտակեսցուք մեք 'ի խորս ներքինս. որպէս և կինն Ղովտայ՝ զի արհամարհեաց և անց զպատուիրանաւն ։ Եւ մի՛ երկիցուք դարձեալ 'ի խռովութէ անտի 'ի շարժման եր-

1 Յօրինակին արեւելս ։

կրին, զի շարժի և խռովի և երերի. և 'ի ձայնէ անտի որոտմանց և 'ի պայթիւն լինելոյ և 'ի փայլատականց անտի՝ որ լինելոց են 'ի վերայ մեր յայնմ ժամանակի յերեսաց փողոյն, զի գոչեսցէ և շարժեսցէ զխորս ներքինս անդընդոց, զի զարթնուն 'ի նմա ամենեքեան՝ որ ննջեանն 'ի հող։

Օ՜ի այսպէս առակեալ է ժողովուրդս մեր, և այս կատարի Ճանապարհ կոչմանս մերոյ 'ի Հարսանիս 'ի Հարսն և 'ի փեսայ։ Եւ զոր օրինակ կոյս զի խօսեալ իցէ փեսայի, և մերձեսցի օրն այն վերջին՝ որում սպասէրն և ակն ունէր, և փափաքէր յառաջ քան զմերձենալն նորա առ փեսայն, և գիշերն այն որ 'ի մէջ երկոցունց իցէ՝ և վաստակէ և տքնի և աշխատի յուրախութե՟ մտաց իւրոց զգիշերն ամենայն; և հատեալ լինի քուն յաչաց նորա 'ի հոգս և ցնծալն զմըտաւ ուրախութե՟ սրտի իւրոյ, և սպասէ և ակն ունի՝ թէ երբ իցէ լուսացեալ վաղվաղակի, զի երթիցէ յանդիման լինել երեսաց փեսային, և անգեալ պատեսցի 'ի գիրկս նորա մերկ, և հանգիցէ և ուրախ եղիցի 'ի նմա փեսայն 'ի գեղ նորա և 'ի հեզութե՟ ըղգաստութե՟ նորա և յիմաստութե՟ նորա և 'ի կարգս բարիս հարսինն իւրոյ, և տիրանայ ամենայն գանձուցան իւրոյ փոքու և մեծի, արդ սոյնպէս և մեք՝ զի եմք մեք խօսեալ փեսային, որ նա ինքն է Քս՟ արքայ, 'ի Հօրէ իւրմէ՝ յարիւն անձին յառաջագոյն. և յորժամ մերձենայ օրն վերջին՝ յորում գիշերն 'ի մի իցէ լուսանալ միաշաբաթին՝ 'ի մէջ մեր և 'ի մէջ փեսային, այսպէս և մեք իցեմք վաստակեալ և տքնեալ և հոգալով և զմտաւ ածելով ուրախութե՟ մտաց մերոց, զի հատեալ իցէ քուն յաչաց մերոց. և իցեմք համբարձեալ զաչս մեր յերկինս զգիշերն ամենայն սպասելովն, զի սպասեմք և ակն ունիմք և փափագեմք՝ թէ ահաւասիկ յայտնեսցաւ։ Այսպէս ասիցեմք ըղմիմեանս զգիշերն ա՟մ՝ յորում յայտնելոց է տէր մեր։

Եւ եղիցին սկիզբն առնել համբառնալ և վերանալ մի ըստ միոջէ զգիշերն ամենայն 'ի ձայն որոտմանց և պայթիւն և շարժմամբք և խռովութ՟բք։ Եւ ասիցէ եղբայր զեղբայր՝ թէրև զահի հարեալ իցէ. այս անուն այժմ առ իս կայր, և ոչ գիտեմ զի՞ եղև նա։

Եւ մինչ դեռ նա զայս ասիցէ, և միւսն ասասցէ. նա և եղբայր իմ այժմ առ իս կայր, և ոչ գիտեմ զի՞ եղև: Զի բազումք ևս և այլք ասասցեն այսպէս: Վասն այսորիկ այն զի ասաց մեզ՝ ասէ՝ “Որ ՚ի վերայ տանեաց կայցէ, կամ արտաքոյ ուրեք իցէ, մի՛ դարձցի առնուլ ինչ ՚ի տանէ իւրմէ„, զի մի՛ յորժամ մինչ դեռ նա կամիցի առնուլ ինչ մի, զրկեալ լիցի նա ՚ի յափըշտակելոյ անտի ուրախութեանն, և կորուսանէ զանձն իւր: Եւ սոյն իսկ այս յաւետարանի Ղուկաս ցուցանէ, զի ասէ. “Ցայսմ գիշերի, ասէ, իցեն երկու ՚ի մի մահճի, զմին առնուցուն հատուցանիցեն, և զմին թողուցուն. երկու իցեն որ աղայցեն առ մի երկանս, զմին առնուցուն հատուցանիցեն, և զմին թողուցուն. և երկու իցեն յագարակի, զմին տանիցեն, և զմին թողուցուն„: Եւ ասէ. “Ուր մարմին է, անդ և արծուիք ժողովեսցին„: Եւ զոր օրինակ արծուիք՝ զի ժողովլին և թռչին և սլանան ՚ի բարձունս երկնից ՚ի վերայ կերակրոցն զոր տեսանեն, սոյնպէս և մեք՝ որ առակեալ եմք յարծուիս, և տէր մեր ՚ի մարմին, զի լինին բարձեալ զմեզ հրեշտակք յամենայն հողմոց և յամենայն կողմանց, և սլանան և թռչին ընդ բարձունս երկնից՝ տանել զմեզ ընդ առաջ տեառն մերոյ, որ առակեալ է ՚ի մարմին և մեք յարծուի, յառաջ քան զգոյն հրոյ բորբոքելոյ, և ձայն փողոյն մեծի և սրնգւոյն զի ստիպէ հրեշտակապետն[1], փառօք հանդերձ Հօրն իւրոյ և զօրօք հրեշտակաց իւրոց, ՚ի գիշերին յայնմիկ յորում յայտնելոց է ՚ի նմա փեսայն: Ի լուսանալ միաշաբաթին՝ առաքէ զփեսաւէրսն զամենայն ըղմանկունս առագաստին՝ առնուլ տանել զհարսնն ընդ առաջ փեսային՝ յանդիման կացուցանել նմա. ընդ առաջ փառացն և ձայն փողոյն, յորում գալոց է փեսայն ՚ի ձայն գովեստեան փառացն վայելչուն զօրօք հրեշտակաց: Եւ ապա իբրև տեսանեն աչք մեր զլոյս և զկեանսն մեր, սիրովն և եռալ հոգովն և փափաքելովն և վաստակովք և պատերազմովքն մերովք նստիմք ընդ նմա ՚ի վերայ լուսաւոր ամպոց. և վերացուսցէ զմեզ նոքօք՝ մեծուն պատարագօք երևել

1 Յօր. հրեշտակակերպին. նոյնք ըստ օրինակի Լամբրոնացւոյն :

մեզ առաջի երեսաց արարչին մերոյ, որ տէր է փառացս յետ դատաստանի. որպէս խոստացաւ մեզ և ասաց. ասէ. "Երանի իցէ այնոցիկ՝ որ սուրբ են սըրտիւք, զի նոքա զա̃ծ տեսցեն":

Եւ ստուգեալ հաստատեսցին մեզ զոր գիրքն ասեն, եթէ ըստ նմանութե̃ հարսին է ժողովուրդս մեր: Յովհաննէս եցոյց և յայտ արար վասն փեսայութե̃ և մեծութե̃ նորա՝ որ յառաջ էր. և Ղուկաս եցոյց և յայտ արար զօրն զվերջին, յորում վերացեալ յափշտակին ընդ առաջ փեսային: Արդ երանի այնոցիկ՝ որ համբերեն նեղութե̃ մեծի, որ առաքինանան առաւել քան զառաջինսն յօրն տեառն հրեշտակօք հանդերձ յերկնից 'ի լոյս փառաց: Եւ մի իցէ եթէ ոք արհամարհիցէ յիմաստնոց վասն որոյ գրեալն է, զի հոգին մարգարէից հնազանդի. որպէս և գրեալ է: Եւ եթէ ոք արհամարհէ, հայեսցի ընդ որդիսն Իսրայէլի, զի հպարտացեալ ձեռն յանձին հարեալ էին և ասէին՝ թէ իմաստունք եմք և գիրս ունիմք, և ընթեռնուին իբրև զմեզ: Ահաւասիկ, ասեն, գայ Քս. և եկն՝ և ոչ գիտացին զնա, որով և 'ի քուն էին. և աղաղակեին մարգարէքն նոցա վասն տեառնն իւրեանց թէ գալոց է: Արդ՝ սոյնպէս և մեք եթէ ոչ հայիցիմք ընդ մերձենալ ժամանակի գալստեանն նորա, և զարթիցեմք և զգուշասցիմք և զարթուցանիցեմք, և մեք մերժեալ ընկեցեալ լինիմք ըստ օրինակի նոցա արտաքս: Նա և Առաքեալ ասաց մեզ վասն նոցա, թէ "Նոքա վասն մերոյ օրինակի եղեն, զի մի լիցուք ցանկացողք չարեաց, որպէս ոմանք 'ի նոցանէն ցանկացան": Եւ դարձեալ ասէ. "Կատարած աշխարհիս 'ի վերայ մեր հասեալ է":

Արդ երանի իցէ այնոցիկ՝ որ արթունն իցեն յայսմ օրէ հետէ արդարութե̃ յայտնութե̃ն տեառն իւրեանց. զի նոքա են հզօրացեալք: Այն զի ասէ, "Յաղօթս կացէք, զի արժանի լինիջիք զերծանել յայնմ ամենայնէ որ լինելոցն է", քանզի գիտաց զհիւանդութի̃ տկարութե̃ հաւատոց մարդկան՝ եթէ ոչ հանդարտեն դիմակաց լինել փորձչին, այսպէս ասաց: Արդ երանի իցէ այնոցիկ՝ որք զմիտս ունիցին և իմանայցեն ընդ աւուրսն ընդ այնոսիկ՝ յորում չորքն թագա-

ւորքն յառնելոց են 'ի վախճան աշխարհի՝ շինել համ-տատել, ստուգել 'ի շինուածս և 'ի տունկս աշխարհի զառաքելոցն և զքարոզութիւն նոցա. որ անդր ևս ուսուցին զհոգևոր մարդիկ՝ զի միաբան և հաւատարիք իցեն, եթէ մեծատունք իցեն և եթէ աղքատք իցեն՝ ամենայն ինչ իւրեանց հասարակաց իցեն 'ի միասին մինչ չև իցէ լեալ յաւար յափշտակութիւն և 'ի կորուստ և ամենայն եկեղեցեաց: Եւ հանապազորդիցեն պահովք, աղօթիւք, խորգով և մոխրով ցայգ և զցերեկ մեծամեծ խնդրուածովք, զի արժանի լիցին փախչել յերեսաց բարկութեան մեծի և ահագին սքանչելեաց՝ որ գալոց է. փախչել յերեսաց նորա, և կամ լինել հզօրք և հաստատել զբազումս: Եւ բազմեալ յաճախեսցի փառք նոցա առաւել քան զառաջնոց և վերջնոց, զի ապրեցուցանեն զմարդիկ յերեսաց բարկութեալ հրոյն հեղեղին՝ որ գալոց է 'ի վերայ մոլար խաբէութեան մարդկան. յոսկին և յարծաթն իւրեանց յուսացեալ՝ ապաստանէին 'ի նոսա առաւել քան յա̃ծ. և 'ի վերայ ամենայն ցանկութեանց նոցա՝ որ յաշխարհի իցէ, պատրաստեալ նոցա կաշառ և պատարագ հրոյ յապաստանէ անտի իւրեանց, որ յուսացան 'ի նա ապրել նովաւ: Անմիտ, յիմար, տկար և երկմիտ մարդ որ ոչ իմանայ. ո՞չ գիտես դու, եթէ հացն զոր ուտես օր ըստ օրէ, այն մասն և բաժին է քո: Ունիս դու գիրս և ընթեռնուս զնա 'ի կշտամբանս և 'ի յանդիմանութիւն անձին քո, զի մի գտցի քեզ տալ պատասխանի: Եւ ոչ հայիս դու ընդ հին առաքելոցն և մարգարէիցն՝ յորոյ վերայ շինեցար դու, և նմանեցաւ նոցա:

Արդ յարիցուք մեք 'ի վերայ անձանց մերոց, և հասցուք վաղվաղակի կամացն մերոց. և մարտ պատերազմի արասցուք ընդ հպարտութիւն, ընդ ամբարտաւանութիւն, ընդ երկմտութիւն և ընդ նախանձ՝ որ բնակեալ են 'ի մեզ, զի նոքա են հակառակորդք կենացն մերոց. և հասցուք կենացն մերոց վաղվաղակի՝ որ յա̃ծն մեր են ըստ ամենայն գրոց: Քնի փառք յաւիտեանս. ամէն:

ՏԵԱՌՆ

# ԵՓՐԵՄԻ

## Ի ՄԱՐԳԱՐԻՏՆ

### ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ

ՄԻՐԵՄ զքո զաւետարանդ, տէր. զի յորժամ քաղցենամ, կերակրէ զիս։ Յանկամ բանի քում. զի 'ի ծարաւեըն իմում, աղբիւր լինի ինձ. զի որչափ կամիմ, այնչափ կզչիմ 'ի կերակուրս քո. և աւելի քան զթողեալսն զտանք։ Ուտեմ բազում, և միայն զտանիմ. քաղցենամ բազմօք, և զիս միայն արբուցանես 'ի շնորհեդ։ Զի՞նչ քեզ տաց, բայց եթէ զիս առ 'ի միաբանութի քեզ։ Կամիմ և ոչ կարեմ, զի Ադամ հայր[1] պահանջեացէն զպարտիս ընութս։ Փութամ և խափանիմ. զի ոչ ունիմ լուծումն խնդրուածոյս առ 'ի յինէն։ Այլոց լուծանեմ զբոստ ընութն, և իմովք անտիւք խափանեմ զյուժարութիս. գիտեմ զի յանցանեմ, և ճանաչեմ ամբաստանեալ զինէն այլոցն յանդիմանութեց։ Եւ զի՞ լռեցից, զի դատապարտեցայց. և զիա՞րդ ցուցից զիմ զաւ 'ի քեզ ցանկութիս։ Խօսիմ և ոչ դադարեմ, քանզի կամիմ զանձնս դատապարտեալ. բայց միայն զի քո փառացդ հարկաւոր եղէց։ Կամիմ մեռանել, զի դու փառաւորեսցիս։ Գիտեմ զի մնաւանդ դատեցայց՝ ոչ յանդիմանելով զմեղուցեալսն. այլ ոչ դադարեցից զայս առնելով, զի ցուցից զքեզ անմեղ։

Ծանիցեն հեթանոսք զցանկութե զօրութի. ծանիցեն Հրեայք զոխրոյ ջերմութի. և առանց հրոյ և

[1] Յօրինակին Իէրէմ. եդաք ըստ յունին.

որոյ և այլոց վրէժխնդրութեանց յանձն առնում ըզմահ վասն քո ։ Թերևս հաւատասցեն այսմ իրաց, զի վասն քո տանիմ և զգայեկան[1] մահուս ։ Թերևս ասեմ և ոչ առնեմ . քանզի երկնչիմ, գուցէ 'ի քէն հեռացեալ՝ յաղթեցայց 'ի բնութենէս ։ Հաւանեցո զիս, զի օգնես ինձ 'ի ցաւս . և հաւանեցուցանեմ զհեթանոսս, զի տանիմ տանջանաց ։ Հնազանդեցո զիս, զի ողորմիս ինձ չարչարեցելոյս . և համարձակեալ տանիմ 'ի ճգունս ։ Հաւանիմ առաջի բազմութեան կռապաշտիցն . քանզի ահա փողն հեթանոսաց կոչէ ըզկամեցողսն՝ գոչել զառ 'ի հեղենականացն 'ի վ՜ր Պարսից յարձակումն, և ապառնայ զարևմտիցն 'ի վ՜ր մեր զվրէժխնդրութիւնս ։ Կամիմ, զի տեսեա[2] զմեղաւորս . այլ խնդամ, զի վ՜ս ն՜ց մեռար ։ Երկուցեալ եմ, զի պեղծ համարիս զաղտացեալս և զմարմնաւորս . այլ ունիմ մխիթարութի, զի գիտացեր զբնութես զյանդգնութի ։

Գիտես իբրև արարիչ զոր արարերս . գիտես իբրև զդատաւոր զոր դատապարտեցերս . գիտես իբրև մարդացեալ զոր իմացարս ։ Դու տուր զսա անաղտեղիս ։ Հայրն իմ Ադամ բազում աղտով տկարացոյց զսա . յարահիւսեաց ընդ աղտոյն՝ սփոփումն ընդունայնութե, և այժմ եւ ակամայ ծփիմ . և համեմատեաց բնութես զապականութի, և ահա ես կրկնակի ծովածուփ ձմերայնով վտանգեալ եմ ։ Ողորմեաց իբր դատաւոր, ներեա իբրև արարիչ, չարչարակից լեր տկարութես իմոյ ։ Եւ վասն իմ մարդացեալ, մի մերժեսցես զիս վասն ախտիցս . այլ հայեա 'ի կամս յուժարութեա ։ Մի պեղծ համարիր վ՜ս աղտոյս, այլ տես զփոյթ գործոյս գոնէ ըստ մասանց . մի դարձուցաներ զերեսս քո յինէն վ՜ս գարշութե խորհրդոյս, այլ հայեաց 'ի վ՜ր[3] սգոյս, և ցանկութեցն զպարսաւանսն ։ Ունիմ[4] յօժարութի, բայց ոչ գիտեմ եթէ զօրութի ։ Տամ զոր ունիմ . թէ կամիս տալ զպակասեալսն, տեսանես զիմ զխորհուրդս, աղքատ եմ՝ կողոպտեալ 'ի վիշապէն . տկար եմ՝ յապականութենէն տանջեալ . անգործ եմ՝ 'ի մեղացն ծփեալ ։ Կորուսի զքո շնորհն, վասն

1 Յօրինակին զզուհեցեան մահու .. և առնեմ ։

2 Յօրինակին ափէս ։

3 Յօրինակին 'ի վերագոյնսն . ուղղեցաւ ըստ յունին ։

4 Յօր . Ունիս յօժարութիւն ։

այսօրիկ աղքատացայ. կորուսի զքո պարգևսն. վա՜յ այսօրիկ ոչ ունիմ կատարեալ խորհուրդ. կորուսի ըղխօսակցութիւս քո, վա՜յ այսօրիկ ոչ գիտեմ ուր գնամ։ Ոչ ինչ ունիմ. բայց եթէ ունիմ, դու ետուր ծնեալ։ Աղքատացայ յոյժ. բայց եթէ մեծացայց, քո է շնորհն, և այժմ և յառաջն. միայն հայցեմ զքո շնորհն, խոստովանելով՝ զի քև յաղթեմ, եթէ յաղթեցից։

Գիտեմ զոմն մեծատուն 'ի գիրս. այլ իմաստուն գոլով, տեսեալ զքեզ՝ աղքատ զինքն անուանեաց հայելով 'ի քո իշխանութիդ. ես զի՞նչ ասացից, կամ զի՞նչ խօսեցայց։ Գիտէք զայրն յաւետարանի առակին ասացեալ. քանզի ամենայն աշխատութի որոց վասն մարդոյ եղև։ Եր ոմն մեծատուն, և գիտացեալ զի կայր գանձ յագարակի միոջ, վաճառեաց զամենայն ինչս իւր և գնեաց զագարակն։ Իսկ ոմն առնէ մարգարտին պատուականի պար՝ զերկոցուն գիտել զընտրութի, և լուծանել զիւրաքանչիւր զօրութի։ Երկոքեան մի են, այլ ունին սակաւ բանս լուծման մարգարտիս միոջ։ Արդ յառաջ ընդ սա անցցուք։

Մ՚արգարիտն պատուական՝ է՚ի ծովէ, և բազում գնոց արժանի վասն դժուարագիւտութեն. ոչ տայ կերակուր, այլ պարծանս. ոչ առ 'ի նմանէ վայելս, այլ բարեփառութիւս։ Բազում ինչք ասնենատուն. իսկ սա թեթևացուցանէ զծանրութի. փոքր գոլով՝ մեծամեծս կարէ, և համառօտս կրել, և դիւր փոխի՝ դիւրապահպանութե. և դիւրաւ թագչի, և դժուարաւ գըտանի։ Սա է արքայութին երկնից, սա է ած բանն 'ի գովութե. բազում զօրութիւս խորհրդոց շրջապատեալ ունի։ Ցայտնապէս ոչ կայ առաջի կերակուր, զի ոչ ժամանակեան է. ոչ աղքատաց 'ի կիր, այլ ծանուցելոցն մեծատանց հատու լինել. ոչ կարէ ունել յաղքատացն առաքինութի, բայց կատարելոցն ստացուած լինի։

Այն աշտիճանք 'ի բարձր տաճարի, 'ի ձեռն որոց ելանէ ոք 'ի ծայրսն։ Եւ յաւետարանին ընտրութիք են այնոցիկ՝ որք մերձենան յած։ Աղքատ ես, լինի քեզ հաց առ 'ի պահպանութի աղքատութեանդ. ակար ես, բանջարով կերակրէ զքեզ. յաղթ մարմնոյ մանանխիս տայ, իսկ լերդացալի և դալինկոտի զինին մատուցանէ. այլոց իբրև ձուկն առաջի կայ,

իսկ այլոց ցորեան. ոմանց մանկաղ, ոմանց փայտատ. և գարեղէն հացիւք շինականազունիցն առաջի դնի, և սուր մատուցանէ առ 'ի վէրս ձևեալ, և հարուածով խրատէ առ 'ի չուանացն, և վարոցովք խրատէ, և գաւազանովք տանջէ: Զայս ամենայն աշտիճանս ունի յաւետարանին: Այս առակովք ասացաւ: Եւ գիտէ մեծատուն առաքինութ̃, և աղքատս. գիտէ տկարս և առողջս հաւատովք. գիտէ զօրաւորս և անգործս բարեպաշտութ̃. սպանանէ սրով զքաղմաց կռովք ամբարշտութ̃իս որոշեալ. և զի մաշեսցէ զ'ի վերայ գիտունս ոչ հպարտացեալս: Այրեցմունս մատուցանէ որք արածին զանդաւոն գլխաւորս: Եւ զապականիչ ախտսն 'ի հեռի բաժանեաց 'ի հասարակաց եկեղեցւոյս: Հիւանդացելոց բժիշկ է, յիստակամտաց հովիւ, ճգնաւորաց միջնորդ, ընդդիմացողաց դատաւոր, անխրատաց վրէժխնդիր, աղքատաց խնամարար, և այրեաց հոգաբարձու: Առ բռնացեալսն թագաւոր, 'ի տառապեալս իբրև եղբայր, օտարաց իբրև ընդանի, որբոց հայր: Որք տգիտութ̃ թշնամանեն, իբրև տգէտ երևի. և միայն գովով այս ո̃մ լինի. զի զոր ինչ կամի՝ լինի, զի կարող է. և զօգուտս ամենեցուն կամի: Վ̃ս այսորիկ բազում են առակք, և պէսպէս զօրութիք. զի յամենեսին է, և ինքն ոչ փոխի. այլ որպէս բազմաղի քնար պէսպէս տարազիւք զամենեսին արուեստիւքն հնարի:

Պիտանեմ մարդ, զնոյն բժիշկ, հիւսն, դարբին, շինող, գաւառապետ, մշակ, տեսուչ, վարդապետ, արծաթագործ, բրուտ, խոհակեր, վաճառական և բազում արուեստ գիտելով. այլ ոչ 'ի մի ինչ արուեստս հեղեալ՝ զանութ̃ն կարօյս: Իսկ ա̃ծ ոչ այլափոխելի է, բազում տարազս ունելոյ կամեցեալ: Զայս ասեմ որպէս զմիոջ 'ի սոցանէ՝ այսպէս ձևով մարդ, Ա՛յլ է բնութի, ա՛յլ է խրատ, ա՛յլ է ձև, ա՛յլ է գոյիւ անձնաւորութի: Հիւսն, մշակ, կաւագործ, ղեկավար, հոգեբարձու, հարկաւոր իրաց մատակարար, միայն է, և յայլ ամենայն եղեալ լինի. ոչ հանապազ ծնանի խրատ, այլ միանգամ ծնեալ՝ կրթութ̃ 'ի միումըստ իւր արուեստիցն ազդէ: Իսկ արդ ծնեալ՝ զի դարձեալ եղիցի մարդ, ոչ կրթութի առնէ, այլ

բնութիւն կատարեալ հաստուցանէ ։ Որդւոյն Ա՟յ ոչ 'ի կրթութենէ ուսաւ տեսանիլ մարդ, այլ 'ի ձեռն բնութեան էառ զմարդն, զի եղիցի' որ չէրն, և 'ի մէջ մարդկան եղիցի որպէս զմարդ ։

Յ Մարկիոն ասեմ, որ զայսպիսիս ամբոխէ առ իւր փութացեալսն . ընդ Մանեայ խօսիմ, որ չարագոյն քան զՄարկիոն իմանայ վասն առմանն ։ Մարգարիտս մեր առաջի կայ . ասասցեն հերձուածողք ուստի՞ է, և զի՞արդ լինի ։ Ունիմ 'ի նմա փանձ տարացուցի . և փոխանակ ձեռնագրի' պարտաւորացն զայս առաջի դնեմ անիրաւացն ։ Ասասցեն' զի՞արդ է ծնունդ մարգարտիս . ցուցցեն մեզ եթէ ձև միայն ունի, և ոչ գոյիւ անձնաւորութիւնն ։ Գիտեմ զինչ ասես . գիտեմ և ես զինչ պատասխանի արարից հարցմանն ։ Ջի առանց յարահիւսման մարմնոյ' ծնեալ ոչ կարէ մարդ լինել . իսկ եթէ եղև որպէս Ադամն, ունէր, ասէ, մարդոյ զգոյաւորութիւն . իսկ եթէ ծնաւ 'ի կուսէն առանց խառնից առն, զձև ուրեմն էառ ։ Լուեմ ձեզ, հերձուածողք . քանզի ունիմ վասն իմ զպատասխանատուն ։ Ես լռութեամբ հանգչիմ . քանզի խօսի ընդ ձեզ մարգարիտն ։ Խօսեա, զի՞արդ ծնար . ասա զքո բնութիդ, և զհերձուածողսն յամօթ արա . ցոյց զքո զօրութիւնդ, և լոյծ զբաջաղմունս դիւրալոյծս ։ Կոնքն բարբառեսցին զծնունդն մարգարտին . ասասցէ գլղացումն տիպքն . տիպքն եղիցին վարդապետք որ 'ի ջուրսն են, մարդկան' որք կարծեցին յերկինս բնակեալ . յանբանից' մանաւանդ թէ յանշնչոցն խրատեսցին, որք ընկղմեն զերկնային բնութիւն յայնցանէ' որք ոչ օրինօք ոչ կարգովք կրին ։

Ոչ համբերեմ հերձուածողաց ամօթոյն, զի բան պահանջեն զԱ՟յ արարչութենէն, և քննեն զա՟ծային իրագործութիւն . համար դնեն ընդ Ա՟յ' որ պարտաւորքն են մեղաց, զի հասու լինել վիճին մշակութե անճառ բնութեն . դատեն դատապարտեալքն զդատաւորն, որք ոչն գիտեն վ՟ն իւրեանց պատասխանի տալ ։ Եթէ հասու լինիք անհասին և իմաստիք զա՟ծութին, ոչ ևս իցէ Ա՟ծութին անհաս, այլ հաւասար ամենայնի ։ Եթէ հասու լինիք անգիտին, որպէս ասէ Պաւղոս, եղև գիտունի ձեր լուծումն Ա՟ծային զօրութեն նորա ։

Ասեմ տարացոյց, ոչ զծնունդն յայտնել կարեմ. իմանամ զօրինակն ՚ի ձեռն իւր իմն նմանութեան, ոչ եթէ զզօրութիւն գործոյն յայտնել կարեմ։ Եւ մարգարիտս քար է ՚ի մարմնոյ ծնեալ, զի ՚ի պատենից ելեալ երեւի։ Իսկ զի՞ ոչ հաւատաս եթէ ա՟ծ մարդ եղև. զնա ոչ ամուսնանալ կոնքացն հաստատէ, այլ փայլատակունք և ջրոյն յարախառնութիւնք։ Այսպէս և Ք՟ս յղացաւ ՚ի կուսէն առանց ցանկութեան, սուրբ Հոգւոյն ՚ի թանձրութէ նորա հաստատեալ զառումն։ Մարգարիտն ոչ գաղտակութիւն ծնեալ, ոչ իբրև շունչ[1] ձևով յառաջ եկեալ երևի. և Ք՟ս վերստին սկիզբն առեալ ա՟ծութեան՝ ոչ լոկ մարդ, և ոչ անապականն ա՟ծութեան ՚ի կիր առեալ, իբրև թէ շնչաւորական ձևով ծնեալ եղև։ Մարգարիտն գոյիւ անձնաւորութ, բայց այլ քար իբրև զնա ոչ ծնաւ. քանզի ոչ եթէ այլ Ք՟ս, բայց որ ՚ի Հօրէ ծնեալ, նոյն որ ՚ի Մարիամայ ծնեալ եղև։ Ոչ ձև միայն ունի ասացեալ քարս, այլ և գոյութիւս. Նոյնպէս և Որդին ա՟յ գոյութեամբ ծնաւ և ոչ ձևով։ Յերկուց բնութեանց մարգարիտն ունի պատուական. զի ցուցցէ՝ եթէ Ք՟ս բան ա՟յ գոլով՝ ՚ի Մարիամայ մարդ ծնանի. ոչ մնմնաւոր ընկալաւ զծնունդն, վասն զի ոչ մի կենդանի։ Կատարեալ ունի զկրկնակի բնութիւն, զի մի կորուսցէ զերկոսին. ոչ կէս ա՟ծ երևեալ ՚ի վերայ երկրիս, և ոչ կէս մարդ եւ յերկինս. ՚ի կատարելոյն ՚ի կատարեալն, մարդոյն մարդ, յա՟յ ա՟ծ, և ՚ի կուսէ Ք՟ս։ Ոչ բաժանեցաւ մարմինն յա՟ծութենէն, և ոչ մարդկային բնութիւս ծանրեաց ա՟ծային բնութեան. ոչ յաղթեցաւ յարահիւսմամբ առմանն, զի կորուսցէ զոր ունէրն, և զոր ոչն ունէրն՝ եղիցի։ Կատարեալ ունի զոր ունէրն, և կատարեալ ունի զոր յարակցմամբն առ։ Յարակցութիւն ոչ եղև յարախառնութիւն. քանզի ոչ ՚ի մարմին յարահիւսէր, այլ մարդ էր՝ ոչ աստուածութեամբ։

Գինի և ջուր խառնեալ՝ կորուսանէ զզօրութիւն. գինի և ոսկի խառնեալ՝ երկոքեան հաստատեալ ունին զգոյիւ անձնաւորութիւն։ Ծածկէ ա՟ծ զառումն, որպէս ոսկի սափորն զմանանայն. Թաքչի ա՟ծ Բանն

1 Յօրինակին ունչ։

յաւիտենի, որպէս յարկեղն սափորն ։ Ներքինն դնի արտաքին, և արտաքինն ներքին. և զի միութիւնն ցուցցի, և առանձնաւորութիւնն իմանայցի. առումն[1], այլ միացեալ ընդ սափորոյն՝ ոչ իբրև զիւրեաւ արկեալ զա՟ծութիւն, այլ որպէս մարգարիտն 'ի փայլատականէ և 'ի ջրոյ՝ մի ա՟ծ իմացիր զփայլակն և զջրոյ խառնուածն. և զարմացիր զառակս Քսի, իմացիր զանարգ մարմնոյ հարկաւորութի մարգարտին, և հաւատա՝ թէ արդարեւ 'ի կնոջէ ծնաւ Քս ։

Դաղտակուրն դանգարժեայ, և ունի քար յինքեան պատուական քան զբազում տաղանդս ոսկւոյ ։ Այսպէս և Մարիամ ծնաւ զա՟ծութիւն, ամենայն արարածոցս զանհամեմատելին ։ Ոչ ցանկալից եղև պիտոյն յղացեալ զմարգարիտն. բայց միայն զգայուն յաւելուածոյ իմացաւ ։ Եւ Մարիամ առանց ցանկութե ծնաւ զՔս, զգացեալ բնութե զմերձաւորութիւն ։ Ոչ ապականեցաւ դաղտակուրն, ոչ յղացեալ և ոչ ծնեալ. քանզի կատարեալ՝ զքարն ծնաւ չանկեալ ընդ երկամբք. և կոյսն անապականութ՟ յղացաւ, և անցաւութ՟ ծնաւ ։ Ոչ միայն յղացեալ լինի մարգարիտն, այլ և աճեցաւ՝ յամէ. ապա եթէ ոչ կամէր և արտաքոյ կոնքին ցուցանել զիւր զգոյիւ անձնաւորութիւն, մարմնոյ խառնից կարօտացաւ գոյիւ անձնաւորութիւն, և գոյութի ընդ անապականութե պիտեցաւ 'ի կատարելութի գոյութեան ։ Թագեաւ իբրև յարգանդի 'ի խորշ տպին, և իբրև բնութ՟ ազդեցաւ առ 'ի կատարելութի հասակին ։ Աճեաց 'ի ձեռն բնութեան պիտոյից, և ճաշակօք յղացելոյն հաղորդեաց ։ Եւ եղև որդի՝ որ ոչ սերմանեցաւ 'ի մարմնոյ, և ծնունդ պտղաբերեաց բնութի առանց գործակցութե առն ծննդեանն Որդոյն ։

Ով մեծի խորհրդոյն, ով երկնային հրամանացն. զի ծնաւ բնութի ոչ զիւր, և եղև ծնունդ՝ որ ոչ յառնէ անկաւ ։ Կոյսն մայր, և բնութիւն աղբիւր. արգանդն սնուցիչ, աղջիկն գործակից. առումն 'ի հիւթից բնութենէն, և ծնունդն 'ի կատարելութենէ հաստատեալ բնութեան ։ Միայն կին ծնաւ. քան-

1 Ցոյնն անթերթի ունի զիմաստն ճանանայն ոչ է առումն ։

զի օտար էր ապականութենէ ծնեալն ։ Կոյսն ծնաւ, վասն այնր որ էր ցանկութեն, որդէծնութե հարկատրեաց ․ քանզի եցոյց զխլէչ ախտիցն ։ Իսկ զիա՞րդ միայն ձեռօվ եղաւ՝ որ հաղորդեցաւ բնութեանն և գոյութեն և ժամանակաց ծննդեանն ։ Իսկ զիա՞րդ յառաջ եկն մարդ՝ որ զամենայն փորձ ետ բնութեն առանց ապականութեց եղկանց ։ Ոչ չարչարեցաւ Մարիամ իբրև կին, և ոչ երկնեաց ծնանելով որպէս ըղկոյս ․ ոչ էր օտար եղելոցն, քանզի ունէր հաղորդութի ՚ի ձեռն մնուցեալ բնութեն ։ Մայր էր այլոյ [1] Որդոյ վասն մատակարարութե առմանն ։

Աճէր ՚ի Մարիամ Քս՝ անկարօտ գոլով որպէս Աճ ․ որդի եղև կնոջ՝ Որդին Այ ։ Գիտաց զՄարիամ մայր ․ շրջապատեալ եղաւ ՚ի ձեռն նորա մարդկութե զԱծութիւնն ։ Որդի էր հարկատուին ․ զի ոչ միայն հաւատով ետ զյօժարութիւն, այլ և բնութիւն հաղորդեցաւ յառումն ։ Եթէ ձևացեալ էր Բանին, զի՞նչ պէտք էին բնութեանն ․ զի թէ լոկ իբրև տեսլեամբ յարեալ էր, զի՞նչ պէտք էին կնոջն ․ զի թէ իբրև ընդ ցնցուղ էր իջեալ, վասն ո՞յր առնոյր [2] ՚ի պէտս ժամանակի զյղացումն ։ Ընդէ՞ր բաւէր ՚ի կուսին, որ երևելոցն էր առանց բնութե ․ ո՞րպէս ծնաւ, ո՞րպէս ՚ի կուսին հովանի եղև յերկնից ․ ընդէ՞ր յերկնից նոյնժամայն ոչ երևէր յերկրի ․ որ ոչ ինչ եղաւ ՚ի մարդոյ ․ բնութենէն, նոյնժամայն ՚ի յՈրդոյ ընդէ՞ր ոչ ծանուցաւ ։ Եթէ ունէր կատարեալ նախախնամութի, ապա ուրեմն առեա՞լ ինչ էր ՚ի կուսական ՚ի բնութենէն ։ Ոչ աւելորդ է Աճ և ոչ պատրիչ ․ բայց աւելորդ է Մարիամ, եթէ Քս ձևով եկն ։ Խաբեցէ՞ք արդեօք Աճ առ աչօք ծնունդ ցուցանելով մարդկան ։ Եղիցի հարկաւորութի բանիցս ․ քանզի ճշմարտութ գիտեմ զՔս, և մարգարտովս սքանչանամ, իբրև Այ առեալ ՚ի կուսէն զմարդն ։

Ունիմ և այլ տարացոյց վասն որոյ գոյութեանն զմինչև ՚ի կատարեալ հասակի զաճումն ։ Քանզի եթէ ձև ունէր Բանն, զի հանդերձս զգենոյր, ցուցանէ՞ք անձեցումն հանդերձ ․ և ձևով եկն Քս, ցուցէք պատ-

1 Իմա ըստ յոյն բնագրին այլաբանութ կամ գեղաբանութ ։ 2 Յօր ․ առնոյր ։

մուծան յառաջացեալ և պայծառացեալ, և ոչ մաշելի։ Եւ Քս ձեռօվ տղայացեալ ածէր՝ մինչև յառն կատարելոյ հասակ հասանէր. աճեցուցն վկայէ յղացմանն, և յղացումն աճեցմանն. ոչ նա համառօտիւ եղև, և կամ ելթող ըստ բնութեան 'ի ժամանակին։ Ոչ են ձեռք գոյիւ անձնաւորութեն հաղորդակից. այլ որպէս համդերձն արուեստագիտք։ Զինչ պէտք էին կանանց 'ի յղացմանն, բնութե արուեստին հարկատարեալ Քսի, նիւթոյն ոչ 'ի կենդանի մարդկանէ յառաջ եկելոց, այլ յերկրէ գաճելոց։ Կոյս սպասաւորեաց բնութե ածութեն. վասն այնորիկ և բնութե անապական եւ նմա։

Եթէ էր գործ հարկաւորութեն, և մարդ զայս կարէր տալ նմա։ Եթէ էր ձև սպասաւորութին, արուեստ մարդկան ոչ օգնէր ածութեն։ Արգանդն հարկաւորեաց ածութեն, և վասն պատրաստական ունկնդրութեն վարձ էառ զանցաւութին։ Մատոյց բնութի ցաւոյ պարտաւոր, և ընկալաւ զնա անցաւ. ընծայ մատոյց զտկարն, և էառ զնա զօրաւոր. ետ զարգանդն 'ի ցաւ, և ընկալաւ զնա անպատկառելի։ Բժիշկ էր՝ որ զբնութին նորա փոխ էառ. վասն այնորիկ՝ առողջ զնա անդրէն հաստատեաց։ Ոչ էր՝ որ պահանջէր 'ի կուսէն զպէտս որդէծնութե, այլ ածն. վասն այնորիկ ետ բնութեն զոր ոչն՚ ունէր. զի ցուցցէ՝ եթէ ոչ եկն զբնութին վարատել, այլ անպատկառելի պահել։ Մարգարիտն էր ծնեալն. վասն այսորիկ գեղեցկութը ծնեալ եղև առանց երկանց և ցաւոց։ Ոչ խոշոր և ոչ հողեղէն, ոչ թոյլատարազ իբրև զգէջ, ոչ բազմամասն իբրև զնիւթական. այլ տայ՝ ունելով զածն կատարեալ ընդ յիստակ բնութը թագուցեալ. վասն որոյ 'ի ներկայ զօրութենէն կոյս իբրև տիպք ծնաւ բնութը, և իբրև կին ոչ ամենևիմբ չարչարեցաւ։ Դարձեալ միակցութին եկեալ բնութեն, որպէս տիպք ոստրէիցս, 'ի կուսական կարգն։ Ոչ բացաւ կնիք բնութե կուսին՝ Քսի յղացեալ 'ի նմա. վս այսորիկ ոչ ծնեալ՝ բացաւ զի ծնցի. ոչ պատկառեցաւ ծնանելովն, քանզի ոչ ապականեցաւ 'ի յղացմանն։

Հարկաւորիմ յամել 'ի բանիս, զի զամենայն ցուցից հերձուածողացն։ Քս ծնաւ մարդ, և ոչ կար-

ծեօք ունելով ։ Մեք որպէս յղենամք , նոյնպէս և ծը֊նանիմք ․ ապականի մայրն յղանալովն , ցաւէ ծնա֊նելովն ․ կորուսանէ զբնութեն կնիք , զի յղասցի ․ ոչ միայն բանայ 'ի յայլ , և կայ 'ի նուաղումն բնութեն և երկնէ , յիշատակ առնելով 'ի սկզբանէ եղեալ ապա֊կանութեն ․ զի իբրև սերմն յառաջացեալ , ապակա֊նութիւն կանանց զարմտիս նմանեալ մարմնոյն պատ֊րաստեցէ ունել ։ Իսկ Քս ոչ այսպէս ծնեալ եղև ․ 'ի կոյս մարմինն անկեալ եղև , և ոչ 'ի մարմնոյ , այլ 'ի Հոգւոյ ։ Ի կուսէ յառաջ եկեալ երևեցաւ ․ քանզի Հօգին զարգանդն եբաց , զի ելցէ մարդն՝ որ զբնութին իրագործեաց , և զզօրութի կուսին առ 'ի յաճումն իւր շնորհեաց ։ Հոգին էր մանկաբարձ առ տղայացե֊լոյն առանց դաժանելոյ ․ ոչ ծնեալ նեղեաց զկնիք կուսութեն , և ոչ կուսին ցաւեաց՝ բաժանեալ վասն մեծութե ծնելոյ որդւոյն ․ Իսկ դարձեալ յինքեան 'ի բնութե կնիքն յանկուցեալ , որպէս տիպք կնքացն յառաջ բերելով զմարգարիտն , և դարձեալ առ յին֊քեան զովութե միութի կնքով միացեալ ։

Օ բազումս գիտեմ լուսագոյն ընկալեալ քան զփոխ֊տուեալսն ։ Զի որք զփոխն առին՝ արուեստաւոր գո֊լով՝ զտուեալսն յանցմանն անդէն առին ուղղութք , զիմրդ Տծ ոչ՝ առեալ յուեգոյն՝ անդէն տայր ողջ , փոխ առեալ՝ այլ լուսագոյն ․ վասն այսր՝ ապականելի բնութի փոխ առեալ , անդէն հաստատեաց անախտ , ծնեալ 'ի ձեռն նորա ։ Հնարագէտք կարեն արգելուլ ընդդիմական շնչով զջուր յամանի , և 'ի ձեռն թևոց բանան և փակեն , իւրովին այս ունելով յամանոն ․ Տծ ո՞չ իցէ քան զմարդիկ արուեստաւոր՝ ընդարձա֊կել և նեղել զբնութին , ոչ ինչ 'ի միջինկայից ստուա֊րութէ յառաջ եկելոցս նեղեալ ։ Թագաւորք յոր քաղաքս բարձրանան կամ ծնանին , խնամածութք պարգևեն ․ Որդին Տյ ո՞չ տայր մօր եղելոյ նմա՝ զկու֊սութին ։ Իշխանք տեղովք և աղբերք հնարիւք խնամ֊տանին , և զբնութիս ջրոց ուղղեն , և զխառնուած օդոց լուացուցանեն հնարից իմաստիւք ․ Քս ո՞չ եւս առաւել զայն՝ որ կարծելին է նեղեալ զբնութի ոչ ուղղէր ․ այլ իբրև զմի ոք 'ի մարդկանէ զծնեալ մայր 'ի բազմաց թողո՞ր ։ Որպէս միայն 'ի կուսէ ծնեալ

եղև քո, որպէս և Մարիամու մնալ կոյս, և լինել մայր առանց երկանց։

Մի՛ կուրացուսցէ զքեզ քո բնութիւնդ չհաւատալ ա̃ծութեն. մի՛ թիւրեսցէ զքեզ ախտալից մարմինս, ամբաստան լինել զմարդկային բնութենէս։ Զի քո ոչ եկն զի ծառայեսցէ ախտից, այլ զի ապականեսցէ զմեղս. ոչ երկեցոյց զմարմինն, զի խաբեսցէ զբնու-թիւն. ոչ փախեաւ յառմանէն, զի պատուեսցէ զձևս։ Եթէ 'ի ձեռն ձևոյ կարծէր ինչ գործել արժանի սքանչման, արդեօք ո՞չ աւելի ինչ գործէր 'ի ձեռն նորա բնութիս։ Եթէ զբնութին զձևն պատուեաց, բա-րւոք է բնութիս պատուոյ արժանացեալս յա̃ծութենէն։ Իսկ եթէ վասն յղութեն եկն ձևոյն, սքանչելագոյն է բնութի ձևոյն՝ ազգիւ յղական տալ զուղղութի։ Իսկ եթէ ոչ ինչ օգուտ եբեր ձևն, պարտ էր 'ի նմին իսկ 'ի ձևոյն ուղղել զառաջինկայն։ Եթէ ոչ ինչ ուղղեաց ձևոյն, աւելորդ է որ զաւելորդն կրէ։

Հայեցարուք 'ի մարգարէսն և մի՛ մոլորիք. քան-զի ոչ դադարեմ ունելով զյանդիմանութիւն, մինչև ուղղեսցիս զամբաստանն։ Տեսէք զի ոչ է ձև, այլ ըղ-գայութի. և զարմացարուք զյարահիւսուածն բնու-թեն. քանզի անբաժանելի է քարս պատուականս. զի ոչ ոք յա̃ծութենէն որոշեսցէ զառուածն։ Փայլա-տակմունք և ջուր միաբանեցան, երկու ընդդէմք յա-րահիւսեցան։ Արդ զոր ունիս չգիտես, և զոր ոչ ու-նիս հնարագործութ քննես։ Ի հրոյ փայլատակունք և հուր, ուստի լուսաւորէ և կիզու։ Տիպքն ջրով, և ձևն ջրով ա̃ձեն։ Ո՞չ կիզուն փայլատակունքն զոր-պացն մարմին։ Զիա՞րդ 'ի գոյութի եկին միութեամբ հուրն և ջուրն. եկեղեց տպացն անշէջ[1] պահեաց ըղ-թոյլ բնութին։ Վասն միութեանն ա̃ձեաց 'ի ներքս փակեալ, յառաջացեալ ժամանակին յառաջ եկեալ Կրկեցաւ ջուրն և հուրն 'ի մարգարէտ։

Ասէ աւետարանն. Հոգի տեառն եկեսցէ 'ի վերայ կուսին։ Վասն է՞ր. զի առցէ զօրութի բաւել ա̃ծու-թեն։ "Եւ զօրութի բարձրելոյն հովանի լիցի 'ի վե-րայ քո"։ Փայլատակունքն 'ի վերայ թռիցենքո. զի

1 Յօրինակին անէջ։

ծնեալն 'ի քէն սուրբ է, և եղիցի Որդի այ։ Ոչ ասաց՝ ծնեալն դարձեալ ծնցի. ոչ ասաց՝ 'ի զօրութէ սուրբ Հոգւոյն, այլ 'ի քէն. զի ցուցցէ զբնութիւն կուսին հարկաւորեալ ածութեն, և զպատուումն 'ի նմա և 'ի նմանէն ըստ Բանին այ յարահիւսեալ։ Թէ չէր ասացեալ ծնեալն 'ի քէն, թերևս ձև էր առեալ Բանին։ Են օրինակք, յորում ոչ կայ յինքեան հերձուածողաց շնորհս մատուցանելով։ Ո՞չ ընդունիս՝ զի 'ի քէն, ով հերձուածող. յաւելուած առողջ ունի ըղմիտս. ասէ՝ և ծնանելոց էն, նշանակելով յարահիւսումն։ Հայեաց 'ի մարգարիտն՝ երկուս բնութիւս 'ի մի եկեալ. պայծառ վասն ածութեն, սպիտակ վասն առմանն. սպիտակ զպայծառութիւն, առաքինութի 'ի ներքս բնակեալ զօրութիւն. խիստ վասն մարդկային բնութեն, ողորկ վասն երկնային գործոյն, ջրագոյն վասն երկնային բնութեն, կարմրատեսիլ վասն ածային գոյիւ անձնաւորութեն։

Յանսուրբ կենդանեաց է մարգարիտն, և քս ծնեալ եղև յանսուրբ բնութէ. վասն այսորիկ սըրբեաց զկոյսն և ծնեալ եղև. զի ցուցցէ՝ ուր քս է, ամենայն սուրբ է։ Սրբեաց պարկեշտութի, և ծնեալ՝ կոյս եթող. տիպքն յայտնեցան, զի ոչ 'ի ձեռն կանացի անդամոց յղացաւ. զի ամենայն մարմին եբաց զերկու տիպն, և ոչ եառուն մարմնական կարգքն. տիպք անհոգութեամբ արձակ ունելով զմարմին՝ յանկարծակի 'ի փայլակմանէն լցան։ Նոյն և կոյսն ամենայն մարմնովն ընկալաւ զած Բանն. զի 'ի ծագել արեգականն ամենայն լուսաւորի. արտաքուստ լուսաւորէ, զի՞նչ արասցէ 'ի տան եղեալ։ Եթէ զՊաւղոս քս յերկնից լուսաւորելով այլափոխեաց 'ի բարեպաշտութի, ո՞րչափ ևս առաւել սրբոյ կուսին Մարիամագոլ ած Բանն՝ յամենայն ապականութէ օտար առնէ զնա։ Պատենիցն տիպքն բանան, բայց մարգարիտն չափ անքակ է. նոքա հաստումն ընդունին, սա անհատ է. զի իմասցիս զօրինացն զերկուս տախտակսն, և զաւետարանին զուղղութիւն. յանձն առնէ զպատուականսն. զերկրայինս ունին օրէնքն, և զերկնայինն աւետարանքն։ Ահաւասիկ պատեանքն և մարգարիտն, զորս միաբան եած քս 'ի ձեռն շնորհին։

Տեսանե՞ս զվաճառականն, իմանա՞ս՝ որ զամենայն ինչ վաճառեաց, զի գնեսցէ զմարգարիտն։ Սա է Հայրն, որ 'ի ձեռն Որդւոյն գնեաց զմարդկային ըզ-պիտանացուս. զամենայն ինչ վաճառեաց զերկրային ստացուածս իւր, զի գնեսցէ զհարօրն երկրիս զոր ինքն ստեղծ։ Ետ զնա Ադամայ, և կորոյս զնա 'ի ձեռն ընդոցն ցանկութեց։ Գնէ զագարակն, ոչ վասն պիտոյից երկրիս, այլ վասն գանձուցն որ 'ի նմա։ Եւ զի՞նչ է ագարակն. մարդկային մարմինք։ Եւ գանձ է հոգին՝ զոր ըստ պատկերին արար։ Վաճառէ զամենայն, առաքէ զՈրդին գնել զստացուածն։ Ոչ վաճառէր բռնաւորն ածութեն, եթէ ոչ էր զգեցեալ ըզմարդկութիւն։ Գիտէր զզօրութիւն, և երկնչէր վաճառել. մարդոյ վաճառէր՝ գիտելով զտկարութիւն. գիտէր եթէ 'ի ձեռն բնութեն յորժամ կամի՝ դարձեալ հանէ զստացուածն, յորս ոչ գոյ ընդդիմաբանութիւն՝ թէ իմ է։ Միայն մարդ վասն անձին իշխանակամութե առնէ զիմ տէրութի երկբայելի. 'ի ձեռն խոստովանութե և ուրացութեն գանձ ունի զանախտութիւն։ Զի փառք իմ են առ 'ի չկորուսանել՝ զոր 'ի հարկատրութի ինձ արարի։ Զանասունս անբանս տուր նմա, բայց զմարդն ազատեա։ Տայ զխոտորն յերկրին գերդեսացոց, և գնեաց զագարակն հանդերձ գանձուն՝ փրկել յաշխատութէ դիւին։ Խոզք և էշք և ջուլք և ածիւծք ոչ տան փառս այնմ՝ որ ունի զնոսա. մարդ մեծամեծ տայ, զի ելքն նորա ոչ են յապականելի կերակրոց, այլ յերկնային գանձուցն։

Սա է գանձն, սա է ագարակն. վաճառականն է Հայր, միջնորդ Քս. մատեաւ իբրև օտար, գնեաց իբրև վաճառական, իբրև զտէր համարձակեցաւ։ Նա և Հայր մի են ածութբն։ Համարձակեցաւ բռնութբ, առմամբն միջնորդեաց, գործովն գնեաց, զօրութբ յաղթեաց էառ զագարակն. ոչ գիտէր բռնաւորն՝ թէ զգանձն ընդ նմին վաճառեաց։ Էառ ըզծառայն զմարդն. ոչ գիտէր թշնամին թէ զձեռականն նորա ընդ նմին վաճառեսցէ. կալաւ իշխանութբ զմարդն Քս, և շրջափակելով զծառային էառ յինքն։ Ամենայն անբանք ծառայէին Ադամայ. կար-

ծէր Թշնամին առեալ զայն՝ հաւասար Ադամայ մար-դոյն ունել զայն : Խմբեանք միաբանելով գնացին ընդ-տեառն վաճառեալքն զբնական տէրութիւն ծանու-ցեալք : Կորոյս բռնաւորն զմարդն և զանբանսն . զի մարդն 'ի ձեռն յօժարութեան զայս ամենայն ա̃յ առ-ընթեր կացոյց . վասն այնր՝ որ զամենայն հեթանոսս հանդերձ Իսրայէլիւ 'ի վախճան ժամանակացս ստա-ցաւ :

Գնեաց զագարակն Ք̃ս՝ 'ի վերայ խաչին տուեալ զարիւնն 'ի գին . 'ի վայելչութիւն եմուտ յարութեամբն հանել զայնոսիկ՝ որ բռնաւորին էին : Ագարակն էր ամենայն երկիր , և գանձն որ 'ի նմա թագուցեալ էին՝ սուրբքն : Էառ զերանելի ստացուածն . յորժամ կամի , առնու զթագուցեալսն գանձ : Ի բնակութիւն եմուտ կենդանեաց . ընդ իւքեան էառ և զչերևելի մեռեալսն . եթող առ ժամ մի չառնուլ զգանձն , զի առցէ 'ի յարութեան : Գնեաց ինքն պահանորդս կար-գեալ գանձուցն , և զաւառապետս ագարակին . զի յորժամ հրամայեսցէ , զգանձն 'ի ձեռն յարութեան առաջի կացուսցէ թագաւորին : Գանձն 'ի խեցեղէն ամանի դնի , զի ագարակն բրտին է խանութ : Ասաց ա̃ծ ցմարգարէն . մուտ յագարակն բրտին : Ո՞ր բըր-տի . ա̃յ : Նա է որ առնէ յագարակէս զյարութիւն : Մինչև 'ի կատարած կաւագործէ զագարակն 'ի մարդ-կեղէն մարմինս . յետ կատարածին խեցեցուցանէ զա-մանս , սրբոցն՝ 'ի ձեռն շնորհին , իսկ զմեղաւորացն՝ 'ի ձեռն գեհենին :

Մարգարիտս աւասիկ եղև . քանզի ոչ յագարակին բրեալ գտանի մարգարիտս , այլ 'ի վաճառականէն : Առակաւ նա է պտուղ խաչին . վասն այնորիկ նա միայն է յարուցեալ , և զի միայն է գնելըն . ոչ յետ մահուանն է գնել զմարգարիտն , զի խաչիւն զբռնա-ւորն բռնադատեաց , յաղթեաց և առաւ սպառազի-նութիւն , և ապա կողոպտեաց : Ասէ տէր . “Իշխա-նութի ունիմ դնել զանձն իմ , և առնուլ զնա„ . վա-սըն զի իշխանութի ունէր մահու , և յառաջ քան զմե-ռանելն կարծելի եղև ունել մարգարիտն . և այն-պէս ոչ 'ի թշնամոյն , այլ 'ի բնութենէն : Եւ մինչ եր-կրիս տուրևառք եղեն , վարձք միջնորդին եղև մար-

գարխան ։ Քանզի յիմար տէրն չգիտէր զոր արհամարհէրն ․ եառ Քո զվարձն եւ զագարակն եւ զգիւղն ագարակին ․ զի հետեւեաց բնութեան անբան այնմիկ՝ որ 'ի սկզբանէ առաջնորդէր ։ Ունի զիշխանութիւն կենդանեաց յագարակին, զտէրութիւն մտաւելոցն 'ի գանձուն, զառումն 'ի մարգարտին՝ միաբանելով զգրաւականն զշնորհս սուրբ Հոգւոյն, որ էօծ զմարմինն տեառն 'ի վերայ բռնաւորին ձգնութեան ։ Սա է միջնորդ, եւ սմա եւս Հայրն պատիւ յաղթողին 'ի վերուստ ։ Եւ 'ի սկըզբանէ 'ի վերայ հաւցուք ատացելոցս, եւ 'ի գլխում ատատցուք զամենայն որպէս արժանն է ։ Զհայրն՝ մըշակ, արարիչ, վաճառական, բրուտ, միջնորդ, փոխատու, համոզակեր եւ առատ պարգեւատու բանն անուանեաց ։ Մեծ է տէր, արդարեւ տեառն բանս երկուք բանիւք շրջափակեալք զայնչափ զխորութիւն զօրութեան ։

Նողիցի մարգարիտ աւետարանն ։ Ունիմ ցուցանել հայր՝ որ ոչ ծնաւ ։ Արու արմաւենեացն հովանի աբարեալ իգիցն՝ պտղաբեր առնէն զնոսա, ոչ խառնակելով ընդ նոսա, եւ ոչ գոյութիւն ինչ տալով նոցա ։ Եւ 'ի Թզենեացն են որ բերեն պտուղ, եւ որք զնոյն ոչ ընկալեալ զատուեր զարուի զպտեմնիցն՝ դոյնպէս եւ լինին ։ Որպէս եւ սոքա ոչ ծնանելով հարք անուանին, նոյնպէս եւ Յովսէփ անուանի հայր ․ այր կուսին անուանի, ոչ եղեալ ։ Ի տապանակին ա̃ծ արգելեալ լինէր ․ զի եւ ա̃ծ 'ի ձեռն կուսին եկն յաշխարհս ։ Որպէս տապանակն յայլազգեացն գերեցաւ, եւ անդ անարգութեամբ կարգեցաւ անգանել, նոյնպէս եւ ա̃ծ Բանն անչարչարելի [1] գոլով 'ի ձեռն առմանն խաչի նուաւ ։ Եւ որպէս 'ի մէջ այլազգեացն տապանակն զԴագոն քակտեաց, նոյնպէս եւ Քո խաչիւն բռնաւորն կուռին յաղթեաց, եւ զհայհոյիչսն խորտակեաց ։ Անկոփ քարամբք շինեցաւ տաճարն, եւ ոչ եղեւ ձայն երկաթոյ ․ նոյնպէս եւ առ Մարիամու ոչ հայր ոք հարկատրեաց, այլ կոյս ինքնածին, առումն 'ի բնութենէս մերմէ ։ Եթէ ոչ եղեւ տուննն առանց երկաթոյն շինեալ 'ի հարկատրութիւն ա̃յ, եւ Քո լուր կերպարանօք

1 Յօրինակին անչարչարելի ։

եկն ։ Ապա թէ դեռ ևս հիմունք կան, մի յամառիք՝ այլ հաւատացէք ։

Նա մեռանել յանձն առնուլ վասն այսր հաւատոյս. վասն Քրիստոսի նովաւ մեռանել կամիմ, զի համարձակութիւն ունիմ՝ ի Քրիստոսէ ։ Ինև երկնչիմ, նովաւ քաջալերիմ. Ինև փախչիմ, նովաւ հաստատիմ. Ինև ամաչեմ, նովաւ համարձակութիւն ունիմ ։ Նա է մարգարիտն, ես կաւ. Նա է գանձ, ես մոխիր. Նա կեանք, ես մահ. Նա արդար, ես մեղաւոր. Նա Ճշմարիտ, ես սուտ. Վասն սիրոյ ընդունայն կամովք զՃշմարտութիւն մերժեցի ։ Նա ետ ինձ զմտութիւն ուղեղ, ես ՚ի ձեռն աւխտից աղտեղացուցի զսա. Նա ինձ կամս բանականս ետ, ես պակասեցի յարահիւսեալ ընդ մեղս. Նա է որ էջ ՚ի ծովն և բազում փորձուք զմարգարիտն ՚ի վեր եհան ։ Ընդ նմա էր աստուածութիւն ՚ի փորձութեան, և ընդ ինքեան եհան զառումն յերկրէ յերկինս ։ Նա է որ շատն բերեաց յագարակին, և աշխատեցաւ ՚ի խաչին, զի իբրև ՚ի թագաւորէ ՚ի գերեզմանէ զգանձն սրբոց իւրացէ ։ Աշխատեսցուք և մեք, զի հաղորդեսցուք վաճառականութեան նորա. որում նմա փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

արդարութեան Թշնամանք պատուեցելումն : Յաղագս որոց ասէ ցնա . "Թէ ուղիղ պատարագես, բայց ուղիղ ոչ բաժանես՝ մեղար, դադարեա ,, : Փոփոխեցաւ պտուղն իբրև զգինի , և եղև քացախ . վասն այսորիկ ոչ պտուղ արդարութեան , այլ անիրաւութեան համարեցաւ :

Ունիմ քեզ և միւս ևս պտուղ արդարութեան անպտուղ ցուցանել . ոչ յաղագս սնափառութեան և ոչ վասն արհամարհանաց , այլ զանազան դատողութեան աղագաւ : Եւ որ քարոզացն մշակեցին , որդիքն Ահարոնի , որ մատուցին զհուրն օտար այնմ՝ որ պատուիրեացն երկնայինն հրոյն ծախել զողջակէզսն : Եւ արդ զի՞նչ , ո՞չ ապաքէն և հուրս այս նորա է գործ , և փոյթն ո՞չ ընտանեգոյն էր պաշտօնէից նորա . սակայն մեռան՝ անզանազան դատողութեամբ գայթագղեալք : Եւ որդիքն Ողիայ 'ի թիւրել տապանակին կամեցան ուղղել , վախճանեցան . և նոքա զպտուղն բարեպաշտութեան դարձուցին 'ի ցասումն . վասն զի ոչ էին քահանայք՝ յանդգնեցան մերձենալ 'ի տապանակին այ : Եւ միւս ևս մշակ Ողիա թագաւոր՝ 'ի զոհելն բորոտեցաւ . քանզի ասէ և Մովսէս . "Ամենայն որ մերձենայ 'ի զոհել տեառն, և ոչ իցէ յորդոցն Ահարոնի , սատակեսցի ,, : Եւ միւս ևս այլ ունի իմն յառաւել խնդիր . զի թէ ոչ խորանին սպասաւորել հրամայեցաւ ումեք՝ բայց ղևտացոց ազգին , զիա՞րդ Դաւիթ 'ի սաղմոսել սպասաւորէր , զոր օրինադիրն ոչ ասաց : Ոչ բազում ինչ է բանս յաղագս այդորիկ , այլ յոյժ կարճառօտ . քանզի ոչ նա 'ի տաճարին սպասաւորեաց , այլ իբրև զգառինս և կամ զզուարակ զսաղմոսն 'ի ձեռն ղևտացոցն՝ այ նուիրէր : Եւ թողացեալ էր ամենայն բազմութեան պատարագել նուէրս . իսկ քահանայելն անմերձելի էր : Ոչ մատոյց 'ի խորանին երաժշտականութբ , այլ գտանելով զնուագն և զզանազանութիւն . նմանեաց՝ որոց էր յարմարագոյն սպասաւորելն՝ զիւր զածային զփոյթն ընձեռելով : Էր և շնորհ մարգարէութեան 'ի նմա , զի մի մարդկային համարեսցուք զիմաստութիւն : Եւ արդ եթէ նա հանդերձ շնորհիւն այ խօսէր ըզսաղմոսն , և ոչ համարձակեցաւ 'ի խորանին ճռխա-

քանել, որք առանց շնորհին զայն գործեցին՝ ոչ սակաւ ինչ անիրաւեցան:

Սկսիմ և այլ օրինակ պտղոց արդարութեան ցուցանել՝ որ ոչ իցէ պտուղ: Սաւուղ ամաղէկացոցն ողորմելով ամբարշտեցաւ, և Աքայաբ դամասկացոց թագաւորին. ընդէ՞ր. վասն զի չարեացն կեանք ջիլք չարութեան լինին: Զի թէ յաղագս իսրայէլացոցն ասէր օրինադիրն, "Բարձէք զչարն 'ի ձէնջ", վասն այլազգեացն որչափ ևս առաւել օգտակարագոյն էր: Ասէ Առաքեալ. "Մի՛ ոք արմատ դառնութեան 'ի վեր բուսեալ նեղիցէ, և նովաւ պղծին բազումք": Եթէ պտուղ արդարութեան է անպտուղ, այն բան է՝ որ յընդհանրական թուղթն ընթերցեալ լինի, եթէ են ոմանք ծառք աշնանայք, անպտուղք, կրկնամեռք, արմատաքի խլեալք, աստեղք մոլորակք՝ որոց մութք խաւարին պահի: Գտաք և զնիւթ աննիւթ գործոցն. զի յայտնապէս ծանիցուք՝ թէ և իմանալի գործք այրին: Ծառք աշնանայք են սուտ անուանեալքն. վասն զի կարծեցուցանիցեն թէ իցեն արդարք, ամենևին էին անիրաւք: Եւ ընդէ՞ր աշնանայք. վասն զի ոչ ամարանից օրհնութիւս ժամանակին ընձայեն զպտուղս, այլ 'ի տարաժամու 'ի վերայ անկանելով ճշմարտութեանն՝ գայթագղութիս առնեն 'ի բաց բառնալոյն:

Եւ ո՞վ ոք յա՛ծային գիրս եղև այնպիսի ոք. Սափիրա և Անանիաս, որք գողանալով զնուէրսն՝ զինքեանց պտուղ բարեպաշտութեան տարաժամ պատարագեալ կարծէին: Նոքա են որ կրկին մեռան. և յաստի կենացս 'ի բաց բարձան, և 'ի հանդերձելոցն զրկեցան: Եւ զիա՞րդ իցեն աստեղք մոլորեալք. վասն զի բանիւ բարեպաշտութեան զբարեպաշտութիւն ժանտացուցին: Ոչ զմոլորակ աստեղսն բամբասէ, այլ զնշանաւորութիւն նոցա յանդիմանէ. որք ըստ իւրեանց կամացն վարեցան՝ նմանեցոյց. վասն զի որպէս նոքա քան զայլ աստեղսն են նշանաւորք: Նոյնպիսի ոմն էր և մատնիչն Յուդա. բանիւ աղքատացն յանդիմանութիւն 'ի վերայ ածէր աւելորդածախիցն, զի ընդունիցի փառս 'ի մարդկանէ բարեպաշտութեան: Այլ և նա կրկին մեռաւ. աստ խեղդամահ եղեալ, և անդ-

'ի խաւար մղեալ՝ յաւիտենական խորխորատն անկաւ։ Եւ սուտ առաքեալքն այնպիսիք ոմանք էին. քանզի կարծելով նեղութիւս 'ի վերայ բերել առաքելոցն, ստեղծականս իմն ախտանային երկեղածութի։ Եւ վասն զի աշակերտաց իւրոց ասաց տէրն՝ եթէ "Դուք էք լոյս աշխարհի", ձեպեցան և նոքա այնպիսի լուսաւոր գործով մոլորեցուցանել զբազումս. վասն այնորիկ և ստեղծական էր լոյսն։ Աստեղք մոլորակք՝ յաղագս երևելի պատճառին, և կարծեցուցանելոյն առ յոլովս ունել ինչ բարեպաշտութեան կերպարանս։ Մեկնէ և զայս Պաւղոս ասելով. "Ոչ ինչ են զարմանք՝ թէ և սատանայ կերպարանի 'ի հրեշտակ լուսոյ, զի և պաշտաւորք նորա կերպարանին իբրև զպաշտաւորս արդարութեան"։

Եւ ընդէ՞ր ծառք արմատաքի խլեալք, ասէ։ Զի և ապաշխարանաց տեղի նոցա ոչ գտանի։ Ասէ ընդպատճառ սխալելոցն աւետարանին. "Արդէն փայտատ առ արմին ծառոյ դնի. ամենայն ծառ որ ոչ առնէ պտուղ բարի, հատանի և 'ի հուր այրի"։ Իսկ սաղմոսն ասէ. "Խլեսցէ զքեզ և փոխաբնակեցուսցէ 'ի խորանէ, և զարմատս քո յերկրէն կենդանեաց"։ Հայեաց 'ի միտս և 'ի կերպարանելոց սպասաւորաց արդարութեանն. իմանաս՝ զխարդ պարկեշտութի և ողորմութիւն այրի հանդերձեալ հրոյն։ Քանզի առաքեալք թէ ձևանային լինել նոքա, յայտ է՝ թէ յամենայն առաքինութիւս ձեռն արկանէին; զի ընդ փառս առաքելոցն ընդունիցին։ Թէ ուրուք գործն այրեսցի տուժեսցի, բայց ինքն ապրեսցի. սակայն այնպէս իբրև 'ի հրոյ.

Կամիմ զհրոյն տեսանել զգործ զինչ ոք իցէ, զի և զպարկեշտութի այրէ և զողորմութիւն և զժուժկալութիւն. այրիցէ՞ արդեօք և զանիրաւութիւն և զամբարշտութիւն, եթէ յայնոսիկ այն ինչ իցէ արդեօք զօրութի որ զնոսայն ծախիցէ։ Հուրն այն ոչ է զգալի, այլ իմանալի։ Ասաց և Մովսէս՝ թէ "Ա̅ծ հուր է ծախող"։ Այլ ա̅ծ և հոգի է, ապա ուրեմն և հուր, հուր հոգևոր։ Զի եթէ էր ասացեալ յաղագս զգալոյ, ոչ ինչ էր թերևս քան զարեգակն լուսաւորագոյն. և եթէ վասն անքաւի էր ասացեալ, ոչ ինչ

քան զարփոյ հուր առատագոյն էր ։ Ցաղագս անմարմնոյ հրոյ ասէ, և իմանալի տեսանելոյ. զոր և 'ի սաղմոսն ասէ. «Հուր առաջի նորա գնասցէ, և այրեսցէ շուրջ զթշնամիս նորա»։ Լսեմ և զշղթայս խաւարայինս, և հրեշտակս կապեալս անիրաւ. ապա և զստեղծական մոլար աստեղսն խաւարի մատնէ ա̃ծ, թուի ինձ՝ թէ այն իցէ խաւարն արտաքին ։ Քանզի թէ զապստամբ հրեշտակք թշնամիք ա̃յ գտանեմք, և զխաւար նոցա իմանալի. վասն զի խաւարային շղթայիւք կապեցան ։ Քանզի և ոչ իսկ առնէ ոք 'ի խաւարէ շղթայս, թէ ոչ ա̃ծ ։ Եւ թէ հրով տոչորէ զթշնամիս իւր, հոգի է սատանայ և դևք. գտանեմք զհուրն հոգոյ՝ գործով և զօրութ̃բ զհոգիսն տանջեալ ։ Ա̃ծային հրոյն նմանեցաւ հուրն այն, զորմէ և Առաքեալ ասաց. որ գիտութի̃ ունի, և ոչ այրէ զփրկելիսն ։ Զգալի հուրն և զառաքեալսն և զվկայսն այրէր իբրև զամբարիշտսն. և այնպէս այրէ զամենայն իբրև զփայտեղէն նիւթ ։ Ոչ է տեղի իմանալի հրոյն, և ոչ ոք ծնանի զնա, որպէս հուր 'ի յանդղոց, կամ գինի յայգոյ ։

Լուր և Եզեկիէլի որ ասէն, թէ քերովբէք բազմաթևեանք զբոլոր մարմինս ունէին աչօք լցեալք, որոց բազմազան իմն է գիտութիւն. ինքեանք իսկ գիտեն զթշնամիսն ա̃յ, և բոցակիզեն զօրաւոր բնութ̃բն ։ Որպէս 'ի մարմնականսն հզօրն տկարին յաղթէ, նոյնպէս և քերովբէքն այնոքիկ առաւել ունելով զօրութի̃՝ բնական զօրութ̃բն բոցակիզեն զնոցա զօրութիւն, այրելով 'ի ձեռն իմանալի տապոյն. որպիսի ինչ լինի 'ի սրտմտութ̃է և թմբելոցն ։ Ապա ուրեմն բարկութի̃ ա̃յ հուր է, և քերովբէք անհաշտ սրտմտութ̃բն՝ ա̃յ կենդանիք են հանդերձ երանելի հանդարտութ̃բ բարկացեալք ։ Քանզի երկրաւորացս սրտմտութիւն անգիտութ̃բ գործէ. վասն որոյ ոչ գիտէ իսկ որ առնէն, և ոչ որ կրէն. վասն այնորիկ խռովական իմն է և անբան ։ Իսկ իմանալի բարկութիւն երանելի է, զի զամենայն ինչ առնէ գիտութ̃բ ։ Արդ յորժամ լսես մարգարէին որ ասէ «Տէր մի՛ սրտմտութ̃բ քով յանդիմաներ զիս, և մի՛ բարկութ̃բ քոյ խրատեր զիս», իմա զծանրութի̃ դատաստանի նորա հատու-

ցանել, որ լինի յարարչական զօրութենէն յոյնմանէ։

Կամիս՝ թէ զիմանալի խաւարն ատեսցուք, զա՟յ 'ի բաց դարձումն, զամենեւին չարագոյնն, և զբոլորովին դատապարտողն. քանզի պարտի և նա իմանալի ի՟մն լինել առ 'ի կարելոյ զհրեշտակացն զոգիսն կապել առաւելագոյն բնական մասամբն։ Լսեմք և Պաւղոսի որ ասէն, եթէ քերովբէին և եթէ սերովբէին և եթէ այլ ինչ անուանեալ է անուն յերկնի կամ յերկրի։ Եւ իմանամք այլ ի՟մն ա՟ծային հոգով քան զառաջեալսն յա՟ծային գիրս։ Զի թէ ոչ էին նորա գործքն, ոչ արդեօք տանջեալ լինէին կամ պատժեալք։ Ցոլովս ունին թագաւորք տանջանարանս. նոյնպէս և ա՟ծ զանազան պատիժս կազմեաց յառաջգիտութե՟ն։ Նախ քան զչարութի՟ն զ'ի բաց բարձմանն նոցա գործեաց, և յառաջ քան զմեղաւորսն զտանջանարանսն հաստատեաց։ Արար մարմնաւորաց զգալի տանջանարանս. յաղագս որոյ և ասէ. "Երթայք 'ի խաւարն արտաքին, զոր պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նորա"։

Ի և խաւար զգալի. "Անդ եղիցի, ասէ, լալ և կրճել ատամանց"։ Է և հուր իմանալի. քանզի ասէ՝ թէ և զոգիսն կարէ ա՟ծ սպանանել ուժով տանջող զօրութե՟ն։ Գեհեննին հրոյն զգալի հուր է. քանզի յայտ է՝ թէ մարմնոյ պատրաստեցաւ։ Իսկ յորժամ ասիցէ Քս՟՝ եթէ "Զոգին և զմարմինն ա՟ծ կարէ չարչարել", իմա՝ թէ երկոցունց զերկոսեան 'ի մի վայր ածելով 'ի միասին առնէ զտանջանսն։ Եւ յաւիտենական մարմինն տանջի. վասն զի խառն լինին պատիժքն և զօրութի՟ իմանալոյ. զգալոյն՝ զգալի առնէ մշտնջենաւոր. նոյնպէս և ոգին զգայ մարմնական այրմանն, զի 'ի ձեռն մարմնոյն ընդունի զցաւսն։ Նախ քան զմարդն առնել՝ զաշխարհ նորա արար. նոյնպէս և յառաջ քան զկատարելութիւն մեղացն՝ դատաստանն զգալիք և իմանալիք կազմեցան 'ի չարութե՟ կորուստ։ Ո՞չ լսես նախանձաւորին Եղիայի, զի բարեպաշտաբար զայրանայր հակառակ ամբարշտացն։ Զմտաւ ած զա՟ծային և զիմանալի արարածս. զի նախանձին զօրաւոր դատաստանն հակառակ ամբարշտացն բերելով։ Մի՞ կարծեր թէ բնութի՟ տքքա

մականս առնէ ա̄ծ. այլ իմա՝ զի և այնոքիկ 'ի ձեռն առաքինութեանն յարմարեալ լինին՝ որք ունին: Զոր օրինակ Թագք և պատիւք միաբանեալ են ընդ լաւ շնորհացն, նոյնպէս և դատաստանք սրբոցն այնոցիկ ոգոցն:

Ուսուցի ինձ՝ Թէ գիտացաք Թէ որպէս իմանալի հուրն զմնափառ պարկեշտութիւն այրել կարէ: Պաւղոս առաքեալ յայտնիկ զմեզ ած ասելովն. "Թէ ուրուք գործն այրեսցի տուժեսցի, բայց ինքն ապրեսցէ. այլ այնպէս, որպէս 'ի հրոյ": Եկայք 'ի կարգիս տեսցուք որք իցեն՝ որք տուգանեաց համբերեն: Դարձեալ նոյն ինքն Առաքեալ մեզ ասէ, Թէ շինող ոմն է՝ որ տուգանին. "Քանզի իբրև իմաստուն ճարտարապետ հիմն եդի, ասէ. իւրաքանչիւր ոք տեսցէ զիարդ շինէ 'ի վերայ հիմանն այնորիկ": ԵԹէ յիշես զառաջին ասացեալսն մեր, գիտես զի 'ի քարանց մեզ բանս հարսն եբեր: Վասն զի զքարն զոր անարգեցին շինողքն՝ նա եղև գլուխ անկեանն: Իմացեալ եղև մեզ՝ եԹէ քարն է առաքինի կենացս շինուԹիւն: Ամենեցուն լեալ աւարտ ցուցաւ կատարեալ համբերուԹիւն: Դարձեալ Թէ պարտ է՝ ընդ իմանալի քարինս անցցուք, զի ուսանիցիմք Թէ 'ի ձեռն որոց առաքինուԹեանց եկեղեցի ա̄յ հաստատեցաւ:

Ամենայն առաքինուԹիւք իբրև 'ի վիմէ քարինք 'ի Քրիստոսէ 'ի մեզ յառաջ բերեալք լինէին. և վասն այնորիկ ասէ. "Վէմն է Քրիստոս". և դարձեալ ասէ. "Հիմն այլ ոք ոչ կարէ դնել քան զեդեալն՝ որ է Քրիստոս": Իսկ Պետրոսի ինքն ասէ. "Դու ես վէմ, և 'ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ": Նա ինքն է վէմ, յորոյ վերայ շինեաց Քրիստոս զեկեղեցի. նա է վէմ, որ քարինս յինքեանէ արկանէ. քանզի զնա մեզ Հայր ետ փրկիչ և վարդապետ: Ասէ ինքն Քրիստոս. "Կոչէք զիս տէր և վարդապետ, և բարիոք առնէք, քանզի և եմ իսկ": Զի՞նչ ասէ և Պետրոս. "Քրիստոս չարչարեցաւ վասն մեր, և եԹող մեզ օրինակ, զի զհետոցն նորա գնասցուք": Ասէ և մարգարէն. "Քարինք սուրբք հոլովին 'ի վերայ երկրի": Եւ ո՞յք են նոքա. եԹէ ոչ աւանդք [1] եկեղեցոյ, ան-

1 Յօրինակին ատանք:

դամք հարսինն, արքայութ՟ե երկնից հաստատուն․ և յայսոսիկ շինողքն աշխատին։ Վասն որոյ և ասէ իսկ Պաւղոս․ "Ի վերայ երկրի զինուորիմք, և յերկինս զառաքինութ՟ի ունիմք․ քանզի տաճար ա՟յ է, ասէ, գիտութ՟բ և աճելով՝ի բնակութիւն սուրբ տեառն․ իւրաքանչիւր ոք տեսցէ զիարդ շինեսցէ 'ի վերայ հիմանն այնորիկ․ եթէ ոք շինէ ոսկի, արծաթ, քարինս պատուականս, փայտ, ցողուն, օրն փորձեսցէ․ քանզի հրով յայտնելոց է"։ Արդ շինողքն՝ վարդապետք, ոսկի և արծաթ՝ երկնային աւանդութիքն են, իսկ փայտ և ցողուն՝ երկրաւոր իրքս են։ Եւ թէ ոք, ասէ, յաղագս ընչից ուսուցանէ զճշմարտութիւնն և զՔրիստոս քարոզէ՝ զի վայելեսցէ յերկրաւորս, և զյոլովս ուղղակի խրատելով ածցէ յեկեղեցին՝ տուժեսցի, այլ իմաստուն հրովն ապրեսցի, վասն զի զղջացուցանէ զնա խղճիւն յապաշաւանս։ Հուրն է խայթոցք ապաշխարութ՟ե, քանզի շնորհքն իսկ յանդիմանեն զխեղճ մտացն․ ապա ուրեմն հուր իմանալի այլ իմն է։ Թող զասացեալ ա՟ծային, ասէ և մարգարէն՝ թէ "Եղև ինձ բան տեառն իբրև զհուր յամենայն անդամս իմ, և լքեալ լինէի ամենայն ուստեք, և ոչ կարէի բերել"։ Այսու օրինակաւ ասէ և Առաքեալ․ "Թէ ուրուք գործն այրեսցի՝ տուժեսցի, բայց ինքն ապրեսցի․ այլ այնպէս, իբրև 'ի հրոյ"։

Իսկ եթէ ոչ հուրն այն վառեսցի, զյանցուցեալ վարդապետն այրել ոչ կարասցէ․ եթէ ոչ հուրն այն զղջացուսցէ զմեղուցեալ շինողն, ոչ մտցէ յարքայութի՟ն երկնից։ Ասէ և Յակոբոս՝ թէ 'ի վտանգի են վարդապետք, յաղագս անտեսանելեացն խօսելով։ Վասն այնորիկ և Պաւղոս ընձեռէ նոցա պատսպարան առ 'ի յուղղութ՟իս զա՟ծային հրոյն զօգնականութ՟ի, որ 'ի բաց դնիցեն զլեալ վատթարութ՟ե զբանս։ Ոչ այնպէս խորք ծովուց ապշեցուցանեն զնաւավարս, որպէս զվարդապետս երկնային աւանդութիքն, և անտեսանելեացն անյայտութիք․ և ոչ այնպէս ծովու ալեկոծութիք հարկանեն նաւուղղին յուղղընթաց ճանապարհէն, որպէս վարդապետաց բանութ՟ի ուսողացն զանազան յուժարութիքն։ Թերևս կարծիցես արդեօք անվտանգ ինչ յաղագս երկնայնոցն վար-

դապետել ։ Թէ նոյնպէս իցէ 'ի տուրնջեան գնալ և 'ի գիշերի, նոյնպէս լինի յաղագս երևելեացն և աներևութիցն վարդապետել ։ Թէ նոյնպէս իցէ օտարին և քաղաքայնոյն գիտել զճանապարհս քաղաքին, նոյնպէս լինի և յաղագս անտեսանելեացն ճառել և ընդ երևելիսս անցանել բանիւ ։ Ուղղելոյն ասէ, Թէ որ 'ի ձեռան է՝ հազիւ ոք կարասցէ գիտել, և որպէս արդիւք որ գեր 'ի վերոյ է քան զաշխարհս՝ պատմելով առանց վտանգի անցանիցեմք դիւրաւ ։ Ո՞չ հաւատաս Թէ խորք են այ աւանդութիւքն. լուր զինչ ասէ սաղմոսն. "Իրաւունք քո խորք բազումք"։ Եթէ իցէ առանց ալէկոծութեց անցանել ընդ անդունդս ծովու, և ընդ խորս գիտութե վարդապետաց առանց վտանգից անցանել ։ Ասէ և անօթն ընտրութե. "Ո՛վ խորք իմաստութե և գիտութեն այ. որպէս անքննելիք են դատաստանք նորա, և անհետազօտելիք ճանապարհք նորա"։ Տեսեր ուրեք՝ որ ըղմարգարիտն Թէ կարիցեն յանդունդս ջրոցն իջանելով անխափան տեսանելով, բամբասեա յայնժամ և որք յաղագս երկնաւորացն վարդապետեն, եԹէ յաղագս իրիք ոչ յայտնապէս պատասխանի տայցեն ։ Գեղեցկապէս ուրեմն զհուրն ետ նոցա 'ի յանդիմանութի սխալմանցն, և 'ի փրկութի պատասխանեաց յաղագս այ ։

Հուր 'ի մեզ իմանալի գիտութիւն է. բայց ես միանգամայն պարզաբար զնոյն ինքն զմիտս մեր անուանեմ ։ Ապա հուր ուրեմն՝ որով փրկին յանցուցեալ վարդապետքդ՝ այ գիտութիւն է ։ Յաղագս որոյ ասէ Առաքեալ. "Ո՞ գիտաց զմիտս տեառն, կամ ո՞ խորհրրդակից եղև նորա"։ Այն հուր յանդիմանէ զմեր հուրս, եթէ ոչ գեղեցկապէս գործեաց երբէք 'ի վարդապետութե հարսինն Քրիստոսի եկեղեցոյն ։ Այլ ահա այնոքիկ միտք պատկառեցուցանեն զմեր միտքս ։ Ցորժամ խոտ և փայտ 'ի վերայ աւետարանին շինիցէ, քաջայայտ է Թէ առժամանակեայ կենօքս է վայելչացեալ ։ Զայս զայ Հոգին գիտէ Առաքեալ ասելով. "Ոչ ոք գիտէ զայսն, եթէ ոչ Հոգին այ. քանզի Հոգին, ասէ, քննէ զխորս այ"։ Յաղագս որոյ և ասէ. "Ո՛վ խորք մեծութեան և իմաս-

տութեն գիտութեն այ ,,: Եւ զի հուր է գիտութի Հոգոյն սրբոյ մտացն այ, յիմներեկին երեւեցաւ հրեղէն լեզուօք առաքելոցն . և զի ոչ էր զգալի, նստաւ 'ի վերայ իւրաքանչիւր ուրուք առաքելոցն , և ոչ բոցակիզեաց զնոսա և ոչ դուժնաքեայ ինչ : Ապա ուրեմն այսու օրինակաւ ասէ . "Ած մեր հուր ծախիչ է ,,. իմա զի այրելն ծախել է : Եւ զիարդ այրէ ըզխոտն և զփայտն , քաջայայտ է թէ ոչ սգայաբար , այլ իմաստութք :

Նաեւ զի՞նչ իցէ արդեօք այրումն . եթէ ոչ 'ի բաց անկումն , որ ինչ անարժանն՝ իցէ այ վարդապետութեն : Քանզի 'ի բաց անկումն զկորուստ նշանակէ . որպէս և 'ի զգալի հրոյս յայրմանէ . վասն զի 'ի բաց դարձուցանէ ած զերեսս իւր , և վաղվաղակի միտք վարդապետին խռովեալ դառնայ յինքեան բամբասանս յանդիմանեալ, և դիմէ յուղղութիւն՝ զվերստին զերգմն ողջունելով . և զի մի խոտ շինիցէ , այլ ոսկի : Յաղագս որոյ յիրաւի ասէ Առաքեալ . "Այլ այնպէս ապրեսցի , ասէ , որպէս 'ի հրոյ ,,: Եւ եթէ հաւանեալ յօժարեսցիս զի խոտն զառժամանակեայս զեկուցանէ , լուր Եսայեայ որ ասէ . "Ամենայն մարմին խոտ է . և զի խոտ է , և ամենայն փառք մարդոյ իբրև զծաղիկ խոտոյ . Թափեցաւ խոտն , և անկաւ ծաղիկըն , և բան տեառն մնայ յաւիտեան ,, :

Արդ եթէ միտք այ հուր գոլ ցուցան , և 'ի մեզ հուր իմանալի միտքս մեր են : Եւ թէ գիտութիւն է 'ի միտսն , գեղեցկապէս զմիտսն տէրն լոյս անուանեաց ասելովն . "Ճրագ մարմնոյ ակն իւր . եթէ ակն քո առատ է , ամենայն մարմինդ լուսաւոր եղիցի . և եթէ խաւարին է , եղիցի ամենայնն խաւարին ,,: Նոյնպէս յորժամ ասէ , "Ոչ ոք լուցանէ ճրագ և դնէ ընդ գրուանաւ ,,, յաղագս մտացն ասէ՝ թէ մեղաւորք անօրէնութեամբն խաւարեցուցանեն զնա : Գիտէ և Զաքիաս զչափ գրուանին տեղի լեալ անօրէնութե : Քանզի ոչ եթէ բնութիւք կորուսանեն զմիտսն ոչ լինելով ճրագ , այլ 'ի ձեռն անօրէնութեն ծածկին : Ի մեղաւորսն չարիք լեալ՝ կարծեցուցանեն լոյս է , վասն զի միտք բնութի են գիտութե . բայց ոչ է յայ 'ի բնութենէն . յաղագս որոյ խաւարանան և խոտո-

րէն և մոլորին բազում անգամ ։ Բնութիւն ա՟յ անեղ է . ահա յայտ է՝ թէ գիտութիւն նորա ոչ զկնի եմուտ 'ի նա, այլ իբրև յաղբերէ 'ի նմանէ յառաջ գայ ։ Մեր բնութիւս լինելի է, քաջայայտ է՝ թէ և գիտութիւս մեր . զի և ոչ անմոլար է, և ոչ բաւական առ ամենայն գիտութիւն ։

Գեղեցկապէս ուրեմն աւետարան զմիտսն ճրագ անուանեաց . քանզի կարօտանայ օգնականութեան նա, որպէս ճրագն խնամակալութեան ։ Եթէ ոչ արկանես իւղ, ճրագն շիջանի . և եթէ ոչ շնորհքն ա՟յ մտաց մերոց այց առնէ, խաւարանան և կորուսանեն զիւրեանց զգործն ։ Եւ եթէ ոչ կազմես զպատրոյգն, խստացեալ անճառագայթ լինի և աղօտանայ . և եթէ ոչ ա՟յ նախախնամութիւն ընձեռեսցէ մերում գիտութեան հաստատութիւն, խաւարային լինի և տղայպէս զանխլաբար կորուսանէ ։ Պարտ և արժան է որք կամին ունել զգեղեցկութիւնն 'ի գիտութեան Քրիստոսի՝ աւանդութիւս առնել զմտացն կրթութիւն ։ Ասէ և մարգարէն . "Լուսաւորեսցէք ձեզ զլոյս գիտութեան ". զի ցուցցէ՝ թէ 'ի մեզ է խնամակալութիւն մտաց, և գեղեցիկ նորա բնական յարձակման ։

Մի՛ պատճառեսցուք՝ եթէ կարող է Ա՟ծ տալ մեզ, և ոչ տայ . քանզի ոչ գովեմք զմարդիկ՝ թէ զանուշ իւղոյ աղբիւրս ունելով՝ 'ի տիղմ զայն ծախիցեն ։ Մի՛ առներ զմիտս քո տիղմ ախտիւք . և շնորհն Ա՟յ յայնժամ այց առնէ քեզ ։ Մի՛ լինիր իբրև զԵքոնիաս անօթ անպիտան . և իւղ Հոգւոյն յայնժամ խառնի 'ի քո յոգիդ ։ Դու ծածկես գրուանաւ զքո ճրագ, և զնա մեղադրես ։ Ընդէ՞ր միտք քո են անխնամք . վասն զի դու արգելուս 'ի նմանէ զբնական լոյսն ։ Եւ բամբասես զԱ՟ծ՝ թէ ընդէր ոչ յունայնացեալդ 'ի քեզ զգիտութիւն իւր ոչ տայ ։ Զքեզ ինքն զրկես 'ի բնական լուսոյ գիտութենէն, և զիա՞րդ այլ խնդրես՝ քոյոյն ոչ վարելով ։ Ո՞չ ապաքէն յիմար է՝ որ զիւր աղբիւրն խնու, և յաղագս օտարին վիճի . ո՞չ և յոյժ անմիտ է՝ որ ցրուէ զոր ինչ ունին զհաց, և յաղագս հացի բամբասիցէ զայն՝ որ ոչն զրկեաց զնա ։ Ի բաց առ զգրուանս, և տեսանես զի անզգաբար բամբասես զնա ։ Ցայտնես զմիտսդ, և տեղեկա-

նաս՝ զի հայհոյես մարտնչելով ընդ ա͞յ։ Մի՛ ծածկեր ընդ գրուանաւ զգիտուն քո, և իմանաս՝ թէ ով ես պատճառաք, տուողն թէ ընդունողն։ Մի՛ ախտիւն իբրև զհաւ կապարաւ 'ի վայր ձգիցես 'ի բարձրութէ զմիտսդ յերկրայինս, և ծանիցես զշնորհին զմերձաւորութիւն՝ թէ զիարդ յարժանաւորսն մնգի։

Ասէն և գիրք՝ թէ իմաստութիւն գիրկս արկանէ որք նմա սպասեն, իբրև կուսական կենակցի։ Ապա եթէ դու ոչ սպասես, անգիտանաս զերկնաւոր կենակցութիւն։ Քանզի սիրէ, ասէ, ա͞ծ որք ընդ իմաստութեան կենակից լինին. զի ուսցիս՝ եթէ դու պարտիս յառաջագոյն սպասել նմա խնամով, զի զնա ածցես քեզ 'ի կենակցութի։ Ո՛վ մեծ սքանչելեացս. փոխարէն ա͞ծ հատուցանէ մարդկան, տալով զբարեգործութիւն զանհաւատալի։ Եւ որ գեր 'ի վերոյ է քան զամենայն պատմութի, եթէ սպասեսցես իմաստութե՛ որպէս պարտ և արժան է, նոյնպէս և նա սպասեսցէ քեզ. եթէ ածցես զնա 'ի կենակցութի քեզ, դարմանակալ լեալ առ դրունս քո գտցես զնա։ Լուա՞ր երբէք զթագաւորէ՝ որ իւրում հնազանդին սպասիցէ. տեսե՞ր զտէր՝ որ զծառայի զփոքր ինչ պարտս յայժ առատութե՛ հատուցանիցէ. ուսա՞ր յումեքէ՝ եթէ ծառայի տէրն զհաւասար ծառայութեն ընձեռիցէ։ Տեսանե՞ս զզանազանութիւնն, տեսանե՞ս զառաւելութի բարութեն. զի ա͞ծ մարդկան սպասէ զառաւելութիւն ծառայութեն փոխանակելով։ Եւ ո՞չ իցէ քեզ պարտ և արժան ամենայն զօրութե՛ զերկրայինս արհամարհել։ Ա͞ծ քեզ կենակից լինի, և ո՞չ է պարտ զմարմնոյդ զբարիս 'ի բաց ընկենուլ։

Ասէ դարձեալ ինքն տէրն առ քեզ. որդեակ, տուր ինձ զքո սիրտդ։ Զի՞նչ կամիս. զսիրտս զիմ, տէր։ Ոչ 'ի պէտս իմոյ հանդստեան, այլ 'ի պէտս քոյոյ կենացդ։ Որդի զքեզ անուանեմ, վասն զի կամիմ զքեզ յերկինս փոփոխել. ախորժեմ զքեզ առ իս լինելով, և զարդարել շնորհիւն. զի մի՛ անարժան զքեզ երկինք ընդունելով՝ բռնութե համբերել վարկանիցին։ Տուր ինձ, որդեակ, զքո սիրտդ, զի քեզ առատապէս տաց զշնորհն. ընդ իմ յուժարութեան փութով դիր զքեզ ինքն, զի տեսցեն երկնայինն իմ

զօրութիւնքն՝ թէ յիւրաքի զբարեպաշտ մարդիկ ախոր-ժեմ ինձ որդիս առնել. տեսցեն հրեշտակք և հրեշ-տակապետք զիմ զարդարութիւն՝ թէ արժանապէս՝ ես որք բարեմտաբար առ իմն լինին՝ զշնորհս հո-գւոյն սրբոյ բաշխեմ: Որդեակ, տուր ինձ զքո սիրտ: Ասացեալդ՝ տուր ինձ զճրագդ, զմարդկային բնութն զմիտսդ տուր ինձ՝ ասէ, զի իւղով շնորհիւ իմով կազմեալ զնա՝ արարից մշտնջենաւոր փայլեալ լուսա-ւորեալ և լուսաւորիչ: Իմ միտքս յաւիտենականք են և անաղօտք, իսկ քոյդ նուազեալք. միաւորեա ըզ-քոյդ ընդ իմումս, և լինի աննուազ: Լոյս ունիս կա-րօտեալ լուսոյ, և հուր կարօտեալ հրոյ, և գիտութի ստացեալ ես՝ որ պէտս ունի իմումն գիտութեանս:

Իսկ եթէ. ոչ հաւատաս այ որ զայսպիսիկ ասէ, մարմ-նականօք խուզեա զասացեալս: Աչօք ունիմք, այլ առանց լուսոյ տեսանել ոչ կարեմք. քանզի եթէ ոչ արեգակն էր երևեալ, և ոչ զիրեարս մարդիկ ճա-նաչէին, և ոչ արուեստս ունէր՝ որ պիտանացուք են իւրեանց: Ըստ այսմ միտաց ասաց տէրն. «Եթէ լոյսդ որ 'ի քեզ է՝ խաւար իցէ, որչափ ևս առաւել խա-ւարն»: Եւ միտք մեր եթէ ոչ ունիցին փոխանակ արեգական զշնորհն այ երևեալ, ոչ ինչ յանտեսա-նելեացն գիտել կարէին:

Ունին և յերկրի գիտութի ինչ հեթանոսք. ու-նին և իմաստասէրք ուսմունս իմն. այլ Մովսէս քեզ ասէ՝ թէ առաջօք իմն է այն և երազ: Եւ զի՞նչ է այն առ 'ի ցոյցս. յորժամ գաւազան նորա օձ եղև, և մոգուցն գաւազանքն եղեն օձք, եկեր գաւազանն Մովսէսի զօձս մոգուցն: Նոյնպէս և գիտութիւս մեր զաշխարհիս գիտութիւս կլանելով սպանանէ: Ընդէ՞ր գաւազանն փոփոխեցաւ յօձ. վասն զի մարդկային կեանք գեղեցիկ էին 'ի դրախտին իբրև զգաւազանն. այլ յանցանելն Ադամայ եղեն դառնիք և տաժա-նելիք. ապա ուրեմն գաւազան էր Ադամայ 'ի բնա-կան կեանսն, այլ դարձաւ և եղև 'ի ձեռն յանցա-նացն չար և խնդացեալ 'ի չարիսն: Արդ եթէ գա-ւազանն զգաւազանսն եկուլ, և եթէ օձն զօձսն, եցոյց ած՝ զի և առաջին կեանքն որ ըստ առաքինու-թեան կենացն էր, զաշխարհական զօրութիւնն ապա-

կանէ. և երկրորդ կեանքս՝ որ ըստ խուրհանց կամացն կրօնաւորին, զկրկնադիւրութին արտաքս քան զսահմանս առնէ ’ի կորուստ : Բնական գիտութին զգիւական գիտութին ապականէ : Գիտութին զոր ած ետ մարդկան, կորուսանէ զկուսցն գիտութիւնն զոր սատանայ յամբարիշտսն էարկ :

Ոչ եկաց մնաց գաւազանն օձ լեալ. վասն զի վախճան ունելոց են այսորիկ դառն և տաժանելի կեանքըս : Դարձեալ օձն գաւազան եղև, զի ’ի վախճանի առնլոց եմք զառաջինն ’ի յարութեն : Ոչ զգըլխոյն զօձին կալաւ գաւազան եղելոյն, այլ զտտանէն. քանզի ոչ մարմինս են այսորիկ, այլ միշտ ’ի կատարածն, և ’ի վախճան երագ հայիցեն : Ոչ յունել Մովսիսի զգաւազանն օձ եղև, այլ յընդենուլն զնա յերկիր. վասն զի աւելորդ ինն և ընկենլիք են մնոտի մերձակայ հոգաս : Ընկեաց զնա յերկիր, զի և դու ուսցիս արհամարհել զընդունայնութին, և զի հաւատասցես թէ ամենայն բառնալոց է քո մարմինդ ’ի ձեռն յարութեն դարձեալ յերկրէ : Ոչ էառ զայն օձ, զի հաւանեսցիս՝ թէ ոչ ինչ դառն և տաժանելի ունին յարութեն կեանք : Հաւասարեա զբան բանի և զզօրութին զօրութե, և ծանիցես թէ զմեր գիտութիս ածյ գիտութին կլանէր, և ապականել կարէ, որպէս և գաւազանն Մովսէսի զեգիպտացւոցն : Այ գաւազանն զմարդկան գաւազան եկուլ, և հուր ածային գիտէ զմեր հուրս ապականել. և գաւազանն ածյ զեգիպտացոց գաւազանսն եկուլ, և գիտութին ածյ զգիտութի աշխարհիս թէ կամեսցի՝ կորուսանէ : Ծանիր և աստուստ զիարդ զիմանալի զհուրն և զիմաստութի և զժուժկալութի և զարդարուի իմաստասիրացն այրէ և կորուսանէ :

Գիտեմ և սգալի հուր որ եկեր երբեմն զերկրաւոր հուր յորժամ զսոդոմայեցիս ած բոցակիզեաց. քանզի ամենայն գաւառն լցեալ էր հրով, որպէս ամենայն երկիր : Առ քար յայլոց լերանց, և հանցես հուր ծայրատաշելով. առ և ’ի սոդոմայեցւոց յերկրէն քար, և ոչ տայ հուր ’ի բաց. քանզի ոչ ևս է կենդանի, այլ մեռեալ : Ջուրն սոդոմայեցւոց մեռեալ է՝ ’ի հրոյն վախճանեալ. քանզի ոչ ինչ է ածյ

անկարելի։ Զկունս եթէ զջուր սոդոմայեցոցն ծամեցեն՝ մեռանին, վասն զի ջուրն 'ի հրոյն տոչորեալ է. ոչ եռայ և այրէ, ոչ հատանի և ոչ խափանի և ոչ ապականի, և կենաց ինչ ոչ ունի գործ։ Ի ջրոյն սոդոմայեցոց ուսցիս՝ եթէ տակաւին երկիրն այրի. զի եթէ ապականեալ էր ջուրն մածուցեալ, և կամ սպառեալ էր, յերկուանալի էին դատաստանք երկրին այնորիկ։ Աղէկոծի ծովակն, և տարեալ սփռի. ոչ նուազէ և ոչ աճէ, և մեռեալ է 'ի վերայ երկրի յիւրում կայեանսն. յայտ է թէ անճառելի չարչարի, և կենդանութեն զգայութիւն ոչ ստանայ։ Եթէ կայր այրմամբ ծովն, ամենայն իրօք և ինքն այրէր. և եթէ զմերձեալսն տոչորէր, ոչ էր մեռեալ. վասն զի զօրանայր իբրև զկենդանի։ Ուստի զիարդ են 'ի դատաստանին տանջանքն. և մի ասեր՝ թէ փայտիւ գեհենին բորբոքի։ Թէ հանդերձեալ իցէ փայտից կարօտանալ, 'ի պակասել նիւթոյն՝ պակասեալ լինէր և նորին գործն։ Կենդանի և մեռեալ Սոդոմ. նոյնպէս և մեղաւորք 'ի դատաստանին. կենդանի՝ զի տակաւին տանջի, և մեռեալ՝ զի ոչ մի ինչ ունի զիւրոյ բնութեն գործ։ Աղ ջուր 'ի Սոդոմայ, և յիւրմէ բնութենէն պակասեալ է. նոյնպէս և ամբարիշտք ընկալցին յօժարութե դատապարտեալք, այլ ոչ ըստ իւրեանց ախորժակացն վարեսցին։ Զայսոսիկ ասեմ՝ թէ իմանալոյ հրոյ է այլ հուր իմանալի յաղթող. որպէս և 'ի Սոդոմ սգալի հուրն զնորա հուրն ապականեաց։

Իսկ արդ եթէ զմեր հուր այլ հուր ապականէ, պէտս ունի ուրեմն ածային հրոյն՝ որ զարձակումն իմանալի հրոյն 'ի բաց դարձուցանէ։ Եւ մի զի ասացի շղթայս խաւարինս լեալ՝ իմանալի կարծիցես։ Թէ և 'ի նոսա իմանալի զօրութի 'ի տարտարոսն դատիցի ածային ինչ դատաստան, այլ դատի զանիրաւսն. եթէ և դատելով դատի, դատանի դատապարտեցելոցն մերձաւոր։ Եւ եթէ յիմանալեաց անտի կապեալ իցեն, ապա ապստամբ հրեշտակք ոչ 'ի ձեռն չարաց ոմանց հոգւոց զայն կրիցեն. զի մի նմանող դատաւորաց համբերելով, բամբասանս ինչ ածային դատաստանի կարծեսցեն, այլ զիրեարս կապելով տանջեն,

ասէ ։ Եւ եթէ այդպէս է, միմեանց գործակից լինելով հանդարտագոյն ընդունիցին զտանջանսն ․ և խաբէութի՞ այ դատաստանին ընկալցի ․ այլ՝ ոչ ընդունի զայդոսիկ ։ Ապա ուրեմն հոգիք որով դատապարտին, և յորս ածայինն իցէ, թէպէտ և իմանալիք են՝ էր աղագաւ և նոքա 'ի տարտարոսին են ։ Քաւ լիցի ․ այլ ընդ այ յերանելի հանգստեանն մերձ կալով՝ զհրամանն այ 'ի ձեռն վերակացութեն իւրեանց յարմարագոյն զօրութք տեղեացն դատաստանի նոցա 'ի վերայ բերեն ։

Լուայ յումեմնէ որ ասէր՝ թէ մարմինս ած ապըստամբ հրեշտակացն զգեցուցանէ ․ զի զնոսա տանջեսցէ և 'ի բանդ արգելցէ ։ Հեթանոսական են իմաստքդ, և խեղագարութք լի ։ Զի թէ մարմինք, ամենայն իրօք և զգայութի ունին ․ և եթէ ոչ ունիցին զգայութիք, պատմուճանք են այնոքիկ և ոչ մարմինք ։ Համդերձիւք և ոչ զոք պատժեաց ոք ․ և ոչ զհանդերձ բանդարգել արար 'ի կայանի յաղագս այնորիկ՝ որ զգեցեալն էր, զի վաղվաղակի մերկանալով զայնոսիկ 'ի բաց փախիցէ ։ Այլ զնոյն ինքն կապանս ասեն լեալ զմարմինն ։ Եւ զիա՞րդ կապիցեն զանմարմին հոգիսն մարմինք ըստ ինքեանց ․ վասն զի ոչ ոք զինքն կապէ իւրովք ձեռօք ․ զի նախ քան ըղցաւն լուծանէ զինքն՝ իշխանութիւն ունելով իւրոց անդամոցն ։ Այլ զգայութիւն ունելով մարմին միաւորեալ էր ընդ նոսա ․ ամենայն իրօք զգայութի իցէ արդեօք և հոգի ․ քանզի ոչ ևս ցաւեցեալ լինէր երբէք, և ցաւս ընձեռէր հոգոյն ։ Թզենի և կամ այլ ինչ 'ի ծառոց զգայութի ոչ ունին, և ոչ ցաւ ինչ՝ հատանելով, զի և ոչ ընդունակք են ոգոյ ։ Արդ անիրա՞ւ ինչ լինէր դատելով զոգիս ընդ մարմնոյ ․ Թուի թէ ոչ ։ Հրեշտակք վտանգին ինչ, այլ մանաւանդ վըտանգեն ․ վասն զի 'ի մարմնական բնութենէն հեռի գտանին՝ հոգիք լեալք և միաւորեալ ընդ մերձաւորին ։

Այլ դարձեալ ասեն՝ այս, քանզի նոքին հրեշտակքն փոխանակ հոգոց լինին 'ի մարմինսն, զի տանջեսցին 'ի ձեռն մարմնոցն ։ Ծննդեամբ լինին հոգիքն, թէ արարչութք ։ Քանզի եթէ ծնեալք են, ոչ ևս են

հրեշտակք. այլ յայն միաբանութեան՝ յորմէ ծնանին: Եւ եթէ արարեալք՝ ամենայն իրօք փոփոխեալք լինին. որպէս եթէ ոք կամիցի զասր այլ ինչ գոյն առնել, զի ոչ ևս իցէ սպիտակ, այլ ծիրանի: Եւ եթէ կորուսին զհրեշտակաց բնութիւն փոփոխմամբն, ոչ ևս մեղաւորք տանջին. այլ ոչ ինչ յանցեան որ զկնի եղեն: Ո՞վ ոչ ծիծաղեսցի լսելով՝ թէ փղոսկրէ լինելով տուն՝ զփղաց զանիրաւութիւնս կրեսցէ, և կամ 'ի մորթոց ինչ առնելով մատանիս՝ որ առաքինեացն նահատակութեան 'ի մորթս անդ գրիցի. ոչ լինելով 'ի զինէ ասեղն՝ զէն ասիցի, և կամ 'ի վահանէ կազմեալ շղթայագործ ինչ՝ վահան անուանեսցի. և ոչ զհանդերձն ասր կոչեն, և ոչ զմորթ զուարակին զուարակ. ապա թէ ոչ՝ լինիցի արդեօք օդ և հանդերձ՝ զուարակք կենդանիք անձնաւորք:

Ոչ կան միտք ձեր յայսոսիկ, ով մարդիկ. քանզի գիտեմ զհակառակութիւնս զայս ուստի է: Հեթանոսք որ նախ քան զձեզ իմացան զայս, այլ Մովսէս 'ի գաւազանն և զայսոսիկ զաղանդս և զայլս ևս զսոցին նմանս կլանելով ապականեաց: Որդեակ, տուր ինձ զքո սիրտդ. տուր ինձ զքո միտդ, զի զնա հրազգեստ արարից, և հրով Հոգւոյն շուրջ պարուրեցից զհուրն զընդդիմակ և զօտարոտի: Ասէ և մարգարէն յաղագս որոց խաւարեալ են միտքն. "Եւ ոչ ևս եղիցի կրակաբեր 'ի տան Եսաւայ": Քաջայայտ է՝ թէ օտարացեալք յերկնաւորացն են, որք մարմնաւոր Եսաւայ զհետ երթան: Ոչ իմացան և ոչ 'ի միտ առին զի 'ի խաւարի գնացին: Ապա ուրեմն որք ոչ իմաստութեամբ հրազգեստք լինիցին, անմիտք են. նմջեցին զքունս իւրեանց, գտին և ոչ ինչ ամենայն արք ճոխութեամբ ձեռաց իւրեանց. զի և չար իսկ է արծաթսիրութիւն՝ չիջուցանել երկրաւոր շահիւքս զմիտս: Յաղագս որոյ և Պաւղոս ասէ. "Որք արբենան՝ 'ի գիշերի արբենան": Ապա ուրեմն այն ամբոխք ախտից անզգայութեամբ ընդ խաւարիս է խառնեալ: Որդեակ, տուր ինձ զքո սիրտդ, զի 'ի դա զիմ զհուրն խառնեցից. հրով զհուր պարտիս կորուսանել, և պէտս ունիս իմոյ հրոյս, զի զօրութեամբ ըմբռնեսցես զչարին կայծեանս:

Ունի և սատանայ հուր , որով եռացուցանէ զան-դունդս . և այլ հուր զնորա գիտելով՝ գրէ 'ի Յոբ թէ յռնգանց նորա ելանէ բոց հրոյ . և երրորդ հուր զնորա ասէ՝ եթէ յաչացն փայլումն լինի իբրև արուսեկի : Տեսանե՞ս՝ զի իբրև զհրեշտակ լուսոյ սատանայ կերպարանի : Այն հրով զիմաստասէրսն վարակեաց , և 'ի նմին թմբրեալք ամենայն աղանդք իբրև աստեղք մոլարք ձևանան : Եւ որ յռնգանցն է հուր՝ 'ի սպասաւորս կռոցն բախեալ լինէին . վասն որոյ զենուն զմարդիկ , և զորդիս իւրեանց այրէին մոլորութ՟բ ապստամբ վիշապին : Ո՞չ տեսեր ձի խրոխտացեալ իւրով զօրութ՟բ . զի իբրև ջերմագոյն իմն շնչէ և ծանրագոյն յռնգանցն իւրոց : Նոյնպէս և վիշապն 'ի զօհս կռոցն խրոխտայ , և ամբառնայ հակառակ բարեպաշտութեանն , և շունչ յռնգանցն զնշանակ ծածկելոցն սրտմտութեանն բերէ . վասն որոյ զբարկութ՟ն վիշապին հնոցս անուանեաց : Որո՞վ արդեւք այլ հրով զանդունդս եռացուցանէ , եթէ ոչ պոռնկութ՟բք . յայտ է ահա և շահավաճառօք և այլովք ագահութ՟բ . զի իբրև զձկունս յանբաւ ծովու զժողովուրդս մոլորեցուցանէ . մի 'ի միոյ վերայ դնելով թշնամանայ սիրաբար , հեշտասիրութ՟բ . զորս և Պաւղոս առաքեալ միանգամայն զզանազանութ՟ի խաբէութ՟ցն սատանայի՝ որով ջեռուցանէ զանդունդս՝ նետս հրացեալս անուանեաց : Այն հուր յամբարիշտսն է , և ոչ այրին . կենդանիք են և մեռեալք , վասն զի մարմինք նոցա զգայութ՟բ ոչ բոցակիզին :

Թերևս և յաղագս այդորիկ կամիմ ինչ ցուցանել քեզ : Պաւղոս ասէ , եթէ “Փափկացեալն կենդանոյն մեռեալ է „ : Նոյնպէս և աւետարանն կոյրս կոչէ զփարիսեցիսն՝ որք մարմնաւորապէս տեսանէին . և ոչ միայն զնոսա կոչէ կոյրս , այլ և զժողովուրդս՝ որ 'ի նոցանէ առաջնորդեալք լինէին . և զնոսա կոչէ կոյրս , որք են առաջնորդք կուրաց . “Կոյր կուրի եթէ առաջնորդեսցէ , երկոքեան անկանին 'ի գուբ „ : Եւ զնոսա կուրացոյց . և եթէ զիարդ կուրացան տեսանելովն՝ դարձեալ Առաքեալ ցուցանէ ասելովն . “Որովք ա՟ծ յաւիտենից այսորիկ կուրացոյց զմիտս անհաւատիցն , զի մի լուսաւորեսցէ զնոսա լուսաւորու-

թեան գիտութեան Քրիստոսի »։ Վարդապետք Հրէից էին փարիսեցիքն, այլ էին կոյրք. վասն զի գրուանաւ անիրաւութեան զիւրեանց տեսանողութիւն իբրև զճրագ ծածկեցին։ Նոքա են շինողք անմիտք յաղագս ոչ տեսանելոյն իմաստութեան. այլ իբրև զանասունս էին։ Վասն մնացին այնոցիկ վարդապետաց 'ի սաղմոսին ասէ. «Ընջեցին՝ որք հեծեալ էին 'ի ձիս »։ Ձիս զնոսա կոչէ, զի իբրև ձիք իգամոլք իւրաքանչիւր 'ի կին ընկերին վրնջեցին։

Այսմիկ և զշինողացն զայնոցիկ զկուրութիւն տեսանել. քար անկեան կայր առաջի նոցա, և ոչ տեսանէին։ Ախորժեն ճանաչել թէ որպէս ոչ տեսանէին։ Եւ զի պէտս ունէին 'ի ժամանակին յոլով տարակուսանօք քարանց, զքանչելի քարն անարգելով 'ի բաց ընկեցին։ Ոչ էին տարակուսանք ժողովացն յորժամ մարգարէ ոչ ունէր՝ որ խրատէր զնա. ոչ էր տարակուսանք յորժամ արդար ոչ զոք ունէր՝ որ յաղագս նոցա աղօթէր։ Ոչ զոք ունելով քար սուրբ՝ Որդին Այ առ նոսա եկեալ, զի զնոցա 'ի տարակուսանսն բժշկեսցէ։ Ոչ ուրախութեամբ ընկալան։ Ո՞չ ապաքէն կուրութիւն էր, զի զկուրացեալ ժողովուրդն ամբարշտութիւնք ոչ ախորժեցին շինել անկեանն քարին Քրիստոսի՝ որ զամենայն ինչ յինքեան ընձեալէ, ոչ միայն զուրախութիւն, այլ և զխնդութիւն։ Նոքա 'ի բաց ընկեցին զՔրիստոս, իսկ մեք խնդութեամբ ընդունիմք. ժողովարանն զաստուածային քարն 'ի բաց մերժեաց, բայց եկեղեցի հանդերձ ուրախութեամբ գիրկս արկ նմա. զոր ասէ աւետարանիչն Յովհաննէս հաստատելով զասացեալսս, թէ «Յիւրսն եկն, և իւրքն զնա ոչ ընկալան. իսկ որք ընկալան զնա՝ ետ նոցա իշխանութիւն որդիս Այ լինել »։

Քար անկեանն որդիս Այ առնէ զշինողսն եկեղեցոյ։ Պարտ և արժան ուրեմն է վարդապետաց զգամուեսան 'ի քարէն ուսանել։ Սիրէին 'ի քարէն յայնմանէ արուեստապետք շահել զիւրաքանչիւր ուրուք զգիտութիւն։ Ոչ է շինողութիւն առանց անկեան, զի անկեանմբն յարմարի տունն լինել պնդանացու. շինողացյաւէտ պնդանացու է անկիւն, զի զկոփածու քարինսն նովաւ պատշաճեն։ Գտանեմք զՔրիստոս

ոչ միայն հիմն և վէմ, այլ և արուեստից անօթ. յայտ պիտանացու տեսանեմք զնա, ոչ միայն վէմ անկեան կապելով զկամարս և զձեղունս, այլ և բազմայեղանակ արուեստից պատճառ։ Յաղագս որոյ գեղեցկապէս ասեն ա͞ծայինն գիրք՝ թէ "Նա է գլուխ՝ որով ամենայն պատշաճեալ և յօրինեալ անձն 'ի կատարումն"։

Բաջալաւ ուրեմն և Յովհաննէս ասաց՝ թէ "Որ ունի զհարսն, փեսայ է"։ Բայց այլ առաքինիքն ոչ են փեսայք, զի և ոչ և զհարսն իսկ ունին. զոր և խոստովանին իսկ՝ թէ մեք ամենեքեան 'ի լրմանէ նորա առաք։ Արդ է փեսայն աղբիւր. և քաջավայելուչ զնա փեսայ կոչէ, վասն զի միշտ նորա ոգին ըղյաւիտեանս զամենայն իբրև զծերացեալս լքանէ։ Հարսն զարդ է բնութեանս. սկիզբն լինելութե ամենայնի, ինքն 'ի լինելութէ ոչ յառաջ եկեալ. կատարեալ հարսն, վասն զի և ա͞ծութի ոչ ունի սկիզբն աճեցման, և ոչ յայլմէ սկզբնագունն գոյացաւ։ Ուրախութե և զուարճանաց է հարսն օրինակ. զի և ամենայն ինչ բարի, և ամենայն խնդութի յա͞ծութենէ։ Զի ամենայն տուր բարի և ամենայն բաշխումն վայելից յաղագս հարսինն տուաւ. զի ա͞ծութեն ազգաւ ամենայն յաւիտեանքս զշնորհն զօրացուցանեն յարարածս։ Ամենայն հրճուանք և մոռացումն չարի յաղագս հարսինն է. զի վասն ա͞ծութեն որ միանգամ մերձեցանն՝ անմահանան, զապականութի և զմահ մոռանալով։

Որ ունի զհարսն, փեսայ է". ոչ զդուստր, այլ ըզհարսն, քանզի անսկզբնական է ա͞ծութին. ոչ ըզմայր, այլ զհարսն. զի միշտ ա͞ծութի նոր է առանց վախճանի, և առանց կատարածի։ "Որ ունի զհարսն, փեսայ է"։ Որ ունի զա͞ծութին, ա͞ծ է. քանզի մեք ամենեքեան 'ի նորա լրմանէն առաք. յորմէ լրութե Պաւղոս առաքեալ ասէ՝ եթէ "Ի նմա բնակեցաւ ամենայն լրումն ա͞ծութեն"։ Հարսն ասի, վասն զի ծնեալ՝ և ծննդեամբ և հասարակութեամբ աղբիւր շնորհաց, յայտ ունի զիմաստութին. ծնեալ, վասն զի Հօրն. ծնիցելոյ, յաղագս որդիութեն. աղբիւր շնորհաց, վասն զի Հոգւոյն սրբոյ, վասն զի լրումն Երրոր-

գութեանն . հարսն, վասն զի մշտնջենաւոր ընդ Հօր Որդի է, և աղբիւրն շնորհաց՝ միաւորեալք են ։ Ընդ կատարելութեամբ Հօր կատարեալ Որդի և Հոգին սուրբ կատարեալ, յայտնապէս նշանակելով ։

"Որ ունի զհարսն, փեսայ է„ . հարս՝ յաղագս ուրախութեն, նոր՝ վասն բնութեն, զարդարեալ՝ յաղագս փառացն, պսակազգեաց՝ վասն արքայութեն, 'ի վերայ աթոռոյ նստեալ՝ վասն պաշտելի էութեն, 'ի վերայ բարձոյ քան զամենեսին ամբարձեալ՝ վասն ածութեն ։ Որ ունի, ասէ, զայս ամենայն, փեսայ է ։ Ինքն իբրև զորդի թագուհոյն, ածութեն է միաւորեալ . ինքն իբր զտէր դշխոյ յածութիւն է մերձեցեալ . քանզի և նա միայն իսկ գիտէ ասել "Ես և Հայր իմ մի եմք„ ։ Իսկ այլ սուրբք եթէ յերկինս և եթէ յերկրի՝ ծառայք են . ոչ ունին զբնութես հարսն առնուլ, վասն զի լեալն օտար է յանեղէն ։

"Որ ունի զհարսն, փեսայ է„ . զի մի զնա ասիցես յայլմէ 'ի բնութենէ և յէութենէ . այլ որ ունին զնա, ասէ, փեսայ է . վասն զի ունի զՀայր և զՀոգին սուրբ Որդի, տանելով և տարեալ լինելով ։ "Որ ունի հարսն, նա է փեսայ„ . քանզի 'ի նորին բնութենէ է, և նորին էութենէ ։ Ոչ ասաց՝ որ ունիցի զհարսն, փեսայ եղև կամ լինիցի . այլ փեսայ զբնութիւն ցուցանէ, և ոչ զկնի մտեալ զարժանաւորութիւն ինչ զեկուցանէ . այլ և զէութեն եցոյց զՈրդւոյ . բանն հարսն և փեսայ անուանեաց . զի իմասցուք՝ եթէ ոչ Հայր Որդի է ; և ոչ Որդի Հայր, և ոչ Հոգին սուրբ յասացելոցդ յերկոցունց ։ Քանզի ոչ ասաց՝ եթէ ոյր հարսն է, նա է փեսայ . և ոչ դարձեալ, թէ որոյ փեսայ էր, նորա հարսնն է . այլ որ ունի զհարսն, փեսայ է . զի զընդանեգոյն և զզուգահաւասար և զնոյն էութի բնութեն ունի և սուրբ Հոգին 'ի հարսինն զընդանեգոյն զիմաստսն . զոր գիտելով Մկրտիչն սքանչելապէս ասաց . "Որ ունի զհարսն, փեսայ է„ . և զլրութի ածութեն նշանակեաց ամենեցուն մեզ ։

Տես՝ մի զառակն առցես 'ի գայթագղութի ինչ . տես, զմի մեկնութեն պահանջեսցես զբանից առանձնաւորութի ։ Մանաւանդ զզօրաւոր հաւատն նմա-

նեցոյց, զի և ոչ ինչ է 'ի բանջարս քան զմանանիխ կարևորագոյն և օգտակարագոյն: Վասն այնորիկ զօրաւոր ասաց զհաւատն 'ի հատ մանանխոյն, զի և զօրութի՟ն սերմանն այնորիկ դիւրաբոյս է և բազմաբեր. Նոյնպէս և հաւատն յուսողն հզօրապէս բազմապտուղ լինի յեկեղեցւոջ և դիւրաճանապարհ: Նա և ուռկանի նմանեցոյց զարքայութի՟ն երկնից. զի մի՟ ըստ հնչման ինչ անուանց բերեալ լիցի այսր և անդր:

Լուս հարսն երկնային, զաղբիւրն ա՟ծութե՟ն, բարեպաշտութե՟ իմա: Լուս և փեսայ՝ որ միայնն 'ի վերայ ամենեցուն է ա՟ծ. ուղղակի ընկալ: "Եղիցին, ասէ, երկոքինն 'ի մարմին մի": Եւ Առաքեալ ասէ. "Ես ասեմ 'ի Քրիստոս և յեկեղեցի" զառակն, զհարսն և զփեսայն. և յերկոսին շնորհն յայտնեցէ զմի ա՟ծութի՟ն զանեղ Երրորդութե՟ն: Քանզի և ասէ իսկ այսպէս իմն զեկուցանելով Առաքեալ, եթէ "Գլուխ կնոջ այր է, և գլուխ առն Քրիստոս, և գլուխ Քրիստոսի ա՟ծ": Կամ թէ զի կին անուանեաց, յաղագս առնն իմանայցեմք. զի կին առն է, և զի գլուխ առն Քրիստոս է: Նոյնպէս ուրեմն և զհարսնն իբրև 'ի կերպարանս իմն է ասացեալ, ոչ ինչ երկրաւոր կամ 'ի հող անկեալ իմանայցեմք.

"Որ ունի զհարսն, փեսայ է": Յորժամ արուեստաւորք գործեն ինչ առ ումեք, և ուսանիցին գործելո՟ն, զի և վերակացուքն իսկ ցուցանեն նոցա ըզդժուարագոյնսն թէ որպէս գործեսցեն, նոյնպէս և հարսն զարդարեալ 'ի հաւատացելոցն ուսուցանէ նոցա ճանաչել զդժուարինսն և զերկնային խորհուրդսն: Եւ վարդապետքն ուսանին, առնլով ըզպատճառսն 'ի հարկաւոր ուսողացն. և ուրախարարքն ուրախանան, կոչնականացն պատրաստելով. և 'ի հոգևորսն և յանտեսանելի խորհուրդսն այսպիսի իմն տուրևառութիք անճառելիք լինին: Առ-որ և պ՛ռ մեզ 'ի հարսնէ և 'ի փեսայէ զկերպարանսն. զի յա՟ծ միաւորեալ, և զայլս միաւորիցեմք և մեք 'ի մեզ: Եւ միաւորեալք ա՟յ, 'ի բազումս և յայլս միաւորիմք. յորս ա՟ծ միաւորել արժանի արասցէ:

Դադարեա, վարդապետ, զի յաղագս ա՟յ ասելով զա՟ծ պարտիս ունել գործակից. վասն զի և որք ըզ-

դժուարագոյնսն գործեն, որոց գործեն՝ զնոսա գործակիցս առնուն 'ի կատարելուն գործոյն։ Դժուարագոյն են իրքդ. յաղագս ո՞յ ինչ ասել և առանց նորա խօսել անկարելի է։ Որ ասէ առանց նորա յաղագս նորա, 'ի բազում խորս զուղելով նաւաբեկութիւն ընդունի. որ ոչ նուաւ ընդ խորս անցանէ, 'ի յոլով տարակուսանս անկանի իբրև զնաւ առանց ղեկաց՝ ալէկոծութիւք մղեալ յանդունդս։ Պարտ և արժան է Հոգւոյն սրբով զպատմուճան խորհրդոցն զարդարել. զի և որ յաղագս ո՞յ բանն իցէ իմանալ, անտի իբրև զբարի ինչ բեռն շահաւոր արասցուք։ Վայել է՝ ո՞յ զյոլով ինչ թողուլ, և մի զամենայն քննել. քանզի եթէ այսր և անդր զնա 'ի մտաց քոց շարժես, ձմեռն 'ի վերայ հասանելով՝ յոչ պատշաճագոյն տեղիս տարեալ՝ տուգանս զշահն առնէ։ Զարդարեա զհարսնն որպէս արժան է, և մի լինիր արտաքս քան զսահմանսն։ Թէ անդ նաւարկեալ 'ի ծովուն լինիցիս, անօգուտ քեզ նաւարկութիւն լինիցի և վտանգաւոր։ Բազում անգամ որք յՈվկիանոսի խորսն նաւեցին ընդդէմ հարեալք, անդրէն դառնալ և գալ ոչ կարացին։ Նոյնպէս և որք յաղագս ո՞յ վարդապետեն, նմանապէս իմն չարչարին. փախչել կամելով յամբարշտութենէ ոչ կարացին։ "Ամենայն փառք դստեր թագաւորի 'ի ներքոյ"։ Թող յաղագս ամենայն փառացն ասել, զոր և ոչ կարողուն է. և ասա որքան գիտես և կարես, և օգուտ բերիցէ լսողացն։

Ո՞չ հաւատաս՝ թէ յաղագս ո՞յ ինչ ասել առանց նորա՝ անկարելի է և վտանգաւոր. ասէ և տէրն՝ եթէ "Ոչ ոք գիտէ զՀայրն, եթէ ոչ Որդի. և ոչ զՈրդի ոք գիտէ, եթէ ոչ Հայր, և որպէս Որդին յայտնեսցէ"։ Տեսանե՞ս, զի յաղագս նորա առանց նորա ասել ինչ՝ անկարելի է։ Տեսանե՞ս, զի զամենայն զփառս նորա իբրև զանձառելիս ոչ դիւրին է գիտել։ Յայտնեաց քեզ Որդին, ասաց եթէ լաւագոյն իցէ լռութիւն քան զայնպիսի պատմութիւնս։ Իմա զոր ինչ քեզ Հոգին սուրբ զխորս անսւնդոց շահեցուցանէ, և ելցես 'ի նաւն. ապա եթէ ոչ՝ լաւ է դատարկանալ, քան եթէ չարաչար ինչ գործել. լաւագոյն է 'ի տու-

զանս անգանել՝ ոչ լինելով վաճառական, քան եթէ վտանգից մահու համբերել վաճառական լինելով։ Զի՞նչ տացէ ոք փոխանակ ընդ անձին իւրոյ. և կամ զիա՞րդ զմարմնականս բազում ծանրութ՟ զգուշաբար առնեմք։ “Զի՞նչ օգուտ է, ասէ տէրն, զաշխարհս շահել, և զանձն տուժել”. զի մեռանելոցն ամենայն շահք մեռանին, զի օտարանայ յաշխարհէ՝ յորում շահէրն։

Այսու բանիւ իմա և զայն, զի որք ունին՝ ոչ է յաջողական. զի ասէ տէր յաղագս վարդապետաց՝ թէ “Որ ոչ առնէ և ուսուցանէ, փոքր կոչեսցի յարքայութեն”։ Զի եթէ բազումս շահեցաւ և զինքն կորոյս, փրկեալքն արդար զնա ոչ առնեն. և 'ի պատերազմի վախճանեալքն թէպէտ և զայլս ապրեցուցանեն 'ի մահուանէ, յաղագս ապրելոցն կենդանիք ոչ լինին. և որք զնաւսն ուղղեն, եթէ զյոլովս առ 'ի վտանգից ազատեցին, եթէ 'ի մրրկացն ընկղմեալ մեռանիցի յանդունդս՝ ոչ կարասցէ կենդանի եղանել յաղագս զբազում անձինս ապրեցուցանելոյ 'ի նաւաբեկութէ։ Այսու բանիւ գիտեմք, թէ և որ շինեցին 'ի վերայ հիմանն Քրիստոսի խոտ և փայտ և ցօղուն, ոչ որպէս դէպ ինչ լինի՝ 'ի հրոյն ապրեսցին, այլ 'ի ձեռն գործոցն ապաշխարութեն՝ յայտ է ահա։ Ապա որք ոչն ապաշխարեն, 'ի հրոյ ոչ ապրեսցին։ Եւ եթէ 'ի դժոխս ոչ է խոստովանութի, և ոչ 'ի մահու ապաշխարութի, ամենայն իրօք յաղագս մերձաւոր կենացս ասացաւ նոցա հրով ապաշաւանաց ապրել։

Ասեն և 'ի սաղմոսին սուրբքն՝ եթէ “Անցաք ընդ հուր և ընդ ջուր”։ Յաղագս որոյ ասէ “Անցին ուրեմն անձինք մեր ընդ անհաստատ ջուրս”։ Եւ զիարդ է անհաստատ ջուրն՝ Պաւղոս ասէ. “Այնպէս վըտանգեալք եղաք, մինչև տարակուսել մեզ 'ի կենաց”. ընդէ՞ր. “Զի յառնել մարդկան 'ի վերայ մեր՝ ընդ ուխս անցին անձինք մեր”։ Եւ եթէ ոչ էին ուխք փորձութիքն, ոչ ապրէր ամենայն մարմին. վասն զի ժամանակեանք են և սուղք, երագունք և անվըստահանալիք. յաղագս այնորիկ և ուխք անուանեցան, նորին աղագաւ և անկայուն ջուր՝ զի ուխք են. քանզի եթէ էր մնացական ինչ, կայուն լինէր։

Եւ հուր զոր ասիցէ, այժմ ինքն իսկ ասէ սաղմոսն. «Ի բարկանալ սրտմտութեան նոցա 'ի վերայ մեր՝ ջուրն արդեւք ընկլոյզ զմեզ»։ յաղագս հալածանացն զեկուցանելով, որք իբրեւ գազանս 'ի վերայ յարձակէին, և իբրեւ զաղուէսս նենգութեամբ մերձենային։ Նորին աղագաւ ասէ. «Օրհնեալ է տէր, որ ոչ ետ զմեզ յորս ատամանց նոցա»։ Զոր օրինակ հուր զփայտ այրէ, նոյնպէս բարկութիւն հալածչաց՝ որ զՔրիստոսի պաշտօնեայսն հալածեն։ Արդ յորժամ ասիցէ Պաւղոս՝ եթէ «Օրն այն յայտնեսցէ, և զի հրով երեւեսցի», հալածանս մարգարէանայ մեղուցելոցն վարդապետաց։ Ապա ուրեմն 'ի վկայութիւն ասաց՝ որ 'ի Քրիստոս յորդորին և վկայեն՝ այնպէս այրեսցէ, սակայն 'ի հրոյ։ Ասէ և Միքիաս սուտ մարգարէին. «Յայնժամ տեսցես, յորժամ թագիցես շտեմարան շտեմարանէ»։ Ե՞րբ. ոչ յաղագս հանդերձելոյ դատաստանին, այլ յաղագս առաջիկայ պատերազմին Աքայաբու։ Զի պարտեալ թագաւորն՝ սուտ մարգարէն երկնչելով թաքչէր։ Սոյնպէս և Պաւղոս զմերձաւոր հալածումն ինքեան և որք յայնժամ սուտ մարգարէք էին, յառաջագոյն ասէր. որ հալածանաց յայտնեսցէ, ասէ։ Ո՞ր հարազատաբար, և կամ ո՞ նենգութեամբ քարոզեաց զՔրիստոս. եթէ ոք իցէ 'ի շինողացն փայտ, խոտ կամ ցողուն, տուժեսցի։ Քանզի որ նենգութեամբ աւետարանեաց, թէպէտ և աշխատեցաւ, տուժեսցի. իսկ եթէ զինքն ստգտանելով յապաշխարութիւն եկեսցէ, առ դրունս հալածանացն ապրեսցի. այլ այնպէս՝ իբրեւ հրով 'ի վերայ կացեալ հալածանացն։ Եւ զի բարկութեան հալածանքն և փորձանքն հուր են, ասէ. «Իբրեւ զոսկի 'ի բովս փորձեաց զնոսա, և եգիտ զնոսա ընտիր»։ Իւրով և ինքն արդարն ասէ. «Փորձեցեր զերիկամունս իմ և զսիրտս իմ. փորձեցեր զիս, և ոչ գտաւ յիս անիրաւութիւն»։ Վասն այնորիկ ասէ. «Տուք տեղի բարկութեան»։ Նմանագոյնս իմն թէ ոք զձեզ հալածեսցէ յայսմ քաղաքէ, փախիջիք 'ի միւսն ևս։

Եւ երիկամունք զիա՞րդ այլ ազգ փորձին, եթէ ոչ հալածանօք փորձանաց։ Նոյնպէս սիրտ փորձեալ լինի՝ թէ աննենգ իցէ և եթէ նենգաւոր, կարծեօք

ձգեալ 'ի խոստովանութիւն և 'ի վկայութիւն, և 'ի խաղաղութէ վկայեալ 'ի Քրիստոս ։ Յորժամ զբանս նորա ցուցցուք ճշմարիտս՝ 'ի բաց հեռանալով 'ի չարէ, սիրելի հարազատ բարեկամ նորա պատասխանիս առնէ յաղագս բանիցն նորա վկայելով ։ Է զի գեղեցիկ խօսեցաւ բարեկամն, և պատուիրեաց յաղագս իրիք ։ Որ պահէ զպատուիրանն, վկայէ թէ գեղեցիկ պատուիրեաց, խորհուրդ ինչ յայտնեաց, և ոչ մատնեաց զխորհուրդն . ծառայն վկայեաց տեառնն, թէ ուղղութ զխորհուրդս նորա պահեցին՝ հանդիպեացին նոցա ։ «Անձն մեր ապրեցաւ որպէս ճնճղուկ յորոգայթէ յորսողացն խաղաղութ »։ Որսորդք են դևք, որք զանձինս որոգայթեն ։ Վկայեն ուրեմն զՔրիստոս՝ որք զհեշտալիս արհամարհեն . զի զանձինս իւրեանց փրկեսցեն, որպէս և նայն հրամայեաց ։

Յիշեաց և զերկուս ճնճղուկս աւետարանն . և պարտ է հաւանել յաղագս էր իրիք մտածութեան էած 'ի բանս տէրն ։ Սաղմոսն մեզ յայտնէ զհաւանութիւն՝ թէ վասն անմեղ անձանցն ասաց տէրն . զորս չարաչար վարդապետելով, 'ի սպանումն որոգայթեն և 'ի կորուստ ։ Այլ յոլով է բան նոցա յայ . զի առանց կամաց նորա ոչ անկցին ։ Վասն որոյ և ասէ Պաւղոս . «Մի՞ զեզանց ինչ փո՞յթ է այ . զի մեր աղագաւ գրեցաւ՝ ոչ կապեսցես զբերան եզին կալոտոյ »։ Փոփոխելով ասացից և ես . միթէ զճնճղկացն ինչ փո՞յթ է այ . յաղագս որք պարզամտութ յամպարշտութ անկանէին՝ է ասացեալ ։ Եւ Պաւղոս ասէ վասն այնպիսեաց վարդապետացն՝ թէ «Քաղցրաբանութ պատրեն զսիրտս անմեղաց »։ Իսկ տէրն որպէս բանի վաճառու ասէ յաղագս նոցա . վասն զի սուտ վարդապետք 'ի մարդիկ վաճառականք լինին ։ Զոր և մարգարէ ոմն ասէ նոյնպիսի, թէ « Հովիւք զպարարտսն ուտեն, և զգեղեցիկսն խորտակեն, և զմնացեալսն վաճառեն ասելով՝ օրհնեալ տէր, և ճոխացաք »։ Բանիւ այ ցուցանէ զնոսա յանմեղ մարդիկ վաճառականս լեալ . նոքին և քաղցրավաճառք են, որք երկեղածութ ստեղծականս խոխողեն՝ զբանաւոր ոչխարսն ։

Ո՞յք են պարարտքն, եթէ ոչ փարթամքն . ո՞յք են

խնդրեալքն, եթէ ոչ քաղջամարմին այրիքն, որոց կնո-
քըն աճեցեալ են։ Ցաղագս որոյ և ասէ տէրն, եթէ «Ուտեն զտունս այրեաց, և պատճառանօք երկարագոյնս աղօթեն»․ և զմնացեալսն, ասէ, վաճառեն․ վասն զի իբրև զանպիտանս արհամարհելով գայթագղեցուցանեն․ և դիւաց ամենայն նուիրեալ լինի գայթագղել անձն յետս դառնալովն։ Վասն որոյ և ասէ, թէ 'ի դառնալ նոցա 'ի բարեպաշտութէն՝ վարդապետք ոչ կոչէին, այլ սատանայի իբրև խոհակերոցս․ 'ի խոխոցումն և 'ի սատակումն անձանց իւրեանց մատնէին։ Եթէ էր գէր ոչխարն, անձանց 'ի կերակուր պատրաստէին ինքեանք։ Եթէ ընչեղ ոք 'ի բաց գնայ յեկեղեցւոյն, ողոքեն, առաջի ընթանան, մաղթեն․ զա͞ծ նմա վերակացու յաղագս ամենայնի լինել երդնուն․ զաւետիս արդարոցն զամենայն նմա լեալ ասեն և նմա պարգևեն, բանիւ՝ զօտարացն ոչ զգալով շնորհեն, մանաւանդ եթէ պատրեն․ ընդկրկին անիրաւութիք անկանին, կամ ոչ գիտեն զոր ինչ խորհին, կամ գիտելով զանօրէնութիւն գործեն։ Եւ եթէ իցէ այրի հրճուեալ ընչիւք, ամենայն սրբոց ընկերակից զնա առնեն․ տիրաբանեն զբովանդակ զերկին նմա առանձինն ստանալ, խոստանալով և ըդդրախտ՝ սեփական անդաստան նմա երդնուն լինել․ զամենայն զարդար կանայս նուազ քան զնա լինել հաւանեցուցանեն, եթէ միայն 'ի բարեպաշտութէ ոչ 'ի բաց կացցէ․ ոչ զի ապրեսցի, այլ զի ընդ նոսա կորիցէ։ Իսկ զաղքատս արհամարհեն․ վասն այնորիկ և մարգարէն ասէ, թէ զաղքատն տան փոխանակ կօշկաց․ և տէրն միոյ ասարի երկուս ճնճղուկս կերպարանելով անուանեաց։

Ո՞չ հաւատաս՝ թէ այնպիսիքն են սուտ վարդապետքն, լուր Պաւղոսի որ ասէ․ «Որոց ա͞ծ որովայն, և փառք ամօթն իւրեանց»․ և դարձեալ․ «Որք զբոլոր տունս խոտորեցուցանեն անպիտան շահից աղագաւ»։ Մեզաւ ինչ ճոխն՝ չյանդիմանեն, մանաւանդ թէ ընդունին և ս․ ակամայ աղքատն բանիւ ինչ գթեաց և կամի հաշտել, 'ի բաց դառնան․ եթէ ապաշաւէ, դատապարտեն․ և եթէ զկնի բարեպաշտ լինի, յեկեղեցւոյ արտաքս հանեն։ Զրկէ հզօրն զորբն․ դա-

տաւորքն ոչ միայն ոչ օգնեն , այլ և 'ի վերայ յառնեն ։ Յափշտակէ զայրի ընչեղն , արդարացուցանեն զամբարիշտն յաղագս ընծայի . որպէս մարգարէն ասէ . "Զառաւելութ̃ի իմ̃ գիտեմ , և տես 'ի չարեաց եղելոց ", Զի և ոչ ինչ առնլով յանիրաւաց խոնարհին , կամ երկնչելով կամ պատկառելով՝ և կամ սիրելիս զնոսա առնել փութան ։ Յաղագս այնպիսեացն ասէ Յակոբոս՝ եթէ "Արհամարհելով զաղքատն եղեն դատաւորք չար խորհրդոց " ։ Ունին և այլ ևս չար վարդապետացն գործք՝ առաւելութ̃ին . զի ոչ առնլով , այլ 'ի հակառակէն տան և կերակրեն զնոսա . բազում անգամ և յաղագս չար գործոցն գովեն ։

Նաւ ընդդէր մարգարէն ոչխարս կոչէ , իսկ աւետարանն ճնճղուկս . յաղագս անզանազանութ̃են ։ Քան զի որքան առաւել է երկին քան զերկիր , այնքան և հաւանեալքն զանազանին ։ Ոչխարք պատրաստաբար կորին , և ճնճղուկք մեքենայիւք որսորդաց դիւբաւ ըմբռնին ։ Դժնդակագոյնք ուրեմն և դատաւտանք մեքենայիցն լինին , որք զերկնաթռիչ զանձինս 'ի վայր արկանեն 'ի սպանումն և 'ի կորուստ 'ի ձեռն խաբէութ̃են ։ Վասն որոյ և ասէ ցառաքեալս . "Մի երկնչիք , զի քան զբազում ճնճղուկս վերագոյն էք ": Ի հաւաստութենէն ուսանիմք եթէ յաղագս մարդկան էր բանն նորա , և ոչ վասն թռչնոց ։ "Ձեր , ասէ , և հեր գլխոյ թուեալ է ". յայտ է թէ և մ̃յ դիւրին է զհեր գլխոյ թուել զորբոցն ։ Եւ զի ասաց ձեր մտածութ̃իս տայ թէ իբրև զճնճղուկս առակելով , նոյնպէս և հերսն ասէր . զի և ճշմարիտ իսկ բանք առաքելոցն էին և ա̃ծավայելուչք ։ Ասէ՝ եթէ վարդապետութ̃ին նոցա զանազանեցաւ , և եթէ ոչ ըք յուսողացն մ̃նասեցաւ . որպէս 'ի սուտ առաքելոցն որոգայթս ունի առ 'ի պարզամիտ ճնճղկացն կորուստ։ Զի և ոչ այնպէս իսկ ինչ սպանանէ զանձն իբրև ըղբան որ ըստ ինքեան աղանդի բռնադատիցէ զճշմարտութ̃ին , և ա̃ծային գրով ստութ̃ք առ 'ի ցոյցս վարիցի ։ Արդ յորժամ 'ի սաղմոսին ընթեռնուս , եթէ զգագաթն հերոյն զնացելոցն յանօրէնութ̃ իւրեանց ջախջախեսցէ տէր , իմա՝ զի յաղագս պատճառաց չար բանիցն ասացաւ ։

Այն ամենք՝ որք ոչ ինքեանք խոտորեցուցանեն, այլ պատճառս այլում առ 'ի խոտորեցուցանել ընծեռեն: Այլ է գագաթն հերոյ ոչ կատարեալ հեր, այլ գագաթն. զի և ոչ բան իսկ լի, այլ բանի սկիզբն. այս է, տալ պատճառք, զոր և Պետրոս ասէ՝ թէ "Խոտորեն զգիրսն յիւրեանց մտածութիւնս": Ապա ուրեմն բանն է գրոց. իսկ պատճառքն չար մտացն, 'ի չար վարդապետացն է: Բայց ած ջախեսցէ զգլուխս թշնամեաց իւրոց, և զգագաթն հերոց նոցա հարցանելով դատաստանովք:

Յասացելոցս և այն բան ևս լինի մեզ քաջայայտ, թէ "Ոք լուծցէ մի 'ի պատուիրանաց անտի 'ի փոքունց, և ուսուսցէ այնպէս, տրուպ կոչեսցի յարքայութեան": Կրկին ասաց զփոքրն 'ի միտս և 'ի բանին: Ոչ զպատուիրանն ասաց փոքր, այլ զմիտս զասողին՝ որ զպատուիրանն արհամարհեաց, և արար զնա խոտան լսողացն: Հայեաց 'ի միտս բանին և իմասցիս, զի ոչ անուանեաց նուազ զպատուիրանն, այլ վասն նորա նուազապէս իմանալոյ զնա, և այնպէս ունել յաղագս բանին. ոչ ասաց այնպէս ուսուցանէ վարդապետն, եթէ ոչ յառաջագոյն ըստգիւտ զնա. զի տրուպ ըզպատուիրանն այ արար: Եթէ է ինչ 'ի լուսոյ խաւար, է և յաւետարանին պատուիրան տրուպ, և կամ դարձեալ փառաւորեալ: Ապա ուրեմն ոչ զպատուիրանն ասաց փոքր, այլ զմիտսն՝ որ հակառակ պատուիրանին չարաչար վարեցաւ:

Այլ ասես. ընդէ՞ր ոչ դատապարտեաց զնա՝ եթէ ոչ և վարդապետաց նուազապէս. յաղագս նորա աւետարանն համառօտէ զբանն, ոչ միայն այժմ, այլ և 'ի բազում տեղիս: Յաղագս որոյ և հարցեալ վասն Երուսաղէմի, միանգամայն և յաղագս կատարածի աշխարհի, պատասխանի արար. և վասն կատարածի հարցեալ համանգամայն, յաղագս Երուսաղէմի ասաց. և այժմ զդատաստանն աւարտեաց ոչ միայն յաղագս նորա լեալ, այլ և 'ի բազումս յայլս 'ի նմանէ եղեալս: Ո՞չ լուար Պաւղոսի, "Ոչ միայն որ առնեն զչարն՝ են պատճառք, այլ և որ կամակից լինին գործողացն": Ապա ուրեմն վասն մի յերկոսին եղելոյ ամբարշտութեան, զի զմի պատուհասն յերկոցունց

դէմն կարգեաց ։ Դիւրաւ վրիպելի է վարդապետն , զի յանյայտ ճանապարհս իբրև 'ի խորս բանին նոցա շրջի ։ Եթէ ոչ էր ասացեալ գրոց մեզ՝ եթէ զՔրիստոս Հայր ծնաւ , ուստի՞ գիտէաք զխորհուրդ ա̃ծութե̃ն ։ Զաւելորդն խուզել՝ 'ի սատանէ է . զի զոր ոչ գիտէ և ոչ ետես , հարցաքննեալ յանդգնի ։

Իմաստասէրք զկերպարանաց զհետ երթան անգիտանալով զճշմարտութի̃ն . իբրև կենդանագիրք են , բանիւ զանզգալին պաճուճեն , և 'ի բազմաց փառս բերեն . որպէս թէ քան զճշմարտութի̃ն լաւագոյն ինչ ունիցին ։ Անդուստ և զհերձուածն ընկալան , նախ քան զճշմարտութե̃ն զկերպարանաց զհետ երթալոյ . և զճշմարիտն որ յաղագս ա̃ծութե̃ն է՝ տըրուպ կարծեցին , վարկանելով կործանել զանկործանելին ։ Որդի ա̃յ լսելով՝ 'ի մարմնականն զմիտսն խոնարհեցուցին , և արարին զա̃ծային խորհրդեանն զպատուիրանն տրուպ ։ Հարսն և փեսայ լսելով՝ 'ի մարմինս թիւրեցան , և պատրաստեցին զերկնային աւանդութիւն կարծել փոքունս ։ Նոյնպէս և զա̃յ զայս զբանս արհամարհեցին , տխմարութի̃ համարելով զերկնային զբանաւորութի̃ն ։ Հակառակ դիր զօրութի̃ զօրութե̃ , և մի̃ կենդանագիր կենդանագրութեան . քանզի ոչ է ա̃ծ կենդանագիր , այլ արարիչ էից ։

Կարծէ սատանայ՝ թէ միայն գործել ինչ զօրութի̃ կարիցէ , այլ բանիւք պաճուճէ նուաղս վարկանելով զճշմարտութի̃ն խափանել . և յայնոսիկ է փոքրութի̃ն ։ Որպէս Պաւղոս ասէ . “Ունիմք զգանձս զայս 'ի խեցեղէն յանօթս ,, ։ Զխեցին արհամարհեմ . ով մարդ , ուսիր որ խեցոջ անդ կայ գանձեալ , եթէ կարիցես բերել սքանչելագործութե̃ն ։ Խեցին երկիր է տրուպ . թէ կարիցես՝ զգանձն թուեա ։ Նուաստ է բանն , այլ զօրաւոր են միտքն և ամբարձեալք . խոնարհ են ճառքն , այլ գերակայք են աւանդութիքն . յերկրէ են յարմարութիք պատմութե̃ն , յերկնից իմաստութի̃ն կատարեալ է ։ Մի̃ վարկանիր փոքր ըզխեցին , այլ սքանչացիր , զի զայնչափ պարունակել ունի զա̃ծութի̃ն ։ Մի̃ կարծես զառաքեալս տխմարս . քանզի ոչ լինի բանիւ քաղաք , այլ գործով և գի-

տութի̃ 'ի մտաց որոշլին զանազանաբար ։ Քանզի բազում անգամ բանք խօսեցեալք , այլ որք բանիւք տեսանեն՝ վատթարաբար 'ի գործոց արդարութե̃ դատին ․ զի մի կերպարանք են ունել գիրք զարդարութիւն ․ զոր կեալ ոչ ընկալցի զնա վրէժխնդիր ։ Ունիս ձի կենդանագրեալ , ունիս բան յարմար եդեալ ․ ոչ ձի 'ի պատերազմի քեզ օգնէ , և ոչ բան քաղցեալ ըղքեզ կերակրէ ։ Եթէ ընտրիցեն անուրջք ընչիցն , քուն ելով ուտիցէք՝ տեսցուք թէ ապրիցէք ։ Եթէ բան քան զգործն լաւագոյն իցէ , եղիցի զուգահաւասար ․ ոչ ջանալով զերկիր մշակել , այլ բանս սերմանել յանդս , և տեսցուք զիարդ գոյացցի անտի ․ զի առնէք զա̃ծայինն տրուպ , և զվատթարն և զխոտանն երկնային ։

Խեցի է ա̃յ , ոչ բազմազան իցէ քան զոսկի իմաստասիրացն ․ ընդէ՞ր ․ վասն զի սա կոչի խեցի , և է ․ նա դիւացն անուանեցաւ ոսկի , և ոչ է ․ այլ և ոչ գաղաղ ։ Խեցի ա̃ծային գրոց իբրև զլաւ անօթ է պիտանացու , բազում օրինակաց դիւրաւ ձեռնարկելի ․ ոսկի հեթանոսաց անպիտան է , զի զարթուցեալք արթնութե̃ գտին զբանս իւրեանց առաչօք , և զժառանգն իւրեանց կորուստ ։ Ասէ Առաքեալն՝ թէ “Յիմարն ա̃յ իմաստնագոյն է քան զմարդիկ „ ։ Տեսանե՞ս զ՝ և խեցի նորա քան զոսկին հեթանոսաց պատուականագոյն է ․ զի՞արդ ․ լուր նմա որ ասէն՝ թէ “Շընչաւոր մարդ ոչ ընդունի զհոգւոյն ա̃յ , զի յիմարութի̃ է նմա „ ։ Յիմարութի̃ վարկանի յորժամ քաղցնու կրօնաւորն , յորժամ կամաւոր ծարաւոյ համբերէ ․ եթէ մերկ իցէ յնչից՝ տալով կարօտելոց , եթէ սպասաւորիցէ սրբոց իբրև զծառայ արծաթագին , առչնչաւոր անձին միտս՝ այս է յիմարն ա̃յ ․ քանզի ա̃ծ ոչ ունի ոչ յիմար և ոչ անմիտ ։ Թէ պակասէ յանդընդոց ջուր , և յա̃յ իմաստութիւն ․ և եթէ իբրև զաղբիւր առաւելեալ է բարեօքն , ոչ օք մերձ կալով առ նա՝ յիմար է , և կամ քան զանմիտս յիմարագոյն ։ Եթէ նուազէ յարեգականէ լոյս , և յա̃յ իմաստութի̃ , և յա̃ծային նորա աւանդութիւն եղիցի անմտութի̃ ինչ կամ յիմարութեան կարծիք ։ Իմա և աստուստ զիարդ ասէ՝ թէ “Որ լուծանիցէ զմի ինչ 'ի փոքունց

պատուիրանաց, և ուսուցէ այնպէս, որպէս կոչեցի յարքայութեան։

Դարձեալ մեզ անօթ ընտրութեան տակաւին ցուցանէ յաղագս առաջակայիս. ոչ ասէ՝ թէ հեթանոսս, թէ մերձաւորուն[1] մարմնոյ տկար է, և բանն արհամարհեալ։ Տեսանեմս զխեցին արհամարհել, տեսանեմս զպատուիրանն զիմորդ որպէս եղև առ անկատար վարդապետսն. տեսանեմս զի յաղագս նոցա փոքրր, և ոչ յաղագս իւրոյ արժանաւորութեան։ Հեթանոսաց է գործ բանիւք զաստուածայինսն արհամարհել, և զվատթարսն աստուածացուցանել. այնպէս առ նոցա իմաստունքն կոյս կանանցն և արանցն ցանկութիւնս յերկար բանիւք յարմարեցին և յաղագս այ, որք արագագոյնս ինչ ասացին։

Ունիմ լոյս, ոչ ինչ են ինձ պէտք առաւօտք երևմանց. ունիմ արեգակն, ոչ կարօտիմ փայլատակման. ունիմ զմնութիւն, ոչ հայցեմ զքննութիւն. ունիմ ըզկենակիցն, 'ի բոզէն 'ի բաց խոտորիմ. զբոզն Բաբել գիտէ։ Հարցանեմ զհարսին զփեսային զխորհուրդն. բոզն ապականութեան գործօնեայ, և ոչ ինչ գիտէ՝ բայց յապականութենէ։ Եւ եթէ հարցանեմք զնա, զապականութիւն մեզ պատասխանի տայ։ Իսկ եթէ զհարսն հարցանեմք, ասէ զգոյութեան իրս. այլ ոչ ամենայն ոք կարէ զհարսն տեսանել։ Ապա ուրեմն պարտ է մեզ սիրելի լինել հարսին, զի համարձակեսցուք։ Բոզն ոչ ինչ լինի մեզ խափան պատահելոյ. քանզի 'ի բազմութենէ հեթանոսական գիտութեան և հմտութեան իմն, նա միայն գիտէ զերկնայինսն՝ հարսն երկնաւոր. 'ի նմանէ ուսցուք զերկրաւորացս զյայտնութիւն։ Բոզն ասէ յաղագս ձևոցն երկրաչափականաց, վասն զի ըզբնութիւն գոյութեան ոչ գիտէ։ Կամիս ուսանել զգիտութիւն ճշմարտութեան[2]. և 'ի միւսմէ ևս 'ի պոռնիկ ծանօթութենէ խափանեալ լինի։ Քաղդէացոցն աղանդ զեգիպտացոցն կարծիս խանգարէ, և զհեթանոսացն յանդգնութիւն եգիպտացոցն երևոյթք կործանեն։ Ոչ ինչ ունիմք պէտս առ բոզին կայեանք՝ ոչ կարօտանամք կռուող գիտութեան. քանզի 'ի բաց

1 Յօրինակին Մերձաւորէ։ 2 Յօր. 'ի լուսանցսն հաստատուն։

բառնայ և բարձեալ լինի, և յաղագս թշնամութե՟ն պտուղ ոչ ընձեռեն պտղնկլին կապէնք. նա և որք են և որք երևեցուցանեն։

Այլ զի՞նչ ևս պէտք են ինձ բանիւ ստել մերձ առ նորա գիտութե՟ն, և մոլեգնել։ Մերձենամ առ հայրսրն, և նա ինձ լոյս առնէ զամենայն. ոչ վստահանայ իբրև զբոզն վարձ առնուլ. և հարազատն պատմել[1] ոչ շահավաճառս ինչ խօսի, այլ յաղագս սիրոյ փեսային։ Եղեց բարեկամ նորա, և առանց նենգութե՟ զամենայն գիտուի՟ն ընբռշխնեցից։ Վասն որոյ ասէ և աւետարանն, թէ "Որ ունի հարսն, նա է փեսայ. իսկ բարեկամ փեսային խնդութ՟ ուրախանայ լսելով զձայն նորա"։ Ուր խնդութի՟ն է, ամենայն տրտմութիւն փախստական լինի. և ուր ոչ է տրտմութի՟, ոչ մոլութիւն և ոչ տուգանք ինչ լինել կարեն՝ զոր բոզն տուժէ։ Այպս ուրեմն ոչ ունի խնդութիւն կռամոլ դիւապաշտութե՟ն, այլ տխրութ՟ լցեալ է։ Փաղաքշէ, զի ընկալցի ոք զնա. ստէ սիրել, զի որսասցի. պատրէ բանիւք խաբէութեան, զի կործանակիցս իւր պատրաստեսցէ. անճառելիս իմն խոստանայ, զի 'ի բազձանս ածցէ. ցանկութի՟ ինչ ասել անհաւանի՝ 'ի վախճանի արծաթոյ հաւանեալ. առասպելս պատմէ, և երդմամբ լցուցանէ զառասպելսն։

Յիմաստութե՟ լսելով ոչ եմ ցանկացող առասպելեացն, ով իմաստասէր. և ոչ հաւանիմ սնոտի բանից, որովք և որք 'ի քեզ են՝ տան ինձ զհաստատութի՟ն. զի ոչ արդիւնք, այլ հնչմունք քաջ երաժըշտական միայն ունին։ Եթէ կամիս, եկ դու ընդ իս խրատեցիր։ Յայտնապէս աղաղակէ տէրն. "Ուսարուք յինէն, զի հեզ եմ և խոնարհ սրտիւ. և գտջիք հանգիստ անձանց ձերոց"։ Քեզ նախ քան զգիտութի՟ն զամբարտաւանութի՟ն զգեցոյց բոզն, և յառաջ քան զհանճար մտացն զհպարտութե՟ն վարդապետեաց զառաջին ճանապարհ չարութե՟ն։ Տեսանելով և յաղագս այլոց մարմնոց ոչ յերկուանամ։ Օրինակքըն զկորուստ անձին նշանակեն. աւանդութիւնքն զի՞նչ արդեօք ցուցանեն օգտակարագոյն։ Որ 'ի քեզ

1 Յօրինակին պատմել։

նշանակեալ են բանից շարամանութիւնք, կռիւ է. ամենայն իրօք զինքեան զպատերազմն մարգարէանան: Տեսանե՞ս, զի հակառակութեան է բոզն վարդապետ. քանզի յոլովս նուաճեալս յինքենէ պատրաստեաց: Անդ ուսանիմ, ուր ձրի վարդապետելով առանց նախանձու և համառօտ զճշմարտութենէն աւանդեն: Մերձ նստիմ՝ ի շնորհսն, զի ոչ դուզնաքեայ ժամանակաւ ընդունիմ զխորութիւն և զլայնութիւն գիտութեան: Գանձք են անընբռնելիք և ՚ի ձեռն շնորհին՝ որք յառաջադիմանն ՚ի նոսա հաստատել կարեն:

Եթէ տեսցես զայն որ ընչից զմածային գիտութիւն վաճառէ, իմա զի խոտ և ցօղուն ՚ի վերայ հիմանն շինէ: Ասէ և Եսայիաս. “Կրպակաւորք քո խառնեն ջուր ընդ գինի”. ոչ միայն զնենգութիւն յայտ արար, այլ և զառժամանակեայ չարիսն յանդիմանեաց: Աղօտ է խառնեալ երկեղածութիւն, վասն այնորիկ և այնպիսեաց կրպակաւորաց գինի վաղվաղակի ապականի: Մի՞ ինչ կարծեր թէ այնպիսի վարդապետ ՚ի մասնէ առաքինութեան իցէ: Ասէ Յակոբոս. “Եթէ ոք արասցէ զամենայն օրէնսն, և վրիպեսցի ՚ի միումն, եղև ամենայնին պարտապան”: Գլուխ չարութեան անափառութիւն է. ապա ուրեմն անափառ վարդապետ ՚ի յոլովսն սխալելով և նուազիցն է պարտական: Արմատ ամենայն չարեաց արծաթսիրութիւն է, և որք վաճառենն զՔրիստոս՝ առաջնորդքն, և զշառաւեղացն զչարութեան զդատաստանսն գործով ընկալցին:

Իսկ զիա՞րդ որ լուծանէ զպատուիրանն այ, և ուսուցանէ այլ ազգ, փոքր լինել: Նուազագոյնս ինչ վայելեալ իմանի, և ոչ ամենևին դատապարտեալ: Եւ եթէ հաւատք առանց գործոց մեռեալ են, վարդապետն որ ոչ առնէ, այլ ուսուցանէ միայն, ամենայն իրօք մեռեալ է: Զայդոսիկ ընթեռնլով իմա զփոքրն զիարդ ասացաւ ՚ի տեառնէ մերմէ: Ասէ դարձեալ՝ եթէ “Դպիրքն և փարիսեցիքն յաթոռն Մովսէսի նստան. զոր ասեն ձեզ՝ արարէք, և ըստ գործոց նոցա մի՛ առնէք”: Գեղեցկապէս ուրեմն և ուղղակի վարդապետին, այլ ոչ ինչ օգտեաց զնոսա վարդապետութիւն միայն. վասն զի գործքն էին հակառակ վարդապետութեան: Զորս գործեն, մի առ-

նիցէք . գործքն ուրեմն վատթարք լաւ բանիցն ։ Ասէ այլուր ցփարիսեցիսն տէրն՝ եթէ «Բոզք և մաքսաւորք յառաջեսցեն քան զձեզ յարքայութիւն այ» ։ Դատարկ վարդապետաց ոչ է պատիւ և ոչ դուզնաքեայ, զի և ոչ ևս արդեօք քան զբոզսն նուազագոյնս պարտէին լինել վարդապետք ։

Ունին ինն առանձնաւորութի առ դատարկ վարդապետսն փարիսեցիքն . և զի՞նչ է այն . զի ոմանք բարիոք վարդապետելով՝ ոչ բարի և ոչ չար ինչ գործեն . իսկ փարիսեցիքն գեղեցկապէս վարդապետելով՝ չարաչար գործէին ։ Ցոյժ զանազանութի է, ոչ ինչ յերկոցունց գործելոյ զչարն գործել ։ Բայց ոչ միայն Յակոբոս մեռեալ կոչեաց զդատարկ վարդապետսն, այլ և ած զնա դատապարտեաց ։ Եւ երբ զայն ասաց . յորժամ զտաղանդն թաղելով պատասխանիս ինն առնել կարծէր . քանզի հաւատացաւ զբանն, զի 'ի ձեռն նորա քարոզեսցի գործով՝ տգիտաց ։ Բայց և յայնմ բանի զանազանութի գտանեմք . այսու՝ զի որ զտաղանդն հաւատացաւ, ոչ վարդապետեաց, քանզի զբանն հանդերձ գործովքն թաղեաց ։ Իսկ նոքա թէպէտ և ոչ արարին զոր ուսուցինն, սակայն գոնեայ վարդապետեցին ։

Տեսանես, զի ոչ վայրապար Յակոբոս զնա մեռեալ անուանեաց . ոչ վայրապար, այլ յոյժ հաւաստեաւ ։ Վասն զի ամենայն որ ուսուցանէ և ոչ առնէ, ոչ հաւատան . զարքայութի երկնից պատմէ վարձ գործոնայի ցբանս, և յերկրաւորս հակառակէ և սալի ։ Իբրև ճշմարիտ ասող՝ 'ի պահս քարոզէ, և առաւօտուց ուտէ . ո՞չ ծիծաղին աշակերտքն առաւել՝ քան թէ հաւատան ։ Ջժոյժկալութի վարդապետէ, և ուսուցանելովն գինոյ հոտովն նեխի . ո՞չ խաբեբայ զնա վարկանին քան թէ վարդապետ ։ Լուա՞ր ուրեք եթէ ցուցանէ ոք աղբիւր ծարաւեաց, և ինքն 'ի ծարաւոյ կորնչիցի . կամ եթէ տեսե՞ր զայր՝ որ կերակուրս բազմաց մատակարարէ, և ինքն 'ի սովոյ վախճանի ։ Ոչ կարէ ինքն, ասէ, աշակերտ լինել և վարդապետ . որպէս ոչ ինքն ձի և հեծեալ ։ Վարդապետն ասէ, զի աշակերտքն հնազանդեսցին . զիա՞րդ ինքն ինքեան հրամայեսցէ ։ Մի՞թէ թագաւոր ինքն ինքեա՞ն հրա-

ման տայցէ. ո՞չ այլք են հնազանդեալքն։ Մի՛թէ տէր առանց ծառայի՞ իցէ, և կամ հրամայէ՞ ոչ մերձ եղելոյ՝ որ հնազանդին։ Ոչ 'ի հեռուստ արարեր զօրինակացդ [1]։

Բայց և յաղագս այդորիկ ասէ ցաշակերտսն տէրն. «Գիտէք զի հեթանոսք որք իշխանքն են՝ տիրեն նոցա և իշխեն նոցա. բայց 'ի ձեզ ոչ է այդպէս. այլ որ կամիցի մեծ լինել, եղիցի քան զամեն տրուպ»։ Եւ դարձեալ. «Կոչէք զիս տէր և վարդապետ, և բարւոք առնէք, քանզի և եմ իսկ»։ Եւ ապա զի՞նչ. «Ահա, ասէ, ես եմ 'ի միջի ձերում իբրև սպասաւոր»։ Տարար անցուցեր զերկրայինսս յերկնաւորացն հանգամանս. և ահա ո՞յ սահմանն զքեզ ոչ ընդունի 'ի խոնարհութիւն վարդապետացն յեկեղեցոյ արժանաւորութիս։ Եթէ ոք նուաստ խորհիցի առ ձեզ, ոչ է վարդապետ. որքան ինչ ասացէ, ամբարտաւանութիւն է, ոչ այլոյ իրիք առաւելութիւն։ Զարախոսեն զնմանէ, և ոչ զՅակոբայ զարդարոյ առնէն։ Եթէ խնդրես զամբարտաւանն առաջնորդս բանիցն, գտանես զիմաստակսն և զատենական դպիրսն, որք ողաբողոմաւն և մաւրուօք վիճին, ամբարձեալ յօնօք զքեզ խրատեն։ Ոչ ո՛ք է առ մեզ այնպիսի վարդապետ, քանզի գործովք հաւանեցուցանեն, և 'ի գործոց անտի զօրինակն ընձեռեն։ Ոչ բանից են վարդապետք, այլ ոգւոց խնամակալուք. ոչ զբանս որսալ հրամայեն, այլ զանձինս առաքինոյ և զկեանս։ Առ որս այլքն նախ քան զգործսն են նոցա վարդապետք։ Այլք առ ուսողսն՝ առ որս գործքն պատմեալք են՝ աշակերտքն և վարդապետք մի են յաղագս գործոյն, թէպէտ և ոչ վասն ուսմանն։

Ո՞չ հաւանիս բանիցս. սակայն նմին իսկ հաւանեցիր բնութեան իրացն։ Հիւսունք զաշակերտս գործով ուսուցանեն, այլ և բանիւ ցուցանեն զոր վարդապետեն. նոքին աշակերտք և վարդապետք, վասն զի գործակից լինելով ուսանին, և ցուցանելովն վարդապետեն։ Նոյնպէս պարտին և եկեղեցոյ վարդապետք. որպէս այլում ումեք հնազանդելով՝ աշակերտք

1 Յօրինակին զօրինակդ. 'ի լուսանցսն ունի։

լինին և վարդապետք։ Քրիստոս է իմաստութիւն Ա̃յ և զօրութ̃ի. Նա ոչ անարժան վարկաւ ասել՝ "Ես զոր տեսանեմ զՀայր իմ առնել, և ես առնեմ"։ և դու ասես. ոչ պարտ է աշակերտ լինել վարդապետին։ Նա ասէ. "Զոր ինչ լուայ 'ի Հօրէ իմմէ, զայն խօսիմ"։ և դու յանդգնիս ճշմարտութե̃, 'ի քեզ մերձեցուցանես զդատապարտութ̃ի։

Ո՞չ ծառայն և տէրն միոյ բնութեան են. իսկ Աստուած և մարդիկ այլ և այլ բնութե̃։ Եւ արդ եթէ Աստուած 'ի մարդիկ զինքն նուաստացոյց, դու զքեզ 'ի նմանակիցս մարդիկ ո՞չ խոնարհեցուցանես, այլ 'ի վեր ամբառնաս։ Թագաւոր և նորին հնազանդեալ միոյ բնութե̃ են. Քրիստոս և մարդիկ անբաւ բանիւք են աննմանք։ Եւ նա ծառայ և սպասաւոր եղև ուսուցանելով աշակերտացն. դու անարժա՞ն ինչ կրեսցես՝ եթէ ուսանիցիս վարդապետե̃լով, և գործակից լինիս ցուցանելով, և աշխատութե̃ս գնիցես գործով զիրան աշակերտացն՝ որոց շահն ոչ ժամանակեայ է։ Անդաստանն առաջի կայ. թէ ոչ գործիցես, և այլոց ասիցես գործել, զքեզ ինքն տուժեսցես յաւիտենական վայելիցն։ Ահա փայտ և հիւսունք. աշակերտք և վարդապետք շահս ընդունին, որք ցուցանեն որովք անօթովք վարին։ Որք գործեն մահիճ, կամ բազրոնս և աթոռս, ոչ 'ի գիտութենէն շահն, այլ գործովն՝ որ արար և վաճառեաց և շահեցաւ. որ գիտացն և չարար, ունի լուալիս և ոչ լուացաւ. և ձի 'ի պատերազմի անպիտան, և հանդերձ ձմերանի անյարմար։ Գեղեցկապէս և Առաքեալ ասէ. "Գիտութ̃ի հպարտացուցանէ, այլ սէր շինէ"։ Ա̃ծային գիտութ̃ին ոչ տուժէ. բայց ձեր գիտութ̃ի տուժէ, զի ոչ է ա̃ծային։ Զրկէ որ զայս գիտութ̃ի ունի վարդապետ՝ ոչ միայն զինքն, այլ և որ լսեն։

Թէ ընդ վնասուք է Քրիստոսի դատարկ վարդապետն, բարիոք ուրեմն և Յակովբոս զնա մեռեալ կոչեաց. քանզի մեռեալք ոչ ինքեանց օգնեն ինչ, այլ կենդանեացն բեռն են, և տաղտկութ̃իք. զի նեխութիւնքն ոչ փոքր ինչ վնասեն։ Զհաւատն առանց գործոց Արդարն մեռեալ կոչեաց. և ես պատկառեմ

մեռեալ ասել զդատարկ վարդապետն։ Տեսանե՞ս տ-րուպ յարքայութեանն զմեռեալ վարդապետն. աստ դատարկ վարդապետաց, և անդ մեռեալ լինելոց է։ Զի՞նչ է մեռելութի, եթէ ոչ տուգանք արքայութեն. զի յաւիտենական աշխարհին ոչ վայրապար է մահ. տրուպ յայնպիսի մեռելութի 'ի ներքս եած։ Ասնէ զնոյն և այլուր ասելով. "Զի՞ մտեր 'ի հարսանիսս աղտեղի հանդերձիւք". ցուցանէ անարժան։ Եթէ նա լուանալ զպատմուճանն կարիցէ, և փոքրն ոչ ինչ համբերիցէ. եթէ նա առակաւ ունէր զհանդերձն՝ ոչ եցոյց յաւիտենական դատաստանին պարտաւոր, և զտրուպն անպա՞րտ տանջանացն արասցէ։

Ո՞չ թուի քեզ՝ որ 'ի հարսանիսն աղտեղեալն էր՝ տրուպ լինել, զի ոչ ունէր միտս զինքն առաջի կացուցանել զուարճացեալ. նոյնպէս իմա ինձ զվարդապետն նմանապէս յարքայութեանն դատապարտեալ։ Ոչ թողու քեզ դատաստան լինել՝ 'ի հարսանիսն ամենեցուն զուարճացելոցն, և զոմն 'ի սովոյ վախճանեալ. այնպէս իմա և զփոքր վարդապետն դատարկ՝ յարքայութենէն տուժեալ զարդարութին։ Զյոլովս 'ի բազմաց արդարոցն 'ի բաց մղեսցէ։ Ուսոյց և ոչ գործեաց. նոյնպէս տեսցէ զարքայութին, և այնմ ոչ հանդիպի. մեռեալ հաւատացեալ եղև, մեռեալ լիցի։ Եւ թագաւորք մեռանին յընչից իւրեանց և օտար լինին. և որ մեռեալ վարդապետն է, յարքայութենէն զրկեսցի։ Մեռեալ մշակ անուն ունի, ոչ առնու վարձ. և մեռեալ վարդապետ գործս ոչ ունելով՝ յարքայութենէն երկնից անո՞ւն ընկալցի յիրացն օտարացեալ։ Որ զօրաւոր ասի և յաղուեսէ երկնչի, ոչ օգուտ գործէ. նոյնպէս ոչ ինչ ընկալցի անգործ վարդապետն՝ յարքայութենէն 'ի բաց բարձեալ։ Նա է տրուպն՝ որ արտաքս անկանի, իբրև 'ի նոր ընտրեալ զինուորս գտանիցի անպիտան, և 'ի մէջ բազում անօթոց խորտակեալ և անպիտան։ Բազում անօթք խեցեղէն 'ի պէտս բերեալ լինին. այլ թէ գերազանց ևս է քան զայլսն ձևով և բեկ, քան զամենեսեան և զլոյժ տրուպսն է անպիտան։ Նոյնպէս թէ և մեծ ոք իցէ 'ի վարդապետութեանն, անգործ լինելով՝ և քան զաշխարհականս ևս տրուպ լինի։

Կամիմ քեզ և յաղագս այլոցն ևս ուսանել, քանզի գիտեմ յառաջ ասացելոց զմտածութիւն։ Ամենայն իրօք, ասես, անիրաւ է հրամանն՝ թէ 'ի միումն սխալեաց, լինի բաւանդակ չարեացն պարտական։ Ընթերցիր զաւետարանական բանն, և գիտասցես զայդ 'ի ճառի՝ թէ որպէս սքանչելի ասացաւ։ Քանզի ասէ՝ թէ "Որ 'ի փոքունն անհաւատարիմ է, և 'ի մեծին անհաւատարիմ է„։ Համեմատեա զմտածութիւն ընդ մտածութեան, և լուծանէ զխնդիրն։ Եթէ ոք աստղամբ սպանանէ զոք, այնպէս դատապարտեալ լինի, որպէս ոք աշտէիւ սպանանէ։ Եւ օրինադիրն յաղագս փայտ ժողովելոյ 'ի շաբաթին, եսպան իբրև զհայհոյիչ և զչար։ Այո, ասէ, երկոքեան ատեանքն չարք են և անիրաւք, և աւետարանական հրամանքն յոյժ քան զհաւասարութիւն նուազեալ։ Ապա ուրեմն պարտ է՝ որք դանգ մի պարտին, պահանջել 'ի նոցանէ բիւր դահեկան. և որք զգլուխն կափեն, իբրև զսպանող դատել։

Ո՛չ ընդ այլ իմանաս և այլ օրինակ՝ զի հարցանես և խոտորես զուղղութիւն 'ի խնդիրս։ Ոչ յաղագս քանիութեան ասաց տէրն՝ թէ որ 'ի փոքունն անհաւատարիմ է, և 'ի մեծին անհաւատարմագոյն, այլ և վասն նորին իսկ անհաւատութեան զուգահաւասար դատեցաւ։ Որ ոչ հաւատայ թէ է ած, ընդ այնմ որ հաւատայ թէ է ած, և անհաւատ՝ եթէ և զամենայն ինչ կարէ։ Եւ Յակոբոս յաղագս գործոց անցանելով բանիւ, զանգործութիւն բամբասեաց, ոչ 'ի քանիութենէն, այլ 'ի նմին իսկ յիրէն։ Պարտական է անգործ՝ որ ոչ զմի ինչ և որ ոչ զամենայն պահեաց զպատուիրանն. զանգործութիւն յանդիմանեաց, և ոչ զամենայն ամբարշտութիւնն հակառակ նմա գրեաց։ Նոյնպէս զանգործութիւն 'ի միում պատուիրանին՝ յաղագս ամենեցուն ցուցանէ զպատճառն. զի եթէ զմինն ոչ առնէ յաղագս դատարկութեան, զիա՞րդ զամենայն պահիցէ. ապա ուրեմն անգործութեամբ միոյն պարտական ամենեցուն եղև։

Իսկ յաղագս սպանման մի՛ զիարդ եղև՝ հրաշանաւ, այլ թէ եղև՝ իմա. ոչ զարարողն ինչ խնդրես, և ոչ 'ի ձեռն որոյ լինին, այլ զեղեալն, և յոր լինին։ Սպա֊

նմանէ օձ զմարդ, և շուն զնապաստակ. և զի՞նչ յաղագս այդորիկ փոյթ օրինացն: Մեռաւ՝ 'ի ձիոյ զըմբեալ, և կամ յիշոյ հարեալ. կամ ձի յուսմբքէ վիրաւորեալ, կամ ոչխար յառիւծէ. և զի՞նչ յօրինացն յաղագս այդոցիկ: Հայցուածս առնէ, այս է՝ թէ հովիւն մատնեաց, կամ ձիաշարժն չարաչար գործեաց, և կամ արուեստիւ մարդ՝ օձիւ զթշնամին եսպան. զայնոսիկ խնդրեն օրէնքն, և յաղագս նոցին բազումեն տանջանքն: Եւ Մովսէս ոչ փայտին աղագաւ եսպան՝ որ քաղէրն զփայտ, այլ վասն ամպարշտութեան: Եւ որ զասեղն 'ի կիր արկանէ սպանման, յաղագս սպանմանն դատեալ լինէր, և ոչ յաղագս երկաթոյն փոքրկութե՟ պատճառ գտանի:

Նոյնպէս իմա ինչ և զանգործութեանն յանդիմանութի՟ 'ի Յակոբայ՝ իբրև բանիւ խմորոյ լինել: Խմոր փոքր ինչ է. այլ թէ չար ինչ իցէ, զյոլով զանգուածն ապականէ: Նոյնպէս որ յանգործութեանն արհամարհութիւն միոյ պատուիրանին լինելով՝ ամենեցուն է պարտական. քանզի և ընդ ամենայն իսկ պատուիրանն էանց անգործութեան զօրութի՟: Ասէ և Առաքեալ, թէ «Փոքր մի խմոր զամենայն զանգուածն խմորէ»: Նոյնպէս և Յակոբոս ասաց՝ թէ ամենայն չարեաց եղև պարտական, որ զանգործութի՟ միոյն ընկալաւ: Նոյն ինքն դարձեալ ասէ՝ թէ «Ոչ միայն որ գործեն ինչ չար՝ պատճառք են չարի, այլ և որք հաճոյակիցք լինին գործողացն»: Ապա ուրեմն անգործն ամենայն դատարկի հաճոյակից լինի, թէպէտ և ինքն 'ի մէջ ոչ իցէ: Եւ եթէ զիրեարս վատթարքն չինեն գործով և հաւանութե՟, գեղեցիկ ուրեմն ասաց և Պաւղոս և զոչ գործօնեայս չարին՝ պարտականս յաղագս հաւանութե՟ն. և Յակովբոս՝ թէ ամենեցուն պարտաւոր՝ յաղագս անգործութե՟ն զօրէնսն:

Սուղ ինչ քացախ զբովանդակ հնձանս գինեաց ապականէ, և անհեշտակի համեմ զբովանդակ կերակուրն ապականէ, և դառն դդմոյ ծայրք զեղխնէի զկաթսայն անուտելիս արար: Գեղեցիկ և Անգէէ մարգարէի քահանայքն պատասխանիս արարին. զի՞նչ, ասելով, թէ որ յանմաքրութեան մերձենան՝ պղծին, և որք 'ի սուրբն՝ ոչ սրբին: Զայս և Մովսէս յաղագս

բորոտութ՟ն գրեաց՝ թէ բորոտք զքահանայսն պղ-
ծեն, բայց նոքա սրբութ՟ն խուրեանց զնոսա սրբել
ոչ կարեն։ Եղև ուրեմն բորոտն պարտական՝ որ 'ի
տանն էին՝ անմաքրութ՟ն պատճառ, որպէս բանջարն
կատոսային։ Ոչ անարուեստաբար գրեաց օրէնսդիրն՝
թէ այնպիսի ինչ է բնութ՟ն մարմնոյ, իբրև զդառն
ինչ ցուցեալ բանջար. և ոչ անառաքինաբար Յակո-
բոս սահմանեաց՝ թէ բնութիւնն է չարութ՟ն, թէ
ընկալցիս 'ի կատոսայ քո զդառնութ՟ն սատանայի՝ որ
'ի նմանէն արտաքս ընկենլոյ պատճառս։ Եւ որ ընդ-
ունի զմիոյ պատուիրանի զվրիպումն, լինի ամենեցուն
պարտական. որպէս Ադամ եղև. եկեր 'ի դառնու-
թենէն, և զամենայն բնութ՟ն դառնացոյց [1]. Ճաշա-
կեաց միայն 'ի վայրենի դդմոյն, և վաղվաղակի զա-
մենայն զմարդկային զկեանս աղարտեաց։ Ասէ և
մարգարէն ժողովարանին. "Զիարդ դարձաւ 'ի դառ-
նութ՟ն այգին ճշմարիտ. զի բարկութ՟ն վիշապաց գինի
դիւացն, և ողկոյզ դառնութ՟ն նոցա"։ Զպարտա-
կանն դանգի և զբիւր դահեկանի՝ պարտապանս կո-
չեմք. նոյնպէս և զանհաւատն և զյանցուցեալն և
զմարդասպանն և զսեղանակողոպուտն։ Յաղագս քա-
նակութ՟ն է բանս, և յաղագս որպիսութ՟ն։ Որոշումն
մերձ դնելով յանդիմանէ զքանիօնութ՟ն. հաւա-
սարութ՟ն ցուցանէ զնմանութ՟ն և զանմանութ՟ն։
Դանգն և բիւր դահեկանն քաջայայտ են. այլ վասն
դանգին թուի ինձ կռիւ մեծագոյն պատահեալ,
քան թէ յաղագս բիւր դահեկանի. և է ուրեք որ
զբիւր դահեկանն պարտի, դիւրով հատուցանէ, քան
թէ որ զդանգն։

Լինի և սպանումն թեթևագոյն քան զթշնամանս,
և շնութ՟ն դուզնաքեայ առնլով զդատաստանն քան
զայպանելն զոք և զարհամարհելն։ Ունիմ և յանծայ-
լին գրոց զօրինակն. և զերկոսինքն յանդիման լեալ
կացուցից։ Քանան և Քամ հայր նորին յաղագս ծա-
ղու յաւիտենական դատապարտեցան. և Մովսէս
սպանանելով զեգիպտացին՝ ապրեցաւ 'ի պատուհա-
սից. Եւս վասն թշնամանելոյ զհայր և զմայր՝ պա-

1 Յօրինակին 'ի լուսանցսն կայր արար։

հանջեցաւ պատիժս մշտնջենաւորս. և Դաւիթ չնացաւ, և 'ի տանջանաց զերծաւ : Զպատճառսն խնդրեսցուք զամենիդ. և մե՛ որ ակամայն ինչ պատահիցէ :

Չար է փոքր պատճառաւ գործել ինչ, քան ակամայ զմեծ ինչ չար : Ոչ գիտէր Մովսէս՝ թէ միով հարկանելով մեռանի եգիպտացին. յաղագս նորին և փախուստ ընտրեաց, զոր օրէնքն ակամայ սպանողաց աւանդեցին : Ոչ գիտէր և Դաւիթ՝ եթէ Բերսաբէ 'ի վերայ տանեացն լուանայր զինքն. ուստի և եգիտ պատասխանիս 'ի յանդիմանութենն, և բամբասեաց զինքն : Եւ Բերսաբէ ոչ յաղագս նորին ել 'ի տանէն, վասն որոյ և դիւրաւ վճարեցաւ 'ի բամբասանացն. այլ զի զօրէնս դաշտանութեան լցցէ, զօրէնս ամուսնութեան կորոյս : Եւ զի օրինացն հաւանեսցի, եղև անօրէնութեան գործօնեայ. ուստի և դիւրահնար ազատեցաւ 'ի դատապարտութենէն : Իսկ Քամ ոչ միայն ծիծաղեցաւ, այլ և հռչակեաց ևս. զի յայտնի լիցին բարք ամբարշտին՝ թէ և յայլ յանպիտան յիրս դիւրաւ ձեռնարկէ. վասն որոյ եղև ամենեցուն պարտական. յանդիմանեալ 'ի փոքուէն վասն այլոցն, և բարուցն երևեալ թէ և յայլսն խնդայ և հաւանի : Եսաւ ոչ միայն լուտացաւ զծնողսն, այլ և աղօթէր վասն նոցա մահու. զի վասն եղբօրն խաբելոյ վրէժ առցէ : Եւ այն դանգ եղև գեր վերոյ քան զբիւր դահեկան. վասն զի ունէր բարս իժս և մեծամեծ չարիս. աղօթէր, զի արասցէ չար : Գեղեցկապէս ուրեմն ասաց Դաւիթ, եթէ այնպիսեացն աղօթքն 'ի մեղս դարձցին :

Յակոբոս ոչ անգիտացաւ 'ի բաց մերժելով զհաւատսն ա̄յ առանց գործոց. և ասէ՝ թէ և դևք հաւատան թէ մի է ա̄ծ, և ընդդիմանան գործովք հաւատոց բարեպաշտութեան : Կարծես չարաչար ասացեալ Յակովբու՝ ամենայնի պարտական լեալ զչարահաւատն, որ 'ի ձեռն գործոց ընդդէմ ցուցանելոյ զամենայն օրինացն իրսն արհամարհէ : Ոչ յաւելում ինչ 'ի բանն, զի և ոչ կարօտ ինչ է ցուցանելոյ յաղագս անգործ վարդապետացն : Գիտեմ զի ասացի անգործութեան զօրութիւն յառաջագոյն. և կամիմ քեզ

ցուցանել՝ թէ ոչ միայն հակառակ ընդդիմակին ընդդիմանայ, այլ և նմին իսկ չարին յոյժ չարն: Եւ այս է չարին 'ի բաց արարումն. զոր օրինակ ժանկ երկաթոյ, նոյնպէս չարին 'ի բաց լինել անգործութեան կաչեմ զօրութիւն զ'ի բացն լինել. քանզի պտուղ անգործութեան ոչ ինչ է, բայց եթէ մահ. զի կեայ պահելով՝ որ 'ի դատաստանս յաւիտենականս որոշէ զնա. և մեռեալ է, վասն զի յինքեանն ոչ շարժին, թէ ոչ այլոք շարժիցէ զնա: Այս է մեռելութիւն չարութե իրք, զի առանց այլոյ իրիք ինքն ըստ ինքեան ոչ ինչ է, և մահու կեայ. քանզի սպանանէ զինքն: Զի թէ ոչ կայր, զիարդ գործէր կենդանեաց զմահ: Նոյնպէս կենդանի ապականութիւն և ընդունայնութիւն կեայ, քանզի գործէ եղելոցս զարտաքս հեղումն. 'ի մտածութենէ չարին ծանիր թէ մեռեալ է: Մահ կոչէ և ընդունայնութիւն, ապականութիւն, դժոխք, կորուստ. այլ մեզ զնա պատրաստեմք կենդանի. վասն զի 'ի ձեռն անօրէնութեան զօրանայ 'ի մեզ:

Ոչ ինչ ունի չարութիւն պտուղ, զի և ոչ ինչ ապականէ. սերմանեալն պտուղ ընձեռէ. մարմին 'ի հեշտութենէ ծնանի, և բնութիւն հեշտութեան մարմնական ապականութիւն է: Ապա բնութիւն ուրեմն ոչ ունի չարութիւն. զի թէ ունէր բնութիւն ապականելով, և ապականեալ լինելով պտուղ բերէր: Այլ պտուղ չարութեան խոտորումն է, և 'ի խոտորմանէն զանգումն եղև, որ յերկաթէ ժանգն 'ի յաղտ մարմնոյ: Դժոխք և կորուստ յայտնի են տեաւն, վասն զի անյայտաբար զէութիւնս ապականեն: Զոր օրինակ ոչ իմանամք եթէ զիարդ ժանգ ուտէ զերկաթ, նոյնպէս զկորուստն՝ թէ որպէս ապականէ զմարմինսն: Եւ եթէ զոր տեսանեմքն ոչ զգամք, զոգիս զորս ոչ տեսանեմքն ո՛րչափ ևս առաւել անգիտանամք ապականեալս 'ի չարութենէն 'ի կորստեան 'ի ներքոյ անկեալս բանական իրացն: Այս և որ չարութեան պտուղ ընդունայնութեան: Ապա ուրեմն որք զչարն գործեն, յիրաւի անգործք կոչին, վասն զի պտուղ ոչ ունին, այլ պտուղ ապականութեան:

Անգործ ուրեմն վարդապետք գործօնեայք անօրէնութեան են. և զիարդ պատուհաս ոչ 'ի ներքս գոր-

ծեացեն։ Զօրանան անխրատելով և զրկեալք լինելով. և անգործք են՝ ոչ պտուղ ծնանելով, և ոչ այլում ումեք պտուղ բերեալ թողացուցանեն։ Եւ այսու օրինակաւ եղև մին ամենայնի պարտական։ Զի և ըստ մարմնոյ զեկուցանել զՅակովբոս իմացուք. Ոչ է անվրտանգ վարդապետ ոգւոց լինել. վասն որոյ պատուիրէ նոյն ինքն և ասէ. "Մի՛ բազումք վարդապետք լինել, եղբարք իմ. գիտելով՝ զի բազում դատաստան առնելոց եմք. եթէ ոք լսող բանին է և ոչ արարող, հայեցաւ յերեսս իւր հայելեաւ՝ և մոռացաւ որպիսի էրն"։ Իսկ Պաւղոս յանզանազան գիտութէ ասէ լինել զայնպիսին պղինձ հնչեցեալ, և կամ ծնծղայք՝ որ ղօղանջեն, զօրանալով իբրև յաղթերէ յաւաշ եկեալ զգիտութիւն 'ի ձեռն շնորհին։ Ասեն՝ եթէ հայելի 'ի պղնձոյ և յանագոյ լինի. յերկուսին ուրեմն ձայնակցութ ասացին զպղինձն, առ 'ի գործս իրացն խափան լինել իմացան։ Ընդէ՞ր զպղինձ երկոքին առնուն յասել. վասն զի հեթանոսաց իմաստութե պատճառակից իմն իմն իմաստութեն է։ Եւ Դանիէլ զպղինձն 'ի թագաւորութի հեթանոսաց մեկնեաց։ Քանզի որք բանիւք և գիտութ հեթանոսացն վարին 'ի գործս, պղերգագոյն անկեալ դնին յատենական արուեստոն։ Իբրև ճանճք յարմաւ նստին. զի մի և մեռեալս տեսանելով ոք զնոսա՝ 'ի բաց ընկենուցու։ Ուրախ լինին 'ի բաց վճարեալք 'ի թախանձանաց, և զամբոխն յինքեանս չեղջաբար ժողովեն։

Հայելի՝ իմաստասիրացն բանք են, երևոյթս միայն ընձեռելով և ոչ գործ։ Որք առ հայելիան անցեալ զեգերին անգործ լինել, քանզի մոռանալով և յիշողութե կրթին, առաւօք երևութիցն պարապեն։ Գիտութիւնն անմիտ 'ի հայելիան է. ոչ լաւագոյնք ինչ քան զինքեանս լինին 'ի հայելիան նշմարելով, և ոչ գտեալ զարատ ինչ 'ի բաց բառնալ։ Հայելին երևութիցն միայն է առիթ. ընդունայնութի իմն պատճառ հեթանոսական վարք կենացն։ Փոփոխեմ զհայելին, և դտանեմ զնա կեանս առ ժամանակեայս։ Զամենայն զօր ունի ոք՝ մեռանելով աստէն լքանէ. նոյնպէս և որ տեսանէ 'ի հայելոջ զինքն մոռանայ։ Վասն որոյ բարիոք ասաց՝ եթէ "Հայեցաւ 'ի դէմս

լինելութեն իւրոյ, և մոռացաւ թէ որպիսի ոք էր „։ Քանզի մերձաւոր կեանքս զմարմնականս իբրև զանուրջս ցուցանեն, և դարձեալ զնոսա 'ի բաց բառնան։ Եկեր, և դարձեալ քաղցնու. էարբ, և դարձեալ ծարաւէ։ Ոչ ինչ օգուտ է յայգելոյն առ հանդերձեալն քաղցն. քանզի մոռացումն լինի մերձակայիցն յորժամ հանդերձեալ սովն սպառնայ զմըտանգն։ Այսէ և ոմն իմաստուն. "Յաւուր չարեաց անյիշութիւն է բարեաց „։ Այնպիսիք ոմանք են՝ որք զձև բարեպաշտութեն ունին, և զիրացն օտարք են. նոյնպէս և վարդապետք՝ որք զբանն ունին, և զգործս յինքեանս չցուցանեն.

Ունիմ քեզ ցուցանել՝ զի զհայելին և Պաւղոս գուշակեաց. քանզի յաղագս որք ըստ իւրեանց կամացն կրօնաւորին, ասաց երբեմն. "Ունին զկերպարանս բարեպաշտութե, և 'ի զօրութենէն ուրացեալք են „։ Տեսե՞ր զմեռեալ զհաւատոն, զիարդ ինչ ոչ օգնէ՝ որք զգործսն ոչ ունին։ Տեսանես, զի ձևով միայն հաւատն հայելի է մոռացման և մոլորութե։ Տեսանեն մարդիկ միայն զբարեպաշտութիւն. տեսանեն 'ի վարդապետսն զբանն քաղցրահնչող, և գործս ոչ տեսանեն. ընդ որում յաւէտ մոռանան զորս լուան։ Յիրաւի ուրեմն յաղագս այդպիսեաց վարդապետաց ասացաւ՝ թէ պղինձ են հնչողքն, և ծնծղայս ղօղանջողք.

Կամիս գիտել և զեկեղեցոյ վարդապետաց կարգս. Պաւղոս քեզ ասէ, եթէ "Եղէ ընդ Հրէայսն իբրև զՀրեայ, զի զՀրեայսն շահեցայց. ընդ օրինօք իբրև ընդ օրինօք, զի զնոսա շահեցայց. ընդ անօրէնս իբրև զանօրէն, ոչ եւս անօրէն, այլ օրինաւոր Քրիստոսի, զի զանօրէնսն շահեցայց. ընդ ամենեսեան եղէ ամենայն, զի յամենայն իրս զոմանս ապրեցուցից „։ Պարտ ուրեմն է կերպարանակից լինել, որ հանդերձեալ է գեղեցիկ վարդապետել։ Ոչ զկեղծաւորութի ուսուցանէ Պաւղոս, այլ զխոնարհելն, որք զողջոյս ուսուցանեն։ Վայել է ուրեմն և յիւրաքանչիւր ոք մերձենալով, որպէս կարող ոք է, զոր Պաւղոս ասաց։ Այլ զի յաղագս գործոյ է բանս, զի՞նչ պարտ և արժան իցէ՝ որք 'ի կատարելագոյն կեանսն՝ գործել արդի ուսելոցն, զի յարմարեալ բանին և զգործն ցու-

ցանկիցեն . որպէս և աշակերտքն գործով յուսումն ձեռնարկիցեն ։

Դարձեալ քեզ համառօտագոյնս աւետարան պատասխանի տացէ՝ եթէ կատարեալք որք զտղայս ուսուցանեն, ոչ ինչ հարկ ունին զտղայոցն գործ գործել ։ Եւ զայս ասէ Պետրոս, յորժամ հրամայեաց ըղ-դահեկանն յաղագս իւր և նորա . և եթէ մանաւանդ թագաւորք ոչ պահանջեն հարկս յորդւոց ։ Տացուք զհարկն ոչ իբրև պարտապանք, այլ զի մի պատճառս ինչ ընձեռիցեմք ումեք, և տղայոցն գործով ցուցցուք ոչ յանկատար 'ի գործսն կալ մնալ, այլ զի զանկատարսն շահեսցուք ըստ առաքելական բանին ։ Որ կարող իցէ հարիւր ասպարէզ ընթանալ, ոչ զրկի տասն քայլ ոտին գնալիս . և որ բառնայ հարիւր դանգ, ոչ զգայ տասն բառնալով . և որ զաղբիւրս ունի, ոչ ինչ խափանի տալով կայլթ մի . քանզի կարէ և զկատարելութեն զաղբիւր ունել, և զկաթ մի տալ կարօտելոց . որ պահէ զեւթն օր, և վարդապետէ ըղ-հանապազորդեան զպահսն, մի տղայանալով վարդապետեսցէ տղայոց . վասն զի մի օրն 'ի ներքոյ է յեւթնն՝ որ թերին է ։ Որ ասեն դեգերել յեկեղեցւոյ ժողովս և միշտ աղօթել և զբոլոր գիշերսն հսկել, և զտղայսն օրինակէ և զառամագոյնսն, և կատարելութեն օգնական լինի, և յաղագս ողորմածութե խրատէ, և զհանապազորդեայ բաշխել զհացն, զի՞րդ ոչ ուսանին որք յուսումն մտեալք են՝ յաւելորդաց նորա բաշխելով այլոց, որ զպարկեշտութի ցուցանէ . և որ ոչ օրինաւոր ամուսնութիւն ունէր՝ տայ, ո՞չ արդիւք խրատիցէ և յամուսնացն իւրեանց ժոյժկալեալ ։

Այնպէս առնելով Պաւղոս գրէր գաղատացոցն . “Որդեակք իմ, զորս դարձեալ երկնեմ մինչև տպաւորեսցի Քրիստոս 'ի ձեզ „ ։ Ծնանի զորս ծնեալն էր, զի ցուցցէ յառաքինութենէ նուազեալ զմնութիւնն ։ Ծնանի զոր ծնաւն, զի հաւատասցուք թէ շնորհն ոչ է ընդ կարեօք բնութեն, այլ յինքենէ, զորս կամի բաշխէ՝ որք մերձենան առ նա ։ Երկրորդ անգամ լինի Առաքեալ խորհրդոց նոցա հայր . որ և ոչ միանգամ ոչ ծնաւ զնոսա մարմնապէս ։ Արդ որպէս պատշաճ իցէ վարդապետաց զորս միանգամ

ծնանին՝ գեղեցկապէս մնուցանել, զի մի՛ երկիցս ծը-
նանիցին յոլովս աշխատութեամբ համբերելով։ Պաւղոս
աւետարանիչ էր և վարդապետ, և զծնեալսն դայե-
կացն յանձն առնէր և տայր ցդաստիարակսն, և նո-
քա պղերգութեամբն զծնեալսն զրկեցին. և դարձեալ
նմա ցաւ ընդունել պատրաստեցին։ Եւ դու որ յե-
կեղեցւոջն քում դեգերեալ կաս՝ պարծիս ծնանել և
մնուցանել. զի ոչ հարկ ինչ է 'ի բաց գնալ յաղագս
քարոզութեան, և 'ի մնուցանելն ոչ պղերգանալ, զի
դարձեալ քեզ ցաւք և երկունք հասցեն։

Տեսանես զպղերգացեալսն առ մնունդն. ապրին
այնպէս՝ իբրև 'ի հրոյ. վասն զի դարձեալ երկնեն,
զի զորդիսն ծնանիցին։ Խոտկարութիւն մնունդն դժըն-
դակագոյն է, և 'ի վերս վերստին ստեղծանել դըժ-
ուարաւ ուղղի։ Նոյնպէս և դարձեալ ծնեալ քան
զառաջինն ծնունդն է դժուարին։ Յաղագս այնորիկ
և ասէ իսկ, թէ "Այնպէս ապրեսցի՝ իբրև 'ի հրոյ„. զի
վտանգաւոր է դարձեալ երկնելն, և անյայտ ծնուն-
դըն. և հաւատացելոց վարդապետաց և աշակերտաց
քան զուղղորդ ընթանալ՝ դժուարագոյն է զկնի խա-
փանելոյն ուղղել և ապաշաւել։ Դժուարին է զկոր-
ծանեալ տուն կանգնել քան զոչ լեալն շինել, և ըզ-
նաւ կազմել զապականեալ դժուարագոյն երևի քան
նոր առնել։ Նոյնպէս և զանձն խոտորեալ 'ի մեղսն
վերստին ստանալ դժուարին է։

Զայս զնուաստանալս ուսաւ Պաւղոս 'ի Քրիստո-
սէ։ Նա ասէր. "Քանիցս անգամ կամեցայ ժողովել
զմանկունս քո, և ոչ կամեցայք„։ Որդեակք, ասէ,
իբրև որդի ծնիցելոյ. և ձագս կամի առնել զկատա-
րեալսն հաւատով 'ի գործսն։ Վասն այսորիկ Պաւղոս
ասէր. "Որդեակք իմ, զորս դարձեալ երկնեմ մինչև
նկարեսցի Քրիստոս 'ի ձեզ„. Քրիստոս, ասէ, տպա-
ւորեսցի յապաշխարողսն։ Յաղագս որոյ ասէ Պաւ-
ղոս, թէ "Որպէս զգեցաք զպատկեր հողեղինին [1],
զգեցցուք զպատկեր երկնաւորին„։ Յորժամ լսես 'ի
նմանէ զկորնթացոցն ասելով "Զի բնակեսցէ 'ի ներ-
քին մարդն Քրիստոս„, տպաւորել կամի և 'ի նոսա

1 Յօրինակին հողեղինն։

զՔրիստոս ։ Եւ արդ զի՞նչ ասէ Պաւղոս . Ծնանի Քս , տպաւորելով զնոսա 'ի նոսին յաղագս երկանցն . օրինակաւ առաքինութեան ծնանի փոփոխելով զկերպարանն ոչ ըստ գերագոյն բնութեան ։ Եւ յաղագս այդորիկ ինքն քեզ ասէ տէրն , թէ "Նա իմ քոյր և մայր , որ առնէ զկամս Հօր իմոյ ,, ։ Ապա ուրեմն և տպաւորեալքն 'ի ձեռն առաքինութեան եղբարք Քրիստոսի են . և թէ եղբարք Քրիստոսի , այլ է Քրիստոս յաղագս գերակայ բնութեան և մարդանալոյն իւրաց . և եղբարքն Քրիստոսի յաղագս նմանութեան , այլ ոչ վասն հաւասարութեան իւրեք . քանզի նոքին և եղբարք եղեն ։ Զոր օրինակ զանազանք են դէմք եղբօր և քեռ յաղագս առաւելութեան և նուազութեան արուեն , նոյնպէս իմա և զմօրէն յաղագս կատարելութեան քան զորդի և զդուստր ։

Արդ ըստ առաքինութեանն Քրիստոս ամենեցուն ծնող է , որպէս բոլորովին առանց մեղաց . իսկ նմանելով մեզ՝ լինի մայր ։ Զի 'ի ծնանելն Պաւղոսի ինքն է տպաւորեալ , որպէս թէ ծնօղ . նա և ինքեամբ ծնանի , և 'ի ծնեալսն տպաւորի , զի ցուցցէ ամենայն յամենայնի Քրիստոս ։ Քանզի և ասէ 'ի հին կտակարանսն . "Ես տեսութիւնս յաճախեցի , և 'ի ձեռն մարգարէից նմանեցայց ,, ։ Նոյնպէս առնելով և վարդապետք՝ զկատարելութիւն ողջունեն , և աշակերտացն գործով և բանիւ պիտանացու լինել .

Այսոսիկ փոփոխելով ձևացուցի յաւետարանական ձայնէն . զի ուսցիս հաւաստեաւ վարդապետել , և կամ ոչ իսկ բնաւ մերձենալ յայնպիսի իրս ։ Մկրտիչն Յովհաննէս զամենայն 'ի Քրիստոսն վերաբերեալ ասելով , "Որ ունի հարսն , փեսայ է ,, ։ Նոյնպէս պարտ և արժան է՝ որք կարողն են վարդապետել , զոր ինչ գործեն՝ Քրիստոսի գրեալ . զի և ոչ մեծագոյնք են քան զայնպիսի այրն Յովհաննէս ։ Որ 'ի Թագաւորի վերայ գլխոյ դնեն զԹագն , արժանաւոր ինչ դնել փութան ։ Արդ եթէ կամիս լինել վարդապետ , ոչ կարես անարժան ինչ ունել խորհուրդս , և Քրիստոսի [1] վերագրել . այլ արժանաւորս ։ Վասն

1 Յօրինակին՝ Քրիստոսի ։

այսօրիկ և մեք զձաւս 'ի վարդապետս փոփոխեալ ձևացուցաք. զի և Մկրտիչն 'ի նմին զփարիսեցիսն՝ որք բամբասեին փոր ձեռին՝ 'ի բաց երարձ, և զոմանս որք յերկեղածութենէն զնա կարծէին եթէ Քրիստոս է՝ 'ի բաց ընջեաց, և զոմանս ընձեռելով նմա իբրև մեծի վարդապետի դադարեցոյց. զի զհպարտութիւն վերացոյց 'ի յինքենէ, որք յաղագս բարեպաշտութեան մերձ էին առ նա՝ ասելով, "Որ ունի զհարսն, փեսայ է,,: Եւ արդ նա նուաստացուցանելով զինքն՝ վարդապետ լինել հրաժարեաց. իսկ մեք ոչ միայն զի վարդապետ ոչ եմք՝ աղաղակեմք, այլ և ոչ աշակերտք պիտանացուք: Զոր ինչ գրեմք կամ խօսիմք, կրթելով գործեսցուք, որոշմամբ և զատուցանելով. լինել զմեզ ինքեանս և զբանս մեր ոչ հրաժարեալս, պատրաստաբար ունելով. լաւաց հաւանել, և հնազանդել Ճշմարտութեան առաջնորդաց:

## ԱՒԱՐՏԵՑԱՒ ՃԱՌՔ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆՔ ԽՈՐՀՐԴԱՒՈՐՔ ԱԲԲԱՅ ԵՓՐԵՄԻ

# ՑԱՆԿ



| ԷՋ | ՏՈՂ | ՎՐԻՊԱԿՔ | ՈՒՂՂԵԱԼՔ |
|---|---|---|---|
| 227 | 1 | 'ի պղծուտ | 'ի պղծում |
| 246 | 34 | վարեցան | վայրեցան |

